մանք, մեր, թէև նուաստ վարդապետ եկեղեցւոյ Հայոց, որպէս զի Հերձուածողները նորէն չկարենան ու գլուխ մը խնդրեն, դեռ քննադատութիւնս չսկսած, կյայտ-նեմք և միանգամ առ յաւիտեան, թէ ըստ մարմնոյ Հայ-կայ որդի գոլով, ըստ հաւատոյ Լուսաւորչի ծնունդ, մեր եկեղեցին այլոց համեմատութեամբ մայրագոյն եւ խա-ղաղասիրագոյն կճանաչեմք եւ քաղաքավարութեան ու փրկութեան բոլոր պայմանները իր մէջը պարունակող. թէ փառաւոր կուզեմք Լուսաւորչի, Սահակայ, Ներ-սէսի և Մեսրոպայ հետ դժոխք երթալ, քան թէ Լեւոնի, Փոտի և Լիւտերի հետ՝ արքայութիւն. և իբրև այսպէս, քրիստոնէութեան հիմն եւ հոգին սէր ըմբռնելով՝ կսիրեմք անկեղծաբար եւ անխտիր ամեն քրիստոնեայներ, ամեն յունադաւան, հռոմէական եւ բողոքական Հայեր, որոց ամեն հոգեւոր եւ մարմնաւոր բարիք կբարեմաղթեմք, այլ բնաւ չեմք փափագիր, որ կրօնական միաբանութեան պատրուակաւ մեր եկեղեցին որ եւ իցէ եկեղեցւոյ աղա-խին ըլլայ:

Ըստ որում 1,500 տարուան ազգային պատմութիւնը, որ գրասեղանիս վրայ է, կվկայէ թէ այսպիսի միաբանու-թիւններէ մեր ազգը ծանրագոյն կորուստներ կրեր է. եւ այսուհետեւ ալ կրէ պիտի, եթէ նախնեաց ոմանց տկարամտութեան օրինակին հետեւի: Կրօնական դաւա-նութիւնս տալէ ետեւ պէ՞տք է քաղաքական դաւանու-թիւնս ալ տամ, այո, վասն զի քրիստոնեայ և վարդապետ ըլլալէս յառաջ մարդ ստեղծուեր եմ, մանաւանդ Հայ մարդ: Արդ իբրեւ Հայ կխոստովանիմ, որ ազգս ոչ միայն ազատ ըլլալու, այլ եւ իր հայրենիքին ինքնիշխան տիրելու

քաղաքական հրահանգներով ծածկէր, աշխարհաշինու-
թեան միջէր, գիտութական և ընտանեկան առաքինու-
թիւններով նախանձելի ըլլար, մարդկութեան օգտա-
կար անդամ եւ իր նախահօրը արժանաւոր ժառանգ.
վերջապէս կատարելութեամբ որ իր բազմաժամանակեայ
առողջութեան պարշութիւնը նմանեցելով միջն ալ յան-
կար, որ յառաջ մարդկութեան նպատակին համեմատ,
անդամօրէն անցնի. վասն զի Աստուած զմարդ ազատ եւ
ինքնիշխանն ստեղծեր է։ Այս է ահա իմ քրիստոնէական
եւ քաղաքական սկզբունքս. այսպէս ըլլալը են անշուշտ
ամեն հարազատ Հայոց, եթէ կցանկան մեր ազգի վերա-
նորոգութիւնը։

Գանք մեր խնդրոյն։ Տասը տարի յառաջ մեր ու մե-
ծահամբաւ Ամիրայի մը մէջ, 1824 թուին, Ազաթան-
գեղոսի պատմութեան վերջը Պոլիս տպուած Դաշանց
թուղթի, եւ ասոր նման չինծու բաներու վրայօք առար-
կութիւններ եղան, որ օրէ օր զայրանալով բաւական
տարաձայնութեան տեղի տուին։ Մեծապատիւ Ամիրան
իր բոլոր կեանքը ճարտարապետական արուեստին նուի-
րած ըլլալով, եւ ըստ օրինակի այլ հոխերու մեծահամբա-
ւութիւնը իրեն անպայմանական ստացուած կարծելով, այլոց
անկիրթ եւ անարժանից համար իր նիւթական և տեսա-
կան լարումը, չգիտեմ որմէ, չափելու ազատութիւնը
սանձեր էր. թէ և Մեծահամբաւ Ամիրան հնախօսութեան,
քրիստոնէական և քաղաքական պատմութեանց, ազգա-
յին և օտարազգի մատենագրութեանց, եկեղեցւոյ ընդհա-
նուր եւ մասնաւոր վարդապետութեանց, վերջապէս,
հին և նոր լեզուաց կատարեալ եղած հմտութիւնները այլոց

« Զի՞նչ ինչ ծածուկ՝ որ ո՛չ յայտնի լիցի, և ո՛չ գաղտնի՝ որ ո՛չ ծանիցի եւ եկեսցէ ի յայտ » (Ղուկ. Ը. 17)։

Տեսէ՛ք չար նախանձու դառնադառն պտուղը. յիշեցէ՛ք այն քաղցրախօս առածը թէ՝ « Վատասեր աչաց է նշան՝ նեղիլ լուսով փայլման մերձաւորին ։ Բուոցն աչք չհանդուրժէ պայծառութեան լուսաւորին մեծի՝ յոր փայլեն արծուիք ։ Բարիքն խնդակից լինին ընդ բարիացող » . (Տաղ. առած. 38)։

Թո՛ղ նախանձու հոգին թելադրէ ու համոզէ հակառակէր կամքերը յերանելեաց ի սրբոց վկայեալ Ամենակալին Աստուծոյ առջեւը հաստատուած ու սուրբ ուխտադրութեամբ կնքուած անանկ մէկ դաշնադրութեան թուղթ մը անհետ ընել եւ ի կորուստ մատնել ։

Թո՛ղ կողմնակցութեամբ ու աչառութեամբ զարմանալի լռութեամբ մը բացայայտ ճշմարտութեան դէմը դնեն ։ Բայց դու ո՛վ ճշմարտասէր ընթերցող, անս թէ ո՛րպէս մեր բարեպաշտապաշտ ազգին՝ անոր յատուկ պաշտպանին Տէր Աստուած Ամենակալ՝ այն երանելի սրբոց Դաշնադրութիւնը երբեք զանձարան սիրոյ եւ միաբանութեան անկորուստ պահելու համար՝ կարողացուցեր է անընդհատ տալով եւ ընթեռնուլ մտաւորութեանը, յիշելով մեծ Քահանայապետին մերոյ սրբոյ Հօրն Գրիգորի Լուսաւորչի հոգեւոր փառաց եւ շնորհաց առատութիւնը եւ անհամեմատ բարեմասնութիւնները ։ Ինչպէս որ մեծահաւատ Մահտեսի Ծանիկ բարեպաշտական Ամիրային հոգեսիրական եւ ազգասիրական փոյթ ունեցաւ վերստին եւս տպել տալ յամի Տեառն 1824 ի պատրիարքութեան Կարապետ հոգեւոր Սրբազան Արք եպիսկո-

պատի նոյն Ագաթանգեղոս մատենանը՝ Դաշանց թուղ-
թովը մէկ տեղ ։ որուն հին ձեռագիրը գտնելով Պալատցի
խմաստասէրն Գէորգ պատուելին՝ ընտրելագոյն գաղա-
փարներու հետ բաղդատած էր, և նոյնը յիշեալ մահտեսի
Ծանիկ Ամիրային յանձնած մեծախմաստ Գրիգոր պատ-
ուելայն, որ նոյն տող ամենայն զգուշութեամբ վերստին
քննելով եւ տպագրութեան սրբագրութիւնը ընելով՝ ի
լոյս ընծայած է ։

Արդ խրատուենք ամենէն առաջ հարցանելու, եթէ Յու-
նաց լեզուաւ գրուած Ագաթանգեղոսի մատենագրու-
թիւնը կայ եւ կը գտնուի Յունաց մէջ, ուրեմն ինչո՞ւ
համար այս Դաշանց թուղթը անոր հետ չունենուիր ու-
չգտնուիր ։ Այս խնդիր սրախտանանք ։

Այս տարակուսը կը լուծէ Եզնիկ սուրբ վարդապետ-
նաց մատենագրութիւնը, որ ինչպէս վերը գրեցինք,
կը պատմէ. որոց Վարդանանց քաջ նահատակաց ժա-
մանակը Յունաց կայսր Փոքր Թէոդոսիոսն օգնութիւն
խնդրելու համար՝ եկեղեցականաց եւ աշխարհականաց
նամակ գրելովն՝ յիշեցնելով Տրդատի վեհափառութեանը
յիշատակարանն նախնեաց անունն ալ այս Դաշանց թուղթն
որովհետեւ Յունաց կայսերական դիւանին մէջ յիշա-
տակարան նախնեաց անուանքը գրուած ու պահուած էր ։

Վասնզի ուրեմն մեր ազգին այն գրութիւնը, եւ Թէո-
դոս կայսեր անոր վրայով ըրած քննութիւնը՝ կայսերա-
կան դրատունէն բերած մատեաններով ։ Առաջինին
համար գրուած է Վարդանանց կողմանէ խրկուած գրին
մէջ. « Որպէս եւ մեր ունինք գանձատան յիշատակարանս
առաքինի նախնեացն ձերոց » ։ Եւ երկրորդ՝ կայսերա-

կան քննութեանը համար գրուած․ » Եւ (կամ) ընթեր-ցած գիրք պաղատանաց Հայոց աշխարհին և դ յիշատա-կարանաց նախնեաց, բազում մատեանք ի մէջ եկեղեցւ, ընթերցան, որ զնոյն ուխտ Հաստատութեան ի ներքս զատանէին » (Եղիշէ նոր տպ. Վենետ. գլ. գ. երես 55)։

Հիմակ ասկէց կիմանանք՝ որ Յունաց կայսերական մատենագրութեանց մէջ՝ այս Դաշանց թուղթը կը յի-շատակուի ու կը գրուի յատուկ յիշատակարան նախնեաց անունով։ Թէ որ Ագաթանգեղոսի պատմութեանը Հետ որոնենք՝ կարող միթէ չըլլան գտնելու։

Իսկ թէ որ յիշատակարան նախնեաց անունով ալ չգտ-նանք, անշուշտ այլուր ըսենք, թէ այն մեծ Հրկիզութեանը մէջ միւս ընտիր ընտիր մատենագրութեանց Հետ Հրոյ ճարակ եղած է. որուն վրայով կը պատմեն այս Յոյն պատմիչ-ները, Կեդրենոս միայնակեաց և Զոնարաս թէ՝ Կ. Պօլ-սոյ մեծ դրատանը Յունաց Զենոն կայսեր ժամանակը այրեցաւ յամի Տեառն 476, որուն մէջ այրեցան, կ՚ըսեն, հարիւր քսան հազար գրեանք։

Կը պատմեն նաև այս Յոյն պատմիչները՝ Զոնարաս, Կեդրենոս, ու Կոստանդիլին Մանասէ, թէ Իսաւրացի Լևոն ամպարիշտ պատկերամարտ կայսրը՝ երկոտասան ջերմեռանդ կրօնաւորները այրելու համար՝ սուրբ Սոփիայ անուն տաճարին մերձ եղած իմաստասիրաց բնակու-թիւնը յանկարծ հրդեհել տուաւ յամի Տեառն 730, ու-անոր մէջ յիշեալ երկոտասան կրօնաւորները զոհ եղան ճշմարտութեան համար, զոհ եղան նմանապէս երեք Հա-րիւր երեք հազար ընտիր մատեանները։

Հիմայ պէտք ըսենք, թէ որ այն Դաշանց թուղթին

ծրինակը յիշատակարան նախնեաց անունով՝ Յունաց մէջ անհետ եղած է, անտարակոյս այրած է միւս այնչափ հազարաւոր մատեաններուն հետ ։

Թէ որ փոյթ ունին եւ կը ցանկան վերստին ձեռք բերելու իրենց կորուսածը, կարող են թարգմանել տալ ի Հայկականէն ի Յոյն լեզու ։

Ինչպէս Կեսարու Պաղեստինացւոյ Եւսեբիոս եպիսկոպոսին* եկեղեցական պատմութեանն Քրոնիկոնը (Ժամանակագրութիւնը) իսպառ կորսուած էր՝ կամ սոյն վերոյիշեալ հրկիզութեանց մէջ, եւ կամ անհոգութեամբ ։ Բայց մեք ունէինք ի Յունականէն ի Հայ լեզու թարգմանուած մեր սրբազան թարգմանիչներէն, որով թարգմանութեամբ ի Հայկականէն ի Յոյն լեզու 43 տարի յառաջ. եւ այսպէս ստացան իրենց բազմաժամանակեայ կորուսածը ։

Ասկից կը հետեւի՝ որ շատ անգամ անցեալ դարերու մէջ գրուած որ յիշատակութիւններուն եւ մատենագիրներուն կորուստը զանազան ժամանակներու մէջ աւերակներէն եւ անծանօթ խորշերէն բարեբաղդաբար երեւան ելլէ. ինչպէս զարապատառներէն, հնախօսութիւններէն եւ գրագիրներէն կը լսենք ու կը կարդանք ։

Ահա այս օրերս կարդացինք Վենետիկի Մխիթարեանց Բազմավէպ օրագրին 16 Թիւը 15 Օգոստոս 1858, որուն մէջ ծանուցանուած է թէ ի Հռոմ Չեզարինի անուն Դքսին պալատին գրադարանի խորշերուն մէջը շատ հազիւ Լատիներէն լեզուաւ գրուած նամակ մը գտնուեր է, որն որ Լենտուլոս-Պօպլիոս Հրէաստանի կուսակալը՝ գրեր է Տիբերիոս կայսեր՝ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ

դրանչելի եւ զարմանալի տեսութեանց վրայով՝ անոր ծանօթութիւն տալու համար ։

Արդ՝ երանի թէ այսպէս բարեբաղդ ժամանակի մը հանդիպէինք, որ Լատինական կամ Իտալական լեզուաւ թարգմանուած վերոյիշեալ Դաշանց թղթոյն օրինակներ՝ ծածկուած խորշերէն յայտնուէին ի ծանօթութիւն ամենեցուն ։ Այն ժամանակը՝ այս Դաշանց թղթոյն վրայով սխալ կարծեաց մէջ յամառեալներուն միտքը գուցէ համոզուէին. որոց տացէ Տէր հոգի ճշմարտութեան ի փառս պաշտելի անուան իւրոյ ։

---

# ՎԵՐՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ։

Այսպէս կնքենք այս տեղ փոքր ի շատէ խորհրդածութիւննիս Դաշանց թղթոյն ստուգութեանը վրայով. ինչու որ որչափ մեր տկար մտաց զատողութիւնը վերահաս եղած էր, հաստատուեցաւ փաստաւորական վկայութեամբք արժանահաւատ եւ ճշգրտագրած ազգային մատենագիրներուն ։

Ուստի թէ որ մեր բարեմիտ եւ բանասէր հոգեւորականաց եւ աշխարհականաց հաճելի ըլլայ այս փոքր աշխատութիւնս, պատիւն ու յարգը մեր անձին չի վերաբերիր, այլ յաւէտ մեր ճշգրտապատում մատենագիրներուն ։

Դարձեալ՝ հարկ է մեզի ճանչնալ Աստուածային տեսչութեան մասնաւոր ու մեծ ամեծ շնորհացը այն գործողութիւնը, որն որ բարեպաշտ ազգիս լռութեանը վերայ մշտնջենաւորած ըլլալով՝ ժամանակ ժամանակ փոյթ ունեցեր են բարենախանձ առաջնորդները, ուսումնական պաշտօնեյքները և ազգասէր բարեպաշտ իշխանները ձեռք բերած եւ ունեցած նախնի սուրբ Հարց գրաւոր արդիւնքները և եկեղեցական պատմութիւնները տպագրել տալ, զորանք կը վայելէ սիրելի ազգիս լռութիւնը. եւ փառք գոհութեամբ հանդերձ կը վերընծայէ առ Տէր Յիսուս Քրիստոս Փրկիչն մեր, ճանաչելով եւ խոստովանելով զնոյն ինքն օգնական ու պաշտպան իւր վերայ, որով զինքը երանելի կը համարի ըստ մարգարէին Դաւթի. « Երանի Ազգի՝ որոյ Տէր Աստուած օգնական է նմա » (Սաղմ. լբ. 10) ։

ՄԱՏԹԷՈՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ։



# ԴԱՇՆԱՑ ԹՂԹՈՑ

## ՀՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՀԵՂԻՆԱԿԸ

### ԱՐԱՐ

Կ. Վ. Տանեազարեանց, միաբան Սրբոյ Էջմիածնի եւ Ուսման խորհրդարանի եւ Ճեմարանին Տեարց Լազարեանց, որ ի Մոսկուայ:



Քաղաքական և կրօնական մրրիկներէ ցանուցիր եղած և ընդ մեռեալս համարուած ազգերուն աներևոյթ ոգիէ մը կենդանարար փչում մը զգալով, իրարու մօտենալու, յօդուելու, նորոգուելու և առջի կենդանութիւննին առնելու համար վսեմ ճիգեր թափելու տեսարան է եղեր մեր դարը:

Մեր ազգէն ալ հաղուագիւտ հատուն անձինք, մէկ կողմէն Նախախնամութեան շարժօղ եւ վարօղ մատը նշմարելով Արեւելքի իրողութեանց մէջ, միւս կողմէն

ժողովուրդը իր թմբրութենէն արթնցնելու, ազատու-
թեան խաւարէն ազատելու, վերածնութեան եւ քաղա-
քակրթութեան ակնկալութեամբ աշխուժնին դէպ ի Սուրբ
Լուսաւորչի Աթոռը ուղղած ատենը, ահա Տէր Մատ-
թէոս, Վեհափառ Կաթողիկոսը, այս տարուան Մոսկ-
վայի Ճգնաժամ անուն օրագրի միջոցաւ (էջ. 237-244.
253-260) « Հաստատութիւն ստուգութեան դաշանց թղթոյն,
զոր Կոստանդիանոս մեծ ինքնակալն եւ սուրբն Սեղբեստրոս
հայրապետն Հռոմայ առնէ ընդ մեր Տրդատ թագաւորին եւ
սուրբ Գրիգոր Լուսաւորչի հայրապետին » անունով երկա-
յօդուած կհրատարակէ :

Չգիտելով, բայց ի սահկաւուց, թէ այլ ընթերցողաց
վրայ այս հրատարակութիւնս ինչ տպաւորութիւն ըրեր
է, անոնց առջին ինչ արժէք ունեցեր է, փութամք մե-
րինը անկեղծաբար յայտնել. վասն զի այսպիսի յիշատա-
կարանի մը մեր եկեղեցւոյ գլխէն վաւերականութիւն
ընծայելը կրկին նշանակութիւն ունի, մանաւանդ մեր
օրովը, երբոր ներսի եւ դրսի թշնամիք այլեւայլ լեզւոն-
ներու բաժնուած՝ Լուսաւորչի քրտամբ հաստատեալ
եկեղեցւոյ անդամները, ոմանք Հռոմայ ցուպին տակ
պատսպարել կքարոզեն, այլք Փոտի քղանցից տակ հա-
ւաքել կջանան, ոմանք ալ Նոր աշխարհէն եկած նորա-
կրօններուն պատուաստել կդիտեն, ամէնքն ալ ամբա-
հոգւոր եւ մարմնաւոր բարիք երազելով ու մեր ժողովրդ-
դեանը խոստանալով :

Ինչ և մնի այլոց կարծիքը իրենց աղօթելու կերպին,
առդիէն անդիէն կրօնքի առուտուրով ինչք և պատիւ շոր-
թելուն եւ հոգիներն ուղղած ճամբաներն փրկելուն նկատ-

մամբ, մեք, թէ և նուաստ վարդապետ եկեղեցւոյ Հայոց, որպէս զի Հերձուածողները նորէն չկարենան ու գլուխ մը խնդրեն, դեռ քննադատութիւնս չսկսած, կյացու- նեմք և միանգամ առ յաւիտեան, թէ ըստ մարմնոյ Հայ- կայ որդի գոլով, ըստ հաւատոյ Լուսաւորչի ծնունդ, մեր եկեղեցւոյն այլոց համեմատութեամբ մաքրագոյն եւ խա- ղաղասիրագոյն կճանաչեմք եւ քաղաքակրթութեան ու փրկութեան բոլոր պայմանները իր մէջը պարունակող. Թէ փառաւոր կսեպեմք Լուսաւորչի, Սահակայ, Ներ- սիսի և Մեսրոպայ հետ դժոխք երթալ քան թէ Լեոնի, Փոտի և Լիւտերի հետ՝ արքայութիւն. և իբրև այսպէս, քրիստոնէութեան հիմն եւ հոգին սէր ըլլալով՝ կսիրեմք անկեղծաբար եւ անխտիր ամէն քրիստոնեայներ, ամէն յունադաւան, հռոմէական եւ բողոքական Հայեր, որոց ամէն հոգեւոր եւ մարմնաւոր բարիք կբարեմաղթեմք, այլ բնաւ չեմք փափագիր, որ կրօնական միաբանութեան պատրուակաւ մեր եկեղեցին որ եւ լիցէ եկեղեցւոյ աղա- խին ըլլայ:

Ըստ որում 1,500 տարուան ազգային պատմութիւնը, որ գրասեղանիս վրայ է, կվկայէ թէ այսպիսի միաբանու- թիւններէ մեր ազգը ծանրագոյն կորուստներ կրեր է. եւ այսուհետեւ ալ կրէ պիտի, եթէ նախնեաց ոմանց տկարամտութեան օրինակին հետեւի. Կրօնական դաւա- նութիւնս տալէ ետեւ զի՞նչ է քաղաքական դաւանու- թիւնս ալ տամ, այն, վասն զի քրիստոնեայ և վարդապետ ըլլալէս յառաջ մարդ ստեղծուեր եմ, մանաւանդ Հայ մարդ. Արդ իբրեւ Հայ կխոստովանիմ, որ ազգս ոչ միայն ազատ ըլլալ, այլ եւ իր հայրենիքին ինքնիշխան տիրել,

քաղաքական հրահանգներով ծաղկէր, աշխարհաշինու-թեամբ միայն էր, գիտութիւնական և ընտանեկան առաքինու-թիւններով նախանձելի ըլլար, մարդկութեան օգտա-կար անդամ եւ իր նախնեաց արժանաւոր ժառանգ. վերջապէս կատարելութեան որ իր բաղձածանմահականէայ ստրկութեան դառնութիւնը ճանաչելով՝ ինքն ալ յանձն-կար, որ յառաջ մարդկութեան նպատակին համեմատ, ազատօրէն ապրի. վասն զի Աստուած զմարդ ազատ եւ ինքնիշխանութիւն ստեղծեր է։ Այս է ահա իմ քրիստոնէական եւ քաղաքական սկզբունքս. այսպէս ըլլալու են անշուշտ ամէն հայրապատ Հայոց, եթէ կցանկան մեր ազգի վերա-նորոգութիւնը։

Գանք մեր խնդրոյն։ Տասը տարի յառաջ մեր ու մե-ծահամբաւ Ամիրային մը մէջ, 1824 թուին, Ազատա-գնդողի պատմութեան վերջը Պոլիս տպուած Դաշանց թուղթի, եւ աստ նման չինծու բաներու վրայօք առար-կութիւններ եղան, որ օրէ օր զայրանալով բաւական տարաձայնութեան տեղի տուին։ Մեծապատիւ Ամիրան իր բոլոր կեանքը ճարտարապետական արուեստին նուի-րած ըլլալով, եւ ըստ օրինակի այլ ճոխերու մեծահամ-բաւութիւնը իրենց անպէտական ստացուած կարծելով, այլոց անձինքն եւ ամենեւանցի հաւատքը իր նիւթական և տեսա-նելի լարումը, չգիտեմ որմէ, չափելու ազատութիւնը մտածեր էր. թէ եւ մեծահամբաւ Ամիրան հմտութեան, քրիստոնէական և քաղաքական պատմութեանց, ազգա-յին և արտաքին մատենագրութեանց, եկեղեցւոյ ընդհա-նուր եւ մասնաւոր վարդապետութեանց, վերջապէս, ամէն նոր լեզուաց կարեւոր եղած հմտութիւնները այլոց

մարգարէութիւն, ոչ պատմութիւն, ոչ աշխարհագրու-թիւն, ոչ վկայաբանութիւն, ոչ գուշակութիւն, ոչ յայտ-նութիւն, ոչ պարգեւագիր, այլ անձոռնի անդունդ մը, որու մէջ ամենայն բանի կտորներ կան եւ ամեններին, ամբողջ բան մը չկայ, որու ամէն անուն կպատշաճի, բայց և ոչ մի անուն սեփական ։

Այս կարծեցեալ Դաշնագիրը կսկսի նախ յոգնակի թուով յանուն Ամենասուրբ Երրորդութեան, իբր կոնակ կայսերական. քիչ մը վարը Եւսեբիոս պապը Սեղբես-տրոս կըլլայ (որ յայտնի վրիպակ է). այս Տրդատայ եւ Լուսաւորչի Հռոմ երթալու պատմութիւնը կընէ. անկէ ետքը անոնց ուխտագնացութիւնները, խրախճանքը եւ կոչունքը, անկէ կյաթկէ յանցաւորաց ազատութիւն տալը։ Ն, ապա Խաչափայտի յիշատակութիւնը կընէ (որ դեռ չէր գտնուեր), Քրիստոսի արիւնը մեղանի տեղ կը վարէ, և հեթանոսութեան օրէնքը կհաստատէ, այսինքն զոհրելին մորթել եւ զատելին ուտել. Նոյեան տապանի շինութեան պատմութիւնը կընէ, Սագաստան եւ Դեղ-մաստան Հռոմայեց ոչ երկիր կդարձունէ, (որոց երբէք Հռոմայեցիք չտիրեցին), Տրդատ բոլոր Ասիոյ և տիեզե-րաց թագաւոր կկարգէ (աշոր նշանախեցն անգամ պատ-մութեան մէջ չկայ), Դարբանդ Հռոմայեցւոց տակը կդնէ (որ Արաբաց օրովը այս անունը առաւ, այսինքն Կոստանդիանոսէն 350 տարի ետքը), Տրդատայ որդի Խոսրովը օտար ծիսով մը Կոստանդիանոսի որդւով կը պսակուի, Բեթղեհէմ քաղաքը և Կապադովկիա Տրդա-տայ կտայ. հոս յոգնակին եզակիի փոխուելով, տեսիլք եւ յայտնութիւններ կպատմէ (Թերեւս Կոստանդիանոս

յանկարծ մարգարէ ուկան հոգի առնելով), Արշակունեաց անկումը, Հայոց գերութիւնը կգուշակէ, անոնց փրկութիւն կխոստանայ իր ժառանգներէն (որոնք հակառակը ըրին), Լուսաւորչի Հռոմ գործած հրաշքը կը պատմէ ախտացելոց վերայ. Կապիտոլիոնի մէջ վիշապ մը կսպաննէ Սեղբեստրոս, հատ մըն ալ Տրդատ կսպաննէ միեղջերուի մի հետ (որ այն ատենը Հռոմ տեսնուած չէ), զոր եւ Կոստանդիանոսին լորեւ թինահալած թիւրակէս կընծայէ; Կոստանդիանոս ալ Տրդատայ կպարգեւէ Երուսաղէմէն Հեղինէի ձեռամբ բերուած խաչափայտը (որ 10 տարի ետքը գտնուեցաւ). ապա Լուսաւորչի չարչարանաց պատմութիւնը կսկսի, Տրդատայ սիրահարութիւնը կպատմէ Կոստանդիանոսի քեռ դստեր հետ, անոր խող դառնալը, բժշկուիլը, հաւատալը, Հայաստանի մեհենից բակտումը, դեւերու Կասպից ծովի հարաւակողմը Հայաստանէն փախչիլը (երանի թէ իր խելքի ցնդելն ալ հոն յլէր), Վրաց հաւատալը, Տրդատայ ձգնաւորից մենամարտութիւնը (որ Հռոմէն դառնալէն յետոյ եղաւ), Կոստանդիանոսի Պանուք գետի ձախ կողմը ըրած կռիւը եւ հոն լուսեղէն խաչ տեսնելը (այս երեւումը Տիբեր գետի վրան եւ Հռոմայ մօտերը եղաւ), Կոստանդիանոսի զքրիստոնեայս հալածելը, անոր բորոտիլը, Սեղբեստրոսէն լուսաւորուիլը (որք ամենայայտնի սուտ են, ըստ որում Կոստանդիանոս Եւսեբիոս եպիսկոպոսէն մկրտուեցաւ Նիկոմիդիա իր մեռնելու ատենը), գլխագինը կյիշատակէ (այսինքն խարած. այս տուրքը այն ատենը դեռ չկար, ու Մահմետականաց գիւտ է, 400 տարի ետքը), Լուսաւորիչը, արդէն պատրիարք ըլլալով,

Նորէն Սեղբեստրոսէն պատրիարք կձեռնադրուի (որոյ նմանը դեռ քրիստոնէութեան մէջ տեսնուած չէ), կըսէ որ անոր յաջորդները իրենց եպիսկոպոսներէն ձեռնադրուին (ասոր հակառակ Հայոց կաթողիկոսները անկէ ետեւ երկար ատեն Կեսարիա գնային ձեռնադրութիւն առնելու համար, ինչպէս ամեն Հայ գիտէ), Լուսաւորիչը Սեղբեստրոսի գլխաւորութեան կկարգուի եւ հրամանատու Երուսաղէմայ, Անտիոքայ եւ Աղեքսանդրիոյ պատրիարքաց (այս ալ հակառակ պատմութեան եկեղեցւոյ). Լուսաւորչին անտեղի տղայական գովութիւններ կուտայ, Կոստանդիանոսին սերոբէք կծառայեն. Սեղբեստրոս Լուսաւորչին կուտայ Քրիստոսի փակեղը եւ Պօղոս Պետրոս առաքելոց երկու ձեռուրները (Թէեւ երկուքն ալ Հռոմ կմնան), պարգեւներ կուղարկէ Վարագայ վանքին, (որ դեռ շինուած չէր). Ս. Յակոբայ վանքը Հայոց կուտայ, (որ Խաչակիրներու ատենը Հայոց անցաւ). Սեղբեստրոս Լուսաւորչին կապելու և արձակելու կարողութիւն կուտայ, (զոր 20 տարի յառաջ ստացեր էր ի Կեսարիա Ս. Ղեւոնդէն) եւայլն, եւայլն, և այլն:

Ահա այս Դաշանց թղթի բովանդակութիւնը, որոյ տարրերքն են ծայրէ ի ծայր աղճատաբանութիւն. ահա այս ցուցանքաւոր Դաշանց թղթի ծուծը, որ, ինչպէս իր խառնափնթոր ոճէն, իր նիւթոց խառն ի խուռն հածութեանէն կերեւի, աւելի դեղին տենդով բախած ուղեղի ցնորք է, քան թէ ճարտար խաբեբայի գիւտ. որ-որչափ թանձրամիտ և ռամիկ անձերու զարմանք կպատճառէ, այնչափ ալ և աւելի՝ կիրթ ճաշակաց և վարժ մտաց զզուանք: Գոնէ եթէ Բաղդասարի Խալֆայից

Հազար և մէկ գիշերի զուարճութիւնը և բարոյականը ընծայէր անիկայ, տակաւին, իբրև մէկ, մարդ, անգործ ատենը, կարէր կարդալ։ Այսուհետև փոյթ չէ, թէ Վեհափառ Կաթողիկոսներ այսպիսի դանդաղմունք իրենց ծիրանեօքը կծածկեն. բարեբախտաբար ճաշակը և ընտրութիւնը ուրիշ հեղինակութիւն չեն ճանաչեր, բայց եթէ գեղեցիկի, բարւոյ և ճշմարտի։

Արքազան Կաթողիկոսը վերոյիշեալ երեք պատմիչներէն զատ չորրորդ մըն ալ ի մէջ կբերէ անժխտելի Դաշանց Թուղթը հաստատելոյ համար. այս վկան է Եղիշէն։

1842 թուին Վենետիկ տպած Եղիշէյի պատմութեան մէջ շօշափելի վրիպակներ և խանգարմունք պակաս չեն։ Անոր պատմական ընթացքի մէջ սպրդած մասերով խանգարմունք ընելու վկան ալ Կոստանդնուպոլիս տպած Թովմայ Արծրունին է. ուզողը կրնայ հոն կարդալ. եր. 89։ Բայց և այնպէս գիւտուք վայրկեան մը թէ Եղիշէյի գրուածը այնպէս անապական տպուեր է, որպէս հեղինակին գրիչէն յղացեր և ծներ է. այլ հա՞յ մի անոր մէջ ուղղակի կամ անուղղակի ակնարկութիւն մը «Կոստանդիանոսի, Սեղբեստրոսի, Տրդատայ և Լուսաւորչի մէջ անժխտելի երդմամբ հաստատուած Դաշանց թղթին»։ Եթէ կան այնպիսի հոգետեսք, որոնք սրբոց Վարդանանց առ Թէոդոս կայսր գրած նամակին խորհրդական մեկնութիւն տալու շնորհքը ունին, կամ անոր յայտնի իմաստին տակ պատրանի իմաստ երևակայելու ձիրքը ունին, մեր բազմամեղ նուաստութիւնը այդպիսի ձիրքէ զուրկ է։ Խօսինք յայտնապէս. միթէ այս հայերէն նամակը եթէ հայերէն կարդացուի, տակաւին մեր համոզումը չփոխուի

մեր Թագաւորները Տրդատէն յառաջ դրեր էին Հռո-
մայի հասարակապետութեան և կայսերաց հետ, պայ-
մանագիրներ, որ մեր երկիրը Հռոմայեցւոց պաշտպանու-
թեան տակը կդնէին, անոնց հարկ տալ յանձն կառնուին,
անոնց զօրքը մեր երկրի մէջ կպահէին, որոյ անհերքելի
ապացոյցներն են Խորենացիի Գիրք Գ. Ժ. ԺԱ. Գլուխ
Զենոբայ 40 և 41 երեսները ։ Ըսենք վերջապէս, թէ
սրբոյ Վարդանանց նամակը «Յովսէփ եպիսկոպոսդ առ
մեծանունդ Թէոդոս կայսր . . . որ խաղաղական մարդա-
սիրութեամբ ձերով տիրէք ծովու և ցամաքի. և չիք որ
յերկրաւորաց, որ ձերում անարգել տէրութեանդ ընդ-
դէմ դառնայցէ ։ Որպէս մեք իսկ ունիմք զանուն յիշա-
տակարանն (պատմագիր, արձանագիր, այլ ոչ բնա-
Դիւանաց բնագր) զառաքինի նախնեացն ձերոց (և ոչ նախ-
նայն ձերոյ, այսինքն, Կոստանդիանոսի), ունելով
զերկրաւոր անցիկն տիրեցին և Ասիացւոց կողմանցն ի սահ-
մանացն Սերաց մինչև ի կողմանս Գադերոնի. և ոչ որ
զատ առանձնակեալ և ելանել ընդ ձեռն նոցա. և յայն-
չափ մեծ իշխանութեան՝ դաշնակերտ մեծ և տիրելի
զՀայոց աշխարհն առնուանէին (դաշնակերտ բառին մեկ-
նութիւնը մէկը չկարցաւ տալ մինչև հիմայ, ըստ մեր գի-
տելոյ դաշնակերտ այն աշխարհը կնշանակէ, որ թէև
Հռոմայեցւոց դաշնակից և հարկատու՝ այլ Հռոմայ Ծե-
րակուտի իրաւաբանութեանը տակ չէր, կայսեր կամքէն
միայն կախուած ըլլալով)։ վասնորոյ և նախնին մեր Տրդ-
դատիոս յիշելով զառաջին ուխտն Զեր, որ ի տղայութեան
փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն
իւրոց՝ ապրեցաւ սնաւ յերկրին Յունաց. և ի ձեռն բազմ-

առնելոյ տիրքէր հայրենի աշխարհիս » և Սուրբ Եղիշէի յաւերջությանը « Եւ երբև յանդիման եղեն մեծի թագաւորին, և ընթերցան զթուղթ պաղատանաց Հայոց աշխարհին և զյիշատակարանն նախնեաց, բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան, որ զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս գտանէին » Տէր Մաղթէոսին հակառակ են։

Ողջամիտ և պատմագէտ անձեր ս գրուածքներու նախնեաց մերոց, ունելով զԵւրոպէ անցեալ և ներկայն և Ասիացւոց կողմանցն » խօսքը կարդալով երբէք մեծն Կոստանդիանոս հասկնալու չեն հարկաւ․ որովհետև անկէ Ասիոյ մէջ բնաւ մը գտնին չկայ․ ոչ ալ ասուքինէն նախնեաց բառերովը՝ Թէոդոս կայսեր նախահայրը հասկնալու են։ Մեծին Կոստանդիանոսի ցեղը Յուլիանոս ուրացողի մահուամբ վերջացաւ 363 թուին և յունիսի 26ին․ Թէոդոս ալ անոր հետ ազգականութիւն կամ խնամութիւն անգամ չունէր ամեններին՝ գոլով ինքը Կիլիկեցի Թէոդոս զօրապետի թոռը։ Կոստանդիանոսէն յառաջ Հռոմայեցւոց սահմանը Ասիոյ մէջ ինչ որ էր նէ՝ անոր օրուըն ալ նոյնը մնաց, ոչ պակսեցաւ, ոչ աւելցաւ։

Եւրոպայէն Ասիա անցնող, և Հռոմայեցւոց սահմանները Եփրատէն մինչև Գաղերոնի կողմերը ընդարձակող և Հայաստանի տիրող եղան Քրիստոսէ իբր 67 տարի յառաջ Լուկուլլոս, Պոմպէոս, Բենդիդիոս, Անտոնիոս, Կորբուղոն զօրավարները; որոնք սակաւ առ սակաւ ոչ միայն Եփրատայ աջ կողմը եղած Հայոց գաւառները շորթեցին, այլ և Աբգարի օրուըն ալ մեծ Հայոց վերայ տուրք դրին, Երվանդ Բ. օրուըն ալ Միջագետքը խլեցին։ Տրայանոս նորէն վատարանջեալ Հայաստանը

նուաճեց ։ Անկէ ետքը մինչեւ Տրդատայ հօր Խոսրովի օրը մեր երկիրը երբեմն ազատ միայ Հռոմայեցւոց լուծէն , երբեմն նուաճեալ . ամեն պատերազմէ ետեւ , ինչպէս ընդհանրական սովորութիւն է , դաշինք գրուեցան մերոց ու Հռոմայեցւոց մէջ , ու այնպէս խաղաղական յարաբերութիւնները սկսան ։

Տրդատ, իր հօրը մահուանէն ետքը, երբոր 261 թուին Յունաստան փախաւ , Լիկինոս կայսրին , Կարոս եւ Դիոկղետիանոս կայսերաց դիմեց և ոչ թէ Կոստանդիանոսին, որ դեռ ծնած չէր (նա ծնաւ 272 կամ 274 թուին). Տրդատ Դիոկղետիանոսէն, 286 թուին Հայաստանի թագաւոր կարգուեցաւ և ոչ թէ Կոստանդիանոսէն , որ 306 ին կայսր եղաւ ։ Տարակուսողը կրնայ կարդալ Խորենացիի Գիրք Բ. 76, 77, 79 և 82 Գլուխները ։ Տրդատ ոչ թէ Կոստանդիանոս կայսեր սէրը չքերով Յունաստան փախաւ , այլ անկէ յառաջ եղած կայսրերուն , որոնք երբեմն Հայաստանի օգներ էին Պարսից դէմ . ասոր ընական տրամաբանութեամբ հետեւցունելու ենք , որ յիշատակարանք Նախնեաց , բազում մարտերը Կոստանդիանոսի ամենեքին չեն վերաբերիր, այլ անկէ յառաջ եղող Դիոկղետիանոս , Կարոս , Տակիտոս , Տրայանոս և այլ կայսերաց և զօրավարաց կվերաբերին , քանի որ անոնք էին, որք զՏրդատ թագաւոր դրին, զՀայաստան ազատեցին և դաշինք դրին Տրդատայ և այլ թագաւորաց հետ ։ Որովհետեւ միշտ նախանձ Կոստանդիանոսէն յառաջ եղող Հռոմայ զօրապետները և կայսրերը կաննայրէ , անոր համար անհիմն է բոլորովին Վեհափառի դորդ փառաց ։

Հոս տեղ կարեւոր համարիմ յիշել Արբաղան Կաթո-ղիկոսի մնացած միւս եւս սրտամաշագիր, որ Արշակունեաց օրովը մեր երկիրը կեցեր է ու այս դաշինքի քաղաքական ըլլալուն կվկայէ : Այս պատմիչս է Փաւստոս Բուզանդ :

Յովիանոս կայսրը կնուամարդութեամբ Պարսից հետ խաղաղութիւն կընէ 363 թուին, Հայաստանի հետ. Հա-րաւային գաւառները անոնց կուտայ եւ Հայոց թագաւորէն ձեռնթափ կլլին. Ամիրեն Մարկեղղին. ԺԵ. 9. Եւտրոպ. Ժ. 17 : որով եւ առջի անգամը Կոստանդիանոսի եւ Տրդա-տայ ըրած դաշանց ուխտը կապառէ : Պարսիկները Յունաց ալ եւս Հայոց օգնելու կասկածը չունենալով՝ Հայաստան կարշաւեն, կապականեն, կքանդեն, շատ գերի եւ աւար առած, ընդ որս եւ Տիրան արքայն, Պարսկաստան կը դառնան : Հայերը Յունաց փառաւորութիւնը եւ իրենց խեղ-ճութիւնը տեսնելով՝ եւ Պարսից կրակապաշտութենէն ու կատաղութենէն սոսկալով՝ վերստին Յունաց թագա-ւորին կդիմեն յանձն առնլով « Զի ծառայեսցեն նմա հնազանդութեամբ, եւ չկեցցէ նա նոցա թիկունք օգնականու-թեան՝ խնդրել վրէժս իշխանաց նոցա . . . զոր իբրեւ լուաւ կայսրն զիրսն զայնոսիկ, մեծաւ փութով եւ բազում պատրաստութեամբ ի խնդիր եղանէր իւրոց հասելոյ. եւ օգնական եւ թիկունք լինէր աշխարհին Հայոց : Մանաւանդ զի զուխտն յիշէին զդաշանցն կռելոյ զերդմանցն հաստա-տութեան միաբանութեամբ ի մէջ կայսերն Կոստանդիանոսի եւ ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր : Փաւստոս Բուզանդ. երես 54-55 :

Սուրբ Լուսաւորչի եւ Տրդատայ ժամանակակից կամ մերձաւոր ազգային վաւերական աղբիւրները անաչառա-

բար քննելով և անոնց մէջ անժխտելի երդմամբ Կոստան-տիանոսի և Սեղբեստրոսի, Տրդատայ և Լուսաւորչի մէջ հոգևորական խրաց համար դաշինք դնելոյ և ոչ ամենափոքր ապացոյց մը գտնելով, անցնինք արդ միջին դարու մատենագիրներուն, որոց մէջ կյիշէ Սրբազան Կաթողի-կոսը Յովհաննէս պատմաբանը և Ներսէս Շնորհալին իբրև վկայք ։

Նախ այս ըսեմք, որ հայրապետ մը աստուածաբանից ժողովի մէջ իր առաքելական աթոռը բազմեալ՝ մէկ ձեռը Ս. Գիրքը, միւս ձեռը՝ եկեղեցւոյ սուրբ հարց վարդապետութիւնը ունելով՝ եթէ հաւատոյ և կրօնի վերաբերեալ պարզ խնդրոց վրայ, իր աթոռակցաց համահաճութեամբ որոշում մը հրատարակէր, անոր հօտը պարտաւոր է զանիկայ անկնածութեամբ ընդունիլ, միայն թէ այն որոշումը Ս. Գրոց և եկեղեցւոյ վարդապետութեանց վրայ հիմնուած ըլլայ ։ Բայց երբոր Հայրապետ մը, թէև մեծահամբաւ և գիտնական, կրօնական խնդիրները մէկդի դնելով՝ գրականութեան, արտաքին գիտութեանց և արուեստից ասպարէզը իջնայ, այնուհետև անիկայ Փիզիկայ վարժապետէն, իբրև գրագէտ, մազի մը չափ տարբերութիւն չունի. այնուհետև ամեն բանասէր կատարեալ արտօնութիւն ունի անոր գրածը քննելու, դատելու, և գտած վրիպակները դատապարտելու յանուն ճշմարտութեան, յանուն բանականութեան, զորս ամեն բանաւոր էակի, եկեղեցականի և աշխարհականի, անխտիր բաշխեր է բնութեան Հեղինակը ։ Այսպէս է եղեր հին և նոր իմաստասիրաց դատումը, այսպէս ալ ըլլալու էր հարկաւ ։

Ըսածս օրինակաւ բացատրեմք. մեր կաթողիկոսաց

մէջէն Յովհաննէս Դրասխանակերտցին գրեթէ երեք հազար տարուան Հայոց պատմութիւնը գրեր է. սակայն ինքը 70, առ առաւելն՝ 100 տարի ապրեր է։ Նա իր ժամանակի իրողութեանցը կրնար անձամբ հասու ըլլալ, ստուգել և իր ըմբռնմանը համեմատ արձանագրել. բայց այս կերպիւ 50 կամ 100 տարուայ միջոցի իրերը հազիւ կարէր ստուգել, անդին 2,900 տարուան եղելութիւնքը քննելու ձեռնհասութիւն չունենալով, ըստ որում, դեռ ինքը աշխարհ չեկած, անոնք պատահեր էին։ այնուհետև կպարտաւորէր իրմէ յառաջ երևցած մատենագիրներուն դիմել, անոնցմէ քաղել իր պատմելիքը, օրինակի աղագաւ, Խորենացիէն. սակայն այս ալ, անոր պէս, 100 կամ 120 տարի ապրեր է և իր ատենի իրողութիւնքը կրցեր է ճշդել, իրմէ յառաջ անցածներու ստուգութիւնն ալ Մարիբասին, այլ քուրմերու և Հեթանոս մատենագէտներու վկայութեանը հաւատալով ընդուներ է. այսպէս իրարմէ փոխ առնելով՝ կերթան, կհասնին մեր ու ամեն ազգաց պատմիչները մինչև անգիր աւանդութիւնը, կամ, դիւցազուններու շրջանը։

Արդ, օրինակի համար, ենթադրենք թէ Կրեսոսի Լիւդացւոյ, կամ Աժդահակ Մարի սպաննողը Տիգրանը չէր, այլ ոք էր. սակայն այս բանս Մարիբաս Նինուէի մատենէին կամ ուրիշի հաւատալով ընդուներ է, իբրև ճշմարիտ, զոր Խորենացին ալ Մարիբասին հետևելով, ընդուներ է. որոց հետևեր են Կաղանկայտուացին, Ուխտանէսը, Յովհաննէս Կաթողիկոսը, Ասողիկը, Վարդանը և այլք՝ իրարու հաւատալով։ Համարիմք թէ մեր օրովը Աժդահակայ կամ Կրեսոսի օրովը դրուած հարա-

չկար պատմութիւն մը երևան ելլէր ու անոնց մէկը այլ օրինակ պատմէր, մի՞թէ սուտ մեր պատմիչները նենգաւոր համարուելու էին. ոչ. բնաւ. անոնց հաւատարմութիւնը և յարգը այնուհետև ալ անպարտ մնալու էին։ անոնց մեծագոյն պակասութիւնը իրենց թերի քննադատութեանց տալու էր, որ արդարև հին ատենները շատ գիրերին բան չէր։

Եթէ հազար կամ երկու հազար տարի յառաջ երկաթուղի, շոգենաւ, հեռագիր, կամ գոնէ կանոնաւոր երթևեկութիւն ըլլային այլ և այլ ազգաց և ժողովրդոց մէջ, անտարակոյս, շատ անցք անգիտանալը և ճշդիւ կիմացուէին և կարձանագրուէին։ Եթէ հին ատենները տպագրութեան արհեստը ըլլար, ու իւրաքանչիւր մատենագրի գործը իր ձեռամբը տպուէր, անշուշտ, այժմ շատ մարդեր իրենց թանկագին գրերը տառադանակի քննութեանց չէին ծախեր։ Եթէ հիները նախապէս շատ ընտրութիւն և նրբախոյզ քննութիւն ունենային, և եթէ գարշելի խարդախութիւնը անմեղութեան սքօղարանը իր վրան առնելով՝ ճշմարիտ մարգարէից դէմ սուտ մարգարէներ չհանէր, ճշմարիտ Առաքելոց և Աւետարանաց դէմ սուտ աւետարաններ չհանէր, (որոցմէ շատերը դեռ այլ և այլ գրքատանէից մէջ կգտուին, ինչպէս են Գորդոսակ, Ալիմակոսակ, Պօղոսի տեսիլը, Ադամայ ապաշխարութիւնը, Տիաթեկը, Քրիստոսի մանկութիւնը, Օրհնութեան ձիրը, Անթառչելի մատեանը, Մանեայ շինած աւետարանի մեկնութիւնը ևայլն ևայլն ևայլն, որոնք Հայերէն ալ թարգմանուած են, ինչպէս նաև Անեցին կվկայէ). եթէ նենգութիւնը և պժգալի

շահախնդրութիւնը ճշմարիտ հրաշից և մասանց հակառակ առաւ հրաշք եւ մասունք չկեղծէին, հարկաւ շատ մարդիկ դժուարահաւատ չէին ըլլար այսօր, և շատ անգամ առւելն ազատելու այլ ճար չգտնելով, անոր հետ ճշմարտութիւնն ալ չէին մերժեր, ինչպէս Լիւթեր ըրաւ. այլ ըստ որում թշնամին ամեն տեղ իր որոմը ցաներ է, եւ գրեթէ ամեն բանի մէջ շատ կամ քիչ խաբէութիւն մտեր է, ի՞նչ ընելու ենք այսուհետեւ, հերքե՞նք մեք ամեն բան իբրեւ խարդախեալ, քա՛ւ լիցի. Փրկչի պատուէրը, « քննեցէ՛ք զգիրս. մի՛ ամենայն հոգւոյ հաւատայք », մէկ հատիկ ապահովագոյն ճամբայ կերեւի մեզ. ոչ ազնուոց պէս թանձրամիտ եւ դիւրահաւան ըլլալ ենք, ոչ սկեպտիկեանց պէս՝ ամեն բանի վրայ կասկածոտ. մեք Թովմայի, Հայոց Առաքելոյ, հաւատքը ունինք. ով ինչ կուզէ թո՛ղ երգէ եւ պատուիրէ, թէեւ անիկայ ամիրայ, պատրիարք, կաթողիկոս եւ հրեշտակ ըլլայ, մինչեւ անձամբ չքննենք, հաւտ չըլլանք, չհամոզուինք, հաւատալու պարտաւորութիւն չունինք, թէեւ բնիր բանադրանքի ալ չատաչին լսենք։

Դառնանք մեր կաթողիկոս մատենագիրներուն։ Արգ Տէր Մաղթէոս Կաթողիկոսը վերոյիշեալ հինգ ազգային մատենագրաց հետ Յովհաննէս կաթողիկոսն ալ վրայ կկանչէ անժխտելի երաշխաւոր հաստատում Դաշանց թղթին ։ Ճառագաղ. եր. 240 ։ Եթէ Երուսաղէմ տպած Յովհաննէս կաթողիկոսը հարազատ է, ինչպէս որ կարծենք հաւատալ. անոր մէջ այսպիսի վկայութեան եւ ոչ նշանախեց մի կայ. անկէ զատ Պարպեցի գրատունը եղած ձեռագիր օրինակներն ալ աչքէ անցուցինք, ինչպէս նաեւ Վէն-

Մարտենի գաղղիերէն թարգմանած Յովհաննէս կաթողիկոսը, որ այս վայրկենիս սեղանիս վրայ է ։ Ահաւասիկ Երուսաղէմ տպած Յովհաննէս կաթողիկոսի. եր. 26 այս նիւթի վրայով գրածը, « Յետ այսորիկ սապա գնացեալ եւս ընդ արքային Տրդատայ յաստուածակարգ կայսրն Կոստանդիանոս, բազմօք իմն եւ նազելի եւ վայելուչ մեծարանօք պատուէ զնուրբ Հայրապետն. իբրեւ զկենդանի մարտիրոս՝ առաջի անկանելով և աղօթս նուիրականս և օրհնութիւնս ի նմանէ հայցելով. և այսպէս զնա պատուասիրեալ եւ Տրդատայ հանեալ յոսկիապատ կառս՝ մեծաւ շքեղութեամբ յուղարկէ զճանապարհայն » ։ Անկէ զատ Յովհաննէս կաթողիկոսի պատմութեանը մէջ, ոչ յառաջ, ոչ յետոյ, տող մը և բառ մը չկայ, որ այս դաշինքս հաստատէ ։ Այս պատմութիւնը ոչ Լիւքսորի նշանագրով դրոշմած անդրիին կնմանի, որ մեկնելու համար Շամպօլիոնի հանճարին կարօտի, ոչ ալ Վանայ կամ Բիսութունի բեւեռագիր ժայռերուն, որ Գոտֆրիտի տաղանդին կարօտի. Յովհաննէս կաթողիկոսը, ընդ հակառակը, հայերէն է, Մեսրոպեան տառով դրոշմած է, եւ տասնամեայ մանկանց անգամ իմանալի ։ Արդ Նորին Սրբութիւնը, մեր կամ այլոց թիւր կարծիքը փարատելու համար, թող հաճի իմացունել թէ անոր ո՞ր գլուխը, ո՞ր երեսը, ո՞ր տողը իրմէ ջատագովեալ անժխտելի երդմամբ հաստատեալ Դաշանց թուղթը կապակցութեանն ։ Թէեւ այժմէն իսկ վստահ եմ, որ անոր մէջ այսպիսի վկայութիւն չկայ ։

Անցնինք Ներսէս Շնորհալիին ։ Այս Հայրապետի աստուածաներշնչական հանճարը, պերճախօսութիւնը, եւ

աստուածաբանական գիտելեաց մէջ ունեցած չափաւոր հմտութիւնը յայտնի են ամենուն ։ Չափաւոր ասացի, ըստ որում այսպէս է նաև Հայաստանի Հնախօսութեան Հեղինակի և Միքայէլ Ասորի կաթողիկոսի կարծիքը անոր նկատմամբ ։ Իբրև հայրապետ, այո, Ներսէս Շնորհալին հաւատոյ խնդրոց մէջ, վերը բացատրուած պէս, վայելուչ հեղինակութիւն ունի, եթէ իր որոշմունքը յեցեալ ըլլան Ս. Գրոց և Ս. Վարդապետաց վրայ. այլ միթէ՞ իբրև փիլիսոփայ ալ նոյն հեղինակութիւնը ունի ։ Այն ատենը, առողջ տրամաբանութեան հետևելով՝ այս հեղինակութիւնը ոչ թէ անոր, այլ Մարիբասին եւ Քաղդէացի քուրմերուն ընծայելու է, ըստ որում անոնք են իր վիպասանութեան աղբիւրը. Վեհափառ Կաթողիկոսը կուզէնէ՞ թէ ծուռ տրամաբանութիւնը ուր կտանի ։

Շնորհալին, իբրեւ փիլիսոփայ, որ պատմութենէ վար քիմաստ կընծայէ, եթէ անժխտելի երդմամբ Տրդատայ և Կոստանդիանոսի, Լուսաւորչի և Սեղբեստրոսի մէջ հաստատեալ դաշինն վրայով բացարձակ բան մը գրած ըլլար, տակաւին ես ու ամեն բանասէր կատարեալ իրաւունք ունէինք զանիկայ ընդունելէն յառաջ, անոր բուն աղբիւրը գտնել և հարազատութեանը վրայ բոլորովին համոզուիլ. վասն զի Շնորհալիի և Լուսաւորչի մէջ ութ հարիւր տարի անցեր են. ութ դարու մէջ ալ, հազարաւոր անձեր շատ բան կրնային բաղադրել Կոստանդիանոսի եւ Տրդատայ վրայ ։ Եթէ Շնորհալին ալ Դաշանց թուղթի վրայով որոշակի բան մը գրած էր, տակաւին մեր առաջադրութիւնը կհաստատէր, ըստ որում ինքը Խաչակրաց ատենը կապրէր. Դաշանց թուղթն ալ յատկապէս այն ատենի

չենք է ։ Գիտնականաբար, Շնորհալին, վերը յիշած մատենագիրներուն պէս, Տէր Մատթէոս Կաթողիկոսի կարծեացը հակառակ է ։ Բնական է, հայերէն Քերթողականութեան մը կողերը քէչ՛ը ծածել, Շնորհալիի միապացանութեան երկու տողի իմաստը անվթար հասկնալու համար, որ է այս. « Ի յուխտ դաշանց միաբանեալ բագաւորացն երկուց ազգաց » ։ Ո՞ւր են Լուսաւորչի և Սեղբեստրոսի անուններն ու անոնց անժխտելի երդմամբ հաստատուած դաշինքի պայմանները ։ Մի՞թէ երկու Թագաւորաց մէջ դաշինք գնելէն կհետեւի, որ երկու հայրապետաց ալ դաշինք դրած ըլլան ։

Շնորհալիի դարը (ԺԲ), որ Խաչակրաց Արեւելք արշաւելու տաենն է, որ տաեն արեւմտեան քրիստոնեայները ու Հայերը առջի անգամ զիրար կտեսնէին և իրարու կճանչնային, Ռուբենեան հարստութեան ալ սկիզբն էր ։ Արեւմտեան քրիստոնեաները Արեւելք բարեկամ քրիստոնեայ ժողովուրդ կփնտռէին, Հայերն ալ Մահմէտականներու եւ Յոյներու նեղութենէն ու կեղեքմունքէն զզուած՝ նոր բարեկամ մը գտնելու պէտքը կզգային, մանաւանդ երբ իմացան այն տաենի Պապերու անկոպար ախոյեանութիւնը Արեւմտեանց վրայ ։ Այս տաենս է, անտարակոյս, այն տալեալ կեղծ Դաշանց Թուղթի բուն Թուականը ։ Արդարեւ, ինչ դժուարութիւն կար այն խառնարուած ժամանակները, երբոր Հայաստանը աւերուեալ, Հայերը տարագիր, գրականութեան լոյսը մարած, մատեանները ցանուցիր անձանց, ծըմակներու և քանի մի վանքի մէջ հազիւ դղըզն ապաստանանութիւն կգտնային, եթէ քանի մի ռամիկ եւ շլանիմ ան-

մինչ Լատինները եւ Հայերը իրարու ծանօթանալու, եւ անոնց փոխադարձ համակրութիւնը զօրացնելու. մեր այսօրուան բարեպաշտական խորհուրդն մը ցուցնէին, եւ Լուսաւորչի ու Տրդատայ պատկերներ անոնց ընծայելով՝ պարզամտաբանութեան հաստատութիւնն. այն խոստովանած գաղտնեքանեն մէջ կարծեմ, որ 1,000 տարիէն ի վեր Հայաստան եկած Գեղարդը խաչակիրներուն նորէն Անտիոք կղզետնայքին, որ 1,100 տարին հետէ Ս. Աստուածածնի Հիմնարկեալ եղած խորհրդի Պատրիարքէն զարթեցուներով, ծովու վրայ օգնականներուն ալէս բարեգործներով, պատերով, սրբերով, տանիքով եւ հաց կերակուրով ամբողջ Իտալիոյ Լօրեթօ քաղաքը կը ձգտնէին։ Թողում յիշատակել Պետրոս Առաքելոյ չորս անձնաց ձեռքերը, Յովհաննէս Մկրտչի երկու, և Անդրէաս Առաքելոյ երեք ամբողջ գլուխները, Քրիստոսի տանը և չորս բանտերը և մէկ հարազատ դատաստանէն ժամու երեք անհատապատ դաստառակներ, որոնց մէկին մեծահամբաւ ամբողջ մը որդի ուխտի զինուոր անդամները, վասն մեր ամբողջ մեզայ, հրաշք ալ տեսեր է։ Համեստութիւնը կհարկէ զիս լռել հոս ուրիշ խայտառակութիւնները, որոնց վրայ Մանչեստրականք, Հրէայք և Օգոստինք վաղուցնէ անդամ կխնդան. բայց զորս իբրև ճշմարիտ և հարազատ խել մը մեծահաւատներ կընդունին եւ կհաւատան։ Ահաւասիկ այս խաւարարեր դարու ընծաները, որոնք մէկն է անչուշտ անմիտ երդմամբ հաստատուած Դաշանց թուղթը, որոյ համբաւը կոծանդակէր մեծապէս մեր ու Հռոմայեցի թագաւորաց ըրած քաղաքական դաշնադրութեանց աւանդութիւնը ։

Երանի՜ թէ Սրբազնագոյն Կաթողիկոսը իր խախտուն առաջնորդութիւնը զօրացնելու համար Կիրակոս Գանձակեցիի պէս ծանծաղամիտ աբեղայի մը վկայութեան չդիմէր. որպէս զի մեք ալ չստիպուէինք իր Սրբութեանը յիշել անոր պատմած վանքի մը ժառանգութիւն ըսող արքա գերեզմանի ըրած հրաշագործութիւնները, դևի մը կնիկ ըլլալը և Հայ մարդու մը հետ պսակուիլը. եր. 195. ձիերու, ուղտերու, մեղուներու և բաղեաց պատկերաց խօսիլը. եր. 239. և այլ սոնց նման բանջաղանք։ Յովհաննէս վանական եւ Վարդան վարդապետները, երկուքն ալ թէեւ պարկեշտ և բանիբուն անձինք կերևին, այլ իրենց դարու կնիքը, որ է դիւրահաւանութիւն և կրկնակի թերութիւն, երկուքի ճակատն ալ դրոշմած է, ուստի և ոչ բոլորովին արժանահաւատ։ Մանաւանդ, անոնցմէ 100–150 տարի յառաջ արդէն այս չինծու Դուշանց թուղթը հնարուած էր և բոլոր Հայաստան պտտեր։

Տէր Մատթէոս, Վեհափառ Կաթողիկոսի, յառաջ բերած հայ մատենագիրները յապացոյց անժխտելի երդմամբ հաստատեալ Դուշանց թղթոյն ըսել մէջ Կոստանդիանոսի և Տրդատայ, Լուսաւորչի և Սեղբեստրոսի մի առ մի քննելով եւ բոլորովին իր կարծեացը ներհակ գտնելով, քննեմք այժմ նոյն Դուշանց գիրը իբրև հայ գրականութեան, իբրև պատմական յիշատակարան։

Փոյթ չէ ամենևին եթէ սրբազան պապերէն եւ համէջական կարգաւորներէն ոմանք ընդուներ են զայն, եւ այլք մերժեր. հոգ չէ ամենևին եթէ Պիոս Դ. զանիկայ վաւերացուցեր ու Միլանի գրատունը դրեր է, եթէ Քափէլլէթի քահանայն զանիկայ թարգմաներ ու Պէրքա-

թէլի եկեղեցական պատմութեան մէջ հրատարակեր է, եթէ Մինէր քահանայն Պարիս տպեր է զայն, կամ թէ Մխիթարեան Վ. Միաբանութիւնը չէ տպեր, ինչպէս Վեհափառ Կաթողիկոսը կգանգատի ։ Գաղղիացւոց, Գերմանացւոց, Իտալացւոց, Անգղիացւոց գրականու-թեանցը հմուտ եղողները աղէկ գիտեն, որ Եւրոպացիք Հայոց, Յունաց, Պարսից, Արաբաց, Թիւրքաց, Հնդկաց, Չինաց եւ այլ ժողովրդոց վրայ այնչափ առասպելներ երեւակայեր, թարգմաներ և տպեր են, որոց թիւն անգամ չգիտցուիր ։ Էական խնդիրը հոս է, թէ այս Դիւանաց թուղթը Հռոմէական, Յունական, Բողոքական հին կամ նոր, եկեղեցական կամ աշխարհական երեւելի մատենագիրներէն ընդունուա՞ծ է թէ ոչ։ Այս խնդիրը. տար ալ պատասխանը, որչափ ես գիտեմ, խոշոր երկաթագիր ՈՉ մըն է ։ Այս գիտունները տակաւին հայ գրականութեան հմտութիւն չունէին, որպէս զի իրենց փաստերը աւելի զօրաւոր հիմերու վրայ հաստատէին ։

Մեղաւորս, որ Հայ եմ, եւ հայ գրականութեան սկզբնաւորութեանը, բարգաւաճութեանը, անկմանը եւ նորոգութեանը չափաւոր հմտութիւն ունիմ, չեմ կրնար, եթէ շատ ալ ուզեմ, այն Դաշանց թուղթը ընդունիլ իբրև հայերէն թարգմանութեան նախնեաց ։ Ագաթանգեղոս. եր. 15 ինք զինքը հռոմայեցի եմ կըսէ, հռոմէական հայրենի և յոյն դպրութիւնով վարժած . եր. 19 Տրդատայ երկրորդ անգամ Հռոմ գնալը կպատմէ և Կոստանդիանոսի հետ ուխտ դնելը առանց Սեղբեստրոսի և Լուսաւորչի անունները յիշելու ։ Իր պատմութիւնը հրամանաւ արքայից գրեր է . եր. 15, 16 և 29 ։ Երևի թէ Տրդատեան

ձեռամբ տպուած է ։ Բնաւ եւ բաղդատելին անտեղի են Ծաղաքաղի. եր. 258-260 Արքաղնագոյն Կաթողիկոսի Հ։ Զամենեանէն ուսած և յիշած պատմաստուածաբանութիւնները, որպէս թէ այն Դիւանաց քաղդը Յիշատակարան նախնեաց անուամբ 476 և 730 թուերուն Կոստանդնուպօլիս պատահած հրկիզութեանց ատենը այրուած ըլլայ. վասն զի Մեծին Կոստանդիանոսի վարքը գրող Յոյն, Հռոմայեցի, Ասորի, Եգիպտացի և Հայ հին հեղինակներէն 25ի չափ յայտնէ յանուանէ կճանաչեմ, անոնց գործքը աչքէ անցուցեր եմ, որոնք թէեւ հրկիզութենէ ազատ, այլ և ոչ մէկը այս շաղակրատ Դաշնագրի յիշատակը կընէ ։

Յունադէտ չըլլալով՝ Ագաթանգեղեայ յունական ոճի վրայ դատ ընելու ձեռնհասութիւն չունիմ. այլ կհաւատամ Քաբերնայիին, որ զանիկայ աղոտ քարտուղար կվերածայնէ ։ Անոր պատմութիւնը, հաւանականաբար, մեր թարգմանիչներէն հայերէնի փոխուած է հինգերորդ դարուն մէջ. այս թարգմանութիւնը վսեմ է և հարազատ հայկաբան. Դաշանց թուղթին այլ, որ նոյնը պիտի ըլլար. եթէ մի և նոյն անձերէն թարգմանուած ըլլար. ընդ հակառակն բռնազբօս է, պարսկաբանական է, աղաղանչիւն է, բարբարական է, գաղղիաբանեալ է, ռամկօրէն կցուրդ է, ինչպէս է այսօրուան օրս Լեմբերգի, Բաշալալուի և այլ խառնախօս կէս կէս Հայերու լեզուն ։ Այս լեզուներս և ոճերս ալ, գիտեմք ստուգիւ, որ թարգմանչաց ատենը Հայոց բնական չէին, որոնք Ռուբինեանց օրովը Հայաստան ողողեցին և մեր լեզուն պղծեցին ։

Ահաւասիկ Դաշանց Թուղթի մէջ ի գործ ածած հայե-

չէին, և այսպէս Ասորայիք ութերորդ դարուն Գանձարան ունեցին. ոչինչ (չէն) Ասորայւոց բառ է, առ որս սիրէին գրել, և մեր Թարգմանչաց անծանօթ. չափար Թիւրքաց բառ է, և նշանակէ շրջապատ պանել. Գիրքարաչէն, որոյ կէսն Հայերէն է, միւս կէսն՝ Արաբերէն, առ որս գրել փուզզել. ռամկան է բառ պարսկերէն ի վար առեալ յետ դառնալոյն նոցա ի մահմէտականութիւն, առ որս գրի ռամկաց և նշանակէ մեծ դրօշակ (աղէմի սիրգիրդ). չուխա-զգեստ երեալ ի չուխայ բառէ Պարսից, որ նշանակէ ասուի. այսպէս կոչեն Մահմետականք զպեղծ կրօնաւո-րաց Քրիստոնէից. գիծ գլխոց, որ Ասորւոց խարան բառի թարգմանութիւնն է : Հռոմայեցւոց կայսերութեան ատենը ամեն Հայաստանը Հարկ տալու պարտական էին, այլ ոչ գիծ գլխոյ, զոր Արաբիոյ Մարզպանէի յաջորդները Հայերէին պղտիկքննենց համար, եւեւ փրկանք անոնց մահմետական չըլլալուն և չմեռնելուն. ձուխարակալ, որ է արաբայուցեալն պարսկերէն չախաճիր բառին, զոր մեր նախնիքը զահար թարգմանած են :

Վերոյիշեալ բառերու քննութիւնը բաւականնէ նաեւ կացուցանել, որ այս Դաշանց թուղթս ոչ Տրդատայ և Կոստանդիանոսի ատենը գրուած է, ոչ ալ մեր նախ-նեաց թարգմանածն է, որոց և ոչ մէկը Թիւրքերէն, Արաբերէն և Թաթարերէն գիտէին, ոչ ալ այն ատեն մեր այբուբենին մէջ Ֆ տառը կար, որ Ֆրեր գրէին : Ա-նոյն այսպիսի բան է. Հարկ ըլլայ, նորէն ձեռք կառ-նենք՝ այս աղճատաբան թշնամանագիրս եւ քննադատիկ ապացոյցներով անոր ի յետնոց հնարուած ըլլալը կհաս-տատենք :

Դաշանց Թուղթի մէջ եղած այլազգի և նոսականգուն բառերու հնութիւնը անոր ոճի ալ տարօրութիւնը կը յայտնէ ։ Մեր դարու մատենագիրներէն մէկը ըսաւ , « Մատենագրութիւնը ժողովրդեան մը գաղափարներու վսեմութեան և նուաստութեան, և անոր ճաշակի նրբութեան ու յոռութեան կնիքն է . գործօնեայ, ժիր ազգերը սուղ, միավանկ բառեր կվարեն, երկարներն ալ կթըլպատեն, իրենց հանդերձի ու մօրուքի պէս . իսկ զառամեալ և անկեալ ազգերը, ընդհակառակը, իրենց մօրուքի ու հանդերձի հետ բառերնին ալ անհամ կերկնցունեն ։ » Ասկէ աղէկ սահման չորու իր այս պոռոտախօս Դաշանց Թուղթիս, որոյ ամբարհաւաճատեսիլ, խռուսիփաղ, պարեգօտահանդերձ և այլ եօթնվանկեան բառերը, կըսես թէ, քարկոփիներու և հիւսներու գչիրով ծակած լսելեաց համար չինուած են, որոնք սաւաւօտէ մինչև երեկոյ տըևկ տըևէ երգեհոնի անոյշ ձայնին սովրած են ։ Թողում յիշել հօս « Նիզակօք փիշտապամիօք, եղջեհոնօք ակամակաղօք, դանոնօք յորդաձայնօք, տպազիոնաց բազմակչուաց » յետաղաս ածականներու համաձայնութիւնը, որ Ռունիթոռեանց Հայոց ընծայած բազմաթիւ պարգևներէն փոքրագոյնն է ։

Երրորդ անժխտելի ապացոյցն է Դաշանց Թուղթի Ագաթանգեղոսի գործ չըլլալուն՝ անոր մէջ ի գործ ածուած գաղղիերէն բառերը ։ Այս դաշնագիրս, որ 319 թուին լատիներէն գրուած պիտի ըլլար ու հինգերորդ դարուն հայերէնի թարգմանուած, բնականաբար անոր լեզուն և բառերն ալ լատիներէն ըլլալու էին ։ Այն ատենը գաղղիերէն լեզու տակաւին չկար աշխարհի վերայ ։ Այս

ըեզուին առաջին կերպարանութիւնը, այս լեզուին ամենահին գրաւոր յիշատակարանք Քրիստոնէութեան ութերորդ դարուն երեւան կուգէ, այսինքն Շարլըմայնի ատենը ։ Գաղղիացիք ալ մինչեւ այն ատեն, որը գօլուաներէն, որը ռոմաներէն, որը կեղտերէն կամ բրետօններէն կխօսէին ։ Ապաքէն ինչպէս կարելի է, որ այս դեռ չծնած գաղղիերէն լեզուի բառերը, ինչպէս են ֆրեր, frère, ոֆրանտ կամ օֆրանտ, offrande, տամուազէլ, demoiselle, շամբր, chambre եւ այլ ուրիշները, անկէ 550 տարի յառաջ լատին դիւանագրութեան մէջ ի գործ ածուէին ։ Այս երրորդ ապացոյցս միայնակ բա՛ւական չէ՞ արդեօք անտարակուսելի եղանակաւ հաստատել թէ այս ողորմելի Դաշանց Թուղթս Ռուբէնեանց ատենը հնարուած է, այն ատենը, երբոր խաչակիր Գաղղիացիները Կիլիկիա, Մալաթիա, Եդեսիա, Անտիոք, Տարսոն, Սիս, Այաս, Կոռիկոս, Մարաշ եւ այլն, հարիւրաւոր տարիներ բնակելով, ընտանեցան, խնամեցան Հայոց հետ եւ իրենց լեզուն տուուցին Ներսէս Լամբրոնացիին, Սմբատ Սպարապետին, Մատթէոս Ուռհայեցիին, Կիրակոս Գանձակեցիին, Վարդան Բարձրբերդցիին, Գրիգոր Երէցուն եւ այլ մատենագիրներուն ։ Պէ՞տք է մի քիչ հոս այն բազմաթիւ գաղղիական բառերը, զորս մեր, Միջին Դարու, մատենագիրները. ի փոխ առնելով այս սիրելի եւ մեծ ազգէս սկսան անխտիր մեր գրականութեան մէջ վարել, որպէս սիր, sir, սենեշալ, sénéchal, պայլ, bail, գունդստապլ, connétable, կոմս, comte, տուկ, duc, պրինծ, prince, քոմուն, commune, պատրօն, pâtron, պարօն, baron եւ այլ ասոնց նման շատ

բաներ, որոնք այս ատենի ժամանակագրաց մէջ միայն կտեսնուին :

Անցնինք հիմա Դաշանց Թուղթի ժամանակագրութեան և աշխարհագրութեան հակառակ եղած սխալներուն մէկ քանին քննել, որոնք անոր հնարողի խարդախութիւնը ու խորին տգիտութիւնը համանգամայն երեւան կը հանեն արեւու լուսին պէս : Խորենացին, Ասողիկը, Յովհաննէս Կաթողիկոսը, Ներսէս Շնորհալին, Վարդան, Կիրակոս եւ այլ Հայ պատմիչներ Տրդատի ու Կոստանդիանոս երթալը յիշելնին թուական մը չեն որոշեր : Մեր ատենի պատմիչները, որոցմէ մէկն ալ բազմարդիւն Հ. Մ. Չամչեանն է, այս թերութեան կարեւորութիւնը զգալով՝ այլ և այլ անցից համեմատութեամբ 318-319 թուին կդնեն այս եղելութիւնս, որ մեզ ալ ընդունելի կերեւի :

Հաւրեանցի յիշեմք, որ Տրդատայ 70,000 զօրօք Հռոմ երթալը մեզ չափազանց կերեւի՝ մտադիր լինելով այն ատենի Հայաստանի ճգնաժամին, որ թէև նոր ազատեր էր Պարսիկի ձանկէն, այլ դեռ կատարեալ ապահովութիւն չունէր : Պարսից երբեմն անձամբ, երբեմն ալ արտաքին և ներքին թշնամիներ յարուցանելով՝ մեր երկրի անկախութեանը միշտ կսպառնար : Բայց յայտնի է ի՞նչ հարկաւորութիւն կար 70,000 զօրօք 5,000 մղոն ծով ու ցամաք ճանապարհորդել : Եթէ Կոստանդիանոս Հայոցմէ օգնութիւն կուզէր, այն ատեն խնդիրը կփոխուի. եթէ բարեկամութիւն հաստատելոյ համար Տրդատ Հռոմ կերթար, մի՞թէ 70 կամ 700 հետեւակ բաւական չէին : Աշխարհիս մէջ մեր ազգէն աւելի բազմաթիւ ազգեր

եղեր են, ինչպէս Ջինները, Հնդիկները, Պարսիկները, Արաբացիք, Հռոմայեցիք եւայլք, որոց Թագաւորները ժամանակ ժամանակ իրարու տեսութեան գնացեր են, այլ ոչ երբէք այսչափ բազմաթիւ զօրքով. Դաշանց Թուղթի գերօնները ստուգութիւնը դատարկ կարգաւ արձագանքի չ°ը նմանիր։ Կարելի բա՞ն էր որ Յունաց, Հռոմայեցւոց, Եգիպտացւոց, Ասորւոց և Հայոց, Կոստանդիանոսի ժամանակակից և մերձաւոր պատմիչները, Եւսեբի, Սոկրատ, Խորենացին, Եննոս Աղեքսանդրացին, Զոսիմոս, Թէոդորետոս և այլք, որոնք Կոստանդիանոսի վարուց ամենափոքր պարագաները գրեցին, 70,000 զօրաց 5,000 մղոն ըրած նշանաւոր ճանապարհորդութիւնը չյիշէին գոնէ հարևանցի։ Ինչ և իցէ, գլխաւոր խնդիրը հոս չէ։ Կարճ կապելով՝ որպէս զի հաւատարմութեան խարոյկը չբորբոքի։ Բայց յայտնանէ կան ալ ազգային պատմիչներ, որոնք յայտնապէս կըսեն որ Տրդատ այն ատեն 30,000 զօրք ունէր։

Առաջին ստութիւն Դաշանց Թղթոյն։ Տրդատ 319 թուին Հռոմ գնաց, ու Կոստանդիանոսի հետ այն թուականին և հոն դաշինք դրաւ։ Ոչ Տրդատ, ոչ Կոստանդիանոս մարգարէական շնորհք չունէին. ուրեմն ի՞նչպէս կարելի էր, որ Սրբազան Կաթողիկոսէն բարեբանեալ Դաշանց Թուղթի մէջ, Տրդատայ Հռոմէն Հայաստան դառնալէն ետքը Գեռէնոսէ զօրացին կամ ճորացին, այսինքն Բասլայ Թագաւորի հետ ըրած հօղաբաժէգ պատերազմը մտնէր. կարելի բա՞ն է մեր բոլոր պատմիչները ասոր հանել ստապահանոյն Դաշանց գիր մը հաստատելու համար։ Մեր խօսքին երկրայտը կրնայ

կարգաւ Խորենացիի Գիրք Բ. Գլուխ ԶԴ եւ ԶԵ. Վարդան. եր. 58 (տիպ Մոսկվայի). Մովսէս Կաղանկատուացի. հատ. Ա. եր. 115 (տիպ Պարիսի). Ստեփաննոս Ասողիկ. եր. 62-63 (տիպ Պարիսի). Պատմութիւն Հայոց. հատոր Ա. երես 408-409, 644-645. Հ. Մ. Չամչեան և Գլակ Զենոբ, որ երես 44 կ'ըսէ թէ Գեղուէհոն 58,000 զօրաք Տրդատայ վերայ յարձակեցան, անոր Հռոմէն դառնալէն ետքը։ Արդ, Դուշանց Թուղթի և Հայ պատմագրաց մէջ այս կէտին վրայով հակառակութիւնը դէմ ընդդէմ է. կամ մեր պատմիչները սուտ են, կամ Դուշանց թուղթը։ Ներէ՛ մեզ, Սրբազան Քահանայապետ, խնդրել պարզ բացատրութիւն մը։ Սպասելով այս բացատրութեանը, մեք մեր պատմիչներու գրածը սուտ կը համարինք, ու հետևաբար Դուշանց թուղթին՝ սուտ. որովհետև երկու հակառակ վկայութիւնք համանգամայն ճշմարիտ չեն կրնար ըլլալ։

Երկրորդ սուտ թիւն Դուշանց թղթոյն։ « Եւ յաղագս հաւատարմութեան հաստատուն եւ անշրջելի ուխտին մերոյ զանհագին եւ զանգին արիւնն Քրիստոսի ի մերում խառնեալ գրեցաք փրեր մելանաց »։ Սրբազան Կաթողիկոսը աղէկ գիտէ, որ երդումը, ինչ և իցէ ձևով ալ որ ըլլայ, արգիլուած է մեր Փրկչէն ամենայն Քրիստոնէից հետագայ բանիւս « Դարձեալ լուարուք զի ասացաւ առաջնոցն (ի Հին Կտակարանի) մի երդնուցուս սուտ. բայց հատուցես Տեառն զերդմունս քո։ Այլ ես ասեմ ձեզ՝ ամենեւին մի երդնուլ, մի յերկինս զի աթոռ է Աստուծոյ, և մի յերկիր զի պատուանդան է ոտից նորա, և մի յԵրուսաղէմ զի քաղաք է մեծի արքայի, և մի ի գլուխ քո երդնու-

ցուս զի ոչ կարես մազ մի սպիտակ առնել կամ թուխ. այլ եղիցի ձեր բանն, այոն՝ այո եւ ոչն՝ ոչ, զի աւելին քան զայն ի չարէն է ։ » Մատթէոս, Գլ. Ե. 33-36. Թուոց, Գլուխ Լ. 3. Երկրորդ Օրինաց, ԻԳ. 28. Յակոբ, Ե. 12. Եսայի, ԿԶ. 1. Սաղմոս, ԽԸ. 2 ։

Սրբազան Կաթողիկոսը նոյնպէս աղէկ գիտէ, որ Քրիստոսի մարմինը եւ արիւնը տրուեցան հաստատելոց չէ թէ մարդոց մէջ դաշն դնելոյ միջնորդ, այլ հաստատելոց Աստուծոյ հետ միանալոյ, մեղքէ սրբուելոյ, հոգւով սնանելոյ եւ Աստուծոյ արքայութիւնը ժառանգելոյ պայման ։ Արդ ի՞նչպէս ներելի է ընդունիլ, որ մեր Լուսաւորչին պէս երկիւղած, համեստ եւ սուրբ Հոգի մը իր Աստուծոյ ամենասուրբ արիւնը թափէ մրամանի մէջ, անոր մէջ գրիչ թաթխէ, զանիկայ ապականացու քարտիզի վերայ դրոշմէ, որ էն վերջը ցեցակեր կամ մկնակեր ըլլալու էր ։ Ով կուզէ՝ այսպիսի ամբարշտութեան թող հաւատայ, սակայն իմ խիղճս ինծ չներեր ։ Ասոր նման անզգամութիւն մըն ալ մեր խըղճալի Գագիկ երկրորդը եւ Հայաստանի ազատութիւնը Յունաց մատնելու ատենը կպատմուի. որուն հաւատալու արգելք մը չկայ, ըստ որում անոր գործողները վատթար եւ մատնիչ անձինք էին ։ Այլ Լուսաւորչի պէս առաքինի հոգիէ հեռու ըլլայ այսպիսի ամբարշտութիւն ։

Երրորդ սուտութիւն Դաշանց թղթոյն ։ « Սիրելեաց սիրելի լինելով, թշնամեացն՝ թշնամի » ։ Եթէ այս վարդապետութիւնը Ս. Լուսաւորչին ընծայենք, կպարտաւորինք այնուհետեւ ակամայ ընդունիլ, որ անոր Հայոց քարոզածը Քրիստոսի Աւետարանին հակառակ մաքսա-

ւորութիւն է եղեր. ապա թէ ոչ՝ Քրիստոսի հաւատարիմ աշակերտ մը ի՞նչպէս իր վարդապետի «այլ ես ասեմ ձեզ, սիրեցէ՛ք զթշնամիս ձեր... բարի՛ արարէք ատելեաց ձերոց ... զի եթէ սիրիցէք զսիրելիս, որ սիրենն զձեզ, զի՞նչ վարձք իցեն. ո՞չ ապաքէն և մաքսաւորք զնոյն գործեն. եւ եթէ տայցէք միայն ողջոյն բարեկամաց ձերոց՝ զի՞նչ աւելի առնէք. ո՞չ ապաքէն մաքսաւորք և մեղաւորք զնոյն գործեն.» Մատթէոս, Ե. 44-47, պատուիրանին հակառակ կհամարձակէր քարոզել ըսելով սիրելեացն սիրելի լինելով և թշնամեացն՝ թշնամի։

Չորրորդ ստութիւն Դաշանց թղթոյն. « Խառնիճաղանճ բազմութիւնք առհասարակ, որք ի Սագաստան և ի Դեյլմաստան, որք էք հաստատեալ ի հաստանեայս զաւազանս երկիրի եւ ի խորոխտ եւ յանխոնարհելի եղխանութիւնս Հոռմայեցւոց»։ Կոստանդիանոս կայսեր օրովը Հռոմէական կայսերութեան աշխարհացոյցը և գաւառներու ցուցակը քննելով՝ անոր արեւելեան սահմանածայրը Միջագետք և Վանայ ծովակը միայն կտեսնեմ, իսկ Սագաստան, որով Յազկերտ ազգը Վարդանանց կսպառնար, Եղիշէ. եր. 80, Պարսկաստանի Հիւսիսի կողմն էր, այսինքն Սողդիանի և Խորեզմի անդին, զորս Հռոմայեցիք երազի մէջ անգամ չտեսան, թո՛ղ թէ նուաճեցին։ Նաեւ Կոստանդիանոսի օրովը տիեզերաց մէջ Դեյլմաստան անուն երկիր չկար։ Տասներորդ դարու մէջ միայն Դեյլիմ (Դեյլմաստան) գաւառը կյիշուի Բովանիայի պատճառաւ, որ Դեյլիմեան ճոխութիւնը կանգնեց Իրակ-Աջեմի մէջ, որ և տեւեց 932էն ց1056, այսինքն Դաշանց Թուղթը կեղծեցին քիչ մը յառաջ։

Հինգերորդ ստութիւն Դաշանց թղթոյն. « Տարէ՛ք ի կողմանս Ատրպատականաց եւ Արարատայ »։ Այս երկու աշխարհագրական անուններէն առաջինը Հին եւ ամենուն ծանօթ ըլլալով, Կոստանդիանոսի ատենը երբեմն Հայոց ձեռքն էր, երբեմն՝ Պարսից. երկրորդը, որ Իրաք-Աջէմին է, քիչ մը ուշադրութեան արժանի է. Իրաք անունը մինչեւ Սասանեանց կործանումը, որ է եօթներորդ դարը՝ դեռ ծներ չէր, քանի որ Պարսից տէրութիւնը կանգուն էր։ Այս անունն, որ երկիր ստոր կամ բիրտ կնշանակէ, Արաբացւոց գիւտ է, որոնք Պարսից անունը եւ տէրութիւնը ջնջելով՝ Իրաք Աջէմի եւ Իրաք Արաբի անունները հնարեցին Կոստանդիանոսէն գէթ 400 տարի ետքը։ Բաց յայտնի է Աջէմն, որոյ մայրաքաղաքն է Թէհրան, եւ միւս քաղաքները՝ Իսպահան, Քեաշան, Համատան եւ Կազվին, երբէք Հռոմայեցւոց իշխանութեան տակ ինկած չէ։

Վեցերորդ ստութիւն Դաշանց թղթոյն. « Իսկ ես (Կոստանդիանոս) զհատուածս խաչափայտին Քրիստոսի, զոր մայրն իմ (Հեղինէ) բերեալ էր ինձ նշան յերուսաղէմէ, հանեալ զայն ետու Տրդատայ »։ Հայ պատմագիրները, ինչպէս վերը տեսանք, Տրդատայ Հռոմ երթալը 318 կամ 319 թուին կդնեն, Դաշանց թուղթն ալ կազձատէ, որ Կոստանդիանոս այն ատենը Տրդատին տուաւ Հեղինէի Երուսաղէմ գտած Կենաց Փայտի մէկ մասը։ Սակայն այս գիւտս, ինչպէս բոլոր Հայ, Հռոմայեցի եւ Յոյն պատմագիրները կվկայեն, 326ին եղաւ, այսինքն 9 տարի ետքը։ Այս տարւոյն թագուհին Երուսաղէմի Ս. Գերեզմանի տաճարը շինել տուած ատենը Ճշմարիտ Խա-

չափայով հանդերձ հինգ բեւեռօք գամու. Մակար պատ-րիարքի օրովը և Կոստանդիանոսի թագաւորութեան քսաներորդ տարեդարձին, խմա 326 թուին։ Տէ՛ս Կիւրղի Երուսաղէմայեցւոյ Թուղթ առ Կոստանդիանոս։ Սուրբ Հեղինէ խաչափայտի մէկ մասը Երուսաղէմ թողուց, մէկալը բեւեռներուն հետ իր որդւոյն ղրկեց, որ զանոնք (բեւեռները) իր ձիոյ երասանակին մէջը դնել տուաւ։ Աբբա Ֆլէօրի. Պատմութիւն Քրիստոնէութեան, հատոր Ա. եր. 452-453։ Խորենացի. Գիրք Բ. ՁԷ։ Ի՞նչպէս կրնայ ըլլալ ուրեմն, որ 326 թուին գտնուած խաչափայտի մասը, 318 կամ 319 թուին Կոստանդիանոս Տրդատին կպարգեւէ։

Եօթներորդ սուրբ Գուշանց թղթոյն։ «Եւ զպարտութիւն իմ (Կոստանդիանոսի) յեզր Դանուբայ գետոյն հզօրի, եւ զերեւումն ի յերկնից աստեղանման խաչին եւ զվերնագիրն լուսեղէն թէ այսու յաղթեսցես»։ Մեծն Կոստանդիանոս 306 թուին Բրիտանիոյ, Գաղղիոյ և Իսպանիոյ զօրքէն կայսր հռչակեցաւ. Ռէն գետին քովերը Ֆրանգաց յաղթեց, զՄաքսիմիանոս, իր աները, սպաննել տուաւ. և 312ին Ալպեան շղթան անցնելով՝ Վերոնէ, Բրիւկիա, Տիւրին և Միլա բռնադրեալ Մաքսենտեայ զօրախումբերը ցրուելով՝ Հռոմ քաղաքի մօտերը լուսեղէն խաչը տեսաւ, որոյ արձանագիրն էր In hoc signo vinces. այսու նշանաւ յաղթեսցես. Մաքսենտէ ալ Միլվիուսի կամուրջի մօտ Կոստանդիանոսէն յաղթուելով՝ Տիբեր անկաւ և խեղդուեցաւ։ Հին և նոր Հռոմայեցւոց և Յունաց պատմիչները այսպէս գրեր են ու Եւրոպիոյ բոլոր ամաղաքարանները այսպէս կընդունին. Կոստանդիանոս

այս ատենս ոչ Դանուբայի գետի քով պատերազմ ըրեր է, ոչ յաղթուեր, ոչ ալ Լուսեղէն Խաչ տեսեր հոն. ուստի Դաշանց Թուղթը նօթներորդ սուտը կխօսի ։ Հռոմէական և Յունական պատմիչները մեծին Կոստանդիանոսի մէկ պատերազմը կպատմեն Դանուբ գետի ափերը Գոթայ, Վանդալաց և Սարմատացւոց հետ, որ նախ պարտեցաւ և ապա յաղթեց. սակայն այս ճակատս 331 ին տեղի ունեցաւ, այսինքն Լուսեղէն Խաչի երևնալէն և Տրդատայ հետ դաշինք դնելէն 12-20 տարի ետքը, որ և Դաշանց Թուղթի ութերորդ ստութեանը ապացոյց է ։

Իններորդ ստութիւն Դաշանց Թղթոյն ։ « Դիոկղետիանոս (Կոստանդիանոս) քրիստոնէական հաւատոյ . մոլեկան պատերազմ յարուցի, զի զօրն իմ կոտորեցի, որք հաւատացեալ էին ի Քրիստոս » ։ Լուսեղէն Խաչի երևնալէն կամ 312 Թուականէն ետքը Կոստանդիանոս միշտ քրիստոնէից պաշտպան եղաւ, երբէք զանոնք չհալածեց, ոչ ալ իր քրիստոնեայ զօրքը կոտորեց, որուն իմ ճանաչած 20-25 պատմագիրներն միաձայն կվկայեն։ Ստոյգ է, որ Հռոմայի կայսերաց մէջ չկայ մեծին Կոստանդիանոսի նման անձ մը, որոյ առաքինութիւնները և մոլութիւնները, հին և նոր մատենագիրներէն այնչափ և այնպէս գովուին ու պարսաւուին, ինչպէս ասոր. սակայն անտարակուսելի կմնայ, որ Լուսեղէն Խաչի երևնալէն յետոյ Կոստանդիանոս կամ ներքին համոզմամբ կամ քաղաքական նկատմամբ միշտ քրիստոնէութեան պաշտպան կեցաւ ։ Ուստի Դաշանց Թուղթը իններորդ անգամ սուտ կխօսի ։

Տասներորդ ստութիւն Դաշանց թղթոյն. « Լուսաւորեալ բժշկեաց զմեզ (զԿոստանդիանոս) տէրն Սեղբեստրոս. և հաստատեաց զմեզ ի հաւատս ճշմարիտս »։ Դաշանց թուղթը միայն չէ, որ այս սխալ կարծիքս ունի Կոստանդիանոսի Սեղբեստրոս պապի ձեռամբ դարձի գալուն և մկրտուելուն վրայով. Հիներէն ոմանք ալ, որոցմէ անցեր է նաև մերայնոց։ Այս բարեպաշտական խաբէութեան զօրիշը ընդհանրապէս սուտ Իսիդորի դեկրետալներն կհամարուին, որ ոչ միայն կպնդէին թէ Սեղբեստրոս զԿոստանդիանոս ի բորոտութենէ բժշկեց մկրտութեամբ, այլ նաև անորմէ առացաւ Հռոմ քաղաքի և Իտալիոյ երկրաց իշխանութիւնը, զոր Լաւրենտ Վալլայ անհերքելի փաստերով այնպէս ջրեց մինչև պապի աշխարհական իշխանութեան անկեղծ կուսակիցներն անգամ համոզուեցան ու խոստեցին իրենց անհիմն կարծիքը։ Այժմ բոլոր Հռոմէական Համալսարանները, Ճեմարանները, Սեմինէրները, Աստուածաբանները, եկեղեցական պատմիչները, Պիոս Թ. Սրբազան Պապէն և Պարիսի Սորբոնէն սկսեալ, Գաղղիացի, Գերմանացի, Անգղիացի, Իսպանիացի, Փորթուգալցի, Իտալացի, Ամերիկացի, Լեհացի, Հունգարացի, Բելգիացի և այլ Հռոմէականները միաձայն կընդունին իբրև ինքնայայտ և անհերքելի ճշմարտութիւն, թէ մեծն Կոստանդիանոս Սեղբեստրոս Պապէն ոչ լուսաւորուեր է, ոչ մկրտուեր, հապա Նիկոմիդիոյ Եւսեբիոս եպիսկոպոսէն իր մահուան ատենը, ի 27 Մայիսի 337 թուականին. որուն կվկայէ նաև Աբբա Ֆլէօրի Քրիստոնէութեան Պատմութեան անուանի հեղինակը, Հատոր 1, եր. 478. ին-

Նովկենտիոս Բոտա վարդապետը՝ իր չինած Եկեղեցւոյ Պատմութեան, Հատ. 1, եր. 144-145, և այլ հարիւրաւոր ականաւոր մատենագիրք ։ Այս պարագաս, որոյ վերայ տասը տարի յառաջ մեծահաւատ Ամիրայի մը հետ առարկութիւն ունեցանք, մեզ կարևոր երևցաւ ակն յանդիման ապացուցանել, որպէս զի մեր հակառակորդները աղէկ համոզուին թէ մեր առած տեղեկութիւնները, այսպիսի խնդրոց վրայով, Բէրէքի կամ Ղալաթիոյ աղբիւրներէն ժողուած չեն. այլ այն աղբիւրներէն, զորս Հռովմէական Համալսարանները և Սորբոնը իբրև միմիայն ճշմարիտ կընդունին. մեր խօսքն ալ այն Հայերու համար չէ, որոնք Պիոս Թ. էն կամ բուն Հռոմէականներէն աւելի Հռովմէական կուզեն ձևանալ. այլ այն ազգայնոց համար, որոնք պատմութեան մէջ ճշմարտութիւն միայն կփնտռեն, և քրիստոնէութեան մէջ՝ ուղղութիւն, վերանորոգութիւն ու կատարելութիւն մարդոց ։ Բերենի Դաշանց թուղթը տասներորդ սուտը կխօսի ։

Մետասաներորդ ստութիւն Դաշանց թղթոյն ։ «Իւ եւ (Սեղբեստրոս) յօժարեցայ ի պատուել զմեծ խոստովանողն Քրիստոսի, զգահակիցս իմ զԳրիգորիոս . . . և ձեռնադրեցաք զկաթողիկոսն Հայոց զսուրբն Գրիգոր սրբոյ, պատրիարք և հայրապետ» ։ Տէր Կաթողիկոսը Դաշանց թուղթի մէջ մեր Լուսաւորչին տրուած քանի մը տղայական գովաբանութիւններ կարդալով, Ճամչաղի. երես 256՝ կզմայլի և կյափշտակուի, և զորս անոր հաստատութեանը իբրև խարիսխ կընդունի, մոռնալով առնել կամ կշռել անկէ առքը եկող այն խոշոր սուտս, զոր եթէ ընդունինք, կպարտաւորինք մեր կաթողիկոսները Հռովմ

Տասներորդ ստութիւն Դաշանց թղթոյն ։ « Լուսա֊
ւորեալ բժշկեաց զմեզ (զԿոստանդիանոս) սուրբն Սեղբես֊
տրոս . և հաստատեաց զմեզ ի հաւատս ճշմարիտս » ։ Դաշ֊
նանց թուղթը միայն չէ, որ այս սխալ կարծիքս ունի
Կոստանդիանոսի Սեղբեստրոս պապի ձեռամբ դարձի
գալուն և մկրտուելուն վրայով . հիներէն ոմանք ալ ,
որոցմէ անցեր է նաև մերայնոց ։ Այս բարեպաշտական
խաբէութեան գտիչը ընդհանրապէս սուտ Իսիդորի դեկ֊
րետալներն կհամարուին , որ ոչ միայն կպնդէին թէ Սեղ֊
բեստրոս զԿոստանդիանոս ի բորոտութենէ բժշկեց
մկրտութեամբ , այլ նաև անորմէ առացաւ Հռոմ քաղաքի
և Իտալիոյ երկրաւոր իշխանութիւնը , զոր Լաւրենտ
Վալլայ անհերքելի փաստերով այնպէս ջրեց մինչև պա֊
պի աշխարհական իշխանութեան անկեղծ կուսակցներն
անգամ համոզուեցան ու խոտեցին իրենց անհիմն կար֊
ծիքը ։ Այժմ բոլոր Հռոմէական Համալսարանները ,
Ճեմարանները , Սեմինէրները , Աստուածաբանները ,
եկեղեցական պատմիչները, Պիոս Թ. Սրբազան Պապէն
և Պարիսի Սորբոնէն սկսեալ , Գաղղիացի , Գերմանա֊
ցի , Անգղիացի , Իսպանիացի , Փորթուգալցի , Իտա֊
լացի , Ամերիգացի , Լեհացի , Հունգարացի , Բելճիացի
և այլ Հռոմէականները միաձայն կընդունին իբրև ինքնա֊
յայտ և անհերքելի ճշմարտութիւն , թէ մեծն Կոստան֊
դիանոս Սեղբեստրոս Պապէն ոչ լուսաւորուեր է , ոչ մկր֊
տուեր , հապա Նիկոմիդիոյ Եւսեբիոս եպիսկոպոսէն իր
մահուան ատենը, ի 27 Մայիսի 337 թուականին . որուն
կվկայէ նաև Աբբա Ֆլէօրի Քրիստոնէութեան Պատ֊
մութեան անուանի հեղինակը , Հատոր 1, եր. 478. ին֊

Նովկենտիոս Ռոսս վարդապետը՝ իր շինած Եկեղեցւոյ Պատմութեան, Հատ. 1, եր. 144-145, և այլ հարիւրաւոր անխնաւոր մատենագիրք ։ Այս պարագաս, որոյ վերայ տասը տարի յառաջ մեծահաւատ Ամիրայի մը հետ տարակուսութիւն ունեցանք, մեզ կարևոր երևցաւ ասկէն յանդիման ապացուցանել, որպէս զի մեր հակառակորդները աղէկ համոզուին թէ մեր առած տեղեկութիւնները, այսպիսի խնդրոց վրայով, Բէրէքի կամ Ղալաթիոյ աղբիւրներէն ժողուած չեն. այլ այն աղբիւրներէն, զորս Հռոմէական Համալսարանները և Սորբոնը իբրև միմիայն ճշմարիտ կընդունին. մեր խօսքն ալ այն Հայերու համար չէ, որոնք Պիոս Թ.էն կամ բուն Հռոմէականներէն աւելի Հռոմէական կուզեն ձևանալ. այլ այն ազգայնոց համար, որոնք պատմութեան մէջ ճշմարտութիւն միայն կփնտռեն, և քրիստոնէութեան մէջ՝ ուղղութիւն, վերանորոգութիւն ու կատարելութիւն մարդոց ։ Ուրեմն Դաշանց թուղթը տասներորդ սուտը կխօսի ։

Մետասաներորդ ստութիւն Դաշանց թղթոյն ։ « Եւ ես (Սեղբեստրոս) յօժարեցայ ի պատուել զմեծ խոստովանողն Քրիստոսի, զգահակիցս իմ զԳրիգորիոս... և ձեռնադրեցաք զկաթողիկոսն Հայոց զտէրն Գրիգոր պապ, պատրիարք և հայրապետ » ։ Տէր Կաթողիկոսը Դաշանց Թուղթի մէջ մեր Լուսաւորչին տրուած քանի մը տղայական գովաբանութիւններ կարդալով, Ծաւաքաղի. երես 256՝ կզմայլի և կյափշտակուի, և զորս անոր հաստատութեանը իբրև խարիսխ կընդունի, մոռնալով տեսնել կամ կշռել անկէ առջը եկող այն խոշոր սուտս, զոր եթէ ընդունիմք, կպարտաւորիմք մեր կաթողիկոսները Հռոմ

ու ղարկել միշտ ձեռնադրութիւն առնելոյ համար ու մեր ազատ Քահանայապետութիւնը Հռոմայ փառաւոր կարդի-նալներու ժառանգական լուծի տակը դնել ։ Գովասանքը փառաւորներու փափուկ նեարդերը խաղցնելու մոգա-կան զօրութիւնն ունեցեր են միշտ ։ Ականաւոր մարդոցմէ անգամ շատ սակաւ անձինք այս տեսակ տկարութենէ ազատ գտնուեցան , որոցմէ մէկն է մեր անհամեմատ Լուսաւորիչը . երանի թէ անոր յաջորդներն ալ անոր անշքութեան և համեստութեան օրինակին հետևէին ։

Դաշանց թուղթի չռայլաբանութիւնը , որ կուտակու-թեամբ նոյնանշան բառից , թանձրամիտներու աչքե-ղատ փաստկել կուզէ , ինչպէս եթէ Յիսուսեան գիտուն-ներէն մէկն ալ գաղղիերէն , անգլիերէն , ռուսերէն , գերմաներէն , հայերէն , պարսկերէն , վրացերէն և տաճ-կերէն հացի անունը փէն , բրօդ , խլեբ , բրոդ , հաց , նան , պուրի , էքմէկ հնչեցնելով օդը ալեկոծէր իր ճարտասա-նութիւնը ազնուական ամբոխներուն ցոյց տալու համար ։ Այսօր ալէս ալ պապ , պատրիարք , կաթողիկոս , հայրապետ բառերը , թէև այլ և այլ լեզուներով գրուած , ամենն ալ սակայն հայրապետ կնշանակեն՝ ոչ աւելի , ոչ պակաս ։ Այս պատճառաւ ալ մեր Լուսաւորիչը Հռոմ գնալէն յա-ռաջ բովանդակապէս առեր էր և ունէր բուն միաբան վկայութեամբ մեր բոլոր պատմագիրներուն ։ Կարդա Ագա-թանգեղոս . եր. 19 , 592 , 596 , 613 , 634 , 639 . Բիւ-զանդարան . եր. 6 , որ զմեր Լուսաւորիչը , Հռոմ գնալէն յառաջ , կկոչէ մեծ քահանայապետ , եպիսկոպոսապետ . որ իր Գրիգորիս Թոռը . եր. 10 , Վրաց և Աղուանից կաթողիկոս կձեռնադրէ . Յովհաննէս Կաթողիկոս . եր.

26 . Ասողիկ , երես 63 . Մովսէս Կաղանկայտուացի , հատ. Ա. եր. 99 . Ստեփաննոս Օրբէլեան , հատ. Ա. երես 63 . եւայլն ։

Արդ եթէ մեր Լուսաւորիչը Քահանայապետութեան լրութիւնը ստացեր էր Ղեոնդէն , այնուհետեւ ի՞նչ հարկ կար , որ նորէն Սեղբեստրոսի առջեւը ծունր դնէր ու վերստին ստանար յառաջմէ ստացածը . մի՞ գուցէ իր , ցայն վայր ունեցածը , թերի էր , մի՞ գուցէ Հոգւոյն Սրբոյ պարգեւները վերստին տալու կամ ետ առնելու ամբարիշտ մոլորութիւնը մեր եկեղեցւոյ հիմնադիրները ունեցեր են . խնձ քա՛ւ լիցի այսպէս խորհիլ ։ Կտեսնէ՞ Արքազան Կաթողիկոսը , թէ խայտառակ Գաչանց թուղթը ո՛րպիսի մոլորութեան խարխորաններ կձգէ իր ընդունողները ։ Արքազան Կաթողիկոսը կընդունի՞ Լուսաւորչի Հռոմ վերստին ձեռնադրուիլը . եթէ կընդունի , ո՞չ ապաքէն ինքն ալ կպարտաւորի Հռոմէն իր ձեռնադրութիւնը ստանալ . եթէ չընդունիր , ուրեմն Գաչանց թուղթը սուտ կը խօսի . այո՛ կամ ոչ պատասխան մը իր Սրբութեան կողմէն մեզ խորհելու եւ գրելու շատ նիւթ կպատրաստէ ։

Երկոտասաներորդ ստութիւն Գաչանց թղթոյն ։ « Եւ արարաք զսա պատրիարք Հայոց մեծաց . զի ինքն և ամենայն աթոռաժառանգք սորա ինքնագլուխ եղիցին յիւրեանց եպիսկոպոսացն առնելով ձեռնադրութիւն » ։ Եթէ այսպիսի դաշինք մը , ըստ Արքազան Կաթողիկոսին անժխտելի երդմամբ դրուած ըլլար Ս. Լուսաւորչի եւ Ս. Սեղբեստրոսի մէջ , Ս. Լուսաւորիչը , ուխտազանց չըլլալու համար , կը պարտաւորէր իր յաջորդները ինքը կամ մեր եկեղեցի

պտոները ձեռնադրել . այլ մեր պատմագիրները, այսինքն ; Խորենացին, Յովհաննէս Կաթողիկոս, Ասողիկ, Կիրակոս, Վարդան, Մովսէս Կաղանկայտուացին, Ստեփաննոս Օրբէլեան, միով բանիւ, ամէնը միաբան կվկայեն, որ Լուսաւորչի որդիքը, թոռները և այլ յաջորդները՝ Արիստակէս, Վրթանէս, Յուսիկ, Փառներսէհ ; Շահակ, Մեծն Ներսէս, ամէնն ալ ըստ առաջնոյ կարգին Կեսարիա առին հայրապետութեան ձեռնադրութիւնը : Տե՛ս Յովհաննէս Կաթողիկոս, երես 31 : Այս ալ այնպիսի դաշինքի մը զօրութեամբ, որ Լուսաւորչի և Ղեւոնդի մէջ, Տրդատայ Հռոմ գնալէն յառաջ, դրուած էր : «Եւ հաստատեաց կացցէ վիճակութիւն ի մէջ երկուց կողմանցս, զի պարգեւաբաշխութիւն նորոգեալ քահանայապետութեան ձեռաց նահանգիդ առ ի մէնջ կայցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու ». Ագաթանգեղոս, եր. 613-614 :

Երեքտասաներորդ ստութիւն Դաշանց թղթոյն : «Պարգեւեցի և սիրելի եղբօրն իմոյ Տրդատայ զսիրեցեալն իմ զԲեթղեհէմ, քաղաք մեծի Դաւթի, զտեղի ծննդեան Քրիստոսի հարքոյ Կուսէն : Պարգեւեցի նորայայսակ Պարթեւս մերոյ յիշատակ յաւիտենական ազգաց յազգս ի յԵրուսաղէմ քաղաքի կեանս Հայոց առօրէականացն զվիճայարանն սորոյն Յակոբայ . . . » : Քրիստոսի հինգերորդ դարէն յառաջ, այսինքն՝ քանի որ Հայոց Յունաց և Լատինաց եկեղեցիները իրարմէ բաժնուած չէին, տնօրինական տեղիքը հասարակաց էին : Երուսաղէմի մէջ մէկ պատրիարք միայն կար, ամէն հաւատացեալք իրենց ուխտը ու աղօթքը ամէն եկեղեցիի մէջ անխտիր կկատարէին : Եթէ Կոստանտիանոս Բեթղեհէմ քաղաքը կամ Ս. Յակոբայ վանքը

ներուս իմանալուս տայ ․ սոր ալ քաղաքավարութեան իրե-
նին կդադրի ․ այսպէս թէ ոչ՝ նոր քննադատութիւն մը
հրատարակել կպատրաստուիմք , որուն մէջ , ոչ թէ այս-
պէս հարեւանցի քննելու դիտաւորութիւն ունիմք , այլ
բառ առ բառ և տող առ տող , որպէս զի մեր ազգը ար-
թընցնայ ու այսպիսի փտտուած և յիմարական պատրանքի
հետեւանքը կշռելով սթափի ։ Եթէ ժամանակի բերմունքը
զմեզ այլ բարիքէ զրկեցին , գոնէ խորհելու , խօսելու և
գրելու ազատութեան պատեհութիւնը լոկ ընծայեցին ,
յորմէ զուրկ են Ա. Էջմիածնի մեր կարգակից եղբարքը ,
որոց ձայնը վանքի պարսպին մէջ դիւրաւ կխեղդուի ։

Հնախօսութեան մասին ոչ կաթողիկոսէ , ոչ ամիրայէ
դաս առնելու պէտք չունիմ ։ Դուշանց գիրը , որ Հնու-
թեան անուն և երեւոյթ միայն ունի , իրօք նոր է , և
խարդախ ու ամենեւին անընդունելի և վնասակար մեր
ազգային լրութեանը եթէ հոգեւորապէս , եթէ քաղաքա-
պէս ։ «Այս սիրոյ և միաբանութեան դաշին» զօրութեամբն
էր , որ Տրդատէն ետև մեր ազգը գնալով գնաց՝ տկարա-
ցաւ և աղքատացաւ ․ այս սիրոյ և միաբանութեան դաշին
զօրութեամբն էր , որ մեր Արշակունի , երբեմն Արևմը-
տեան Ասիոյ ինքնակալ տէրերը , Կոստանդիանոսէն և
Տրդատէն ետև , սոսկական գործակալի անուն առին
Կոստանդիանոսի յաջորդաց մէկէն , այսինքն խենէշ
Յուլիանոսէն ․ Խորենացի , Գ. Գ. գլ. ԺԵ. որ մեր Պապ
և Վարազդատ թագաւորները անարգաբար Կոստան-
դնուպոլիս տարուելով՝ մէկը գլխատուեցաւ , միւսը
Թուղիս կղզին աքսորուեցաւ ․ Խորեն. Գ. Գ. գլ. ԼԹ.
և Խ. ։ Մէկ դի թողումք Հոռոմոց կայսերաց գոռոզու-

թեան, նենգութեան, շահասիրութեան և մատնութեան պժգալի օրինակները, որովք Հայոց ազատութիւնը, բարօրութիւնը և փառքը աղարտեցին իրենց փառամոլութիւնը և եսականութիւնը յագեցնելու համար։

Կնքեմք քննադատութիւնս ըսելով, որ մեր կողմէն Արշակ, Տիրան և Պապ թագաւորները, Բաբգէն, Մովսէս, Աբրահամ և Ներսէս կաթողիկոսները, և Յունաց կողմէն Յոբիանոս, Արկադ, Մարկիանոս և այլ կայսերք Կոստանտիանոսի և Տրդատայ 319 թուին դրած սիրոյ և միաբանութեան յանխնական դաշինքը, 362ին, 387ին, 451ին, 492ին և 552ին հրապարակաւ և ազգային ժողովով պատռեցին և ոչնչացուցին, ինչպէս Սեբաստապօլի առումը պատռեց և եղծեց այն ամէն դաշինքը, զորս Ռուսք և Թիւրքք, անկէ յառաջ, իրարու հետ դրեր էին։ Ըստ որում Արկադ, Յոբիանոս և Մարկիանոս վատութեամբ յանձն առին քրիստոնեայ Հայաստանի մեծագոյն մասը անաստուած Պարսից տալ, որպէս զի իրենք անոր փոքրագոյն մասի ոսկին ու արիւնը անվրդով ծծեն. Խորենացի Գ. Գ. գլ. ԽԲ։ Որով մեր տէրութիւնը կործանեցաւ և մեր ազգը սաստիկ աղէտից մատնուեցաւ։ Այսուհետև ի՞նչ օգուտ այսպիսի ծրուած, փտտեալ, փոշիացեալ և խարդախեալ դաշնագիր մը շատագովել, զոր ոչ Սրբազան Կաթողիկոսը կենդանացնելոյ կարողութիւն ունի, ոչ ալ անոր կենդանի ատենը Հայոց բարօրութիւն բերաւ. Դաշնագիր մը, որ հզօրին և տկարին հաւասարապէս ամօթ կբերէ։ Եթէ մերժեմք զայն, ի՞նչ վնաս կգործեմք. եթէ ընդունիմք զայն, ի՞նչ շահ կքաղեմք անկէ։

Վեհափառ Կաթողիկոսը գիտէ, որ Փրկիչը խստիւ արգիլեր է գայթակղութիւն տալ հաւատացելոցմէ նաև փոքրագունին: Նուաստս, որ ազգաւ Հայ եմ, հաւատով քրիստոնեայ, և ասորիճանաւ՝ վարդապետ եկեղեցւոյ, յիրաւի գայթակղեր եմ տեսնելով, որ մեր եկեղեցւոյ գլուխը փոխանակ ամեն Հայոց ուշադրութիւնը դէպ ի Լուսաւորչի աթոռը ուղղելու, փոխանակ մերայնոց սիրտը և հոգին դէպ ի Հայաստան քաշելու և Արարատայ ոտքը, փոխանակ ազգայնութեան ոգին արծարծելու և զօրացունելու, ինքն է, որ աղճատաբան Դաշանց Թուղթի մը պաշտպան հանդիսանալով՝ մեր ազգի հայեցուածքը դէպ ի Հռոմ կդարձունէ, Հայոց ոգին և զգացմունքը Հայաստան հրաւիրելու տեղ, Հռոմ կուղղէ մեր պանծալի Առաքեալը հոն ուղարկելով, Հռոմայ պապէն կաթողիկոսական ձեռնադրութիւն, հոգևոր իրաւասութիւն, կապելոյ և արձակելոյ հեղինակութիւն առնել տալով: Ստոյգ է, որ Քրիստոսի այլ և այլ եկեղեցեաց մէջ հաւատոյ միաբանութեան խնդիրը նախանձելի խնդիր մըն է. ասոր ալ եթէ հինգ միլիոն Հայոց մէջ հինգ ցանկացողք կան, անոնցմէ մէկն ալ ես եմ. բայց իմ ուզածս ազատ քննութեամբ, փոխադարձ և իրաւացի զիջմամբ միաբանութիւն մըն է էական հաւատալեաց մէջ՝ իւրաքանչիւր եկեղեցի իր ինքնիշխան քահանայապետութիւնը, ծէսը, վարդապետութիւնը, կարգը, սովորութիւնը, արարողութիւնը, լեզուն և աստուածպաշտութիւնը անխախտ պահելու պայմանաւ, և ոչ թէ կուրօրէն հպատակութիւն, ինչպէս այլք մեզմէ կպահանջեն:

Թողունք առ այժմ պաշտպանեան և հեռաւոր եկեղեց-

եւաց հետ միաբանելու խնդիրը · դառնամք մեր ազգի նորոգութեան պայմաններուն ։ Երեք խնդիր մեզ առաջեւ ամենակարեւոր կերեւին · այսինքն նախ՝ ջանք մեր եկեղեցւոյ հետ միաբանել մեզմէ բաժնուած Հռոմէականութեան , Յունականութեան եւ Բողոքականութեան ազգային ճիւղերը ։ Երկրորդ՝ ազգը գրաւոր եւ հաստատ օրէնքով բարեկարգելոյ եւ վարելոյ ջանք ։ Երրորդ՝ մեր ազգի մէջ ուսումըն , արուեստ եւ ազգայնութեան ոգի զարթեցնելոյ եւ ծաւալելոյ փոյթ ։

Առաջին առաջարկութիւն ։ Ամենայնմէ լսուած է , որ մեր ազգը եւ եկեղեցին սակաւաթիւ ըլլալով՝ մեծ ազգի եւ եկեղեցւոյ մը պատուաստելու է , որ ծաղկի եւ զօրանայ ։ Ըստ մեզ , ազգի մը բազմաւորութեան կամ՝ սակաւաւորութեան խնդիրը երկրորդական է , առաջին եւ էականը ըլլալով անոր անդամոց իրարու հետ ունեցած յօդակապութեան սերտութիւնը ։ Թերմոպիլի , Մարաթոնի , Սալամինի , Արբելլի , Վարդանակերտի եւ Պէքինի ճակատներու նկարագիրը կարդացողը կտեսնէ , որ երբեմն 1,000 , 2,000 , 4,000 , 10,000 զօրականք 10,000 , 50,000 եւ մինչեւ 400,000 զինուորաց դիմագրաւ եղան եւ յաղթեցին ։ Մարդ ամենուրեք մարդ է · մի մարդը միշտ մի մարդ արժէ · քիչի շատին յաղթելու , շատի քիչէն յաղթուելու գաղտնիքը իւրաքանչիւր ազգի հրահանգի , դաստիարակութեան եւ կրօնական սկզբանց մէջն է · բնական իրաց մէջ ալ նոյնը կտեսնուի , որ ինչ բարոյական աշխարհի մէջ ։ Ամեն մարդ գիտէ որ ցեխի շաղախը կամ ծեփը կիրէն տկար է , որ փայտեայ բեւեռը մետաղէն տկար է , որ հողէ շէնքը քարեայ կամ կճեայ շէնքէն

սակաւատեւ է։ Եթէ 2,000 Հայեր Վարդանակերտ 4,000 Արաբաց յաղթեցին, վասն զի այն 2,000ը մէկ հոգւով և մէկ զգայմամբ պատերազմեցան, վասն զի այն 2,000 հոգին իբրև մի անձն և մէկ նպատակի համար կռուեցան։ Երևելի մարմինը դոյզն ինչ է, կարևորը հոգին է, հոգւոյ կեանքն ալ կրօնական, բարոյական և քաղաքական ճշմարտութիւններն են կամ ուսումն և դաստիարակութիւն։ Մեր բանասէրներէն մէկը երբեմն գրեց, որ կրօնն ու լեզուն ազգաց միաբանելու արգելք եղան. մեք ալ կպնդեմք, որ առանց կրօնի և լեզուի ոչ ազգ կայ, ոչ ժողովուրդ. և եթէ ազգ և ժողովուրդ կան, վասն զի կրօն մը և լեզու մը ընդունեցին. առանց լեզուի և կրօնի անհատներ կան և ոչ թէ ազգ. մարդկեղէն անհատները իրարու կապօղը և ազգութիւն կազմօղ շաղախը կրօնն է, ինչպէս կիրը հոյակապ տաճարաց քարերուն։

Քրիստոնէական կրօնը, որ իբրև յաւիտենական ճշմարտութիւն Ադամայ հետ մարդկային ազգին տրուեցաւ մեր հայրենի երկիրը, որ մարգարէից սպասաւորութեամբ զարգացաւ և Յիսուսի Քրիստոսի միջնորդութեամբ կատարելագործեցաւ, մի է անտարակոյս և անփոփոխ, ինչ կերպարան որ առնու, և ո՛ր կլիմայի տակ որ բարգաւաճի։ Քրիստոնէական կրօնի արմատը մի է միշտ, որ է Քրիստոս Աստուած. այլ և այլ ազգաց կամ աշխարհաց եկեղեցիքը ծառի մը այլ և այլ ոստերուն կնմանին, որոյ բունը որքան աճէ, այնքան ալ անոր ոստերը կտարածին ու իրարմէ կհեռանան։ Այս ոստերու իրարմէ հեռանալը արտաքին է, ռամկաց համար է. անոնց ներքին միաբանութիւնը ի ձեռն արմատոյն և բունին անփոփոխ

կենաց միշտ բաց ի անոնցմէ, որոնք մարդկային խաբէութիւններով թիւնաւորած կզօսանան ու բունէն զատուելով կմեռնին ։

Հայաստանեայց սուրբ եկեղեցին այն հին ոստերէն մէկն է, որ Երուսաղէմէն եկած Առաքելոց մշակութեամբը Քրիստոնէութեան բունին վերայ բուսաւ, ու ի սկզբանէ մինչև ցայսօր աստուածային ճշմարտութեան անապակ և կենդանարար աղբիւրէն ոռոգուելով՝ միշտ կենդանի մնայ ։ Հայոց Եկեղեցին Երուսաղէմի Սիոնի զաւակ է և ոչ թէ Հռոմայ Ս. Պետրոսի կամ Կոստանդնուպոլսի Սուրբ Իմաստութեան ։ Ամեն ազգաց և աշխարհաց եկեղեցիք իրարու քորք են, ամենքն ալ Երուսաղէմի զաւակք են և մէկը մէկային ծնող և մայր քսուելու իրաւունք չունի, եթէ ոչ երկրորդական առմամբ ։ Այլ եկեղեցիք գնալով գնացին և բազմացան, շատերն ալ մեռան, մերինն ալ առաջ բազմածին, յետոյ անզաւակացաւ ։ Նախախնամութեան գաղտնիքը, իբրև հոգեւոր, գիտելու արժանաւորութիւնը չունենալով՝ մարդկօրէն այսչափ ինչ կըսեմ. քանի որ Քրիստոսի Հոգին Լուսաւորչի, Գրիգորիսի, Վրթանիսի, Արիստակիսի, Մեծին Ներսիսի, Սահակայ, Մեսրոպայ, Ղևոնդեանց, Օձնեցիի, Շնորհալիի, Իսրայէլի և այլ հաւատարիմ մշակաց բերնով Հայոց խօսեցաւ, մեր եկեղեցին ալ օր ըստ օրէ ընդարձակեցաւ ։ Վրացիք, Աղվանք, Ծոդէք, Ճիղբէք, Ծանարք, Ասորիք, Լփնիք, Հոնք և Աստրպատականք մեր եկեղեցիէն ընկալան Աւետարանի լոյսը, երկար ատեն մեր եկեղեցիէն, իբրև գթոտ մօր ստինքէ, ծծեցին կենաց բանի փրկարար կաթը ։

Նկատ վերջապէս փորձութեան վայրկեանը ։ Մեր եկեղեցին, որ երբեմն մինչև Նիւշապուհ արևապաշտութեան վերայ յաղթանակ կանգնեց, մահմէտականութեան և հերձուածոց կատաղութեանը բորբոքեալ բովի մէջ փորձեցաւ. իր զաւակաց շատերը իրմէ զատուեցան. ոմանք այլ եկեղեցեաց յարեցան. կէսք Արաբիոյ Մահմէտականութիւնը գրկեցին։ Այս փորձութեան առենը թէև Քրիստոնէութեան զրահ, որ է ուղղափառ հաւատքը, անկողոպտելի մնաց մեր եկեղեցւոյ մէջ, այլ Թադէոսի, Լուսաւորչի, Գրիգորիսի և Արիստակիսի հոգին, որ է կեանքը մահու տալով Քրիստոնէութիւնը քարոզել առաջի Թագաւորաց, իշխանաց և ժողովրդոց, վերացաւ մեր պաշտօնեայներէն. և Սահակայ և Մեսրոպայ գործը, որ էր կղերի և ժողովրդեան մէջ համանգամայն իմաստ ուսման լուսաւորութիւն արմատացնել, մոռցուեցաւ ։

Անկէ մինչև ցայսօր, այս երկու նորոգիչ և կենսատու սկզբունքս տեղի տալով, կարծես թէ, մերայնոց վերայ տեսակ մը ապշութիւն տիրեց, ինչպէս ձմեռուան սառը կանաչազարդ դալարատանի մը վերայ ։ Կենդանարար Ս. Հոգւոյ տածօղ սիրոյն յաջորդեց տեսակ մը թմբրեցուցիչ պաղութիւն ։ Հայութեան քաղցրական և քաղաքական շէնքը խախտիլ սկսաւ. հայրենեաց, միութեան, ազգութեան, միակրօնութեան սկզբունքը և զգացմունքը գնալով գնացին և քայքայեցան. Քրիստոսի վսեմ, նորոգող, կենսագործող վարդապետութիւնը անկարող առաջնորդաց պատճառաւ անգործ մնացին. Ժողովրդեան սիրտը խաւարնացաւ. Հասարակաց բարիքը, բարոյական առաքինութիւնը մոռցուեցան. ամեն անհատ իր

անձին չափ սկսաւ մոռնալ, ըստ հաճոյից անձին գնալ ։ Հովիւներն, որ օրինաց պաշտօնեայ էին յառաջ, այնուհետեւ օրինաց տէր եղան. միտք, հոգիք, սիրտք փոքրկացան, նուաստացան. հեզ եւ մարդասէր Քրիստոսի բարոյականը մարդիկ ուղղելու անբաւական սեպուելով, աքսոր, բանտ, կապանք, տուգանք եւ ծեծ եկեղեցւոյ չեմէն ներս մտան. ու հօտապետները ափտուսայի տկարութեամբ նզովքի եւ բանադրանքի շանթեր տեղալ սկսան Բարգէն եւ Աբրահամ կաթողիկոսներէն սկսեալ մինչեւ 1846 թիւը աշխարհս Հայոց վրայ. իւրաքանչիւր նզովք մեզմէ մէկմէկ ամբողջ ազգ եւ խումբ զատեց. որչափ բանադրանքը զօրացաւ, այնչափ ալ մեր ազգի թիւը պակսեցաւ ։

Քրիստոսի եւ Լուսաւորչի արեամբ եւ քրտինքով համահաւաքեալ, եղբայրացեալ ժողովուրդներն եւ ազգերը խօթամիտ եւ ապաշնորհ առաջնորդաց ձեռքով մէյմէկս եւ մէյմեան յօշոտեցան, պատառեցան եւ ցրուեցան, այնպիսի առաջնորդաց ասեմ, որ իրենց մեծ հաւաքոմն, ու ձիւնափայլ սրբութեամբը մլուկ մը չկրցան ստեղծել, բայց, հինգ հազար, քսան հազար եւ հարիւր հազար Քրիստոսի արեամբ գնեալ Հայեր հեռացուցին բանադրեալին եւ հոգեւոր մահու դատապարտեցին, շինող ճարտարապետի գործը թողլով, ապաքէր քակողի գործ գործեցին, որպէս զի այս կամ այն շլամիտ Ամիրայի հաճոյ ըլլան եւ ուռկէն զովուին ։

Արդ թէպէտեւ հին մարդոց ապականեալ կերպէն, դեռ ունենք միտքը խռովեալ եւ տեսութիւնը մթագնած, եղբայր եղբօրմէ, հայր յորդւոյ, մայր ի դստերէ բաժնուած,

իրարու դէմ՝ կանկած, ատելութիւն, վրէժ կշնչեն, իրենց ձեռօք իրենց ազգութիւնը և պարծանքը աւրելով օտարին կյարին. այլ մի՞թէ կարելի չէ այս կորստական, լայրծուն զառիվայրի վերայ վայրկեան մը կանգ առնուլ, աչուըններս դէպ ի անցեալը դարձնել, տեսնել և կշռել ազգայնութեան չէնքի այն տխուր փլատակները, զոր մեք մեր ձեռօք ըրինք, և ամաչելով ու սոսկալով այսպիսի ոճրագործութեան վերայ, միտք բերեմք կենարարի անսուտ բանը «Ամենայն թագաւորութիւն և տուն բաժանեալ յանձն՝ կործանի և աւերի.» և այս ազգային հետևանացը վերայ խորհելով՝ յօժարիմք անգամ մի, գոնէ իբրև ի Քրիստոս ծնեալ նոր արարածներ, իբրև Հայկայ որդիք իրարու ձեռք երկնցունել, գիրար եղբայրաբար ողջունել և ատելութեան նիւթը Քրիստոսի հոգւովը, Քրիստոսի սիրովը քննել և պարզել:

Գիտե՞նք թէ մեր հովիւները ո՛յնպէս թմբրեցան, որ պատառող գայլերու ի՛ նոց փարախի մէջ մտնելը առաջուընէ չիմանալով, ապա ոչխարաց գիշատման կսկիծէն սթափելով, փոխանակ տիրանէր ու հաւատարիմ շանց պէս, զողի և գայլի վերայ յարձակելով, իրենց կեանքը հօտի վերայ դնելով գթշնամին փարախէն վանելու, անոնք, աւա՜ղ, վիրաւոր ոչխարները պատելու և բժըշկելու տեղ, զնոսա եւս գողերու հետ մէկ տեղ փարախէն անխծիւք դուրս վանեցին. այլ մի՞թէ այսօրուան օրս հինգ միլիոն Հայոց մէջ հինգ անկեղծ; հաւատարիմ և Քրիստոսի արեամբ ներկեալ եկեղեցական կամ աշխարհական, կենցաղագէտ, հեռատես և եղբայրասէր անձինք

ն, որ այսպիսի պատառուածի ազգային հետևանաց

վերայ խորհրդածելով՝ անոր դարման մը տանելու և կարկատելու հնար գտնեն ։ Ամեն բերդ, որչափ ալ անառիկ կարծուի, առնուելու համար շինուած է, ըստ երևելի զօրավարներէն մէկը․ ամեն բաժանմանց միաբանութեան ճար կայ, ասեմք և մեք, միայն թէ, միաբանութեան միջակները եսականութիւնը մէկդի դնեն ։

Մի՞թէ Հայք, Յոյնք և Լատինք Քրիստոսի գերեզմանին և Ծննդեան մի և նոյն եկեղեցւոյ և մի և նոյն սեղանի վերայ աստուածպաշտութիւն և պատարագ մատուցանելով հերձուածող և չարափառ են․ մի՞թէ Լուսաւորչեան, Հռոմէական, Բողոքական կամ Յունադաւան Հայերը մի և նոյն եկեղեցւոյ մէջ աստուածպաշտութիւն կատարելով չարափառ կըլլան ։ Կարճ մտաց, երկլաքարշ հոգւոյ, բժոտ աչաց, այո՛, այսպէս կերևի․ բայց Քրիստոսի արեամբը ներկուած հոգիներու, Աստուծոյ և եղբօր սիրովը լեցուն սրտերու, այն սիրովը կըսեմ, որ հաւատքէն և յոյսէն վեր է և զօրաւոր, ըստ ամենայնի հակառակը կերևի․ և միաբանութեան առաջին քայլը կհամարուի ։

Ի՞նչ օգուտ մեզ այս և այն եկեղեցւոյ յարկէն, մինչդեռ միաբանութիւնը մեր ազգի մէջ հաստատուեր չէ․ մի՞թէ բաժանասէրները կակնկալեն բոլոր ազգը իրենց ետևէն քաշել և այս կամ այն եկեղեցւոյ պատուատել․ ով կուզէ՝ թո՛ղ հաւատայ․ ըստ մեզ, անհնարին գործ մըն է այս ։ Անոնք, առ առաւելն, արդի հինգ բաժանմանց վերայ վեցերորդ բաժանում՝ մը կարեն աւելցունել խումբ մը ժողովուրդ ազգութեան արմատէն պոկելով և վէրս ի վերայ վիրաց դնելով․ ահա՛ ըստ մե-

բաժանարարաց վախճանը : Ընդ հակառակն , ազգի բա-
ժանեալ մասերու միաբանութեան խնդիրը կենսական և
միրկալար խնդիր մի է , որուն ամեն ճշմարիտ Հայեր
համբին պիտի գործակից ըլլալ , աղէկ համոզուած ըլլալով
որ օտարէն եկած ազատութիւնը գերութեան ամենագէշ
շղթայէն տարբերութիւն չունի · որ օտարը , ո՛չ չափ ա-
մարդասէր և առատաձեռն ըլլայ , իր դանձն ու արիւնը
չվատներ մեզ կամ՝ ուրիշի բարօրութեանը , առանց
կրօնը ընդունելնուս համար : Միջին դարու կրօնամոլու-
թիւնը եռանդուն էր · Արբազան Պապի Եւրոպայէմ
Մահմէտականց ձեռքէն առնելու կամ Ալբինգեանները
վայրի չորքոտանեաց պէս ջարդելու համար հանած մէկ
հրաւէրը , այն ատեն վեց հարիւր հազար քրիստոնեայք
Թագաւորաց և կայսերաց ծովեր , անապատներ քալելով ,
Եւրոպայէն Ասիա անցուց , մեր օրովը այս մոլեռանդու-
թիւնը մարած է , այնչափ մարած է , որ նոյն Արբազան
Պապը , իր սեպհական իշխանութիւնը պահելու համար ,
քան անգամ թանիւ եւ գրով հրաւէր կարդալով՝ հազիւ
կրցաւ երկու հարիւր միլիոն հռոմէականներէն երեք հա-
րիւր Իռլանդացի եւ Իսպանիացի նահատակներ ժողվել
Կաստելֆիտարդոյի դաշտը : Բաժանասէրները ասկէ ա-
ւելի ի՞նչ փորձ կուզեն :

Եւրոպացի եւ Ամերիգացի քրիստոնէից մեզմէ պա-
հանջածը կրօնափոխութիւն չէ · մի՛ խաբուիք սիրելի
Հայք · · մի՛ հաւատայք այն խաբեբայ միսիօնարներուն ,
որոնք կամ Աւետարան ծախելու կամ Փռօփականդայի
տիրապետութեան զօռաղ ձգտումը տարածելու քօմի-
սիօներ եղած՝ Քրիստոսի անունը Հրէի եւ Մահմէտա-

կանխի տալէն կասկած . այլ Արեւելքի Քրիստոնէից մէջ խառնակութիւն, կամք եւ կռիւ սերմանելէն չեն ամաչեր : Հաւատացէ՛ք, սիրելի Հայք, որ այսօր ոչ Անգղիոյ Թագուհին, ոչ Գաղղիոյ եւ Ռուսիոյ Կայսերք, ոչ Ամերիկայի Հասարակապետութիւնը այսպիսի խժդժութիւններ ոչ կամին, ոչ ալ կ'ներեն որ իրենց ազգութեանց մէջ գործուին : Ընդ հակառակն, անոնց մեծագոյն պաշտպանն է քաղաքակրթութիւն, դաստիարակութիւն, երկրագործութիւն ; արուեստից եւ վաճառականութեան ծաղկումը եւ ի վեր քան զամենայն՝ ազգային սերտ միաբանութիւն, ինչպէս վկայեն այսօր այն ամեն Հայերը, որք Գաղղիա, Անգղիա, Ամերիկա, Իտալիա կեցեր կամ ճանապարհորդութիւն ըրեր են :

Բնութիւնը Հայուն, Յոյնին, Խռուաթին, Մոլդավանին, Վալաքին, Լեհին, Մաճառին, Իտալացուն, Սերբին, Բոշնակին ոտք տուեր է քալելու համար, ձեռք տուեր է գործելու համար, աչք տուեր է տեսնելու համար, ականջ տուեր է լսելու համար, սիրտ տուեր է զգալու համար, միտք տուեր է խորհելու եւ ըմբռնելու համար, վերջապէս, կամք տուեր է որոշելու եւ ի գործ դնելու համար : Արդ եթէ Հայը ձեռք, ոտք, աչք, ականջ, սիրտ, միտք եւ կամք ունենալով չքալեր, չգործեր, չտեսներ, չլսեր, չզգար, չխորհէր եւ չկամէր իր բարօրութիւնը տնօրինել, մի՞թէ կրօնափոխ ըլլալով յանզգայութենէ յզգայութիւն պիտի գայ, կամ թէ նոր զգայմունք ստանալով իր մարդկային պարտքը ճանաչէ պիտի : Մի՞թէ մեզմէ աւելի տգէտ եւ ողորմելի Յունադաւան, Հռովմէական եւ Բողոքական ազգ ու ժողովուրդ

չկան․ եթէ զմեզ ի միաբանութիւն հրաւիրողները նոյնչափ գթոտ եւ մարդասէր են՝ ինչո՞ւ նախ իրենց հին կրօնակիցները եւ ընտանիքը չեն լուսաւորեր կամ մխիթարեր ։

Ցանկալի էր, որ այսպիսի կարեւոր իրի յառաջադրութիւնը ազգային եկեղեցեաց հովիւներն ընէին և համարակաց ապահովութեանը միտ դնելով՝ ազգային մարմնոյ խոցը բժշկել հոգային ։ Եթէ անոնք չկամենան ասոր վերայ խորհիլ, այն ատենը մեր ազգի հասուն և հեռատես անձերը պարտին ասոր ճարը գտնել ։ Թէև Լուսաւորչի եկեղեցւոյ հաւատքը սուրբ է և ուղղափառ ; սակայն մեր բաժանեալ եղբարքը, անտարակոյս ; բաժանման պատճառ մը գտեր են, իրաւացի կամ անիրաւ ; մեր վարդապետութեանց, կարգաց կամ ծիսից մէջ ; որ իրենց գայթակղութիւն կպատճառեն ։ Եթէ ասոր համար ազգային ժողով պէտք է, թող ազգը ձեռնհաս և վկայեալ նուիրակներ ընտրէ և ընտանեբար, ըստ պահանջման իր հոգևոր և մարմնաւոր պիտոյիցը ինք զինքը բարեկարգէ, իր հեռացեալ եղբարցը հետ միանայ, միաբան գործակցութեամբ զօրանայ և քաղաքակրթութեան մէջ յառաջ քալէ․ այլ մեր եկեղեցւոյ բանալին երբէք օտար դռնապանի չյանձնէ ։ Աւելորդ կաթողիկոսաց, պատրիարքաց, առաջնորդաց թիւը, եթէ ազգը վայելուչ դատէ, թող յապաւէ․ որոնք, ինչպէս բազմամեայ փորձով ապացուցեալ է, աւելի խռովութեան և ընդվայր ծախուց, քանթէ շինութեան և բարօրութեան պատճառ եղեր են․ քանզի եթէ 45 միլիոն յունադաւան Ռուսք և 36 միլիոն հռոմէադաւան Գաղղիացիք և ոչ մի

պատրիարք և կաթողիկոս ունենալով՝ բարիոք կկառա-
վարուին; մեզ, չորս կամ հինգ միլիոն չքաւոր Հայերուս,
ի՞նչ պէտք են երեք կաթողիկոս և երկու պատրիարք ։
Մի՞թէ Լուսաւորչէն սկսեալ մինչև տասներորդ դարը
մեր նախնիքը բարեպաշտ և ուղղափառ չէին, որոնք մեր
քառապատիկն ըլլալով՝ մի և նո կաթողիկոս ունէին.
Թո՛ղ զՎրացին, զԱղուանս և զայլ ազգս, որոց ծայրա-
գոյն տեսչութիւնն ալ մերոյ յանձն էր ։ Ինչո՞ւ մեր
աստուածաբանները չեն մտածեր, որ Մահմետի իշխա-
նութիւնը Քրիստոսի եկեղեցւոյ չեմէն ներս մտնելու չէ.
ի՞նչպէս ուրեմն կընդունին, որ անոր հեղինակութեամբ
կարգուած պատրիարքք մեր եկեղեցւոյ մէջ իրաւասու-
թիւն ունենան ։ Մեր կաթողիկոսաց թիւն ալ այն ատենը
սկսաւ շատնալ, երբոր երկպառակութեան հոգին
ցրուել սկսաւ Լուսաւորչի անտանելի չարչարանօք հա-
միահաւաքեալ Հայք և ժողովուրդք ։ Մի՞թէ աւելի աս-
տուածպաշտութեամբ ու բարեպաշտութեամբ վարուած
չեմք ըլլար մէկ հատիկ միայն զօրաւոր գլուխ ունենալով
քան թէ հինգ կերպարանաշներ. Մի՞թէ աւելի խելամտու-
թիւն չէ մէկ հատիկ հոգևոր վարչութեան բարեկարգ և
առոյգ կեդրոնական ատեան ունենալ, մեր նախնեաց
նման, որոց կաթողիկոսք ալ ըստ պիտոյից ժամանակին
և ժողովրդեան Վաղարշապատ, Դուին, Արտաշատ,
Երազգաւորք, Անի, Ծամնդաւ, Հռոմկլայ, Սիս և այլ
շատ տեղեր փոխադրուեցան որպէս զի սիրտը և գլուխը,
մարմինը և հոգին իրարմէ չզատուին ։

Երկրորդ՝ ազգը գրաւոր և հաստատ օրէնքով բարե-
կարգելոյ և վարելոյ միտք ։ Օրէնքը մարդկային վարու-

քանոնն է եւ քաղաքավարութեան խարիսխը. առանց օրինաց անհնարին է որ ժողովուրդ մը, ազգ մը արդարութեամբ վարուի և դիմանայ երկար։ Մեր ազգը, իբրեւ հոգևոր մարմին, իր կանոնգիրքը ունէր, իբրեւ քաղաքական մարմին, իր Դատաստանագիրքը ունէր մեր նախնեաց օրովը։ Վաղարշակը, Արտաշէսը, Գագիկը, Լեւոնը մեր մեծամեծ օրէնսդիրները եղան։ Ազգային իշխանութեան վերջանալովը կանոնգիրքը և դատաստանագիրքը անապատները փախան. այնուհետեւ մեր գլխաւորները իրենց հաճոյքը իբրեւ օրէնք համարելով, ըստ այնմ վարեցին մեր ազգը. մեր ժողովրդեան ամեն ազնիւ եւ նորոգիչ ձգտումները ջղակոտոր ըրին. անգամ հարուստը անպատժութեան արտօնագիրը իր ծոցը ունենալով, պարկեշտ աղքատը միշտ զրկուելով՝ իրաւանց և արդարութեան տեսիլքն անգամ այնպէս կորսուեցան մեր պատուական հասարակութեան մէջ, որ անիկայ գժտութեան, ամբարշտութեան, խռովութեան, կռուոյ եւ հարստահարութեան տեսարան եղաւ։

Մեր գլխաւորները, որ ազգը կառավարելու պահանջանքը ունէին, երանի թէ, գոնէ ժողովուրդէն աւելի լոյս և խելքահասութիւն ունենային. երանի թէ... հանճարն, իմաստութիւնն եւ կենցաղագիտութիւնն են, որ զմի այր քան զայլ այր արգոյ եւ պատկառելի կընեն եւ ոչ թէ կոչումն եւ ծնունդը։ Մարդոյ բուն ազնուութիւնը անոր զգայմանց եւ խորհրդոց վսեմութիւնն է և ոչ թէ արտաքին ճոխութիւնն եւ շուքը. երանի թէ անգամ մը խորհէին թէ եթէ իրենք հասարակութիւնը վարելու եւ դատելու իրաւունքը ունին, զիրենք հասա ո՞վ դատէ

պիտի ։ Ապաքէն մարդկութիւնը և Աստուած կը պահան-ջեն, որ օրէնքը միայն մարդոց վերայ թագաւորէ և ոչ թէ մարդ. օրէնքը պատժէ յանցանքը և պատւէ առաքինու-թիւնը եւ ոչ թէ կաթողիկոսը, պատրիարքը և ամիրան. օրէնքը վարէ զկաթողիկոս, զպատրիարք և զամիրայ. եւ օրինաց անձնազանցը, ով եւ ըլլայ, եթէ կաթողիկոս, եթէ պատրիարք, եթէ ամիրայ, թող պատժուին անա-չառապէս եւ հասարակաց թշնամի համարուին ։

Արդարակորով, ուղղամիտ, ժողովրդական իրաւանց եւ կարգաց ճանաչող եւ պաշտպանող, բռնաւորաց եւ ստրկին զլխաւորները, անշուշտ, տառապած աղաղարները բազմից են ։ Երանի այն ազգին, որ Վահան Բագրատունի, Վարդան Մամիկոնեան, Գագիկ Արծրունի, Լեւոն Ռուբինեաններու այնս գործի եւ ինչպէս ունի. այլ դը-խտոր կամ, ինչպէս ըսուելու իրաւունք ունի՞ն այն իշ-խանաց նախարարները, որք վատութեամբ Արշակունի եւ Բագրատունի տէրութիւնները, մեր ազատութիւնը, երկիրը, փառքը եւ ամէն բարեբաստութիւնը, իրենց կորստական շահուն համար, մերթ Պարսից ծախեցին, մերթ Յունաց ։ Արդարեւ ըսուելու արժանաւորութիւն ունի՞ն այն ակնյերոր անձինքը, որոնք ազգին ծառայութիւն մը չըրած, այս ինչ գեղէ արտաքսուելով, այս ինչ, այն ինչ քաղաք գնացեր և Հայոց վերայ իշխօղ տէրութեանց գործակալաց անիրաւութեանը գործիք եւ գործակից ըլլալով՝ մանաւանդ դիզեր ու հասարակութեան վերայ փը-քանալով, անոր նախորդական իրաւունքը բռնաբարեր եւ տարբերական հասարակութեան առաջնորդ եղեր ։ Ինչպէս ըսուելու արժանաւորութիւն ունի՞ն այն անձինքը, որոնք առ-

տուըն՝ մինչեւ երեկոյ սեղանի առջեւ նստած՝ աչնին մէկը ոսկեկեր սնդուկի վերայ, միւսը զերօյով լեցուն տոմարի վերայ տնկեր, ուր են իրենց Հայրենիքը եւ փառքը, որ եւ իրենց ոսկի հորթը գիրցունելը լրումն մարդկային պարտաւորութեանց կսեպեն: Մարդկութիւն, ազգութիւն, հաւատք, կրթութիւն ինչ ձեռնտուութիւն, ինչ շահ կրնան ակնկալել այսպիսի փոքրոգի եւ ոսկեծով անձերէ, որոնք ամեն ազգային բարիք օտարաց ծախելէն ետեւ, այսօր ալ մէկ հատիկ ժառանգութիւննիս, որ է մեր հաւատքը, որուն մէջ մեր կրած անպարտ չարեաց վերայ միխիթարութիւն կգտնենք, որով փշտակերի հոգինիս կզօրացունենք բաւագոյն օրերու սպասելով, այս միակ ժառանգութիւննիս անգամ անձարոյթի հաներ են: Ի՞նչ հոգեւոր եւ մտաւոր կատարելութիւններ սպասելու է Խորենացիէն դատապարտեալ գողակից, կծծի, ագահ, յափշտակող, աշխարհակէր, ապականական իշխաններէ. եր. 554:

Մեր ազգը, որ շատ մը ձիրքով զարդարուած արժանի էր լաւագոյն բախտի, մեր անարժան իշխանաց շնորհիւը, այսօր թիզ մը սեպհական գետին չունի այս ահագին տիեզերաց մէջ, եւ Բոշաներուն պէս թափառական կպտտի: Մեր ազգը, որ իր Հայրենիքը եւ հաւատքը պաշտպանելու համար ոչ իր արիւնը խնայեց, ոչ իր գանձը եւ ստացուածքը, այսօր մեր իշխաններու շնորհիւը արեւելքէն արեւմուտք, հիւսիսէն հարաւ ցրուած է: Օտար ազգաց իշխաններն իրենց սերնդեանը երկիր, օրէնք, գրականութիւն, տէրութիւն, փառք թողլին իրրեւ ժառանգութիւն, մերիններս, ընդ հակառակն, մեր

թողին ազնուութիւն, առողջութիւն, արտասուք եւ նա-
խատինք։ Մեր ազգը, որ իր կորովամտութեամբը,
գործունէութեամբը, արիութեամբը եւ ուսումնասիրու-
թեամբը, եթէ Մօզէսի կամ Լիկուրգոսի օրէնքով վարուէր,
նշանաւոր ազգերէն մէկն ըլլալու էր անշուշտ. մեր ազգ-
կամի իշխանաց տակ խամրելով, գամանուելով, բռնա-
նալով՝ աւելի թշուառութիւն ճաշակեց քան է բարօրու-
թիւն. և Հիւսիսական ազգաց վեհագոյն Հայք, փոխանակ
իր ճգրայի ազգայ տիրելու եւ պատգամ տալու, մեր իշ-
խանաց զանձկութեան պատճառաւ, զինեալէր Վրաց եւ
ասպակ Քիւրտերուն անգամ պարտաւորեցաւ նպա-
տակել։ Թողում յիշել զԱսորին, զՊարսիկը, զՀռո-
մայեցին, զՅոյնը, զԱրաբը, զԹաթարը եւ զԹիւրքը,
որք զէթ մեղմէ բազմաթիւ էին, սմանք ալ քաղաքական
հրահանգներով աւելի բարգաւաճեալ։ Զկարծէ՞ մէկը,
որ այսպէս գրելով՝ զիշխան աք բամբասել կամիմ կամ
պախարակել. քա՛ւ լիցի։

Մեր կրած չարեաց բուն հեղինակը աւելի մեր իշխան-
ներն եղեր են քան թէ օտարները. մեր անիշխանու-
թեան եւ թշուառութեան սկզբնապատճառը աւելի մեր
մտաւոր եւ բարոյական հիւանդութիւններու մէջ փնտ-
ռելու ենք քան թէ այս ինչ, այն ինչ ազգի Հայաստան
արշաւելուն մէջ։ Քանի որ մեր գիտուն անուանեալները
մեր թերութիւններն ու բարոյական ախտերը ծածկեն,
մեր մեծաւորները ապօրէն վարքը առաքինութեան
փոխելով շողոքորթութեամբ խնկարկեն, վրանիս խըն-
դան, քսակնիս պարպեն, որ քան զօր վիճակնիս գէշնայ
պիտի։ Ախտերնիս հին է, չատ հին է, մորթի կամ ար-

չհասած , իրենք մեր անձրութիւնը և բարօրութիւնը Յու-
նաց ծախեցին. կա՞յ ուրիշ ազգաց պատմութեան մէջ
այսպիսի եղեռնագործութեան օրինակ , զոր մեր իշխան-
ները գործեցին :

Մարդ , ինչ և իցէ կոչում կամ վիճակ ունենայ , ինչ
եւ իցէ բարձ եւ երեւոյթ ունենայ , տակաւին մարդ է
համօրէն մարդկութեան բոլոր յատկութեամբը: Ոմանց
մարդոց սեթեւեթեալ արտաքին երեւոյթը և փողփողուն
պաճուճապատանքը կրնան ծանծաղամիտներուն աչու-
թիւն , զարմանք և ակնածոյ երկիւղ ազդել . այլ քրիս-
տոնէութեամբ եւ իմաստասիրութեամբ լուսաւորեալ
անձեր սովոր են , մարդոյ մը իսկական արժէքը գնահա-
տելոյ համար , անոր արտաքին ծեփէններուն թափանցել ,
անոր վրայի վարագոյրը բանալ և ներքին մարդոյ որպի-
սութիւնը քննել . անոր կատարելութիւններու վերայ
միայն զարմանալ և անոնցմէ միայն պատկառիլ : Նախա-
խնամութիւնը Լուսաւորիչը եւ Սուրմակը ; Ներսէս
Պարթեւը եւ Շմուէլը , Սահակ Պարթեւը եւ Բրքիշոն
Թադդէոս Առաքելոյ աթոռը փոփոխակի ելլել թողլ-
տալով , նաեւ Տրդատ եւ Պապ , Մեծն Կոստանդիանոս
եւ Յուլիանոս ուրացական գահոյքը հանելով յաւիտե-
նական ըմբռնութեան դաս մը տալ կամեցաւ ամեն մար-
դոյ եւ զգաստութեան խրատ՝ ամեն կաթողիկոսի , թա-
գաւորի եւ իշխանի , որ իբրեւ մարդ , ամենն ալ սխալա-
կան են եւ անկարող , եթէ օրէնքը իրենց առաջնորդ ,
օժանդակ եւ ուղղիչ չունենան , ազգ եւ ժողովուրդ
վարելու համար :

Մեր ազգին , իբրեւ հոգեւոր եւ աշխարհական մարմին ,

ւ էական բան պէտք են. գիտութիւն եւ օրէնք. գի-
իւն մեր միտքը լուսաւորելու, մեր պարտքը ճանա-
., մեր մարդկութեան նպատակին համեմատ ընթացք
նալու, մեր մտաւոր կարողութիւնները ազնուացը-
., մեր զգալոյ, խորհելոյ, ընտրելոյ, դատելոյ եւ
ելոյ կարողութիւններն զարգացնելոյ, աստուածպաշ-
Յեամբ եւ մարդավարութեամբ կենցաղավարելոյ
ր. և օրէնք մեր պարտքը կատարելոյ, ազգային
նոյ այլ և այլ անդամոց առ միմեանս ունեցած յա-
րութիւնները կանոնաւորելոյ, հասարակաց և ան-
ի ստացուածքը, իրաւունքը եւ խիղճը ապահովելոյ,
անուր և մասնաւոր իրողութեանց կարգաւոր ըն-
ք տալոյ, մեր կիրքը սանձելոյ, տկարը զօրաւորին
, անմեղը անզգամին դէմ պաշտպանելոյ, որով եւ
ն լրութիւնը զօրացունելոյ համար:
Թէ ամենախնամ Աստուածը երկրիս չնչին ճճիէն
ալ մինչև երկնից լուսաւորները, և դողդոջ ծիլէն
եւ Լիբանանի եղեւինը, ամենն ալ մշտնջենաւոր եւ
ոփոխ օրինաց տակ ռակեց, մի՞թէ ամեն արարած-
ն գերագոյնը, որ է մարդը, միայն անօրէն կամեցաւ
: Քա՛ւ լիցի այսպիսի ամբարշտութիւն Աստուծոյ
սրութեանը վերագրել: Ադամայ, Նոյի, Մովսէսի
իսուսի միջնորդութեամբ գերբնական ճշմարտու-
նց վերայ Աստուծմէ մարդոյ, իբրեւ հողեւոր էա-
աւանդեալ օրէնքը ամենայայտնի ապացոյց են, որ
տենականը կպարտաւորէ զմարդ իբրեւ մարմնաւոր
նոյնպէս քաղաքական օրէնք ունենալ:
ստուածային օրէնքը իշխանաց հաճոյքէն կախում

չունի, ոչ ալ այլայլութիւն կրէ ազգի անանց աշխատու-
թեամբը ։ Իսկ մարդկային օրէնքը, որ հայրական հեղինա-
կութենէ ծնեալ է, ամեն ազգ կատարեալ իրաւունք ունի,
իր պիտոյիցը և ժամանակի պարագայիցը համեմատ, դնել
եւ բարւոքել՝ երբոր վայրենութեան միջէն ելլելով
քաղաքականութեան շաւղի մէջ կմտնէ, երբոր թա-
փառական կենցաղը ձգելով հաստատ բնակութեան տէր
կըլլայ, ու պիտոյքներին կշատնայ ։ Արդ ինչպէս Աստու-
ծոյ օրէնքը գրով տրուեցան, այնպէս ալ մարդկային
Օրէնքը կամ Սահմանադրութիւնը գրով տրուելու է ժո-
ղովրդեան ։ Օրէնք դնելոյ իրաւունքը, ինչպէս նաև իշ-
խան եւ առաջնորդ դնելոյ եւ հանելոյ հեղինակութիւնը ժող-
վրդեանն է եւ ոչ թէ քանի մի անհատից, անոր հեղինակը
հասարակութիւնն է և ոչ թէ քանի մի առաջնորդք, վասն զի
իշխանն, հայրապետ, պատրիարք, առաջնորդ, ամենքն ալ
ժողովրդեան որդի են, անոր ծոցէն ելեր են, անոր քրտինքով
կապրին, անոր պաշտօնեայքն են, ու անոր պէտքը հոգալոյ
համար կարգուած են ։ Աշակերտը իր վարժապետին, ծա-
ռան իր տիրոջը հնազանդելու պարտական են․ վասն զի
աշակերտի կողմէն հասակի անկատարութիւն և վարժա-
պետի կողմէն հասակի և խելքի կատարելութիւն կան․
վասն զի մեծաւորի եւ ծառայի մէջ երկուստեք ազատ
հաճութեամբ պայմաններ եղած են, այլ երկու խելա-
հաս անձեր․ վասն զի մէկը ղարբասի մէջ ծներ է, միւսը
խրճիթի, մէկը միւսին անկանոն հնազանդելու պարտա-
ւորութիւնը անբանից օրինաց մէջ անգամ չկայ ։ Ասիկայ
բռնաւորաց և տգիտութեան գիւտ է, որք գլխաւորաց
իբրեւ անիրաւ Ջուլբը, իրենց քմացը համեմատ, այսօր լե-

բամբակ ու այլ ազնիւ բոյսեր կբերէ, որով ազգեր ու տէրութիւններ կհարստանան և վայելուչ կենցաղավարին. Բնութիւնը, որ վարազին ժանիք տուեր է, փղին՝ կնճիթ, մեղուին՝ խայթոց, կուղբին՝ ճարտարութիւն և կարապին՝ ծովածփութիւն, անոնց կարիքը հոգալոյ և թշնամեաց դէմ զինելոյ համար. նոյն բնութիւնը, ամեն արարածներէն ազնուագոյն էակին, որ է մարդ, կարծես թէ մանաւանդ զէնք մը չէ տուեր զինքը պաշտպանելոյ և իր կարիքը հոգալոյ համար։ Մերկ մարդը, քննութեան տակ առնելով, կարծես թէ ամեն կենդանիներէն ողորմելի է. այլ մարդ, այնպէս ողորմելի չէ, ինչպէս կերեւի։ Մարդոյ մսեղէն շէնքին մէջ, անոր հողեղէն տաճարին մէջ Աստուած կայծ մը թողեր է, զոր հոգի կանուանեմք, հանդերձ խորհելոյ, դատելոյ և կամելոյ կարողութիւններով, որոնք յանձնուելս կրնան կատարելագործիլ։

Մարդ, թէեւ անասուններէն աւելի անկատար կծնանի, սակայն իր կարողութեանց սաղմը իր մէջն ունի։ Յայտնի է, որ այս աստուածային կայծս կարծարծէ դաստիարակութիւնն է, որ այս սերմս պտղաբեր կընէ։ Մարդ առանց ուսման և դաստիարակութեան, թէեւ մարդոյ երեւոյթ ունի, այլ իրօք մարդ չէ. գիտութիւնը, որ ուսմանց արդասիքն է, մտքի մկրտութիւնն է. վասն զի իւրաքանչիւր գիտութիւն մէյմէկ ճշմարտութիւն է։ Մարդ, որչափ շատ գիտուն ըլլայ, այնչափ շատ ճշմարտութիւններ կճանաչէ, որոնք միտքը և հոգին օծելով զանոնք կսրբեն, կազնուացնեն և թշուառութեան մէջ անգամ երջանիկ կընեն։ Մարդ բիւրաւոր պարտք կատարելու է, բիւրաւոր թշնամիի յաղթելու է. սակայն

մարդու մարմինը անբաւական է. եթէ անոր միտքն ալ տգէտ մնայ, այն ատենն է անոր ծայրագոյն խղճութիւնը, որ թէեւ ի պատկեր Աստուծոյ եւ իշխան արարածոց ստեղծուած, այլ իր մտքի կուրութեամբը, որ թանձր խաւարի պէս անոր չորս դին պարիսպ կապեր է, անասնոց և անբանից կհաւասարի. ոչ անցեալը քննելու բաւականութիւն ունի, ոչ ներկան իր պիտոյիցը ծառայեցնելու, ոչ ապագան գուշակելու և իր ապահովութիւնը անօրինելու. իբր զի ներկան անցելոյ արգասիքն է, եւ ապագան՝ ներկային: Տգէտի մտքի աչքը կարճատես ըլլալով, նա մարմնով միայն կապրի, անասունի պէս իր մարմնական պիտոյքը միայն կմտմտայ, զգալի աշխարհի կեղեւը միայն կտեսնէ. անոր ընդերքը թաղուած ճոխութենէն զուրկ կմնայ, և իր տեսութիւնն ու գործունէութիւնը իր մարմնոյ տեսութեան հորիզոնէն անդին չեն անցնիր: Իր միտքը և ճաշակը անտաշ և բիրտ ըլլալով, իր արտադրութիւններն ալ բիրտ են. իր դիմացինի սրտի և խորհրդեան մէջ թափանցելու ձեռնհասութիւն չունենալով՝ միշտ խաբուելու ենթակայ է, ինչպէս մեր իշխանները միշտ խաբուեցան Պարսիկներէն եւ Յոյներէն: Իրաց իսկական արժէքը չճանաչելով՝ անոնց արտաքին երեւոյթովը միայն կզբաղի, և վայրենեաց պէս փայլուն ապակիին ադամանդի տեղ կընդունի. և պսպղուն արոյրը՝ ոսկիի տեղ: Իր մտաց մէջ ճշմարտութեանց խարիսխը չունենալով՝ անղեկ եւ անխարիսխ նաւու պէս ալէտանջ կծփայ. բնական երեւոյթներու պատճառները քննելու և նուաճելու տեղ, ինչպէս Ֆրանգլին ըրաւ, անոնցմէ կսոսկայ. ամեն հովէ կերերայ, ամեն կարծիքի կհակի ե-

իր նպատակէն խոտորեալ՝ թէև մարմնով կապուի, այլ միտք և հոգւով միշտ ազատ կմնայ. թէև երկիր տէր է, այլ առանց զայն ճանաչելոյ, մշակելոյ և երջանկաբար ապրելոյ՝ հրոսակի պէս աշխարհ կգայ, պղատոնեան առանակի պէս կանաչ խոտի վերայ կթաւալի, և հեղեղի պէս յաղթանականութեան ծոցը կերթայ, առերակ եւ անապատ թողլով զաշխարհ, զոր թէեւ շինելոյ եւ վայելելոյ պատուէր առեր էր:

Տգէտը ոչ իր Արարիչը կճանաչէ և ըստ պատշաճի կպաշտէ, ոչ իր պարտքը գիտէ և կկատարէ: Հայրենիք, ազգ, փառք, իրաւունք, օրէնք, արդարութիւն բառերը անոր համար նշանակութիւն չունին. մարդկութեան անհուն Ովկիանոսի մէջ իր բռնած կորեկի մը բիւրերորդ մասին չափ տեղը չմտմտալով՝ ինքզինքը բարձրագոյն էակ մը կկարծէ: Անոր հաւատքը թանձրագոյն սնապաշտութիւն է. կարեկցութիւնը անոր բառգիրքէն հալածուած է: Նա, իր յոռի կիրքը զգաստախարակութիւնը ուղղիչ չունենալով, իրեն չմտնողը, իր կարծիքին չհակողը, ոչ միայն անհաշտ թշնամի կկարծէ, այլ և անհաւատ. խրատ, բարի օրինակ առնուլ չգիտէ. անոր բարոյականը հալածանք է, նորա բարեպաշտութիւնն է անաւերութիւն. գիր, ուսումն, տպարան, ազատախօսութիւն անոր համար մոլութիւն և ժանտախտ են: Այս է ողորմելի տգիտութեան համառօտ նկարագիրը, որ հին և նոր դարուց մէջ միլիոնաւոր չայեկան և պարկեշտ մարդիկ աքսորի և բանտի դատապարտեց կամ թէ դիզափայտի վրայ աճիւն դարձուց:

Եւրոպացիք համոզուած են, որ ազգութեան պայման-

նէրը օրէնքն եւ լեզուն են . մեք, զոնէ մեր ազգի նկատմամբ, համոզուած եմք, որ օրէնքէն և լեզուէն աւելի մեր ազգի գոյութիւնը պահեց մեր կրօնը և մեր եկեղեցականաց հաստատրմութիւնք : Եթէ անոնց մէջ Թերութիւն ալ երեւցաւ, ապէկի անոնց գլխաւորաց կղերաբերի այն քան թէ իրենց . ըստ որում գլխաւորները, ինչ որ կարող էին, ըրին, և ինչ որ չէին կարող, ըրին : Մեր օրովը երեւցան քանի մի անձինք, որ առնհար ըրին մեր կղերը, կարեկցութեան և իմաստութեան օրինաց դէմ մեղանչելով. ըստ որում հիւանդը հայհոյելով չառողջանար երբէք : Եթէ Սահակայ և Մեսրոպայ աշակերտաց մէջ ազգասիրութիւնը արմատացեր է, բոլոր յանցանքը անոնց վերայ միայն բառնալու չէ, յանցանաց մեծագոյն մասը Արշակունեաց ու Բագրատունեաց իշխանութիւնները օտարաց մասնոյ իշխանաց վրայ կենայ վերջացեալ է : Եթէ կղերը գիտութեան լոյսէն զուրկ է, վասն զի ազգը յարեւելից յարեւմուտս, ի հիւսիս ի հարաւ անկէ զուրկ է : Կղերը ոչ երկնքէն իջեր է, ոչ գետնէն բուսեր. նա ժողովրդեան որդի ըլլալով՝ ականայ իր հայրենի ժառանգութեանը բաժանորդ եղեր է : Ցգիտութիւնը եւ ապօրէնութիւնը եւ կղերին եւ աշխարհականին հասարակ ըլլալով՝ միրար չմեղադրեմք բնաւ. այլ ջանամք երկու վիճակի մէջէն ալ տեւական ու մեր ազգին յարմար դաստիարակութիւն մտցունել :

Մեր ազգութիւնը, ինչպէս վերը ըսինք, մեր կրօնի վերայ աւելի քանթէ մեր լեզուի վերայ հիմնեալ ըլլալով, և քրիստոնէութիւնը կատարեալ քաղաքակրթութեան աղբիւր՝ աւելի պատշաճաւոր էր, եթէ ազգային դաստիա

փրկութիւնը մեր եկեղեցին է եղեր եւ եկեղեցականաց ձե֊ռանք ժողովրդեան մէջ ծառայէր, ինչպէս Լուսաւորչի, Սահակայ, Մեսրոպի և Սիմէոն Կաթողիկոսի ձեռամբ մատակարարուեցաւ ։ Այլ երկիրներ, թէև կրօնը գա֊հանէր կղերի ձեռք տիրապետութեան գործիք եղաւ եւ ժողովուրդը կեղեքելու հնարք, բարեբախտաբար մեր մէջը միշտ իր վսեմութիւնը պահեց ։ Մեր կղերը ժողո֊վրդեան ամեն տառապանացը բաժանորդ եղաւ, չուզեց երբէք անոր խեղճութիւնը իր օգտին ծառայեցունել ։ Մեր կղերը թէև աղքատութեան հնոցի մէջ տանջուած սակայն լաւ համարեց իր հօտին հետեւիլ Երասխի ափե֊րէն մինչև Նեվայ, Գանգէս, Վոսփոր և Նեղոս. լաւ համարեց տարագիր ըլլալ քանթէ իրեն յանձնուած աւանդը ուրանալ ։ Այո՛, թէև չուզելով տգիտութեան խորխորատը անկաւ, այլ միշտ հաւատարիմ մնաց իր կոչմանը, և լաւագոյն աւուր ակնկալութեամբ մեր ժո֊ղովրդեան վշտացը վշտակից եղաւ ։

Տգիտութենէ մեր կրած չարիքն անթիւ են ։ Քաղա֊քականապէս մեր ազգը եօթն և ութ իշխանութեանց բաժնօղը տգիտութիւնն եղաւ. հոգևորապէս մեր կաթողիկոսութիւնը հինգի և վեցի բաժնօղը դար֊ձեալ տգիտութիւնն եղաւ ։ Մեր նախարարաց Արշա֊կունեաց ճոխութիւնը՝ Պարսից, և Բագրատու֊նեացը՝ Յունաց մատնօղը տգիտութիւնն եղաւ ։ Ասկէ աւելի ի՞նչ պարզ տրամաբանութիւն ։ Բողոքականը, Յոյնը, Լատինը Հայութեան չէնքին դէմ աքսորով, բանտով և բանադրանքով չեն պատերազմիր, որ մեր Հովուապետերն ալ անոնց դէմ աքսոր, բանտ և բանա֊

ծղրանք ի գործ ածէին. Անոնք, մեր միութիւնը քայքա-
յելու համար, քաղաքութիւն և մամուլ կփարեն. ուստի
եթէ մեր հօտապետներն ալ անոնց քաղաքութեանը դէմ
քաղաքութիւն եւ մամուլին դէմ մամուլ դիմադրէին,
շատ հաւանական էր, որ այս ինքնակոչ առաքեալները
անօթևալ եւս դաւանային պիտի առանց կրնալոյ մեր եկե-
ղեցիէն ալ մի անգամ գողնալ. սակայն մերինները
Քրիստոսի վարդապետութիւնը զմարդիկ խրատելու եւ
ուղղելու անբաւական սեպելով և օտար ոգին թելադրած,
բանտի և աքսորի, նզովքի և փաղախտոյի ապաւինեցան
այնպիսի մարդեր վարելու համար, որոց միակ յանցանքն
էր Հայ ծնուիլ և ազատ ընտրութեամբ Լուսաւորչայ
եկեղեցիին յարիլ. ապա թէ ոչ, անոնցմէ և ոչ մէկը ոչ
պատրիարքի արբանեակն էր, ոչ կաթողիկոսի արծաթա-
գինը, ոչ ամիրայի ստրուկը:

Մեր հասարակութիւնը ըստ որում բարեկարգու-
թեան պէտքը կզգայ, ըստ որում կղերը և աշխարհա-
կանը զատաբաժանելու միտք ունի. ըստ որում մեր
ազգութիւնը մեր կրօնի վերայ կայացած է, և եթէ աշ-
խարհականը կրթուի ու կղերը անկիրթ մնայ, մեր կրօնը,
որ է մեր ազգայնութեան հիմը, կարելի է որ կղերի տը-
գիտութեան պատճառաւ արհամարհուի, և մեր ազգայ-
նութիւնն ալ քայքայուի: Մեք, իբրև անդամ ազգային
միաբանութեան, այսպիսի չարեաց կանխատես ըլլալով,
քանի մի առաջարկութիւններ ընել հարկ սեպեցինք Ազ-
գային վարչութեան: Նախ՝ ընդհանուր կրթութեան
ուսուագիծ մը յօրինելով՝ զայն կաթողիկոսաց, պատրի-
արքաց, առաջնորդաց և իշխանաց ընդունիլ տալ. եւ

անոր գործադրութեանը վրայ հսկել ի մօտոյ որպէս զի մոռցուել գիր չմնայ ։ Երկրորդ՝ այս ընդհանուր կրթութեան ուրուագծի նպատակը ըլլայ իւրաքանչիւր թեմի կամ գաւառի ժողովրդեան երկու սեռի թուոյ համեմատութեամբ դպրոցներ բանալ հանգերձ գրատունով եւ տպարանով ։ Երրորդ՝ աշխարհականաց եւ կղերի մէջ եղբայրսիրութեան կապը զօրացունելու նպատակաւ՝ երկու վիճակի մանկունքը մի եւ նոյն դպրատան մէջ հրահանգել . եկեղեցական կարգի փափագողներուն թող տալով աստուածաբանական ուսմունքներին յետոյ քանի մը վանքի մէջ հաստատած ճեմարաններու մէջ ուսանիլ ։ Չորրորդ՝ ուսումնարանաց, տպարանաց եւ գրատանց ծախքը հանել եկեղեցեաց եւ վանորէից եկամուտներէն ։

Հայոց Եկեղեցին մի եւ անբաժանելի ըլլալով, տեղական եկեղեցիները, թէեւ թուով եւ տեղեաւ զանազան են, բայց ամենքն ալ իրարու քոյր են . ուստի եւ իրարու օգնելու պարտական ։ Կաթողիկոս, պատրիարք, առաջնորդ, վանահայր, վարդապետ, քահանայ եւ սարկաւագ, արժան է որ վայելուչ թոշակ ստանան իրենց պիտոյքը պարկեշտաբար հոգալու . այլ հարկ չկայ, որ անոնք եկեղեցական մտից եւ ծախուց տնտեսական ըլլան եւ հոգւոց տեսչութիւնը թողլով մամոնայի դպչին ու իրենց սուրբ ձեռքը աղտոտեն ։ Ուսումնարանաց հաստատութեան երկրորդ աղբիւր կրնան ըլլալ առաջնորդական եւ վանական եկամուտները, այսինքն պտուղ, հոգեբաժին, պատարագամ, մոմագին, նաեւ մասնաւոր տուրք ընդհանուր ազգի վրայ դրուած, որք մեր կարծածէն աւելի մեծ գումար կարենկազմել ։ Երրորդ աղբիւր ուսումնարանաց հաստատու-

թեան կրնան ըլլալ այնպիսի մենաստաններու կալուածներ, որոց կրօնաւորները կարելի է այլ մենաստան ուղարկել և անոնց եկամուտը և չէնքը դպրոցաց ընծայել։ Չորրորդ՝ ազգիս կրնայ ըլլալ ուսումնարանաց վերաբերեալ գրոց տպումը և վաճառումը, զորս Ազգային կըրթութեան վարչութիւնը կրնայ տպել և վաճառել։ Հինգերորդ՝ ազգային կրթութիւնը, եթէ կրօնական, եթէ քաղաքական, ամեն տեղ միպաձև ըլլալու համար; որոց օգուտներն անհրաւ են, հարկ է որ գիտնոց ժողով մը կազմուի կղերէ և աշխարհականէ, որոյ գործն ըլլալու է բոլոր ուսումնարանները վարել, վարժապետ պատրաստել և դասագիրք մատակարարել։ Այսպէս ալ պէտք է նաև եկամտից ժողով մը, նոյնպէս խնամն կազմել, որոյ գործն ըլլալու է ամեն եկեղեցեաց, վանաց, ուխտատեղեաց, առաջնորդաց եւ վանական կալուածոց արդիւնքը մէկ գանձարանի մէջ հաւաքել և անկէ կղերի եւ ուսումնարանաց ծախքը հոգալ։ Վեցերորդ՝ մեր ազգի օրհորդաց մէջ ազգային կրօնն ու կրթութիւնը ապահով եղանակաւ մշակելու, մանաւանդ մեր որբերը, այրիները, զառամեալները և հիւանդները խնամելու համար վայելուչ է բարեպաշտ և ուսեալ կնիկներէ հաւատաւորաց ուխտեր հաստատել Թիւրքաստանի մէջ Թիֆլիզու Հայ կուսանաց նման, և ի ստիպել հարկին, անոնցմէ քանի մի անձինք ալ հրաւիրել, որ գան ու Թիւրքաստանի մէջ ալ կուսանաց կրօնը հաստատեն։

Եօթներորդ՝ Երուսաղէմի, Արմաշու, Մշու Ս. Կարապետի եւ այլ վանքեր վարժապետարանի կամ կղերանոցի փոխարկել, եւ յաւիտենական նզովքով արգիլել

որ անկէ եւրքը , առանց աստուածաբանութիւն , գրականութիւն եւ գիտութիւնք ուսանելոյ ոչ որ ոչ քահանայ ձեռնադրուի, ոչ վարդապետ : Ութերորդ՝ նորահաս գիտուն վարդապետներէ քարոզչաց միաբանութիւն մը հաստատել ոչ միայն մեր բնիկ ժողովուրդը խնամելոյ , այլ եւ Եզդաց , Նասրանեաց եւ Նմանեաց Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ հաւատքը քարոզելոյ եւ Քրիստոսի թագաւորութիւնը ընդարձակելոյ համար :

Դաշանց Թուղթի քննութիւնը կնքելով՝ կհրաւիրեմք Պալեան Ամիրայի փաստաբանները , որ Պետրոս Աղաքելոյ Հռոմ նահատակուելուն եւ Խոտղիա եղած սուտ Դատաստանաց վրայ գիտցածնին գրեն որպէս զի մեր ալ պատասխանը լսեն :

Paris. — Imprimé par E. Thunot et C[e], rue Racine, 26.

ԳԱԳԻԿ ՕԶԱՆԵԱՆ

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՀԱՅՈՒՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԴԵՐԸ

Ս. ՍԱՊԱՀ-ԳԻՒԼԵԱՆԻ
ՅԱՌԱՋԱԲԱՆՈՎ




ՄԱՐԶՈՒԱՆ
ՏՊԱԳՐ. ՆԵՐՍՕ ԵՒ ՍՐԱՊԵԱՆ
1912

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ներկայացնելով ընթերցող հասարակութեան «Հայուն Պատմական Դերը», լիայոյս ենք որ նա արժանաւոր ընդունելութիւն կը գտնի և մասնաւոր ուշադրութեան առարկայ կը դառնայ։

Համաշխարհային պատմութեան ընթացքում իր պայքարի և վերապրումի պրոցեսի մէջ, ի՞նչ է եղած Հայի դերը, բերա՞ծ է նա իր բաժին աշխատանքը, լինի համեստ աստիճանով, ընդհանուր քաղաքակրթական գործին մէջ։— Պատասխանը դրական է։

Մեր օրերում, Հայ ազգը ընդհանրապէս, նրա պրոլետար դասակարգը մասնաւորապէս, ակնառու դեր է խաղացած Արեւելեան երեք բռնապետութիւնների կործանման մէջ:

Ժամանակակից Ռուս պետութեան մէջ եղած շարժումները թերի կերպով կը բացատրուէին, եթէ մասնաւոր ուշադրութեան չառնուէր Հայ ժողովրդի կատարած դերը։

Պարսկական բռնապետութեան անկման մէջ՝ Հայ ազգը, եթէ ոչ գերակշիռ, գէ՛թ պատկառելի դեր է խաղացել։

Իսկ Թրքական բռնապետութեան հիմը խախտողը, ազատամարտիկների յառաջապահ գունդը կազմողը

եղած է հայ յեղափոխականը։ Նրա դերը այդտեղ ոչ միայն գերակշիռ, այլ միական՝ իր արդիւնքովը եւ հետեւանքովը։

Սրանք դեռ խնդրի քաղաքական կողմն են։

Բայց քաղաքական շարժումները իրենց արտայայտութեան ծաւալով եւ խորութեամբ ոչ այլ ինչ են, եթէ ոչ՝ արդիւնաբար, թարգմանը, արտայայտիչը ցնցեւականի։ Ցեղաշրջող իսկական լծակը տնտեսականն է, քաղաքականը՝ նրա արտաքին ձեւը, կեղեւըն է։

Արդ, տնտեսական արտադրութեան բոլոր ճիւղերում Հայը աւելի քան առաւելակշիռ դեր է խաղացած Արեւելքում ընդհանրապէս, այսօրուայ Ռուսաստանում, Պարսկաստանում եւ Տաճկաստանում՝ մասնաւորապէս։

Եթէ քաղաքակրթութեան պատմութեան էութիւնը ընդհանուր աշխատանքի յաղթանակի արձանագրութիւնն է,— ապա Հայի բաժինը այդտեղ եղած է աւելի քան յարգելի։

Այժմ մի թեթեւ ակնարկ դէպի անցեալը։

Հայի հայրենիքը՝ Հայաստանը, հնուց ի վեր մի մեծ պողոտայ է եղած, ուրտեղ բոլոր քաղաքակրթութիւնները իրենց ալիքները հասցրել են։ Բոլոր հին քաղաքակրթութիւնների հետ, ինչպէս եւ ժամանակակից՝ Հայը շփուել, յարաբերել է։ Նա ազդուել է այդ քաղաքակրթութիւններից եւ իր միջավայրին յարմարեցնելով դարձել է նրանց ներկայացուցիչը, թէեւ համեստ շրջանի մէջ. այնպէս որ նա չի դադարել իր սեպհականը, իր ինքնուրոյնութիւնը ունենալուց, ընդհանուր այդ պայքարի եւ վերապրումի փոխ-յարաբերութիւնների մէջ։

Ասորա-Բաբելական, Եգիպտական, Պարսկական, Յունական և Հռովմէական քաղաքակրթութիւնները Հայքին անծանօթ չեն մնացել։ Նա ազդուել է նրանցից, եղել է նրանց համեստ ներկայացուցիչը՝ թէ՛ իր հայրենիքի սահմանների մէջ և թէ՛ իր անմիջական հարեւանների մօտ։

Իսկ թէ քաղաքակրթական տեսակէտով՝ այդ փոքրիկ ազգը ո՛րքան նպաստել է Ասորա-Բաբելական, Պարսկական, Հռովմէական և Բիւզանդական բռնապետութիւնների անկմանը, այս էլ խնդրի մի ուրիշ կողմըն է։ Սրանք բոլորը խնդիրներ են, որոնց մասին հաստատուն տեղեկութիւններ միայն կան այս ու այն կողմ ցրուած։ Համագրութիւնը դժբախտաբար դեռ չկայ։

Որ հայը, որպէս ճնշուող ազգ, նպաստել է իշխողների անկմանը, այդ մասին էլ շատ փաստական տեղեկութիւններ կան և ապացոյցներ չեն պակասում։

Խնդրի մի այլ կողմն էլ կայ։

Տիգրան Բ. ի օրօք, հայ ազգի քաղաքական ընդարձակութիւնը հասնում է իր գագաթնակէտին և յանկարծ ընկնում է. իշխում էր Ասիական բռնապետութիւնը իր ամբողջ տարածութեամբ. և նա յանկարծ տապալւում է։

Արդ, խնդիր է թէ հայ ազգի տիրապետող դասակարգը ո՞րքան նպաստեց իր սեփական ազգից յառաջացած տիրապետողի դասակարգային պետութեան անկմանը և խորտակմանը։ Քանի որ ամէն ազգի մէջ երկու դասակարգ կայ, իշխող և իշխուող, տիրող և տիրուող, շահագործող և շահագործուող, արտադրող և վայելող,— ուրեմն հայ իշխուող, տիրուող, արտադրող և շահագործուող դասակարգը հայ

ազգի առանձին պետութիւն կազմած ժամանակա-միջոցում, մ՞ր աստիճան նպաստել է ազգային այդ լծի անկմանը, և պայքարի ի՞նչ ձեւերով է նա աշխատել դէմ դնելու իր համարիւն տիրապետողների սանձարձակութիւններին: Ուրիշ խօսքով, Հայ պետութեան քայքայման պրոցեսի մէջ ի՞նչ դեր է խաղացել նոյն իսկ Հայը, դրսի ազդակները մի կողմ թողած, որոնք դեռ թէզեր են, որոնց նկատմամբ դըժբախտաբար շատ քիչ կամ բնաւ տուած-խօսուածներ կան: Այդ կողմից մի ընդարձակ խոպան դաշտ կայ, որ մշակութեան է սպասում:

Պ. Գ. Օզանեանը առաջիններից մէկն է, որ այս գրքոյկով և իր ուրիշ աշխատութիւններով ջանացած է վերլուծել, գտնել, ընդհանուր համադրութեան վերածել Հայի քաղաքակրթական դերը, սկզբից մինչև մեր օրերը: Նրա երիտասարդ գրչից մենք դեռ սպասելիքներ շատ ունենք, և «Հայուն Պատմական Դերը» գալիս է մեզ հաւատացնելու որ այդ ուղղութեամբ նա մեզ դեռ շատ երկեր ունի տալիք:

Մասնաւոր պարտականութիւն է յիշատակելը, որ Պ. Գ. Օզանեան առաջինն է, որ ժամանակակից Հայ Յեղափոխական Շարժումները կապած է Հայ քաղաքակրթութեան հետ և վրձինով մը ամբողջական համադրութիւն կազմած: Ու դրա համար էլ «Հայուն Պատմական Դերը» յանձնարարում ենք ջերմապէս՝ գրքի ջատագովականը իր իսկ էջերի մէջ գըտնելով:

12/25 Օգոստոս 1912
Կ. Պոլիս

Ս. ՍԱՊԱՀ-ԳԻՒԼԵԱՆ

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Եթէ անհրաժեշտ է բան մը ըսել, երկու խօսքով բացատրենք մեր նպատակը:

Ներկայ գործը պատրաստելու ատեն մենք նկատի ունէինք այն անգիտակցութիւնը, որ ունէր եւ ունի Նոր Սերունդը պատմական խնդիրներու նկատմամբ, եւ այն պէտքը՝ որ կը շեշտուէր Հայ Ցեղին պատմութիւնը իմաստասիրօրէն պարզաբանելու տեսակէտով: Մենք կը խորհինք թէ ազգի մը իսկական պատմութիւնը այն չէ, զոր կուտան դասագիրքեր՝ անուններու, դէպքերու եւ թուականներու յաջորդականութեամբ մը, այլ այն՝ որ կ'ընդգրկէ նոյն ցեղին պատմութեան մէջ տիրող ընդհանուր ոգին, ձգտումը եւ սեփական նկարագիրը, վերլուծելով պատմական բոլոր եղելութիւնները եւ անոնցմէ հանելով եզրակացութիւններ: Եւ այս իսկ ըմբռնումով ջանացինք փորձել անգամ մը Հայ Ցեղին պատմութեան վերլուծումն ու անոր փիլիսոփայութեան հասարակականացումը՝ կարելի եղածին չափ ժողովրդական լեզուով եւ համառօտակի.

Արեւմտահայ գրականութեան մէջ ասիկա նախափորձ կրնայ համարուիլ· Բաղձալի եւ օգտակար կը նկատենք որ Հայ Կեանքով հետաքրքրուող դէմքեր ջանային այս ուղղութեամբ ուսումնասիրել ու ծանօթացնել Հայկական Պատմութեան բազմապիսի երեսները, որպէսզի

Նոր սերունդը գիտակից կերպով ըմբռնէր այն մեծ գործը, որ կատարած է մեր կենսունակ ցեղը, դրական եւ բացասական գիծերով։

Պարտաւոր կը զգամ յիշատակել հոս թէ Հայապա-տումի պատրաստութեան ընթացքին մէջ աչքի առջեւ ունեցած եմ այս նիւթը շօշափող հայ եւ օտար հե-ղինակութիւններ եւ այլ եւ այլ թերթերու մէջ լոյս տե-սած յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ, որոնցմէ օգտուած եմ ամեն կերպով, ի հարկին մէջբերումներ ալ ընելով։

5/18 Յուլիս 1912 Գագիկ Օզանեան

Մարզուան

## ՁՕՆ

Զորս հարիւր տարիներէ ի վեր Հայ գրականութեան դաշտին մէջ քրտինք թափող անխոնջ եւ անձնուէր գրչի աշխատաւորներուն ու Կիւթէմպէրկի հոյակապ մեքենան Հայ ցեղին մտաւորական գործունէութեան ծառայեցնողներուն ։

ՀԵՂԻՆԱԿԸ

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՀԱՅՈՒՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԴԵՐԸ

Հայուն ծառայելը քաղաքակրթութեան ծառայել է։
ԿԼԱՏՍԹՕՆ

### I

*Ազգասիրական զգացումը.— Հպարտութիւնը ցեղերու մէջ.— Պատմական գիտակցութիւն.— Հայոց պարծենկոտութիւնը.— Պատմական մեծագործութիւններ.— Պատմական դերը՝ հայուն կեանքին մէջ:*

ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ զգացումը մարդուն մէջ շատ բնական գիծ մըն է ։ Դժուարաւ պիտի գտնէիք որեւէ մէկը, որ բնական անքակտելի կապով մը միացած չըլլար զինք արտադրող համայնքին հետ ։ Եթէ նիւթական ու բնական միջավայրը հայրենասիրական ա՛յնքան ջերմին զգացումներ կը ստեղծէ սրտին մէջ, ֆիզիքական ու բնական միջավայրն ալ շատ բնականօրէն պիտի գար արենակցական ու ազգասիրական բուռն զգացումներով տոգորել մարդը, որ ո՛չ մի-

այն իբրեւ իմացական էակ , այլեւ իբրեւ թա-գաւոր–կենդանի՝ բնազդական որոշ յատ-կանիշներ պէտք է ներկայացնէր այս տեսա-կէտով ։ Արտայայտութեան եղանակներն են միայն որ առաւել կամ նուազ կը մատնա-նշեն մէկու մը մէջ տիրող այս զգացումը եւ կամ կը զանազանեն ազգասիրական ըմ-բռնումները ։

Ի հարկէ կը հպարտանայ մարդ , երբ՝ բնական տրամադրութիւն եւ ձգտում զգա-լով հանդերձ դէպ ի իր հայրենիքն ու ցե-ղակիցները , զորս անպայման սիրելու ըս-տիպուած է կարծես , գիտակցութիւնը կ՚ու-նենայ թէ կը պատկանի ուշիմ , ընդունակ եւ առաջադէմ ժողովուրդի մը եւ պատուա-բեր ցեղի մը ։ Այս է պատճառը որ հայ ժո-ղովուրդը եւ իր զաւակները տարապայման հպարտութեամբ մըն է որ կը պարծենան իրենց ցեղին ընդունակութիւններովը , կը-րօնքովը , պատմութիւնովը ու աւանդու-թիւններով ։ Այս անմեղ հպարտութիւնը որեւէ ժողովուրդի մէջ աւելի ուժգին թափ կ՚առնէ՝ , համաձայն այն պատմական ուղիին , որուն մէջէն քալած է ազգ մը ։ Որեւէ ցե-ղի պատկանող անհատ մը աւելի խանդա-վառ հայրենասէր է՝ իր ցեղին պատմու-

թեան չողչողուն էջերովը, քան այն՝ որ կը պատկանի պատմական համեմատաբար աւելի աննշան ընթացք մը ունեցող ցեղի մը։ Ֆրանսացի ժողովուրդը աւելի հայրենասէր, աւելի՛ Ֆրանսացի է՝ իր պատկանած այդ մեծ ու փայլուն ցեղին պատմական սխրագործութիւններովը, քան սերպիացին կամ աֆղանը։ Ինչո՞ւ։ Արդեօք այս վերջինները ազգասէր չե՞ն։— Կարելի չէ ժխտել անոնց ազգասիրութիւնը, սակայն անոնք իրենց աչքին առջև չունին այն պատմական մեծ անցեալը, որ Ֆրանսացիի՛նն է, այն պատմական գիտակցութիւնը, որ Ֆրանսայի քալած ճամբէն կը շղթայուի իր զաւակներու սրտին հետ։

Ճիշդ այս կերպո՛վ է ահա որ Հայ ցեղին զաւակները անտանելի կերպով ազգամոլ եղած են։ Խօսէ՛ Հայոց Պատմութեան աւանդական մասը լաւ գիտցող հայու մը հետ, և պիտի տեսնես թէ անոր համար աշխարհիս վրայ Հայ ցեղէն աւելի բարձր, անկէց աւելի քաջ և կորիճ ազգ գոյութիւն չունի։ Ազգերու պատմութեան մէջ թատր եկող ո՛չ մէկ նշանակելի դէմք կամ մեծ դէպք կրնայ ան փոխել Հայ կեանքին մէջ ասպարէզ եկող դէմքերու և դէպքե-

րու մեծութեան ու հսկայականութեան հետ։ Անոր համար գերազանցօրէն ընդունակ ցեղը Հայն է, Հայ լեզուին պէս մեծավայելուչ լեզու չկայ, Հայուն եկեղեցիէն աւելի նուիրական սրբավայր չկայ, Հայուն բարքերուն պէս մաքուր բարք չկայ, իսկ Հայկական փառաւոր անցեալը որեւէ մեծ ազգի պատմութիւնը կրնայ ստուերել։ Հայերու այս կարծիքը շատ տարամերժական եւ միակողմանի է անշուշտ. վասնզի Քննական Պատմութիւնը, որ ամենէն անկեղծ փորձաքարն է անցեալի լուսաբանութեան, քիչ մը տարբեր բաներ կ՚ըսէ մեզի, թելադրելով որ չափաւորենք մեր ազգամոլութիւնը, ու ամեն առաջդիմութիւն, ընդունակութիւն եւ առաւելութիւններ չվերագրենք Հայ ցեղին։

Այսու հանդերձ որչափ ալ միակողմանի ըլլայ հայու մը պարծենկոտութիւնը՝ իր ցեղին մասին, գիտութիւնն ու պատմութիւնը կուգան հաստատել մեզ թէ արհամարհելի ժողովուրդ մը չէ եղած այս ազգը իր պատմութեան ընթացքին մէջ եւ ունեցած է անցեալ մը, որ իսկապէս կրնայ պատիւ բերել որեւէ ժողովուրդի։ Ամեն ազգերու պատմութիւն ալ արձանագրած է սեւ էջեր՝

իր ամենամաքուր երեսներուն քօղն իյներ։ Ու Հայ ցեղը չէր հարկաւ որ բացառութիւն պիտի կազմէր այս ընդհանուր օրէնքէն։ Մենք հոն,— Հայուն պատմութեան մէջ,— այո՛ կը գտնենք լաւագոյն ղեկավարներուն քով անկարողներ, դիւցազուններու քով դաւաճաններ, գիտակից կղերին քով անգիտակից հրէշներ, սակայն և այնպէս այս հակադրութիւնները՝ պատմութեան էութենէ՛ն իսկ յատուկ են որևէ ցեղի և անխուսափելի մասերն են ցեղային մըտայնութեան ու ըմբռնողութիւններու, մէկ խօսքով ցեղային հոգեբանութեան արտայայտութեան։ Մենք կը սխալէինք, եթէ մակերեսիկ կերպով դատէինք ազգի մը նըկարագիրը, որ, անհատի մը նման, կ՚ունենայ անպատճառ իր յանձնարարելի կամ դատապարտելի կողմերը։ Արդ, վճիռ տալ Հայուն նկարագրին մասին՝ մեր նպատակէն դուրս է բոլորովին, որովհետև այդ վճիռը պէտք է հիմնուած ըլլայ գիտական համբերատար ուսումնասիրութեան վրայ, մինչ մենք Հայ կեանքին տարբեր մէկ երեսով կ՚ուզենք զբաղիլ, երես մը՝ որ, մեր կարծիքով, Հայոց պատմութեան ամենէն յատկանշական մէկ մասը կը կազմէ, և ա-

ւելի դիտակցական հիմերու վրայ կը դնէ մեր ազգին ու ցեղին նկատմամբ մեր ունեցած սէրը։

Հայուն պատմական դե՛րն է որ զինքը կը դնէ աշխարհի Քաղաքակրթութեան Պատմութեան մէջ։ Եւ եթէ այսօր օտարազգի պատմագիրներ արժանաւորապէս վեր չեն հանած այս նահատակ ժողովուրդին անգնահատելի զոհողութիւնները, Քաղաքակրթութեան անունով, ատիկա պատճառ մը չէ սակայն թէ միշտ լռութիւն պիտի ըլլայ Հայուն բաժինը այդ մասին։ Անոր դերը՝ պատմութեան ընթացքին մէջ չատ հսկայական է։ Այդ դե՛րն է որ մեր պարծանքը պէտք է կազմէ. այլապէս աւանդական փայլուն յաղթութիւններու և մեր ազգասիրական զգացումները գգուող պատմութիւնները չեն որ ազգի մը մեծագործութիւնները կ՚ապացուցանեն։



# II

*Պատմութիւնը՝ փորձաքար.— Հայուն պատմական դերին ուսումնասիրութիւնը.— Ազգային եւ օտար պատմիչներ.— Խնդրոյն լուսաբանութեան հարկաւոր ատաղձը կա՞յ.— Լեզուաբանութեան ծառայութիւնը՝ Հայ Պատմութեան.— Հին Բեւեռագիրներ:*

Հայուն պատմական դերը, ազատ որեւէ նախապաշարումէ ու կանխակալ կարծիքէ, կարելի է ուսումնասիրել միմիայն քննական պատմութեան օժանդակութիւնով։ Վարպետ ոսկերիչը՝ ոսկիի մը արժէքն ու յարգը ճշդելու համար կը գործածէ առարկայ մը, որուն փորձաքար անունը կուտան։ Առանց անոր ապահովաբար շատ ու շատ պիտի խաբուէին մարդիկ։ Վերջին դարերուն մէջ կերպաւորուող Լեզուաբանութիւն կոչուած գիտութեան մէջ ալ նոյն երեւոյթը կայ։ Հնդ-Եւրոպական ծագում ունեցող լեզուներու համար Հնդիկներու Սանսքրիթ լեզուն փորձաքարի դերը կը կատարէ։ Միեւնոյն է նաեւ պատմութեան համար։ Պատ-

մական դէմքերէ ու դէպքերէ դիւրաւ կարելի է խաբուիլ ։ Փայլուն նկարագրութիւններ , հսկայական յաղթանակներու պատկերներ և պատմութեան կեղեւներ կրնան իրենց արտաքին չքեղ երեւոյթին տակ պահպանել ընդհանուր սնանկութիւնը ցեղի մը ։

Մանաւորելով Հայ կեանքին վրայ , անտարակոյս պէտք է նկատել թէ աւելի և աւելի ուսումնասիրելով Հայոց Պատմութիւնը , մենք աւելի առողջ և քննադատական աչքերով պիտի հետեւինք Հայկական Պատմութեան վրայ ։ Ճշմարտութիւն մ'է անժխտելի , թէ մենք , Հայերս , բաւարար չափով ուսումնասիրած չենք մեր ցեղին պատմութիւնը ։ Յաճախ երդում կ'ընենք մեր պատմական մեծ դէմքերուն անունով , սական և այնպէս մեզի կը պակսի պատմական խոր գիտակցողութիւնը՝ որպէս զի պատմութեան մէջ թատր եկող իւրաքանչիւր դէմք կամ երեւոյթ իր սեփական և որոշ ատրճանին մէջ տեսնենք ։ Մեր դպրոցներու մէջ Հայուն Պատմութեան դասը , որ մեծագոյն կազմակերպիչը պիտի ըլլար գեռատի ուսանողներու նկարագրին , եթէ անտես առնուած չէ՝ գէթ չաւանդուիր չատ

անգամ գիտական եղանակով։ Աւանդական պատմութիւնը, եթէ զրկուած ըլլայ գիտական օժանդակութիւնէ, կրնայ մոլորեցնել մեզ և հակառակ արդիւնք տալ։ Արհամարհելի թիւ մը չէ որ կը կազմեն այն պատանիները, որոնք Հայոց Պատմութեան առասպելական մասը իբր ճշմարիտ ուսանելէ վերջ, երբ օր մը՝ լսած են թէ պատմական հիմէ զուրկ է անիկա՝ հիասթափ եղած են բոլորովին։ Երեւակայեցէք երիտասարդ մը, որ Հայկին, Արամին, Արային և ուրիշ հայ Նահապետներու ու իշխաններու մեծագործութիւններովը սնած՝ անոնց մէջ խտացած տեսնէ Հայկազուններու պատմութիւնը և ահա օրին մէկը իրեն ըսեն թէ ատոնց բոլորը առասպելական դէմքեր են և առնուազըն գիտական արժէքէ զուրկ պատմուածքներ։ Մինչդեռ, եթէ այդ երիտասարդը կամ պատանին ուսման նոյն ճիւղին մէջ լաւ պատրաստուած ըլլար՝ ան ա՛յնքան հիացումով պիտի ուսումնասիրէր այդ առասպելներն ալ, ինչպէս պիտի ընէր՝ զանոնք իրական ընդունելով։ Ինչ որ ալ ըլլայ հայ ազգագրական և աւանդական այդ փշուրներու գիտական արժէքը, ո՛րքան ալ արհամարհելի ըլլան անոնք գիտունին անողոք

դատաստանին առջեւ, պատմական տեսակէտով, երբեք իրենց արժէքը չեն կորսնցներ, երբ ազգագրական ու բանահիւսական հայեացքով կը մօտենանք անոնց։ Այո՛, կրնան անոնք նախապատմական Հայ Պատմութիւնը լուսաբանելու համար անբաւական նկատուիլ բոլորովին, կրնան ջրուիլ չօշափելի փաստերով և գիտութեան փորձաքարովը գործող գիտունին կողմէն, բայց չեն կրնար մեր սիրտերէն հեռանալ։ Մենք, այն ատեն, ցաւելով հանդերձ որ պատմա-գիտական արժէք մը չեն ներկայացներ անոնք, բանահիւսական և ազգագրական ըմբռնումներով կը մօտենանք։ Եւ արդեօք նոյնքան հրաշալի չե՞ն այդ թանկագին փշուրները այդ տեսակէտով։

Ահա թէ ինչո՛ւ Հայոց պատմութեան ընթացքին մէջ՝ ուսումնասիրութեան արժանի բազմաթիւ կէտեր կը նշմարենք։ Ու եթէ հոս կը յիշենք ազգ. պատմութեան դասին աւանդման խնդիրը, ըսել կուզենք պարզապէս թէ հայ տղուն կամ պատանին իր պզտիկ տարիքէն իսկ գիտնալու է թէ պատմութեան ո՛ր մասը ի՛նչ արժէքով պիտի ըմբռնենք։ Այս անհասկցողութեան արդիւնքն է այն բուռն ատելութիւնը, զոր հայ

պատմիչներ երբեմն կը մոռցանեն մեր անզուգական քերթողահայր — պատմահօր Մովսէս Խորենացիին նկատմամբ։ Անոնք, — դեռահասները, — երկար ատեն օրօրուած ըլլալով հայկական առաջին փառքի շողշողուն երազներովը, երբ յանկարծ օր մը գիտութեան ու քննադատութեան ձայնին ականջ դրած են, իրենց խաբուած ըլլալը դառնապէս զգացած՝ ուզած են Խորենացիին դատապարտել՝ իբրեւ զիրենք շահագործող, խարդախ, խաբեբայ և այլն։ Մինչդեռ ենթադրելով նոյն իսկ որ Խորենացիի պատմութիւնը սխալներով լի է, Հայ ազգին անցեալի հարազատ ու անկեղծ արտայայտիչը չէ և հաւաքածոյ մըն է ասդիէն անդիէն գողցուած, ժողովուրդին բերնէն խլուած և մասամբ մըն ալ ինքնահնար հէքեաթներու, արդեօք անիկա կը դադրէ՞ր մեզի համար շահեկան ըլլալէ և անոր անզուգական հեղինակը կը դադրէ՞ր հայ ցեղին մտաւորականութեան փայլուն մէկ ներկայացուցիչն ըլլալէ։ Չէ՞ որ Խորենացի միակն է իր տեսակին մէջ, որ, այնպէս թէ այնպէս, բաներ մը կ՚ըսէ Հայ ազգին անցեալին մասին, որ, առաւել կամ նուազ հարազատութեամբ՝ հայկական առասպել-

ներն ու նախապատմական աւանդութիւն-
ները կը շարայարէ, որ աքանչելի բանա-
հաւաքի մը և չքնաղ վիպողի մը տաղանդը
ցոյց կուտայ դէթ։ Գրագէտ Խորենացին
հիանալի չէ՞ք գաներ՝ իր յաջող կտորներուն
մէջ։ Եթէ իր ծերութեան օրերուն չպա-
տահէր հռչակաւոր Պատմութեան հեղինա-
կութեան գործը և անճապարանքով չերկնէր,
հրաշակերտ պիտի ըլլար՝ պարզապէս։

Մեր ցեղին պատմութեան մասին հայ թէ
օտար պատմիչներ շատ մը բաներ ըսած են։
Ազգ. պատմիչներու գործերը շատ աւելի
արժէք պիտի ունենային, եթէ քիչ մը վեր-
լուծական, ուսումնասիրական ու գիտա-
կան ոգիով գրուած ըլլային։ Հայ պատմող-
ներ ընդհանրապէս նկարագրողներ եղած
են, առանց ծանրանալու պատմական դէպ-
քերու հոգեբանութեանը վրայ։ Մէկ կողմ
թողլով պահ մը հին պատմութիւնը, գէթ
Դ. դարէն վերջ հարազատ պատմութիւն
մը կրնայինք ունենալ, ուր պայծառօրէն
ցոլանար Հայկական Քաղաքակրթութիւնը,
որուն մասին շատ քիչ բան գիտենք դըժ-
բաղդաբար։ Ագաթանգեղոս, Փաւստոս
Բիւզանդ, Կորիւն, Փարպեցի, Խորենացի,
Եղիշէ և այլն իրենց ժամանակակից պարի

կրօնաւորիս պատմիչներու հետեւած են կարելի է ըսել, — ըսել կ՚ուզենք անոնց յականիչները ցոյց տուած են՝ առանձնական ինքնատպութեան և գրչի արժանաւորութեան հետ մէկտեղ ։ Այնուհետեւ ալ Հայկական Մատենագրութեան բանթէոնին մէջ մտնող պատմագիրները հետեւողական եղած են առհասարակ ։ Վերջապէս Հայոց ազգին պատմութեանը անունով հրապարակ եկող բոլոր պատմիչներն ալ ըլլալով հանդերձ սքանչելի նկարագրող, հիւսող, զուրկ գըտնուած են ճշմարիտ պատմագրութեան մէկ քանի էական համարուած պահանջներէն ։ Չկայ սակայն անոնց մէջ որեւէ մէկը, որ որչափ հոյակապ՝ նոյնքան ալ իրմով շատ զբաղեցուցած և անարգուած ըլլայ, քան Մովսէս Խորենացին, որուն երկու անխիղճ քննադատներուն՝ գերմանացի Գուտշմիտին և ֆրանսացի Գարիէրին իրենց ձայնը միացուցին Գարագաշեան և Մ. Էմին ։ Առաջինը սպաննեց անոր ամբողջ հեղինակութիւնը, վերջինն ծայր անարգական լեզուով մը և խիստ յարձակումով մը ։ Անշուշտ ատոր գլխաւոր պատճառներէն մին այն էր որ Խորենացի միակն ըլլալով գրած էր առաջին անգամ Հայուն հայրենի աւանդու-

թիւնովը և Խորենացիին տեղ ուրիշ որևէ մէկն ալ նոյն յարձակումներուն պիտի ենթարկուէր, եթէ փորձէր նման գործ մը արտադրել ։

Շատ երկար պիտի ըլլար միառմի թուել մեր բոլոր ազգային պատմագիրները և վերլուծել անոնց գործերը ։ Խորենացիով բացառապէս չզբաղիլ անհնար էր ։

Օտար հեղինակներ առհասարակ բարեացակամ չեն եղած Հայոց պատմութեան վերաբերմամբ, մանաւանդ անոնք, որ Խորենացիով սորված են մեզ, ա՛յն գերազանց պատճառով որ Հայերը իրենց պատմութեան գրեթէ բոլոր ընթացքին մէջ ինքնուրոյն, ազդող դեր մը չեն ունեցած, և միշտ նախընտիր համարած են դրացիներու փէշին տակ մտնել և իբրեւ զինակից գործել ։ Երկար ատեն օտարներ մեզ պարսիկ նկատած են ։ Նոյն իսկ Քսենոփոն հայ բարքերը նկարագրած ատեն կը հաստատէ թէ կիները պարսկերէն կը խօսէին ։ Հազիւ երբեմն ապարէզ եկած են զօրեղ անհատականութիւններ, որոնք բացառիկ դեր տուած են Հայուն, ինչպէս, զոր օրինակ Մեծն Տիգրան, այսուհանդերձ դժուար չէ հասկնալը թէ Հռովմէական բանակը դողացնող այդ Տիգրանը՝ Միհրդատին

կրթնած էր վերջապէս։ Եթէ հայերը քիչ մը աւելի խիզախօրէն թատր գային պատմութեան ընթացքին մէջ, և քիչ մը աւելի որոշ գործունէութեամբ մը իրենց գոյութիւնը պատմէին, անշուշտ օտար Հայապատումները շատ պիտի ըլլային։ Սակայն դժբախտաբար այդպէս չէ եղած։ Զոհեր, զոհողութիւններ, դիւցազնութիւններ շատ կան մեր պատմութեան մէջ, բայց ատոնք տիրական, յաղթաբերական խրոխտ ձգտում մը չունին կարծես, այլ՝ աւելի ինքնապահպանողական շատ զօրաւոր ոգիի մը արտայայտութիւնը։

Այս բոլորին հետ մէկտեղ միշտ հետաքըրքրական են վկայութիւնները հին ու նոր օտար պատմիչներուն, որոնք բան մը ըսած են հայոց վերաբերմամբ։

Շահեկան են մանաւանդ հինները, Քսենոփոն, Հերոդոտոս, Ստրաբոն և նորերէն Մոմզէն, Թէոդոր Րէյնաք, մանաւորապէս անգլիացի Հ. Ֆ. Բ. Լինչ, որուն «Արմենիա» անուն պատկերազարդ և քորախաւոր երկահատոր հսկայ գործը չքնաղ յիշատակարան մըն է հայ կեանքին համար։ Մոմզէն մանաւորապէս կը գրաւէ Տիգրանով և՝ կը դատափետէ զայն՝ արեւմըտեան քաղաքակրթութեան դէմ մար-

տունչող իր ոգիին համար, գեղեցկօրէն նը-
կարագրելով միևնոյն ատեն Հայաստանին ու-
պետութեան փառքը։ Քսենոփոն (Ք. Ա.
435-359) Սոկրատի աշակերտներէն է և զօ-
րավար. որ իր «Անաբասիս» («Արշաւանք»)
անուն գործին Դ. մասին մէջ գլխաւորապէս
կը նկարագրէ հայերը՝ պարսկաստանի արշա-
ւանքէն դարձած ատեն Հայկական նահանգ-
ները հանդիպած ըլլալով։ Քսենոփոնի տը-
ւած տեղեկութիւնները, թէև քանակով քիչ,
բայց որակով շատ թանկագին են, վասըն-
զի Խորենացիին պակասն է որ իրմով կը
լրանայ։ Արժէքաւոր են նոյնպէս Հայոց
առևտուրին, վաճառականութեան և առ-
հասարակ արևելքի քաղաքակրթութեան
մասին տուած տեղեկութիւնները յոյն նշա-
նաւոր պատմիչներէն մէկին, Հերոդոտոսի
(484-420)։ Թէոդոր Ռէյնաք մասնաւորա-
պէս ծանրացած է Մեծն Տիգրանի և Միհր-
դատի գործերուն վրայ և ամէն ճիգով ջա-
նացած է պզտիկցնել Տիգրանը, զայն ներ-
կայացնելով բռնապետական սոսկ տիպար
մը, և անարգել հայ ժողովուրդը, հակա-
կրելի տարր մը ճանչցնելով զայն։ Անշուշտ
ատոնցմով չըլմնար չարքը օտար դէմքե-
րուն, որոնք հետաքրքրուած ըլլան հայե-

րու կեանքով, պատմութեամբ ու քաղաքակրթութեամբ: Այնու ամենայնիւ քննութեան առարկայ դարձնելով հայ և օտար պատմաբանները, որոնք հայ կեանքին հետեւած են, և ուսումնասիրելով Քաղաքակրթութեան Պատմութիւնը, մենք շատ դիւրաւ պիտի որոշենք Հայուն կատարած դերը Քաղաքակրթութեան Պատմութեան թատերաբեմին վրայ: Հին պատմութիւնը մանաւանդ մեծ առաղձ չատր այս մասին. բայց Քրիստոնէութենէն վերջ աղբիւրները կը բազմապատկուին:

Օտարազգի հին հայապատում պատմիչներուն գլուխը կը կենայ անշուշտ Մար-Իբաս Կատինա, որ գլխաւորագոյն աղբիւրըն ու հերոսն՝ է Խորենացիի գործին: Ամենէն աւելի անոր Նինուէէն բերած պատմութիւնն է որ մեր պատմահօր հիմը կազմած է, և հետեւաբար ալ Խորենացիին հետ քննականօրէն պէտք է քննադատուէր Մար-Իբասն ալ, իբրև չինծու ենթադրական անձնաւորութիւն մը, յօրինուած Խորենացիին կողմէ՝ իր պատմական գործին արժէքը բարձրացնելու համար: Յոյն, Հռովմէացի, Արաբ և Ասորի պատմիչներ ալ գտնուած են, որոնք Հայոց պատմութեան վերաբեր-

եալ ինչ ինչ ակնարկութիւններ ըրած են։
Քրիստոնէութենէն վերջ Հայոց Պատմու-
թիւնը կ՚ունենայ բնիկ պատմիչներ, որոնք
բաւական ճշգրիտ տեղեկութիւններ կու-
տան։ Ասոնց ամենագլխաւորներն են Եղի-
շէ, Ղազար Փարպեցի, Կորիւն, Յովհան
Մամիկոնեան, Ղեւոնդ Երէց, Շապուհ
Բագրատունի, Թովմա Արծրունի, Արիստա-
կէս Լաստիվերտցի, Սամուէլ Երէց, Վար-
դան վարդապետ, Հեթում պատմիչ, Առա-
քել Դաւրիժեցի և այլն։ Ազգային պատմիչ-
ներու ցանկը հսկայով մը կըսկսի կարելի է
ըսել, — Խորենացիով, — և հսկայով մըն ալ
կը վերջանայ, վերջին երկու դարերու եր-
կրորդական դէմքերը հաշիւի չառնելով։
Հ. Միքայէլ Չամչեանն է այդ նորագոյն
հայ Խորենացին, Վենետիկի Մխիթարեան-
ներէն հոյակապ դէմք մը, որ եռանդոտ
երկարաշունչ գործի մը մէջ խտացուցած է
մինչև իր ժամանակի պատմիչներուն տը-
ւած տեղեկութիւնները։ Քննական պատ-
մութիւնն իր ըսելիքներն ունի անոր հա-
մար, որովհետև գիտական և քննական ո-
գիէ զուրկ է Չամչեան, և, ինչ որ ամենէն
դատապարտելին է, կաթոլիկ և միակող-
մանի հայեացքով գրած է իր գործը, սակայն

և այնպէս միակ աշխատութիւնն է, որ դարերու պատմութիւնները ու պատմիչները իր մէջ կ'ամփոփէ։ Այս մասին Ալիշանը մոռնալ ոճիր էր։ Բնական պատմութեան առաջին փորձն ըրած է մեր մէջ Ա. Մ. Գարագաշեանը, որուն քառահատոր Քննական Պատմութիւնը եթէ գիտութեան խղճամիտ ներկայացուցիչը չէ՝ դէթ գնահատելի անդրանիկ փորձ մ'է։

Օտար պատմիչներու մասին խօսուած ժամանակ կ'արժէ յիշել թէ՝ շնորհիւ Լեզուաբանութեան և Հայագիտութեան, վերջին դարերու մէջ այլ և այլ գիտուններ ևս հետաքրքրուած են հայերու անցեալով ու ներկայով։ Մեր Նախնեաց Մատենագրութեան մէկ մասին օտար լեզուներու թարգմանութիւնը նոյն բանը կ'ապացուցանէ արդէն։ Այսպէս, Վիքթոր Լանկլուա, Էտուարտ Տիւլորիէ, Սէն-Մարդէն, Բէտէրմէն, Ֆրէտ. Միւլլէր, Ն. Մառ, Բրոֆ. Հիւպշման, Բրոֆ. Մէյեէ ևայլն թանկագին ծառայութիւններ մատուցած են Հայ Պատմութեան՝ մէկ կողմէ լեզուն ուսումնասիրելով և միւս կողմէ Հայ Պատմութիւնը ճանչցնելով Եւրոպայի։

Հին բեւեռագիրերն ալ իրենց շահեկա-

նութիւնն ունին Հայոց Պատմութեան տե-սակէտով։ Գրութեան վերջին խօսքն այն է որ ատոնք կը բաղկանան 400ի չափ տառերէ։ Հայաստանի մէջ Ոսկեդարէն առաջ թեւեռագիրներ կային՝ ասուրերէն, հին պարսկերէն, չօչերէն, բաբելոներէն եւայլն։ Սակայն ատոնց մէկ մասն անընթեռնլի մնաց։ Աքամենեան թագաւորներու կողմէ գրուածները, ինչպէս նաեւ ուրիշներ Հայոց մասին ակնարկութիւններ ըրած են՝ խօսելով մեր Նախնական Հայրենիքին, Ուրարտուին կամ Ուրաշտուին նկատմամբ։

# III

*Արեւելքի քաղաքակրթութիւնը.— Հայոց Պատմութիւնը եւ Արեւելեան Խնդիրը.— Հայերու Նոր Հայրենիքը.— Հայկական միջավայր եւ աշխարհագրական դիրք.— Հնդեւրոպական ցեղ մը, որ ապականութեան զինուոր կ'ըլլայ.— Պատմական ապացոյցներ.— Արեւելականութեան ներկայացուցիչներ.— Արեւմտեան քաղաքակրթութիւնը եւ իր արտայայտիչները:*

Քաղաքակրթութեան Պատմութիւնը եկած հաստատած է թէ Միջերկրական ու Կարմիր ծովերու ափերը առաջին հանդիսատեսները եղած են մարդկային քաղաքակրթական գործին և թէ Ասիոյ ցամաքն է որ միշտ առաջընթացն եղած է պատմութեան ու կրօնական գործունէութեան մէջ։ Ամենահին ժամանակներու մէջ երբ արդի Եւրոպական Քաղաքակրթութիւնը չկար, և ներկայիս մէջ իրենց մշակութական (culture) առաջդիմութիւնովը պարծեցող Եւրոպացիները բարբարոսութեան մէջ կ'ապրէին, անդին Ափրիկէի հիւսիսային արեւելեան կողմը Նուբիական Նեղոսի պատուական ե-

զերքներուն վրայ հիմնուած Եգիպտական կայսրութիւնը՝ ծաղկեալ քաղաքակրթութիւն մը կը ներկայացնէր ։ Այլ և այլ գիտութիւններ բաւական առաջ գնացած էին այդ երջանիկ երկրին մէջ ։ Նոյն իսկ պատմութեան մէջ առաջին անգամ յիշատակուող կինը, Եգիպտացի ուսուցչուհի-գիտուն մըն էր, Հիւպաթիա կոչուած ։ Այնուհետև հետզհետէ զօրացող ու տիրապետութիւններ ստեղծող պետութիւնները եղան նոյնպէս արեւելեան կամ ասիական ինքնակալութիւններ, ինչպէս Ասորեստանի, Բաբելաստան, Մարաստան ու Պարսկաստան ։ Աշխարհիս վրայ տարածուած կրօններու հիմնադիրներն ալ ասիացի են, Յիսուս Նազովրեցին, Մուհամմէտը, Սաքիա-Մունին և Կոմփիւկիուսը ։ Քաղաքակրթութիւնը ուրեմն, Ասիայէն անցած է Եւրոպա, նախ Յունաստան, ապա Հռոմ և ապա Եւրոպայի զանազան կողմերը ։

Միևնոյն արմատէն ու ծագումէն սերած այս Քաղաքակրթութիւնը սակայն՝ տարբեր տարբեր յատկանիշներով հանդէս եկաւ, այնպէս որ Ասիա ու Եւրոպա, կամ ուրիշ բառերով Արևելք և Արևմուտք իրենց Քաղաքակրթութիւններու ուրոյն հանգամանք-

նէրով հակամարտ հոսանքներ դարձան և ընդդիմադրական անհեղ ոյժեր ստեղծեցին։ Պայքարը, որ սկսաւ այս երկու հոսանքներուն կամ ձգտումներուն մէջ, անշուշտ չունէր այն իմաստը, զոր ունեցաւ ապա իրերու և դէպքերու բնական հետեւանքով։ Պետական ազգեցութեան և պարզ տիրապետութեան խնդիր էր նախ առիկա, բայց վերջր հետզհետէ դարձաւ սկզբունքի, Քաղաքակրթութեան և ձգտումներու խնդիր, այնպէս որ Արեւելքի և Արեւմուտքի այս կռիւը արիւնոտ ու կարմիր սոսկալի բաղխումներ առաջացուց։

Արեւելեան Խնդի՛րն էր ահա որ սկսած էր։ Եւ շատ բնական էր որ առաջին բաղխումը պիտի սկսէր հոն, ուր այս երկու հոսանքները կը մօտենային իրարու։ Ա՛յդիսկ պատճառով Փոքր Ասիան դարձաւ առաջին մարտավայրը Արեւելքի ու Արեւմուտքի կարմիր ընդհարումներուն։ Փոքր Ասիա, ո՛չ միայն առաջին ռազմադաշտն ըլլալու սահմանուած էր, այլ և իր աշխարհագրական դիրքով, շատ բնականօրէն վերածուեցաւ՝ Արեւելեան և Արեւմտեան քաղաքակրթութիւններու հսկայական բաղխումի աւանդական գլխաւոր թատերավայ-

րին։ Թղթատելով և ուսումնասիրելով Պատմութիւնը՝ նոյն ճշմարտութիւնը դիւրին պիտի ըլլայ հաստատել, որովհետև Արևելք և Արևմուտք որո՛ւ միջոցաւ ալ որ ներկայանան, Ցոյներու թէ Հռովմէացիներու, Ասորեստանցիներու, Պարսիկներու թէ Հայերու, իբրև ժամադրավայր կամ անցք՝ Փոքր Ասիոյ հողը չահագործած են։ Եւ իսկապէս՝ այս ցամաքին աշխարհագրական դիրքը զինքը տեղաւորած ըլլալով Եւրոպայի ու Ասիոյ ճամբուն վրայ, Փոքր Ասիա չէր կրնար զերծ մնալ այն արհաւիրքներէն, որոնք առաջ եկան Արևելքի ու Արևմուտքի նախ տիրապետութեան, ազդեցութեան պայքարէն և ապա քաղաքակրթութեան ու ձգտումներու հակադրութենէն։

Երբ կըսկսէր Արևելեան Խնդիրը, հայերը, արևմուտքէն, ըստ ոմանց Փռիւգիայէն, մեկնած ըլլալով, խաղաղ գործունէութեամբ և խոհեմ առաջխաղացութեամբ տակաւ տէր կը դառնային Նախահայաստանի, անաղմուկ կերպով։ Այս լուռ տիրապետութիւնը գուցէ աննշմար չանցնէր՝ եթէ տիրական հզօր ձգտումի մը բացակայութիւնը և հովուական անմեղ յատկու-

թիւններ ունեցող ուշիմ ժողովուրդի մը այս յուշիկ գնացքը աստիճանական թափով մը տեղի չունենար։ Հայերու Նոր Հայրենիքին, Հայաստանի կը վերածուէր Ուրարտու այս կերպով, և պատմական զարգացման ճամբով Հայ ինքնութիւնը, թէև հետևողական, Փոքր Ասիոյ ցամաքին վրայ կը ցցուէր։ Գիտութիւնը Հայոց ծագման մասին իր վերջին խօսքը տակաւին ըսած չըլլալով հանդերձ՝ պատմական ապացոյցները Հայոց Փոքր Ասիոյ մէջ ունեցած գոյութիւնը կը հաստատեն։ Այս մասին Ս. Գրոց յիշատակութիւններն ալ հետաքրքրական են։ Հոն կը յիշատակուի Ասորեստանի Սենեքերիմ թագաւորին երկու հայրասպան տղոցը Ադրամելէքին և Սանասարին փախուստը դէպի Արմենիայի լեռները (Աստուածաշունչ, Դ. Թագաւորաց, ԺԹ. գլ. 37)։ Երեմիա մարգարէն Բաբելոնի առման մէջ հայերու յիշատակութիւնը կ'ընէ (Երեմիայի մարգարէութիւն, ԾԱ. գլ. 27 համար)։ Այս յիշատակութիւններէն առաջինը հայ դիւցազնավէպերուն մէջ ալ կ'երևայ (*)։ Ս. Գրոց այս յիշատակու-

(*) Այդ պարագան կը պատմէ «Սասմայ Ծռեր» կոչուած Հայկական վիպասանութիւնը, որ չորս մա-

ներն ու նախապատմական աւանդութիւնները կը շարայարէ, որ սքանչելի բանահաւաքի մը և չքնաղ վիպողի մը տաղանդը ցոյց կուտայ դէթ։ Գրագէտ Խորենացին հիմնալի չէ՞ք գտներ՝ իր յաջող կտորներուն մէջ։ Եթէ իր ծերութեան օրերուն չպատահէր հռչակաւոր Պատմութեան հեղինակութեան գործը և աճապարանքով չերկնէր, հրաշակերտ պիտի ըլլար պարզապէս։

Մեր ցեղին պատմութեան մասին հայ թէ օտար պատմիչներ շատ մը բաներ ըսած են։ Ազգ. պատմիչներու գործերը շատ աւելի արժէք պիտի ունենային, եթէ քիչ մը վերլուծական, ուսումնասիրական ու գիտական ոգիով գրուած ըլլային։ Հայ պատմողներ ընդհանրապէս նկարագրողներ եղած են, առանց ծանրանալու պատմական դէպքերու հոգեբանութեանը վրայ։ Մէկ կողմ թողլով պահ մը հին պատմութիւնը, գէթ Դ. դարէն վերջ հարազատ պատմութիւն մը կրնայինք ունենալ, ուր պայծառօրէն ցոլանար Հայկական Քաղաքակրթութիւնը, որուն մասին շատ քիչ բան գիտենք դըժբաղդաբար։ Ագաթանգեղոս, Փաւստոս Բիւզանդ, Կորիւն, Փարպեցի, Խորենացի, Եղիշէ և այլն իրենց ժամանակակից պատրի

կրօնամիտ պատմիչներու հետեւած են կա-րելի է ըսել, — ըսել կ'ուզենք անոնց յառա-կանիչները ցոյց տուած են՝ առանձնական ինքնատպութեան և գրչի արժանաւորու-թեան հետ մէկտեղ։ Այնուհետև ալ Հայկա-կան Մատենագրութեան բանթէոնին մէջ մտնող պատմագիրները հետեւողական եղած են առհասարակ։ Վերջապէս Հայոց ազգին պատմութեանը անուանով հրապարակ եկող բոլոր պատմիչներն ալ ըլլալով հանդերձ սքանչելի նկարագրող, հիւսող, զուրկ գտնուած են ճշմարիտ պատմագրութեան մէկ քանի էական համարուած պահանջներէն։ Չկայ սակայն անոնց մէջ որևէ մէկը, որ որչափ հոյակապ՝ նոյնքան ալ իրմով շատ զբաղեցուցած և անարգուած ըլլայ, քան Մովսէս Խորենացին, որուն երկու անխիղճ քննադատներուն՝ գերմանացի Գուտշմիտին և ֆրանսացի Կարիէրին իրենց ձայնը միա-ցուցին Կարագաշեան և Մ. Էմին։ Առա-ջինը սպաննեց անոր ամբողջ հեղինակու-թիւնը, վերջինն ծայր անարգական լեզուով մը և խիստ յարձակումով մը։ Անշուշտ ա-նոր գլխաւոր պատճառներէն մին այն էր որ Խորենացի մինակն ըլլալով զբաղած էր առաջին անգամ Հայուն հայրենի աւանդու-

թիւնովը և Խորենացիին տեղ ուրիշ որևէ մէկն ալ նոյն յարձակումներուն պիտի ենթարկուէր, եթէ փորձէր նման գործ մը արտագրել։

Շատ երկար պիտի ըլլար մէկառմէկ թուել մեր բոլոր ազգային պատմագիրները և վերլուծել անոնց գործերը։ Խորենացիով բացառապէս չըզբաղիլ անհնար էր։

Օտար հեղինակներ առհասարակ բարեացակամ չեն եղած Հայոց պատմութեան վերաբերմամբ, մանաւանդ անոնք, որ Խորենացիով սորված են մեզ, ա՛յն գերազանց պատճառով որ Հայերը իրենց պատմութեան գրեթէ բոլոր ընթացքին մէջ ինքնուրոյն, ազդող դիրք մը չեն ունեցած, և միշտ նախընտիր համարած են դրացիներու փէշին տակ մտնել և իբրև զինակից գործել։ Երկար ատեն օտարներ մեզ պարսիկ նկատած են։ Նոյն իսկ Քսենոփոն հայ բարքերը նկարագրած ատեն կը հաստատէ թէ կիները պարսկերէն կը խօսէին։ Հազիւ երբեմն ասպարէզ եկած են զօրեղ անհատականութիւններ, որոնք բացառիկ դիրք տուած են Հայուն, ինչպէս, զոր օրինակ Մեծն Տիգրան, այսուհանդերձ դժուար չէ հասկնալը թէ Հռովմէական բանակը դողացնող այդ Տիգրանը՝ Միհրդատին

կրթնած էր վերջապէս։ Եթէ հայերը քիչ մը աւելի խիզախօրէն թատր գային պատմութեան ընթացքին մէջ, և քիչ մը աւելի որոշ գործունէութեամբ մը իրենց գոյութիւնը պաստմէին, անշուշտ օտար Հայոպատումները շատ պիտի ըլլային։ Սակայն դժբաղդաբար այդպէս չէ եղած։ Ջոհեր, զոհողութիւններ, դիւցազնութիւններ շատ կան մեր պատմութեան մէջ, բայց ատոնք տիրական, յաղթարերական խորին ձգտում մը չունին կարծես, այլ՝ աւելի ինքնապահպանողական շատ զօրաւոր ոգիի մը արտայայտութիւնը։

Այս բոլորին հետ մէկտեղ միշտ հետաքրքրական են վկայութիւնները հին ու նոր օտար պատմիչներուն, որոնք բան մը ըսած են հայոց վերաբերմամբ։

Ծանեկան են մանաւանդ հիները, Քսենոփոն, Հերոդոտոս, Ստրաբոն և նորերէն Մոմզէն, Թէոդոր Րէյնաք, մանաւորաբար անգլիացի Հ. Ֆ. Բ. Լինչ, որուն «Արմենիա» անուն պատկերազարդ և քարտիսաւոր երկահատոր հսկայ գործը չքնաղ յիշատակարան մըն է հայ կեանքին համար։ Մոմզէն մասնաւորաբար կը զբաղի Տիգրանով և՝ կը դատափետէ զայն՝ արեւմտեան քաղաքակրթութեան դէմ մար-

տենչող իր ոգիին համար, գեղեցկօրէն նը-
կարագրելով միևնոյն ատեն Հայաստանին ու-
պետութեան փառքը։ Քսենոփոն (Ք. Ա.
435-359) Սոկրատի աշակերտներէն է և զօ-
րավար. որ իր «Անաբասիս» («Արշաւանք»)
անուն գործին Դ. մասին մէջ գլխաւորապէս
կը նկարագրէ հայերը՝ պարսկաստանի արշա-
ւանքէն դարձած ատեն Հայկական նահանգ-
ները հանդիպած ըլլալով։ Քսենոփոնի տը-
ւած տեղեկութիւնները, թէև քանակով քիչ,
բայց որակով շատ թանկագին են, վասըն-
զի Խորենացիին պակասն է որ լրմով կը
լրանայ։ Արժէքաւոր են նոյնպէս Հայոց
առևտուրին, վաճառականութեան և առ-
հասարակ արևելքի քաղաքակրթութեան
մասին տուած տեղեկութիւնները յոյն նշա-
նաւոր պատմիչներէն մէկին, Հերոդոտոսի
(484-420)։ Թէոդոր Ռէյնաք մասնաւորա-
պէս ծանրացած է Մեծն Տիգրանի և Միհր-
դատի գործերուն վրայ և ամեն ճիգով ջա-
նացած է պզտիկցնել Տիգրանը, զայն ներ-
կայացնելով բռնապետական ստոր տիպար
մը, և անարգել հայ ժողովուրդը, հակա-
կրելի տարր մը ճանչնալով զայն։ Անշուշտ
ատոնցմով չըմնար շարքը օտար դէմքե-
րուն, որոնք հետաքրքրուած ըլլան հայե-

րու կեանքով, պատմութեամբ ու քաղաքակրթութեամբ ։ Այնու ամենայնիւ քննութեան առարկայ դարձնելով հայ և օտար պատմաբանները, որոնք հայ կեանքին հետեւած են, և ուսումնասիրելով Քաղաքակրթութեան Պատմութիւնը, մենք շատ դիւրաւ պիտի որոշենք Հայուն կատարած դերը Քաղաքակրթութեան Պատմութեան թատերաբեմին վրայ ։ Հին պատմութիւնը մանաւանդ մեծ առաղձ չափ այս մասին. բայց Քրիստոնէութենէն վերջ աղբիւրները կը բազմապատկուին ։

Օտարազգի հին հայապատում պատմիչներուն գլուխը կը կենայ անշուշտ Մար-Իբաս Կատինա, որ գլխաւորագոյն աղբիւրըն ու հերոսն՝ է Խորենացիի գործին ։ Ամենէն աւելի անոր Նինուէէն բերած պատմութիւնն է որ մեր պատմահօր հիմը կազմած է, և հետեւաբար ալ Խորենացիին հետ բնականօրէն պէտք է քննադատուէր Մար-Իբասն ալ, իբրև չինծու ենթադրական անձնաւորութիւն մը, յօրինուած Խորենացիին կողմէ՝ իր պատմական գործին արժէքը բարձրացնելու համար ։ Ցոյն, Հաւմէացի, Ալրաբ և Աարբի պատմիչներ ալ գտնուած են, որոնք Հայոց պատմութեան վերաբեր-

եալ ինչ ինչ ակնարկութիւններ ըրած են ։

Քրիստոնէութենէն վերջ Հայոց Պատմութիւնը կ՚ունենայ բնիկ պատմիչներ, որոնք բաւական ճշգրիտ տեղեկութիւններ կուտան ։ Ասոնց ամենագլխաւորներն են Եղիշէ, Ղազար Փարպեցի, Կորիւն, Յովհան Մամիկոնեան, Ղեւոնդ Երէց, Շապուհ Բագրատունի, Թովմա Արծրունի, Արիստակէս Լաստիվերտցի, Սամուէլ Երէց, Վարդան վարդապետ, Հեթում պատմիչ, Առաքել Դավրիժեցի և այլն ։ Ազգային պատմիչներու ցանկը հսկայով մը կըսկսի կարելի է ըսել, — Խորենացիով, — և հսկայով մըն ալ կը վերջանայ, վերջին երկու դարերու երկրորդական դէմքերը հաշիւի չառնելով ։ Հ. Միքայէլ Չամչեանն է այդ նորագոյն հայ Խորենացին, Վենետիկի Մխիթարեաններէն հոյակապ դէմք մը, որ եռահատոր երկարաշունչ գործի մը մէջ խտացուցած է մինչև իր ժամանակի պատմիչներուն տըւած տեղեկութիւնները ։ Քննական պատմութիւնն իր ըսելիքներն ունի անոր համար, որովհետև դիտական և քննական ոգիէ զուրկ է Չամչեան, և, ինչ որ ամենէն դատապարտելին է, կաթոլիկ և միակողմանի հայեացքով գրած է իր գործը, սակայն

և այնպէս միակ աշխատութիւնն է, որ դարերու պատմութիւններն ու պատմիչնե-րուն իր մէջ կ'ամփոփէ։ Այս առթիւ Ալի-շանը մոռնալ ոճիր էր։ Քննական պատմու-թեան առաջին փորձն ըրած է մեր մէջ Ս. Մ. Գարագաշեանը, որուն քառահատոր Քննական Պատմութիւնը եթէ գիտութեան խղճամիտ ներկայացուցիչը չէ՝ գէթ գը-նահատելի անդրանիկ փորձ մ'է։

Օտար պատմիչներու մասին խօսուած ժամանակ կ'արժէ յիշել թէ՝ շնորհիւ Լեզ-ուաբանութեան և Հայագիտութեան, վեր-ջին դարերու մէջ այլ և այլ գիտուններ ևս հետաքրքրուած են հայերու անցեալով ու ներկայով։ Մեր Նախնեաց Մատենագրու-թեան մէկ մասին օտար լեզուներու թարգ-մանութիւնը նոյն բանը կ'ապացուցանէ արդէն։ Այսպէս, Վիքթոր Լանկլուա, Էտուարտ Տիւլորիէ, Սէն-Մարդէն, Բէտէրմէն, Ֆրէտ. Միւլլէր, Ն. Մառ, Բրոֆ. Հիւպշման, Բրոֆ. Մէյեէ եւայլն թանկագին ծառայու-թիւններ մատուցած են Հայ Պատմութեան՝ մէկ կողմէ լեզուն ուսումնասիրելով և միւս կողմէ Հայ Պատմութիւնը ճանչցնելով Եւ-րոպայի։

Հին բնագրերն ալ իրենց շահեկա-

նութիւնն ունին Հայոց Պատմութեան տեսակէտով ։ Գրութեան վերջին խօսքն այն է որ տառնք կը բաղկանան 400ի չափ տառերէ ։ Հայաստանի մէջ Ոսկեդարէն առաջ բեւեռագիրներ կային՝ ասուրերէն, հին պարսկերէն, չօշերէն, բաբելոններէն եւայլն ։ Սակայն ասոնց մէկ մասն անընթեռնլի մնաց ։ Աքամենեան թագաւորներու կողմէ գրուածները, ինչպէս նաեւ ուրիշներ Հայոց մասին ակնարկութիւններ ըրած են՝ խօսելով մեր Նախնական Հայրենիքին, Ուրարտուին կամ Ուրաշտուին նկատմամբ ։

# III

*Արեւելքի քաղաքակրթութիւնը.— Հայուն Պատմութիւնը եւ Արեւելեան խնդիրը.— Հայերու Նոր Հայրենիքը.— Հայկական միջավայր եւ աշխարհագրական դիրք.— Հնդեւրոպական ցեղ մը, որ ասիականութեան զինուոր կ'ըլլայ.— Պատմական ապացոյցներ.— Արեւելականութեան ներկայացուցիչներ.— Արեւմտեան քաղաքակրթութիւնը եւ իր արտայայտիչները:*

Քաղաքակրթութեան Պատմութիւնը եկած հաստատած է թէ Միջերկրական ու Կարմիր ծովերու ափերը առաջին հանդիսատեսները եղած են մարդկային քաղաքակրթական գործին և թէ Ասիոյ ցամաքն է որ միշտ առաջընթացն· եղած է պատմութեան ու կրօնական գործունէութեան մէջ։ Ամենահին ժամանակներու մէջ երբ արդի Եւրոպական Քաղաքակրթութիւնը չկար, և ներկայիս մէջ իրենց մշակութական (culture) առաջդիմութիւնովը պարծենցող Եւրոպացիները բարբարոսութեան մէջ կ'ապրէին, անդին Ափրիկէի հիւսիսային արեւելեան կողմը Նուիրական Նեղոսի պատուական ե-

զերքներուն վրայ հիմնուած Եգիպտական կայսրութիւնը՝ ծաղկեալ քաղաքակրթութիւն մը կը ներկայացնէր։ Այլ և այլ գիտութիւններ բաւական առաջ գնացած էին այդ երջանիկ երկրին մէջ։ Նոյն իսկ պատմութեան մէջ առաջին անգամ յիշատակուող կինը, Եգիպտացի ուսուցչուհի-գիտուն մըն էր, Հիւպաթիա կոչուած։ Այնուհետև հետզհետէ զօրացող ու տիրապետութիւններ ստեղծող պետութիւնները եղան նոյնպէս արեւելեան կամ ասիական ինքնակալութիւններ, ինչպէս Ասորեստան, Բաբելաստան, Մարաստան ու Պարսկաստան։ Աշխարհիս վրայ տարածուած կրօններու հիմնադիրներն ալ ասիացի են, Յիսուս Նազովրեցին, Մուհամմէտը, Սաքիա-Մունին և Կոմֆիւկիոսը։ Քաղաքակրթութիւնը ուրեմն, Ասիայէն անցած է Եւրոպա, նախ Յունաստան, ապա Հռոմ և ապա Եւրոպայի զանազան կողմերը։

Միևնոյն արմատէն ու ծագումէն սերած այս Քաղաքակրթութիւնը սակայն՝ տարբեր տարբեր յատկանիշներով հանդէս եկաւ, այնպէս որ Ասիա ու Եւրոպա, կամ ուրիշ բառերով Արևելք և Արևմուտք իրենց Քաղաքակրթութիւններու ուրոյն հանգամանք-

ներով հակամարտ հոսանքներ դարձան և ընդդիմադրական անհեղ ույժեր ստեղծեցին։ Պայքարը, որ սկսաւ այս երկու հոսանքներուն կամ ձգտումներուն մէջ, անշուշտ չունէր այն իմաստը, զոր ունեցաւ ապա իրերու և դէպքերու բնական հետեւանքով։ Պետական ազդեցութեան և պարզ տիրապետութեան խնդիր էր նախ առիկա, բայց վերջը հետզհետէ դարձաւ սկզբունքի, Քաղաքակրթութեան և ձգտումներու խնդիր, այնպէս որ Արևելքի և Արևմուտքի այս կըռիւը արիւնոտ ու կարմիր սոսկալի բաղխումներ առաջացուց։

Արևելեան Խնդի՛րն էր ահա որ սկսած էր։ Եւ շատ բնական էր որ առաջին բաղխումը պիտի սկսէր հոն, ուր այս երկու հոսանքները կը մօտենային իրարու։ Ա՛յդիսկ պատճառով Փոքր Ասիան դարձաւ առաջին մարտավայրը Արևելքի ու Արևմուտքի կարմիր ընդհարումներուն։ Փոքր Ասիա, ո՛չ միայն առաջին ռազմադաշտն ըլլալու սահմանուած էր, այլ և իր աշխարհագրական դիրքով, շատ բնականօրէն վերածուեցաւ՝ Արևելեան և Արևմտեան քաղաքակրթութիւններու հսկայական բաղխումի աւանդական գլխաւոր թատերավայ-

րին ։ Թղթատելով և ուսումնասիրելով Պատմութիւնը՝ նոյն ճշմարտութիւնը դիւրին պիտի ըլլայ հաստատել, որովհետև Արևելք և Արևմուտք որո՛ւ միջոցաւ ալ որ ներկայանան, Յոյներու թէ Հռովմէացիներու, Ասորեստանցիներու, Պարսիկներու թէ Հայերու, իբրև ժամադրավայր կամ անցք՝ Փոքր Ասիոյ հողը չահագործած են ։ Եւ իսկապէս՝ այս ցամաքին աշխարհագրական դիրքը զինքը տեղաւորած ըլլալով Եւրոպայի ու Ասիոյ ճամբուն վրայ, Փոքր Ասիա չէր կրնար զերծ մնալ այն արհաւիրքներէն, որոնք առաջ եկան Արևելքի ու Արևմուտքի նախ տիրապետութեան, ազդեցութեան պայքարէն և ապա քաղաքակրթութեան ու ձգտումներու հակադրութենէն ։

Երբ կըսկսէր Արևելեան Խնդիրը, հայերը, արևմուտքէն, ըստ ոմանց Փռիւգիայէն, մեկնած ըլլալով, խաղաղ գործունէութեամբ և խոհեմ առաջխաղացութեամբ տակաւ տէր կը դառնային Նախահայաստանի, անաղմուկ կերպով ։ Այս լուռ տիրապետութիւնը գուցէ աննշմար չանցնէր՝ եթէ տիրական հզօր ձգտումի մը բացակայութիւնը և հովուական անմեղ յատկու-

*թիւններ ունեցող ուշիմ ժողովուրդի մը այս յուշիկ գնացքը անտիճանական թափով մը տեղի չունենար։ Հայերու Նոր Հայրենիքին, Հայաստանի կը վերածուէր Ուրարտու այս կերպով, և պատմական զարգացման ճամբով Հայ ինքնութիւնը, թէև հետեւողական, Փոքր Ասիոյ ցամաքին վրայ կը ցցուէր։ Գիտութիւնը Հայոց ծագման մասին իր վերջին խօսքը տակաւին բաց չըլլալով հանդերձ՝ պատմական ապացոյցները Հայոց Փոքր Ասիոյ մէջ ունեցած գոյութիւնը կը հաստատեն։ Այս մասին Ս. Գրոց յիշատակութիւններն ալ հետաքրքրական են։ Հոն կը յիշատակուի Ասորեստանի Սենեքերիմ թագաւորին երկու հայրասպան տղոցը Ադրամելէքին և Սանասարին փախուստը դէպի Արմենիայի լեռները (Աստուածաշունչ, Դ. թագաւորաց, ԺԹ. գլ. 37)։ Երեմիա մարգարէն Բաբելոնի առմոն մէջ հայերու յիշատակութիւնը կ'ընէ (Երեմիայի մարգարէութիւն, ԾԱ. գլ. 27 համար)։ Այս յիշատակութիւններէն առաջինը հայ դիւցազնավէպերուն մէջ ալ կ'երեւայ (*)։ Ս. Գրոց այս յիշատակու-*

---

*(*) Այդ պարագան կը պատմէ «Սասմայ Ծռեր» կոչուած Հայկական վիպասանութիւնը, որ չորս մա-*

թիւններէն զատ Աստրական և Ուրարտեան արձանագրութեանց մէջ որոշ մասեր կան Հայոց վրայ խօսող, ինչպէս զոր օրինակ Դարեհի դէմ Հայոց կրկնուած ապստամբութիւնները և այլն: Յայտնի պատմաբաններ ալ արդէն Հայերը յիշատակած են, ինչպէս Քսենոփոն, Հերոդոտոս և այլն:

Արդ, հայերու այս Նոր Հայրենիքն ու միջավայրը աշխարհագրական դիրքով՝ կը գտնուէր անանկ կէտի մը վրայ, որուն Արեւելեան Խնդիրին կամ Արեւելքի ու Արեւմուտքի բաղխման ամենագլխաւոր կեդրոնն ըլլալը խնդիր չվերցներ այլեւս: Հայերու աշխարհագրապէս այդ դժբաղդ աշխարհն էր որ քաղաքական այնքան դժբաղդութիւններու ենթարկեց այս ժողովուրդը: Նախասահմանուած էր կարծես որ Հայաստանը հայերու ձեռքով չէննայ ու արեւելքէն ու արեւմուտքէն հրոսող բանակներու ձեռքերով քանդուի միշտ: Արեւելքն ըլլայ թէ Արեւմուտքը՝ յարձակողը, Պարսիկն ըլլայ թէ Յոյնը յաղթողը, տուժողը միշտ Հայն ու Հայաստանն է անպայման: Ինչո՞ւ.—

---

սեր ունի 1.) Սանասար և Աղրամելէք, 2.) Առիւծաձեւ Մհեր, 3.) Սասունցի Դաւիթ և 4.) Պզտիկ Մհեր:

վանքի բնական մարտավայրն է Հայաստանը ։ Ասո՛ր համար է որ աշխարհի ընդհանուր Քաղաքակրթութեան դատին մէջ ամենէն մեծ զոհը Հայերը տուած են , ասո՛ր համար է որ շատ անգամ հայը տանջուած է , հալածուած ու հարստահարուած ։ Հայուն առաջդիմութեան ձգտումը զինքը սպաննած է՝ շրջապատուած ըլլալով հակառակ ձգտումներով տոգորուած ցեղերէ ։ Հայուն աշխարհագրական այս դիրքն է նոյն իսկ իր համբաւուած անմիաբանութեան պատճառը ։ Երբեմն տիրապետական գոյն կ'առնէ Արեւելքի ու Արեւմուտքի այս պայքարը , լո՛կ ազդեցութեան խնդիր, և ահա Հա՛յն է որ կը տուժէ (Պարսկա-Յունական), երբեմն կրօնական հարց կը դառնայ (Զրադաշտա-Քրիստոնէական) և միասուողը հայն է , դարեր վերջ Մահմետականութիւն և Քրիստոնէութիւն իրարու կը բաղխին , և տառապողը հայն է միշտ ։ Ինչո՞ւ .— որովհետեւ այս բոլոր ընդհարումներու ճամբուն վրայ կը գտնուի Հայաստան՝ ճակատագրականօրէն ։

Հայերը իբրեւ Հնդեւրոպական աշխոյժ և հետաքրքիր ցեղին պատկանող ժողովուրդմը , ամեն արեւմտեան յատկութիւններով

օծուած համայնք մըն էր, որ բաղդին բերումով՝ փոխանակ Եւրոպայի ցամաքին վրայ իր նախնական Հայրենիքին մէջ մնալու՝ թափառելով և կամաց կամաց առաջանալով կու գար, կը հաստատուէր Փոքր Ասիոյ մէջ, ասիական ցամաքին վրայ, ուր Արեւելքը կ'ապրէր՝ իր հսկայական բռնապետներով, մեծ պետութիւններով և արեւելեան բիրտ ու բարբարոս ձգտումներով։ Հոն, Արեւելքի մէջ, արեւմտեան ոչինչ կար արեւմտեան այս ընդունակ ցեղը չրջապատող։ Մինակ ու միս-մինակ, հայը սեղմուած էր կողք կողքի ապրիլ Պարսիկին ու Արաբին, Ասորիին ու Թաթարին հետ։ Միմիայն արեւմտեան կողմէն կապուած էր Յոյներուն, իսկ հիւսիսը, հարաւը և արեւելքը գրաւած էին Ասիոյ և Ասիականութեան ներկայացուցիչները։ Իսկ Յո՞յնը...։ Քրիստոսէ շատ առաջ մանաւանդ, երբ յունական ազդեցութիւնը այնչափ մեծ չէր Ասիոյ մէջ, Հայը բնականօրէն ենթարկուած էր ասիացիներու տիրապետութեան և հետեւաբար ալ ազդեցութեան։ Մէկ կողմէ աշխարհագրական միջավայրի փոփոխութիւնը և միւս կողմէ Հայերը չրջապատող ընկերային և քաղաքական այս պայման-

ները ասիականացուցին զանոնք, որ Եւրո-պականութեան հզօր ներկայացուցիչները պիտի դառնային վերջը ցեղային շատ բը-նական վերադարձով մը՝ դէպ ի իրենց բուն ծագումը։

Ու այսպէս Հայը Փոքր Ասիոյ մէջ դար-ձաւ Ասիականութեան Զինուոր և կամայ թէ ակամայ պաշտպանը՝ Ասիական Քաղա-քակրթութեան։

Հայերը այսպէս իրենց աշխարհագրական դիրքին և միջավայրին հետեւանքով ասի-ականութեան զինուոր դառնալով, հաւա-տարմօրէն ալ հետեւեցան իրենց այդ պա-րագայական կոչումին՝ մինչեւ Քրիստոնէ-ութեան Հայաստան մանելն ու արեւմտեան ձգտումներու որդեգրումը։ Եօթը ութը դար տեւեց այս ժամանակամիջոցը, որուն ընթացքին մէջ Հայ ժողովուրդը իբրեւ ա-սիականութեան պաշտպան գործեց։ Նոյն իսկ Քրիստոնէութեան Հայաստան մտած ատեն ո՛րչափ դժուար էր Գր. Լուսաւոր-չի գործը, ա՛յն գերազանց պատճառով որ Հայերը ասիականութեան ներկայացուցիչ ժողովուրդ մը՝ արեւելեան մտայնութիւնը մեծ մասամբ որդեգրած, անհանդուրժելի կը գտնէին թէև Ասիայէն, Արեւելքէն ծը-

նած, բայց Արեւմուտքի ճամբով իրենց ե-
կող այդ Նոր Կրօնքն ու անոր վարդապե-
տութիւնները։ Եւ արդարեւ, եթէ Տրդատ
իր պետական ու զինուորական ոյժը չգոր-
ծածէր Քրիստոնէութեան բռնի տարածման
համար, Լուսաւորչի խաղաղ կրօնական
գործունէութիւնը մեծ արդիւնք մը չէր ե-
րաշխաւորեր։ Հայոց Պատմութենէն կա-
րելի է հետեւցնել թէ Հայերը ի՛նչ աճեղ
յետաշրջականութեամբ մըն է որ ջանացին
ազգին մէ՛ջն իսկ խեղդել առաջին փորձը՝
Քրիստոնէութիւնը Հայաստան մտցնելու
համար, զոր ըրաւ Միջագետքի ասորի Թա-
գաւորն Աբգար իր Քրիստոսի հետ կատա-
րած աւանդական բանակցութիւններն անմի-
ջապէս վերջը, և թէ Աբգարի մահուընէն
վերջ, երբ իր տղաքները Անանէ և Սանա-
տրուկ պետութիւնը բաժնելով առանձինն
տիրեցին, ո՞ւր մնացին Քրիստոսի հետե-
ւող հաւատացեալները։ Հոս Սանդուխտն էր
որ կը նահատակուէր և հոն Թադէոս Ա-
ռաքեալը չարաչար կը սպաննուէր։ Դըժ-
բաղդաբար պատմական մանրամասնութիւն-
ներ չունինք մեր ձեռքին մէջ։ Այնպէս
ո՞վ գիտէ թէ որչա՛փ նահատակներու պի-
հանդիպէինք։ Նոյն իսկ Տրդատի և Լու-

սաւորչի միացած գործունէութեան ժամանակ, երբ Սուրբն զօրութեամբ Խաչը կը տարածուէր Հայաստան, ի՜նչ մեծ ընդդիմութիւններ ցոյց տրուեցան ամեն կողմ, մանաւանդ Հայաստանի ա՛յն գաւառներուն մէջ, ուր ամենէն աւելի մոլի հեթանոս հայութիւնը կ'ապրէր: Երկար դարեր Գողթան Երգիչներու ձօնար փշուրները իր մէջ աւանդօրէն պահպանող և մինչեւ Մովսէս Խորենացի հասցնող Սիւնեաց գաւառը անշուշտ դիւրութեամբ չպիտի կրնար լքել իր հեթանոսական աւանդութիւնները, դիւցազներգութիւնները, տօները ու այլ սովորութիւնները: Ահա պատմական փաստեր, որոնք կը հաստատեն թէ ո՛րչափ սերտիւ արմատացած էին հայերը:

Նախաքրիստոնէական շրջանի Հայ Պատմութիւնն ալ շահեկան տեղեկութիւններ կուտայ մեզ՝ Հայոց ազնուականութեան իբր զինուոր ունեցած գործունէութիւնը պատկերացնող: Արեւելքի և Արեւմուտքի պայքարը երբ ստեղծուած էր, հակառակորդ ախոյեանները այս կամ այն ազգութեան տիրապետական ոյժին կրթնած՝ մերթ յարձակողական և մերթ պաշտպանողական ճանապարհութիւններ բռնած էին, որոնց մէջ Հա-

յերը գործօն մասնակցութիւն մը ունենալով ապացուցած են թէ չե՛ն համակրիր Արեւմուտքին ու անոր քաղաքակրթութեան եւ հաւատարիմ են ասիականութեան։ Ասիականութեան այս ձգտումը աւելի զօրեղ թափով մը արտայայտուած է Հայ կեանքին մէջ, երբ Պարսկաստանի մէջ սկսած են տիրապետող դառնալ Պարթեւները եւ Հայերն ալ խնամիական կապերով կապուած են անոնց հետ։ Դարեհի յաջորդը, Քսերքսես Ա. երբ հսկայական բանակ մը պատրաստած, կազմակերպեց երկրորդ մարական պատերազմը եւ յարձակողական քաղաքականութեամբ մը Յունաստան արշաւեց Արեւմուտքի Քաղաքակրթութիւնը եւ անոր օրրանը ջնջելու համար, Հայերը միացած էին այդ վիթխարի բանակին եւ, որպէս Ասիացի, կը կռուէին Յոյներուն դէմ, ինչպէս կը պատմէ Հերոդոտոս, նոյն իսկ Հայոց զգեստներն ու զէնքերը նկարագրելով։ Քրիստոսէ երեք դար առաջ (336 - 326) յարձակողական-նուաճողական դերը Արեւմուտքի վիճակուած ըլլալով երբ Մեծն Աղեքսանդր Մակեդոնացին Պարսիկ մեծ վեհապետին, Դարեհի դէմ կը կռուէր, Պատմութիւնը կ՚ըսէ թէ Հայոց Վահէ իշխանն

ալ իր ոյժերը միացուցած էր Արեւելքի ներկայացուցիչ Պարսիկներուն, մինչդեռ Արեւմտեան Քաղաքակրթութեան ներկայացուցի՛չն էր Աղեքսանդր։ Եւ եթէ աւանդութիւնը մեզ չխաբեր, մեր Հայկազունի իշխաններուն մէջ ունեցած ենք Զարմայր մը, որ Տրովադայի պատերազմին մէջ դեր ունեցած է՝ օգնելով Յոյներուն ու Տրովադացիներուն ներքին խռովութենէն։ Բայց ամենէն մեծ ապացոյցը, որ Հայերը երբեք տուած են՝ իրենց ազ. անկախութեան պաշտպան ըլլալուն համար՝ Մեծն Տիգրանն է (90. Ք. Ա.), որ Պոնտոսի իշխանին Միհրդատին հետ ամբողջ երկար տարիներ կռուած է Հռովմայեցիներուն դէմ և արգիլել փորձած անոնց մուտքն ու ազդեցութիւնը Հայաստանի մէջ։

Ահա պատմական իրողութիւններ, որոնք բաւական են ապացուցանելու Արեւելքի ու Արեւմուտքի ընդդիմամարտ հոսանքները և անոնց մէջ Հայոց ունեցած մասնակցութիւնը՝ իբրեւ Անկախութեան զինուորներ՝ մինչեւ Քրիստոնէութեան Հայաստան մտնելը։

Իսկ թէ Արեւելքի և Արեւմուտքի տարայայտիչներն ու ճշմարիտ ներկայացուցիչները

որո՛նք կը հանդիսանան այս պայքարին մէջ։ Այդ շատ պարզ է։ Յոյները, Մակեդոնացիներն ու ապա Հռովմէացիները իբրեւ Արեւմուտքի և արեւմտականութեան ախոյեաններ՝ Եւրոպայի մէջ, իսկ Ասորեստանը, Բաբելաստանը, Եգիպտոսը, Պարսկաստանը և ապա Արաբները՝ Արեւելքի մէջ իբրեւ արեւելականութեան ախոյեաններ։

# IV

*Երկու հսկայ քաղաքակրթութիւններու բախումը.— Հայը՝ ճնշուած այդ բախումին մէջ.— Պարսիկը կրօնական գոյն կ'առնէ.— Զրադաշտականութիւն եւ Քրիստոնէութիւն քով քովի.— Հայը Եւրոպականութեան զինուոր կը դառնայ.— Հայոց ներքին երկպառակութիւնները.— Յոյներու քաղաքական անմտութիւնը.— Պարսիկներու ձգտումը՝ հայերը որսալու մասին.— Հելլէնականութիւն.— Ոսկեդարի շարժումը եւ անոր արդիւնքը:*

Դարեր անցան։

Արեւմուտքի և արեւելքի միջև սկսուած պայքարը դադար չառաւ։ Երբեմն դանդաղ և երբեմն ուժգին՝ վերջապէս ժամանակին հետ առաջացաւ, աստիճանաբար զօրացաւ ու երկու հակառակորդ բանակներ հանեց իրարու դէմ։ Արեւմտեան Քաղաքակրթութեան բանակը կազմեցին արեւմտեան ձրգտումներով առգօրուած ցեղերն ու երկիրները, իսկ Արեւելեան Քաղաքակրթութիւնը մնաց Ասիոյ մէջ բնակող ազգերուն փայփայած ձգտումն ու մշակութական հայեցո-

ղութիւնը։ Փոքր Ասիոյ մէջ ապրող ժողովուրդները պահ մը նկատողութեան չառնելով, ամբողջ ասիական պետութիւններն ու ցեղերը կը կազմէին հսկայական բանակը Արեւելեան Քաղաքակրթութեան, որուն գլուխ առաջապահն էր Պարսկական պետական-զինուորական կազմը, մինչեւ որ Է. Դարուն վերջին քառորդին արաբական արշաւանքը Արեւելեան Քաղաքակրթութեան կամ Ասիականութեան խնամակալութիւնը յափշտակելով յանձնեց նախ Մահմետական արաբներուն և ապա մոնկոլ-թաթարական ցեղերուն և Արեւելքի ու Արեւմուտքի Քաղաքակրթութիւններուն պատերազմը փոխադրեց տարբեր գետնի վրայ։

Այս պայքարը անտարակոյս հետզհետէ աւելի հիմնական պայմաններով կը շրջապատուէր՝ քանի՛ քաղաքակրթութիւնը կը տարածուէր ամեն կողմ, ատելութիւնը ժառանգական կը դառնար և արեւելեան ու արեւմտեան ձգտումները աւելի խոր դրոշմ կը կրէին։

Մեզի ծանօթ է արդէն թէ ի՛նչ էր Հայ ժողովուրդին դիրքը՝ երկու քաղաքակրթութիւններու այս բաղխումին մէջ։ Աշխարհագրութիւնը անոր ճակատագիրը վճ-

ուեր էր՝ դնելով զինքը այնպիսի կէտի մը վրայ, որ լման ո՛չ մէկ հնարաւորութիւն կ'ընձեռէր չէզոք մնալու և ինքնապահ-պան ուղղութեան մը հետեւելու։ Հայը պէտք էր ըլլար՝ կա՛մ ներգործական և կա՛մ կրաւորական։ Պատմական այս ուղիին մէջ Հայ կեանքին տատանումները բացա-յայտ են, բայց ընդհանրապէս կրաւորա-կան եղած է անոր դիրքը մինչեւ Քրիստո-նէա-Հայկական մեծ և անդրանիկ խաչա-կրութիւնը՝ Տաւարչանի ճակատամարտը։ Հայ պատմութեան մէջ հազիւ երբեմն կը նշմարուին կարկառուն բարձունքներ, ո-րոնք ներգործական հայութիւն մը կամ հայկական պետական-կազմ մը կը ներկա-յացնեն, տարտամօրէն. անկից անդին հե-տեւողականութի՛ւնն է հայուն ընդհանուր քաղաքականութեան մէջ տիրող գիծը։ Մենք հայկական հետեւողական քաղաքա-կանութիւնը դատապարտելու իրաւունքը չենք տար ինքզինքնուս, բայց սա միայն կ'ուզենք ըսել թէ Հայկական Պատմութիւ-նով հետաքրքրուող ժամանակակից պատ-մագէտներ կան, որոնք նոյն ինքն այդ դը-րութեան մէջ կը գտնեն երկար դարերու հալածանքներու ; քաղաքական փոթորիկնե-

րու, աւերներու ու կոտորածներու բոլոր արհաւիրքներու, փրփրակուտակ կոհակներու սպառնական շունչին տակ Հայ ժողովուրդին իր նահատակ-գոյութիւնը պահպանելու յաջողելուն գաղտնիքն ու դիւցազնութիւնը։

Պարսից գահուն և դրացի արեւելեան երկիրներու հետ Հայոց ունեցած վաճառականական, դիւանագիտական, պետական և այլ յարաբերութիւնները աւելի մօտիկ պահած էին զանոնք Արեւելեան Քաղաքակրթութեան, շրջապատուած ըլլալով արեւլ. ձգտումներուն ներկայացուցիչներէն։ Եւ միջավայրը՝ դարերու ընթացքին մէջ, արեւմուտքէն եկող այս ժողովուրդը համակերպեցուցած իր ճակատագրին՝ կամաց կամաց արեւելքի զինուոր դարձուցած էր։

Սակայն Հայ ժողովուրդին ճակատագիրը տարբեր ուղղութի՛ւն պէտք է որ առնէր։ Անիկա արեւմտականութեա՛ն զինուոր պէտք էր որ ըլլար։ Իր ծագումը, իր ընդունակութիւնները, խառնուածքը, ձգտումները և ամեն ինչ արեւմտեան էին։ Իրերու ընթացքը տկարացուցած էր այս բոլորը և արեւելականութեան ոգին տեղաւորած իր մէջ։ Ցեղաշրջութիւն մը քաւական էր ա-

մեն ինչ փոխելու: Արեւելականութեան մոխիրին տակ արեւմտականութեան կայծերը կային, որոնք պիտի կածկլտէին և չողային անմիջապէս՝ եթէ գտնուէր այդ մոխիրը խառնող ձեռք մը: Հայը՝ ո՛րչափ ալ համակերպած ըլլար իր ճակատագրին, կրկին անոր խառնուածքին մէջ անանկ տարրեր կային, որոնք արեւելեան բռնութիւններու ընդունակ չէին կրնար դարձնել զինքը:

Այդ ձեռքը Քրիստոնէական Կրօնն եղաւ:

Ահա պայքարին ուղղութիւնը կը սկսէր փոխուիլ ՝այլ եւս հետզհետէ: Արեւելքի և արեւմուտքի քաղաքակրթութիւններու կռիւը տիրապետական միտումներէ առաջնորդուած էր նախ, ազդեցութեան նախանձախնդրութենէ. ապա դարձած էր քաղաքակրթութեան, մտայնութեան և ձգտումներու հակադրութիւն, ու ատոնցմէ վերջ կը բորբխառնուէր աւելի զօրաւոր և բնորոշական ամփոփումով մը, որ գլխաւոր առանցքն ըլլալու սահմանուած էր: Պայքարը կրօնական դոյն կ'առնէր: Ասիոյ ծոցէն, Պաղեստինի խորերէն ծնած Քրիստոնէութեան վարդապետը, Յիսուս, հալածուած նոյն ինքն ասիացիներէն, — Հրէաներէն, — իր առաքեալներուն ու աշակերտներուն մի-

ջոցաւ իր վարդապետութիւնները կը սոր-ուէր ու կը քարոզէր հեռաւոր երկիրներու մէջ, Եւրոպական աստղերու տակ։ Արեւ-մտականութեան ներկայացուցիչ ազգերու կրօ՛նն ըլլալու կոչուած էր Քրիստոնէու-թիւնը, որ չես գիտեր ի՛նչ տարօրինակու-թեամբ Պաղեստինը իրեն խանձարուր ու-նեցած էր, թերեւս հաստատելու համար այն ճշմարտութիւնը թէ «Մարգարէ ի գա-ւառի իւրում պատիւ ոչ ունի»։

Քրիստոնէութեան երեւումը խառնած էր մոխիրը և Հայոց մէջ արեւմտականութեան ոգին արթնցուցած էր շատ մեղմիկ։ Ասի-ական ձգտումներ թմրեցուցած էին հայ ժո-ղովուրդը և անտարբեր ու նոյն իսկ թըշ-նամի դարձուցած՝ Եւրոպային ու արեւ-մտականութեան։ Նոյն համեմատութեամբ ալ անշուշտ շատ դժուար պիտի ըլլար ա-նոր զարթնումը։

Եւ այդպէս ալ եղաւ։

Հակառակ այն ճշմարտութեան որ հայե-րը քրիստոնէութիւնն ընդունող առաջնա-գոյն ժողովուրդներէն մին եղած են, շատ ուշ ընդգրկած են զայն համայնական ընդ-հանուր ընդունելութիւնով։ Անհատներ և ընտանիքներ քրիստոնէական կրօնն ընդու-

նած են, բայց ամբողջ ժողովուրդը ո՛չ միայն վարանած է զայն ընդունելու, այլ՝ և՝ իր բոլոր ոյժովը թշնամի դարձած ու կռուած է անոր դէմ։ Քրիստոնէութիւնը Հայաստան մտցնելու առաջին փորձը տեղի՛ ունեցած է Աբգար ասորի թագաւորին օրով,՝ երբ Թադէոս առաքեալ հոն եկած էր պրոպագանտ ընելու իր վարդապետին ճշմարտութիւնները։ Սա բաւական յաջողութիւններ ձեռք բերած էր և կրնար աւելի եւս հաւատացեալներ պատրաստել, եթէ հեթանոսական յետադիմութիւնը (reaction) յաղթական հարուած մը չտար Հայոց քրիստոնէական ձգտումներուն։

Եւ սակայն պէ՛տք էր որ Քրիստոնէութիւնը յաղթանակէր, ի՞նչ արգելքներ ալ ելլէին, որովհետեւ պէ՛տք էր որ հայը արեւմտականութեան զինուոր դառնար։

Աբգարի օրերէն մինչեւ Լուսաւորչի օրերը մօտաւորապէս երեք հարիւր տարի անցած էր։ Արեւմտեան Հայաստանը երկար ատեն Յունաստանի և Հռովմայեցւոց ձեռքը մնացած ըլլալով, տեղւոյն հայ ազգաբնակչութիւնը ամէն կերպով պատրաստուած էր Քրիստոնէութիւն ընդունելու և վերջապէս Յոյն քաղաքակրթութեան հե-

տեսնելու։ Աշխատութիւն մը այդ ուղղութեամբ՝ միշտ արդիւնաւէտ կրնար ըլլալ։ Սակայն կային անոյլին մեծամեծ խոչընդոտներ, զորս հարթել շատ ալ դիւրին չէր՝ ո՛չ Լուսաւորչի և ո՛չ ալ Արևմտականութեան որեւէ առաքեալի համար։

Արեւելեան Հայաստանի դարեւոր դրացնութիւնը Պարսիկներուն հետ, անոնց և իրենց մէջ գոյութիւն ունեցող մտայնական հաղորդակցութիւնն ու ներդաշնակութիւնը, ինչպէս և քաղաքական ու պետական յարաբերական կապերը որոշ հոսանք մը ստեղծած էին դէպի պարսկական քաղաքականութիւն։ Քաղաքական այդ հոսանքին մէջ կը համրուէին նշանաւոր նախարարութիւններ, ինչպէս Սիւնիք և Արծրունիք գլխաւորաբար, որոնք Պարսկաստանի սահմանին վրայ գտնուելով՝ անտարակոյս ջատագովը պիտի դառնային պարսիկները սիրաշահելու և այս կամ այն կերպով զանոնք գոհացնելու ուղղութեան։ Իսկ Պարսիկին համար ո՛չ մէկ ատեն հեշտ կրնար ըլլալ հայոց Քրիստոնէութիւն ընդունիլը՝ իր քաղաքական շահերուն տեսակէտով։ Կային ոչ-արհամարհելի դիւանագէտ մեծ դէմքեր ալ, որոնք ո՛չ միայն տեսա-

կանոնին մէջ պաշտպան ու հաւատարիմ ախոյեանը դարձան Պարսից քաղաքականութեան, այլ և ապա՝ գործով իսկ ասպարէզ եկան, յանուն իրենց ըմբռնումներու. և յանուն քիչ մ'ալ փառասիրութեան....: Ապաքէն ի՞նչ էր Վասակի ձգտումն ու քաղաքական դաւանանքը: Ո՞չ ապաքէն ան խորապէս համոզուած էր թէ հայ ժողովուրդին բռնելիք միակ ուղղութիւնը պարսկական քաղաքականութեան ընդգրկումն ու հետեւողականութիւնն է:

Արդ, պէտք է ընդունինք որ քաղաքական երկու որոշ հոսանքներ գոյութիւն ունէին Հայաստանի մէջ այն ատեն, երբ Քրիստոնէութիւնը կուգար մուտ գործել: Մին Արեւմտա-Յունական, իսկ միւսը՝ Արեւելա-Պարսկական: Աշխարհագրութիւնն էր որ իր դերը կը կատարէր հոս ալ: Արեւելեան Հայաստանի ազգաբնակչութիւնը ընդհանրապէս և անոր ղեկավարները մասնաւորապէս հետամուտ էին պարսկական քաղաքականութեան և հետեւաբար ալ Արեւելեան Քաղաքակրթութեան, իսկ Արեւմտեան Հայաստանի ազգաբնակչութիւնն ու իր առաջնորդողները պաշտպանն էին Յունական Քաղաքականութեան և հետեւաբար

ալ Արեւմտեան Քաղաքակրթութեան ։

Հայկական կէտներու նոյնութիւն առաջ բերելը յինքնին շատ դժուար էր անշուշտ, քաղաքականութեան տեսակէտով, մինչդեռ կը մնար տակաւին կրօնական խնդիրը ։

Մինչեւ հոս երկու Քաղաքակրթութիւնները այսպէս թէ անպէս ընդդիմադիր ոյժեր էին. հիմա այդ մարանչող հոսանքը կուգար զօրացնել կրօնական տարբերութիւն մը, որ ժամանակի ընթացքին տեսակ մը անհատականութիւն դարձած էր այլեւ երկու կողմերուն համար ալ ։ Քրիստոնէութիւն եւ Զրադաշտականութիւն,(*) արեւմտեան եւ արեւելեան կրօններ կը ներկայանային հիմա, ու պայքարը բնականօրէ՛ն կ՚առնէր՝ կրօնական գոյն եւ միեւնոյն ատեն ալ՝ աւելի սուր կերպարանք ։ Ա՛յս է պատճառը որ Հայաստանի Դ. եւ Ե. Դարերու բոլոր քաղաքական եւ

(*) Զրադաշտականութիւնը Մոգերու Օրէնքն էր, Պարսից Կրօնը, որուն մեկնիչներն ու պահպանիչներն էին քուրմերը՝ մոգ անունով։ Հիմնադիրն է Զրադաշտ, որ հաւանաբար Զ. կամ Է. Դարու (Ք. Ա.) մարդ է։ Հին արիական կրօնը բարեփոխեց Զրադաշտ եւ անոր մասնաւոր սահմաններուն մէջ դրաւ՝ իր Զենդ-Աւեստա կրօնական գիրքով։ Զրադաշտականութեան մէջ եր-

ազգային անցքերը կրօնական գոյն ունին առանց բացառութեան ։ Այս է պատճառը որ այդ անցքերուն մէջ հայեր չեն վարանած իրարու դէմ նոյն իսկ զէնք վերցնելու և ճակատելու . . . պատմութեան մէջ հայկական մեծագոյն անմիաբանութեան օրինակը տալու համար ։ Քննական պատմութիւնն ու գիտութիւնը ցեղային այդ անմիաբան ոգին կը վերագրեն բացատրուած այս պարագաներուն, պայմաններուն ու ըմբռնումներուն ։ Այսպէ՛ս կը մեկնեն նաև Ե . Դարու Հայկական խաչակրութեան միջոցին Վասակի բռնած քաղաքականութիւնը, Արծրունեաց

---

կութիւն (duality) կ'ընդունուի, այսինքն բարիի և չարի, լոյսի և խաւարի արարչութիւն։ Բարիին արարիչն է Ահուրա Մազդան (Արամազդ, Որմիզդ), որ կը նշանակէ Տէր Ամենիմաստ, իսկ չարինը՝ Անգրօ-Մայինուսը (Ահրիման, Արհրման), որ կը նշանակէ չարակամ։ Ասոնցմէ իւրաքանչիւրը իր ձեռքին տակ ունէր բազմաթիւ ոգիներ՝ իր կամքին սպասաւորող։ Լոյս և խաւար, բարի ու չար միշտ կը կռուէին իրարու հետ, բայց յաղթութիւնը Լոյսին ու Բարիինն էր։ Ժամանակի ընթացքին մէջ մոգերը շատ բաներ ըստ քմաց մեկնեցին և Զրադաշտական կրօնը իր նախնական պարզութենէն հեռացուցին։ Մոգերը կը ներկայացնէին կազմակերպուած նուիրապետութիւն և բազմաթիւ էին։ Մոգերու ընդհանուր գլուխը կը կոչուէր Մովպետական կամ Մովպետ։

և Սիւնեաց նախարարութիւններու հետեւած բոցաստական, Մամիկոնեաններու՝ դրական և Բագրատունիններու չէզոք ուղղութիւնը։

Ուստի Լուսաւորիչ, իբրև Արևմտականութեան ներկայացուցիչ-գործիչը, որպէսզի յաջողէր, պէտք է հետևէր արմատական քաղաքականութեան, իրեն զօրավիգ ունենալով Տրդատի թագաւորական բոլոր հեղինակութիւնը, անոր պետական-զինուորական ոյժն ու զօրութիւնը։

Եւ ահա հալածանքը կը սկսէր՝ հեթանոսներու դէմ, բնականաբար մանաւանդ Արեւելեան Հայաստանի մէջ, ուր հակահոսանք կար, Արեւելականութեան պաշտպան կուսակցութիւնը բոյն դրած էր և պատրաստ խոչնդոտներ ստեղծելու Քրիստոնէութեան դէմ։ Անկէց զատ արմատացած, դարերու ընթացքին մէջ ժողովուրդին սրբութիւնը դարձած «հեթանոսական կրօնը» ի հարկէ կարելի չէր դիւրութեամբ խլել և անոր տեղ մտցնել Նոր կրօնք մը։ Ըմբռնելու համար թէ ի՛նչ կորովի կերպով գործել ուզեց Լուսաւորիչ, կ՚արժէ դիմել Դ. Դարու պատմիչ Ագաթանգեղոսին մասնաւորապէս և ուրիշներու ալ ընդհանրապէս, որոնք տարօրինակ եռանդով մեզ կը պատմեն թէ Գրի-

գոր և իր երանելի յաջորդները ի՛նչպէս «Հայաստանի ամէն մէկ անկիւնը պտտելով՝ մեհեանները կը կործանէին, քուրմերը կը հալածէին, մեհենական գործերը կը փճացնէին, հեթանոսական սպասները, քանդակները ու գրուածները կ'ոչնչացնէին «Լայն։

Վերջապէս Քրիստոնէութիւնը կը յաղթանակէ։ Ասիկա սակայն չէր նշանակեր բոլորովին բնաջնջումը այն ձգտումներուն ու հոսանքներուն, որոնք արդէն իսկ գոյութիւն առած էին Հայաստանի մէջ։ Անոնք դիւրութիւնով չէին կրնար սպաննուիլ։ Բոլոր հայութիւնը Քրիստոնէութիւնը ընդունած էր, այո՛, բայց ո՛չ թէ Արեւմտեան Քաղաքակրթութիւնը, որուն կը վերաբերէր այդ Նոր կրօնը։ Արեւելեան Քաղաքակրթութեան պաշտպանները տակաւին կը պահպանէին իրենց համակրութիւնը՝ Արեւելքին հանդէպ, քաղաքական, ընկերային և այլ պատճառներով, որոնք անբանաւոր ալ չէին ինքնին։

Համակրանքի, ձգտումներու և դիւանագիտական հայեցողութիւններու այս տարբերութիւնները՝ անտարակոյս ներքին անհամաձայնութիւններ պիտի առաջացնէին.— ինչ որ ըրին արդէն։ Պարսիկները, իրենց

քաղաքականութիւնն ձեռնարկող հոսանքը ուժովցնելու համար որեւէ ջանք չէին խնայեր, որով աւելի և աւելի կրնային ապահով ըլլալ իրենց շահերուն պաշտպանութեան, և հետամուտ էին միշտ գիտակ մնալու Արեւմուտքի և մանաւանդ Յոյներու տրամադրութիւններուն, որպէս զի յարմարագոյն ժամանակին կրօնական արշաւանքով մը ջնջէին Լուսաւորչի գործունէութեան հետքերն իսկ: Յոյները քաղաքական անմտութիւն ցոյց տուին սակայն, չկրնալով օգտուիլ Հայոց տրամադրութիւններէն և անոնց Արեւմուտքի հանդէպ՝ ցոյց տուած համակրութիւնէն: Յունա-Պարսկական բոլոր բաղխումներուն մէջ հայերը կոչուած էին շատ մեծ դեր մը կատարելու, այնպէս որ Յոյներու համար ամենէն խելացի գործելակերպը պիտի ըլլար շարունակ զօրացնել Յունական քաղաքակրթութիւնը և Արեւմուտքի համակիր կուսակցութիւնը, որպէս զի Հայաստանը դառնար լուրջ պատուար մը պարսկական արշաւանքներուն կամ ալ բռնապետական քմահաճոյքներուն դէմ: Այդ պատմական միեւնոյն սխալները միշտ ունեցած են Յոյները՝ Հայերու վերաբերմամբ, և ա՛յնչափ ա-

ռաջ տարած են անփութութիւնը որ Ե. Դա-
րու մէջ, երբ Քրիստոնէութեան անունով
Հայ ժողովուրդը յուսահատական պայքար
կը մղէր Յազկերտի բանակին և մոգերու
դէմ, Յոյներ դաւաճանութիւնն ունեցած
են անտարբեր հանդիսատեսներ լլլալու:
Յոյներու միակ հետաքրքրութիւնը եղած է
կրօնական գերակշռութիւն պահել Հայերու
վրայ և քաղաքականապէս գոհացութիւն-
ներէ հեռու փախչիլ, առանց նկատելու թէ
Հայաստանը իրենց համար կրնար ըլլալ շատ
զօրաւոր նեցուկ մը՝ իրենց քաղաքակրթու-
թեան կամ ազդեցութեան տարածմանը հա-
մար՝ Ասիոյ մէջ: Այս ճշմարտութիւնը հաս-
կցան հայերը և ասպետական ոգիով մը, որ
պատուաբեր է մեզ համար, շուտ զատուին
կրօնապէս Յոյներու ազդեցութենէն՝ Քաղ-
կեդոնի ժողովին առթիւ և այնուհետեւ
միշտ, միամիտ,— ինչպէս յաճախ,—
տարին Քրիստոնէութեան լուծը՝ Փոքր Ասիոյ
մէջ պաշտպանելու համար Արեւմուտքի կը-
րօնն ու քաղաքակրթութիւնը:

Բայց մինչեւ այդ՝ արեւմտականութեան
կամ տարբեր բառերով հելլենականութեան
հոսանքը արդէն գիտակից գործունէութիւն
մը ունեցած էր Հայաստանի մէջ: Գր. Լու-

սաւորիչին յաջորդող մեր բոլոր հայրապետները հելլենականութեան պաշտպաններ էին մեծ մասով ։ Հետզհետէ Մեծն Ներսէս , Սահակ Պարթեւ. եւայլն կրթական դէկը ձեռք առնել ուզեցին և դպրոցներու ուսուցիչարաններու մէջ աշխատեցան պատրաստել սերունդ մը , որ բոլորովին ազատած ըլլար հայ-հեթանոսական հին կրօնին ազդեցութիւնէն և Քրիստոնէութեան ջահակիրը դառնար ։ Հելլենականութեան ներնայացուցիչները. հետեւած ուղղութիւնը շատ արդիւնաբեր էր անշուշտ ։ Ե . Դարու սկիզբը Հայ գիրերու գիւտը ահա կուգար աւելի՛ եւս հիմնաւորել Քրիստոնէական կըրօնն ու հայ-ազգային պատմական-անհատականութիւնը . իր կրօնական , ազգային ու ղարգոյական երեք տեսակէտներով , և անոր կը յաջորդէր Ոսկեդարի շարժումը ու Թարգմանիչներու հրաշալի բոյլին ամենագնահատելի գործունէութիւնը ։

Ոսկեդարի շարժումը հետեւաբար հելլենականութեան առաջխաղացումն էր հիմնական և արագ ։ Արեւելեան հոսանքը պիտի տկարանար անշուշտ և կը տկարանար ալ ։ Հայոց աչքերը դարձած էին Աթէնք , Կեսարիա , Հռոմ և այլն , ամենքն ալ Ա-

րեւմ. Քաղաքակրթութեան ու մշակոյթի կեդրոններ։

Յազկերտ կը դիտէր այս բոլորը և Յոյներէն քաշուելով՝ կըսպասէր յարմարագոյն րոպէին ոչնչացնելու համար Հայաստանի մէջ Քրիստոնէական ոգին, որ միշտ «քար-գայթակղութեան» պիտի ըլլար պարսկական հաշիւներուն առջեւ և մէկ անգամէն տափա-կանութեան յաղթանակը պիտի ապահովէր։

Կրնա՞ր ըլլալ ատիկա։ Պարսիկ արքու-նիքին հաշիւները ճի՞շտ էին։ Կարելի՞ էր այլեւս Քրիստոնէութիւնը ջնջել Հայաստանի մէջէն։ Ասոնք հարցեր են, որոնց պատաս-խանը իրերու ընթացքը և պատմութիւնը տու-ին, հաստատելով թէ Քրիստոնէութիւնը պէ՛տք է տեւական դառնար և Հա՛յն ալ անպայման ըլլար Եւրոպականութեան կամ Արեւմ. Քաղաքակրթութեան զինուոր։

Ոսկեդարի մեծ առաջդիմական շարժման և հելլենականութեան ոգիին արդիւնքը ե-ղաւ հինգերորդ դարու մէջ տեղի ունեցող Վարդանանց Պատերազմը Շաւարշանի դաշ-տին վրայ.— Ճակատամարտ մը, որ ու-րիշ բան չէր, բայց եթէ Քրիստոնէութեան և Զրադաշտականութեան զինուորներուն, Արեւելականութեան (Պարսիկ) և Արեւմ-

տականութեան (Հայ) տոհմի բաղխումը , և ո՛չ թէ լոկ քաղաքական կամ ցեղային սեղմուկ բնոյթ ունեցող սովորական պատերազմ մը ։

Աշխարհի մեծ և վճռական պատերազմներէն մին էր Վարդանանց Պատերազմը , որ Զրադաշտականութեան մեծագոյն հարուածը տուաւ ։

Մնացածը գիտենք արդէն ։ Այսպէս թէ այնպէս Նահատակուող դիւցազուններու արիւններուն կարմիրովը ոռոգուեցան հայ եկեղեցիին հիմերը ։ Զոհեր շատ տրուեցան , այո՛ , Վարդանանց ճակատամարտին մէջ կամ անկէ վերջը ։ Բայց Քրիստոնէութիւնը յաղթանակեց և Հայը այնուհետև վճռականօրէն դարձաւ Արևմուտքի և Արևմըտականութեան զինուորը , միշտ մինակ տանելու համար , աւա՜ղ , խաչակրութիւն մը , որ Նահատակութիւն կը պահանջէր ։

Ատո՛ր համար է արդէն որ Նահատակ Եկեղեցի դարձաւ Հայ Եկեղեցին և Նահատակ Ժողովուրդ՝ Հայ Ժողովուրդը ։

# V

Հայ կեանքը Վարդանանց պատերազմէն վերջ.— Քաղկեդոնի ժողովը.— Վահան Մամիկոնեան եւ իր գործը.— Պարսիկներու խաղաղականութիւնը կը փոխուի.— Հայերը առիթէն կ'օգտուին.— Պարսից գահը խարխլած.— Մազդակականութեան ծագումն ու տիրապետութիւնը:

Քննական պատմութիւնը հարց մը կը դնէ մէջտեղ։ Հա՞րկ էր որ հայեր մղէին Վարդանանց պատերազմը։ Թէր ու դէմ կարծիքներ բնականաբար գոյութիւն ունին այս մասին։ Սակայն՝ անհերքելի է սա ճշմարտութիւնը որ այդ պատերազմը անխուսափելի կը դառնար՝ քանի որ հելլենական ոգին կը զօրանար հետզհետէ և հայ գիրերու գիւտէն վերջ ազգային ըմբռնումներ եկած, խառնուած էին քրիստոնէական հաւատալիքներու։ Հայը՝ Քրիստոնեայ ըլլալէ առաջ, Ե. դարուն մէջ, Հայ-Քրիստոնեայ էր։ Եւ իր կրօնին ուղղուած որեւէ հարուած կրնար նկատել հարուած մը՝

ուղղուած իր ազգային զգացումներուն, ազգային ոգիին ու ազգային պատմա-անհատականութեան.— բաներ՝ որոնք նուիրական էին իրեն համար։ Հայ ժողովուրդը այլեւս ինքնուրոյն ոգի մը մշակել սկսած էր։ Մշակութական գործը նոր թռիչ առած էր և հելլէն գրականութեան առաջնորդութիւնը անհրաժեշտութիւն մ'էր։

Վարդանանց Պատերազմը աշխարհի մեծ և վճռական պատերազմներէն մէկը համարելով հանդերձ, պէտք է խոստովանիլ թէ պարտութիւնով վերջացաւ, պարապը հանեց բոլորովին Հայ կրօնաւորներուն ջանքերը, խորտակեց Հայոց ունեցած անկախութեան երազները և մէկ խօսքով չտուաւ այն, որուն համոզուած էին հայերը, երբ անհաւասար ուժով յանդգնութիւնն ունեցան ճակատելու պարսիկներուն անհամեմատօրէն ուժեղ բանակին հետ։ Վասակն ալ չարաչար յուսախաբ եղաւ։ Սակայն Սասանեան թագաւորներուն ու անոնց խորհրդականներուն հասկցուց բան մը, որ նպաստաւոր էր Հայոց համար։ Անոնք խորապէս համոզուեցան թէ բիրտ ուժով անկարելի է ջնջել ժողովրդային կրօն մը և թէ այդ կերպով, — կրօնափոխութեամբ, — անհնար

կ՚ըլլար Հայոց ձգտումները և աշխարհահայեացքը կապել իրենց շահերուն ու քաղաքական ըմբռնումներուն հետ։ Ասիկա սակայն պատճառ մը չեղաւ որ Պարսից արքունիքը կրկին հետամուտ չըլլայ իր առաջադրութեան և Յազկերտ Բ. իր սոսկալի հալածանքով չստեղծէ նոր կրօնական պատերազմ մը, երկրորդ խաչակրութիւն մը, որուն ղեկավար ու դարձեալ կը վերաբերէր այն սահմանին, որ առանձնած էր Հայոց շահերուն պաշտպանութիւնը՝ արեւմըտեան քաղաքակրթութեան իբր գինուոր։ Այդ պատուական պատերազմիկը Վահան Մամիկոնեանն էր.— հին դարերու Հայ մեծ Յեղափոխականը։

Այս երկրորդ կրօնական պատերազմին անցնելէ առաջ, կ՚արժէ նկատողութեան առնել թէ ի՛նչ էր Հայ կեանքը Վարդանանց Պատերազմէն անմիջապէս վերջ։ Շատ բնական էր որ յոգնեցուցիչ և սպառիչ կռիւ մը ըլլար Շաւարշանի ճակատամարտը, որովհետեւ ժողովրդային էր և ո՛չ թէ զինուորական։ Հայոց պարտութենէն վերջ Պարսիկները իրենց քաղաքականութիւնը փոխելու իմաստութիւնը չունեցան և հալածանքը շարունակուեցաւ։ Շատ մը հայ

աստիճան՝ աւորներ Պարսկաստան քշուեցան, Հայաստանի մէջ թշուառութիւն մը ծայր տուաւ և յուսահատութիւնը պիտի դառնար տիրական, եթէ Հայ կղերը, քրիստոնէական ոգին ու Հայ զինուորականութեան ներկայացուցիչներ անհաշտ ատելութիւն չսնուցանէին պարսից կրօնական հետապնդութիւններուն դէմ: Յոյներուն դիրքը որոշ էր արդէն սկիզբէն ի վեր: Համակրօն եղբայրներու վրայ դրուած ամէն յոյս ապարդիւն մնալու դատապարտուած էր. իսկ Ասորիները հնարաւորութիւն չունէին արդէն ներգործական դեր մը ստանձնելու: Այսուհանդերձ ներքին-կրօնական խնդիրներ եկան տարաձայնութիւններու և հակակրութիւններու տեղի տալ ու Հայոց յարաբերութիւնը ցրտացաւ Յոյներուն և Ասորիներուն հետ, որոնք կրօնական սին վէճերով զբաղած էին, երբ ասդին քաղաքական մեծ յեղաշրջութիւններ տեղի կ'ունենային Հայաստանի մէջ, Քրիստոնէութեան անունով՝ Մամիկոնեան Նախարարութեան ձեռներէցութեամբ, և ո՛րչափ զգալի էր իրենց օժանդակութիւնը:

Մինչդեռ Քրիստոնէութիւնը տակաւ կը զօրանար արեւմուտքի և արեւելքի մէջ, կը-

ղեկավարութեան մէջ երեւան կուգային ազատական հոսանքներ եւ անոնց արտայայտիչները, որոնք իբրեւ ազատ մտածողներ՝ «գայթակղութիւն կը սերմանէին իրենց շուրջը»: Քրիստոնեայ կղերականութիւնը տակնուվրայ եղած՝ իր բոլոր զէնքերը կը գործածէր այսպիսի հերետիկոսներու դէմ, անէծք, նզովք, բանադրանք եւ այլն չխնայելով: Ու որպէսզի աւելի ազդեցիկ ըլլան ու մեծագոյն՝ այդ պատիժները, Քրիստոնէական-տիեզերական ժողովներու գաղափարին յղացան: Առաջին տիեզերական ժողովը տեղի ունեցաւ Նիկիոյ մէջ, 325ին, դատապարտելու համար Արիոսը, որ կ'ըսէր. «Քրիստոս ստեղծուած չէ, այլ՝ հասարակ արարած, եւ թէ Հայր Աստուած անկէ աւելի մեծ է»: Այս ժողովին մասնակցեցան հայերն ալ: Հո՛ն է որ յօրինուեցաւ «Հաւատոյ Հանգանակ»ը: Այդ առաջին ժողովէն եւ անոր մեծադղորդ պատգամներէն հազիւ 60 տարի անցած էր, երբ կրկին պէտք տեսնուեցաւ Կ. Պոլսոյ մէջ 381ին գումարելու երկրորդ տիեզերական ժողով մը՝ դատապարտելու համար հերետիկոս Մակեդոնը, որ Արիոսէն ա՛լ աւելի առաջ երթալով ո՛չ միայն Քրիստոսի աստուածութիւնը չէր ըն-

դունէր, այլ և Սուրբ Հոգին ալ կը մերժէր։ Բայց որովհետև աղանդաւորները հետզհետէ կը շատնային և քրիստոնէական կրօնին սահմանագծուած ըմբռնողութիւնները քննադատութիւններով կը խանգարուէին, ուստի անհրաժեշտութիւն դարձաւ գումարել երրորդ տիեզերական ժողովը Եփեսոսի մէջ՝ 431ին՝ դատապարտելու համար ընդհանրապէս բոլոր հերետիկոսները և մասնաւորապէս Նեստորը, որ հաստատելով հանդերձ Արիոսի և Մակեդոնի բանաձևերը, կ'աւելցնէր թէ «Մարիամը չէր կրնար Աստուածածին կոչուիլ, այլ՝ մարդածին, վասնզի Քրիստոս մարդ էր և ո՛չ թէ Աստուած»։ Հայ եկեղեցին այս երեք տիեզերական ժողովներու որոշումներն ալ ընդունած է, մասնաւոր ներկայացուցիչներով մասնակցելով։ 451ին գումարուեցաւ չորրորդ տիեզերական ժողովը Քաղկեդոնի մէջ։ Այս անգամ աւելի աղմկալից հարց կար։ Նոր մոլեռանդ մըն էր որ խնդիր կը ստեղծէր։ Եւտիքէս կ'ըսէր թէ «Քրիստոս երկու բնութիւն,— Աստուածային և մարդկային,— չունէր, այլ՝ մէկ, և ան ալ մի՛միայն Աստուածային», հակառակ եկեղեցիներու ընդունած երկու բնութեան վար-

դապետութեան ։ Հայերը սակայն այս ժո-
ղովին մասնակցելու հնարաւորութիւն չու-
նէին, ասդին զբաղած ըլլալով հայ-պարսկա-
կան ընդհարումներով, որոնց իբրեւ հե-
տեւանք քաղաքական ահագին բարդու-
թիւններ ստեղծուած էին Հայ կեանքին
չուրջը և օրհասական կռիւ կը մղուէր պար-
սիկներուն դէմ։ Եւ ի վերջոյ ալ հարկ չը-
տեսնուեցաւ ընդունիլ որոշումները ժողո-
վի մը, որուն օրակարգի խնդիրները Հա-
յոց համար հետաքրքրական ոչինչ ունէին։
Այս էր ահա պատճառը որ Քաղկեդոնի ժո-
ղովը կրօնական մեծամեծ վէճերու դուռ
բացաւ և Հայերը լարեց Յոյներուն դէմ։

Արեւմտեան Քրիստոնեայ ազգերու կրօ-
նական այս փոթորիկներուն ատեն էր որ
պարսիկներուն բուռն հալածանքները ըս-
տեղծեցին երկրորդ պատերազմ մը։ 482ին
Սարվշնասպի ղեկավարութեամբ Պարսից
բանակը մտաւ Հայաստան։ Վահան Մա-
միկոնեան սպարապետը կը վարէր կռիւը։
Այս անգամ արդիւնքը շատ աննպաստ էր
պարսից համար։ Վահան կը յաղթէր չա-
րաչար այն բոլոր բանակներուն, որոնք կը
ղրկուէին Պերոզի կողմէ, և «զինու զօրու-
թեամբ» կուգար յուսահատութեան մատ-

նել պարսիկ արքունիքը, ստիպելով որ հալածանքի քաղաքականութիւնը դադրի այլ ևս։ Պերոզի յաջորդը Վաղարշ, ի բնէ խաղաղասէր՝ ո՛չ միայն հալածանքն ու յարձակումը դադրեցուց, այլ և մանաւանդ պատգամաւորութեան մը միջոցաւ հաշտուեցաւ Վահան Մամիկոնեանի հետ և կրօնական ազատութիւն հռչակեց։

Ահա այսպէս բազմաթիւ հերոսական կռուիններու և արիւնհեղութեան շնորհի՛ւ միայն էր որ ձեռք բերուեցաւ այս թանկագին ազատութիւնը։

Բայց արդէն ներքին պառակտումներու հետեւանքով Սասանեաններու գահը կը խախտէր, և պարսիկ վեհապետներ հարկադրուած էին որոշ զիջումներ ցոյց տալ և համաձայնիլ իրենց հպատակ ժողովուրդին հետ։ Այս առիթէն օգտուելո՛վ է որ արդէն հայերը յաջողեցան Վահան Մամիկոնեանը մարզպան կարգել տալ։ Վաղարշի յաջորդը Կաւատ, թէև պարսից քաղաքականութեան ընդհանուր ուղղութիւնը փոխել ուզեց՝ Նոր Հալածանք մը սանձելով և նորոգելով հին խնդիրները, բայց Պարսկաստանի ներքին երկպառակութիւնները իր ուշադրութիւնը դարձուցին

ուրիշ կողմ և ստիպուեցաւ զիջել ։

Յոյներն ու պարսիկները սկսան այլեւս չարունակական կռիւներու ։ Խեղճ Հայ ժողովուրդը կրկին մնաց երկու սուրերու մէջտեղ և մանաւանդ երկու հակակրութիւններու միջեւ ։ Է․ Դարուն կէսերուն (640) սակայն Արաբացիները տիրեցին Պարսկաստանի , օգտուելով անոնց ներքին խնդիրներէն և անցան Հայաստան ։ Պարսիկներ ու Յոյներ , արդէն տկարացած չարունակական պատերազմներով՝ յանկարծ նոր թշնամիի մը դէմ գտան ինքզինքնին ։

Մահմետական կրօնն սկսած էր ու արաբական բանակները՝ տիրապետական ձգտումներով՝ կ՚արշաւէին ամէն կողմ ։

Հայաստանի ճակատագիրն ալ կը փոխուէր ։

# VI

*Արաբները Հայաստան կը մտնեն.— Մուհամմէտ եւ իսլամական կրօնը.— Մահմետականութեան ձգտումները ու յատկանիշները.— Տիրապետական ազդակներ.— Մահմետական արշաւանք.— Խալիֆայութիւններ.— Արաբները՝ Արաբիայէն դուրս.— Հայաստանը առաջին ռազմավայր.— Քրիստոնէութիւնը արեւմտեան կրօնք եւ իսլամութիւնը՝ արեւելեան:*

Ըսինք՝ թէ Հայաստանի ճակատագիրը կը փոխուէր, երբ արաբական բանակները Պարսկաստանը նուաճելէն վերջը կը մտնէին Հայաստան: Արաբացիներ սուրի ու զէնքի միջոցաւ կը տարածէին մահմետականութիւնը ամեն կողմ: Անոնց առաջին ենթականերէն եղաւ Պարսկաստանը: Սասանեան վերջին թագաւորը, Յազկերտ Գ., չուարած բոլորովին նոր կրօնքի մը անունով իր պետութեան ու կալուածներուն վրայ խուժող այս թշնամիներէն, փախաւ. եւ թողուց որ անոնք սանձարձակ տիրեն իր երկիրներուն: Արաբացիներու ընելիքը պարզ էր: Նուաճել Արեւելականութեան հիններ-

հոյացուցիչը, Մազդեզականութեան պաշտպան թուլացած Պարսկաստանը և անոր աւերակներուն վրայ կանգնել մահմետական աշխարհը, թափով ու եռանդովլից: Հայաստան, թէև պարսկական նահանգ մը, մնացած էր բոլորովին անտէր ու անխնամ: Վարդանանց ու Վահանի պատերազմներէն վերջ մարզպաններ ու կիւրապաղատներ իրարու յաջորդած էին: Եւ Թէոդորոս Ռըշտունի քաջ իշխանը վերջին անգամ երբ հազիւ կ'աշխատէր երկիրը խաղաղեցնել, ահա Հայաստանի սահմաններուն կը մօտենային արեւելեան նոր թշնամիներ: Հայ ժողովուրդը կրկին ասպարէզ կը ճանչուէր, պարագաներու բերմամբ, իր պատմական դերը ստանձնելու և շարունակելու Փոքր Ասիոյ մէջ: Քաղաքակրթական ընդունակութիւններով լեցուն ժողովուրդ մը, իր արեւմտեան աշխոյժ ոգիով, հրաժարեցաւ հայրենի հեթանոսական կրօնքէն և դարերով առանձինն պայքարեցաւ՝ իրմով, իր նահատակութիւնով պահպանելու համար Արեւելքի, Ասիոյ մէջ՝ Արեւմտականութեան ոգին, այժմ կրկին իր ուսերուն վրայ կ'առնէր խաչ մը, որ իր կարողութեան չէ՛ր համապատասխաներ: Հայ ժողովուրդը ար-

դէն փայլուն ապացոյցը տուած էր իր հաւատարիմ արեւմտականութեան: Սոսկալի հալածանքներէ վերջ իսկ իր յարաբերութիւնը կտրած բոլորովին արեւմտեան բոլոր եկեղեցիներէն, ան պահպանեց ու մեծցուց քրիստոնէական կրօնը, հաւատարիմ Ե. դարու իր վարդապետական ուղիին եւ աւանդութիւններուն:

Կարգը Հայաստանինն էր:

Արաբական բանակները, Պարսկաստանի գրաւումէն վերջ, Մուհամմէտի յաջորդող առաջին չորս կատարեալ խալիֆաներէն երկրորդին Օմէրին (634-644) օրով, Աբդուրրահման զօրապետին առաջնորդութեամբ 18,000 զօրքերով Ասորեստանի կողմէն յարձակեցան եւ առանց արգելքի մինչեւ Տարօնի գաւառը հասան: Ո՞վ պիտի դիմադրէր արդէն: Հայաստանը, ինչպէս միշտ, նոյնպէս ալ այս ժամանակ միաձոյլ քաղաքական իշխանութիւն մը եւ ոյժ մը չէր ներկայացներ: Այս նորեկ աշխարհակալները ամեն կողմ կ'աւրէին, կ'աւրշտկէին անխնայ կոտորելով ազգաբնակչութիւնը: Տիրան Մամիկոնեան զուր տեղը հայ իշխանները կը հրաւիրէր իր չուրջը՝ միանաբար կռուելու համար թշնամիին դէմ: Ո՛չ մէկ

արձագանգ իր հայրենասիրական հրաւէրին։ Վերջապէս միայնակ ստիպուեցաւ ճակատիլ արաբներուն դէմ 8,000 քաջերով, բայց շնորհիւ Սահուռ Անձեւացի իշխանին դաւաճանութեան, յաղթուեցաւ ու նահատակուեցաւ։ Աբդըրրահման առաջ քշեց իր զօրքը, պաշարեց Դուինի քաղաքը, այրեց, աւերեց, ջարդեց ու 35,000 մարդ գերի քշեց Արաբիա։ Ասիկա փորձ մ'էր միայն։ Արաբացիները երկրի դրութեան ծանօթանալէ վերջ ետ քաշուեցան եւ երկրորդ անգամ անհեղ պատրաստութեամբ յարձակեցան Հայաստան՝ թշուառութիւն, հուր եւ սուր սփռելով ամէն կողմ, տիրեցին Արարատեան աշխարհին եւ Հայաստանի տէր հռչակեցին ինքզինքնին, մինչեւ որ Հայերը, Յոյներէն յուսահատ, հարկադրուեցան բանակցութեան մտնել Օսման ամիրապետին հետ եւ հպատակիլ անոր (647)։ Ասով չվերջացաւ սակայն։ Յոյներն ալ պահանջող էին որ Հայերը իրենց հպատակելու խոստում տան։ Ի՞նչպէս ազատուիլ այս երկսայրի դրութենէն։ Հայոց աշխարհը դարձաւ «գըժտութեան խնձոր»ը Արաբներուն եւ Յոյներուն միջեւ, որոնք երկար ատեն պայքարեցան իրարու հետ, Հայաստանի հողին վր-

րայ, ոտնակոխ ընելով ամբողջ երկիրը։ Արաբներուն ազդեցութիւնը աւելի զօրացաւ տակաւ. և Յոյներու զօրքերը քաշուեցան Հայաստանէն՝ ժամանակաւոր կերպով անշուշտ, վասնզի Աշխարհագրութիւնը վճռեր էր որ Հայաստանը մրցման ու կռուի ասպարէզ ըլլալէ չդադրի։ 693ին Հայերը վերջապէս Արաբացիներու տիրապետութեան ենթարկուած էին։

Հասկնալու համար մահմետականութեան ընդհանրապէս և Արաբներուն մասնաւորապէս ձգտումն ու յատկանիշները, անհրաժեշտ է ճանչնալ Մուհամմէտն ու իսլամական կրօնը, որոնք արաբական արշաւանքներու և տիրապետութեան բարոյական ազդակն ու շարժառիթն էին մանաւանդ։

Այս անձը, որ Արեւելեան խնդիրը կամ Արեւելքի ու Արեւմուտքի պայքարները փոխադրեց տարբեր գետնի մը վրայ, Մուհամմէտն է, այն մեծ կրօնական-հիմնադիրը որուն ազդեցութիւնը աշխարհի ու արեւելեան քրիստոնեայ ժողովուրդներու ճակատագրին մէջ՝ մեծ է։ Ոչ մէկ աշխարհակալ կրցած է աւելի մեծ ազդեցութիւն ստեղծել միջաշխարհային ընդհանուր հոսանքներուն մէջ, որչափ իսլամական

կրօնքին այս հիմնադիրը (*)։

Մուհամմէտի ծնունդէն առաջ Արաբիոյ ժողովուրդը հեթանոս էր մեծ մասամբ։ Մէքքէն հինէն ի վեր նշանաւոր ուխտատեղի էր, ուր ամէն տարի հազարաւոր ուխտաւորներ կ'ուգային իրենց զոհերը մատուցանելու։ Ամէն ցեղ իր կուռքը ունէր Քեապէ կոչուած տաճարին մէջ։ Բոլոր կուռքերը 365ի չափ կային։ Հոն կը գտնուէր նշանաւոր Զէմզէմի ջրհորը։ Այս նշանաւոր քաղաքը անհաւանաբար սահմանուած էր ըլլալու ծննդավայրը իսլամներու մարգարէին՝ Մուհամմէտի (**)։

Մուհամմէտ կը վերաբերէր արաբական ազնուական ցեղի մը, Քորէյշի Հաշէմ ընտանիքին, որուն անդամները ժառանգաբար Քեապէի տաճարին պահապաններն էին, որով և Մէքքէի իշխանութիւնը իրենց ձեռ-

(*) Մուհամմէտի կեանքին և իսլամութեան նկատմամբ Բրոֆ. Թումաեանի Արեւելեան Հարցի պատմութեան հետեւած եմ, լաւագոյն և ամփոփ գտնելով զայն՝ բաղդատմամբ այս նիւթին վրայ գրուած հայ կամ օտար զանազան գործերու։ Գ. Օ.

(**) Մուհամմէտ և Իսլամական Կրօնը մեր մէջ ուսումնասիրուած չեն.— զանցառութիւն մը, որուն մէջ Հայոց ուսումնասիրական ոգիին պակասը չէ՛ միայն պատասխանատուն։ Գ, Օ.

քը կը գտնուէր։ Իր ծնողքը կանուխէն մեռած ըլլալով հօրեղբայրը Աբու Թալէպ զինք խնամեց և իրեն առաջնորդեց։ Մուհամմէտի մանկութեան շրջանին նկատմամբ միակատար տեղեկութիւններ կը պակսին։ Կ'երևի թէ շատ մը ճամբորդութիւններ ունեցաւ այս ու այն կողմերը։ Կը յիշուի թէ տասներեք տարեկան եղած ատեն Սուրիա գնաց։ Իր երիտասարդ տարիքին մէջ Խատիճէ անուն ազնուական և հարուստ տիկնոջ մը հետ ամուսնացաւ և միշտ երջանիկ կեանք մը վարեց, առանց ուրիշ կին առնելու անոր կենդանութեան ատեն։ Մուհամմէտի առաջին հաւատացողներէն մին ալ Խատիճէն էր, որ չորս կատարեալ կիներու կարգը կը դասուի, (Մովսէսի քոյրը, Յիսուսի մայրը. Խատիճէ և աղջիկը Ֆաթմա)։ Խատիճէի մեռնելէն վերջ Մուհամմէտ առաւ Աբուպէքիրի աղջիկը. Այիշէն, որ իր սիրականն էր։ Ամէն տարի Րամազան ամսուն Մուհամմէտ կ'առանձնանար եւ կը ծրագրէր իր ապագայ կրօնական-քաղաքական դրութիւնը։ Իր Սուրիա ճամբորդութիւնները, Արաբիոյ չորս կողմերէն ամէն տարի Մէքքէ դիմող ուխտաւորներու հետ ունեցած խօսակցութիւնները, Արաբիոյ մէջ

դաւանուող կրօնքներուն (Կռապաշտութիւն, Հրէութիւն, Քրիստոնէութիւն և Մազդեզականութիւն) ուսումնասիրութիւնը և քաղդատական զննութիւնը զինքը հասցուցին այն եզրակացութեան թէ միմիայն միաստուածեան դաւանութիւնն է ճշմարիտ ուղին և «Մէկ Աստուծմէ զատ ուրիշ Աստուած չկայ եւ Մուհամմէտն անոր առաքեալն է»։ Ժամանակ ժամանակ կ'ունենար յայտնութիւններ, որոնք «Գաբրիէլ հրեշտակին միջոցաւ կը հասնէին իրեն՝ երկինքէն»։ Մուհամմէտի մահէն երկու տարի վերջը Ապուպէքիր անոնց ամէնը հաւաքելով հրատարակեց Ղուրան անունով։ Ղուրանին լեզուն պարզ ու վսեմ է։ Կը բովանդակէր Հին Կտակարանէն պատմութիւններ։ Մուհամմէտի առաջին աշակերտները շատ քիչ էին, 14 հատ միայն։ Անոնք չորս տարի պատրաստելէն վերջ իր մարգարէական պաշտօնը հրապարակաւ յայտարարել ուզեց։ Իր հետեւողները կամաց կամաց շատցան, մանաւանդ որ ուխտի օրերը Քեապէ երթալով կը քարոզէր։ Ամէն մեծ մարդոց պէս իսլամական կրօնի այս հիմնադիրն ալ ունեցաւ շատ մը թշնամիներ, որոնք յաջողեցան ցրուել իր հետեւողները և հալածել զանոնք։ Մահա-

ւանդ․ Քորէյիշեան ցեղին ուրիշ ընտանիքները սաստիկ հակառակեցան Մուհամմէտի Հաշէմեանց ընտանիքին և նոյն իսկ զինքը մահուան դատապարտեցին ։ Մուհամմէտ խոհեմութիւն համարեց Մէտինէ փոխադրուիլ՝ Ապուպէքիրի հետ ։ Հոս սակայն իրեն կը սպասէր փառք և մեծ յաջողութիւն ։ Իր շատ մը հետևողները , ինչպէս նաև քաղաքացիները դիմաւորեցին և չքեղապէս ընդունեցին զինքը ։ Հոն հաստատուեցաւ Մուհամմէտ , շինեց մզկիթ և տուն և ըսկսաւ քահանայական և թագաւորական պաշտօն վարել ։ Որպէսզի ջնջէ բոլորովին կռապաշտութիւնը , խիստ և աններող քաղաքականութիւն մը ունեցաւ այնուհետեւ ։ Ամէն կողմ իրեն հնազանդեցնելէ վերջ 100,000 հոգիէ բաղկացեալ հաւատացեալներու բանակով մը 629 ին քալեց Մէքքէի վրայ, զայն գրաւեց , Քեապէն մաքրեց բոլոր կուռքերէն և հռչակից իսլամական նուիրական ուխտատեղի , ուր ո՛չ մէկ անհաւատ պիտի կրնար ոտք կոխել ։ Տասը տարին բաւական եղաւ որ Արաբիոյ ցիրուցան բոլոր ցեղերը միանան մէկ կրօնի և մէկ քաղաքական իշխանութեան ներքեւ , մէկ կողմ թողելով իրենց բոլոր ցեղային անհամաձայնու-

թիւնները, որոնք կատաղի պատերազմնե-րու կը մղէին զիրենք միշտ։

Մուհամմէտի կեանքը բարոյապէս ու կը-րօնապէս մաքուր էր ու յանձնարարելի։ Իր քարոզածներուն նախ ինք կը հետեւէր և զանոնք կը գործադրէր։ Լաւ պատրաս-տուած էր իր առաքելական գործին և օժ-տուած էր ամէն տեսակ ընդունակութիւն-ներով, որոնք իրեն գործունէութեանը կը նպաստէին, տարածելով հետզհետէ իր վար-դապետութիւնները։ Իր հիմնած կրօնին տարածման համար բռնի ոյժի գործածու-թիւնը կը թուի ժառանգած ըլլալ Հին կը-տակարանէն, ուր Աստուած թագաւորնե-րու միջոցաւ ցեղերը կը պատժէր։

Այս կերպով հաստատուելով իսլամական խալիֆայութիւնը կամ արաբական պետու-թիւնը, անոր տիրական ձգտումն ու յատ-կանիշը դարձաւ մահմետականութեան տա-րածումը բոլոր աշխարհին վրայ՝ սուրով ու յաղթութեամբ։ Նորադարձ մահմետական ժողովուրդներ իրենց նուիրական պարտա-կանութիւն համարեցին խմբուիլ կրօնա-կան ու քաղաքական մէկ դրօշի տակ և ա-հեղ արշաւանքի մը միջոցաւ ջնջել այն բո-լոր կրօնները, որոնք գոյութիւն կրնային

ունենալ իրենց շրջաններուն մէջ։ Թարմ եռանդը, որ ստեղծուած էր իրենց մէջ նոր կրօնին ոգեւորութեամբը և հոգեկան գոհունակութիւնը, զոր կը զգային, հոգեւոր պարտականութիւն մը կատարած ըլլալու գաղափարով արշաւելու, պատերազմելու, յաղթելու և վերջապէս մարտնչելու ընդունակ կը դարձնէին զիրենք։ Արաբ ժողովուրդը, որ թէ վաճառական և թ'է պատերազմիկ ցեղեր կը համրէր իր մէջ, դուրս ելած էր այլեւս Արաբիոյ սահմաններէն՝ խալիֆաներրուն առաջնորդութեամբ և կ'ուզէր գրաւել ամբողջ աշխարհը։ Իսլամական կրօնքին տարածուելէն առաջ ալ քաղաքակրթեալ ժողովուրդ մըն էր արաբացին, բայց Մուհամմէտի երեւումէն վերջ ներգործական յանդգնութիւնով Արաբիոյ թերակղզիէն ալ դուրս խոյացաւ։ Եւ որովհետեւ առաջին կռիւի դաշտը Փոքր Ասիան կը ներկայանար, ուստի Պարսկաստանի մահմետական կրօնն ընդունիլ տալէ և յաղթահարելէ վերջ հրոսեց Հայաստանի վրայ։

Պատմութիւնը ինչ կերպով որ Հայը ճակատագրօրէն կը դնէր ասիական հեղեղին ճիշդ ճամբուն վրայ, իբրեւ թումբ, Զրադաշտական հալածանքներուն ատեն, միեւնոյն

կերպով ալ Իսլամական կրօնի և Քրիստոնէութեան բաղխման գետնին վրայ կը տարածէր Հայկական Աշխարհը, որուն սահմաններուն մէջ պէտք է մարտնչէին երկու կրօնները կամ երկու քաղաքակրթութիւններու ներկայացուցիչները։ Պարսից զրադաշտական պետութիւնն ինկած էր և արաբական իսլամ պետութիւնը ժառանգած էր անոր դերը։ Մէկ եզրը փոխուած էր։ Բայց ո՞վ պիտի ըլլար կրկին կուրծք տուող այդ վիթխարի ոյժին, ո՞վ պիտի ըլլար Արևմուտքի ու Արևմտականութեան ներկայացուցիչ-մարտիկը, ո՞վ պիտի կազմէր հակառակ եզրը, ո՞վ պիտի ստանձնէր ընդդիմադիրի պաշտօնը սարակինոսեան այս սոսկալի արշաւներուն ատեն։

Նորէ՛ն Հայ ժողովուրդը, Նորէ՛ն Նո՛յն պատմական ցեղը, մեծ՝ իր ցաւերով ու երկունքներով, մեծ՝ իր նահատակութիւններով ու զոհողութիւններով ու մե՛ծ ալ իր դիւցազնութեամբ։

---

# VII

*Մահմետական աշխարհը.— Առաջին խալիֆայութիւնները.— Իսլամութեան հերձուածները.— Դէպ ի Եւրոպա.— Ֆրանգներու ընդդիմադրական դերը.— Հայերը մահմետականութեան ենթակայ.— Արաբական ազդեցութիւնը հայոց մէջ.—Սուլթանական դըրութիւն.— Սելճուգեաններ, Մոնղոլներ, Թաթարներ, Թիւրքմէններ եւ Օսմանցիներ.—Ֆաթիհ Սուլթան Մեհեմմէտ եւ Կ. Պոլսոյ առումը.— Օսմ. տիրապետութիւնը ու Արեւելականութեան յաղթանակը:*

Մահմետական աշխարհին զարթնումն ու տիրապետական ձգտումը պահ մը ահ ու սարսափի մատնեց աշխարհին բոլոր ժողովուրդները: Միմիայն արաբներու ոյժը չէր որ կը սասանեցնէր, այլ այն արագ առաջխաղացութիւնը, զոր ստացած էր այս գործնական կրօնը՝ տարածուելով միջին Ասիոյ խորերը բնակող բազմազան ցեղերուն ու ժողովուրդներուն մէջ և պատրաստելով մահմետական ահագին բանակ մը, որուն դիմադրել շատ ալ դիւրին չէր թուեր: Համիսլամական կրօնա-քաղաքական ծրա-

գրին շուրջ բոլորուած էին կարծես ամենքն ալ՝ մատղիր՝ արշաւելու, տիրելու, ամէն կողմ իսլամական տիրապետութեան դրօշը ծածանեցնելու և Մարգարէին անունը հռչակելու ։

Այս նորակազմ տարրը քաղաքա—պետական տեսակէտով խալիֆայական կազմակերպութիւն ունէր ։ Մարգարէն՝ իր կենդանութեանը, ինչպէս նաեւ իր մահէն վերջ յաջորդները կրօնապէս և քաղաքականապէս իշխանութիւնը կեդրոնացուցած էին իրենց ձեռքին մէջ և աստուածպետական (theocratical) կառավարութեան մը ձեւ տուած անոր ։

Մարգարէն զաւակ չունէր, որպէսզի իր փոխանորդութիւնը անոր ձգէր, և ոչ ալ սահմանած օրէնք մը, որուն համեմատ կարելի ըլլար յաջորդ մը ընտրել ։ Դժուարութիւններն ու անհամաձայնութիւններն անխուսափելի էին ։ Ընտրական եղանակը կրնար պակսեցնել հակառակութիւնները ։ Ուստի ժամանակ մը ժողովուրդին քուէներով ընտրուեցան խալիֆաները և ապա ժառանգական հանգամանք առին, տեղի տալով շատ մը երկպառակութիւններու ։ Կատարեալ խալիֆայութիւններ կոչուեցան առա-

ջին չորս փոխանորդութիւնները, վասն զի տանք թէ՛ Մարգարէին ժամանակակիցներն էին ու անոր հետեւողներուն վստահութիւնը գրաւած կատարելապէս՝ և թէ օրինաւորապէս ժողովուրդէն ընտրուած էին։ Մուհամմէտի յաջորդեցին այս չորս առաջին խալիֆաները, Ապուպէքիր (632-634), Էօմէր (634-644), Օսման (644-656), և Ալի (656-661) ամէնն ալ մօտաւոր ազգականները մարգարէին։ Այս չորս կատարեալ խալիֆայութիւններուն օրով է որ իսլամութիւնը իր ամենափայլուն դիրքին մէջ գտնուած է տիրապետութիւնովը ընդարձակ երկիրներու և տարածումովը իսլամական կրօնին։

Հերձուածներու երեւումը կրօններու պատմութեան անխուսափելի մէկ երեւան ըլլալով՝ մահմետականութիւնը չէր կրնար բացառութիւն կազմել։ Ուստի Մուհամմէտի մահուընէն վերջ իսլամութիւնը բաժնուեցաւ երկու մասերու 1.) Սիւննիներ (ուղղափառ) որոնք առջի երեք խալիֆաները օրինաւոր կ'ընդունին և աւանդութեան պաշտպան են, ինչպէս Արաբները և Թուրքերը, և 2.) Շիիները, որոնք Ալիի կուսակիցներն են, նախասահմանութեան չեն հաւատար,

Ղուրանը կատարելագործելի կը նկատեն և Մուհամմէտի ճշմարիտ յաջորդը Ալին միայն կ՚ընդունին։ Շիի են պարսիկները, Հիւս. Արաբիայի ցեղերէն ոմանք, Հնդկաստանի իսլամները եւայլն։

Ումմեանները խալիֆայութիւնը յափըշտակելով գահուն տիրեցին ամբողջ 88 տարի (661-749)։ Աբբասեանները ջնջեցին զանոնք և 750ին իրենք գրաւեցին գահը ու Պաղտատը նկատեցին խալիֆայութեան կեդրոն։ Ասոնք թէև կրօնական խստութիւնները վերսկսան և իրենց օրով քաղաքակրթութիւնը ծաղկեցաւ և գիտութիւնը մշակուեցաւ, սակայն արիւնոտ շրջան մը անցուցին, մինչև որ վերջապէս Սուլթան Սէլիմ Ա. Եգիպտոսը գրաւելով (1517ին) վերջին Աբբասեան անուանական խալիֆան գերի տարաւ և խալիֆայութիւնը փոխանցեց օսմանեան սերունդին։ Ումմեաններու և Աբբասեաններու խալիֆայութիւնը կը կոչուի Արևելեան խալիֆայութիւն (Դամասկոս և Պաղտատ)։ Երկրորդ պատմական խալիֆայութիւնն է Արևմտեանը (Սպանիա կամ Գորտուա), որ 756ին սկսելով տևեց մինչև 1031։ Իսլամական շարժումը Փոքր Ասիոյ և Վոսփորի ճամբով չէր կրնար

անցնիլ Եւրոպա, քանի որ Բիւզանդեան կայսրութիւնը և մանաւանդ Կ. Պոլիսը կոր սնանիլ և ամուր։ Ափրիկէի հիւսիսային ճամբան կրնար ըլլալ ձեռնտու, որ միան-գամայն պարարտ դաշտ մ'էր իսլամութեան, իր միջավայրով համապատասխան ըլլալով Արաբիոյ կեանքին։ Հետզհետէ Եգիպտոս, Թարապլուս, Թունուս, Ալճէրի և Մարոք գրաւուեցան։ Այսպէս ընդհանուր մեծ բանա-կով մը անցաւ Ճիպրալթարը, Սպանիոյ հողին վրայ ոտք կոխեց և հիմնեց Քոր-տուայի խալիֆայութիւնը։ Երրորդ պատ-մական խալիֆայութիւնը կոչուած է Ե-գիպտոսի խալիֆայութիւն (965-1171)։ Ե-գիպտոս մահմետական տիրապետութեան են-թարկուելէն ետեւ փոխարքաներով կը կառա վարուէր։ 968ին Ֆաթիմեանք ինքզինքնին խալիֆա հռչակեցին։ Վերջը Էյուպեան Սուլ-թանութիւնը, եկաւ ջնջել Ֆաթիմեաններու խալիֆայութիւնը՝ որ տեւեց երկու դար։

Ահա թէ իսլամական ինչ ոյժ էր որ ա-ռաջ կը խաղար դէպ ի Եւրոպա։ Ասիան նուաճուած էր արդէն և փոքր Ասիոյ մէջ միայն Հայերը կը մնային քրիստոնեայ՝ ա-րեւելեան բաժնին մէջ։ Հիւս. Ափրիկէն՝ մահ-մետականութիւնն ընդունած էր։ Եւրոպան

պէտք էր նիւթարկել մաւրիտանիական հզօր ազդեցութեան։ Բաղխումը փոխադրուած էր այժմ հոյսու . արևմ. Եւրոպա։ Արաբ ցեղն ու մահմետականութեան դրօշակակիրներ յանկարծ իրենց առջև գտան Ֆրանքներու անհեղ բանակը, առաջնորդութեամբ Շարլ Մարթէլի, որ ջախջախիչ յաղթութեամբ մը կեցուց շարժումը և միանգամընդմիշտ սահմանափակեց մի միայն Սպանիոյ մէջ, ուրկէ ալ ի վերջոյ 1609ին ստիպուեցան ելլել։

Մահմետականութեան և մահմետական աշխարհի մասին այս բոլոր տեղեկութիւնները անո՛ր համար՝ որ կարելի ըլլայ ըմբռնել թէ Փոքր Ասիոյ մէջ բնակութիւն հաստատած քրիստոնեայ ափ մը ժողովուրդ, որպիսին է Հայը, տիրապետական և կրօնական այս անտեղիտալի հոսանքին առջև, ինչպէս պիտի կրնար՝ ինքնապահպանութեամբ՝ իր ազգային պատմա-անհատականութիւնը ապահովել և կուրծք տալ ամէն հարուածի, երբ անդին ամբողջ աշխարհն էր որ կը սարսէր Արեւելականութեան այս հսկայական ոյժէն, որ կը յատկանշուէր կրօնային նախանձախնդրական արագ և ուժեղ առաջխաղացութեամբ մը։ Անտարակոյս Տարօնի մէկ բանակիկը չէր որ պիտի յաջո-

զէր ետ մղել զանոնք: Հայաստանը անխուսափելիօրէն պիտի դառնար արաբական կալուած:

Արաբներու տիրապետութենէն վերջ, Հայոց ճակատագիրը փոխուեցաւ: Հայաստանի նկատմամբ արաբացիներու քաղաքականութիւնը Պարսկականէն տարբեր էր: Պարսից արքունիքը, Հայոց քրիստոնէական կրօնին հետեւիլը իրեն քաղաքականութեան համար լուրջ հարուած մը և արեւմուտքի հետ բարոյական կապ մը նկատելով, կուզէր ջնջել՝ բռնի կրօնափոխութեան և ձուլումի միջոցով: Մինչդեռ արաբացիներուն ջանքն էր միշտ հպատակ պահել Հայաստանը և նիւթապէս օգտուիլ անկէ: Այս ծրագիրն ալ իրագործելու համար պէտք էր հալածել Հայ Ցեղապետները և ծանր հարկերու տակ ճնշել ժողովուրդը, որպէսզի ապստամբութեան վրայ մտածելու միջոց չունենայ: Արաբները մէկ ու կէս տարի չափ Հայաստանը կառավարեցին ուղղակի իրենց կառավարիչներով, որոնք ոստիկան կամ ամիրա կոչուեցան: Ատոնց պաշտօնն էր 1.) Հսկել հայոց վրայ, որ ամիրապետի իշխանութեանը հնազանդ մնան, և 2.) Նշանակուած հարկերը հաւաքելով տէրութեան գան-

ձարանը զրկել։ Ոստիկաններ իրենց հրա-
հանգները կ՚առնէին ուղղակի կեդրոնական
կառավարութիւնէն և կը գործէին ըստ հա-
ճոյս։ Այս պատճառաւ երբեմն ոստիկաննե-
րու օրով հայերը աւելի հանդարտ ապրած
են․ ոմանց օրով ալ չափազանց կեղեքուած
են և նոյն իսկ ապարդիւն ապստամբու-
թիւններու դիմած։ Եթէ ոստիկաններու այս
անտակ գործունէութիւնը չըլլար, ամի-
րայեաններու քաղաքականութիւնը միշտ
նոյնն էր։ Ոստիկաններու մէջ իր անգը-
թութեամբը ամենէն նշանաւոր դէմքը կը
ներկայանայ Բուղա, որուն օրով Հայաս-
տանը անլուր խժդժութիւններու ենթար-
կուեցաւ։ Պէտք է ըսել որ Հայաստանի մէջ
աւատական դրութիւն կար, և հակառակ
Արաբական պետութեան հալածանքին՝ հայ
իշխանապետներու դէմ՝ հոս հոն տակաւին
անկախ ոյժեր կը պահպանուէին կամ կը ս-
տեղծուէին՝ օգտուելով քաղաքական բարե-
յաջող հանգամանքներէ (*)։ Հայ ցեղին մէջ
գոյութիւն ունեցող գերագոյն ոյժը, որ ան-
բացատրելի է, միշտ երևան ելաւ։ Նոյն իսկ

(*) Այս անկախ իշխանութեանց կարգէն են Ար-
ծրունեաց, Ռշտունեաց, Անձեւացեաց, Սիւնեաց,
Կիւրիկեան և այլ պզտիկ թագաւորութիւնները։

Բուղայի օրով, մինչ պէտք էր որ Հայութիւնը ջնջուած ըլլար, ընդհակառակը, Բագրատունեաց հարստութիւնը կը սաղմնաւորուէր։

Արաբական ազդեցութիւնը մեծ եղաւ Հայոց կեանքին մէջ, թէեւ շատ տարածական եղաւ անոր յայտնութիւնը։ Մահմետականութեան յանկարծական տիրապետութիւնն ու ծաւալումը չկրցաւ մէկէն տիրել Հայ ժողովուրդին մտայնութեան, որովհետեւ մասնաւորաբար կրօններու տարբերութիւնն ու քաղաքակրթութեան և ձգտումներու անհամաձայնութիւնը միշտ ձուլուելու վտանգէն ազատ պահեց զայն։ Հայերը Արաբներու հետ կը յարաբերէին պաշտօնապէս, քաղաքականութիւն մը պահպանած ըլլալու համար։ Այսուհանդերձ դարք ու հպատակութիւնը եկաւ սեփական դրոշմ դնել Հայ կեանքին, անոր լեզուին ու գրականութեան մէջ՝ արաբական ազդեցութիւնը մատնանշելու համար։ Ընդհանրապէս Հայ գրականութեան վարդերէն մին և մանաւորապէս Ժ. դարու մեծ ներկայացուցիչը՝ Գրիգոր Նարեկացի, իր հռչակաւոր «Աղօթամատեան»ին, «Նարեկ»ին մէջ, թէեւ հայ բարբառով կը խօսի, բայց արաբական արուեստով կը հիւսէ։ Հայ լեզուին մէջ ներ-

մուծուած չատ մը արաբերէն բառեր արաբական տիրապետութեան ընթացքին մտած են ։ Արուեստներ, արհեստներ եւս անբաժին են արաբական քաղաքակրթութենէն ։

Այս ազդեցութիւնը սակայն միշտ նոյն թափը չպիտի ունենար, քանի որ քաղաքական եղափոխութիւնները, խալիֆութեան ներքին երկպառակութիւնները և յաճախակի պատերազմները տկարացուցած էին արաբական միահեծանութիւնը ։ Այդ էր արդէն պատճառը որ Մէհմէտ-Ծաֆէր ամիրապետը հաւանած էր Աշոտ Բագրատունիին նախ «Իշխանաց իշխան» և ապա «Հայոց Թագաւոր» ճանչցուելուն ։ Աշոտի դիւանագիտութիւնն ու կարողութիւնը, արաբներուն և Հայաստանի ի նպաստ ամիրապետին դէմ ըմբոստացող Ջահապ պարսիկ հրամանատարին 80,000 ապստամբներու բանակին վրայ տարած ահաբեկիչ յաղթանակը և արաբական պետութեան մեքենային արդէն իսկ խանգարած հանգամանքը Բագրատունեաց հարստութեան սկզբնաւորութեան ազդակներ և նըպաստակներ դարձան ։ Ասիկա սակայն Հայ ուժերը չկրցաւ համախմբել, հակառակ Բագրատունեաց առաջին թագաւորներու բուռն ջանքերուն, այնպէս որ չփոթ կա-

ցութիւն մը ստեղծուեցաւ. Հայաստանի մէջ, առաջացած՝ ներքին և արտաքին աննպաստ պայմաններէ։ Երբեմն երբեմն ծաղկեալ եւ հանդարտ կարճ շրջաններ միայն ունեցան հայերը, իսկ անկէց դուրս՝ մի՛շտ կռիւ, մի՛շտ պատերազմ և մի՛շտ անհամաձայնութիւն։ Բագրատունիներու մեծագոյն փառքը եղաւ Անի մայրաքաղաքը, որ Սմբատ Բ. ի ու Գագիկ Ա. ի օրով շէնցաւ, բարեզարդուեցաւ և որ ժամանակակից հնագէտներու հիացման առարկայ կը դառնայ իր աւերակներով իսկ։ Բագրատունեաց վերջին իմաստուն թագաւորին Գագիկ Բ. ի վիճակուած էր Անիի աւերումը ողբալ (1064)։

Բագրատունեաց թագաւորութեան շըրջանին Յոյները կրկին ասպարէզ եկած էին արաբներու և մահմետականութեան անունով արեւմուտք արշաւող արեւելեան ցեղերուն խօլական վազքը սանձելու համար որպէս թէ; և ինքզինքնին դրած թշնամական դիրքի մէջ՝ Հայոց հանդէպ։ Պատմական նոյն թերութիւններն էր որ կը կրկնէին, հակառակելով Հայերուն, որոնք արեւմըտականութեան ախոյեաններն էին փոքր Ասիոյ մէջ։ Միջին Ասիոյ Մօնկոլա-Թաթարական ցեղերու արշաւանքը սակայն եկաւ

ամեն պակաս լրացնել։ Հետզհետէ Սելճուգներ, Մոնկոլներ, Թաթարներ և Թիւրքմէններ այս ու այն կողմերէն Փոքր Ասիան նուաճելու եկան։ Երբեմն նոյնիսկ իրարու դէմ կռիւներ մղուեցան։ Հոս ու հոն հաստատուեցան սուլթանութիւններ։ Նկարագրել Հայաստանի վիճակը՝ Բագրատունեաց հարստութեան անկումէն և Անիի կործանումէն վերջ՝ անկարելի է։ Հայաստանը գետին մըն էր, որուն վրայէն առանց կոխելու և ո՛չ մէկ ցեղ կրնար անցնիլ։ Եւ այս ցեղերու արշաւը՝ հոսանք չէր, այլ՝ հեղեղ։

Հայը իր պատմական դերին մէջն էր նորէն։ Հակառակ այս բոլորին, ան կը նահատակուէր՝ ու կուրծք կուտար։ Իր գաւառներէն շատեր հեռացած էին մայրենի աշխարհէն, իր հազարաւոր որբուկները ծընողական խնամքէ զրկուած էին, հարսեր ու աղջիկներ անօթի ու բոպիկ կը պտտէին իրենց մազերը հովուն տուած. երկրագործութիւն, արուեստ, արհեստ, գիտութիւն, գրականութիւն կանգ առած էին, սովը շըրջան կ'ընէր, հրդեհի բոցերը պար կը բռնէին, անգութ թշնամիները սուրը միշտ պատեանէն հանած կը պահէին և սակայն

Հայ ցեղը իր գերագոյն զոհաբերութեանը մէջ կ'ապրէր, կ'ապրէր՝ Ասիոյ ցամաքին վրայ արեւմտեան ոգին, արեւմտեան կրօնը,— Քրիստոնէութիւնը,— եւ արեւմտեան քաղաքակրթութիւնը պանծացնելու համար։ Ով չգիտեր թէ Ճինկիզխան, Լէնկթիմուր, Շահ-Ռուխի, Ճիհան Շահ եւ տակաւին ուրիշ բռնապետներ ինչ վայրենի խժդժութիւններ ի գործ չդրին Հայաստանի մէջ։

Արեւելեան ժողովուրդներու մէջ օսմանեան ցեղին յայտնութիւնը նոր շրջան մը բացաւ։ Անոր սահմանուած էր ցիր ու ցան դարձած արեւելեան ույժերուն, եւ հոս հոն կերպաւորուած սուլթանութիւններուն ու պէյութիւններուն կեդրոնացման յաջողութիւնը։ Էրթուղրուլի որդին Օսման (1299-1326) իր հօր յաջորդելով սկսաւ տեղաւորուիլ Էսկի Շէհիրի եւ Գարահիսարի կողմերը։ Օսմանեան պետութիւնը սկսած էր։ Օսմանի յաջորդը Օրխան՝ Պրուսան առնելով՝ հոն փոխադրեց իր գահը։ Սա կազմակերպեց ենիչէրիները, որոնք վերջը փորձանք դարձան երկրին գլխուն, եւ յանդգնեցան ոտք կոխել Եւրոպայի ցամաքին վրայ՝ Ջանագգալէէն անցնելով։ Իրարու յաջորդող Սուլթաններուն գլխաւոր

ջանքը եղաւ ընդարձակումը իրենց հողերուն և իշխալը՝ Կ. Պոլսոյ առումը։ Երբ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. գահը բարձրացաւ, արդէն Եւրոպայի մէջ բաւական կալուած ունէին։ Կը մնար Պոլսոյ տիրել։ 1453 Մայիս 29 ին Օսմանեան բանակը կը մտնէր Պոլիս և Ֆաթիհ՝ Այա Սօֆիայի Մայր եկեղեցին մզկիթի վերածած՝ իր առաջին աղօթքը կը մատուցանէր և Բիւզանդիոնն ալ մայրաքաղաք կը հռչակէր։

Կ. Պոլսոյ առումը քաղաքակրթութեան պատմութեան մէջ մեծ նշանակութիւն մը ունի։ Հոն ցեղի մը պարտութիւնն ու ուրիշ ցեղի մը յաղթանակը չէ որ կը կարդայ պատմագէտ բանասէրը։ Այլ անոր մէջ կը տեսնէ արեւմտականութեան պարտութիւնը և արեւելականութեան մեծ յաղթանակը։

## VIII·

*Մահմետական տիրապետութիւնը Հայաստանի մէջ պարտուած.— Բագրատունիներու անկումը.— Յոյները արեւմտականութեան կը դառնեն՝ Հայ թագը խլելով.— Մելիք Շահի արշաւանքը.— Ճէնկիզ Խան եւ Թաթարական հալածանք.— Կիլիկիան ազատ.— Զարմաղան եւ Լէնկթիմուր.— Ահարկու սով եւ գաղթականութիւն.— Հայաստանը կռուախնձոր.— Օսմանեան ցեղերը.— Էջմիածին եւ Սիս.— Օսմանօ-Պարսկական արշաւանքներ.— Քրիստոնեաները եւ Մահմետական աշխարհը.— Հայ հոգեւորականութիւնը.— Շահ Աբբաս եւ իր ծրագիրը — Երասխի ափին նախճիրը.— Հայերը Պարսկաստանի մէջ.— Մեծ Հայաստանը թափուր եւ աւերակ։*

Մահմետական տիրապետութիւնը Հայաստանի ու Փոքր Ասիոյ մէջ՝ հրապարակ բերած էր Բիւզանդական մրցակցութիւնը։ Յոյներուն կրկին վիճակուած կը մնար ոչ նուազ կարեւոր գործ մը Հայկական կեանքին շուրջ։ Արեւելքի մահմետական ազգերու ու բանակներու արշաւանքներէն կեր-

պով մը խուռափած, տոտուկ կամ հուռոզ զոհաբերութենով մոզապուր պրծած հայկական գանձ ու թագաւորութիւնը յոյներուն ձեռքով, արեւմտեան քաղաքակրթութեան ջահակիրներուն միջոցաւ պէտք է որ խորտակուէր ։ Բագրատունիներու անկումը պատմական այդ իրողութիւնը կ՚արձանագրէր ։ Յոյները, Հայ թագն ու սաղաւարտը խլելով՝ անգիտակցաբար կը դաւէին այն քաղաքակրթութեան, այն առաջդիմական ոգիին, որուն անունով երբեմն Դարեհներու, Քսերքսէսներու և այլ արեւելականութեան հզօր ներկայացուցիչներու հետ կը չափուէին, կուրանային իրենց առաքելութիւնը արեւմտականութեան դրօշին պահպանումին մասին ։ Զէ՛ր ճանչցըւած Հայ ժողովուրդին դերը, մանաւանդ հակա՛յ դերը՝ Փոքր Ասիոյ լեռնադաշտերուն վրայ, արեւելականութեան բիրտ ու խըրոխտ ներկայացուցիչներուն մէջ արեւմըտաեան մտայնութեան, քաղաքակրթական այդ հոսանքին պաշտպանութեան նուիրական՝ այլ տաժանելի ճակատագրականութեանը մէջ ։ Ափ մը ժողովուրդի երբ բաժին կ՚իյնար հսկայական գործի մը կատարումը, անպայման մեծամեծ զոհողութիւն-

ներու, կամաւոր անձնուրացութեան և ինք-
նախողխողման ամբողջ շրջան մը կը բաց-
ւէր ։ Ու այդ միեւնոյն երեւոյթն էր որ կը
պարզուէր ու կը կրկնուէր Հայ կեանքի
մէջ, պատմական յաջորդականութեամբ մը.
որուն արձանագրութիւնը ինքնին բաւա-
կան է ընդունել տալու Հայ ցեղին մեծու-
թիւնն ու կենսունակութիւնը ։

Շնորհիւ ժամանակակից հայ ստուգապա-
տում պատմիչներու. Ազգային պատմու-
թիւնը մանրամասնօրէն կ'աւանդէ այն բո-
լոր հանգամանքներն ու պայմանները, որոնց
մէջ հայկական երրորդ Հարստութիւնը, Բագ-
րատունիներու իշխանութիւնը 186 տարի
տեւելէ նաք, վերջ գտաւ գժբաղդ Գագիկ
Բ. ի օրով և պատմական ու պատուական
Անի մայրաքաղաքին կործանումով ։ Հայ
կեանքը, արդէն խակ անմխիթար, անգամ
մըն ալ վատթարացաւ, դուռ բանալով շարք
մը անցուդարձերու, որոնց վերաքաղը ո՛չ
մէկ սրտապնդող երեւոյթ կ'ընծայէ տարա-
բաղդաբար ։ Բագրատունիներու անկումէն
վերջ գրեթէ չորս մասերու բաժնուեցաւ Հա-
յաստան՝ Ցաներուն, Պարսիկներուն, Վը-
րացիներուն և Արաբացիներուն ձեռքը ։
Թշուառութեան նոր սահման մըն է, որ կը

ակսէր խեղճ հայուն կեանքին համար ։ Տուղրիլ և Ալփասլան արդէն իսկ իրենց ախուրգները կատարեր էին Հայաստան արշաւելով և նշանակելի վնասներ տալով ։ Ասպարէզը կը մնար վերջիններուն յաջորդին, Մելիք Շահին, որ տիրող պայմաններէն օգտուելով Հայաստան արշաւեց և տէրը դարձաւ ամբողջ երկրին (1086) ։ Հայաստան միևնոյն լուծը տարաւ գրեթէ եօթը տարի, մինչեւ Մելիք Շահի մահը, երբ անոր յաջորդները իր ընդարձակած միապետութիւնը կտոր կտոր ընելով աւատական կարգեր հաստատեցին, բաղկացուցիչ բոլոր մանր ու մեծ իշխողներու հետ ։ Վրացիներու Դաւիթ թագաւորը, առիթէն օգուտ քաղելով, մինչեւ Շիրակ հասաւ և տիրեց շրջականերուն ։ Այս գրաւումը թէև մասամբ խաղաղութիւն բերաւ իր հետ, բայց քիչ ժամանակէն նոր վրդովումներ ելան և խաղաղութիւնը խանգարուեցաւ, որովհետև Սելճուքները յաջողեցան Վրացիները դուրս քշել հայ միջավայրէն ու տիրապետել անոր ։ 1160 թուականին միայն վրացի և հայ իշխանները զինու զօրութիւնով հիւսիսային Հայաստանը յաջողեցան Վրաց պետութեան տրամադրութեան ներքև դնել ։ Վրացիներու այս վեր-

ջին տիրապետութիւնը տեւեց մինչեւ 1220։

ԺԳ. դարու սկիզբները Չինաստանի եւ Սիպերիայի միջեւ փռուած Ասիական լեռնադաշտերու Թափառական Մոնկոլ-Թաթարական ցեղերը մեծ բազմութեամբ շարժըւեցան, զօրացան եւ Ճէնկիզ Խանի առաջնորդութեամբ Չինաստանը նուաճեցին, անոր վեհապետը գահընկէց ըրին, Հնդկաստանի տիրեցին եւ ապա մտան Փոքր Ասիա։ Շատ վայրենի էր իրենց վերաբերումը։ Ամէն տեղ դիակներու սոսկալի կոյտեր կը ձեւանային, եւ ընդարձակածաւալ ու անհաշուելի շէնքեր փլատակ դարձած կը մնային։ Թալան եւ կողոպուտ աւելորդ իսկ է ըսել, ա՛յնքան սովորական էին։ Ճէնկիզ Խանի յաջորդներէն արիւնարբու Չարմաղանին բաժին ինկած էր Հայաստանը, եւ սա՝ հաւատարմօրէն կատարեց իր պաշտօնը՝ ո՛չ մէկին խնայելով, ո՛չ մէկին խղճալով, մորթելով բնակիչները եւ այրելով տուն, տեղ, քաղաք, բերդ եւ ամէն ինչ։ Ո՛չ մէկ դիմադրութիւն կասեցուց այս արշաւանքը։ Հայաստանը ամէն կողմ արիւնով ողողուեցաւ։ Իննսուն տարի տեւեց այս անհանդուրժելի կեանքը, որ Հայոց Աշխարհը դրաւ ողբալի կացութեան մը

և ճգնաժամային անձկութիւններու մէջ։ Եթէ կար վայր մը սակայն, որ անմատչելի դարձած էր և ազատ այս բարբարոս արշաւանքներու վայրենի գրոհին դիմաց, այդ՝ Տօրոսի բարձունքներուն վրայ թառած Կիլիկեան Հայութիւնն էր, Ռուբինեանց Հարստութեան սերտիւ փարած։

Փոթորիկը հազիւ դադրած, ահա Լօզդէկ Թաթարներու Լէնկթիմուր զօրապետն էր որ Պարսկաստանի ճամբով Հայաստան արշաւեց՝ (1387) անգամ մը ևս գերեզման դարձնելու Հայկական դժբաղդ աշխարհը։ Լէնկթիմուր «Հնդկաստանի մէջ մարդկային գանկերով բուրգեր կանգնեցուց, Պարսկաստանը արիւնով ողողեց, Պաղտատը կործանեց, Դամասկոսը այրեց, և Ասորիքը նըւաճելով մտաւ Հայաստան»։ Անկարելի է պատմել Լէնկթիմուրի անգթութիւնները, որոնք Հայոց Պատմութեան ամենէն սըրտաճմլիկ էջերը կը կազմեն։ Վասպուրականի ու Սեբաստիոյ կոտորածները արիւնկըզակ բռնաւորին գազանային ախորժակը ցոյց կուտան արդէն։ Անոր մահով կեղեքիչները պզտիկցան, բայց և այնպէս չատցան։ Այս բոլոր նախճիրներու բնական հետեւանքը դարձաւ այն սարսափելի սովը, որ համա-

ճարակի մը հետ ամբողջ հայութիւնը նահատակեց և արտագաղթի փախուստով չորս հովերուն յանձնեց։ Հետզհետէ Թիւրքմէն ու Թաթար ցեղեր իրարու դէմ զինուեցան և Հայաստան դարձաւ կռուախնձոր մը՝ բարբարոսներու քմահաճոյքներուն անձնատուր։

Մինչ արեւելքի մէջ Մոնկոլ-Թաթար ցեղեր աւատական իշխանութիւններու բաժնուած իրարու դէմ կռիւ կը մղէին, անդին արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ օսմանեան զանազան ցեղեր երիտասարդ պետութիւն մը կազմած սկսան իրականութեան տէր դառնալ և մինչեւ Պրուսա հասան։ Նորահաստատ այս պետութիւնը տիրապետելու ընդունակութիւն ցոյց կու տար և Բիւզանդական Կայսրութիւնը գրեթէ քայքայման եզրին հասած էր արդէն, երբ 1453 ի Մայիսին Սուլթան Մէհէմմէտ Բ. արշաւեց Բիւզանդական մայրաքաղաքին, — Կ. Պոլսոյ, — վրայ, և գրաւեց զայն յաջողութեամբ։ Ֆաթիհը, ինչպէս կոչուեցաւ Սուլթան Մէհէմմէտ Բ., ուշիմ և հեռատես անձ մը ըլլալով, ըմբռնած էր ընդհանրապէս քրիստոնեաներուն և մասնաւորապէս հայերուն շինարար դերը քաղաքակրթութեան

ասպարէզին մէջ, ուստի քաջալերեց զանոնք եւ սիրով վարուեցաւ իր հպատակներուն հետ։ Նոյն իսկ հրաւիրեց որ հայկական մեծ գաղութ մը հաստատուի Կ. Պոլիս եւ Պրուսայի Յովակիմ եպիսկոպոսն ալ որոշ եւ նշանակելի արտօնութիւններով եւ առանձնաշնորհումներով Հայոց առաջին պատրիարքը նշանակեց (1461)։ Հայ ցեղին որժանաւոր գնահատութիւնն էր այս ի հարկէ։ Այնուհետեւ Օսմանեան պետութիւնն հետզհետէ զօրացաւ եւ Վոսփորի ափերուն վրայ կանգնեց արեւելեան այս պետութիւնը, որ երբեմն Եւրոպայի կարեւոր մէկ մասին ճակատագիրն իսկ ղէկավարել փորձեց։

Իբրեւ այս գրութեան մէջ շատ վատթար էր Հայոց եկեղեցական-հովուապետական գրութիւնը։ Ռուբինեանց Հայաստանեան օրով Սիս հաստատուած կաթողիկոսական աթոռը հակառակորդներ ստեղծեց իր դէմ եւ ԺԵ. դարու կէսին էջմիածնայ մէջ կաթողիկոս ընտրուեցաւ Կիրակոս Վիրապեցին։ Ներքին երկպառակութիւն մը ծայր տուած էր արդէն հայերուն մէջ։ ԺԴ. դարուն Հայաստան կրօնական արշաւանք կատարող Լատին կրօնաւորներ գժտութեան գետինը ստեղծած էին արդէն։ Եւ ահա քաղաքա-

կան անդրադարձի գրութեան մը կուգար միամտալ նաև ներքին անհամաձայնութիւ-նը, որ սկիզբէն ի վեր հայոց համար եղած է չար ողբերգեր ։

Հիմա արեւմտեան Ասիոյ հորիզոնին վը-րայ կը նշմարուին մրցորդ երկու մահմետա-կան պետութիւններ.— Օսմանեանն ու Պարսկականը ։ Դիւրին է հետեւցնել ան-շուշտ թէ ի մէջ Հայոց և իրենց Աշխար-հին պիտի ըլլար ասոնց պատերազմական մրցում մը, քանի որ աշխարհագրապէս Հա-յաստանն էր այն հողը, որ կրնար կռուան դառնալ բաղխումներու ։ Հինգ երկար տա-սնեակ տարիներ տեւեցին այս արշաւանք-ները, որոնք կը մղուէին օսմանցիներու և պարսիկներու միջև ։ Յաղթութիւնը մնաց սուլթան Սիւլէյման Ա. Սուլթանի, որ ան-ձամբ կնքեց հաշտութիւն ։

Հակառակ Յաղթինի այնու վերջ արեւու-թեան դէպի հայերը, ներքին գաւառներու մէջ քրիստոնեաները կ'ապրէին վերջին ծայր տարուկ կերպով ։ Անոնք ամէն մահմե-տական տէրերին կարծիքով ոչինչ իրա-ւունք ունէին իբրեւ մարդ ապրելու ։ Տա-կու կը պատմանայ Հայոց վիճակը, գաւա-ներու մէջ, անտանելի և յուսահատական ։

Հայ ժողովուրդը իր միակ մխիթարութիւնը կը սպասէր հոգեւորականներէն, մինչդեռ այս վերջիններն աւելի լաւ կը համարէին իրենց աթոռներու չնչին կալուածներով զբաղիլ, քան անտէր ու թշուառ ժողովուրդի մը առաջնորդելու դժուարին պարտականութեանը մէջ ծառանալ։

Սուլթան Սիւլէյմանի յաղթութիւնները չկրցան վերջակէտ դնել օսմանեան եւ պարսկական ընդհարումներուն։ Անոնք շարունակուեցան պարբերաբար, եւ երբ Շահ Աբբաս պարսից գահը բարձրացաւ, երկու պետութիւններուն յարաբերութիւնները դարձան ո՛չ միայն սպառնական, այլեւ՝ ուղղակի թշնամական։ Շահ Աբբաս մէկ կողմէն հաշտութիւն կնքեց և միւս կողմէ ալ լուռ պատրաստութիւններ տեսաւ։ ԺԷ. դարու սկիզբներուն ան կրցաւ իր կողմը գրաւել նաև օսմ. կառավարութենէն դժգոհ պէյեր և աւատապետներ։ Յանկարծական եղաւ իր արշաւանքը, զոր կատարեց Նախիջեւանէն և Երեւանէն մինչեւ Կարս. բայց երբ լսեց օսմանցիներու բանակին գալուստը, համոզուած՝ թէ իր անկանոն բանակով անկարող պիտի ըլլար դէմ դնելու օսմ. կանոնաւոր զօրքին, յու-

ու.հատական միջոց մը խորհեցաւ՝ իր նա-
հանջի պահուն Երեւանէն մինչեւ Երասխի
ափերը անապատ դարձնելու ծրագրով, որ-
պէսզի հակառակորդ բանակը իյնար նեղ
դրութեան մէջ։ Այս հրէշային ծրագրին
գործադրութիւնը սարսափելի էր։ Հայաս-
տանը հալիւ տեսած էր այդպիսի սեւ օրեր։
Պէտք էր այրել գիւղ ու քաղաք և ազգա-
բնակչութիւնը անասուններու հօտի մը նը-
ման քշել Պարսկաստան։ Առաքել Դաւրի-
ժեցի շատ աղեխարշ կերպով կը նկարագ-
րէ Շահ Աբբասեան այս խժդժութիւննե-
րը։ Սոսկումը տիրած էր ամեն կողմ։ Ժո-
ղովուրդը բռնաւորին ցանցին մէջ, և զուրկ
դիմադրութեան ու պատերազմական ոգիէ,
ամենաողորմելի կացութեան և սրտաճմլիկ
պայմաններու մէջ պարսիկ խուժանին հը-
րամաններուն կը հպատակէր՝ անխծլով ու
բաղդը։ Սպաննուողներ, մորթոտուողներ,
ինքզինքնին ժայռերէ վար նետողներ՝ ան-
թիւ, անհամար։ Տեսարանին ամենէն կսկծա-
լին պարզուեցաւ Երասխի ափին մօտ։ Գետին
ջուրը իր գոյնը փոխեց. ամբողջ ժողովուրդը
կը մորթուէր. Ջուրը չի մտնողներ սուին-
ներու վրայ առնուեցան, սպաննուեցան,
բռնի ջուրը մղուեցան. շատերուն քիթն ու

ականջները կտրեցին՝ միւսները սոսկացնելու համար։ 1605ին ա՛յս էր ահա հայերու վիճակը, այս բռնադատեալ գաղթականութեան պահուն։ Քանի՛ հարիւրաւորներ ու հազարաւորներ ծածկուեցան արդէօք Երասխի ջուրերուն ներքեւ։ Հազարաւոր դիակները ինկան ճամբաներու։ Եւ խեղճ հայութիւնը անցաւ պարսկական հողին վըրայ, հոն քաւելու համար իր անմեղութեան մեղքը։ Բազմաթիւ հայ քաղաքներէն զատ փճացաւ նաեւ Հին Ջուղան, հայ վաճառականութեան սիրտը, զոր այրեցին ու ոչընչացուցին անխնայօրէն։ Շահ Աբբաս դըժբաղդ վտարանդիները տեղաւորեց Սպահանի, Շիրազի և այլ պարսկական քաղաքներու մէջ։ Հաստատուեցաւ Նոր Ջուղան իբրև յիշատակը Հինին և այսպէս հաստատուեցաւ Արեւելեան-Պարսկաստանի հայ գաղթականութիւնը։

Շահ Աբբաս պարսկական հողին վրայ այլեւս լաւ վարուեցաւ հայոց հետ և անոնց դիւրութիւններ տուաւ, որպէսզի անոնք գործեն թէ՛ իբրև վաճառական և թէ՛ իբրեւ արհեստաւոր։ Մնացք որ Մեծ Հայաստանը ամայացաւ. երկիրը դժողք դարձաւ այլեւս։ Հայ ժողովուրդը դարաւոր հայա-

ծանքներէ վեր՝ այս վերջին եղեռնէն աւելի եւս սարսափահար, փախաւ Հայաստանէն բիւրաւորներով՝ Դէպի Լեհաստան, Փոքր Ասիա և Եւրոպայի զանազան կողմերը ։ Այս բոլորին հետեւանքով հայ Մելիքները քաղաքական ձեռնարկներու կը սկսին ԺԶ. դարուն վերջերն ու ԺԷ. դարուն սկիզբները ։ Իսրայէլ Օրի գլուխ կը կանգնի ընդհանրապէս Հայաստանի և մասնաւորապէս Պարսկաստանի հայոց ազատագրութեան գործին ։

Այս դժնդակ պայմաններուն ենթարկուած էր Հայ ժողովուրդը ԺԴ. ԺԵ. և ԺԶ. դարերուն մէջ ։ Աշխարհագրական դիրքը, որ դրած էր հայ ժողովուրդը նախապէս Եւրոպական եւ Ասիական արեւմտեան ու արեւելեան քաղաքակրթութեան ներկայացուցիչ երկու պետութիւններու, — օսմանեանին ու պարսկականին, — միջեւ, անոնց արշաւանքներուն ու բարբարոսութիւններուն թատերաբեմը դարձուց Հայաստանը ։ Ամբողջ դարեր մահ ու աւեր սփռուեցաւ Հայոց Աշխարհին վրայ ։ Երկրագործութիւն, գրականութիւն, արհեստ, առեւտուր և որեւէ առաջդիմութիւն կանգ առին երկար ատեն ։ Ո՛չ վանք մնացած էր և ո՛չ ալ

քաղաք։ Մեռելութիւն կար ամէն կողմ մը-
տաւորապէս, բարոյապէս, նիւթապէս. ֆի-
զիքապէս ու քաղաքակրթապէս։ Սուր եւ
հուր անդադար կ'ոչնչացնէր ամէն կեանք։
Հոս Լէնկթիմուր մ'էր որ կը կոտորէր, հոն
Շահ Աբբաս մը, որ կը քշէր, կը տանէր։
Արդ, այս պայմաններուն մէջ ի՞նչ առաջ-
դիմութիւն և կենսակրթութիւն կարելի էր
յուսալ Հայ ժողովուրդէն։— Ոչի՛նչ անշուշտ։
Կեանքի անապահովութիւնը չուարցուցած
էր ժողովուրդը։ Վախը ողջ մնալու հոգը
պաշարած էր ամէնը։ Անվերջանալի գաղ-
թականութիւնը ամայացուց հետզհետէ Հա-
յաստանը։ Մոխիր ու աւերակ կար ամէն-
ուրեք։ Երբեմնի չէն երկիրը գերեզման մըն
էր դարձած, ուրկէ ահաբեկ կը փախչէին
ու կը փախչէին իր հարազատ զաւակները։
Ու կ'երկարէր շարքը փախստականներու
կարաւաններուն, անվերջ, անդադրում։
Քար քարի վրայ չէր մնացած։ Հայ վան-
քերը, որոնք երբեմն այս կամ այն հոգե-
ւորական գործիչին շնորհիւ ծաղկած կը հա-
մարուէին, փճացան բոլորովին։ Արիւն կը
հոսէր ամէն կողմ և փախչողը սարսուռով
մը կը յիշէր այս ամէնը։

Գրականութեան ոչ մէկ նշոյլ կարելի էր

փնտռել ։ Ստեղծագործող միտքեր չէին կըրնար արտադրել այս արիւնոտ դարերը ։ Հազա՜ր յարգանք դարձեալ այն պատմիչներուն և երգիչներուն, որոնք պատմութիւններու կամ տաղասացութիւններու միջոցաւ առաւել կամ նուազ յաջողած են արձանագրել Հայ Կեանքը ։

Օսմանեան տիրապետութիւնը բաղդատաբար քիչ շատ հանդուրժելի կացութիւն մը ստեղծէր թերեւս հայոց կեանքին մէջ ․ բայց օսմանօ-պարսկական անվերջանալի բաղխումները աւելի՛ վատթարացուցին անոնց վիճակը ։ Ա՛յդ էր պատճառը, որ աշխարհաշէն և հայրենի օճախին սերտիւ կապուած Հայ ժողովուրդը բո՛ւռն սոսկումով մը խոյս տուաւ հայրենի հողերէն, օտար աստղերո՛ւ ներքեւ փնտռելու համար կեանքի ապահովութիւն և կտոր մը չորաբեկ հաց ։

Եւ այսպէս, այս միեւնոյն դարերուն ու տարիներուն մէջ, երբ Յովհաննէս Կիւթթէմպէրկի հնարած տպագրութեան գիւտը Եւրոպայի ամբողջ ճակատագիրը կը փոխէր և վերածնած Եւրոպայի կեանքը կը յեղաշրջէր, ասդին Հայաստանի մէջ Հայութիւնը հոգեվարքի հռնդիւններ կ'արձակէր ։

## IX

Հայկական գաղթականութիւններ.— Քրիստոնէական ուսումնական արշաւանք.— Սասանեաններու Հայաստանէն հանած գաղթականութիւնները.— Արաբներու եւ Յոյներու հալածանքը.— Իտալական գաղութ.— Դէպի Թաթարիստան, Խրիմ, Ռումանիա, Թրանսիլվանիա եւ Հունգարիա.— Լեհաստանի Հայոց գաղթականութիւնը.— Հնդկահայերը.— Հոլանտան գաղթավայր.— Հայերը՝ իբրեւ վաճառական ժողովուրդ.— Հայ մտաւորականութիւնն ու գաղթականութիւնները.— Հայ գրչագիրներ.— Հայերը Պարսկաստանի, Ռուսաստանի եւ Տաճկաստանի մէջ:

Պատմական այն ուղղութիւնը, որ առած է Հայ Կեանքը, շատ բնական օրէն պէտք է ծագում տար գաղթականութեան: Տնտեսական Գիտութիւնը կ'ապացուցանէ թէ գաղթականութիւնը անխուսափելի երեւոյթ մըն է, որ անպայման յառաջ կուգայ երկրի մը կամ ժողովուրդի մը մէջ, երբ կը պակսին բարւոք ապրելու հնարաւորութիւն.

ները և կեանքի պայքարը վերջին ծայր սաստկացած կ՚ըլլայ։ Այսպէս եղած է ամէն երկիրներու մէջ։ Այսօր շատ մը մեծ պետութիւններ գաղթավայրեր կը պատրաստեն, գաղթականութիւններ կը ստեղծեն և Մայր Հայրենիքին ճիւղերը կը տարածեն ամէն կողմ։ Անշուշտ տնտեսական ու քաղաքական որոշ ծրագիրներու շուրջ կը կազմուին գաղթային առաջադրութիւններ, ու հոն՝ տիրապետող մարմինը իր մասնաւոր հայեացքն ու ձգտումն ունի։ Հայկական գաղթականութիւնները պետական որոշ առաջադրութեան մը արդիւնք չեն սակայն, այլ՝ քաղաքական ամենավատթար դրութենէ մը, հալածանքէ, սովէ, հուրէ, կոտորածէ ու աւերէ անհարեկ փախած թշուառ ժողովուրդի մը սրտակեղեք խուճապը։ Ակամայ գաղթականութիւն մը ուրեմն։ Հայրենի օճախ մը, որուն շուրջը թունաւոր իժեր կը պտտին, տեսակ մը վանողական, բացասական ելեկտրականութիւնով իրմէ հեռու, հեռու կը վտարէր իր հարազատ զաւակները։ Կեանքերու անապահովութիւնը, մահուան սարսափը, անվերջանալի կեղեքումներ, հարստահարութիւն, պատուաբեկութիւն, վաղ-

ւան անստուգութիւնը հայութիւնը կը լեցնէին յուսահատ տրամադրութիւններով։ Անուշիկ Հայրենիքը, Մայր Հայաստանը այլեւս իր հրապոյրը կորսնցուցած՝ չէ՛ր այն հարազատ մայրը, որ հիւթեղ ու կենսալից կաթ կը ջամբէ երախաներուն։ Անոր ըստինքներէն կարծես թոյն կը կաթկթէր։ Ու կը փախչէր ամեն մարդ, կը փախչէ՛ր, առանց իր ետին նայելու, ահով ու սարսափով լի, ետին թողած մխացող աւերակները, հրդեհներու բոցեր, սովին ահաւոր ուրուականը, բլրացած դիակներու կոյտեր ու մահուան խաւարը։ Կը փախչէին ահաբեկ՝ մտաւորականը թէ ռամիկը, ազնուականը թէ անտոհմիկը, ամեն սեռէ ու հասակէ։

Շատ հետաքրքրական է Հայ գաղթականութիւններու պատմութիւնը։

Հայոց ամենէն մեծ գաղթականութիւնները կը վերաբերին ԺԴ. ԺԵ. ԺԶ. և ԺԷ. դարերուն. բայց պատմութիւնը ցոյց կուտայ թէ աւելի հին դարերու մէջ ալ սկսած է հայ ժողովուրդը գաղթել։ Թողլով այն, որ Հայ ցեղին Ուրարտուի մէջ երեւումն ինքնին գաղթականութեան մը հետեւանքն է, Քրիստոնէութեան Հայաստան

մտնելէն վերջ, երբ Հայոց ու պարսից մէջ գոյութիւն ունեցող սերտ յարաբերութիւնները կը խզուին, և Հռոմի աշխարհակալութեան կամ, որ նոյնն է, արևմտեան քաղաքակրթութեան դէմ կռուող հայ ժողովուրդը լքելով մինչև այդ տանն իր պաշտած դրօշը. այնուհետև կը դառնայ արևմտեան քաղաքակրթութեան միակ ախոյեանը Արևելքի մէջ, և լուսաւորութեան ջահակիրը, Պարսիկները միշտ ջանադիր եղած են հայութիւնը ջրուել և շատ մը ընտանիքներ Պարսկաստանի ամէն կողմերը տարածել, որպէսզի ջլատուի հայ ուժը, և պարսից երկիրն ալ օգտուի անոր ընդունակութիւններէն։

Քրիստոնէութեան Հայաստան մտնելէն անմիջապէս վերջ ր. Լուսաւորիչի և կամ անոր յաջորդներուն ձեռքով կազմակերպըւած էր արդէն ուսումնական գաղթականութիւն մը՝ դէպի Աթէնք, Կեսարիա, Հըռոմ, Եդեսիա, Բիւզանդիոն և վերջապէս արևմտեան քաղաքակրթութեան կեդրոնները։ Այս ուսումնական արշաւանքին ուղղակի հետևանքն էր ինքնին հելլենականութեան շարժումը և ոսկեդարու մտաւորական յեղաշրջութիւնը։ Այնուհետև կը

սկսին պարսկական հալածանքները։ Սասանեան Արտաշիր բիւրաւոր հայեր քշեց Պարսկաստան՝ իր երկրին ամայի տեղերը շէնցնելու և մշակել տալու համար։ Շապուհ Բ. Դ. դարուն մէջ շատ մը բազմամարդ քաղաքներ կործանեց և 700,000 հայ տարաւ ու բնակեցուց երեք նահանգներու մէջ։ Ցազկերտ Բ. ի հրամանով, հայերու խուռն բազմութեամբ Պարսկաստանի հեռաւոր նահանգները տարուիլը իր մանրամասնութեամբ արձանագրուած է Հայոց Պատմութեան մէջ։ Մահմետական տիրապետութեան ատեն արաբացիները շատ մը բռնութիւններ ու անգթութիւններ գործելէ զատ Հայաստանի մէջ, մեծ բազմութիւն մըն ալ գերի տարին Եգիպտոս, Արաբիա, Սիւրիա և Պաղեստին։ Միայն Եգիպտոսի մէջ 30,000 հայեր կային, որոնք թէ՛ Խաչակիրներուն օգնեցին և թէ արեմուտքի վաճառականութեան միջնորդ դարձան։ Այս տեսակէտով Ցոյներն ալ քիչ վրնաս չի հասցուցին Հայոց։ Կայսրները ամեն տեսակ միջոցներ ի գործ դրին հայոց ընդհանուր միութիւնը խզելու և իրենց բաժնին մէջ ապրող հայութիւնը յունացնելու։ Քաղկեդոնի ժողովէն վերջ այնպիսի բարո-

յական ճնշումներ ի գործ դրուեցան Յունահայաստանի մէջ՝ Յոյներու կողմէ որ շատ մը հայեր կորսնցուցին իրենց ազգութիւնն ու կրօնը։ Երկար ատեն մայրենի լեզուի գործածութիւնն արգիլուած էր։ Այս բոլորին հետ մէկտեղ, որովհետեւ արեւելեան Հայաստանի մէջ կացութիւնը ծայր աստիճան յուսահատական էր եւ անհանդուրժելի, ուստի կրկին շատ մը հայեր կը գաղթէին բիւզանդական նահանգները, գոնէ ողջ մնալու համար։ Սակայն իրենց բոլոր կարողութիւնները տրամադրեցին իրենց Նոր Հայրենիքին եւ մեծ նպաստ մատուցին տեղական քաղաքակրթութեան։ Նամանաւանդ ձեռք բերին ահագին ազդեցութիւն, այնպէս որ Յուստինիանոսէն վերջ Բիւզանդական գահուն վրայ բազմեցան տասնը չորս հայ իշխաններ եւ ամբողջ 200 տարի փառքով կառավարեցին անոր ժողովուրդը։ Հաւատարմութիւնը, որով սրտանց կապուեցաւ հայ ժողովուրդը բիւզանդական շահերուն, մղեց Յոյները, որպէսզի Հայաստանի բնակիչները գոնէ փոխադրեն Կ. Պոլիս, Թրակիա եւ այլեւայլ նահանգներ։ Այս գաղթականները տարածուեցան Խրուաթիա, Թեսալիա, Մակեդոնիա, Պուլ-

կարիս և այլն։ Նոյն իսկ հայ թագաւոր մը ունեցանք (Սամուէլ Դերջանեցի) պուլկարական գահուն վրայ։

Ռուբինեանց թագաւորութեան կործանումէն յետոյ Կիլիկիայէն դուրս եկած 30,000 հայ գաղթականներ տարածուեցան հեռըզհեռէ Կիպրոս, Հռոդոս, Կրետէ և Եւրոպայի զանազան երկիրները։ Իտալական քաղաքներէն Վենետիկ, Ճենովա, Պիզա, Հըռոմ, Նաբոլի, Միլան և այլն գլխաւոր հայ կեդրոններ դարձան։ Ապա Ժ.Զ. դարուն Ջուղայէն եկող գաղթականներ աւելի զօրացուցին Վենետիկի հայ գաղութը։ Իտալիոյ գաղթական Հայերը նախ մեծ արտօնութիւններ վայելեցին թէև, բայց ապա լատին կղերին կողմէ բռնութեան ենթարկուեցան։ Այսպէս ամբողջ Իտալիոյ մէջ ցրուած Հայութիւնը կորսուեցաւ գրեթէ։ Միայն երբեմն երբեմն յիշատակներ կան զանազան թաղերու, փողոցներու և եկեղեցիներու մէջ։

Երբ Թաթարները տիրեցին հայաստանի, Շատ մը Հայեր բռնի տարին ու բնակեցուցին Սարայ, Աժտէրխան, Ղազան։ Ասոնք թէ՛ լաւ պատերազմիկ էին և թէ խաղաղութեան ատեն ճարպիկ առեւտրականներ,

այնպէս որ թաթարները եթէ վարչականութիւնն ունենային օգտուելու հայոց ընդունակութիւններէն, երկրին համար պիտի ըլլար շատ շինարար Հայոց դերը. սակայն թաթարները յիմարաբար՝ բռնութիւնով ու բարբարոսութեամբ պատասխանեցին հայոց աշխուժութեան: Հայերը, ճարտար, փոխադրուեցան Խրիմի Թերակղզին, որ կը գտանուէր այն ատեն Ճենովացիներու տիրապետութեան ներքև: Հետզհետէ Խրիմը դարձաւ հայոց համար գաղթային զօրաւոր կեդրոն մը, ուր ձեռք բերին հայերը շատ լաւ դիրք: Ամէն կողմ շէնցաւ, բնակչութիւնը բազմապատկուեցաւ և աղքատիկ Խրիմը դարձաւ հարստութեան աղբիւր. միայն Թէոդոսիայի մէջ 100,000 բնակիչ կար: Թաթարներն ու Օսմանցիները զօրանալով սպառնացին Խրիմի. այն ատեն ահագին հայ գաղթականութիւն մը անցաւ Մոլտավիա, Լեհաստան և Հունգարիա: Ռումանիոյ կամ Մոլտօ-Վալաքիոյ հայերը առաջ այնպիսի ստուար մեծամասնութիւն մը կազմեցին որ իրենց ձեռքը կեդրոնացուցին բոլոր իշխանութիւնը: Ունէին փառաւոր եկեղեցիներ, դպրոցներ, առևտրական հոյակապ ձեռնարկներ և այլն: Օսմանցիներու և Լեհերու պա-

տերազմը սակայն խանգարեց Ռումանահայոց հանգստութիւնը և անոնք կրկին ըստիպուեցան ապաստանիլ Թրանսիլվանիա, ուր հիմնեցին Կերլա կամ Հայաքաղաք (Արմրէնշտատ) և Պոշտպալով։ Ձեռք բերին ինքնավարութիւն։ Ունէին Հայկական դատարան, ոստիկանութիւն և այլն։ Շատ հարստացան Թրանսիլվանիոյ հայերը. դարձան կալուածատէր, ազնուական և պետական ամեն գործերու մէջ լսելի ընել տուին իրենց ձայնը։ Գաթոլիկ կղերը ամէն ջանք ի գործ դրաւ գաղթական հայոց ազգութիւնն ու կրօնը խլելու համար։ Եւ յաջողեցաւ ալ։

Հայ գաղթականութիւններու մէջ յայտնապէս նշանակելի տեղ կը բռնեն Լեհաստանի հայերը՝ թիւով, գործունէութիւնով, ու «որքան ցաւալի, նոյնքան խրատական իրենց պատմական բաղդ»ով։ Լեհաստանի հայ գաղթականութիւնը կը հաշուուի 40,000 տուն կամ մօտաւորապէս 200,000 հոգի, որոնք երեք գլխաւոր հոսանքներով կեդրոնացած են 1.) Բագրատունեաց հարստութեան անկումէն վերջ. 2.) Ալփասլանի արշաւանքին ժամանակ, 3.) Խրիմը Օսմանցիներուն ձեռքը անցնելէն վերջ։ Հայերը Լեհաստանի մէջ հաստատուած էին

գլխաւորաբար Կալիցիոյ նահանգին Լէմ-
պէրկ կամ Լվով / քաղաքը ու Կամենից։
Կազիմիր Գ. Կամենիցի թագաւորը, որ իր
պատերազմներուն ատեն ալ օգնութեան
հրաւիրած էր հայերը, առանձին արտօնու-
թիւններ և ինքնավարութիւն տուաւ իրեն
հպատակութեան ներքև գտնուող հայերուն
(1344)։ ԺԵ. դարուն վերջերն արդէն հա-
յերը (Կամենիցի և Լվովի) ունէին Վոյթ
կոչուած ինքնավարական կազմակերպու-
թիւնը, որ վեց դատաւորէ և քառասուն
խորհրդականէ բաղկացած մարմին մը ըլլա-
լով, Հայոց գործերը կը վարէր ազգային
սովորութիւններու և Մխիթար Գօշի «Դա-
տաստանագիրք»ին համաձայն։ Ընդուն-
ուած լեզուն՝ Անիի բարբառն էր նախ, բայց
երբ ետքէն Թաթարիստանէն հայ գաղթա-
կանութիւն մը եկաւ, ստիպուեցան թա-
թարերէնը գործածել, վասնզի այս վերջին-
ները ուրիշ լեզու չէին հասկնար։ Հայերու
վայելած արտօնութեանց շնորհիւ Լեհաս-
տանի մէջ հաստատուեցան շատ մը նոր գիւ-
ղեր ու քաղաքներ, երկրին ներքին ու ար-
տաքին վաճառականութիւնը բարգաւաճե-
ցաւ և շատ մը հայեր մեծամեծ ծառայու-
թիւններ բերին այս Գաղթավայր-Հայրենի-

քին։ Բայց Լեհահայոց հանգիստը չուտով խանգարուեցաւ։ Նիկոլ Թորոսովիչ անբարոյական եպիսկոպոսը ամեն նենգամիտ եւ չարահնար միջոցներ ի գործ դրաւ հայերը պապական դարձնելու համար։ Իր աշակերտը Վարդան Յունանեան վարդապետը շարունակեց իր վարպետին գործը ու վերջապէս յաջողեցաւ Իլվովի հայ ժողովուրդը անջատել Մայրենի Եկեղեցիէն և Հռոմի կապել։

Եւրոպայի մէջ հաստատուած հայ գաղթականութիւններու բաւական կարևոր մէկ կեդրոնն ալ կարելի է նկատել Հոլանտան։ Ամստերտամի մէջ նոյն իսկ հայ տպարան ունեցած ենք։

Ասիոյ մէջ, Հնդկաստանի հայերը գաղթած են Պարսկաստանէն և ցրուած են Սուրաթ, Մատրաս, Կալկաթա, Ջեզ՛րա և Պոմպէյ։ Միևնոյն լաւ ընդունելութիւնը գտած են հայ գաղթականները Հնդկաստանի մէջ ալ՝ շնորհիւ իրենց աշխուժութեան և գործունէութեան։ Անգլիացիներու Հնդկաստանի տիրած ժամանակ հայերը կատարեցին շատ պատուաւոր դեր և պատկառանք ներշընչեցին թէ՛ Անգլիացիներուն և թէ՛ Հնդիկներուն։ Արևելեան Հնդկաստանի ընկերու-

թեան մէջ գործօն դեր ունէին Հայերը։ Նոյն իսկ հայ նախարարներ ունեցած են Հնդկաստանի մէջ։ Իրենց վայելած դիւրութեանց հետեւանքով Հայերը մեծ զարգացում առացան։ Ունէին փառաւոր հասարակական հաստատութիւններ, տպարան, ուսումնարան, եկեղեցի և այլն։ Առաջին հայ լրագիրը Ազդարար, լոյս տեսաւ Մադրասի մէջ 1793ին Շմաւոնեան Յարութիւն քահանայի խմբագրութեամբ։ Հնդկահայերը իրենց ազգային զգացումն ալ պահպանած էին։ «Հայաստանը դրամով ազատետելու» ծրագիրներ ունեցան քանի մը անգամ։ Պատկառելի կտակներ թողուցին ուսումնական գնահատելի ձեռնարկներու անունով. ինչպէս Սամուէլ Մուրատի կտակը՝ Մուրատեան վարժարանին համար, Ռափայէլ Ղարամանեանինը՝ Ռափայէլեան վարժարանին համար և այլն։ Անգլիացիներու տիրապետութենէն առաջ Հայերը անկարող եղան յաղթական դուրս գալ մրցումէն եւ պահել իրենց նիւթական նախանձելի դիրքը և հետզհետէ ցրուեցան Հնդկական Արշիպեղագոսի կղզիները, գլխաւորաբար Ճավա և մինչև Չինաստանի ծովեզերքները։

Գաղթական այս բոլոր հոսանքներու ար-

դիւնքն այն եղած է որ Հայութիւնը ցրը-ւած է ամբողջ աշխարհի զանազան կողմե-րը ։ Վերջին երեսնամեակին, երբ հալա-ծանքները չափացած էին, և ամերիկեան գո-լէճներ անգլիագէտ երիտասարդութիւն մը հասցուցած էին, ուժեղ գաղթականութիւն-ներ կազմուած են Պուլկարիա և Ամերիկա, ուր մտաւորական որոշ գործունէութիւն ցոյց տուած են հայերը, սերտիւ կապուած Տաճկահայոց բաղդին և կարեկիր ճնշուած հայութեան ։

Ամեն երկիրներու մէջ ալ, ուր հայկական գաղթականութիւն հաստատուած է, Հայը ցոյց տուած է վաճառական, ուշիմ և գոր-ծունեայ ժողովուրդի մը յատուկ ամեն ըն-դունակութիւններ ։ Մասնաւորաբար փայ-լած է վաճառականական ասպարէզին մէջ ։ Չինաստանէն մինչև Անգլիա և Ափրիկէի հիւսիսակողմը հայերը իբրև վաճառական գործած են և ընդարձակ յարաբերութիւն-ներ մշակած բոլոր ազգերու հետ ։ Ամեն տեղ շինարար աշխատանքի ձեռնարկած է Հա-յը, շէնցնելով ու բարեզարդելով ։ Թէ՛ հին և թէ՛ նոր գաղթականութիւններու ժա-մանակ հայ մտաւորականներ ալ ապաս-տանած են հոս ու հոն ։ Միջին դարու հա-

լածանքներու միջոցին հայկական գրչագիրներու պահպանութիւնը կը պարտինք գաղթական մտաւորականներուն ։ Եւ հարկ չի կայ ըսել թէ պատմականօրէն ու բանասիրօրէն ի՜նչքան թանկագին են ձեռագիրները ։ Հայկական Ցեղափոխութեան և Ճըգնաժամին ատեն եւս Եւրոպա, Ամերիկա և Եգիպտոս ապաստանած հայ մտաւորականները մասնաւորապէս յեղափոխականներ, իրենց գրական ու բեմական գործունէութեամբ ազգային զգացումն ու հայկական ոգին վառ պահած են հայկական գաղթականութիւններու մէջ։ Մենք կը ցաւինք ի հարկէ Հայութեան այս ցրուած վիճակին վրայ, սակայն կ'ըմբռնենք միեւնոյն ատեն այն զօրեղ պատուաստումը, որ կարելի է առաջ բերել այլեւայլ միջավայրերու մէջ ապրող Հայերու կրած լուսագոյն ազդեցութիւններէն ։ Կորսուած ժամերը չենք հաշուեր այլեւս ։ Պատմութիւնը թող արձանագրէ միայն ։ Բայց ամեն պանդխտացող անձնաւորութենէ ու ընտանիքէ կը սպասենք օժանդակութիւն մը այն բունին, որուն ոստերն են իրենք ալ ։

Հայկական ամենամեծ գանձուածները կը գտնուին այժմ Տաճկաստանի, Ռուսաստանի և Պարսկաստանի մէջ ։

## X

*Կիլիկեան բարձունքները.— Հայերը Կիլիկիոյ մէջ.— Ռուբինեան իշխանութեան կազմակերպութիւնն ու ուղղութիւնը.— Համակրութիւն դէպի եւրոպական ազգերը.— Հայերը խաչակիրներուն օժանդակ.— Հայ-լատին յարաբերութիւններ.— Ունիթորներու գործունէութիւնը.— Հայ կեանքը Կիլիկիոյ մէջ.— Արեւմտականութիւնը եւ Հայերը.— Կիլիկիան պաշարուած արեւելականութեան ներկայացուցիչներէն.— Դա՛րձեալ անկում արեւմտեան քաղաքակրթութեան անունով:*

Տօրոսի լեռնաշղթան կը տարածուի Միջերկրականի եզերքը։ Ունի անմատչելի բարձունքներ, որոնք սկիզբէն մինչև վերջը ապաստանարանը դարձած են այլ և այլ ժողովուրդներու։ Այդ բարձունքներու վրայ կամ շուրջը կազմակերպուած են զանազան երկիրներ, սակայն անոնց մէջ ամենէն աւելի նպաստաւոր դիրքով կը ներկայանայ Կիլիկիան, Ռուբինեանց շրջանի Հայութեան օրրանը։ Հին դարերու հալածանք-

ները միշտ բնակչութիւն ստեղծած են այդ-լեռնային երկրին մէջ, այնպէս որ անոր բնակչութիւնը Բագրատունեաց հարստու-թեան կործանումէն վերջը հոս ապաստանող ահարբեկած փախստականներով չէ կազմուած միայն: Կիլիկիան ունեցած է նշանաւոր քա-ղաքներ, ինչպէս Տարսոն, Սիս, Անարզա-փա, Ատանա, Մամեստիա, Այաս, Գերմանիկ կամ Մարաշ, Ուլնիա և Աչէ (Հաճըն), ո-րոնք վաճառականական կեդրոններ դարձած են: Կիլիկիան կը բաժնուի երկու մասերու, Դաշտային Կիլիկիա և Լեռնային Կիլիկիա: Իր բնական ամրութիւններով, անմատչելի լեռներով ու կիրճերով ռազմագիտական սքանչելի դիրք մը ունենալով՝ Կիլիկիա ամե-նահին ժամանակներէ ի վեր իր վրայ հը-րաւիրած է աշխարհակալ պետութիւններու ուշադրութիւնը: Նախ Ասորեստան, Բաբե-լաստան. ապա Աղեքսանդր Մակեդոնացին, Սելեւկեանները, Հռովմայեցիներն ու Յոյնե-րը տիրեցին այս երկրին: Կային շատ մը ամ-րոցներ ու դղեակներ, որոնցմէ երեւելիներն էին Վահկա, Բարձր բերդ, Կապան, Սիմա-նակլայ, Լամբրոն և այլն:

Հայերը շատ հին ժամանակներէ ի վեր եր-թեւեկութիւն ունէին Կիլիկիա, ուր փիւնի-

կեցիններուն եւ եգիպտացիներուն հետ առուտուր կ՚ընէին։ Հետզհետէ երբ Հայերը լական ցրուիլ, Կիլիկիան ապնջական դարձաւ անոնց։ Արշակունեաց թագաւորութեան անկումէն վերջ, Մարզպաններու եւ Ոստիկաններու օրով, Բագրատունեաց փոթորկալից իշխանապետութեան ժամանակ եւ յետոյ՝ Յոյներու, Պարսիկներու, Արաբներու եւ Սելճուգներու բռնաբարութիւնները գաղթային մեծ հոսանքներ առեղծեցին դէպի Կիլիկիա, ուր ԺԱ. դարուն մէջ հայութեան ստուար խիւ մը կեդրոնացաւ եւ վերջապէս Գագիկ Բ. ի ազգականներէն Ռուբէն իշխանին միջոցաւ ու ձեռներէցութեամբ կազմակերպուեցաւ Ռուբինեան իշխանութիւնը։

Արդէն Ռուբէնի այդ ձեռնարկէն առաջ ալ ասպետութիւններ կային հոն, անկախ եւ կամ Բիւզանդական հովանաւորութեան տակ։ Տեղացի Հայերը խմբուեցան Ռուբէնի չուրջը եւ 1080 ին հայկական իշխանութիւնը իր գրօշը կը ծածանեցնէր Բարձրաբերդի շրջակաները, իր հետ միացուցած Զոզ Վասիլ, Օշին եւ այլն իշխանները՝ իրենց կալուածքներով։ Ռուբինեանց իշխանութիւնը տեւեց 3 դար, եւ ունեցաւ չորս շրջաններ, 1.) Գրաւման ժամանակ,

57 տարի (1080-1137), 2.) Վերականգնման շրջան, 55 տարի (1141-1199), 3.) Թագաւորութեան շրջան, 143 տարի (1199-1342), 4.) Օտար Թագաւորներու շրջան, 33 տարի (1342-1375)։ Կիլիկիան ու Հայ արքունիքը կէս մը Հայկական ու կէս մը Եւրոպական հանգամանք ունէին։ Մանաւանդ Լեւոն Բ.ի օրով արտաքնապէս ամեն ինչ արեւմտեան էր։ Եւրոպայի աւատական դրութեան պատկերը կար։ Կային շատ մը Յոյներ և Եւրոպացիներ, որոնք բնիկներուն պէս հպատակներ էին և ունէին իրենց կալուածները։ Վենետիկցի, Ճենովայի, Պիզացի և այլ տեղացի վաճառականներ ու արհեստաւորներ հաստատուած էին Կիլիկիոյ վաճառաշահ նաւահանգիստներուն մէջ և կամ կ'երթեւեկէին շարունակ։ Ռուբինեանց իշխանութեան ամբողջ շրջաններու պատմութիւնը Եւրոպական յարաբերութեան շուրջը կը դառնայ։ Կիլիկիոյ աշխարհագրական դիրքը և ապա խաչակիրներու արշաւանքները, որոնց հետեւանքով հայերը սերտիւ կապուեցան Եւրոպացիներուն հետ, հայերը մերձեցուցին Եւրոպային։ Արդէն խաչակրութեան իրրեւ բնական հետեւանք, արեւելքի քրիստոնեայ ազգերը պիտի յարէին՝ Հռոմի։ Եւրոպացի-

ներուն հետ Հայոց ունեցած յարաբերութիւնը եթէ մշակուէր խոհեմութեամբ, և Յոյները իրենց քաղաքական անմտութիւնը մէկ կողմ ձգելով ձեռք տային Արևելքի մէջ արևմտականութեան դրօշակակիրն հանդիսացող Հայ ցեղին, առաջ եկած արդիւնքը ապահովաբար կ'ըլլար չա՛տ նպաստաւոր։ Սակայն այնպէս չեղաւ դժբաղդաբար։ Հայերը մինակ մնացին բոլորովին՝ բարբարոսթեանց հեղեղին առջև և միշտ յամառեցան առանձինն պատնէշել, ու չարունակեցին, հակառակ ամեն աննպաստ պայմաններու, թըղթակցիլ ու յարաբերիլ Արևմուտքի հետ. — բան մը, որ զիրենք բոլորովին կասկածելի դարձուց Եգիպտոսի Սուլթանութեան առջև։ Ա՛յս էր պատճառը որ Եգիպտոս ամեն գինով ջանաց Արևելքի և Արևմուտքի այս կապը կտրել՝ Կիլիկիոյ Հայ իշխանութիւնը նուաճելով ու հայութիւնը բնաջնջելով։ Ու հարուածները յաջորդեցին իրարու։ Կիլիկիոյ շրջանին մէջ խաչակիրները երկու քրիստոնեայ ազգակից ժողովուրդ միայն կրնային գտնել. հայերը և յոյները, որոնց առաջինը որչափ որ վստահութիւն գրաւած էր, իր անկեղծ անձնուիրութիւնովը, նոյնչափ ալ կասկածելի դարձած էր երկրորդը, իր երկ-

դիմի և խարդախ քաղաքականութիւնովը։ Այս կերպով է որ Խաչակրութեան ընթացքին մէջ, սկիզբէն իսկ, հայերը լատիններուն հետ միշտ յարաբերութեան մէջ գտնուած են։

Մահմետականները Դամասկոսը գրաւելէն վերջ 637 ին պաշարեցին Երուսաղէմը, որ անձնատուր եղաւ։ Ումեաններուն և Աբբասեաններուն օրով քրիստոնեաները ազատօրէն կ՚այցելէին Ս. տեղերը և ապահով կերպով կ՚երթեւեկէին։ Սակայն երբ Սելճուգեան Թուրքերը 1076 ին գրաւեցին Երուսաղէմը, շատ գէշ վարուեցան քրիստոնեաներուն հետ, զանոնք կեղեքեցին, ջարդեցին, քրիստոնէական պաշտամունքը նախատեցին և նոյն իսկ ուխտագնացութիւնը արգիլեցին։ Եւրոպայի Քրիստոնէութիւնը գրգռուած բողոքովին, զինուեցաւ Ս. Երկրին ազատման համար և արշաւեց Երուսաղէմ։ Այս նպատակաւ կազմուած ուժերը կոչուեցան Խաչակրութիւն, որոնցմէ 4ը Պաղեստին, 2ը Եգիպտոս, 1ը Պոլիս և 1ը Հիւսիսային Ափրիկէ արշաւած են։ Խաչակրութիւնը տեւեց մօտաւորապէս երկու դար (1066-1270), և ունեցաւ իր քաղաքական, պետական, ընկերական, եկեղեցական, գիտական և գրականական արդիւնքները, ու-

նմանելով հանդերձ իր սխալներն ու քննադատելի կողմերը ։ Հայ ժողովուրդը, արեւմտականութեան ջղինանվեներ պաշտպան եւ կրօնասէր, սիրով եւ անտրտունջ օգնեց Խաչակրութեան, ամէն անգամ որ որեւէ կերպով հնարաւորութիւն տեսաւ անոր օժանդակելու, եւ միշտ ալ յարաբերութիւն պահպանեց Եւրոպայի հետ ։ Պատմութիւնը յայտնապէս ցոյց կուտայ թէ որչափ սուղի նստաւ Ռուբինեաններուն՝ Արեւմուտքի հետ ամէն գինով պահպանուած այս յարաբերութիւնը ։ Եւ մինչ Հայեր միշտ իրենց աչքերը Արեւմուտք դարձուցած քրիստոնեայ աշխարհէն օգնութեան կը սպասէին, երբ Մեմլուքներու հալածանքներէն ու հարուածներէն ջլմրած, ազատարար ձեռքի մը ուժին պէտք կար, Եւրոպացի ազգեր ո՛չ իսկ բարեացակամ շարժում մը կ'ունենան, անտարբեր մնալով Արեւմտեան քաղաքակրթութեան անունով տանջուած ժողովուրդի մը գերմարդկային ճիգերուն եւ օրհասական աղաղակներուն։ Մեծագոյն, խիզախ եւ երկարատեւ Խաչակրութիւնը կատարած եղան այսպէսով Հայերը, յուսաբեկ՝ իրենց յուսադրութիւններուն մէջ եւ խաբուած չարաչար ։

Խաչակրութիւնէն զատ Հայեր ունեցան

Եւրոպացիներու հետ խնամիական, քաղաքական և կրօնական յարաբերութիւններ, որոնց արդիւնքն էր Լատինականութեան մուտքը Կիլիկիոյ մէջ։ Բացի Ներսէսէն և Գր. Բարավէժէն, բոլոր կաթողիկոսներն ալ միշտ բարուոք և մերձաւոր յարաբերութիւն պահպանած են Վատիկանի և Եւրոպայի Լատինականութեան հետ։ Այս շրջաններուն Հռոմի ջանքը եղած է Եկեղեցիներու Միութեան գաղափարին իրագործումը։ Այս ուղղութեամբ եղած երեք փորձեր ալ անյաջողութեան մատնուած են, վասնզի Հայեր ո՛րչափ ալ համակիր ըլլային Եւրոպացիներու, կարելի՛ չէր որ հեռանային Մայրենի Եկեղեցիէն։ Յոյներու և Լատիններու եկեղեցական միութեան խնդիրը Հայոց պատմութեան ընթացքին մէջ քանիցս երևան եկած, բայց յաջողութեամբ պսակուած չէ, ինչպէս որ Զրադաշտականութեան և Մահմետականութեան բուռն ջանքերն ալ ի դերև ելած են։ Լատինացման ամենէն հիմնական փորձը կարելի է համարել ունիթորներու (միաբանողներ) երևումը հայկական հողին վրայ՝ թէ Կիլիկիոյ և թէ՛ մանաւանդ Մեծ Հայաստանի մէջ։ Յովհաննէս ԻԲ. պապը 1318ին Հայաստան ղրկեց Բարթողիմէոս

Դոմինիկեան եպիսկոպոս․ որ շատ մը Հայ աշակերտներ ժողվելով Լատինական հոսանք մը ստեղծեց։ Նշանաւոր դէմքեր հանդիսացան ասոնց մէջ Յովհաննէս Քռնեցի․ Ներսէս Պալենց և Սիմոն Պէկ, որոնց արժանաւոր հակառակորդներ դարձան Յովհաննէս Որոտնեցի և Գր․ Տաթեւացի։ Հակառակութիւնն առաւ ծայրայեղ հանգամանք, և սակայն Հայ ժողովուրդը պահպանեց իր եկեղեցիին ժողովրդապետական ոգին։

Կիլիկեան իշխանութեան շրջանը կրնար վերածնութեան ժամանակամիջոց մը ըլլալ երկարամեայ հալածանքներէն խաղաղու նուաճուած ու յոգնած հայութեան համար, սակայն քաղաքական հանգամանքները բոլորովին աննպաստ ըլլալով, ինքնամփոփումի հնարաւորութիւն չտուին Հայ մտաւորականութեան և Հայ արուեստին։ Ասոր հետ մէկտեղ քաղաքակրթուած համայնքի մը արձանագրութիւնը թողուց Կիլիկիոյ բարձունքներուն վրայ թառած ժողովրդային այս զանգուածը։ Հայոց բաղդն էր կարծես որ Մեծ Հայքի մէջ Պարսիկներու, Արաբներու և Յոյներու բռնակալ դրացնութենէն ազատելէն վերջ յանկարծ Մէմլուքները պիտի տեսնէին իրենց դիմաց, նոյնքան վտանգա-

ւոր և նոյնքան ոխերիմ։

Հոս ալ դարձեալ Հայ ժողովուրդը երեւան կու գայ պատմականօրէն իր ստանձնած մեծագոյն դերով, որ կը կայանար արեւելքէն բարբարոս վայրագութեան ամպերուն մէջէն Արեւմտեան Քաղաքակրթութեան լուսաւոր ջահը վեր բարձրացնելուն մէջ, իր ֆիզիքական գոյութեան զոհաբերութիւնո՛վը իսկ։ Արեւելականութեան ներկայացուցիչներէն պաշարուած փոքրիկ ժողովուրդի մը և համեմատաբար տկար իշխանութեան մը այս դիւցազնական պաշտպանութիւնն ու դիմադրաւումը բնականաբար կու գայ իր պատուաբեր վկայութիւնն արձանագրել Քաղաքակրթութեան պատմութեան մէջ և անգամ մ'ալ ապացուցանել թէ 1375 ին Կիլիկիոյ Հայկական իշխանութիւնը կ'իյնար ու կ'ոչնչանար՝ ո՛չ թէ Եգիպտոսի այսինչ Սուլթանին ձեռքով, այլ Արեւելեան Քաղաքակրթութեան ոյժով և դժբաղդ Լեւոն Զ.ը չէ՛ր որ գերի կ'երթար Եգիպտոս, այլ Արեւմտեան քաղաքակրթութեան մէկ ներկայացուցիչը։ Ռուբինեան հարստութեան վերջին հանրածանօթ գահակալն էր դժբաղդ Լեւոն Զ. ը, (կամ Լեւոն Ե. ը) որ Բարիզի մէջ մեռաւ 1393 ին, որուն աճիւն-

ները 1789ի Ֆրանս. Մեծ Յեղափոխութենէն վերջ փոխադրուեցան Սէն-Տընիի արքայական դամբարանը, ուր այժմ կը բարձրանայ Լեւոնի չքեղ մահարձանը։

---

# XI

Հայ եկեղեցին եւ Հայ կեանքը.— Հայ կղերը եւ հայոց քաղաքական կեանքը.— Լուսաւորիչ եւ իր յաջորդները.— Կղերին ու քաղաքական իշխանութեան բաղխումները.— Հայ կղերը՝ իբրեւ հասարակական գործիչ.— Առաջին աշխարհական հայ մատենագիրը.— Հայ կղերը՝ քաղաքական գործիչ.— Հինեն նորեն փաստեր.— Հայ եկեղեցւոյ բարեկարգութեան հարցը։

Որպէսզի կարելի՛ ըլլայ ուրանալ Հայ Եկեղեցիին ներգործական մեծ դերը հայկական կեանքին զանազան երեսներուն մէջ, պէտք է ջնջել ամբողջ Պատմութիւնը և անոր փաստերը։ Կրօն ու Եկեղեցի, ո՛չ միայն հայոց, այլ և բոլոր ազգերու և ժողովուրդներու մէջ կատարած են շա՛տ հզօր ներգործութիւն՝ բարոյական, ընկերային, քաղաքական և այլ տեսակէտներով։ Իսկ Հայ Եկեղեցին՝ ինքնին՝ իր բացառիկ դիրքով և անկախութեամբ ստացած է անսահման կարեւորութիւն Հայ կեանքին հասարակական բոլոր խնդիրներուն շուրջը, ուր լսելի

ընել տուած է իր հեղինակաւոր ձայնը։ Եզական է Հայ Եկեղեցիին դիրքը։ Ուրոյն ազգութիւն մըն է Հայը և ուրոյն Եկեղեցի մըն է իր Եկեղեցին՝ բոլոր քրիստոնեայ եկեղեցիներուն մէջ, որոնց հետ իր ունեցած սերտ եղբայրակցութիւնը գուցէ զինքը վերջ ի վերջոյ ձուլէր արեւմտեան եկեղեցիներու մէջ. — յունականին կամ լատինականին, — եթէ սակայն բարերար անջատումն ու անկախութիւնը չգար պահպանել իր ինքնուրոյնութիւնն ու պատմական անհատականութիւնը։ Հայ Եկեղեցիին ազգային հանգամանքը ա՛յնչափ չեշտուած էր և պատմական դէպքեր հայոց ազգային և կրօնական գաղափարները այնպիսի զօհաբերութիւնով շաղուած էին որ Հայ Եկեղեցի և Հայ Ազգ հոմանիշ կը նկատուէին։ Հայաստանցի բարեպաշտ և ջերմեռանդ հայը Հայ Քրիստոնեայ կ'ըսէ ու կը հասկցնէ ամեն բան։ Մուրացկանը «Հայ Քրիստոնեայ» անունով ողորմութիւն կը խնդրէ. ճամբորդը միեւնոյն անուանակոչութիւնո՛վ կրնայ ասպնջականութիւն գտնել Հայաստանի գիւղերուն մէջ։ Հայաստանցի հայուն համար Հայ Եկեղեցին ամեն ինչ է. լոյս-հաւատքը ամեն բան կը խտացնէ իր մէջ, այնպէս

որ կրօնքի անունով եկած որեւէ հարուած կ'ըմբռնէ ազգային հայեացքով և ազգութեան անունով ստեղծուած որեւէ հալածանք կրօնական ոգիով կը մեկնէ ։ Այս պատճառաւ էր որ զուլումի օրերուն մէջ, կոտորածներու ժամանակ, առանց չափազանցութեան կարելի է ըսել թէ, հարիւրաւոր, գուցէ և հազարաւոր հայեր մեռան՝ կրօնափոխութեան յանձնառու չըլլալնուն համար ։

Հայ Եկեղեցիին հետ սերտիւ կապուած է Հայ Կղերը․ որուն դիրքը սկիզբէն ի վեր եղած է շատ բարձր ։ Հայ ժողովուրդը վերջին ծայր ակնածալիր վերաբերում ունի Հայ կղերին հանդէպ ։ Ոչ միայն արժանաւորները, այլ և անարժանները գիտէ յարգել, անո՛ր համար որ՝ «կարգաւոր» են ։ Հին ժամանակներէ մնացած աւանդական յարգանք մ'է ասիկա ։ Երբեք բարեգուշակ չէ հայու մը համար՝ կրօնաւորի մը հետ վէճի բռնուիլը և կամ պայքար մ'ունենալը ։ Անէծքի և բանադրանքի սարսափը տակաւին կը շարունակուի, ինչ որ լաւ կը բացատրէ կղերին ունեցած գերազանցօրէն տիրապետող դիրքը ։ Ասիկա ի հարկէ սերունդէ սերունդ կտակուած հին աւանդութիւն մըն

է, զոր կղերներ ունէին։ Գրիգոր Լուսաւորիչ, կրթուած երկրին քաղաքական և զինուորական ոյժերուն, — Տրդատի ու իր բանակին, — երբ հեթանոսութիւնը հալածեց ու Քրիստոնէութիւնը տարածեց, այնպիսի՛ ազդեցութիւն մը առաջ բերաւ հայոց մէջ, որ Հայրապետական Գահը քաղաքական նշանակութիւն ստացաւ։ Հայոց մէջ հաստատուեցաւ ժառանգական կրօնապետութիւն։ Լուսաւորիչի տոհմը դարձաւ խոշոր հողատէր ազնուական՝ շնորհիւ Տրդատի նուիրած հողերուն։ Իր յաջորդներն ալ բընականաբար պիտի պահպանէին իրենց ժառանգական իշխանութիւնը։ Ուստի առաւել կամ նուազ չահագործեցին այդ դիրքը։ Հայ կղերին ձայնը մի՛շտ լսուեցաւ քաղաքական խնդիրներու մէջ։ Մեզի կը պակսին տեղեկութիւններ՝ հեթանոսական շըրջանը բացատրելու համար այս տեսակէտով, հասկնալու համար թէ քուրմերու ազդեցութեան աստիճանն ի՞նչ էր Հայ արքունիքին և Հայ ժողովուրդին վրայ։ Բայց դժուար չէ գուշակել թէ, նոյն իսկ Լուսաւորիչի մեհեաններու քուրմերուն հետ մղած սաստիկ պայքարը, ինչպէս նաև զանոնք ջնջելու համար ունեցած նախանձա-

խնդրութիւնը լուռ և զօրաւոր ապացոյց մըն է քուրմերու ունեցած գերակշիռ դիրքը բացատրող։ Քրիստոնէական շրջանի հայ կղերին դիրքը արդէն որոշ է։ Մենք հոն կը տեսնենք հայ կղերը՝ իբրև մտաւորական գործիչ, բարեգործ, գրագէտ, ուսուցիչ, պետական խորհրդատու, քաղաքական ուղեցոյց և առաջնորդող և այլն։ Գ. Լուսաւորիչ, Մեծն Ներսէս, Յովսէփ Կաթողիկոս, Ղևոնդ Երէց և այլն դէմքեր են, որոնք իրենց դասակարգային հեղինակութիւնն ու դիրքը կը մատնանշեն։ Հայ կղերը անվարան կը միջամտէ քաղաքական խնդիրներու. Հայ Արքունիքին վերաբերած խնդիրներու մէջ իր հեղինակութիւնը կշիռ ունի։ Հայ Կաթողիկոսը միջնորդն էր շատ անգամ Հայոց թագաւորին և այլ պետութիւններու միջև։ Երբեմն ալ Հայ Կղեր խնամակալութեան դեր ստանձնած էր։ Արշակունի թագաւորներ ունինք, որոնք բացառապէս հայ Կղերին ձեռքով գահ բարձրացած էին։ Եւ հետևաբար ալ մեծ պիտի ըլլար անոր ազդեցութիւնը։

Ժամանակի ընթացքին մէջ սակայն այդ ազդեցութիւնը չափազանցութիւն գտաւ, մինչև որ բաղխում առաջացաւ հայոց քա-

ղաքական եւ կրօնական իշխանութեանց մէջ։ Մեծն Ներսէսի եւ Պապ Թագաւորի անհամաձայնութիւնը, պայքարը եւ ապա առաջինին թունաւորման առասպելը, որ բատեղծուած է՝ կղերամիտներու կողմէ, պոռթկումն է կղերին ու քաղաքական իշխանութեան պետին միջեւ չեչտուած մեծ անհասկցողութեան։ Պապը որոշ քաղաքականութիւն մը կը հետապնդէր Մեծն Ներսէսի դէմ իր յայտարարած կռիւով.— սահմանափակել կղերին ազդեցութիւնը քաղաքական գործերու մէջ։

Հայ կղերը, իբրեւ հասարակական գործիչ ցոյց տուած է գործունէութեան մեծ բաժին՝ հայկական կեանքին մէջ։ Հայոց Գիրը, Հայ Գրականութիւնը, Հայ Ուսումը եւ Հայ Մշակոյթը նշանակելի մասով կղերին կը պարտինք, ո՛րչափ քիչ է աշխարհականներու մասին մեր ունեցած տեղեկութիւնները, մանաւանդ հին ու միջին դարերու վերաբերմամբ։ Սահակ, Մեսրոպ՝ կղերներ էին. մատենագրական դէմքեր, ուսումնավայր-վանքերու վանահայրեր եւ ուսուցիչներ՝ կղերներ էին. բեմ ու գրականութիւն անոնց մենաշնորհն էին կարծես։ Նոյն իսկ եթէ աշխարհական մեծ դեմքեր ալ ունե-

ցած ենք, անոնք գործած են կղերին աջակցութեամբ։ Հայ Դպրութեան պատմութիւնը ԺԱ. դարէն առաջ ցոյց չտար որևէ աշխարհական մատենագիր։ Գրիգոր Մագիստրոսէն վե՛րջն է միայն որ այլեւս Հայ Մատենագրութիւնը կղերին մէկ առանձնաշնորհումն ըլլալէ կը դադրի ու Մխիթար Հերացի, Մխիթար Գօշ և այլն ասպարէզ կուգան։

Ո՛չ միայն հին և միջին դարերու, այլ և նորագոյն ժամանակներու մէջ ալ հայ կղերը չա՛տ աւելի օգտակար եղած և ժողովրդականութիւն շահած է, երբ քաղաքական գործունէութեան մէջ ապրած է։ Մինաս Վարդապետ՝ Իսրայէլ Օրիի հետապնդած Հայկական Հարցին ախոյեանն է՝ անոր մահուանէն վերջ։ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեան Հայկական Ինքնավարութեան գաղափարը կը մշակէ։ Ներսէս Աշտարակեցի նոյնպէս՝ սատարողն էր Հայկական Ինքնավարութեան ծրագրին։ Մեծ էր Մատթէոս պատրիարքի դերը տաճկահայոց Ազգային Սահմանադրութեան հրատարակութեան գործին մէջ։ Ներսէս Վարժապետեան, Խրիմեան Հայրիկ, Իզմիրլեան Սրբազան, Նարպէյ և այլն յայտնի քաղաքա-

կան գործիչներ են, որոնց ազդեցութեան դրոշմը կայ վերջին յիսնամեակի Հայկական կեանքին մէջ ։

Հայ Եկեղեցին ու Հայ Կղերին դերը Հայոց Պատմութեան մէջ ունի իր որոշ նշանակութիւնը ։ Ի հարկէ բացատրական մասըն ալ նոյնքան ճոխ ու հետաքրքրական է ։ Անիկա մէկ կողմ թողլով, կ'ուզենք ըսել թէ, մեծագոյն դերը, որ կը սպասուի ժամանակակից Հայ կղերէն՝ Հայ Եկեղեցիի բարեկարգութեան հարցին իրագործումն է ։ Այսպէս կամ այնպէս՝ պատմական եկեղեցի մըն է Հայ Եկեղեցին, որ մինչեւ հիմա իր հզօր տպաւորութիւնը ներգործած է Հայ կեանքին մէջ ։ Եւ որպէսզի տակաւին դեր ստանձնէ հայկական մշակոյթին ու վերածնութեան գործին մէջ, պէտք է որ բարեկարգուի եւ երիտասարդանայ ։ Հայ կղերը հարկ է որ սթափի եւ մէկ կողմ թողած արդէն մոլեռանդութիւնը՝ ըմբռնէ լրջօրէն Հայ Եկեղեցիի բարեկարգութեան հրամայական պահանջը, վստա՛հ ըլլալով որ ժամանակին հետ քալող եկեղեցինե՛րը միայն սահմանուած են ապրելու ։

# XII

*Հայոց քաղաքական կեանքին փոթորիկներն ու ելեւէջները.— Մտաւորական գործունէութեան շրջաններ եւ անոնց ազդակները.— Հայ վանքերն իբրեւ ուսումնավայր.— Ոսկեդար եւ արծաթի դար.— Միջին դարը, Հայ Գրականութեան շիջումը, պատմիչներ եւ ժողովրդական երգիչներ.— Օսմանեան տիրապետութիւնը եւ Հայ կեանքը.— Հայաստանի կացութիւնը եւ Եւրոպայի վերածնութիւնը.— Հայ Տպագրութեան սկիզբը.— Ինչո՞ւ Հայ տպագրութեան երախայրիքը՝ Հայաստանէն դուրս.— Հայկական տպագրութիւնը Եւրոպայի մէջ եւ գաթոլիկ կղերն ու Վատիկան.— Մխիթարեաններու դերը։*

Հայոց քաղաքական կեանքը լի է անհագին փոթորիկներով։ Հայաստան՝ գտնուելով Արեւելքի ու Արեւմուտքի սահմանագլուխին վրայ, տարբեր տարբեր քաղաքակրթական ձգտումներ ունեցող հոսանքներու բախման կրկէսը դարձած է։ Որեւէ ցեղի պատմութեան մէջ այնչափ առ-

րապետող չեն յաճախակի արտաքին ազդակները, շարժիչ ոյժերը, որչափ հայոց կեանքին մէջ երեւան եկած են անոնք յաջորդաբար։ Իրերու խիստ բնական հետեւանքով Հայ ժողովուրդը իր պատմական բովանդակ դերին մէջ երեւան եկած է՝ բարբարոս ոյժերու ընդդիմադիր, իր ընդգըրկած դրօշին համար նահատակ և իր ազգային գոյութիւնը պահպանելու համար կռըւող, պայքարող, ճկուն և ստեղծագործ միեւնոյն ատեն։ Հայ ժողովուրդը, թէեւ հիանալի ընդունակութիւններով օժտուած՝ շինելու, ստեղծագործելու, երկիրներ բարեզարդելու և կեանքը շէնցնելու, դժբաղդաբար գրեթէ երբեք յաջողած չէ խաղաղ պայմաններով շրջապատուելու եւ իր ուշադրութիւնը կեդրոնացնելու իր մշակոյթին, իր առաջդիմութեան և իր կեանքին ու կենցաղին հաճոյալի ընթացք մը տալու հոգածութեան շուրջը։ Անողոք հարուածները, աջէն ու ձախէն, վերէն ու վարէն տեղացող շլմորեցուցիչ տարափը, ո՛չ մէկ դիւրութիւն տուին իրեն՝ իսկական գոյնով ու ընդունակութիւններով ասպարէզ գալու համար իր սեփական հայրենիքին մէջ։ Իր կեանքին, պատիւին, կրօնքին ու ինչ-

քին պահպանութեան անհրաժեշտական պահանջին առջև, Հայ ազգը մոռցա՛ւ, մոռցա՛ւ ամէն բան: Իր գիրքին մէջ գտնուող, իր շարունակական հալածանքներուն ենթարկուող ուրիշ ժողովուրդ մը՝ շատոնց պիտի վերջ տար ամէն բանի, իր կեանքը փոխելով ամէն տեսակ ազնիւ ձգտումներու, խոհականերու և քաղաքակրթիչ աշխատութեան հետ: Հայ ժողովուրդը կը նմանի զսպանակի մը, զոր որչափ ճնշես, կրկին չկորսնցներ իր ոյժը և ամենափոքր դիւրութենէ մը կ'օգտուի՝ տարածուելու, տեղաւորելու համար: Երբ հալածած են զինքը, սպաննած, մորթոտած, իր ունեցածները յափշտակած, անիկա առանց ատով ամէն յոյս կորսուած նկատելու, կրկին սկսած է իր աշխատութեան՝ շինելու, շէնցնելու և բարեկարգելու համար. ու ատով զոհ չէ առած իր բարձրագոյն առաքինութիւնները: Հայոց կեանքին մէջ գահավիժօրէն իրարու յաջորդող եղեւէջները, փոթորիկներն ու հոսանքները հանդարտութենէ զրկած են Հայ Միտքը: Ասոր համար է որ Հայ մտաւորական գործունէութիւնը շատ մը շրջաններ և այլազան ազդակներ և ուղղիչներ կը ներկայացնէ:

Հեթանոսական դարերու մէջ գոյութիւն ունեցող Հայոց մտաւորական գործունէութեան մասին առաւելն ենթադրութիւններ ընելու է։ Բացի Մովսէս Խորենացիի Հայոց Պատմութեան միջոցաւ մեզի կտակուած Գողթան Երգերու փշուրներէն և կամ այս ու այն կերպով մեզ հասած բանահիւսական բեկորներէն, ամբողջական ոչինչ ունինք մեր ձեռքին տակ՝ իրական դատաստան մը ընելու համար։ Եթէ ընդունինք որ Գ. Լուսաւորիչ մեհենական դպրութիւնը կրօնական նախանձախնդրութեամբ անգութ կրակին ու բոցերուն յանձնած է, այն ատեն ելակէտ պէտք է ունենալ հայոց քրիստոնէական գրականութեան սկիզբը։ Հայ գիրերու գիւտը կը հանդիպի Ե. դարու առաջին տարիներուն (403, 404, 405 կամ 406 թուականին). բայց Գ. Լուսաւորիչէն կը սկսի գրական գործունէութիւնը, վասնզի հեթանոսական յիշատակներու ջնջումէն վերջ, անշուշտ Լուսաւորիչ նշանակելի հակազդեցութիւն մը փորձել ուզեց՝ միանգամ ընդ միշտ հայոց մէջ արմատացնելու համար քրիստոնէական գաղափարներն ու ճշմարտութիւնները։ Այս տրամաբանութեամբ՝ հայոց մէջ քրիստոնէական մտա-

ւորական գործունէութիւնը, որ Դ. Դարուն մէջ իր դերը կատարեց, օտարազգիներու այբուբենին միջոցաւ, Ե. դարուն մէջ, Հայ գիրերը գտնուելէն անմիջապէս վերջ տեղի տուաւ զուտ հայկական մտաւորական գործունէութեան մը առջև։

Ոսկեդարու փառքը շատ շողշողուն հանգամանք մը ունեցաւ և Հայ Դպրութիւնը այդ շրջանին մէջ ստացաւ խիստ յաջող հանգամանք մը, արագ թռիչ մը և բարձր նկարագիր։ Զրադաշտականութեան հալածանքները, ապա և անոնց հետևող արիւնոտ ընդհարումները՝ Հայոց ու պարսից մէջ՝ կասեցուցին ամեն տեսակ մտաւորական գործունէութիւն։ Եւ ոսկեդարը 30-40 տարուան առաջդիմութենէ և գրական արդիւնաւոր կեանքէ մը վերջ մարեցաւ տակաւ։ Իրաւ ալ, այդ անհանգիստ պայմաններուն մէջ, երբ հուրն ու սուրը կը թագաւորէր ամեն կողմ, կարելի չէր սպասել որևէ մտաւորական գործունէութիւն։ Դպրութիւններու այս անկումը առաւելապէս շարունակուեցաւ ու շեշտուեցաւ մանաւանդ Զ. դարուն մէջ, երբ հայերը բոլորովին հեռացան հելլենական գրականութենէն և Քաղկեդոնի ժողովին հետեւանքով հայ եւ

յոյն ժողովուրդներու մէջ քրիստոնէութեան չնորհիւ ամրապնդուած կապը թուլցաւ ու խզուեցաւ վերջապէս ։ Է․ դարուն կը սկսի հայ մտաւորականութիւնը խլրտալ, և հազիւ Արծաթի Դարը կը սկսի, ահա արտաքական արշաւանքն ու տիրապետութիւնը իր հետ բերած փոթորիկներով կը սպառնայ խեղդել զայն ։ Այնուհետեւ գրական ամուլ շրջաններ կը բոլորէ հայ ժողովուրդը մինչեւ ԺԲ․ դարը, երբ Կիլիկեան Դպրութիւնը կը սկսի ծաղկիլ Ռուբինեանց հարստութեան թեւարկութեան տակ ։ Հայ բանաստեղծութիւնը իր գերագոյն թռիչքը կ՚առնէ Ներսէս Շնորհալիի անմահ շարականներուն և տաղասացութիւններուն մէջ, ու ռամկավարական ձգտումը կը մտնէ հայոց մտաւորական գործունէութեան մէջ՝ ռամկօրէն լեզւին յաղթանակովը ։ Միջին դարու արշաւանքները, հայոց գաղթականութիւնները, տիրող ընդհանուր հալածական դրութիւնը, Հայաստանի անհանդուրժելի կացութիւնը և քաղաքական պայմանները մահուան դատապարտեցին մտաւորական կեանքը ։ Մանակի երկրորդական պատմիչներ միայն փոյթըն ունեցած են արձանագրել իրենց ժամանակներու դէպքերը, և ժողովրդական

աշուղներ, իրենց քնարով եղերերգած են Հայ կեանքը։ Աւելորդ կը համարինք մի-առմի մանրամասնօրէն թուել այն բոլոր քաղաքական մրրիկները, որոնք շրջապա-տած էին Հայ կեանքը և ընթացք տուած անոր մտաւորական ձգտումներուն։ Այս արշաւանքներուն և ժողովրդային խուճապ-ներուն մէջ ոտնակոխ եղած են բազմաթիւ ուսումնավայր վանքեր, որոնք գրականու-թեան և ուսման կեդրոններ դարձած են Հայաստանի մէջ։ Մեր մէջ արդէն կղերը եղած է առաջին և գլխաւոր ուսումնական գործիչը։ ԺԱ. դարէն առաջ բացի կղերէն, ուրիշ որեւէ աշխարհական չենք տեսներ Հայ Մատենագրութեան Պատմութեան մէջ։ Գր. Մագիստրոսն է առաջին աշխարհական մատենագիրը։ Այս կղերները բոլորն ալ կը գործէին վանքերու մէջ, հեռու բոլորովին ժողովուրդէն և կեանքէն հրաժարած։

Հայկական ուսումնավայր-վանքերու պատմութիւնը և ուսումնասիրութիւնը շատ շահեկան է և փառաւոր։ Անոնք դարերու ընթացքին մէջ բարեպաշտ հայրապետներու, լուսամիտ թագաւորներու և կամ նոյն իսկ ջերմեռանդ ժողովուրդին կողմէ հաստատ-ւած էին՝ ոչ թէ մնացեալներու կարգ մա-

կաբոյծներ, այլ՝ ուղղակի ծառայելու Հայ ժողովուրդին, անոր զաւակներուն կրթութեան և մտաւորական զարգացման գործին։ Հայոց հեթանոսական շրջանին մէջ, մեհեաններն էին որ քուրմերուն հսկողութեան ներքեւ հեթանոսական դաստիարակութիւն կուտային ապագայ քուրմերուն։ Ի վերջոյ քրիստոնէական շարժումն ալ, զօրացուց վանքերու կազմակերպութիւնն ունեցող հաստատութիւնները։ Ազգային լուսաւորութեան և գրական առաջդիմութեան գործը վանքերու մէջ սահմանափակուած էր։ Դպրոցներ և ուսումնական ձեռնարկներ՝ վանքերու մէջ կ՚ըլլային։ Հո՛ն կ՚ընդօրինակուէին ձեռագիրներ, հո՛ն կ՚ապրէին մեր մատենագիրները, գրագէտներն ու քարոզիչները։ Պատմութիւնը կը յիշատակէ բազմաթիւ ուսումնավայր-վանքեր՝ Հայաստանի այս ու այն կողմը, Մեծ Հայքի, Փոքըր Հայքի և Կիլիկիոյ մէջ սփռուած։ Դ. դարէն սկսեալ մինչեւ ԺԴ. դար նոյն կերպով կ՚ըլլայ մտաւորական աշխատութիւնը։ Դ. Դարուն մէջ նոյն իսկ Տարօնի Գլակայ և Իննակնեան վանքերը ուսումնական կեդրոններ էին։ Կը յիշուին շատ մը նշանաւոր վանքեր, որոնք եկեղեցագիտական ուսմանց

դպրանոցներ էին, ինչպէս, Նորավանք եւ
Այրիվանք (Ե. դար), Սիւնեաց Վարդա-
պետարանը (Զ. դար), Շիրակի Դպրեվան-
քը (Է. դար), Գեղարքունեաց մենաստանը
(Ը. դար), Աղթամարի եւ Սեւանի վանքե-
րը (Թ. դար), Նարեկի վանքը (Ժ. դար),
Սանահինի վանքը (ԺԱ. դար) եւայլն։

Եկաւ վերջապէս Օսմանեան տիրապե-
տութիւնը։ Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Կ.
Պոլիսը գրաւելէն վերջ սկսաւ դէպի արե-
ւելք արշաւել եւ գրաւել արեւմտեան Հա-
յաստանն ու Փոքր Հայքը։ Յայտնի է Ֆա-
թիհի քաղաքականութիւնը, որ շատ նը-
պաստաւոր էր Հայոց համար, վասնզի ինք
կ'ըմբռնէր թէ ի՛նչպիսի շինարար տարր մըն
է հայ ժողովուրդը եւ շէնցնող ի՛նչ ընդու-
նակութիւններով օժտուած է։ Հաստատ-
ւեցաւ Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքութիւ-
նը եւ հոն ապրող գաղութը բաղդատաբար
հանգիստ կենցաղ մը ունէր։ Հայաստանն
էր որ կրկին ահուդողի մատնուած էր։ Իս-
լամի եւ ոչ իսլամի խտիրը տակաւ կը զօ-
րանար տիրապետող տարրին մէջ, եւ ընդ-
հանրապէս քրիստոնեաներն ու մասնաւո-
րապէս հայերը նշաւակ կ'ըլլային անարգու-
թեան եւ ենթակայ՝ բազմադիմի զրկանք-

նիւթու։ Իրաց այս դրութեան մէջ Եւրոպան կը յեղաշրջուէր։ Տպագրութեան գիւտը, Յովհաննէս Կիւթթէմպէրկի ձեռքով, ամբողջ Եւրոպայի ուշադրութիւնը կը հրաւիրէր իր վրայ։ Հետզհետէ Իտալացիներ, Ֆըրանսացիներ, Սպանիացիներ եայլն կ'որդեգրէին զայն։ Վերածնունդի օրերն էին։ Բիրտ ոյժին տիրապետութիւնը չնչելու սահմանուած գիրը, մամուլին միջոցաւ կը տարածուէր ամէն կողմ։ Այդ շրջանին մէջ Ասիոյ ժողովուրդներու մէջ միա՛յն Հայը կրնար իւրացնել զայն, իբրեւ յաջողակ տարր։ Բայց ի՞նչպէս։ Կարելի՞ էր երբեք Հայաստանի մէջ տպարան հաստատել։ Այնքան բարբարոսութեանց ենթակայ երկրի մը մէջ գրական գործունէութիւն ունենալը ցնորական չէ՞ր։ Եւրոպան պէտք է ըլլար այն ցամաքը, որուն վրայ պիտի տպագրուէր առաջին հայ տառը։ Եւ ահա Յակոբ անուն տպագրիչ մը, նոյն իսկ առաջին հայ տպագրիչն հրաչակուած Աբգար դպիրէն ալ 30 տարի առաջ, 1512 թուականին կը տպագրէր Վենետիկի մէջ «Սաղմոսարան»ը, երբ տակաւին Ռուսաստանէն ներս չէր մտած տպագրութիւնը։ Անպատեհ չէ ըսել որ ահաւասիկ, այս կերպով հայերո՛ւն միջոցաւ կ'րա-

կտուէր տպագրութեան գործին՝ Ասիոյ մէջ, և ո՛չ իսկ պատմական պզտիկ դեր մը չէ: Եւ սակայն գաթոլիկ կղերը, որ ուխտած էր միահեծան տիրել սիրտերու ու միտքերու վրայ, իր սեւ թաթը հասցուց այն բոլոր հայ հրատարակիչներուն վրայ, որոնք Եւրոպայի մէջ ուզեցին ստեղծել տպագրական կայան մը։ Վատիկանի գրաքննութիւնը կուգար սեղմումներով և կրօնական աններող նկատումներով կաշկանդել հայ նորահաստատ մամուլը։ Այդ է պատճառը որ «Սաղմոս»ներով զբաղած են հայոց անդրանիկ հրատարակիչները, երբ կրնային աւելի ժողովրդական գործեր տպել ու գրական աւելի լայն գործունէութիւն մը ցոյց տալ։ Այս հնազանդութիւնը սակայն չկրցաւ արգիլել որ հայ տպագրիչներ աննուաճ կամքով կուրծք տային ամեն տեսակ խըստութեան և Հայ Մամուլի գոյութիւնը պահպանէին դիւցազնօրէն, մինչեւ որ կուգային աւելի գեղեցիկ օրեր և նպաստաւոր ժամանակներ։

Այս թռուցիկ ակնարկներէն վերջ, որոնց միջոցին արեւելքի մէջ բնակող այս փոքրիկ ցեղին մեծութիւնը դուրս կուգար, հարկ է յիշատակել Մխիթարեանները, որոնք եւս,

Հայաստանէն դուրս Վենետիկ հաստատուեցան՝ հանդարտ սրտով ու խաղաղիկ մտաքով ծառայելու համար Հայկական Գրականութեան, և որոնք մեծագոյն օժանդակը դարձան Հայ ցեղին՝ պատմական ուրիշ դերեր ստանձնելու համար Արեւելքի մէջ։

---

# XIII

*Ռուս պետութիւնը կը կազմուի.— Հայերը շինարար ժողովուրդ.— Մեծն Պետրոսի գնահատութիւնը՝ Հայ ցեղին մասին.— Ռուսահայերը.— Հայոց եւ Ռուսաց առեւտրական յարաբերութիւնները.— Ղարաբաղի մելիքութիւնները եւ անոնց վերաբերումը Ռուսիոյ հանդէպ.— Իսրայէլ Օրի եւ Հայկական խնդիր.— Հայոց հաւատարմութիւնը Ռուսաց գահին հանդէպ,— Փոխադարձութիւնը.— Ռուսահայոց Պաշտժենիան.— Ռուսիոյ դերը Տաճիկ-Հայկական հարցին մէջ.— Երկին Հայը զոհ՝ քրիստոնէութեան ու մահմետականութեան միջեւ:*

Երբ իրերը Հայաստանի մէջ այն ընթացքըն ունէին, զոր բացատրեցինք նախընթաց հատուածներու մէջ, անդին Եւրոպայի մէջ կը հիմնուէր հսկայ պետութիւն մը, որ թէեւ նախապէս սահմանափակ զօրութեան տէր, սակայն կոչուած էր ըլլալու Արեւելեան Խնդիրին ամենէն մեծ ախոյեանը։ Պատմութիւնը կը բացատրէ արդէն թէ

Արեւմտեան Եւրոպա՛ն է որ առաջին անգամ պատմութեան մէջ հանդէս եկած ու փայլած է։ Անոր հետեւեցաւ արեւելեան Եւրոպան.— և ահա Ռուսիա, Բրուսիա և Լեհաստան կը սկսին իրարու ետեւէ հրապարակ գալ։ Նորման գաղթականներ Ռուրիկի առաջնորդութեամբ կը տիրեն Նովկորոտի և հիմը կը դնեն Ռուսական կայսրութեան։ Մինչեւ ԺԴ. դար ատոնց հանգիստը վրդովող չըլլար. բայց այդ դարուն Մոնկոլները արշաւելով կը տիրեն ամբողջ երկրին։ Այս տիրապետութիւնը կը տեւէ երկուքուկէս դար։ Իվան Ա. Վասիլիեւիչ զանոնք կը վտարէ և պետութիւնը կը փրկէ բարբարոսներու ճնշումէն։ Մեծն Պետրոսի՛ վիճակուած էր սակայն Ռուս կայսրութեան զօրացման մեծ դերը։ Եւ իրօք ալ Մեծն Պետրոսէն կը սկսի Ռուս կայսրութեան բուն զօրութիւնը.— Պետական այս մեծ մարդուն մեծագոյն ձգտումն էր Ռուսական պետութիւնը բարգաւաճ, զօրաւոր, քաղաքակրթուած և զինուորական պատկառելի ոյժով մը օժտուած կառավարութիւն մը դարձնել։ Իր ձգտումը որչափ բարձր՝ իր դերն ալ նոյնքան մեծ եղաւ Ռուս կայսրութեան պատմութեան մէջ։ Մեծն

Պետրոսի գործունէութիւնը կաշկանդող երեք գլխաւոր արգելքներ կային սակայն. 1.) Կղերը, 2.) Ազնուականութիւնը, 3.) Սթէրլիցի գունդը։ Մեծն Պետրոս, օժտուած հանճարեղ դիւանագիտութեամբ և աննկուն ու կորովի կամքով ու գիտակցութեամբ. յաջողեցաւ իր ծրագիրները իրագործել՝ գոյութիւն ունեցող բոլոր դժուարութիւնները միառմի ջնջելով ու տկարացնելով։ Իրեն կը պարտի Ռուսական Պետութիւնը իր գերակշիռ դիրքը՝ Եւրոպայի և Արեւելեան երկիրներու վերաբերող բոլոր հարցերուն մէջ գրեթէ։ Ա՛ն էր որ կազմակերպեց բանակը, երկրին մէջ ճարտարարուեստ մըտցուց, քաջալերեց վաճառականութիւնը, արհեստներն ու ճարտարութիւնը, վարժարաններ բացաւ և ամեն միջոց գործածեց՝ Ռուս ժողովուրդը քաղաքակրթելու և պետութիւնը հաստատուն հիմերու վրայ դնելու համար։

Մեծն Պետրոս, ուշիմ մարդ, ըմբռնեց որ իր հսկայ ծրագիրը գործադրելու համար երկրին բնիկները բաւական չեն. ուստի մասնաւոր համակրութիւն ցոյց տուաւ Հայ ժողովուրդին նկատմամբ։ Սա՛, արդէն զզուած իր Հայրենիքին մէջ տիրող պայմաններէն,

ու զուլումէն սարսափած , ապահով վայր մը կը փնտռէր՝ խաղաղ աշխատութիւնով պարապելու համար։ Հայերու շինարար ոգին ծանօթ էր արդէն։ Բագրատունեաց և Ռուբինեանց հարստութիւններու անկումէն վերջ աստ անդ և Եւրոպական կեդրոններու մէջ հաստատուած հայկական գաղթականութիւնները շէնցուցած էին այն հողը , որուն վրայ ապրած էին։ Հայոց վաճառականութիւնը ամեն տեղ իր ճիւղերը տարածած էր։ Լէնկթիմուր , Թաթարական արշաւանքները և ո՛չ իսկ որևէ հալածանք հայը կըրնային զրկել իր ուշիմութենէն։ Հայը իր կորուստը ողբալով յուսահատելէ աւելի՝ անմիջապէս գործի ձեռնարկել և կորսնցուցածները ձեռք բերել գիտէր։ Այսպիսի ժողովուրդի մը համար Մեծն Պետրոսի պէս դրացի գահակալի մը գնահատութիւնը չա՛տ ուշագրաւ պէտք է ըլլար բնականաբար։ Եւ ուրեմն հայեր ամէն կողմէ կը սկսին Ռուսաստան վազել։ Հայ վաճառականութեան կեդրոններ կը հաստատուին հետզհետէ՝ Մոսկուա , Բեդրպուրկ , Արքանկէլ և այլն։ Հայը , իր տառապանքներուն մէջ փրկարար ձեռք մը , բարերար օժանդակութիւն մը փնտռող հայը , կը փարի սերտիւ և հաւա-

տարմաբար Ռուսական գահուն։ Մատաղ կը դառնայ անոր և գինովցած բոլորովին տըրուած խոստումներէն՝ Ռուս պետութեան մէջ կը տեսնէ հայերու ազատագրութեան գործին պաշտպան վեհապետութիւն մը, որուն համար չվարանիր զոհել իր ջանքը, ճիգը, զոհողութիւնները, հարստութիւնը, տաղանդը և իր ամենէն ընտիր երիտասարդ զաւակները։ Հայեր պատերազմներու ատեն մեծ օգնութիւն կ'ընեն Ռուսաց բանակին՝ ընդդէմ Պարսիկներուն։ Մելիքները նոյնիսկ՝ Ռուսիոյ, արեւելեան քրիստոնեաներու միակ պաշտպանին կը յարին։ Բոլորըն ալ Հայկական Ինքնավարութիւնը Ռուսիոյ թեւարկութեան տակ սիրո՛վ դնել կ'ուզեն։ Չեն հակառակիր ռուսական մշակոյթին։ Պատմութիւնը արձանագրած է արդէն թէ Կովկասը և Խրիմը չէնցնողը հայերը եղած են։ Հայ ժէնէրալներ է որ Ռուսիոյ փառքը կազմեցին վճռական ճակատամարտներու մէջ։ Մատաթեան, Արղութեան, Բեբութեան, Լօրիս Մելիքով, Տէր Ղուկասով, Լազարեան, Տէր Ասատուրեան և այլն յայտնի արեւներ են ռուս զինուորականութեան երկինքին վրայ։

Մեծն Պետրոսի սկսած գործը յաջողու-

թեամբ պսակուեցաւ։ Նա՝ դիւցազն մը և վագր մըն էր միևնոյն ատեն, ինչպէս կ'ըսէ Վոլթէր։ Իրեն յաջորդներն Կատարինէ Ա. և Կատարինէ Բ. իր քաղաքականութեան հետևիլ փորձեցին, բայց զուրկ էին իր քաղաքական սուր հոտառութենէն։ Վերջինին ծրագիրն էր Լեհաստանի ու Թուրքիոյ բըզքտումը։ Փրանսական Յեղափոխութիւնը ցնցեց ամբողջ Եւրոպան։ Միապետական լուծին ներքև ճնշուող և երկրակալական ձգտումներ մարմնացող պետութեան մը ընկճումին ներքև հեծող Ռուսաստանի մէջ՝ ռումբն սկսաւ խօսիլ։ Երիտասարդ մտաւորական ռուսներ, պահանջող աւելի անկաշկանդ և ազատ քաղաքական պայմաններու, յեղափոխական շարժման սկսան։ Աղեքսանդր Բ. երբ Լօրիս Մելիքովի խորհուրդով սահմանադրութիւն հռչակելու կը պատրաստուէր՝ զոհ գնաց։

Հայոց այս անձնուէր վերաբերութիւնը գնահատուեցաւ երկար ատեն, քանի որ երկրին ծաղկման ու բարգաւաճման գործը կը կարօտէր այդ շինարար ժողովուրդին ձեռքերուն։ Ի վերջոյ փոխուեցաւ ռուս քաղաքականութիւնը։

Որոշ է թէ հայ թագին խլուելէն վերջ՝

Հայաստանի Թաթարները, Սելճուկները, Օսմանցիները և Պարսիկները մինչև ուրիշ կողման դարձաւ: Թաթարները զօրանալէն և պարսկական պետութեան վերակազմութենէն վերջ, այս երկու ոյժերն ալ ունեցան տիրանալու և ուժգին բաղխումներ: Վերջապէս Պարսիկները, աւելի նպաստաւոր հանգամանքներու տէր՝ պահեցին իրենց հովանաւորութիւնը Արեւելեան Հայաստանի վրայ: Հայերու այս ընդհանուր դրութեան մէջ սակայն, տակաւին բուռ մը հայ քաջեր, իրենց ասպետական ոգիին պաշտպան և նախանձախնդիր՝ կը պահպանէին իրենց անկախութիւնը, Ղարաբաղի սարաւանդներուն վրայ: Ասոնք Ջրաբերդի, Գիւլիստանի, Վարանդայի, Խաչէնի և Տուզախի հինգ մելիքութիւններն էին, որոնք, առանձին կազմակերպութեամբ, ինքնավարօրէն կը տնօրինէին իրենց ներքին գործերը: Մելիքներն ընդհանրապէս կ՚ընտրուէին Պարսից շահերէն և պաշտօն ունէին գանձել իրենց շրջանին մէջ ապրող ժողովուրդին տուրքերը և տնօրինել ամեն տեսակ ներքին գործ: Գանձուած գումարէն կարեւոր մաս մը մելիքները պարտէին վճարել Շահին: Կը բաւէ որ մէկը Մելիք ընտրը-

ուէր, այլեւս կարելի չէր անոր մասին որեւէ աննպաստ քայլ առնել։ Իսկ Շահը չէր իսկ լսեր որեւէ գանգատ։ Ասո՛ր համար է որ, թէեւ անկախութեան սիրահար, այսու հանդերձ զզուած մելիքներու կամայականութիւններէն, այս շրջանին ժողովուրդը կ՚ուզէր միանգամ ընդմիշտ Պարսից լուծը խորտակել, որպէսզի կեանքը աւելի հանդուրժելի դառնայ։ Իսրայէլ Օրի (1698-1711) և Մինաս վարդապետ ընդարձակ յարաբերութիւն կը մշակեն ռուսաց արքունիքին եւ մելիքներուն հետ, սակայն դժբաղդաբար գործը ի գլուխ չի հանած կը մեռնին։ Կը սկսի Մեծն Պետրոսի մեծ արշաւանքը։ Հայեր ամեն կերպով կ՚աջակցին և հազարաւորներ կուգան օգնելու ռուսական բանակին, սակայն յանկարծ սա կը նահանջէ՝ ասպարէզին վրայ թողլով միմիայն հայ քաջերը, որոնք Դաւիթ Պէկի և Մխիթարի հրամանատարութեամբ՝ բուռն ընդդիմութիւն մը ցոյց կուտան՝ Պարսից գրոհին դէմ։ Հայ կղերը կը սկսի ուղղակի յարաբերութիւն հաստատել Ռուսաց արքունիքին հետ։ Յովսէփ Արհի Արղութեանց եպիսկոպոս կը նուիրուի գործին։ Եկատերինէ Բ. ի անակնկալ մահը վերջ կը դնէ սակայն սկսուած

ձեռնարկին։ Յովսէփ Արղիի մահէն վերջ կը սկսին կաթողիկոսական խռովութիւնները, որոնցմէ վերջ Ներսէս Աշտարակեցի կուգայ ասպարէզ։ Խանդավառութիւնը իր ծայր աստիճանին կը հասնի։ Նոյն իսկ հայկական զինանշան մը կը պատրաստուի, Զարը հայոց թագաւոր կը հռչակուի և կը սկսին Ռուսո-Պարսկական պատերազմները, որոնց մէջ հայերը կը ստանձնեն կարեւոր դեր։ Բայց հիասթափութիւնը կը յաջորդէ շուտով։ Վասնզի Ռուս քրիստոնեայ պետութեան տիրապետութիւնը պարսից վրայ, հայ ժողովուրդին միջոցաւ կ'ըլլայ, և այս բոլոր զոհողութիւններէն վերջ իբրև թանկագին փոխարինութիւն՝ հայոց կը շնորհուի 1836ին պաղաժէնիան (Ազգ. կանոնադրութիւնը) որ կը տրամադրէ՝

1. Հսկել Ռուսաստանի Հայոց եկեղեցիներուն, վանքերուն, դպրոցական և ուրիշ աստուածահաճոյ հաստատութիւններու բարեկարգութեան և մատակարարութեան։
2. Հրաման տալ եկեղեցական կարգ մտնել ուզողներուն և ի հարկին արձակել զանոնք։
3. Վերահասու ըլլալ ամուսնական կնճռոտ խնդիրներու։
4. Հսկել ամուսնացած եկեղեցականներու որբերուն և այրիներուն խնամատարութեանը վրայ։

5. Առանձին ցուցակներ պահել եկեղեցիներու, վանքերու, դպրոցներու, կղերներու, մեռնող-ներու և ամուսնացողներու, և ամեն տարի տե-ղեկութիւն տալ Ներքին Գործոց Նախարարու-թեան։
6. Քննել թեմական առաջնորդներու և ժողովուր-դին ներքին խնդիրները. — զանոնք պատժել ի հարկին։
7. Երկու Կաթողիկոսական ընտրելի ներկայացնել Զարին՝ ի վաւերացումն։
8. Պահել օրինադին մէջ պրօկուրոր մը։
9. Վիճակները կառավարել թեմակալներով։

Բաղդատելով Ռուսահայոց Պալաժէնիան Տաճկահայոց Ա. Ազգ. Սահմանադրութեան հետ, մենք կը գտնենք ո՛րքան կաշկանդիչ ու ողորմելի առաջինը, նոյնքան համեմա-տօրէն լայն ու ինքնավարական երկրորդը։ Այդ Պալաժէնիան, որ Հայոց Ռուսաց գա-հուն հանդէպ ցոյց տուած հաւատարմու-թեան վարձատրութիւնն է, սկիզբն է արդէն ուրիշ սոսկալի ռուսական ծրագրի մը, որուն պիտի անդրադառնանք ուրիշ յօդ-ուածով մը։

Ի՞նչ է եղած Ռուսիոյ դերը Տաճկա-Հայ-կական հարցին մէջ։ Իր բոլոր ազդեցութիւ-նով, որ ապացոյցի կարօտ չէ, Ռուս պե-տութիւնը բացասական դիրք մը բռնած է Հայկական խնդիրին կարգադրութեանը մէջ։

Պերլինի վեհաժողովէն վերջ մանաւանդ չեչ-
տուած հայատեցութիւն, ռուսացման փոր-
ձերը, Մայիսեան ծրագրին վիժումը. սահ-
մանագլուխի ընդհարումներու ատեն ռուս
սահմանապահ զինուորներու վերաբերումը
հայ հերոսներու հանդէպ և Հայկական Խնդ-
րի բոլոր գրուագներուն մէջ բացայայտօ-
րէն երեւան եկած է Ռուս կառավարու-
թեան ոչ-բարեացակամ տրամադրութիւնը։
Իսկ թէ ինչո՞ւ ուզեց պահել Թուրքիոյ ամ-
բողջականութիւնը և հակառակեցաւ Հայ-
կական դատին։— Ո՞վ չգիտեր. իր տնտե-
սական շահերուն և բռնապետական ծրագիր-
ներուն ու ցանկութիւններուն համար միայն։

# XIV

**Յեղափոխական շարժումը՝ հետեւանք մտաւորական վերածնութեան.— Եւրոպական յեղափոխութիւնները.— Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը եւ անոր ազդեցութիւնը.— Սահմանադրութեան եւ ժողովրդապետութեան ձգտում.— Ապստամբ Պալքանը.— Յունաստանի ըմբոստացումը.— Նաւարինի ճակատամարտը եւ Յունաստանի անկախութիւնը.— Հայոց արեւմտեան շուտամիտ գաղափարներու ընդունակութիւնն ու Ֆրանսական Յեղափոխութիւնը։**

*Աշխարհի այն մասը, ուր վերջին դարերու մէջ ամենէն հսկայ յեղաշրջումները գործուած են, Եւրոպան է։ Մարդկային քաղաքակրթութիւնը, մանուկ տակաւին, Եգիպտոսէն անցաւ Յունաստան, անկէ Հռոմ, և հոն երիտասարդանալով՝ տարածուեցաւ Եւրոպայի մէջ ամէն կողմ։ Նոր Աշխարհը, որ աշակերտն էր քաղաքակրթութեան մէջ, աշակերտը՝ եղաւ նաև քաղաքական կեանքին մէջ։*

Համմէջական կայսրութեան անկումէն վերջ Միջին Դարու հազարամեայ շրջանին մէջ, Եւրոպայի քաղաքակրթական հաստաքը կանգ առաւ. կարծես և ամբողջ մարդկութիւնը, որ կ'ապրէր այդ ցամաքին վըրայ, թաղուեցաւ թմբիրի մը մէջ, թանձր խաւարի ու տգիտութեան տիրապետութեան ներքեւ։ Կարելի չէր որ այս վիճակը շարունակէր և աւատապետութիւնը աւելի երկար ատեն դիմանալու յաջողէր։ Պէտք էր ցնցում մը, զօրաւոր յեղաշրջութիւն մը, որպէսզի փշրուէին բոլոր կաշկանդիչ կապանքները և մարդկային իմացականութիւնը նոր թռիչ մը առնելով՝ նոր թափով մը պոռթկար, պայծառ ու գունագեղ։ Վերածնութիւնն էր ատիկա, ԺԵ. և ԺԶ. դարու իմացական մեծ յեղաշրջութիւնը, որ ծնած Իտալիոյ մէջ, սլացած էր ամէն կողմ, և կարճ ժամանակաշրջանի մը մէջ տիրապետած էր բոլոր միտքերուն՝ Եւրոպայի Ոսկեդարը պատրաստելով, զանազան գիւտերու յայտնութիւնը հռչակելով, գեղարուեստական հրաշալիքներ արտադրելով և գիտութեան ու լուսաւորութեան տաճարներ կանգնելով։ Վերածնունդի Դարը, ինչպէս կոչուեցաւ իմացական յեղաշրջութեան այս շրջանը, ու-

րիշ բան չէր՝ բայց եթէ Եւրոպական Միտքին արի յայտնութիւնը։ Ուսում, գիտութիւն և գեղարուեստ ունեցան հսկայական զարթօնք մը։ Յունական և հռոմէական քաղաքակրթութիւնր յարութիւն կ՚առնէր անա՝ աւելի՛ ուժեղ. աւելի՛ կենսալից և աւելի՛ վճռական։ Մտաւոր այս վերազարթնումը կ՚արշաւէր անմիջապէս կրօնական աշխարհին մէջ, կ՚ազատագրէր մարդը խղճի բռնաբարութենէն, նախապաշարումներու և աւելորդապաշտութիւններու աւերիչ ըմբռնումներէն ու կղերին բռնակալութենէն։ Կրօնական յեղափոխութի՛ւնն էր այս երկրորդը, յաջորդող իմացական յեղաշրջութեան, որ կը քանդէր, կը ջախջախէր հաւատաքննութիւնը և անոր տեղ կը դնէր խղճի ազատութիւնը։ Եկեղեցին կը բարեկարգուէր և պապական կղերը կը ջլատուէր իր սոսկալի կամայականութիւններուն մէջ։ Իմացական և կրօնական աշխարհներուն մէջ վառուող յեղաշրջիչ այս ոգին շատ բնականօրէն պիտի գար քաղաքական կեանքը հրդեհել և իրաւանց հաւասարութիւն հռչակելով՝ քաղաքացիին պարտքերու և իրաւունքներու սահմանը ճըշդել։

Բայց ո՞ր ժողովուրդին վիճակուած էր քաղաքական յեղափոխութեան փառքը։ Իտալիան՝ իմացական վերածնութիւնը ըստեղծած էր, Գերմանիան՝ կրօնական բարեկարգութիւնը, Ֆրանսա՛ն ալ պէտք էր ջահակիրն ու ռահվիրան ըլլար քաղաքական յեղափոխութեան։ Ուստի պայթեցաւ 1789ի Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը, որ ուրիշ բան չէր, բայց եթէ ԺԸ. դարէն սկսեալ Եւրոպայի մէջ տեղի ունեցած իմացական և կրօնական յեղաշրջութիւններուն բնական հետեւանքը, որ իր անմիջական ազդեցութիւնն ըրաւ ֆրանսական կեանքին վրայ, քանդեց բռնապետութիւնը, ժողովրդական հիմունքներու վրայ դրաւ Ֆրանսայի պետական կազմը և մեծագոյն ազդակը դարձաւ Եւրոպայի քաղաքական ըմբռնումներու յեղաշրջութեան։ Կ'արժէ համառօտակի վեր հանել Ֆրանսական Մեծ Յեղափոխութեան ինչութիւնը։ Երեք պատճառներ տեղի տուին անոր. 1.) Քաղաքական, 2.) Ընկերային և 3.) Տնտեսական։ Ֆրանսական Յեղափոխութեան քաղաքական պատճառն էր բռնապետութիւնն ու ժողովրդային իրաւունքներու բռնաբարումը։ Ընկերային պատճառն էր՝

դասակարգերու գոյութիւնն ու դասակարգային խտրականութիւնը։ Իսկ անտեսական պատճառն էր աւատականութեան, կղերին առանձնաշնորհումներուն և վեհապետներու բռնակալութեան հետեւանքով ժողովրդային խոնարհ դասակարգերու վերջին ծայր թշուառութեան մատնուիլն ու հարստահարութեան ենթարկուիլը։ Այս յեղափոխութիւնը թէեւ Ֆրանսայի մէջ պայթած, այսուհանդերձ առաջացած էր այնպիսի պայմաններէ, որոնք ընդհանուր Եւրոպայի մէջ ժողովրդային դժգոհութիւններու և իրաւացի պահանջներու ծնունդ տըւած էին։ Ուստի շուտով քաղաքական այս հրդեհը ծաւալեցաւ։ Ի՞նչ տուաւ Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը ֆրանսացի քաղաքացիին։ Անիկա քանդեց բռնութեան կոթողը, Պասթիլը, ջնջեց աւատականութիւնը և տուաւ ժողովրդային վեհապետութեան սկզբունքները, ինչպէս․

1. Ժողովուրդին կամքին գերակշռութիւնը.
2. Քաղաքային հաւասարութիւն.
3. Տուրքերու հաւասարութիւն.
4. Մամուլի, խօսքի, խղճի, ժողովներու և աշխատութեան ազատութիւն.
5. Անձեռնմխութիւն անձի և բնակարանի.
6. Դատական կազմակերպութիւն.

7. Կղերին կամայականութիւններուն սանձումը.
8. Ելեւմտացոյցի բարւոքում

Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը իր ժողովրդապետականութեան հաւասարութեան և ազատութեան գեղեցիկ սկզբունքներով՝ շրջան ըրաւ բոլոր Եւրոպայի մէջ և ամեն տեղ մարդկային բնական իրաւունքներու փառաբանութեան երգը հնչեցուց։ Բոլոր աշխարհ իր աչքերը յառեց Ֆրանսայի և որդեգրեց անոր այս արդար սկզբունքները։ Վեհապետներ ցնցուեցան, խարխուլ զգացին իրենց գահը և պահ մը փորձեցին միացեալ ոյժերով սաղմին մէջ իսկ խեղդել այս որոճացած վիշապը։ Բայց ի՞նչ օգուտ։ Միտքը, գաղափարը՝ սահման, պատուար և այլն չեն ճանչնար։ Ժողովրդային բուռն հոսանքին տեղի տալէ և քաղաքական ազատութեան գաղափարին հետ հաշտուելէ զատ ուրիշ ճամբայ չկար։ Այս հիանալի սկզբունքները ցնցած էին նաեւ իրենց անկախութիւնը կորսնցուցած և գերութեան շղթաներով կապկապուած ազգութիւնները։

Ու Հարաւային Պալքանը ապստամբութեան դրօշը պարզեց։ Յունաստանն էր որ կռիւ յայտարարած էր Օսմանեան բռնակալութեան դէմ։ Օսմանեան պետութիւնը կը

դառնուէր քաղաքական անգոհացուցիչ շըր-
ջանի մը մէջ։ Սուլթան Սէլիմ Գ. զուր
տեղը կ՚աշխատէր միջոց մը գտնել, եէնիչէ-
րիներու բանակը ջնջելու։ Նոյն փափաքող
բանակին բարւոքումին ու կարգապահու-
թեան, ըմբռնած էր եէնիչէրիներու գուն-
դին յոռի ազդեցութիւնը երկրին ճակա-
տագրին վրայ. և սակայն անկարող եղաւ
բան մը ընել և գահընկէց եղաւ։ Սուլթան
Մահմուտ, որ հաստատամիտ և ժողովրդասէր
էր, թէե՛ւ փորձեց ջնջել եէնիչէրիութիւնը,
բայց, վրայ տուաւ իր վէզիրը՝ Մուսթաֆա
փաշա։ Հակառակ իր բարի ցանկութիւն-
ներուն, որովհետև պետութեան մէջ ընդ-
հանուր կացութիւնը գոհացուցիչ չէր. եւ
բաղկացուցիչ ազգութիւնները գոհ չէին օր-
ւան ռէժիմէն, աւստի ներքին ապստամբու-
թիւնները ծայր տուին։ Նախ Արաբիոյ վա-
հապիները զբաղեցուցին զինքը, ապա յա-
ջորդաբար Սերպիան ու Ալպանիան ապըս-
տամբեցան։ Տէփէտէլէնլի հռչակաւոր Ալի
փաշան էր Ալպանիական ապստամբութեան
ղէկավարը, որ յետոյ երեք ամիս Խուրշիտ
փաշայի դիմադրելէ վերջը սուրը քաշեց եւ
իր շուրջիններէն շատերուն հետ՝ ինքզինքն
ալ սպաննեց (1822)։ Փոթորիկը ծայր տը-

ւաւ Մօրայի մէջ, ուր Յոյները մեծ պատրաստութեամբ ապստամբեցան և 150ի չափ նաւերով սկսան Արշիպեղագոսի և Միջերկրականի մէջ ասպատակել, Թրքական նաւերը գրաւել, այրել և անոնց նաւաստիները սպաննել։ Սուլթան Մահմուտ Ջատկին օրը կախել տուաւ Յունաց Պոլսոյ պատրիարքը, իբրև պարագլուխ։ Ասիկա զայրացուց յոյները, որոնց ապստամբապետները էին Իփսիլանտի, Կանտակուզէնոս, Մավրօ-Միխալի, Մավրօ-Քորտաթօ ևայլն, և կ'ապստամբէին Մոլտավիա և Վալաքիա։ Ահռելի կռիւներ տեղի ունեցան ծովու և ցամաքի վրայ։ Օսմանցիք Քիօսն առին և 50,000 ի չափ բնակիչ ջարդեցին։ Ցամաքին վրայ ալ ապստամբները զարկին և տիրեցին Կորնթոսի, Նաւարինի և Արկադիոյ։ Յոյները պարտաւորուեցան նաւերը քաշուիլ և այրել Գարա Մէհէմմէտ փաշայի տորմիղը։ Ասոր վրայ Սուլթանը ահագին բանակ մը յանձնեց Րէշիտ փաշային, որ Ելլադայի ու Մօրայի շատ մը քաղաքներուն տիրեց և յոյները պարտութենէ պարտութիւն մղուեցան։ Վերջին առամը Միսողոնկի բերդաքաղաքին չուրջն էր։ Սա դիմադրեց մինչև 5 ամիս և ապա երբ Օս-

մնացին քաղաք մտան, քիչերը գտան, ուրոնք վառօդի տակառներուն կրակ տալով դիւցազնաբար նահատակուեցան (1826 Ապրիլ 19)։ Միսոլոնկիի քաջերուն հետ սրտին ցաւէն մեռաւ նաեւ Լորտ Պայրըն, որ իբրեւ կամաւոր Անգլիայէն օգնելու եկած էր։

Այս յաջողութիւններուն վրայ Սուլթան Մահմուտ ջնջեց եէնիչէրիները՝ Գարա-Ճէհէննէմ Մուսթաֆա փաշայի միջոցաւ։ Այս նշանաւոր գործը Օսմանեան պետութեան պատմութեան մէջ մեծ թուական մը կը գըրաւէ։ Սուլթան Մահմուտ հոս զբաղած՝ Յունական խնդիրը իր վիճակին մէջ թողուց։ Անգլիա, ի հեճուկս Ռուսիոյ, որ այդ պատրուակով կ'ուզէր Թուրքիոյ գործերուն միջամտել, միացած Ֆրանսայի հետ՝ առաջարկեց Սուլթան Մահմուտի՝ իրենց յանձնել Յունական խնդիրին կարգադրութիւնը, բայց երբ մերժուեցաւ, դաշնակից տէրութեանց նաւատորմը Նաւարին գնաց եւ Օսմանեան 40 նաւեր այրելէ վերջ մնացեալը ցիր ու ցան ըրաւ (1827)։ Սուլթան Մահմուտ զայրացած՝ ո՛չ միայն չվերջացուց խնդիրը, այլ եւ՝ պատերազմ հրատարակեց անոնց դէմ։ Անգլիական ու Ֆրանսական տորմիղներու Յունաստանի ջուրերուն մէջ

գործած ատենն, Ռուսիոյ բանակ մ'ալ Եւրոպայէն ու Ասիայէն յարձակում գործեց: Սուլթան Մահմուտ ստիպուած՝ կնքեց Էտիրնէի դաշնագրութիւնը (1829), և տարի մը վերջ ալ Յունաստանը անկախ հռչակուեցաւ՝ ինը տարի արիաբար իր ազատութեան համար կռուելէ վերջը:

Ֆրանսական յեղափոխութեան արձագանգը երբ այսպէս կը շառաչէր ամէն կողմ, անկարելի էր անշուշտ որ մուտ չգտնէր Հայոց մէջ: Հայ ժողովուրդը, իբրև արևմտականութեան ընդունակութիւններով օժտուած ցեղ մը, իր ճնշուած վիճակին մէջ, բնականօրէն պէտք է ըմբռնէր մարդկային իրաւունքներու ճանաչողութեան վերաբերեալ այս գեղեցիկ սկզբունքները և որդեգրէր անոնց ոգին: Սկիզբէն ի վեր արևմտականութեան ախոյեան, Հայ ցեղը կը սկսէր պատմական դերի մը մէջ մտնել նախանձախնդիր որ Ասիոյ մէջ նախ ինք ըլլար ըմբռնող այդ ճշմարտութիւնները և ապա փոխանցող ուրիշներուն:

# XV

*Օսմանցիք՝ իրականութեան տէր.— Հայերը՝ Պոլսոյ մէջ.—Առաջին հայ պատրիարքը.—Թուրքիոյ վարչական ձեւը.— Հայ կեանքը՝ Տաճկաստանի մէջ.— Ստրկամտութեան ոգին.— Գիտակցութեան զարթնում.— Թուրքիոյ քայքայման շրջանը.— Պետութիւնը բարեկարգելու փորձեր.— Նոր միտքով քաղաքագէտներ.— Կիւլխանէի Խաթթը շէրիֆը եւ Թանզիմաթ.— 1856 ի Խաթթը հիւմայունը.—*

Մեր այս պատմական վերլուծման ընթացքին մէջ բացատրեցինք արդէն թէ ի՛նչ կերպով Օսմ. ցեղերը արեւմուտք արշաւեցին, Հայաստանի տիրեցին, Օսմանեան Պետութիւնը կազմակերպեցին եւ Կ. Պոլսոյ գրաւումէն վերջ՝ այլեւս Փոքր Ասիոյ մէջ իրականութեան տէր դարձան բոլորովին. Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ Բ. Կ. Պոլսոյ մէջ հաստատուելէն վերջ երբ 1461ին Պրուսա գնաց, արքունի հրովարտակով Թուր-

քիոյ բոլոր Հայոց պատրիարք հռչակեց Պրուսայի Յովակիմ Եպիսկոպոսը։ Հայոց պատրիարքութեան հաստատումէն շատ առաջ հայերը արդէն ո՛չ միայն յարաբերութիւն ունէին Բիւզանդիոնի և Բիւզանդեան կայսրութեան հետ, այլ և ԺԲ. դարուն բակիզբները Հայ գաղութը Կ. Պոլսոյ մէջ եպիսկոպոսական թեմ մը ունէր։ Թաթարիստանի անցած և Աժդէրխանի կողմերը բնակութիւն հաստատող բազմաթիւ հայեր, հոն խաղաղ կերպով չկրնալով ապրիլ՝ Խրիմի Քէֆէ քաղաքը գաղթեցին ապա։ Այս քաղաքի հայ վաճառականները կը երթեւեկէին Ճենովական նաւահանգիստները, որոնցմէ մէկն ալ էր Կալաթա (այժմու Կ. Պոլսոյ Ղալաթիան)։ Քէֆէցի Կոզմոս անուն Հայու մը Ճենովայիներէն տեղ մը գընելով Ս. Գրիգոր Եկեղեցին շինելը կ'ապացուցանէ թէ նոյն իսկ Ղալաթիոյ մէջ բաւական հայեր կային հաստատուած։ Հետզհետէ Խրիմէն, ինչպէս նաև Մայր-Հայրենիքէն բազմաթիւ հայեր վազեցին Պոլիս և հոն հաստատուեցան։ Ֆաթիհի ազնիւ վերաբերումը հայոց նկատմամբ ամեն կողմերու հայերը կը գրաւէր։ Հայը, ուշիմ և ընդունակ ցեղ մը, կը խոստանար չէնցնել

Օսմ. երկիրները և կուգար անոնց քաղաքակրթիչ՝ տարրը հանդիսանալ: Ցաթին չա՛տ լաւ ուսումնասիրուած էր այս բանը, և ճիշդ ատո՛ր համար էր որ ամէն կողմ Հայերը կը քաջալերէր և միջոցներ ու դիւրութիւններ կ'ուզէր տալ, որպէսզի անոնք անկաշկանդ կերպով գործեն՝ վաճառականութեան և արհեստներու մէջ: Եւ սակայն Հայաստանը տակաւին խաղաղ օրեր պէտք չէ անցնէր: Գուցէ Հայ կեանքը աւելի՛ հանդուրժելի ըլլար Օսմանեան տիրապետութեան ներքեւ, եթէ վիթխարի բռնակալութիւն մը եւս չըստեղծուէր՝ անոր կողքին: Ատ՝ վերակազմուած պարսկական միապետութիւնն էր, Շահերու կայսրութիւնը: Կարելի էր ենթադրել թէ այս երկու կրօնակից պետութիւնները համաձայնութեամբ ապրելու էին: Սակայն Թուրքիան, իբրեւ ուղղափառ (սիւննի) իսլամութեան ներկայացուցիչ՝ ներողամտութիւնը չէր կրնար ունենալ որ իր քով ապրէր ու զօրանար շիի աղանդաւորներու հիմնած պետութիւնը: Ասոր համար է որ, տակաւին չզօրացած, սկսուեցան Օսմանօ-Պարսկական սարսափելի կռիւները, որոնք մինչեւ ԺԹ. դար տեւեցին: Խեղճ հայը, բոլորովին ան-

մեզ կերպով, բաղդին բերումով, այս երկու երկիրներու կուսակներուն մէջտեղ ամենէն շատ վնասուողը եղաւ և ոտից կոխան դարձաւ: Անոնց տար ալ արդէն թաթարական պետութիւններու վարչական ձեւը բաւական էր կեղեքելու համար խեղճ ժողովուրդը: Վեհապետին այս կամ այն բարի տրամադրութիւնը նշանակութիւն չունէր երկրին մէջ ապրող հպատակներուն համար, քանի որ զանգուածը չէր կրնար ըմբռնել պետական քաղաքականութիւնը եւ յետոյ իւրաքանչիւր շրջան կառավարող պաշտօնեայ լիազօրութեամբ կը գործէր՝ տուրքեր հաւաքելու և կամ տեղական գործեր կարգադրելու մէջ: Իսկ ո՞ր պետական պաշտօնեան պէտք է համակիր վերաբերում ունենար դէպի այլակրօն ցեղերը և մանաւանդ դէպի հայերը: Ասկէ զատ արդէն դահակալներու տրամադրութիւններն ալ միապաղաղ և շարունակական չէին կրնար ըլլալ անշուշտ, քանի որ անձերու մէջ մարմնացած պէտք է ըլլար երկրին քաղաքականութիւնը: Իրերու այս դրութիւնը, միացած իսլամական ըմբռնումներու հետ, առաջ բերած էր տակաւ իսլամներու և քրիստոնեաներու խըտիրը, առաջինին գերադասութիւնը իսկ

երկրորդին՝ ստրկութիւնը։ Ռայեան կթան կովն էր, որուն կեանքը, պատիւն ու ինչքը կը վերաբերէին իսլամներուն, որոնք, իրենց ըմբռնումով, ազատ էին իրենց ուզած կերպով վարուելու անոր հետ, իբրեւ ստորադաս, իբրեւ հպատակ։ Տակաւ պետական օրէնսդրութիւնն ալ եկած էր նուիրականացնելու և յաւերժացնելու իսլամին գերակայութիւնը և քրիստոնեային անձին ստորնացումը։ Ուրիշ կերպով գոյութիւն պահպանել կարելի չէր, բայց եթէ քծնելով, մատնելով, շողոքորթելով և մէկ խօսքով ստրկանալով։ Այս զզուելի դրութեամբ կազմուեցաւ քրիստոնեայ ազդեցիկներու և պաշտօնեաներու ազատ դիրքը, հայ կապալառու հարկահաւաքներու և վաշխառուներու լէգէոնը։ Այս չարիքները եկան ըրթացնել նաեւ Հայ կղերները, որոնք, իրենց փառասիրական ձգտումներով տոգորուած, անխղճօրէն՝ մոռցան իրենց պարտականութիւնը, դիրքը, պաշտօնը, կոչումը և գըլորուեցան ճահիճին մէջ՝ արձանագրելով շատ տխուր էջեր՝ Տաճկահայոց պատմութեան մէջ։ Եւ այսպէս՝ հարկերու տարապայման ճնշումը, եէնիչէրիական անիծապարտ դրութիւնը, քրիստոնեաներու հա-

լածոնքը և այլ աննպաստ պայմաններ՝ բարոյական սնանկութիւն յայտարարեցին։ Ըստրկամտութեան ոգին զօրացաւ և մէկ կողմէ ստեղծուեցաւ ազդեցիկ, աղա, էֆէնտի և ամիրայ դասակարգը, խունկ ծխող մեծ ու պզտիկ բռնակալներու առջեւ, սնած ու զարգացած բռնակալութեան ու բռնապետներու բարիքներով, և միւս կողմէ երկրագործ, աշխատաւոր և էսնաֆ դասակարգը, միշտ հարստահարուող, միշտ կեղեքուող և մի՛շտ ալ հալածական, առաջինը մոռցած իր ազգը, աստուածը և ամէն ինչ եւ անունով միայն հայ, իսկ երկրորդը՝ իր վիշտին ու զրկանքներուն մէջ՝ իրական հայը, իրական ազգասէրը։

Եւ սակայն մարդկութիւնը կը յառաջդիմէր։ Հայոց մէջ եւս մտաւորական գործունէութիւնը թափ կ'առնէր։ 1703 ին կը հիմնուէր Մխիթարեան Միաբանութիւնը և Կ. Պոլսոյ մէջ հետզհետէ կը ստեղծըւէր իմացական գործունէութիւն։ Այս բաւական չէր անշուշտ Պետութեան ճակատագրին վրայ ազդելու համար։ Գիտակցութիւնը սկսած էր Թուրք քաղաքագէտներու մէջ ալ։ Թուրքիոյ պատմութեան երկու գլխաւոր շրջաններէն առաջինը, Նը-

ւաճման և տիրապետութեան շրջանը, անցած էր արդէն։ Պատմութեան կը վերաբերէին այլեւս այն օրերը, երբ Սև. Ծովն ու Միջերկրականը մեծ մասով օսմանեան ջուրեր էին և Մուհամմէտ Բ. կը սպառնար Ս. Պետրոս եկեղեցիին մէջ գարի կերցնել իր ձիուն։ Յաջորդած էր անկումի շրջանը, որ սկսաւ ԺԷ. դարէն։ Միայն զինուորական ազգ մը ըլլալը և տիրապետական ոգին չէր բաւեր։ Քաղաքակրթութիւն հարկաւոր էր, Եւրոպայի նմանիլ, Եւրոպական պետութիւն դառնալ անհրաժեշտ էր։ Ուստի օսմանեան պետութեան բարենորոգման խնդիրը ստեղծուած էր: Հոգ չէ թէ անյաջող ըլլան բարենորոգման փորձերը, այսուհանդերձ անոնք միշտ կը կրկնուէին, որովհետեւ ԺԹ. դարուն մէջ Թուրքիոյ գոյութիւնը միայն անոնցմով կարելի էր երաշխաւորել։

Բարենորոգման առաջին փորձն սկսաւ զինուորական վերակազմութեամբ։ Գերմանիայէն Մոլթքէ զօրավարը հրաւիրուած էր բանակին կանոնաւորութեանը համար։ Ենիչէրիները երբեմն օգտակար եղան Օսմ. գահուն, բայց վերջապէս ապստամբելով փորձանք դարձան թէ՛ կառավարութեան

և թէ ռայեաներուն · Բնական է որ Սուլ-
Մահմուտի պէս վեհապետ մը ըմբռնէր այս
բաները և փորձէր ջնջել ենիչէրիութիւնն
ու ենիչէրիները ։ 1826 ին վերջացաւ այս
ինուորական բարբարոս դասակարգը, որ
միշտ արգելք եղած էր բանակին վերակազ-
մութեան ։ Բարեկարգուեցաւ զինուորական
ոյժը, բայց ատիկա բաւակա՞ն էր ։ Ժամա-
նակին ոգին համապատասխան քաղաքա-
ցիական ազատութիւններ պէտք էին ։ Քր-
րիստոնէի և մահմետականի խտիրը՝ Պետու-
թեան առջեւ, օրէնքին առջեւ, դասակար-
գերու և առանձնաշնորհումներու գոյու-
թիւնը՝ այլ ևս երկար կեանք չէին կրնար
ունենալ ։ Եւրոպայէն ռամկավարական գա-
ղափարները կը հոսէին ։ Քաղաքական յե-
ղաշրջութիւններու ալիքները Օսմ. պետու-
թեան սահմաններու մէջ կը հասնէին, Ներ-
քին դժգոհութիւնները շատցած էին, Յու-
նաստան արդէն անկախ հրատարակուած
էր և Պալքանեան հպատակ ազգերը կ՚ար-
թննային հետզհետէ ։ Ապագայ աղէտը գու-
շակող Թուրք քաղաքագէտներ կային ։ ԺԸ.
դարուն մէ՛ջ իսկ Կիւզի պէյ յանդգնած էր
մատնանշել երկրին քայքայիչ ուղղութիւնը,
քրիստոնեաները հալածելու քաղաքականու-

թեան ձաստակարութիւնը և պետութեան բարեկարգութեան պէտքը ։ Բայց ո՞վ էր որ մտիկ պիտի ընէր ։ Շա՛տ քիչուոր էին գիտակիցները ։ Բաժակը լեցուած էր սակայն ։ Սուլթան Մահմուտ մեռաւ . անոր յաջորդը Սուլթան Աբտիւլ Մէճիտ, որ ըմբռնած էր բարենորոգման պէտքը . Ռաշիտ փաշայի խորհրդով հրատարակեց Կիւլհանէի Խաթթը շէրիֆը (1839 նոյմ. 3), որ թանզիմաթ կոչուած օրէնսդրութեանն գործադրութիւնը կ'ապահովէր ։ Թանզիմաթի օրէնսդրութիւնը խմբագրած էր Ռաշիտ փաշա՝ հիմնուած Կիւլհանէի խաթթը շէրիֆին վրայ ։ Սուլթան Մէճիտ իր այդ համբաւոր հրովարտակով, իր հպատակներուն, առանց ազգի, ցեղի և կրօնի խտրութեան, կը շնորհէր կեանքի, ինչքի և պատիւի ապահովութիւն, տուրքերու արդար բաշխում, օրէնքի առջեւ հաւասարութիւն և լեզուի, կրօնի ու ազգային առանձնաշնորհումներու ազատ կիրառութիւն ։ Բայց մէկ օրէն միւսը հրովարտակով մը կարելի՞ էր իրարու միացնել դարերէ ի վեր ատելութեան անդունդին երկու ծայրերը կեցող մահմետականներն ու ոչ-մահմետականները ։ Ինչպէ՞ս պիտի ըմբռնէր միւսլիմանը թէ այսուհետեւ.

իսլամ և ոչ-իսլամ հաւասար էին։ Այն պաշտօնեաներն ու դատաւորները, որոնց լայն իրաւունքները կրճատուած էին այս կերպով, դիտմամբ կը գրգռէին իսլամ ժողովուրդը՝ քրիստոնէից դէմ։ Այս կերպով մեծամեծ խռովութիւններ և յուզումներ առաջ եկան Էտիրնէի, Իզմիրի, Կեսարիոյ, Գոնեայի և ուրիշ գաւառներու մէջ։ Սուլթանը ստիպուեցաւ 1845ին ուրիշ հրովարտակով մը բացատրել առաջինը, որպէս զի թիւրիմացութիւններ չըլլան։ Երկար ատեն թուղթի վրայ միայն մնացին բարենորոգչական հրամանները։ Խրիմի պատերազմէն վերջ, 1856ին, Եւրոպական Պետութեանց ստիպումով և Ալի ու Ֆուատ փաշաներու խորհուրդով Սուլթան Ապտ-իւլ-Մէճիտ կը հրատարակէ իր նշանաւոր Խաթթը Հիւմայունը, որ աւելի՝ կը հիմնաւորէր ու կը լայնցնէր Կիւլհանէի Խաթթը Շէրիֆը։ Հետեւեալը Խաթթը Հիւմայունին բովանդակութիւնն է։

1. Ապահովութիւն իւրաքանչիւր անհատի կեանքին, գոյքին և պատիւին։
2. Հաստատութիւն այն իրաւունքներուն, որոնք երբեւիցէ տրուած են քրիստոնեայ ազգաբնակչութիւններու:
3. Իւրաքանչիւր համայնքի հոգեւոր գործերը

պիտի կառավարուին համապատասխան բար-
ձըր հոգեւորականութենէն։ Բոյեաններու աշ-
խարհական գործերը պիտի կառավարուին
աշխարհական և հոգեւորական պատգամա-
ւորներէ բաղկացած խառն ժողովի միջոցաւ։

4. Առանձին դիւրութիւններ կը տրուին՝ եկեղե-
ցիներ շինելու և վերանորոգելու համար։

5. Ո՛չ մէկ պաշտօնեայ առաւելութիւն տալու է
այս կամ այն ազգութեան, որոնք հաւասար
են իրարու։ Մահմետականները արհամար-
հանքով չպիտի վերաբերուին դէպի միւս կը-
րօնները։

6. Կրօնափոխութեան համար ո՛չ մէկը, նոյնիսկ
քրիստոնէութիւն ընդունող մահմետականը,
պէտք չէ՛ դատապարտել։

7. 8. Ամեն մէկ Թրքահպատակ, առանց կրօնի եւ
ազգի խտրութեան. իրաւունք ունի պետա-
կան դպրոցներու մէջ ուսանելու և ամեն
տեսակ ծառայութեան մտնելու։

9. 10. 11. Համապատասխան դատարանները պի-
տի վճռեն քրիստոնեաներու և մահմետա-
կաններու մէջ ծագած վէճերը առանց որևէ
կողմնակալութեան։

12. Քրիստոնեաներն իրաւունք ունին զինուորա-
կան հարկին փոխարէն կամ անձամբ ծառա-
յել իբրեւ զինուոր և կամ իրենց տեղը ուրիշ
մէկը վարձել։

13. Մեճլիսները պիտի բարեկարգուին։

14. Օտարները իրաւունք ունին Թուրքիոյ մէջ
սեփական հողեր ձեռք բերելու։

15. Հարկահանութիւնը պիտի կանոնաւորուի։

16. Պիտի աւելնան հանրօգուտ աշխատութիւնները։

17. Իւրաքանչիւր տարի պետական եկամուտներու ու ծախքերու նախահաշիւը պիտի կազմուի։

18. Ռայեաններն ալ Պետական Խորհուրդին մէջ պատգամաւոր պիտի ունենան։

19. Կաշառակեր պաշտօնեաները խիստ կերպով պիտի պատժուին, դրամական սիսթէմը պիտի կանոնաւորուի, նորանոր ճամբաներ, ջրանցքներ եւայլն պիտի շինուին։

Թուրքիոյ մէջ եղած բարենորոգչական փորձերուն և մասնաւորապէս Թանզիմաթի վրայ ծանրանալով, մենք մէկ կողմէ ի նկատի ունինք ժամանակակից պատմական էջի մը լուսաբանութիւնը և միւս կողմէ այն՝ որ Թանզիմաթը իր որոշ դերն ունի Հայոց ազգային գիտակցութեան արթնացման մէջ։

# XVI

Ամիրաներու դասակարգը եւ դերը — Ժողովուրդ եւ ազնուականութիւն.— Ազգ. Ներքին պայքարներ.— Ազգ. Սահմանադրութեան ուրուագիծը.— Ազգ. Սահմանադրութեան պաշտօնութիւնը.— Անոր հիմնական սկզբունքները.— Ազգ. Սահմանադրութեան օգուտները։

Երբ Պոլիսը գրաւուեցաւ և Ֆաթիհ լաւ վերաբերում մը ցոյց տուաւ հայոց հանդէպ, անոնց կոչմէ հայեր Պոլիս խուժեցին։ Բընակչէն չքեղ քաղաք մը, անշուշտ պէտք ունէր գաղթականներու։ Այս հոսանքին մէջ կային նաև բազմաթիւ գիտուններ, արհեստաւորներ, վաճառականներ, ճարտարապետներ եւ այլն։ Առեւտուր և արհեստ հետզհետէ զարգացան և Հայեր չա՛տ համակրելի դարձան Օսմ. Պետութեան, որ բարձր դիրքերու բարձրացուց զանոնք։ Շատեր ստացան չքանչաններ, թոշակներ, արժանացան բարձր դիրքերու և կազմակեր-

ոուսցան տակաւ չէլէպիներու, ամիրաներու և միւթեվէլլիներու դատավարգերը։ Հայ եկեղեցիներու ղեկավարութիւնը մէյմէկ չէլէպիի, ամիրայի կամ միւթեվէլլիի յանձնըւած էր։ Պատրիարքական գահը խաղալիք դարձած էր ամիրաներու քմահաճոյքին։ Սուլթանները, որոնք Հայ ժողովուրդին կը համակրէին, կը սկսին ընդհանուրէն մասնաւորին երթալ և համակրիլ ժողովուրդին բարձր, ազնուական դասակարգին, անոր հետ յարաբերութիւն կը մշակէին և կը մոռնային բոլորովին Հայ ժողովուրդին ստուար մեծամասնութիւնը։ Ֆաթիհի պէս՝ պատրիարքները իրենք կ'ընտրէին յաջորդ սուլթանները. բայց ասիկա Հայ Եկեղեցիին ժողովրդապետական սկըզբունքներուն հակառակ էր բոլորովին, ու երբ գիտակցութիւնն սկսաւ արթննալ, մանաւորապէս վանեցի Խօճա Ռուհիջանի և տիվրիկցի Պօղպօղճի Աստուածատուրեան Թումբ կանգնեցան և տապալեցին աշխարհականներու ալ մասնակցութիւնը՝ պատրիարքներու ընտրութեան գործին մէջ։ Ազնիւ և ազգասէր անձնաւորութիւններ չը պակսեցան տակաւ Ազգ. Պատրիարքարանն ու եկեղեցական, կրթական ու վարչական

գործերը քմահաճոյքներէ ազատելու համար։ Թանզիմաթը Հայ ժողովուրդին աչքը բացաւ։ Շարժումն սկսուած էր։ Ամիրաներ և հարուստ դասակարգը ամէն տեսակ զեղծումներ ի գործ կը դնէին, և պատրիարքները, առանց ատոնց խորհուրդ հարցնելու՝ բան մը չէին ըներ, վասնզի պաշտօնանկ կ'ըլլային։ Կառավարութիւնն ալ ամիրաներէն կաշառուած՝ աչք կը գոցէր ամէն զեղծումի և անխնայ կը կորզնէր ժողովուրդին խնդրանքներն ու բողոքները։ Խեղճ ժողովուրդին շահերը պաշտպանող զինակից մըտաւորական երիտասարդութիւն մը կար սակայն, որ չէր կրնար անտարբեր հանդիսատես մնալ։ Ֆրանսական կրթութիւն առած, ազատ այդ հանրապետութեան օդը լիաթոք շնչած և Ֆրանսական վերջին յեղափոխութենէն ներշնչուած սերունդը կար, որ կը հսկէր ժողովրդային իրաւունքներուն վրայ, արթուն կերպով պաշտպանող հանրավարական սուրբ սկզբունքները։ Գրիգոր Օտեան, Նահապետ Ռուսինեան, Նիկողայոս Պալեան, Աղաթօն Մկրտիչ, Կարապետ Իւթիւճեան, Սերվիչէն և տակաւին ուրիշ ազատամիտ երիտասարդներ Ազգ. Սահմանադրութեան գաղափարը կը յղանան, որուն գործադրու-

թեան տուիլն ու պետութենէն վաւերացուիլը քաղաքական յարմարագոյն րոպէի մը կը կարօտէր.— բան մը՝ որ չուշացաւ սակայն:

Ամիրաներուն և Երեւելիներուն դիրքը շատ հաստատուն էր թէեւ, բայց հայ ժողովրդական զանգուածին զարթնում մը կը ցընցէր ամէնը: Ենիչէրիներու ջնջումն ու Թանզիմաթը լայն շունչ մը առնել տուած էին աշխատաւոր դասակարգին, շահագործուող մեծամասնութեան: Ամիրաներու ազդեցութիւնը զգալի կերպով տկարացած էր, երբ անկարծ պայթեցաւ Ուսկիւտարի ճեմարանին ծանօթ վէճը: Ամիրաները, որոնք Ուսկիւտարի ճեմարանը հաստատած և անոր նիւթապէս օժանդակել խոստացած էին, կըմերժէին նպաստել անոր, այն առարկութեամբ որ իրենց դիրքը ապերախտօրէն չէր ճանչցուեր ժողովուրդին կողմէն: Ժողովուրդը կ'ուզէ որ, մէկ կողմ չպրդէ ամիրաներն ու իրենց նիւթական ոյժը, ու իր սեփական ուժերով ճեմարանի գոյութիւնն ու սկսուած գործ շարունակութիւնը երաշխաւորէ: Ամիրաները ամէն ջանք ի գործ կը դնեն գործը խափանելու համար և կ'արհամարհեն էսնաֆ դասակարգն ու ժողովուրդը, որուն

այսպիսի Նիւթական զօրութիւն պահանջող
գործ մը առանց դրամական կարողութեան
ի գլուխ հանելու փորձը ցնորական կը հա-
մարէին: Ցակոբոս պատրիարք վերջապէս
կը յաջողի 24 հոգիէ բաղկացած Հոգաբար-
ձութիւն մը կազմելու համար ամիրանե-
րուն հաւանութիւնն առանալ: Ասոնք, ի-
րենց արժանապատուութեան դէմ կը համա-
րին խոնարհ արհեստաւորներու հետ կողք
կողքի խորհրդակցութեան նստիլը և կամ
ձեռք ձեռքի տուած գործելը: Բաղխումը ու-
ժեղ կ'ըլլայ: Ժողովուրդը դատի կը բռնուի
և վերջապէս յաղթանակը կը տանի: Ամի-
րաներ ամէն տեսակ ստորին միջոցներու կը-
դիմեն՝ մատնելով ու բանտարկել տալով շատ
մը եռանդուն գործիչ երիտասարդներ:
Պոլսոյ Հայ ժողովուրդը խանութները փա-
կած կը խուժէ դէպի Բարձրագոյն Դուռ՝
ազատութիւն պահանջելով իր բանտարկեալ
զաւակներուն համար: Կառավարութիւնը
տեղի կու տայ: Ամիրաներու էնթրիքները կը-
չատնան պատրիաքքարանի և ազգ. գործե-
րու շուրջը: Ժողովրդային յուզումը կը-
սաստկանայ: «Միակամ» ընկերութիւնը կազ-
մակերպուելով կը սկսի գործել: Հետզհետէ
տեղի կունենան Պապը Ալիի և Մավունա-

նորա ցոյցերը։ Գինեպան Իսկէնտէրի առաջնորդութեամբն 3000 հոգիէ բաղկացեալ կառաւաղի ամբոխ մը կը դիմէ Պապը Ալի և կը կազմակերպէ առաջին հակայունական ցոյցը, պահանջելով ժողովրդային իրաւունքներու պաշտպանութիւնը։ Արտաքին գործոց նախարար Րիֆաթ Փաշա խոհեմութիւն կը համարի անգի տալ ժողովրդային պահանջումներուն և արձակել բանտարկուած հոգաբարձուները։ Ասոր վրայ Պօղոս Վ. Պնարտաեան, Յովհաննէս Վ. Սեթեան, Յակոբիկ Մանուէլ (Ճեմարանին անօրէնը) կ'աքսորուին 1841 ին, իսկ Իսկէնտէր, որ հայոց Մարան էր, կը փախչի Օտեսա. շատեր ալ փախըստական կ'ըլլան։ Ասպարէզը ամիրաներուն կը մնայ նորէն։ Նոր յուզում և նոր ցոյց. ժողովուրդը մավունաները լեցուած՝ կը բողոքէ Սուլթանին։ Բ. Դուռը գործը կը ձգձգէ, մինչև որ վերջապէս 27 արհեստաւորներէ բաղկացեալ ներկայացուցչական ժողովի մը արտօնութիւնը կուտայ։ Սակայն յուսահատած ամիրաներու էնթրիքներէն, ժողովրդական ներկայացուցիչները 1842 ին ետ կը քաշուին։ Ամիրաները՝ Իսկիւտարի Ճեմարանը զինուորական հիւանդանոցի կը վերածեն, պաարի-ալքներ կը փոխեն և քմահաճ անօրինու-

թիւններ կընեն: Մատթէոս պատրիարք կ'ըմբռնէ գործին լրջութիւնը և միջնորդ հանդիսանալ կ'ուզէ ամիրաներուն և ժողովուրդին միջեւ ։ Վերջապէս 30 հոգիէ բաղկացեալ (16 ամիրա և 14 արհեստաւոր) Ազգ. ժողով մը կը հաստատուի ։ Պատրիարքը ամիրաներուն յախորժանքին չէ՛ր հանդուրժեր. արհեստաւորներն ալ պատրիարքին տիքտաթօրութեան ։ Ամիրաները կը զինուին պատրիարքին դէմ , բայց յաղթելու համար ժողովուրդին հետ միանալ պէտք էր ։ Ուստի կ'որոշեն Պատրիարքարանի գործերը ժողովրդական ներկայացուցիչներու յանձնել եւ կղերին տիրապետութիւնը վերցնել ։ Յակոբ Կրճիկեան Մեծ Եպարգոսին կը դիմէ և քանի մը օր վերջ հրաման կ'ելլէ 14 կղերներէ և 20 աշխարհականներէ բաղկացած երկու ժողովներ կազմելու ։

Հայ ժողովուրդի այս ներքին պայքարի միջոցին միևնոյն խնդիրները գրեթէ շրջա կ'ընէին Եւրոպական բոլոր երկիրներն ալ ։ 1848ին Նաբոլէոն Գ. ֆրանս. հանրապետութեան նախագահական աթոռը կը բարձրանար և Զէյթունի մասին իր ցոյց տըւած համակրութեամբ՝ հայոց աչքերը արեւմուտք կը դարձնէր ։ Եւրոպացիները բա-

կեան հետաքրքրուիլ Թուրքիայով և նոյն իսկ անոր ապաւինիլ։ Մեծ Եպարգոս Ռաշիտ փաշա սկսեց հպատակ ազգերը գրգռել և առանձնաշնորհութիւններով սիրաշահիլ զանոնք։ Դպրոցներ բացուած էին աստ անդ և մասնաւորական ազատութիւն մը ծայր առած էր։ Հայը կը պահանջէր սահմանադրական ազգային վարչութիւն։ Երկար բանակցութիւններէ վերջ հետևեալ ուրուագիծը կը մշակուի՝ ընդլայնելու և սահմանադրութիւնը կազմելու համար.

1. Պատրիարքին տէրութեան և ազգին միջնորդ ըլլալու պաշտօնը ըստ առաջնոյն մնայ.
2. Ընդհանուր ժողովի կազմութիւնը աւելի կանոնաւոր կերպով ըլլայ։
3. Կրօնական գործերու տեսչութիւնը՝ Կրօնական ժողովին, իսկ քաղաքական գործերու տեսչութիւնը՝ Քաղաքական ժողովին վերաբերի, և խառն գործերու տեսչութիւնն ալ երկուքին միացումով։
4. Կրօնական և Քաղաքական ժողովները՝ իրենց ձեռնհասութեան շրջանակին մէջ գտնուած եկեղեցիներու, դպրոցներու, հիւանդանոցներու ամենն ալ Տեսուչ Խորհուրդներու և կամ Թաղական Խորհուրդներու միջոցաւ ղեկավարեն։
5. Վարչութեան կեդրոնը ազգային Պատրիարքարանն ըլլայ։
6. Գաւառացի ժողովուրդներու վարչութիւնը կեդրոնական Վարչութեան հետ կապուած ըլ-

լայ։ Ու գաւառներու մէջ Առաջնորդները նախագահութիւն ընեն տեղական ժողովներուն, որոնք պիտի կարգադրուին Պոլսոյ ժողովներու կազմութեան համաձայն։

7. Գաւառական ժողովները Կեդրոնական Վարչութեան և այն Վարչութեան խորհուրդներուն ամէն մէկը մէկ կողմէ Օսմ. պետութեան և միւս կողմէ ազգին պատասխանատու ըլլան։

8. Ազգային Վարչութիւնը երեք տեսակ պարտաւորութիւններ ունի, որոնցմէ առաջինն է ազգին թէ՛ ընդհանուր և թէ մասնաւոր իրաւունքներուն և արտօնութիւններուն Տէրութեան կողմէ պահպանութիւնն ապահովել Երկրորդ պարտաւորութիւնն է առ ազգն. որ է ճշմարտապէս գիտութեամբ և հայրաբար վարուիլ։ Երրորդ՝ առ Աթոռն Էջմիածնի, այն է Հայաստանեայց Եկեղեցւոյ կրօնական կանոններուն և օրէնքներուն համեմատ վարուիլ։

Այս յայտարարութիւններուն հետ կը ներկայացուի նաև Սահմանադրութեան կանոնագիրը, որուն մէջ «Հիմնական սկզբունքներ» խորագրին տակ կը շեշտուին հետևեալ ռամկավարական և առողջ սկզբունքները։

Ա. Ազգին ամեն մէկ անհատը առ ազգը պարտաւորութիւններ ունի. ազգն ալ իր կողմէն առ ազգային ամեն մէկ անհատ պարտաւորութիւններ ունի։ Այս իրաւունքները որոշող և հաստատող իշխանութիւնը Ազգային Վար-

չութիւն կը կոչուի, որուն կը յանձնէ Օսմանեան Տէրութիւնը յատուկ արտօնութեամբ Թուրքահայոց ներքին գործերու տնօրինութիւնը։

Բ. Ազգային վարչութիւնը հիմնուած է իրաւունքներու և պարտքերու սկզբունքին վրայ՝ որ արդարութեան սկզբունքն է, իր ոյժը կը կայանայ ձայներու բազմութեան մէջ, որ օրինաւորութեան սկզբունքն է։ Վարչութիւնը ազգային ըլլալու համար երեսփոխանական պէտք է ըլլայ։

Գ. Ազգն ու ազգային Վարչութիւնը փոխադարձ պարտքերով կապուած են իրարու։

Դ. Ազգայնոց պարտականութիւնն է՝ ազգին պիտոյիցը պահանջած ծախքերուն մասնակցիլ իւրաքանչիւրը իր կարողութեան ներած չափովը, և Ազգային Վարչութեան ըրած տնօրինութեանցը հնազանդիլ։

Ե. Ազգային վարչութեան պարտականութիւնն է ազգային բարոյական, մտաւորական և նիւթական պիտոյիցը հոգ տանիլ, դաւանութիւն և աւանդութիւններ անխախտ պահել, կրթութիւն և ուսում հաւասարապէս ծաւալել, ազգ. հաստատութիւնները պայծառ պահել, կարօտելոց խնամք տանիլ հայրաբար և ազգայնոց մէջ ծագած վէճերը արդարութեամբ խաղաղել։

Զ. Ահա այս ամէն պարտքերը կատարելու և իրաւունքները ապահովելու համար է որ հետեւեալ կերպով կը սահմանադրէ Ազգային գործոց վարչութիւնը։

Տաճկահայոց Ազգ. Սահմանադրութիւնը խմբագրուեցաւ և ընդունուեցաւ Ազգ. խու–ռըն ժողովէն 1860 Մայիս 24ին: Բ. Դուռը զայն հաստատեց և վաւերացուց Ազգ. Երեսփոխանական ժողովը, որ պիտի ունենար 220 երեսփոխան և 180 ալ անդամակից, որոնցմէ 160ը Պոլսէն և 60ըն ալ գաւառներէն: 1860 օգոստոս 25 ին բացուեցաւ առաջին ժողովը, և Սարգիս Պատրիարքին օրով սկսաւ գործադրուիլ: Ամիրաները լուր տարածեցին թէ «Հայերը թագաւոր նստեցնել կ'ուզեն»: Այս առեններս վախճանեցաւ Երուսաղէմի Պատրիարքը: Ազգ. Վարչութիւնը ուզեց որ նորը սահմանադրութեան օրէնքով ընտրուի: Միաբանութիւնը մերժեց: Ժողովուրդը բաժնուեցաւ երկու մասի, սահմանադրական եւ հակասահմանադրական, կամ լուսաւորեալ և խաւարեալ: Այս խռովութիւնն այնքան մեծցաւ որ կառավարութիւնը միջամտեց եւ Սահմանադրութեան գործադրութիւնը կանգ առաւ, մինչեւ որ 1863 Մարտին նոր հրամանով գործադրուիլ սկսաւ կրկին:

Տաճկահայոց Ազգ. Սահմանադրութեան հաստատութիւնը տոհմային նորագոյն պատմութեան ամենամեծ և նշանակելի հանգրր-

ւաններէն մին է, որ գերագոյն ապացոյցն է Հայ ժողովուրդի ժողովրդապետական ոգիին։ Բայց թէ այդքան զոհողութիւններով և արիւնով ձեռք բերուած Ազգային Սահմանադրութիւնը ի՞նչ արդիւնք տուաւ և կրցա՞ւ փոխարինել թափուած զոհողութիւնը։ Ընդունելով հանդերձ որ սրբագը-րութեան կարօտ է Ազգ. Սահմանադրութիւնը և ունի իրաւամբ քննադատելի կողմեր, պէտք է խոստովանիլ սակայն թէ անիկա շատ ու շատ օգտակար եղաւ Տաճկաստանի հայերուն համար, բազմազան տեսակէտներով։ Նախ Ազգ. Սահմանադրութիւնը հսկայ քայլ մըն էր դէպի Արեւմըտեան քաղաքակրթութիւնը, որուն զոհն էր Հայք հինէն ի վեր՝ Արեւելքի մէջ։ Անոր շընորհիւ ԺԹ. դարու վերջին շրջանին մէջ շատ մը կրթական հաստատութիւններ ծընունդ առին Պոլսոյ մէջ թէ գաւառներ։ Սահմանադրութիւնը՝ գլխաւոր ազգային ու նպաստողն էր կազմակերպուած բազմաթիւ ընկերութիւններուն, որոնք Պոլիս և գաւառները ահագին զարգացական դեր սատարեցին։ Հայ լեզուն ու Գրականութիւնը առին նոր թափ։ Հիմնուեցան շատ մ օրաթերթեր և հանդէսներ. ընթերցումը ծա-

ւոյլ գտաւ ժողովրդայի՛ն ամեն խաւերուն մէջ ։ Կրթական ընկերութիւններ շատցան ամեն կողմ և ձեռք առին դպրոցական գործը՝ կեանք տանելով Ազգ. Սահմանադրութենէն ։ Սահմանադրական ժողովներու ընտրութեան գործերուն մէջ ընտրական պայքար մղել և կռուիլ սորվեցաւ Հայութիւնը ։ Հայը գիտակցութիւն ունենալ սկսաւ տակաւ՝ Սահմանադրութեան շնորհած բարիքներով ։ Կղերին իրաւասութիւնները սահմանափակուեցան ։ Հայեր հաւաքական ոյժով բողոքել ու գործել սորվեցան ։ Ազգին երեք հատուածները,— Լուսաւորչական, Բողոքական և Գաթոլիկ.— մօտեցան իրարու ճգնաժամային օրերու մէջ ։ Ու վերջապէս սահմանադրական ոգին յեղափոխական ոգին երկնեց և ազգային հարցը սեղանի վրայ դրաւ ։ Այս համառօտ ցուցմունքները միայն բաւական են հաստատելու թէ Ազգ. Սահմանադրութիւնը ի՛նչ մխիթարի դեր կատարած է Տաճկահայոց մէջ և ի՛նչ չքնաղ ծառայութիւն մատուցած է Հայութեան այս մեծ զանգուածին ։ Ինչպէս ամեն նոր բան, որ կուգայ հին բարքերու վերջակէտը դնել և քանդել ամեն բան, դնելու համար նոր և նորագոյնը, Սահմա-

նադրութիւնն ալ կոչուած էր քանդելու Հայ Եկեղեցական Իշխանութեան միահեծան դիրքը, կամայականութիւններն ու անձնական քմահաճութիւններէ պատճառուած անտեղութիւնները մէջտեղէն վերցնելու։ Ահա կը սկսի ուրեմն ազատականներու և պահպանողականներու պայքարը։ Ոմանք երանի՜ կուտան Սահմանադրութեան հիմնադիրներուն և ոմանք ալ անէծք։

Բայց անէ՞ծք թէ օրհնութիւն. ո՞րը արդարացի էր։— Պատմութիւնը ի վերջոյ տըւաւ ասոր պատասխանը, արձանագրելով զահավիժօրէն իրարու յաջորդող դէպքերը, որոնց մէջ իրերը իրենց բնական դրութիւնով միայն առաջացած էին և անհատականութիւններ ժամանակի ոգիին արտայայտիչներն էին միայն և ո՛չ ուրիշ բան։

# XVII

*Զէյթունի 1862ի ապստամբութիւնը.— Հայերու դըրութիւնը Տաճկաստանի մէջ.— Հայ մտքին զարթնումը.— Խրիմեան եւ իր բողոքը.— Թուրքիոյ տնտեսական կացութիւնը.— Պաշտօնական յեղաշրջութիւններ.— Սուլթան Համիտի գահակալութիւնը.— Պալքաններու բոցավառումը.— Կ. Պոլսոյ զօնֆէրանսը — Օսմանեան Սահմանադրութեան հռչակումը.— Արեւելեան պատերազմը.—*

Մինչ հայերը ասդին իրենց ներքին կըռիւներն ունէին, Ազգ. Սահմանադրութեան շուրջը, անդին Լիբանանը ապստամբած և ազատութեան դրօշը պարզած էր, Պուլկարներ յեղափոխական գործողութիւններ կը կատարէին, և Հայոց հին ասպետական ոգիին ամենէն ուժեղ ներկայացուցիչն եղող գաւառը,— Զէյթունը,— ապստամբած էր կրկին (1862)։ Տեղական կառավարութեան անտանելի կեղեքումներուն հետեւանքով, ինչ որ բացայայտօրէն կեդրոնական կառավարութեան հրահանգ-

*խալամ և ոչ-խալամ հաւատար էին։ Այն պաշտօնեաներն ու դատաւորները, որոնց լայն իրաւունքները կըճատուած էին այս կերպով, դիտմամբ կը գրգռէին խալամ ժողովուրդը՝ քրիստոնէից դէմ։ Այս կերպով մեծամեծ խռովութիւններ և յուզումներ առաջ եկան Էտիրնէի, Իզմիրի. Կեսարիոյ, Գոնեայի և ուրիշ գաւառներու մէջ։ Սուլթանը ստիպուեցաւ 1845ին ուրիշ հրովարտակով մը բացատրել առաջինը, որպէս զի թիւրիմացութիւններ չըլլան։ Երկար ատեն թուղթի վրայ միայն մնացին բարենորոգչական հրամանները։ Ղրիմի պատերազմէն վերջ, 1856ին, Եւրոպական Պետութեանց ստիպումով և Ալի ու Ֆուատ փաշաներու խորհուրդով Սուլթան Ապտ-իւլ-մէճիտ կը հրատարակէ իր նշանաւոր Խաթթը հիւմայունը, որ աւելի՛ կը հիմնաւորէր ու կը լայնցնէր Կիւլհանէի Խաթթը շէրիֆը։ Հետեւեալը Խաթթը հիւմայունին բովանդակութիւնն է։*

1. **Ապահովութիւն իւրաքանչիւր անհատի կեանքին, գոյքին և պատուին։**
2. **Հաստատութիւն այն իրաւունքներուն, որոնք երբեւիցէ տրուած են քրիստոնեայ ազգաբնակչութիւններու:**
3. **Իւրաքանչիւր համայնքի հոգեւոր գործերը**

պիտի կառավարուին համապատասխան բարձըր հոգեւորականութեննէն։ Բոյեաններու աշխարհական գործերը պիտի կառավարուին աշխարհական և հոգեւորական պատգամաւորներէ բաղկացած խառն ժողովի միջոցաւ։

4. Առանձին դիւրութիւններ կը տրուին՝ եկեղեցիներ շինելու և վերանորոգելու համար։

5. Ո՛չ մէկ պաշտօնեայ առաւելութիւն տալու է այս կամ այն ազգութեան, որոնք հաւասար են՝ իրարու։ Մահմետականները արհամարհանքով չպիտի վերաբերուին դէպի միւս կրօնները։

6. Կրօնափոխութեան համար ո՛չ մէկը, նոյնիսկ քրիստոնէութիւն ընդունող մահմետականը, պէտք չէ՛ դատապարտել։

7. 8. Ամէն մէկ թրքահպատակ, առանց կրօնի եւ ազգի խտրութեան, իրաւունք ունի պետական դպրոցներու մէջ ուսանելու և ամէն տեսակ ծառայութեան մտնելու։

9. 10. 11. Համապատասխան դատարանները պիտի վճռեն քրիստոնեաներու և մահմետականներու մէջ ծագած վէճերը առանց որևէ կողմնակալութեան։

12. Քրիստոնեաներն իրաւունք ունին զինուորական հարկին փոխարէն կամ անձամբ ծառայել իբրեւ զինուոր և կամ իրենց տեղը ուրիշ մէկը վարձել։

13. Մեճլիսները պիտի բարեկարգուին։

14. Օտարները իրաւունք ունին Թուրքիոյ մէջ սեփական հողեր ձեռք բերելու։

15. Հարկահանութիւնը պիտի կանոնաւորուի։

16. Պէտք աւելնան հանրօգուտ աշխատութիւնները։

17. Ուրաքանչիւր տարի պետական եկամուտներու ու ծախքերու նախահաշիւը պէտք կազմուի։

18. Ռայեաներն ալ Պետական Խորհուրդին մէջ պատգամաւոր պէտք ունենան։

19. Կաշառակեր պաշտօնեաները խիստ կերպով պէտք պատժուին, դրամական սիսթէմը պէտք կանոնաւորուի, Նորանոր ճամբաներ, Ջրանցքներ ևայլն պէտք շինուին։

Թուրքիոյ մէջ եղած բարենորոգչական փորձերուն և մասնաւորաբար Թանզիմաթի վրայ ծանրանալով, մենք մէկ կողմէ ի նըկատի ունինք ժամանակակից պատմական էջի մը լուսաբանութիւնը և միւս կողմէ այն՝ որ Թանզիմաթը իր որոշ դերն ունի Հայոց ազգային գիտակցութեան արթնալուն մէջ։

## XVI

*Ամիրաներու դասակարգը եւ դերը — Ժողովուրդ եւ ազնուականութիւն.— Ազգ. ներքին պայքարներ.— Ազգ. Սահմանադրութեան ուրուագիծը.— Ազգ. Սահմանադրութեան պաշտպանութիւնը.— Անոր հիմնական սկզբունքները.— Ազգ. Սահմանադրութեան օգուտները։*

Երբ Պոլիսը դրաւուեցաւ և Թուրքին լաւ վերաբերում մը ցոյց տուաւ հայոց հանդէպ, անոնք կոչմէ հայեր Պոլիս խուժեցին։ Բը-նակարանէն չքեղ քաղաք մը, անշուշտ պէտք ունէր պալթականներու։ Այս հոսանքին մէջ կային նաև բազմաթիւ գիտուններ, արհեստաւորներ, վաճառականներ, ճարտարապետներ եւ այլն։ Առուտուր և արհեստ հետըզհետէ զարգացան և Հայեր շա՛տ համակրելի դարձան Օսմ. Պետութեան, որ բարձր դիրքերու բարձրացուց զանոնք։ Շատեր ստացան չքանշաններ, թոշակներ, արժանացան բարձր դիրքերու և կազմակեր-

ղուեցան տակաւ չէլէպիներու , ամիրաներու և միւթէվէլլիներու դասակարգերը ։ Հայ եկեղեցիներու շէնաւորութիւնը մէյմէկ չէլէպիի , ամիրայի կամ միւթէվէլլիի յանձնըւած էր ։ Պատրիարքական գանձը խաղալիք դարձած էր ամիրաներու քմահաճոյքին ։ Սուլթանները , որոնք Հայ ժողովուրդին կը համակրէին , կը սկսին ընդհանուրէն մասնաւորին երթալ և համակրիլ ժողովուրդին բարձր , ազնուական դասակարգին , ասոր հետ յարաբերութիւն կը մշակէին և կը մոռնային բոլորովին Հայ ժողովուրդին ստուար մեծամասնութիւնը ։ Ցաթինի պէս՝ պատրիարքները իրենք կ՚ընտրէին յաջորդ սուլթանները . բայց ասիկա Հայ Եկեղեցիին ժողովրդապետական սկըզբունքներուն հակառակ էր բոլորովին , ու երբ գիտակցութիւնն սկսաւ արթննալ , մանաւորապէս վանեցի Խօճա Ռուհիջանի և տիվրիկցի Պօղպօղճի Աստուածատուրեան Թումբ կանգնեցան և ապահովեցին աշխարհականներու ալ մասնակցութիւնը՝ պատրիարքներու ընտրութեան գործին մէջ ։ Ազնիւ և ազգասէր անձնաւորութիւններ չը պակսեցան տակաւ Ազգ . Պատրիարքարանն ու եկեղեցական , կրթական ու վարչական

գործերը քմահաճոյքներէ ազատելու համար։ Թանզիմաթը Հայ ժողովուրդին աչքը բացաւ։ Շարժումն սկսուած էր։ Ամիրաներ և հարուստ դասակարգը ամեն տեսակ զեղծումներ ի գործ կը դնէին, և պատրիարքները, առանց անոնց խորհուրդ հարցնելու՝ բան մը չէին ըներ, վասնզի պաշտօնանկ կ'ըլլային։ Կառավարութիւնն ալ ամիրաներէն կաշառուած՝ աչք կը գոցէր ամեն զեղծումի և անլսելի կը դարձնէր ժողովուրդին խնդրանքներն ու բողոքները։ Խեղճ ժողովուրդին շահերը պաշտպանող գիտակից միտաւորական երիտասարդութիւն մը կար սակայն, որ չէր կրնար անտարբեր հանդիսատես մնալ։ Ֆրանսական կրթութիւն առած, ազատ այդ հանրապետութեան օդը լիաթոք շնչած և ֆրանսական վերջին յեղափոխութենէն ներշնչուած սերունդը կար, որ կը հակէր ժողովրդային իրաւունքներուն վրայ, արթուն կերպով պաշտպանող հանրավարական սուրբ սկզբունքները։ Գրիգոր Օտեան, Նահապետ Ռուսինեան, Նիկողայոս Պալեան, Ազաթօն Մկրտիչ, Կարապետ Իւթիւճեան, Սերվիչէն և տակաւին ուրիշ ազատամիտ երիտասարդներ Ազգ. Սահմանադրութեան գաղափարը կը յղանան, որուն գործադրու-

թեան տուրքին ու պետութենէն վաւերացուիլը քաղաքական յարմարագոյն րոպէի մը կը կարօտէր.— բան մը՝ որ չուշացաւ սակայն։

Ամիրաներուն և սրեւելլիներուն դիրքը շատ հաստատուն էր թէեւ, բայց հայ ժողովրդական զանգուածին զարթնում մը կը ցնցէր ամէնը։ Ենիչէրիներու ջնջումն ու Թանզիմաթը լայն շունչ մը առնել տուած էին աշխատաւոր դասակարգին, շահագործուող մեծամասնութեան։ Ամիրաներու ազդեցութիւնը զգալի կերպով տկարացած էր, երբ անկարծ պայթեցաւ Իսկիւտարի Ճեմարանին ծանօթ վէճը։ Ամիրաները, որոնք Իսկիւտարի Ճեմարանը հաստատած և անոր նիւթապէս օժանդակել խոստացած էին, կը մերժեն նպաստել անոր, այն առարկութեամբ որ իրենց դիրքը ապերախտօրէն չէր ճանչցուեր ժողովուրդին կողմէն։ Ժողովուրդը կ՚ուզէ որ, մէկ կողմ շպրդէ ամիրաներն ու իրենց նիւթական ոյժը, ու իր սեփական ուժերով Ճեմարանի գոյութիւնն ու սկսուած գործ շարունակութիւնը երաշխաւորէ։ Ամիրաները ամէն ջանք ի գործ կը դնեն գործը խափանելու համար և կ՚արհամարհեն էսնաֆ դասակարգն ու ժողովուրդը, որուն

այսպիսի նիւթական զօրութիւն պահանջող գործ մը առանց դրամական կարողութեան ի գլուխ հանելու փորձը ցնորական կը համարէին : Յակորոս պատրիարք վերջապէս կը յաջողի 24 հոգիէ բաղկացած Հոգաբարձութիւն մը կազմելու համար ամիրաներուն հաւանութիւնն ստանալ : Ասոնք, իրենց արժանապատուութեան դէմ կը համարին խոնարհ արհեստաւորներու հետ կողք կողքի խորհրդակցութեան նստիլը և կամ ձեռք ձեռքի տուած գործելը: Բաղխումը ուժեղ կ'ըլլայ : Ժողովուրդը դատը կը քննուի և վերջապէս յաղթանակը կը տանի : Ամիրաներ ամեն տեսակ ստորին միջոցներու կը դիմեն՝ մատնելով ու բանտարկել տալով շատ մը եռանդուն գործիչ երիտասարդներ : Պոլսոյ Հայ ժողովուրդը խանութները փակած կը խուժէ դէպի Բարձրագոյն Դուռ՝ ազատութիւն պահանջելով իր բանտարկեալ զաւակներուն համար : Կառավարութիւնը տեղի կուտայ : Ամիրաներու էնթրիքները կը շատնան պատրիարքարանի և ազգ. գործերու շուրջը : Ժողովրդային յուզումը կը սաստկանայ: «Միակամ» ընկերութիւնը կազմակերպուելով կը սկսի գործել : Հետզհետէ տեղի կունենան Պապը Ալիի և Մավունա-

նորու ցոյցերը։ Գրինեայան Իսկէնտէրի առաջնորդութեամբն 3000 հոգիէ բաղկացեալ կառավարի ամբոխ մը կը դիմէ Պապը Ալի և կը կազմակերպէ առաջին հակայունական ցոյցը, պահանջելով ժողովրդային իրաւունքներու պաշտպանութիւնը։ Առաջին գործոց նախարար Րիֆաթ Փաշա խոհեմութիւն կը համարի տեղի տալ ժողովրդային պահանջումներուն և արձակել բանտարկուած հոգաբարձու էմինաֆները։ Ասոր վրայ Պօղոս Վ. Պետրոսեան, Յովհաննէս Վ. Սեթեան, Յակոբիկ Մանուէլ (Ճեմարանին անօրէնը) կ'աքսորուին 1841 ին, իսկ Իսկէնտէր, որ հայոց Մարան էր, կը փախչի Օտեսա. շատեր ալ փախըստական կ'ըլլան։ Ասպարէզը ամիրաներուն կը մնայ նորէն։ Նոր յուզում և նոր ցոյց. Ժողովուրդը մավունաները լեցուած՝ կը բողոքէ Սուլթանին։ Բ. Դուռը գործը կը ձգձգէ, մինչև որ վերջապէս 27 արհեստաւորներէ բաղկացեալ ներկայացուցչական ժողովի մը արտօնութիւնը կու տայ։ Սակայն յուսահատած ամիրաներու էնթրիքներէն, ժողովրդական ներկայացուցիչները 1842 ին ետ կը քաշուին։ Ամիրաները՝ Իսկիւտարի Ճեմարանը զինուորական հիւանդանոցի կը վերածեն, պատրիարքներ կը փոխեն և քմահաճ անօրինու-

թիւններ կընեն: Մատթէոս պատրիարք կ'ըմբռնէ գործին լրջութիւնը և միջնորդ հանդիսանալ կ'ուզէ ամիրաներուն և ժողովուրդին միջեւ: Վերջապէս 30 հոգիէ բաղկացեալ (16 ամիրա և 14 արհեստաւոր) Ազգ. ժողով մը կը հաստատուի: Պատրիարքը ամիրաներուն յախորժանքին չէ՛ր հանդուրժեր. արհեստաւորներն ալ պատրիարքին դիքթաթօրութեան: Ամիրաները կը զինուին պատրիարքին դէմ, բայց յաղթելու համար ժողովուրդին հետ միանալ պէտք էր: Ուստի կ'որոշեն Պատրիարքարանի գործերը ժողովրդական ներկայացուցիչներու յանձնել եւ կղերին տիրապետութիւնը վերցնել: Յակոբ Կրճիկեան Մեծ Եպարգոսին կը դիմէ և քանի մը օր վերջ հրաման կ'ելլէ 14 կղերներէ և 20 աշխարհականներէ բաղկացած երկու ժողովներ կազմելու:

Հայ ժողովուրդի այս ներքին պայքարի միջոցին միւնոյն խնդիրները գրեթէ չըլա կ'ընէին Եւրոպական բոլոր երկիրներին ալ: 1848ին Նաբոլէոն Գ. Ֆրանս. հանրապետութեան նախագահական աթոռը կը բարձրանար և Զէյթունի մասին իր ցոյց տըւած համակրութեամբ՝ հայոց աչքերը արեւմուտք կը դարձնէր: Եւրոպացիներ ըս-

կան հետաքրքրուիլ Թուրքիոյով և նոյն իսկ անոր սլատանոյ ։ Մեծ Եպարքոս Բաշիտ փաշա սկսեց հպատակ ազգերը գրգուել և առանձնաշնորհումներով սիրաշահիլ զանոնք ։ Դպրոցներ բացուած էին աստ անդ և մտաւորական արթնութիւն մը ծայր առած էր ։ Հայը կը պահանջէր սահմանադրական ազգային վարչութիւն ։ Երկար բանակցութիւններէ վերջ հետեւեալ ուրուագիծը կը մշակուի՝ ներկայանալու և սահմանադրութիւնը կազմելու համար .

1. Պատրիարքին տէրութեան և ազգին միջնորդ ըլլալու պաշտօնը ըստ առաջնոյն մնայ.
2. Ընդհանուր Ժողովի կազմութիւնը աւելի կանոնաւոր կերպով ըլլայ։
3. Կրօնական գործերու տեսչութիւնը՝ Կրօնական Ժողովին, իսկ քաղաքական գործերու տեսչութիւնը՝ Քաղաքական Ժողովին վերաբերի, և խառն գործերու տեսչութիւնն ալ երկուքին միացումով։
4. Կրօնական և Քաղաքական Ժողովները՝ իրենց ձեռնհասութեան շրջանակին մէջ գտնուած եկեղեցիներու, դպրոցներու, հիւանդանոցներու ամենն ալ Տեսուչ խորհուրդներու և կամ Թաղական խորհուրդներու միջոցաւ պիտի կառավարեն։
5. Վարչութեան կեդրոնը ազգային Պատրիարքարանն ըլլայ։
6. Գաւառացի ժողովուրդներու վարչութիւնը կեդրոնական Վարչութեան հետ կապուած ըլ-

լայ։ Եւ գաւառներու մէջ Առաջնորդները նախագահութիւն ընեն տեղական ժողովներուն, որոնք պիտի կարգադրուին Պոլսոյ ժողովներու կազմութեան համաձայն։

7. Գաւառական ժողովները Կեդրոնական Վարչութեան և նոյն Վարչութեան խորհուրդներուն ամէն մէկը մէկ կողմէ Օսմ. պետութեան և միւս կողմէ ազգին պատասխանատու ըլլան։

8. Ազգային Վարչութիւնը երեք տեսակ պարտաւորութիւններ ունի, որոնցմէ առաջինն է ազգին թէ՛ ընդհանուր և թէ մասնաւոր իրաւունքներուն և արտօնութիւններուն Տէրութեան կողմէ պահպանութիւնն ապահովել Երկրորդ պարտաւորութիւնն է առ ազգն. որ է ճշմարտապէս գիտութեամբ և հայրաբար վարուիլ։ Երրորդ՝ առ Աթոռն Էջմիածնի, այն է Հայաստանեայց Եկեղեցւոյ կրօնական կանոններուն և օրէնքներուն համեմատ վարուիլ։

Այս յայտարարութիւններուն հետ կը ներկայացուի նաև Սահմանադրութեան կանոնագիրը, որուն մէջ «Հիմնական սկզբունքներ» խորագրին տակ կը յիշատակուին հետևեալ ռամկավարական և առողջ սկզբունքները։

Ա. Ազգին ամէն մէկ անհատը առ ազգը պարտաւորութիւններ ունի. ազգն ալ իր կողմէն առ ազգային ամէն մէկ անհատ պարտաւորութիւններ ունի։ Այս իրաւունքները որոշող և հաստատող իշխանութիւնը Ազգային Վար-

չութիւն կը կոչուի, որուն կը յանձնէ Օսման-
եան Տէրութիւնը յատուկ արտօնութեամբ
Թուրքահայոց ներքին գործերու տնօրինու-
թիւնը։

Բ. Ազգային վարչութիւնը հիմնուած է իրաւունք-
ներու և պարտքերու սկզբունքին վրայ՝ որ
արդարութեան սկզբունքն է, իր ոյժը կը կա-
յանայ ձայներու բազմութեան մէջ, որ օրի-
նաւորութեան սկզբունքն է։ Վարչութիւնը
ազգային ըլլալու համար երեսփոխանական
պէտք է ըլլայ։

Գ. Ազգն ու ազգային Վարչութիւնը փոխադարձ
պարտքերով կապուած են իրարու։

Դ. Ազգայնոց պարտականութիւնն է՝ ազգին պի-
տոյից պահանջած ծախքերուն մասնակցիլ իւ-
քանչիւրը իր կարողութեան ներած չափովը,
և Ազգային Վարչութեան ըրած տնօրինու-
թեանցը հնազանդիլ։

Ե. Ազգային վարչութեան պարտականութիւնն է
ազգային բարոյական, մտաւորական և նիւ-
թական պիտոյիցը հոգ տանիլ, դաւանութիւն
և աւանդութիւններ անխախտ պահել, կրթու-
թիւն և ուսում հաւասարապէս ծաւալել,
ազգ. հաստատութիւնները պայծառ պահել,
կարօտելոց խնամք տանիլ հայրաբար և ազ-
գայնոց մէջ ծագած վէճերը արդարութեամբ
խաղաղել։

Զ. Ահա այս ամեն պարտքերը կատարելու և ի-
րաւունքները ապահովելու համար է որ հե-
տեւեալ կերպով կը սահմանադրէ Ազգային
գործոց վարչութիւնը։

Տաճկահայոց Ազգ. Սահմանադրութիւնը խմբագրուեցաւ և ընդունուեցաւ Ազգ. խառըն ժողովէն 1860 Մայիս 24ին: Բ. Դուռը զայն հաստատեց և վաւերացուց Ազգ. Երեսփոխանական ժողովը, որ պիտի ունենար 220 երեսփոխան և 180 ալ անդամակից, որոնցմէ 160ը Պոլսէն և 60ըն ալ գաւառներէն: 1860 օգոստոս 25 ին բացուեցաւ առաջին ժողովը, և Սարգիս Պատրիարքին օրով սկսաւ գործադրուիլ: Ամիրաները լուր տարածեցին թէ «Հայերը թագաւոր նստեցնել կ'ուզեն»: Այս առենները վախճանեցաւ Երուսաղէմի Պատրիարքը: Ազգ. Վարչութիւնը ուզեց որ նորը սահմանադրութեան օրէնքով ընտրուի: Միաբանութիւնը մերժեց: Ժողովուրդը բաժնըւեցաւ երկու մասի, սահմանադրական եւ հակասահմանադրական, կամ լուսաւորեալ և խաւարեալ: Այս խռովութիւնն այնքան մեծցաւ որ կառավարութիւնը միջամտեց եւ Սահմանադրութեան գործադրութիւնը կանգ առաւ, մինչեւ որ 1863 Մարտին նոր հրամանով գործադրուիլ սկսաւ կրկին:

Տաճկահայոց Ազգ. Սահմանադրութեան հաստատութիւնը տոհմային նորագոյն պատմութեան ամենամեծ և նշանակելի հանգըր-

ւաններէն մին է, որ գերագոյն ապացոյցն է Հայ ժողովուրդի ժողովրդապետական ոգիին։ Բայց թէ այդքան զոհողութիւններով և արիւնով ձեռք բերուած Ազգային Սահմանադրութիւնը ի՞նչ արդիւնք տուաւ և կրցա՞ւ փոխարինել թափուած զոհողութիւնը։ Ընդունելով հանդերձ որ սրբագրրութեան կարօտ է Ազգ. Սահմանադրութիւնը և ունի իրաւամբ քննադատելի կողմեր, պէտք է խոստովանիլ սակայն թէ անիկա շատ ու շատ օգտակար եղաւ. Տաճկաստանի հայերուն համար, բազմազան տեսակէտներով։ Նախ Ազգ. Սահմանադրութիւնը հսկայ քայլ մըն էր դէպի Արեւմըտեան քաղաքակրթութիւնը, որուն զոհն էր Հայը հինէն ի վեր՝ Արեւելքի մէջ։ Անոր շընորհիւ ԺԹ. դարու վերջին շրջանին մէջ շատ մը կրթական հաստատութիւններ ծընունդ առին Պոլսոյ մէջ թէ գաւառներ։ Սահմանադրութիւնը գլխաւոր ազգային ու նպատակն էր կազմակերպուած բազմաթիւ ընկերութիւններուն, որոնք Պոլիս և գաւառները առաջին զարգացական դեր սատարեցին։ Հայ լեզուն ու Գրականութիւնը առին նոր թափ։ Հիմնուեցան շատ մ օրաթերթեր և հանդէսներ. ընթերցումը ծա-

ւոյ գտաւ ժողովրդային ամէն խաւերուն մէջ։ Կրթական ընկերութիւններ շատցան ամէն կողմ և ձեռք առին դպրոցական գործը՝ կեանք առնելով Ազգ. Սահմանադրութենէն։ Սահմանադրական ժողովներու ընտրութեան գործերուն մէջ ընտրական պայքար մղել և կռուիլ սորվեցաւ Հայութիւնը։ Հայը գիտակցութիւն ունենալ սկսաւ տակաւ՝ Սահմանադրութեան շնորհած բարիքներով։ Կղերին իրաւասութիւնները սահմանափակուեցան։ Հայեր հաւաքական ոյժով բողոքել ու գործել սորվեցան։ Ազգին երեք հատուածները,— Լուսաւորչական, Բողոքական և Գաթոլիկ,— մօտեցան իրարու ճգնաժամային օրերու մէջ։ Ու վերջապէս սահմանադրական ոգին յեղափոխական ոգին երկնեց և ազգային հարցը սեղանի վրայ դրաւ։ Այս համառօտ ցուցմունքները միայն բաւական են հաստատելու թէ Ազգ. Սահմանադրութիւնը ինչ մխիթարի դեր կատարած է Տաճկահայոց մէջ և ինչ չքնաղ ծառայութիւն մատուցած է Հայութեան այս մեծ զանգուածին։ Ինչպէս ամէն նոր բան, որ կուգայ հին բարքերու վերջակէտը դնել և քանդել ամէն բան, դնելու համար նոր և նորագոյնը, Սահմա-

նադրութիւնն ալ կոչուած էր քանդելու Հայ Եկեղեցական Իշխանութեան միահեծան դիրքը , կամայականութիւններն ու անձնական քմահաճութիւններէ պատճառուած անտեղութիւնները մէջտեղէն վերցնելու ։ Ահա կը սկսի ուրեմն ազատականներու և պահպանողականներու պայքարը ։ Ոմանք երանի՜ կուտան Սահմանադրութեան հիմնադիրներուն և ոմանք ալ անէծք ։

Բայց անէ՞ծք թէ օրհնութիւն . ո՞րը արդարացի էր ։— Պատմութիւնը ի վերջոյ տըւաւ ասոր պատասխանը , արձանագրելով գահավիժօրէն իրարու յաջորդող դէպքերը, որոնց մէջ իրերը իրենց բնական դրութիւնով միայն առաջացած էին և անհատականութիւններ ժամանակի ոգիին արտայայտիչներն էին միայն և ո՛չ ուրիշ բան ։



# XVII

*Զէյթունի 1862ի ապստամբութիւնը.— Հայերու դըրութիւնը Տաճկաստանի մէջ.— Հայ մտքին զարթնումը.— Խրիմեան եւ իր բողոքը.— Թուրքիոյ տնտեսական կացութիւնը.— Պաշտօնական յեղաշրջութիւններ.— Սուլթան Համիտի գահակալութիւնը.— Պաշխաններու բոցավառումը.— Կ. Պոլսոյ զօնֆէրանսը — Օսմանեան Սահմանադրութեան հռչակումը.— Արեւելեան պատերազմը.—*

Մինչ հայերը արդէն իրենց ներքին կըռիւներն ունէին, Ազգ. Սահմանադրութեան շուրջը, անդին Լիբանանը ապստամբած եւ ազատութեան դրօշը պարզած էր, Պուլկարներ յեղափոխական գործողութիւններ կը կատարէին, եւ Հայոց հին ասպետական ոգին ամենէն ուժեղ ներկայացուցիչն եղող գաւառը,— Զէյթունը,— ապստամբած էր կրկին (1862)։ Տեղական կառավարութեան անտանելի կեղեքումներուն հետեւանքով, ինչ որ բացայայտօրէն կեդրոնական կառավարութեան հրահանգ-

նորուն արդիւնքը միայն կրնար ըլլալ, քաջ և անվեհեր Զէյթունցիներ իրենց կեանքը, պատիւն ու ինչքը պաշտպանելու համար զէնք կը բարձրացնէին։ Ազիզ փաշա մեծ պատրաստութեամբ Զէյթունի վրայ կը քալէ, բայց ի զո՜ւր։ Հայեր յուսահատ Նապոլէոնի կը դիմեն, որուն միջամտութեամբ հաշտութիւնը կը գոյանայ, բայց այս իրարանցումներուն մէջ ալ Ազգ. Սահմանադրութիւնը կը փրկուի՝ Պատրիարքարանի ցոյցին հետեւանքով (1863)։

Սահմանադրութեան շուրջ մղուած այս կատաղի պայքարներէն կառավարութիւնը օգտուիլ ուզած է թէեւ, քանիցս փորձելով խափանել Սահմանադրութեան գործադրութիւնը, բայց յաջողած չէ, վասնզի ամեն ատեն իր դէմ գտած է Հայ ժողովուրդին բողոքող ձայնը։ Պատրիարքական շատ մը պայքարներէ ետք, վերջապէս պատրիարք ընտրուեցաւ Խրիմեան Հայրիկ,(1870) որ մեծ ժողովրդականութիւն կը վայելէր։ Հայաստանի մէջ հարստահարութիւնները սակայն առած էին մեծ համեմատութիւն եւ կեղեքումները բազմապատկուած էին։ Կեանքի, պատուի և ինչքի ապահովութիւն չի կար։ Թէև եէնիչէրիութիւնը ջնջուած էր՝ սա-

կայն ենիչէրիականութիւնը կար ու կը մնար։ Կառավարական յոռի կազմակերպութիւն մը, կաշառակեր պաշտօնեաներ, իսլամի եւ քրիստոնեայի սոսկալի խառնի՝ երկիրը վերածած էին դժոխքի մը, ուր հայերուն ապրիլը նահատակութիւն էր ինքնին։ Տիրողի եւ տիրապետուողի, ռայեայի եւ ստրուկի հոգեբանութիւնը չջնջուած էր։ Կ. Պոլսոյ Հայ Մամուլը ամեն օր արձագանգը կ՚ըլլար նորանոր հարստահարութիւններու, որոնք գաւառներու եւ մանաւանդ Հայաստանի մէջ տեղի կ՚ունենային ամեն օր։ Եւրոպական Մամուլն եւս սկսած էր հետաքրքրուիլ Թուրքիոյ կացութիւնով եւ օրը օրին արձանագրել երկրին մէջ պարզուող ամեն նոր երեւոյթ։ Ո՛չ Թանզիմաթը եւ ոչ ալ 1856 ի Խաթթը Հիւմայիւնը կրցած էին զգալի փոփոխութիւններ առաջ բերել Թուրք ժողովուրդին, — տիրող տարրին, — եւ տիրող պետութեան մտայնութեանը մէջ։ Հին բարբարոսութիւնները կը շարունակուէին կըրկին։

Այս սիսթէմաթիք հալածանքներն ունեցած են երեք ուղղութիւն. կրօնական, ընկերային եւ տնտեսական։ Եւրոպական միտքը, որ Ֆրանս. Մեծ. Յեղափոխութենէն

վերջ մտած էր Հայոց մէջ, և ռամկավարական ոգի ներմուծած, ու Ազգային Սահմանադրութիւնը, որ քաղաքացիական պարտքերու և իրաւունքներու ըմբռնումը տուած էր, ու իրարու յաջորդող Յեղափոխութիւններ ու ապստամբութիւններ՝ (Ցունականը՝ 1828 ին, Զէյթուն՝ 1860, Կրետէ՝ 1867, Պուլկարներ ու Պոսնա Հերսէք) Օսմ. Պետութեան սահմաններուն մէջ Հայ Միտքը զարթեցուցած էին իր դարաւոր թմբիրէն։ Մըխիթարեաններու ազդեցութեան տակ ԺԹ. դարու վերջին կիսուն կը կազմուի Հայոց Աշխարհիկ Գրականութիւնը, որ մեծագոյն ազգակներէն մին կը դառնայ այոց առաջդիմութեան։ Հայոց դրութիւնը աւելի ու աւելի անտանելի կը դառնայ։ Քիւրտ աւատապետներ, պէյեր, Չերքէզներ, աղաներ ու մեծ ու պզտիկ բռնակալներ՝ միացած բռնակալութեան մարմնացում-կառավարութեան հետ՝ Ճալան, աւարառութիւն և ըսպանութիւն անպատիժ կը գործեն։ Խրիմեան Հայրիկ Պատրիարքը, առաջին անգամըն ըլլալով, յանուն Հայ ազգին պաշտօնապէս կը բողոքէ Բ. Դրան և հարստահարութիւններն ու կեղեքումները պատմական յիշատակագիր-տեղեկագրով մը կը ներ-

կայացնէ կառավարութեան՝ խնդրելով բարեկարգութիւն և հայոց կեանքին, պատիւին ու ինչքին պաշտպանութիւնը։ 1873 Հոկտ. 2ին Խրիմեան Պատրիարք ջոջերու վատ էնթրիքներուն հետեւանքով կը հրաժարի և իրեն կը յաջորդէ Ներսէս Վարժապետեան՝ 1874 Ապրիլ 24ին։ Հայոց վիճակը կը վատթարանայ հետզհետէ։ Գաղթականութիւնը ծայր տալ կը սկսի։ Գաւառներու և Հայաստանի ամէն կողմերէն խումբ խումբ ընտանիքներ և հարիւրաւոր, հազարաւոր մարդիկ՝ պանդխտութեան կ՚ելլեն՝ երթալով Ամերիկա, Պուլկարիա, Եգիպտոս և այլն։ Իսկ ասոնց բոլորին հանդէպ կառավարութիւնը մէկ պատասխան ունի։— Խոստում և անվերջանալի խոստում։ Այդ խոստումի քաղաքականութիւնը միայն հայոց նկատմամբ չէ՛ր որ կը գործադրուէր։ Պալքանեան ազգերն ու Եւրոպական Պետութիւններն ալ կը փորձէին օրօրել խոստումներով, որոնց գործադրութիւնը չկար։ Թանզիմաթի հրատարակութիւնն ու բարենորոգչական փորձերը Թուրքիոյ մէջ, գործնական արդիւնքի մը չէին յանգած, որովհետեւ աւելի զինուորական բարենորոգումներով բաւականացած՝ Թուրք պետական

վարիչները կառավարութիւնը բարեկարգելու, պաշտօնեաներու մտայնութիւնը յեղաշրջութեան մը ենթարկելու և լուսաւորեալ միտքերը ժողովուրդին մէջ տարածելու լուրջ ջանքեր չէին ըրած։ Իսլամ հոգեւորականութիւնն ու իշխմա դասակարգը արդէն բնական հակառակորդը պիտի ըլլար որև. բարենորոգման։ Այսու հանդերձ իրենք ալ գոհացուցիչ ուղղութիւն չունէին։ Թուրք պետական մարդիկ կ՚ըմբռնէին ծանր հետեւանքն այս դրութեան։ Պալքաններուն ու եւրոպական պետութիւնները միշտ սպառնական էին Օսմանեան Պետութեան հանդէպ։ Տնտեսական ոյժը փճացած էր Կայսրութեան համար։ Օսմ. Պետութիւնը գահավէժ անկում մը կ՚երթար արագ արագ։ Նոր միտքով Թուրքերու մտահոգութիւնները կը բազմապատկուէին։ Հորիզոնը փոթորկալից էր։ Պալատական զեղխութիւններն ու ահագին ծախքերը տարուէ տարի պետութեան բացը կ՚աւելցնէին։ Սուլթան Ազիզ, կը հալածէր գրականութիւնը, գեղարուեստը, կը հաստատէր գրաքննութիւնը, կը ձերբակալէր միտքի գործիչները եւ իր անհեղ չռայլութեամբ Թուրք Պետութիւնը անդունդէ անդունդ կ՚առաջնորդէր։

Եւրոպական մեծագումար և կործանարար փոխառութիւններ միայն կանգուն կը պահէին պետութիւնը։ Օրուան յառաջդիմասէր նախարարութիւնը, քով ըմբռնած րոպէին լրջութիւնը, 1876 Մայիս 19ին դահընկեց ըրաւ Սուլթան Ազիզը, գլխաւոր գործակցութեամբ Միտհաթ, Հիւսէյին-Աւնի, Տամատ Մահմուտ և Մէհէմմէտ-Րիւշտի փաշաներու։ Սուլթան Ազիզ բազկերակը կըտրելով անձնասպան եղաւ, (թէեւ հակառակըն ըսողներ ալ կան)։ Անոր յաջորդեց Սուլթան Մուրատ Ե. լուսամիտ և առաջդիմասէր թագաւորը, որ սակայն երեք ամիս միայն գահակալեց, ապա ստիպուելով հրաժարիլ գահէն՝ իբրև խելագար։ Մուրատի յաջորդեց Համիտ Բ. (1876)։ Մինչդեռ Պոլսոյ մէջ Պալատական այս յեղաշրջումները կը կատարուէին յաջորդաբար, անդին Պալքաններու մէջ հրդեհը կը բոցավառէր և Հայաստանի վիճակը աւելի քան անհանդուրժելի կը դառնար։ Պալքաններու ապստամբութեան առեն պետութեան համար միակ մտահոգիչ վայրը. Զէյթունէն վերջ, Վասպուրականն էր, ուստի 1876ին կը հրդեհուէր Վանը, որպէսզի Հայ ժողովուրդը տըստեսապէս փճանար և անկարող ըլլար ա-

պատմութեան դրօշ պարզելու։ Զէյթունի հանդէպ անկարողութիւն ունէր կառավարութիւնը և հետեւաբար ալ՝ չկրցաւ բան մը ընել։ Աբտ-իւլ-Համիտ երեք կէտերու վրայ համաձայնած էր,

1. Անյապաղ հրատարակել Նոր Սահմանադրութիւնը.
2. Պետական գործերու մէջ միայն իր պատասխանատու խորհրդականներուն կարծիքը հարցնել.
3. Զիյա պէյ և Քէմալ պէյ իր անձնական քարտուղարները դարձնել։

Պոլքաններու մէջ խժդժութիւններ շատցած էին։ Թուրք կանոնաւոր զօրքն ու պաշըպօզուքները ամբողջ նահանգներ աւերակ դարձուցած էին։ Պոսնա Հէրսէկն ապստամբած էր. Սերպիան և Գարատաղը պատերազմի դաշտին վրայ էին և Պուլկարիան ալ՝ յեղափոխուած. Ռուս ժէնէրալ Չերնիայեւը իր կամաւորներով կ'օգնէր սլաւոններուն։ Սուլթանական կառավարութիւնը իր սարսափները կը չափէր և սակայն Պոլքանեան ազգերը իրենց վերջին ճիգերը կը լարէին՝ ապագայ փայլուն յոյսերու յառած իրենց աչքերը։ Հայ ժողովուրդը կը քնանար։ Կ. Պոլսոյ էֆէնտի և կղեր դասակարգը օրօր կը կարդային Հա-

յութեան գլխին. նոյն իսկ Ներսէս Վարժապետեան իր պատմական կոնդակը կը հանէր՝ հանդարտութեան և հաւատարմութեան հրաւիրելով հայ ժողովուրդը: Գր. Արծրունի հակառակը կը քարոզէր: Ռուսաստանը կ՚ենթադրուէր այն ուժը, որ պիտի գար ազատել արեւելքի ճնշուած քրիստոնեաները: Եւրոպական Տէրութիւնները, այս բոլոր խնդիրներուն վերջ տալու նպատակաւ կը կազմեն Կ. Պոլսոյ գօնֆէրանսը (խորհըրդաժողով): Դեկտ. 23 ին (1876) Խորհըրդաժողովը կը բացուի: Անգլիոյ ներկայացուցիչն է Սալըզպըրի, իսկ Ռուսիոյ ներկայացուցիչը՝ Իկնաթիէֆ: Կը հրաւիրուի Օսմանեան տէրութիւնն ալ իր ներկայացուցիչը տալու: Ժողովը հազիւ սկսած իր գործին, ահա թնդանօթի 101 հարուածներ կ՚աւետեն Օսմ. Սահմանադրութեան հռչակումը: Ապտ-իւլ-Համիտ Միտհաթ փաշայի խորհրդով վերջապէս կը հաճի հրատարակել Սահմանադրութիւնը, կարատած և սեղմած, յանկարծակիի բերելու համար պետութիւններըև Օսմ. Պետութիւնը անդամատութենէ ազատելու համար: Գօնֆէրանսըկ՚ուզէ չաբունակել իր գործը, բայց Բ. Դուռը նկատողութեան չառներ ներկայացուած որևէ

խնդիր։ Սալըզպըրիէ վերջ Լօրտ Տէրպի կը քաջալերէր Թուրքերը։ Սուլթան Համիտ հետզհետէ հեռացուց իր քովէն Միտհատ փաշան և ուրիշ ազատական խորհրդատուներ, բայց հարկաւոր կը նկատէ վերջապէս Երեսփոխանական Ժողովը գումարել։ Շուտով ընտրութիւնները կը կատարուին եւ 1877ի սկիզբը կը բացուի Օսմ. Խորհրդարանը՝ մասնակցութեամբ 237 պատգամաւորներու, որոնց 13ը Հայեր էին։ Հայեր խոհեմութիւն կը համարեն լռել երբ անդին իշխանութեանց հրամանով, քիւրտերը երկիրը Ռուսերուն դէմ պաշտպանելու պատրուակով հայ գիւղերուն ու քաղաքներուն վրայ թափեցան, հազարաւոր մարդիկ կոտորեցին, կիներ բռնաբարեցին և Վասպուրականի, Բասենի և Բագրեւանդի ու Մշոյ դաշտին մէջ՝ ամբողջ գիւղեր այրեցին։ Այս առթիւ Օսմ. Խորհրդարանին մէջ առաջին ազդու բողոքը կը ներկայացնէ յոյն պատգամաւոր Սուլիոտէս էֆէնտի, որ խրոխտ ճառով մը կը դիմակազերծէ Օսմ. կառավարութեան կեղեքող քաղաքականութիւնը։ Անոր կը յաջորդէ Կարնոյ երեսփոխան Պալլարեան էֆէնտի, որ ընդարձակ բացատրութիւններ կուտայ Հայաստանի անտա-

նելի կացութեան նկատմամբ ։ Երեսփ. ժողովը կ'որոշէ գրել Բ. Դրան՝ ազդու միջոցներ ձեռք առնել, բայց ի զո՜ւր ։

1877ի վերջերը, Ռուսիա, յուսահատ բոլորովին Կ. Պոլսոյ Խորհրդաժողովին դրական արդիւնքէն, մանաւանդ զգուած Անգլիոյ երկդիմի դիրքէն, Կորչաքովի միջոցաւ Օսմ. Պետութեան կը յայտարարէ թէ պատերազմը սկսուած է արդէն և ռուսական բանակները Եւրոպայէն ու Ասիայէն՝ կ'արշաւեն Օսմ. հողերուն վրայ։ Սուլթանը քրիստոնեայ բանակներուն յառաջխաղացութեան վրայ՝ կը հրամայէ զինուոր առնել քրիստոնեաներէն ալ ։ Յունաց պատրիարքը իսկոյն կը հրամայէ կատարել սուլթանական հրամանը, իսկ Ներսէս Վարժապետեան Ազգ. ժողովի սեղանին վրայ կը դնէ ։ Երեսփոխանները երկու մասի կը բաժնուին ։ ժողովուրդը կ'ըմբոստանայ և հրամանը մեռեալ տառ կը մնայ ։ Պատերազմին անյաջողութիւնը դժգոհութիւն կ'առաջացնէ և կը սկսի հարցապնդում պատերազմին մասին ։ Բայց առանց հարցապնդման արդիւնքի երեւան գալուն, բոլորովին անսպասելի կերպով Սուլթանը 1878 փետր. 2ին կը փակէ Օսմ. Խորհրդարանը՝ պէտք եղած ատենն

կանչուելու պայմանաւ....։ Իսկ յայտնի է թէ, քանի տասնեակ տարիներ վերջը միայն Համիտ պէտք ունեցաւ անոր...։ Ռուսները Ասիոյ կողմէն կ'առնեն Կարսը, Արտահանը, Պաթումը, Սուխում Գալէն և կը պաշարեն Էրզրումը։ Եւրոպայի կողմը նոյնպէս։ Բլէվնան կը դիմադրէ բաւական ատեն, բայց կ'իյնայ։ Վերջապէս Ռուս բանակը կը բանակի Սան-Սթէֆանօ։ Հայերը, որոնք մինչեւ ռուսներուն հոն հասնիլը ռուսատեաց էին, անմիջապէս դարձան ռուսասէր։ Պարտուած Օսմ. Պետութիւնը ստիպուեցաւ գիջանիլ առաջարկուած բոլոր պայմաններուն։ Ռուսիա Պոլիսը չառաւ և գոհացաւ Սև Ծովու եզերքէն մաս մը հողով. բայց մեծ հեղինակութիւն ստացաւ ազատագրեալ ազգերուն և արեւելեան հարցին մէջ։ Մոնթէնէկրօ, Սերպիա, Ռումանիա անկախ տէրութիւններ կը հրատարակուին. Պոսնա և Հէրսէք Աւստրիոյ պաշտպանութեան կը յանձնուին։ Պուլկարիա իշխանապետութիւն կը ձեւանայ։ Սան-Սթէֆանօյի դաշնագրութեամբ ուղղակի Եւրոպական միջամտութեան թոյլ կը տրուի՝ Թուրքիոյ ներքին գործերուն մէջ։

---

## XVIII

*Սան-Ստեֆանոյի Դաշնադրութիւնը եւ 16րդ Յօդուածը.— Կիպրոսի Դաշնադրութիւնը.— Նուպար փաշայի ծրագիրը.— Պերլինի վեհաժողովը եւ 61րդ Յօդուածը.— Հայկական շարժումներու արշալոյսը:*

*Հայոց ազգասէր պատրիարքը Ներսէս Վարժապետեան առիթէն օգտուելով և ամեն վտանգ ու պատասխանատուութիւն իր վրայ առնելով անձամբ Սան-Սթէֆանօ Ռուսիոյ բանակը գնաց և Նիկողոս Մեծ Դուքսէն խնդրեց որ Թուրքիոյ հետ կնքուելիք Դաշնագրութեան մէջ՝ Հայոց համար ալ յօդուած մը դրուի: Ժամանակը նպաստաւոր էր: Հայ զօրապետներ, ռուս բանակին մէջ, շատ մը յաղթութիւններ տարած էին և պատերազմին հետեւանքով ալ հայերը շատ վընասուած էին, ուստի Մեծ Դուքսը շատ չընդդիմացաւ մանաւանդ Կոմս Իգնատիեֆ ու Գարոն Նիկլիտօֆ ալ միջամտեցին: Հետեւեալ*

որը Թուրքիոյ ներկայացուցիչները զարմանալով տեսան թէ Ռուսերը Հայոց համար ալ յօդուած մը կ՚ուզեն։ Բայց զիջանելէ զատ ուրիշ միջոց չի կար։ Այսպէս Սան Ստեֆանոյի դաշնագիրին մէջ աւելցաւ 61րդ Յօդուածը, որ հետեւեալն է։

Յօդուած 16.— Որովհետեւ Ռուս բանակներու Հայաստանի (Արմենիա) մէջ գրաւած երկիրները, որոնք Թուրքիոյ պիտի դարձուին, պարպուած ատեն երկու պետութեանց յարաբերութեան պահպանման տեսակէտով վնասակար շփոթութիւններ և բարդութիւններ կրնան առաջ գալ, ուստի Բ. Դուռը կը խոստանայ գործադրել, առանց յապաղման, տեղական պահանջներուն հարկաւոր եղած բարւոքումներն ու բարեկարգութիւնները հայոց բնակած գաւառներուն մէջ և երաշխաւորել անոնց ապահովութիւնը Քիւրտերու և Չերքէզներու դէմ։

Սան Ստեֆանոյի դաշնագիրը կազմուեցաւ 1878 Մարտ 3 ին, և այդ Թուականէն ըսկսեալ Հայաստան միջազգային դաշինքներու մէջ մտցուելով Եւրոպական պետութեանց սեղաններուն վրայ եկաւ։ Այս յօդուածը, ինչպէս յայտնի է, ունի իր թերի կողմերը և մանաւանդ մթութիւն՝ բարեկարգութիւններու որակին մասին, այսուհանդերձ մեծ յաջողութիւն մըն է, որ Ներսէս Վարժապետեանի կուտայ խոշոր դեր՝ Հայկական

Հարցին մէջ ։ 16րդ յօդուածը Հայաստանը Ռուսիոյ պաշտպանութեան կ'ենթարկէր, իսկ այդ չէր կրնար գոհ թողուլ Անգլիան, որուն ձգտումն էր մեծ ձայն ունենալ Օսմանեան պետութեան վերաբերող գործերուն մէջ մանաւորապէս և Արեւելեան Հարցին մէջ ընդհանրապէս ։ Ուստի կերպով մը դաշնակցութիւն ստեղծելու համար Թուրքիոյ հետ, և ի հարկէն անոր տկարացումն ու ազդեցութիւնը զօրացնելու համար, պահանջեց Անգլիա իր տրամադրութեան տակ դնել Կիպրոսը, որպէսզի Անգլիացի պաշտօնեաներ ու զօրքեր դիւրաւ կարենան Թուրքիա մտնել ։ Թուրքիա հաճելով ընդունեց այս առաջարկութիւնը, և 1878 Յունիս 4ին ստորագրուեցաւ Կիպրոսի Դաշնագրութիւնը որ ահաւասիկ ։

«Եթէ Ռուսիա իր ձեռքը պահէ Պաթումը, Արտահանը, Կարսը և կամ անոնցմէ մէկը, և եթէ խաղաղութեան դաշինքէն վերջ նորէն փորձ ընէ վեհափառ Սուլթանի Ասիական երկիրներէն մին գրաւելու, այդ պարագային Անգլիա կը խոստանայ միանալ Սուլթանի հետ և զէնքի ուժով պաշտպանել անոր իրաւունքները։

«Աստոր փոխարէն Սուլթանը կը խոստանայ իր կառավարած երկիրներուն մէջ մտցնել հարկ եղած բարենորոգումները՝ այդ երկիրներուն մէջ ապրող քրիստոնեաներու և ուրիշ հպատակներու

պաշտպանութեանը համար։

«Այդ բարենորոգումները պէտք է որոշուին յետոյ, երկու պետութիւններու համաձայնութեամբ։ Եւ որպէսզի Անգլիան կարողանայ պէտք եղած պատրաստութիւնները տեսնել՝ եր պարտաւորութիւնները կատարելու համար, Սուլթանը համաձայնութիւն կու տայ որ Անգլիան գրաւէ և կառավարէ Կիպրոս կղզին։»

Այս Դաշնագրութիւնը չբաւականացուց Անգլիան, որ հաշտ աչքով չէր նայեր Ռուսիոյ ազդեցութեան այսպէս մեծնալուն, և որ առարկելով թէ Բարիզի դաշինքը կնքող պետութիւններ միայն կրնային Ռուսիոյ և Թուրքիոյ մէջ կնքուած դաշինքն ստորագրել, առաջարկեց որ Պերլինի Վեհաժողովը կազմուի։ Ռուսիա, պատերազմելէն յոգնած և վստահ Աւստրիոյ բարեկամութեան կամ չէզոքութեան վրայ՝ ընդունեց Պերլինի Վեհաժողովին գումարման առաջարկը։ 1878 Յունիս 13 գումարուեցաւ Վեհաժողովը՝ Պերլինի մէջ։ Ժողովին նախագահը թէև Պիզմարքն էր, բայց գոյն վարողն էր Անգլիոյ ներկայացուցիչը՝ Սալըզպըրին։

Հոն կային հաւաքուած երեւելի դիւանագէտներ։ Անգլիա, Կիպրոսի Դաշինքէն գոհ՝ Պերլինի Վեհաժողովին կը մասնակցի։ Ամէն ազգեր կը շահագրգռուին Պերլինի Վե-

հաժողովով, անոնց հետ նաև հայերը: Հայոց Պատրիարքարանը ևս ի հարկէ չկըրնալով անտարբեր մնալ՝ նոյն ուղղութեամբ կ'աշխատի, և կը կազմակերպէ յատուկ պատգամաւորութիւն մը՝ Եւրոպական արքունիքներր դրկելու համար: Խրիմեան հայրիկ Մինաս Չերազի հետ Եւրոպա գնաց, որպէսզի միտքերը պատրաստելէ վերջ անցնի Պերլին, իսկ Խորէն Նար Պէյ Բեթրապուրկ գընայ, ապա Պերլին միւսներուն հետ միանալու պայմանաւ: Թուրք կառավարութիւնը խորամանկ քաղաքականութեան մը հետեւեցաւ և՝ ո՛չ միայն չհակառակեցաւ այս խորհուրդին, այլ և քաջալերեց ու աջակցիլ խոստացաւ: «Պերլինի Վեհաժողովին Հայկական Հարցը ներկայացնելու համար կառավարութիւնը Յովհաննէս Նուրեանի, Գըրիգոր Օտեանի, Սէրվիչէնի և այլնի միջոցաւ քաջալերեց Ներսէսը: Այս խաղը Անգլիոյ կողմէ պատրաստուած էր՝ Ռուսը մեծ Հայաստանէն հանելու համար: Այս հայերը Ներսէսը վախցուցին ըսելով թէ իր ռուսամոլութիւնը կրնար հայերը ջարդել տալ: Ներսէս վախցաւ և անոնց խորհուրդին հետեւեցաւ: Թուրքը չողոմել կեղծեց և նոյնիսկ Պերլինի հետ ծածկագիր յարաբերութիւն

*ընելու թոյլ տուաւ։ Ազգ. Ժողովքին բան մը չի հարցուց Ներսէս և հակառակ խորհուրդ. տուողները դուրս վռնտեց։ Ներսէս սքանչելի գաղափարն ունեցած էր Նար Պէյը Բեթրսպուրկ Զարին ղրկելու, բայց Խրիմեան Պերլին չէր հասած, երբ հեռագրըուեցաւ թէ Նար Պէյ պաշտօնական հրահանգագիր մը չունի ձեռքը՝ Զարին ներկայանալու համար։ Այս բանը, զոր նախ «Մասիս» և ապա Եւրոպական թերթերը հրատարակեցին, Ռուս Պետութեան համար է՛ն մեծ նախատինքն էր։ Հայ պատգամաւորները հաստատուն և հեռատես գործունէութիւն մը չունեցան։ Նար Պէյ ռուսական գերիշխանութեան կողմնակից էր, Լօրիս Մելիքովը կառավարիչ կարգելու և Կիլիկիան իշխանապետութիւն մը ընելու պայմանով։ Հայրիկ դէմ էր ռուս ազդեցութեան և կը նախընտրէր Անգլիոյ հովանաւորութիւնը՝ Հայաստանի կառավարիչ ընելու պայմանաւ Նուպար Փաշան։»* (1)*Կարծիքներու այս տարբերութեան պատճառաւ Խրիմեան միշտ կը պընդէր որ Նուպար Փաշան Պերլին կանչէին, որպէսզի նա, իբրև փորձառու դիւանագէտ՝ գըլուխ կանգնի Հայկական Հարցին։ Իսկ Պոլսէն*

(1) **Անահիտ**, 1899, **Ա. Չօպանեան**։

Ս. Փափազեանը ղրկեցին, այն երկիւղով թէ մի՛ գուցէ Նուպար փաշա իրական թեկնածու մը կը ներկայանայ «Ինքնավար Հայաստանի»ի։ Նուպար Փաշա այդ ժամանակ Բարիզ էր և մշակած էր «Հայկական Ինքնավարութեան» ծրագիր մը։ Ինչպէս յայտնի է, Նուպար Փաշա՝ թէ՛ իբրև նախարարապետ Եգիպտոսի և թէ՛ իբրև ճշմարիտ պետական մարդ՝ շա՛տ սիրուած էր։ Սա երբ իր ծրագիրը ներկայացուցած էր Բարիզի գերման դեսպան Հոհէնլոհէ կոմսին, սքանչացած էր, իսկ Անգլիական դեսպան Լորտ Լայընս գոչած էր. «Ասիկա Արևելեան Խնդիրին բանալին է»։ Նուպար փաշայի առաջարկած ծրագրին ամփոփումն է հետևեալը.(1)

1. Եւրոպական Տէրութիւններ, ինչպէս և Բ. Դուռը պէտք կը զգան բարենորոգումներ մտցնելու հայաբնակ գաւառներու մէջ։
2. Հայերը քաղաքական անկախութեան ուչք չունին, այլ՝ քաղաքական ազատութեան, որուն մէջ կարողանան երաշխաւորել իրենց կեանքը, պատիւն ու ինչքը։
3. 1839էն իվեր արդէն խաթթը շէրիֆներով շեշ-

(1) Նուպար Փաշայի ծրագիրը հրատարակուած է «Անահիտ»ի առաջին տարուան 5-6 միացեալ թիւերու մէջ։ Անգլիերէնը կը գտնուի Լոնտոն հրատարակուած Nineteenth Century ամսաթերթին 1878ի Սեպտեմբերի թիւին մէջ։

տուած են այդ պէտքերը

4. Որովհետեւ ցարդ Թուրք պաշտօնեաները եղած են զեղծարարներ, ուստի ընտրել ընդհանուր քրիստոնեայ (մանաւանդ հայ) կառավարիչ մը։
5. Հոգ տանիլ քիւրտերու արշաւանքներուն եւ աւարառութեանց խնդիրին։
6. Կառավարիչը պիտի կազմակերպէ պահակազօրք։
7. Ոստիկանական նոր կազմակերպութիւն։
8. Արդարութեան նոր կազմակերպութիւն։
9. Տուրքերու գանձման եղանակին մէջ իմաստութիւն:

Ծրագիրը գրուած է շատ դիւանագիտական ոճով մը, որ ո՛չ Սուլթանը վշտացնելու բնոյթն ունի եւ ո՛չ ալ Եւրոպական պետութիւններէն մին կամ Ռուսը։ Նուպար փաշայի մեծագոյն սխալն այն է որ իր բոլոր յոյսը կը դնէ Թուրք Կառավարութեան եւ Սուլթանական «բարեխնամ հրամանագրութիւն»ներու վրայ։ Իսկ այդ հրամաններուն որակը, արժէքն ու Կառավարութեան խոստումներուն ո՛ր աստիճան իրականանալի ըլլալը քանիցս տեսնուած է։ Առանց ատոր ալ արդէն կարելի չէր այդ ծրագիրը ներկայացնել Վեհաժողովին, քանի որ ան չէ՛ր զբաղեր ծրագրով։ Վերջապէս շատ ու շատ դժուարութիւններէ վերջը Հայ պատգամաւորներ հազիւ հազ կրցան այցել Վե-

համաժողովին լիազօրներուն վրայ և Պերլինի Դաշնագրութեան մէջ դնել տալ 61րդ Յօդուածը, որ կը վերաբերի բացառապէս Հայոց։ Դաշինքին 62րդ Յօդուածը կը վերաբերի կրօնական առանձնաշնորհումներու, որոնք ևս հայոց համար կարևոր են։ Ահաւասիկ 61րդ և 62րդ Յօդուածները։

61 Յօդուած.—Բ. Դուռը յանձն կ'առնէ առանց յապաղման գործադրել այն բոլոր բարւոքումներն ու բարեկարգութիւնները, որոնք հայաբնակ նահանգներուն տեղական պէտքերը կը պահանջեն, նաև երաշխաւորել անոնց ապահովութիւնը՝ քիւրտերու և չէրքէզներու հանդէպ։ Ան այս առնուած քայլերու մասին ժամանակէ առ ժամանակ ծանօթութիւն պիտի տայ Մեծ Պետութեանց, որոնք անոնց գործադրման վրայ պիտի հսկեն։

62 Յօդուած.— Բ. Դուռը փափաք յայտնած ըլլալով որ անվթար պահէ կրօնական ազատութեան սկզբունքները՝ տալով անոր ամենաընդարձակ ասպարէզ մը, դաշնագրող պետութիւնք այս ինքնաբերաբար եղած յայտարարութիւնը կը նօթագրեն։

Ծան. Կայսրութեան ո՛չ մէկ մասին մէջ կրօնական դաւանանքներու տարբերութիւններ պատճառ պիտի բռնուին որևիցէ անհատի մը քաղաքական իրաւունքներ վայելելուն, հանրային պաշտօնի, գործի և պատուոյ արժանանալուն կամ որևիցէ արհեստով կամ գործով զբաղելուն։

Դատաւորաց առջեւ առանց խտրութեան ամէն անձի վկայութիւն պիտի ընդունուի։

Կրօնական ամէն ձեւերու ազատութիւնը և անոնց հրապարակաւ գործադրումը կ՚ապահովուի ամէնուն։ Նաև զանազան ժողովրդոց կրօնապետական կազմակերպութեան կամ անոնց իրենց հոգեւոր պետերուն հետ ունեցած յարաբերութեանց դէմ ո՛չ մէկ արգելք պիտի յարուցուի։

Պերլինի Դաշնագրութեան հայոց վերաբերեալ մասին մէջ, ինչպէս կը տեսնուի, Հայաստան բառը ջնջուած և հայաբնակ նահանգներ յիշուած է ։ Ունի իր մութ և անորոշ կողմերը, և իր ամենէն աչքի զարնող տարբերութիւնն այն է որ Ռուսիոյ հսկողութենէն Հայաստանը հանելով վեց Մեծ Տէրութեանց բարեկամեցողութեան կը յանձնէ։

Այնուհետև այլ ևս Պերլինի Դաշնագրութեան 61րդ Յօդուածը կը խանդավառէ հայերը, թէև Օտեան Բարիզի մէջ կը յայտարարէր թէ 61րդ Յօդուածը բոլորովին վնասակար է Հայկական Հարցին համար, և Սէրվիչէն ալ արցունքոտ աչքերով կը խոստովանէր թէ սխալած էին, բայց միամտութեամբ և խաբուած։ Հայոց եռանդը կը չատնայ տակաւ և քանի՛ Հայկական գաւառներու հարստահարութիւնները կը չատ-

նոյին՝ ա՛յնքան ալ յեղափոխական ոգին կ'արթննար ։ Պերլինէն դարձող պատգամաւորները յեղափոխութեան ազդանշանը տըւած էին արդէն իրենց քարոզութիւններով, որոնց մէջ առանց կռիւի ազատութիւն ստանալը անկարելի կը գտնէին ։ Իսկ կառավարութիւնը իր բարենորոգումներուն սկսաւ՝ ձերբակալելով Եղիա Տնտեսեանը, իբրեւ Ազգ. Երգարանի հրատարակիչ. քիչ յետոյ Հայ Թատրոնը կը գոցուէր, լրագրութիւնը կը սեղմուէր, դպրոցները քննութեան կ'ենթարկուէին եւ գաւառներուն մէջ հալածանքը կը չեշտուէր ։

Եւ ահա Գամառ-Քաթիպան ու Ռաֆֆին էին որ Հայ ցաւերը երգելով ըմբոստութիւն կը քարոզէին, ու Նոր սերունդը ազատութեան իտէալով կը սնանէր ։ Կայի՞ն ազդակներ Հայոց հայրենասիրական եռանդըն հրահրող, կարելի՞ էր հաստատել թէ հայերը թուրք կառավարութիւնէն դժգոհ մնալու պատճառներ ունէին ։

—Անշուշտ ։ Խոստացուած բարենորոգումները կ'ուշանային, Հայոց Աշխարհի դէպքերը կը գահավիժէին եւ Հայկական շարժումներու արշալոյսը կը ծագէր...։

# XIX

Հայկական Հարցը եւ զայն ստեղծող պայմանները.—Իսրայէլ Օրի եւ իր քաղաքական ծրագիրը.—Դաւանափոխութեան մերոնք՝ Հայկական ազատութեան համար.— Պարսկահայկական խնդիրը Տաճկահայկական խնդիր կը դառնայ.— Հայկական Հարցին դիւանագիտական վերջին շրջանը.— Հայկական Յեղափոխութիւնը եւ իր պատճառները.— Ազգային գործիչներ.— Օտար պետութեանց միջամտութեան հարցը:

Հայկական խնդիրը, որ վերջին երեսնամեակին մէջ միայն միջազգային կարեւորութիւն առաւ, նոր խնդիր մը չէ ուրեմն, այլ՝ Արեւելեան հարցին մէկ երեսը միայն։ Արուեստական պայմաններ անկարելի է որ յաջողէին ծնունդ տալ այսպիսի խոշոր գործի մը, եթէ զայն ստեղծելու համար բաւարար պատճառներ գոյութիւն չունենային։ Հայկական Հարցը ստեղծուած էր ինքնին այն օրէն, երբ Հայ ժողովուրդը իր բաղդը կորսնցուցած՝ կ՚ողբար իր գահին ու փառքին վրայ, երբ

իր բոլոր ընդունակութիւններն ու կենսունակութիւնը կը սկսէր փճացնել կիսավայրենի ու բարբարոս ցեղերու խուժդուժ արշաւանքին ու սոսկալի հալածանքին մէջ, երբ փառաւոր անցեալի մը և քաղաքական ինքնուրոյն կեանքի մը յաւէտ սխրալի յիշատակը կար իր պատմութեանը մէջ։

Օսմանօ-պարսկական արշաւանքներէն վերջը, երբ Հայաստանի կարեւոր մէկ մասը անցած էր Պարսիկ Շահերու ձեռքը, և անոնց սահմաններուն մէջ բնակող Հայ ժողովուրդը կրօնական ու անտեսական հալածանքի մէջ կ'ապրէր, Հայկական Հարցին առաջին վարագոյրը բացուած էր արդէն։ Իսրայէլ Օրի, որ ինքզինքը կը դաւանէր ազնուատոհմ, Պարսկահայոց ազատութեան գաղափարն ունեցած էր և ուրուագծած քաղաքական ծրագիր մը, որ թէև չգործադրուեցաւ, բայց և այնպէս ուղի մը գծեց, որուն հետեւեցան շարք մը եկեղեցականներ և քաղաքական գործիչներ։ Իսրայէլ Օրիի հետապնդած նպատակն էր Հայ Կղերը համոզել, հռովմէական դաւանանքն ընդունիլ տալ Հայ ժողովուրդին, և ապա՝ հայ մէլիքներու միջոցաւ ապստամբութիւն մը ստեղծելով՝ Եւրոպական պետութեանց միջամտութիւնն հրաւի-

րել և Պարսկաստանի լուծին տակ հեծող հայերը ազատագրել ։ Եւ որովհետև Պարսկաստանի մօտիկ, դրացի և իր անմիջական ազդեցութեամբ ուղղակի միջամտութիւններ ընելու կարող ամենայարմար պետութիւնը Ռուսիան էր, ուստի Օրիի մտահոգութիւնն էր «Հիւսիսի Արծիւ»ին ստանձնումը Հայկական Հարցի լուծման ։ Իսրայէլ Օրի հետապնդեց իր քաղաքական ծրագիրը, անոր իրագործման համար մեծամեծ զոհողութիւններ յանձն առաւ, Եւրոպական արքունիքները շրջեցաւ, Ռուսական Պետութեան բարեացակամութիւնն ապահովեց, այս միևնոյն ծրագրին համար Պարսկաստան գնաց և վերջապէս մեռաւ՝ առանց տեսնելու իր փայփայած գործին արդիւնքը ։ Գտնուեցան իրեն յաջորդներ, որոնք հաւատարմօրէն աշխատեցան Հայկական Հարցին համար և սակայն ձեռք բերուած շօշափելի արդիւնքն այն էր որ Ռուս Պետութիւնը, հակառակ իր խոստումներուն ու յանձնառութիւններուն, յուսաբեկ կը թողուր հայերը՝ ո՛չ միայն իրենց ակնկալութիւններու՛ն մէջ, այլև պատերազմի դաշտին վրայ ։

Տարիներ անցան, թիւրքօ-պարսկական պատերազմներ տեղի ունեցան, Հայաստանի

մեծագոյն մասը անցաւ տաճկական կառավարութեան ձեռքը և հայկական ազատագրութեան միտքը փոխեց իր գետինը, կեդրոնանալով Օսմանեան տիրապետութեան սահմաններուն մէջ, երբ մանաւանդ հետզհետէ բաղդատաբար հաստատուն վիճակ ստեղծո-ւեցաւ։ Իսրայէլ Օրի, իր քաղաքական ծրագրին գործադրութիւնը հետաձգուած ժամանակ, խոհեմութիւնն ունեցած էր լոկ Պարսկահայոց ազատութեան խնդիրը ներկայացընելու Եւրոպական արքունիքներուն և երբեք չխառնելու Տաճկաստանի Հայոց գործը՝ Պարսկաստանի հայոց հարցին հետ, որպէսզի երկու թշնամիներ չունենար հայութիւնը՛, բայց ի վերջոյ, աշխարհագրական սահմաններու փոփոխութեամբ՝ իրաց կացութիւնը ենթարկուեցաւ փոփոխութեան և Տաճկահայոց ազատագրութեան Հարցը ձուլուեցաւ նոր ձևով և նո՛ր կաղապարով։

Օսմանեան Պետութեան առաջին տիրապետական շրջանին մէջ, չմորած հպատակնիր ո՛չ իսկ կրնային մտածել այդպիսի քաղաքական հարցերու վրայ, և, պէտք է խոստովանիլ արդէն թէ տաճկական լուծը աւելի՛ հանդուրժելի կրնար նկատուիլ քան պարսկականը, սակայն երբ Օսմանեան Պե-

տութիւնը, իր ներքին ատրճանական կազմալուծման հետեւանքով մեծամեծ ձախողանքներ, պարտութիւններ կրեց եւ տակաւ առ տակաւ ինքնամփոփումի եւ ինքնապաշտպանութեան ու զգուշութիւնը որդեգրեց, ահա ճնշուած ժողովուրդներ սկսան մտածել իրենց ճակատագրին դառնութեանը վրայ։ Հետզհետէ աճող գժգոհութիւնները կը կուտակուէին իրարու վրայ եւ հարստահարուած տարրեր անկում եւ փճացում միայն կը տեսնէին ամէն կողմ, Տաճկաստանի մէջ։ Գահավէժ կերպով իրարու յաջորդող դէպքեր կը ցնցէին ամբողջ երկիրը եւ Եւրոպայի ազդեցութիւնը կը շեշտուէր Օսմանեան Պետութեան քաղաքական ու տնտեսական կեանքին մէջ, ու Հայկական Հարցին դիւանագիտական նոր շրջանը կը բացուէր միջազգային դաշնագրութիւններով, որոնք Սան-Սթէֆանոյի ու Պերլինի մէջ «Հայկական Իրաւունք»ներու տարրական սահմաններ մը կը ճշդէին իբր թէ։ Անզօր դարձած այդ դաշնագրութիւններն ու յօդուածները, որոնք իրարու ետեւէ կուգային կաշկանդել անկման եզրը հասած «հիւանդ» պետութիւնը, «մեռնող տառ» մնացած էին թուղթերու վրայ միայն, մինչ անդին բիրտ իրա-

կանութիւնը կար Հայ ժողովուրդին կեանքին մէջ՝ ահռելի ու սպառնական շարունակ։ Փայլուն խոստումներ էին ամենն ալ, որոնց գործադրութիւնը չէր տեսնուէր։ Ժողովուրդի մը թանկագին հաւատարմութիւնը կար շահագործուած, փոխադարձուած ու վարձատրուած մանաւանդ օրէ օր մեծ համեմատութիւն առնող հալածանքներով, հարստահարութեամբ ու անխիղճ բռնաբարումներով, որոնք ամենէն խորունկ համբերութիւնն իսկ կ'ընդհատեն։ Յայտնի էր որ դիւանագիտօրէն կարելի չէր լուծել այս կնճիռը։ Խաղաղ միջոցը ո՛չ մէկ ստիպեցնող ոյժ կը ներկայացնէր Օսմ. կառավարութեան համար։ Բիրտ ոյժը, զէնքի ո՛յժն էր միայն որ կրցած էր ուղղութեան բերել Պալքաններու կեանքը։ Աղաչանք, աղերսանք ամենուն չէին ազդեր Թուրք բռնապետութեան։ Երէկ, Եւրոպական համաձայնութեան սպառնալիքին ներքեւ Հայը շողոմող կառավարութիւնը, այսօր երբ երկրին բաժանման վտանգն անհետացած էր այլեւս ժամանակուան մը համար գէթ, մոռցա՛ծ էր ամեն ինչ, ամեն տեսակ խոստում ու յանձնառութիւն։ Ի՞նչ պէտք է ըլլար հարկաւ ասոնց ամենուն անխուսափելի հետե-

ւանքը ։— Շարժում և ուժեղ պահանջ ։

Ու՝ փակուելով Հայկական Հարցին վերջին դիւանագիտական շրջանին վարագոյրը, ստեղծուեցաւ նոր կացութիւն մը, մըտքի տարբեր ու նոր հոսանքներ, կարմիր ճամբայ մը և կռուի ասպարէզ ։ Հայկական Յեղափոխութեան դիցանոյշը ծնաւ, իր հետ բերելով Հայկական Պատմութեան ոսկի էջերը, ուր ապագայ սերունդը պիտի կարդայ ցեղին ըմբոստութեան պատկերն ու աւետարանը ։

Հայկական Յեղափոխութեան պատճառները բազմատեսակ էին ։ Յիշե՛նք գլխաւորները ։

1. Կեանքի, պատիւի և ինչքի անապահովութիւն։ Սպանութիւններ և աւարառութիւններ։
2. Կրօնական աններողութիւն և հալածանք։ Իսլամի և քրիստոնեայի խտիր։
3. Տնտեսական հալածանք, հարստահարութիւն, հարկահանութեան ամենավատ սիսթեմ։
4. Կառավարչական յոռի կազմ, կաշառակերութիւն, անարդարութիւն և դատարաններու անվստահելիութիւն։
5. Մեծ ու պզտիկ բռնակալներու, աւատապետներու, պէյերու և աղաներու առանձնաշնորհեալ շահատակութիւններ։
6. Ընդունակութիւններու և ազգային կենսունակութեան չարաչար սպաննում։
7. Քաղաքացիական իրաւունքներու բռնաբարութիւն։

Այս պատճառները միացած էին ուրիշ քանի մը զօրաւոր ազդակներու հետ և դարբնած էին հայ ժողովուրդին մեծ դիւցազներգութիւնը, աւելի՛ հսկայ քան հին դարերու վիպական պատմութիւնները, աւելի ցնցող՝ քան հայկական մարտիրոսացումի բազմաթիւ էջերը։ Ահա՛ այդ ազդակները․

1. Եւրոպական նոր միտքերու հոսանքը դէպի Թուրքիա։
2. Հայկական ինքնածին յառաջդիմութեան ոգին։
3. Հայոց Ազգային Սահմանադրութիւնը.
4. Հայ կեանքին իմացական վերազարթնումը եւ Հայոց արեւելեան ու արեւմտեան Աշխարհիկ Գրականութիւնները։
5. Ռուսահայ նոր միտքեր, ազգային երգիչներ ու վիպասաններ։
6. Յեղափոխական շարժումներուն շնորհիւ իրենց ազատագրութեան տիրացած ազգերու օրինակը։
7. Օտար միջամտութեան հաւատքը։

Հայ Միտքին ընդհանուր զարթնումն ու գիտակցութիւնը անհրաժեշտօրէն Հայ ժողովուրդը պիտի դնէր յեղափոխական այն ճամբուն վրայ, ուրկէ անցեր էին Թուրքիոյ հորիզոնէն հեռացող բոլոր ստրուկ ազգեր։ Պերլինի Վեհաժողովէն վերջ միեւնոյն արիւնի ճանապարհն էր որ կը բացուէր այս ժողովուրդին ալ առջեւ։ Ու ազգային գործիչներ, խանդավառուած մանաւանդ օտար

միջամտութեան մը հաւատարով, ու գերագրգռուած բռնապետական ռէժիմին անհանդուրժելի տառապելիքներէն՝ հրապարակ իջած էին հնչեցնելու յեղափոխութեան կոչը և անոր կարմիր դրօշին ներքեւ հաւաքելու բոլոր ճնշուած ու կեղեքուածները։ Դարերէ ի վեր բռնակալութեան ծանր շղթաներով կաշկանդուած Հայ ժողովո՛ւրդն էր ահա որ աչքերը յառած Եւրոպայի, իր ձեռքերը կը շարժէր. և կը սպասէր որ Ցոյնը, Պուլկարը, Սերպիան, Գարատաղը ազատող քրիստոնեայ պետութիւնները շարժում մը ընէին՝ ի նպաստ դարերէ ի վեր արեւմուտքի քաղաքակրթութեան անունով տանջուող ու նահատակուող այս ժողովուրդին։ Երիտասարդ Հայաստանն էր որ ոտքի՛ կ'ելլէր։

# XX

Հայկական շարժումները՝ Տաճկաստանի մէջ.— Վարդենիսցիներու ընդհարումը.— Մուսա Պէկ և իր շահատակութիւնները.— Հնչակեան Կուսակցութեան կազմակերպութիւնը.— Կարնոյ ցոյցը.— Սարգիս Կուկունեանցի արշաւանքը.— Կառավարական խըստութիւններ.— Գաւառներու դրութիւնը.— Մայրաքաղաքը սեղմուած բոլորովին:

Հայոց հետեւելիք ճամբան շատ որոշ էր այլեւս.— ո՛չ մէկ բարիք ո՛չ մէկ բան սպասել կառավարութենէն, և՝ օրինակ ունենալով այն բոլոր ազգութիւնները, որոնք աղաչանքով ու աղերսանքով չէ՛ որ ազատուած էին, այլ՝ յեղափոխական գործունէութեամբ, հետեւիլ անոնց ընդգրկած դրօշին, կարմիր ու արիւնոտ: Ամեն կողմ ազգային գործիչներ միենոյն բանը կը քարոզէին Հայ ժողովուրդին: Ընկերութիւններ կը կազմուէին ամենուրեք և հասարակական գործունէութեան գաղափարը կը մշակուէր աւելի՛ եւս տենդագին:

Դժգոհութիւններ, գանգատ և բողոք կը բարձրանային ամէն կողմերէ և հայ ժողովուրդը կ'ապրէր լարուած հետաքըքրութեան մը մէջ։ Բողխում մը անխուսափելի էր։ Խոստումներով օրօրուող հայութիւնը այլեւս անհանդուր- կը գտնէր տիրող կացութիւնը։ Վստահութիւն ներշնչող ոչ մէկ պարագայ գոյութիւն ունէր։ Հալածանքը աւելի սաստկացած է կարծես։ Պարկեշտ աշխատութիւններէ խուսափող ցեղեր՝ Հայաստանի սրտին վրայ թառած, աշխատաւոր հայ երկրագործին արիւն քրտինքով վաստկած հոլով հացն էր որ կը խլէին։

Ութսունական թուականներուն ա՛յս էր ահաւասիկ Հայ իրականութիւնը՝ Տաճկաստանի մէջ։ Հայկական գաւառներու մէջ արիւն, աւեր, հալածանք ու հուր կը թագաւորէին։ Մշոյ դաշտը մանաւանդ սոսկալի կացութեան մը ենթարկուած էր։ Զանազան քիւրտ աւատապետներ ու չարագործներ հայ գիւղացիին պատուհա՛սն էին և ո՛չ ուրիշ բան։ Այս պայմաններուն մէջ Վարդենիսցիներուն ընդհարումը կուգար հայկական ընդվզումի անդրանիկ օրինակը տալ։ Զինուած քիւրտերու խումբ մը կը յարձակի Վարդենիսի գիւղացիներուն վրայ՝ փոր-

ձեւով հարսնեւորներուն ձեռքէն յափշտակել հարսնցուն, հարսնառի պահուն: Հարսնեւորները կը դիմադրեն. կռիւը կը սաստկանայ և երկու կողմէն ալ զոհեր կը տրուին: Քիւրտերը իրենց նպատակին մէջ չեն յաջողիր, և այս կռիւին արձագանգը մեծ կ'ըլլայ ամէն կողմ հայերուն մէջ: Եւ սակայն ասիկա բաւական չէր: Ուրիշ ցնցող չարագործութեան մը վիճակուած էր ստեղծել աւելի մեծ յուզում մը, որ Հայ կեանքին մէջ հսկայական ազդեցութիւն մը առաջ պիտի բերէր: Մուսա Պէյի առեւանգութիւնն էր այդ, կրկին Տարօնի շրջանակին մէջ: Ո՞վ չգիտեր Կիւլիզարի, Մուսա պէյի առեւանգած այդ աղջկան պատմութիւնը: Գործը արձագանգ գտաւ Պոլսոյ մամուլին մէջ. հայ թերթերը սկսան օրը օրին գրել Հայաստանի մէջ տեղի ունեցող բարբարոսութիւնները և բողոքել անոնց համար: Գաւառներէն ամեն օր Պատրիարքարան կը հասնէին հարիւրաւոր տեղեկագիրներ, որոնք փաստացի կերպով կը նկարագրէին Հայաստանի ամեն կողմը և Թուրքիոյ հայաբնակ գաւառներու մէջ գործուած ամեն տեսակ հարստահարութիւններ, անսանձ ու կամայական հալածանքներ, սպանութիւն-

ներ, կողոպուտ․ անապահովութիւն և այլն ։ Թագրիր Թագրիրի վրայ, Պատրիարքարանի կողմէ՝ առ Բ. Դուռը ։ Բայց անօգուտ

Ազգային գործիչներ՝ հալածանքի կ'ենթարկուէին տակաւ ։ Ահա՝ Խրիմեան, Նար Պէյ, Սրուանձտեանց, Մկրտիչ Փորթուգալեան, Մինաս Չերազ և լն․ մէկիկ մէկիկ կասկածելի կը դառնային ։ Մ. Փորթուգալեան 1885ին արտասահման ապաստանելով՝ Մարսիլիայի մէջ կը հիմնէր «Արմէնիա» թերթը և ծնունդ կուտար Վասպուրականի մէջ բակսուած Արմենական կազմակերպութեան ։ Ժամանակի ոգին տարբեր էր սակայն ։ Փորթուգալեան հայուն ցաւերուն դարման տանող ամբողջական քաղաքական ծրագիր մը չունէր․ սահմանափակ էր իր գործունէութեան ուղին, բայց անշուշտ ամենու կերպով գնահատելի ։ Քաղաքական որոշ դաւանանք և աշխարհահայեացք ունեցող կազմակերպութեան պէտքը իրականութեան անժխտելի պահանջն էր ։ Նոյն ինքն այդ անտեղիտալի պահանջին իբրև արդիւնք Հնչակեան Կուսակցութիւնը կը հիմնէին Աւետիս Նազարբէկ, Խան Ազատ, Մարօ, Յակոբ Մեղաւորեան, Շմաւոն, Գ. Ղարաճեան և այլըն, ու 1887ին նոյն կուսակցութեան օր-

կանոնին. — «Հնչակ»ի, — առաջին թիւը լոյս կը տեսնէր Ժընեւի մէջ՝ խմբագրութեամբ Աւետիս Նազարբէկի։ «Հնչակ»ի երեւումն ու Հնչակեան Կուսակցութեան կազմակերպութիւնը նոր թուական մը կը բանար Հայկական Հարցին ընթացքին մէջ։ Ծրագրուած յեղափոխական գո՛րծն էր որ հրապարակ կուգար որոշ առաջադրութիւններով և քաղաքական ու տնտեսական պահանջներով։ Յեղափոխական գաղափարին ընտելացած և մշակուած հայ միտքը ուժգին կը փարէր շուտով յեղափոխական դրօշին, ու կարճ ժամանակի մէջ իսկ Հնչակեան Կուսակցութիւնը իր չորսին կը բոլորէր պատկառելի ոյժ մը, որ տակաւ ի վիճակի կ՚ըլլար քաղաքական յանձնառութիւններ ստանձնելու։ Մուսա Պէյի ազատ արձակումը (1889) կը զայրացնէ բոլոր հայերն ու քրիստոնեայ աշխարհը։ Ամէն հայ դառնութեամբ կը լեցուի չարագործին արձակումովը։ Անանկացած կառավարութեան բարոյականութիւնը իր բոլոր փտած կողմերով անգա՛մ մըն ալ լոյս աշխարհ կուգայ։ Հետեւա՞նք։ — Անհանգստութիւնը կը շատնայ հայոց մէջ, խոր յուսահատութիւն մը ուժգին ընդվզում մը առաջ կը բերէ և կը սկսին դէպքերը գահավի-

ժիլ Հայաստանի մէջ։ Ձերբակալութիւննե-
րը ծայրայեղ համեմատութիւններ կ՚առ-
նեն, Հայ Թատրոնը կը բռնաբարուի, գը-
րաքննութիւնը կը սկսի և Հայ Միտքը կը
կաշկանդուի բոլորովին։ Տիրող այս աննը-
պաստ պայմաններու բռնական չէին կար-
ծես հայոց կսկիծը չատցնելու համար, և ա-
հա ազգավնաս պատրիարք մը, — Խորէն
Աշըգեան, — պատրիարքական գահը Սուլ-
թանին գործիք կը դարձնէ ու ինքնամա-
տոյց անձնուիրութեամբ մը իր խիղճն ու
ազգային զգացումները կը սպանէ՝ իր հա-
ւատարմութեան հաւաստիքը տալու համար
օգոստափառ վեհապետին։ Իրարու յաջոր-
դող չարագործութիւններու առթիւ՝ ո՛չ մէկ
բողոք, ո՛չ մէկ գանգատ։ Յեղափոխական
տէրրորին դաշոյնը կը փայլի ամեն կողմ և
ատրճանակը կը պայթի։ Թուրքիան հետըզ-
հետէ կը ցնցուի. կառավարութիւնը՝ անա-
բեկ՝ միջոցներ կը փնտռէ, սկսուած շարժու-
մը զսպելու համար։ Սարգիս Կուկունեան-
ցի սահմանագլուխի արշաւանքը շուարման
կը մատնէ կառավարութիւնը, Վանի շար-
ժումները Հայաստանէն ձայն կուտան եւ
Ագրիպասեանի կռիւը հայ հրապարակին աւե-
տիս կը բերէ։

Կարնոյ ընդհարումը տեղի կ'ունենայ վերջապէս՝ 1890ին։ Մուխպիրի սատըգ ստորագրութեամբ տեղեկագրի մը վրայ Սուլթանը հրաման կ'ընէ Կարնոյ վալիին՝ խուզարկել հայոց եկեղեցին ու Սանասարեան վարժարանը՝ զէնք, թնդանօթ ու ռազմամթերք գտնելու համար։ Կուսակալը Յունիս 5ին յայտնի համարձակ հրամայուած խուզարկութիւնը կը կատարէ և ամէն անկիւն ուշադրութեամբ կը քննէ՝ առանց բան մը գտնելու։ Ասոր վրայ Հայ ժողովուրդը կը յուզուի և հետևեալ օր՝ գործադուլ ըրած՝ եկեղեցի ու առաջնորդարան կը դիմէ, այս առթիւ իր զգացած վիշտը Նախ ազգ. իշխանութեան և ապա անոր միջոցաւ Սուլթանին ներկայացնելու համար։ Իր արժանապատուութեանը մէջ վիրաւորուած Հայ ժողովուրդը խումբ խումբ շուկաները կը պտտի և փակել կուտայ որևէ հայու բաց խանութ։ Գործադուլը կը շարունակուի երեք օր և ահա չորրորդ օրը 6,000 կառավարական զինուորներ կը սկսին հալածել ժողովուրդը, որ ճարահատ՝ կը դիմադրէ։ Թուրք ամբոխն ալ կը գրգռուի և թալան ու սպաննութիւն ծայր կուտան։ Ընդհարման պահուն երկու կողմէն ալ բաւա-

կան զոհեր կուտան, և՛ հազիւ հազ ցոյցին առջևը կառնուի։ Կարնոյ այս ընդհարման արձագանգը կը հնչէ ամեն կողմ և գաւառներու մէջ, առանց անո՛ր ալ արդէն յուզուած Հայութիւնը՝ կը գերագրգռուի բոլորովին։ Իսկ Թուրք կառավարութիւնը իր խստութիւնները կ'ուժեղցնէ հետզհետէ, բանտարկութիւնները կը շատցնէ, բոլոր կասկածելի անձնաւորութիւնները հսկողութեան ներքեւ կ'առնէ և ընդհանուր պատերազմական վիճակի մը կը վերածէ Տաճկաստանը։ Գաւառներու գրութիւնը կը դառնայ անհանդուրժելի։ Իր Պատրիարքարանէն լքուած՝ անտէր, անտիրական Հայ ժողովուրդը, յուսահատ բոլորովին իր եկեղեցւոյ հայրէն, դէմ դիմաց կը գտնէ ինքզինքը կառավարական խիստ ըէժիմի մը։ Իսկ մայրաքաղաքին մէջ գործուած ահարեկիչ շարժումները իշխանութիւնը կը մղեն արտակարգ միջոցներու։

# XXI

Գում Գափուի Ցոյցին եւրիւնը.— Փոքր Հայքի մէջ շարժումներ.— Սասունի ապստամբութիւնը եւ կոտորածը.— Մայիսեան Ծրագիրը.— Պապը Ալիի Ցոյցը ու Հնչակեան Կուսակցութեան պահանջները.— Հայկական կոտորածներ.— Զէյթունի պատերազմը.— Հայկական ճգնաժամը կը սկսի։

Հայաստանի մէջ պատահած դէպքերը, ամեն կողմ տեղի ունեցող հարստահարութիւնը, խժդժութիւններն ու հալածանքները անզօր դարձած էին Հայոց Պատրիարքարանը շարժելու։ Աշըգեան Պատրիարք, անտարբեր ու անսիրտ հանդիսատեսը դարձած իր ժողովուրդին ցաւերուն ու տանջանքներուն՝ ո՛չ իսկ ուշադրութիւն կը դարձնէր հայկական գաւառներէ ամեն օր Պատրիարքարան թափած տեղեկագրերուն։ Իսկ Բ. Դուռը և Սուլթանը, աւելի եւս քաջալերուած ազգին հոգեւոր պետին այս դաւաճանութենէն, կ'ուզէին խաղալ հայ ժողովուրդին զգացում-

նորուն հետ և արհամարհել անոր բողոքի ճիչերն ու աղաղակները: Տիրող միակ յեղափոխական մարմինը, — Հնչակեան Կուսակցութիւնը, — ժողովրդային հաւաքական գանգատները լսելի ընել տալու համար կազմակերպած էր Գում-Գափուի պատմականնշանաւոր ու մեծ Ցոյցը, որ 1890 Յուլիս 15ին դղրդեց Կ. Պոլիսն ու Եւրոպան: Անիկա դարերէ ի վեր ընկճուած, հալածուած, հարստահարուած ու մարտիրոսացած ժողովուրդի մը բուռն զայրոյթին ուժգին պոռթկումն էր, որ՝ հետեւած Հայաստանի աղէտներուն՝ նպատակ ունէր Սուլթանին ու կառավարութեան ուշադրութիւնը հրաւիրել ընդունակ ժողովուրդի մը կատարւած իրաւունքներուն վրայ: Հայկական Յեղափոխութեան շրջանին մէջ Գում Գափուի Ցոյցը այն մեծ հանգրուանն է, որուն սեմին առջև հայ ժողովուրդը սարսռաց պահ մը ու ապա՝ ոտք նետեց դէպ ի արիւնի ճանապարհը:

Հազարաւոր հայեր, Յուլիս 15ին, դիմած էին Գում Գափուի Մայր եկեղեցին, ուր կը գտնուէր նոյն օր Աշըգեան Խորէն Պատրիարքն ալ: Ժամերգութեան պահուն ժողովուրդին և ցուցարարներու բուռն պահան-

ջին վրայ կարդացուեցան հրապարակաւ այն յայտարարութիւններն ու ճառերը. որոնք կը պարզէին Հայ ժողովուրդին բանաձեւուած պահանջները։ Այնուհետեւ Պատրիարքէն պահանջուեցաւ թափօրին գլուխն անցնիլ ու ժողովուրդը տանիլ Սուլթանին, որպէս զի անիկա ուղղակի ներկայացնէ իր ցաւերն ու արդար պահանջումները։ Պատրիարքը փախաւ Պատրիարքարան, բայց ժողովուրդն ու ցուցարարները հոն հասան և ատրճանակներով ստիպեցին որ Պատրիարքը իր հօտին գլուխը անցնի։ Ահա թէ ի՞նչ կ՚ըսէ ցոյցը կազմակերպող Մարտինը, և ի՞նչ կ՚ըսէ ժողովուրդը. ինք։

«Հա՛յ ժողովուրդ.

«Դուն կ՚ուզես այսօրուան Ցոյցով յայտարարել ամբողջ աշխարհի՝ թէ որո՛նք են քու պահանջներդ։ Դուն քաջ գիտես որ դիւրութեամբ չեն իրականանար անոնք (պահանջներդ)։ Դու գիտես որ կեանքդ վտանգի կ՚ենթարկես քու ամէն մէկ արդար քայլափոխիդ մէջ։ Բայց ուրիշ անելիք չմնաց այլեւս։ Հոգիդ հասած բերանդ՝ դուն պարտաւորուած ես դիմելու ամէն տեսակ ծայրայեղութիւններու, որոնց միջոցով միմիայն կրնաս քու արդար ձայնդ լսեցնել տալ աշխարհին և քու արդար պահանջներուդ նպատակին հասնիլ։ Ահա ա՛յս է մեր այսօրուան Ցոյցին խորհուրդը։ Գիտենանք մեր գործը առաջ մղել և մեր

դատը պաշտպանել՝ նոյն իսկ ամենածանր եւ ամենատուղ գնով:

«Որո՞նք են քու պահանջներդ:

Քու բոլոր թշուառութեանց պատճառը՝ քու անտեսական դրութիւնդ է, որ յեղափոխուելու անհրաժեշտ է: Հայրենիքիդ հողը քուկդ չէ ամենեւին: Դուն կը վարես, կը ցանես, ոչխարներու հօտեր կը բուծանես, վերջապէս չարաչար կաշխատիս, բայց արդիւնքը քուկդ չէ:

«Դուն կ'ուզես՝ որ հողը մշակողներուն պատկանի:

«Դուն կ'ուզես՝ որ ամէն մարդ պարկեշտօրէն աշխատի իր ապրուստն հայթայթելու համար:

«Եւ որպէսզի տնտեսական պահանջներդ իրագործես՝ դուն պիտի անօրինես ճակատագիրդ՝ օրէնսդիր ժողովով, մամուլի, խօսքի, խղճի, գումարման, ընկերութիւններու եւ ընտրողութեան գործերու ազատութիւնով:»

## ՄԵՐ ՊԱՀԱՆՋԸ

«Ամենապատիւ Սրբազան Պատրիարք Հայր.

«Երկար տարիներէ ի վեր տեսնելով որ Հայաստանի մէջ միշտ անպակաս են անտեղի ձերբակալութիւններ, յանիրաւի վճիռներ, անգութ աքսորանք: Տեսնելով որ փոխան ժողովրդեան մեծ համբերութեան՝ տարուէ տարի այսպիսի դէպքերը կը բազմապատկուին ասկէ՝ անտանելի կերպերով, մանաւանդ վերջին տարիներս՝ դպրոցք, վանք, եկեղեցիք, տներ անընդհատ կը խուզարկուին. եւ ահա Կարնոյ մէջ ալ նոյնպիսի խուզարկութիւնք կատարուելով ժողովրդեան արդար բողոքին վրայ՝ ոչխարի պէս սուինահար անխնայ կը ջարդուին. այո՛, կը ջարդուի անմեղ

և յանդէն ժողովուրդը կառավարի զօրաց կողմանէ։ Տեսնելով որ բազմաթիւ հայ դպրակներն և հարիւրաւոր հազարաւոր վիրաւորելոց և վիժող մեր քերց ու մարց աղաղակներն երբէք ուշադրութեան չեն առնուիր և այնպիսի դէպքեր Վանայ, Մշոյ և այլ գաւառաց մէջ ամէն օր կը կրկնուին, մինչև իսկ հայոց տներէն հաց կտրելու դանակներ կը ժողովուին և ընդհակառակն՝ Թրքաց ու քրտաց զէնքեր կը բաշխուին։ Տեսնելով վերջապէս որ մեր մայր երկիրը խիստ պաշարման մէջ կը գտնուի և այսպիսով հայ ժողովրդեան մէն մի շարժում կասկածանաց կ'ենթարկուի,—

«Մենք համայն Հայ ժողովուրդին անուանով կը յայտարարենք ի լուր ամենեցուն որ այն կացութեան շարունակութեամբ՝ կենաց, պատուոյ և ընչից ապահովութիւն ունենալ անկարելի է, և միանգամայն Ձերդ Սրբազնութիւն և ազգային փորձութիւնք անտարբեր, աւելի ճիշդ՝ անկարող կը գտնուիք անմիջական դարման մը հայթայթելու։ Հետևաբար կը պահանջենք, որ զմեզ առաջնորդէք կառավարութեան, որպէսզի անձամբ յայտնենք իրեն՝ հայ ժողովուրդի վիճակն ու պահանջները»։

Խեղճ Աշըրգեան անհարեհ հազիւ հազ մօտակայ դեղարանը ապաստանեցաւ, բայց երբ ամբոխը դեղարանը քանդել սպառնայ Աշըրգեան իր տկարութենէն՝ կառքի մը մէջ դըրուեցաւ։ Աղմկալի բացագանչութիւններով կառքը և ամբոխն ու ցուցարարները կը դիմէին Բ. Դուռ։ Ցոյցը սկսուելէն մինչև Դալի

Փաշա սատրիկաններ լոկ համադխատատեաններ էին, բայց հոն հասած չհ սասած՝ Տէրմիկ Փաշա, քանի մը բարձրաստիճան սպաներ, սատրիկանական նախարար Քեամիլ Պէյ և այլ բարձրաստիճան պաշտօնեաններ, որոնք՝ Սուլթանին կողմէ ղրկուած էին ամէն միջոց ի գործ դնելով ցոյցը գաւըրեցնելու համար, սկսան հաղարաւոր զինուորներու միջոցաւ յարձակում գործել ժողովուրդին վրայ՝ սուինններով ու հրացաններով։ Տեսարանը ահռելի էր և կռիւը անհաւասար՝ զինուորներուն ու ժողովուրդին միջեւ։ Պատրիարքը հազիւ կրցաւ յոյնի մը տուն մտնել, ուրկէ Գալաթ տարուեցաւ։ Կռիւը տարածուեցաւ մինչեւ Գում Գաբու։ Հայերը ունեցան 3 նահատակներ ու բազմաթիւ վիրաւորներ։ Հարիւրէն աւելի կը հաշուուէին թշնամիներու զոհերը։

Գում Գաբուի ցոյցը Հայկական աքսողաղըն էր, որ իր վրայ հրաւիրեր էր անտարբեր Եւրոպայի և Մեծ Տէրութեանց ուշադրութիւնները։ Օտար Մամուլը գնահատեց զայն, իբրեւ առաջին հայ յեղափոխական գիտակցական ու նախագծուած քայլ, եւ իբրեւ հայկական ձգտումներու գործնական արտայայտութիւնը։ Անիկա մեծագոյն պր-

րօպաղանտն էր ի նպաստ Հայկական Յեղափոխութեան, որ կուզար սարսափեցնել խոստմնադրուժ կառավարութիւնը և հասկցնել թէ յեղափոխութեան հնոցը անշէջ է այլեւս։

Անդրանիկ այս կազմակերպեալ ցոյցէն վերջ Հայկական Յեղափոխութեան պատմութեան մէջ նշանակելի են գաւառային շփոթութիւնները, որոնց մէջ յատուկ և նշանակելի տեղ կը բռնեն Փոքր Հայքի շարժումները։ Երբ մէկ կողմէն Կ. Պոլսոյ մէջ տէրրօրական գործողութիւնները կը շարունակուէին, մատնիչներն ու ազգադաւները խստիւ կը պատժուէին, և անոնց հետեւանքով կառավարութիւնը իր հալածանքին ու հսկողութիւններուն մեծամեծ համեմատութիւններ կուտար, անդին գաւառական յեղափոխական մասնաճիւղերն ալ ուժգին շարժման կը սկսէին՝ յայտարարութիւններով, տէրրօրական գործողութիւններով, հրապարակային ցոյցերով և մէկ խօսքով անօրինակ ու եռանդուն գործունէութեամբ մը, որ կը կատղեցնէր կառավարութիւնն ու իր պաշտօնեաները։ Ցաւի աղաղակները՝ տակաւ աւելի բարձրաձայն՝ կը հասնէին Հայաստանէն, Մուշէն, Վասպու-

րականէն, Բաւէնէն, Սեբաստիայէն, Շապին
Գարահիսարէն, Ալաշկերտէն, Կարինէն ևն։
Եւ ատոնց բոլորին հանդէպ կառավարու-
թիւնը միայն մէ՛կ պատասխան ունէր, ա-
ռանց լուրջ կերպով վերահասու ըլլալու իրե-
րու դրութեան.— Աւելի և աւելի դառնացնել
հայոց վիճակը։ 1892ին Տարօնի շրջանը
ամբողջ ալեկոծման մէջ էր, իսկ դէպքերը
կը գահավիժէին հետզհետէ ամէն կողմ Մեծ
ու Փոքր Հայքերու մէջ։ Ահա յուզումները
կը շատնան Մարզուանի, Եոզկատի, Ամա-
սիոյ, Կեսարիոյ, Մուշի, Կարնոյ և Տրապի-
զոնի մէջ։ Կը սկսի էնկիւրիի շռնդալից դա-
տավարութիւնը. բանտերը կը լեցուին ա-
մէն կողմ անմեղ հայերով, կախաղանները
կը գործեն և աքսորավայրեր ամէն օր նո-
րանոր հայ քաղաքական յանցաւորներ կ՚ըն-
դունին, ինչպէս՝ Աքիա, Աֆրիկեան Տրիպո-
լիս, Պոտրում ևայլն։ Ամբողջ Թուրքիան ու
մանաւանդ հայաբնակ գաւառները անօրի-
նակ եռուզեռի մը մէջ կը ծփան։ Ծանրա-
կշիռ կը դառնայ մանաւանդ Մուշի շրջա-
նը։ Կառավարութեան որոշ դիտաւորու-
թիւնն էր արդէն ջնջել հայութիւնը և մի-
անգամընդմիշտ ազատիլ անոր շարժումնե-
րուն առաջ բերած մղձաւանջէն։ Ուստի քա-

ջալերեց քիւրտերն ու չէրքէզները և նոյն իսկ կազմակերպեց Համիտիէ հեծելազօրքը ։ 1894 Յուլիսին քիւրտ աշիրէթներ Սասունցիներուն վրայ իրենց ըրած արշաւանքէն ետ մղուելով և չարաչար պարտուելով կառավարութեան կը դիմեն ։ Սա , որ առիթ կը փնտռէր Սասունի վրայ քալելու , ապստամբութիւն կը մեկնէ Սասունի պարզ ինքնապաշտպանութիւնը, և հսկայ բանակով մը կուգայ Սասունի վրայ ։ Տեղի կ'ունենայ ընդհանրապէս Սասունի և մասնաւորապէս Տալւորիկի ու Կէլիէկիւզանի ջարդը , որ դղրդեցուց ամբողջ քաղաքակրթուած աշխարհը ։ Մեծ Պետութիւններ Բ. Դրան դիմեցին և պահանջեցին բացատրութիւն և խիստ քննութիւն ։ Կազմուեցաւ Քննիչ Յանձնախումբ մը , որուն ընկերացած էին Եւրոպացի պատուիրակներ ալ ։ Այս Յանձնախումբը , որ 1895 Յունվար 24 էն մինչև Յուլիս 21 գործեց , ամբողջ 6 ամիս , հաստատեց թէ հայերը ո՛չ թէ ապստամբած էին , այլ՝ իրենց վրայ եղած յարձակման ատեն ինքզինքնին պաշտպանած էին և այս դէպքին ամբողջ պատասխանատուութիւնը կը ծանրանայ կառավարութեան վրայ ։

Սասունի պատուիրակութիւնը երբ կը գոր-

ծէր Մուշի մէջ, անդին Անգլիա՝ Ռուսիոյ և Ֆրանսայի հետ, Հայկական վեց նահանգներուն համար, — Էրզրում, Պիթլիս, Վան, Սըվազ, Խարբերդ և Տիարպէքիր, — կը մշակէր բարեկարգութեանց ծրագիր մը, որ Մայիս 11ին Բ. Դրան ներկայացուած ըլլալով կոչուեցաւ Մայիսեան Ծրագիր։ Սուլթանը ամբողջ 5 ամիս պետութեանց դեսպանները զբաղեցուց և վերջապէս Հոկտ. 17ին ստորագրեց ծրագիր մը, որ աւելի իր ցանկութիւններուն համապատասխան էր, քան Մեծ Տէրութեանց պահանջներուն։ Հայկական նահանգներու բարենորոգութեան այս հարցին մէջ միմիայն Անգլիան էր բարեացակամօրէն վերաբերուողը, երբ Ռուսիա չարունակ արգելքներ կը յարուցանէր՝ Հայկական որևէ պահանջքի իրագործման շուրջ։

Դեսպանաց յիշատակագիրը, որ մատուցուեցաւ Բ. Դրան, կը թուէ այն բոլոր բարեկարգութիւնները, որոնք վարչային, ելմտական և դատաստանական տեսակէտներով անհրաժեշտօրէն պէտք է մուտ գտնեն Հայաբնակ նահանգներուն մէջ։ Հոս կուտանք յիշատակուած կէտերը։

1. Ի հարկին վիլայէթներու թիւին նուազումը։
2. Վալիներու ընտրութեանց մասին երաշխաւորութիւն։

3. Քաղաքական յանցանքով բանտարկուած կամ դատապարտուած հայոց համար՝ ներում.
4. Գաղթող կամ աքսորուող հայոց դարձը։
5. Հասարակաց իրաւունքի դէմ գործուած յանցանաց և ոճրագործութեանց առկախ մնացած դատերու վերջնական լուծումը։
6. Բանտերու և բանտարկեալներու վիճակին քննութիւնը։
7. Նահանգներու մէջ բարեկարգութեանց գործադրութեան հսկելու համար բարձրաստիճան պաշտօնատարի մը ընտրութիւնը։
8. Կ. Պոլսոյ մէջ մնայուն Կեդր. Յանձնաժողովի մը հաստատումը։
9. Սասունի, Տալւորիկի և այլ դէպքերու միջոցին հայոց կրած վնասներուն փոխարինութիւնը։
10. Կրօնափոխութիւններու մասին կանոնագրութիւն։
11. Հայոց շնորհուած առանձնաշնորհումներու եւ իրաւունքներու պահուիլն ու խստիւ գործադրութիւնը։
12. Ասիական Թուրքիոյ միւս վիլայէթներու հայոց կացութիւնը։

Աւելորդ չենք համարիր հոս զետեղել ամփոփումը 1895 Մայիս 11ին դեսպաններու Բ. Դրան մատուցած բարենորոգմանց ծրագրին ։

| | | | | |
|---|---|---|---|---|
| Գլ. | Ա. | Վալիներ | 1-3րդ | Յօդուած. |
| | Բ. | Միւթէսարըֆներ | 4- | » |
| | Գ. | Գայմագամներ | 5-6րդ | » |
| | Դ. | Նահիյէներ | 7-17րդ | » |
| | Ե. | Փօլիս | 18-20րդ | » |

Զ. Ժամատարմաներ 21րդ »
Է. Բանտեր 22րդ »
Ը. Նախաքննիչ Յանձաժողով 23րդ »
Թ. Բրդերուն գօնթրօլը 24րդ »
Ժ. Համիտիէ հեծելազօրք. 25րդ »
ԺԱ. Կալուածագրերու խնդիր 26րդ »
ԺԲ. Հարկահաւաքումներ 27-28րդ »
ԺԳ. Արդարութիւն 29-40րդ »

Բ. Դրան և դեսպաններուն միջեւ կայացած համաձայնութեան համաձայն 1895 Հոկտ. 15ին աւարտած և Հոկտ. 17ին ստորագրուած վերջնական ծրագրին ամփոփումն է հետեւեալը: Ամբողջը կը բաղկանայ 32 յօդուածներէ, որոնք թէեւ դեսպաններու ներկայացուցած Մայիսեան ծրագրին լայն նպաստաւորութիւնը չունին, այսուհանդերձ կրնին Հայ ժողովուրդին վիճակը շատ որոշ ու չօշափելի բարւոքումներու կ'ենթարկեն, ինչ որ արհամարհելի ըլլալէ շատ ու շատ հեռի է:

Գլ. Ա. Կուսակալութիւնք և գաւառք. 2 Յօդ.
Բ. Գայմագամներ. 2 »
Գ. Հանրային պաշտօնէից մէջ քրիստոնէից Համեմատութիւնք. 1 Յօդ.
Դ. Սանճագներու և գաւառներու ժողովներ. 1 Յօդ.
Ե. Նահիյէներ. 10 »
Զ. Արդարութիւն. 3 »
Է. Ոստիկանութիւն. 2 »

Ը. Ոստիկան զինուորներ. 2 »
Թ. Գիւղային ոստիկանութիւնք. 1 »
Ժ. Բանտեր և նախաքննիչ ցնձժզ. 2 »
ԺԱ. Քիւրտերու գօնթրօլը. 1 »
ԺԲ. Համիտիյէ հեծելազօրքեր. 1 »
ԺԳ. Կալուածագրեր 1 »
ԺԴ. Հարկահաւաքում. 1 »
ԺԵ. Տասանորդներ. 1 »
ԺԶ. Գօնթրօլի միայուն յանձնաժողով. 1 »

Սուլթանը մինչ մէկ կողմէն Հայաստանի բարենորոգմանց ծրագրին համար կը բանակցէր ու վերջապէս զայն կը ստորագրէր, միւս արիւնոտ ձեռքով ալ ջարդին հրամանները կը հեռագրէր հետեւեալ կարգախօսական բանաձեւով.

«Ստուգուած է որ անիծեալ Հայ յեղափոխականները գաղտնի կը պատրաստուին կոտորել իսլամները, առեւանգել իսլամուհիները և աւտանել մզկիթները։ Ի մօտոյ հոս ալ այդպիսի գայթակղելի ձեռնարկ մը պիտի ընեն եղեր։ Ուստի, բոլոր պաշտօնական անձերուն և իսլամ ժողովուրդի գլխաւորներուն ծանուցանելով յեղափոխականներու այս չար խորհուրդները, յորդորեցէք զանոնք որ զգոյշ գտնուին իսլամ ժողովուրդը. և դուք ալ կարեւորն է գործ դնելով շուտով անդրկապրեցէք։ Հակառակ պարագային զէնքով պատասխանեցէք։»

Ու 1895ի աշունը կը սկսէին ջարդերը, հետեւելով՝ կրկին Հնչակեան Կուսակցութեան սարքած Բաբը Ալիի հսկայական ցոյ-

մէ ընդունուած է իբրեւ կառավարական սկզբունք, միակ նպատակ ունենալով բնաջնջել Հայերը իրենց բնիկ երկրէն։

«Այն պաշարման վիճակին դէմ, որուն մատնուած է մեր բնիկ երկիրը մասնաւորապէս քանի մը տարիէ ի վեր։

«Քաղաքական անիրաւ ձերբակալութեանց, բանտարկեալներուն վրայ գործադրուած տանջանքներուն, քիւրտերու վայրագութեանց եւ հարկահաններու կեղեքումներուն դէմ։

«Սասունի կոտորածին դէմ, ուր մեր հազարաւոր եղբայրներն ու քոյրերը՝ իրենց կեանքին, պատւին ու ինչքին պաշտպանութեան համար ապստամբներ նկատուեցան և Օսմ. զինուորներուն կողմէն անգթաբար ջարդուեցան։

«Քիւրտերու և Թուրք զօրքերու ամէն օր գործադրած խժդժութեանց և յարձակումներու դէմ, յարձակում՝ որուն կրկնումն արգիլելու համար, հակառակ Սասունի դէպքերէն վերջ տրուած խոստումներուն, մինչև հիմա ոչ մէկ երաշխաւորութիւն չէ տրուած։

«Եւ յանուն մեր արդար իրաւանց՝

«ՄԵՆՔ ԿԸ ՊԱՀԱՆՋԵՆՔ.—

«Օրինական իրաւունքներ, որոնք բացարձակօրէն մեզի երաշխաւորեն մեր կեանքին և ինչքին բացարձակ ապահովութիւն, մեր պատւոյն պահպանութիւն և յարգանք։

«Ազատութիւն խղճի, խօսքի, մամուլի և հանրային գումարումներու, և հաւասարութիւն՝ օրէնքին առջեւ։

«Արգիլում նախնական բանտարկութիւններու

և կամայական ձերբակալութիւնները։

«Արտօնութիւն զէնք կրելու, քանի որ քիւրտերը զինաթափ ընել կարելի չէ։

«Վիլայէթներու վարչական նոր բաժանում, ազգագրական սահմանագծերով։

«Հայկական վեց նահանգներու համար Եւրոպացի ընդհանուր կառավարիչի մը անուանում և քուէարկութեամբ ընտրութիւն տեղական ժողովի մը, որ աջակցի ընդհ. կառավարիչին։

«Բարենորոգութիւններ Ատանայի և Հալէպի կուսակալութեանց մէջ ալ, ուր հայերը կարևոր թիւ մը կազմեն։

«Բարեկարգութիւն՝ ոստիկանական և ժանտարմայի դրութեանց մէջ:

«Տնտեսական բարենորոգումներ, ինչպէս, հարկերու թեթևացում, տարապարհակ աշխատութեանց ջնջում, բռնագրաւումներու դադարում, միաձեւ տուրքերու հաստատութիւն, ձրի աշխատութեանց և տասանորդի դրութեան ջնջում ևայլն։

«Թափառաշրջիկ քիւրտերու թափառման արգիլում, պարկեշտ աշխատութեան մղում, ցեղապետներու (աշիրէթ) ջնջում, Համիտիյէ զօրքերու արձակում են։

«Երկրին հասոյթներուն տեղական պէտքերու յատկացում։

«Ներում բոլոր հայ քաղաք. բանտարկեալներուն, աքսորեալներուն ու փախստականներուն։

Պապը Ալիի Ցոյցէն ու Կ. Պոլսոյ խռովութիւններէն վերջ ահա կոտորածները կը սկսէին շրջան առնել Տրապիզոնէն ու սա-

րածուիլ դէպի ներս ու արեւմուտք ։ Հոկտեմբերէն մինչեւ Դեկտեմբերի կէսը Տաճկաստանի մէջ շատ մը հայաբնակ քաղաքներ ու գիւղեր խուժանին ու կառավարական զինուորներուն ձեռքով կը հրդեհուին. հայ ժողովուրդը կոտորածի կ'ենթարկուի , տուներ ու խանութներ կը կողոպտուին ։ Անհնար է նկարագրել Թուրք ամբոխին գործած աւերմներն ու խժդժութիւնները , որոնք որեւէ սիրտի , զգացումի և քաղաքակրթութեան տէր մարդ՝ կը սարսռեցնեն ։ Զարդերու արձագանգը կը հասնի Եւրոպա եւ Մամուլը օրը օրին կ'արձանագրէ ամեն տեսակ տեղեկութիւններ ։ Անգլիական Նաւատորմիղը Տարտանէլ կը ղրկուի , և , հակառակ թէ Հայերը իրենց յոյսերու իրագործման եբազը կ'ունենան , ահա Նաւատորմիղը ետ կը կենայ՝ Հայը Սուլթանին վրէժխնդրութեանը յանձնելով ։

Աւելի քան հարիւր հազարաւոր կեանքեր կորսուեցան Հայկական կոտորածներու ժամանակ , սակայն այս կեանքի կորուստներն ալ իրենց բարոյական արդիւնքէն զերծ չեն , վասնզի Ջարդերուն հետեւանքով , ըստ Բրոֆ . Կ . Թումայեանի , հետեւեալ շահերն ունեցանք ։

1. Անգլիոյ համակրութիւնը վաստկեցանք, հոգ չէ թէ Անգլիոյ կառավարութեան դիրքը խնդրական ըլլայ։
2. Հայկականական հարցը ըստ արժանւոյն Եւրոպային ճանչցուեցաւ:
3. Դատախարակութեան աւելի մեծ եռանդ մը առաջ եկաւ թէ՛ բնաշխարհին և թէ՛ արտասահմանի մէջ։
4. Հայ գրականութիւնը զարգացաւ։
5. Համերաշխութեան և զոհողութեան ոգին ըստեղծուեցաւ. հայոց մէջ հայրենասիրութեան հուրն արծարծուեցաւ, ինքնապաշտպանութեան գաղափարը տարածուեցաւ և իրաւունքներու պաշտպանութեան մտածումը տեղաւորուեցաւ միտքերու մէջ։
6. Անձնուէր զինուորներ երեւցան։
7. Արտասահմանի մէջ Հայկական կեդրոններ հաստատուեցան։

Թուրք բռնապետութիւնը հայերու դէմ իր ընդգրկած քաղաքականութեան մէջ, մեծ ուշադրութիւն դարձուցած էր մասնաւորաբար ա՛յնպիսի վայրերու վրայ, որոնք իրենց բնական անմատչելի դիրքով և իրենց բնակիչներու պատերազմական արիութեամբ բացառիկ վիճակներ կը ներկայացնէին։ Տաճկաստանի մէջ Սասունն ու Զէյթունը կը ներկայացնէին այս պայմանները։ 1894ի ապստամբութեան ատեն արդէն կառավարութիւնը ծանր յաջողած էր հարուած մը տալ

Սասունի, այնպէս որ այն գաւառը այլեւս մտահոգիչ ըլլալէ դադրած էր։ Զէյթունը կար սպառնական, այն Զէյթունը, որ քանիցս ի դերեւ հանած էր կառավարութեան ծրագիրները, ուժգին ընդդիմութեամբ և իր անպարտելի կամաւորներով։ Մինչեւ 1890 արդէն քանիցս փորձուած էր բնաջինջ ընել այս լեռնային գաւառը։ Վերջին անգամ 1895 ին, Գում Գաբուի ցոյցէն ետքը շատ մը ծրագիրներ մշակած էր կառավարութիւնը՝ ջնջելու համար Զէյթունի Հայութիւնը, պատրուակ բռնելով տեղական քանի մը խնդիրներ, սակայն չէր յաջողած։ 1895 ի աշունը կարգ մը Հնչակեան գործիչներու ձերբակալումը պատրուակ նկատելով Զէյթունի վրայ՝ կը յարձակի։ Զէյթուն կը ստիպուի ապստամբութեան դրօշը բարձրացնել և Օսմ. զօրանոցը գրաւելով պատերազմական դիրք բռնել։ Սուլթանը 110,000 զօրք կը ղրկէ. բայց ի զուր. Րէմզի և Էթհէմ փաշաները իրարու ետեւէ բանակին գլուխը կ'անցնին, սակայն կարելի չըլլար պարտութեան մատնել կիլիկեան այս կտրիճները։ Պատերազմը կը տեւէ 45 օր։ Վերջապէս դեսպաններու միջոցաւ Յունվ. 16ին հաշտութիւն կը գոյանայ հետեւեալ պայմաններով։

1. Զէյթունցիները անպայման կերպով կը մերժեն յանձնել Օսմ. կառավարութեան՝ իրենց նորեկ պարագլուխները։
2. Զէյթունի նորեկ վեց պարագլուխները պիտի ձըգեն Օսմ. հողը։ Բ. Դուռը երաշխաւորութիւն կուտայ Օսմ. Պետութեան ծախքով անոնց ապահով Եւրոպա անցնելուն։
3. Բանակցող հիւպատոսները իրենց վրայ կ'առնեն այս պատասխանատուութիւնը։
4. Կատարեալ ներում բոլոր ապստամբներուն եւ Զէյթուն ապաստանողներուն։
5. Պիտի հաստատուի քրիստոնեայ կառավարիչ, ընտրութեամբ կառավարութեան և հաւանութեամբ Եւրոպ. Պետութեանց։
6. Ոստիկանութիւն, հարկահան, զինուոր և կառավարական պաշտօնեայ՝ պիտի ընտրուին ու կազմուին նոյնիսկ Զէյթունցիներէն։
7. Զէյթունցիք չպիտի վճարեն յետամնաց տուրքերը և հինգ տարի տուրքէ զերծ պիտի ըլլան։
8. Պիտի հաստատուի տուրքերու համեմատական դրութիւն։
9. Զէյթունցիներու կեանքը, պատիւը, ինչքն ու կրօնական ազատութիւնը պիտի ապահովուի Եւրոպական տէրութիւններու կողմէ։
10. Զօրանոցէն գրաւուած պատերազմական զէնքերու վերադարձում։
11. Այրուած զօրանոցը կառավարութիւնը պարտի վերաշինել։
12. Բանակցող Եւրոպացի հիւպատոսներ չպիտի Զէյթունէն մեկնին, մինչեւ այս պայմաններուն գործադրութիւնը։

**13. Եւրոպական տէրութիւններ Մարաշի մէջ պիտի հաստատեն հիւպատոսներ, որոնք պիտի հսկեն Զէյթունի նոր ռէժիմին գործադրութեանը եւ պահպանութեանը։**

Հայկական կոտորածներէն ու Զէյթունի ապստամբութենէն վերջ, անպաշտպան Հայութիւնը, կիսամեռ ու չուարած, կը մնայ դէմ առ դէմ իր դահիճներուն հետ։ Սոսկալի ճգնաժամ մը կը սկսի, ուր չնչել կարելի չէ։ Երթեւեկը կը դադրի, ապահովութիւնը չվերահաստատուիր ըստ արժանւոյն և խեղճ ժողովուրդը երկրէն փախչելուն վրայ կը մտածէ։ Փճացած հարստութիւններ մեծապէս կը վնասեն Հայ վաճառականութեան և արհեստներու, որոնք կը սկսին Թուրքերու ձեռքն անցնիլ աստիճանաբար։

Հայկական ճգնաժամը իր հետ տարբեր տարբեր յեղափոխական ծրագիրներ ու հոսանքներ կը բերէ, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ գլուխին մէջ։

# XXII

*Հ. Յ. Դաշնակցութեան կազմակերպութիւնը.— Իր հայեացքը Տաճկահայկական հարցին համար.— Պանք-Օ-թոմանի գրաւումը.— Երկրորդ ջարդը.— Դէպի Խանասոր.— Սասունի Բ. ապստամբութիւնը. - Մահափորձ Աբտիւլ-Համիտի կեանքին դէմ:*

Մինչ Տաճկահայ իրականութեան մէջ Հնչակեան Կուսակցութիւնը, 1887ին հիմնըւած, կը գործէր անընդհատ, ամբողջ հայութիւնը իր ազատագրական խաչալին կապած էր և Սուլթանն ու իր պաշտօնեաները ահու դողի մատնած, անդին Կովկասի մէջ 1890ին կը սկսէր կազմակերպուիլ Հ. Յ. Դաշնակցութիւնը, որուն պաշտօնաթերթը «Դրօշակ» լոյս կը տեսնէր Ժընեւի մէջ։ Քրիստ. Միքայէլեանն էր գլխաւոր հիմնադիրը այս նոր Կուսակցութեան, որ մերժելով ընկերվա-

րութեան դաւանանքը, ազգային-քաղաքական ուղղութիւն մը կ'որդեգրէր Տաճկահայ դատին վերաբերմամբ, Ռուս կառավարութեան դէմ որևէ պահանջ չէր ներկայացներ և հետեւաբար ալ Կովկասիոյ մէջ կը գործէր արձակ համարձակ՝ հանգանակութիւններ կատարելով, տաճկահայկական հարցին ի նպաստ պրոպականդ մղելով և տակաւ ընդարձակելով իր կազմակերպութիւնը։

1890-95, երբ Հնչակեան Կուսակցութիւնը բուռն և անխոնջ գործունէութեան մէջ էր Տաճկաստանի մէջ, Հ. Յ. Դաշնակցութիւնը հազիւ հազ քանի մը կոմիտէներ ունէր և յեղափոխական ազդու գործունէութիւն չէր ցոյց տուած հոն։ Հնչակեան կուսակցութեան ցոյցերէն, շարժումներէն և Հայկական կոտորածներէն վերջը, այն կարծիքը արմատացած էր այլեւս այդ կազմակերպութեան բոլոր գործիչներուն մէջ ալ, թէ մասնակի ցոյցերը անզօր են ազդելու Եւրոպայի շահերուն և նոյնիսկ Թուրք կառավարութեան վրայ, որով և Եւրոպական միջամտութիւն տեղի չունենար։ Ուստի ընդհանուր ապստամբութենէն միայն կարելի ըլլալով արդիւնք մը յուսալ, հարկ է որ Մայր-Երկրին մէջ լուրջ պատրաստութիւններ տես-

նուլին, ցոյցերու գաղափարը մէկդի դրուի, և, քաղաքականապէս յարմարագոյն րոպէն երբ ներկայանայ՝ ընդհանուր չարժումով մը ապստամբական դրօշը պարզուի։ Իսկ Հ. Յ. Դաշնակցութիւնը կը մտածէր թէ հայկական ճգնաժամի շրջանին որպէսզի հայ ժողովուրդը բոլորովին սրտաբեկ և դասալիք չըլլայ, հարկ է ցոյցերու միջոցաւ վառ պահել Հայ ժողովուրդին յոյսերն ու յեղափոխական գաղափարները և Կառավարութիւնն ալ մասնաւոր գիջումներու հրաւիրել։

Անդրանիկ գործը, որ կատարեց Դաշնակցութիւնը, Թուրքիոյ մէջ, Պա՛նք-Օթոմանի գրաւումն էր։ Պոլսոյ մէջ Պապը Ալիի ցոյցէն վերջ այնպիսի դժոխային մթնոլորտ մը կար ստեղծուած, որ ժողովրդային չարժումներու դրութիւնը անիրականանալի եւ վտանգաւոր էր բոլորովին։ Ուստի Դաշնակցութիւնը որդեգրած էր խիստ սահմանափակ թիւով գործիչներու միջոցաւ և վերջին ծայր գաղտնապահօրէն գործելու դրութիւնը։ Ծիշդ այս կերպով ալ պատրաստուած էր Պանքայի Յոյցը։ 1896 օգոստոս 14ին, քսանըհինգ կտրիճներ գրաւած էին Պանք-Օթոմանը։ Անհաւասար կռիւն սկսած էր այս բուռ մը քաջերուն և Օսմ. կանոնաւոր զօր-

քին միջև։ Ռումբն էր որ կը խօսէր, սարսափահար ընելով թէ՛ պանքային պաշտօնէութիւնը և թէ չէնքը պաշարող զօրքն ու խուժանը։ Միեւնոյն ատեն երեք լեզուով տպագրուած հետեւեալ պահանջագիրը կ'ուղղուէր Եւրոպական պետութեանց դեսպաններուն.

«Մենք անդուլ բողոքեցինք Եւրոպային՝ Թուրք բռնապետութեան դէմ, բայց մեր բողոքները, որ օրինական էին, սիստեմաբար մերժուեցան։

«Սուլթան Համիտ արիւնահեղ վրէժխնդրութեամբ պատասխանեց մեզ։

«Եւրոպան տեսաւ այդ ահաւոր ոճիրը և լռեց։

«Դիւանագիտական խաղերու ժամանակը ա՛լ անցած է։

«Մեր հարիւր հազար նահատակներուն թափած արիւնը մեզի իրաւունք կու տայ ազատութիւն պահանջելու։

«Մեր թշնամիներուն տարած բոլոր նենգամիտ գրոյցներուն հակառակ մենք խնդրած ենք և հիմա ալ կը խնդրենք մի՛միայն անհրաժեշտը, այսինքն՝

1. Նշանակել ծագումով և ազգայնութեամբ Եւրոպացի բարձրագոյն գօմիսէր մը՝ Հայաստանի համար, ընտրուած վեց մեծ տէրութիւններու կողմէն։

2. Վալիները, միւթեսարըֆները և գայմագամները պիտի նշանակէ բարձր գօմիսէրը և Սուլթանը պիտի վաւերացնէ.

3. Եւրոպացի սպաներու հրամանատարութեան

Ներքև պիտի կազմակերպուի տեղական ազգե-րէն միլիցիա, ժանտարմա և ոստիկանութիւն։

4. Դատական բարենորոգումներ՝ եւրոպական սիստեմով։

5. Կրօնք, կրթութեան և մամուլի կատարեալ ազատութիւն։

6. Երկրի հասոյթներու երեք քառորդ մասը պիտի յատկացուի տեղական պէտքերուն։

7. Յետնեալ հարկերը ջնջել։

8. Հինգ տարի հարկէ ազատ պահել ժողովուրդը, և այդ գումարը գործածել վերջին խըռովութեանց վնասներու դարմանումին։

9. Բռնագրաւուած կալուածները անմիջապէս դարձնել իրենց տէրերուն։

10. Բոլոր գաղթականներուն ազատ վերադարձ։

11. Ընդհանուր ներում հայ քաղաքական յան-ցաւորներուն։

12. Եւրոպական տէրութիւններու ներկայա-ցուցիչներէն առժամեայ Յանձնաժողով մը կազ-մել, որ Հայաստանի գլխաւոր քաղաքներէն մէ-կին մէջ հաստատուելով՝ պիտի հսկէ վերոյիշեա յօդուածներու գործադրութեան։

Եւրոպական պետութեանց ներկայացու-ցիչներ և կայս. Թիկնապահներ անմիջապէս բանակցութեան մտած էին հերոսներուն հետ՝ Եըլտըզի անունով։ Ռուսական մեծ դես-պանին Ա. Թարգմանը Պ. Մաքսիմոֆ, Բրիտանական կառավարութեան ելմտական ներկայացուցիչը, Սըր Էտկար Վինսըն, Օսմ.

Պանքային Ա. տնօրէնը և Ֆրանսական կառավարութեան ելմտական ներկայացուցիչը, Պ. Օպուանօ՝ Պանք Օթօմանի Բ. տնօրէնը։ Պանքայի հերոսներու պահանջները հետեւեալներն էին.

1. Պանքային պաշարումը վերցնել։

2. Խուժանին ու զինուորներուն յարձակումը դադրեցնել և ջարդերն արգիլել։

3. Բոլոր Հայ քաղաքական բանտարկեալներուն ներում։

4. Հայկական բարենորոգումներու անյապաղ գործադրութիւնը։

5, Պանքայի ցոյցի միջոցին նահատակուած երեք ընկերներու պատշաճ թաղումը՝ Հայ եկեղեցիի ծէսերուն համաձայն։

6. Վիրաւորուած հինգ ընկերներու դարմանումը՝ օտար հիւանդանոցի մը մէջ և առողջանալէ յետոյ արտասահման փոխադրուիլը, օտար շոգենաւով և ապահով պայմաններու ներքև.

7. Մնացեալ տասնըեօթ ցուցարար ընկերներուն զինուած վիճակի մէջ պանքայէն դուրս ելլելով երեք ներկայացուցիչներու պաշտպանութեան տակ օտար շոգենաւով մը ապահով կերպով արտասահման ղրկուիլը։

Համաձայնութիւնը կայացաւ երկու կողմին միջև, և ցուցարարները Պանքան թողելով շոգենաւ մտան շուտով, ա՛յն խղճմտութեամբ թէ մի՛ գուցէ իրենց երկար ատեն Պանքային մէջ մնալը կրնայ կոտորած-

ներ առաջացնել Թուրքիոյ մէջ։ Սակայն չորգեննար Տարատանելէն դուրս չելած տակաւին, ջարդը սկսած էր Պոլսոյ մէջ, ամէն կողմ։ Սոսկալի ընդհարում մը յառաջ եկած էր Սամաթիոյ մէջ՝ զինուորներուն և Միսաքեաններու տունը ամրացած կռուողներուն մէջ։ Ամբողջ Պոլիսը արիւնոտած էր։ Հայեր սարսափահար եղած էին։ Շատ սրտաճմլիկ էր Խասգիւղի ջարդը։ 1896ի ջարդին 10,000 զոհեր տուաւ Պոլի՛սը միայն, մինչ անդին գաւառներու մէջ ալ կրկնուեցաւ։ Նշանակելի էր Վասպուրականի կռիւը, ուր Հայ երեք կուսակցութիւններ միացած ինքնապաշտպանութեան գործը կը ղեկավարէին։

Ահա թէ ի՞նչ կ՚արժէին Եւրոպայի խոստումներն ու յանձնառութիւնները...։

Օսմ. Պանքայի ցոյցէն վերջ Հ. Յ. Դաշնակցութիւնը կազմակերպեց Խանասորի արշաւանքը, 1897ի ամառը՝ ջնջելու համար յայտնի հայահալած Շէրէֆ Պէկի ցեղը։ Երեք հարիւր հոգիէ բաղկացած հայկական բանակ մը նոյն տարուոյ Յուլիսին յարձակում գործեց Շէրէֆ Պէկի վրանատեղիին վրայ։ Բուռն ընդհարում տեղի ունեցաւ։ Հայերը տուին քանի մը զոհեր, իսկ թշնամիին կո-

Սասունի, այնպէս որ այն գաւառը այլեւս մտահոգիչ ըլլալէ դադրած էր։ Զէյթունը կար սպառնական, այն Զէյթունը, որ քանիցս ի դերեւ հանած էր կառավարութեան ծրագիրները, ուժգին ընդդիմութեամբ և իր անպարտելի կամաւորներով։ Մինչեւ 1890 արդէն քանիցս փորձուած էր բնաջնջել ընել այս լեռնային գաւառը։ Վերջին անգամ 1895 ին, Գում Գաբուի ցոյցէն ետքը շատ մը ծրագիրներ մշակած էր կառավարութիւնը՝ ջնջելու համար Զէյթունի Հայութիւնը, պատրուակ բռնելով տեղական քանի մը խնդիրներ, սակայն չէր յաջողած։ 1895 ի աշունը կարգ մը Հնչակեան գործիչներու ձերբակալումը պատրուակ նկատելով Զէյթունի վրայ՝ կը յարձակի։ Զէյթուն կը ստիպուի ապստամբութեան դրօշը բարձրացնել և Օսմ. զօրանոցը գրաւելով պատերազմական դիրք բռնել։ Սուլթանը 110,000 զօրք կը ղրկէ, բայց ի զուր. Րէմզի և Էթհէմ փաշաները իրարու ետեւէ բանակին գլուխը կ'անցնին, սակայն կարելի չըլլար պարտութեան մատնել կիլիկեան այս կորիճները։ Պատերազմը կը տեւէ 45 օր։ Վերջապէս դեսպաններու միջոցաւ Յունվ. 16ին հաշտութիւն կը գոյանայ հետեւեալ պայմաններով։

1. Զէյթունցիները անպայման կերպով կը մերժեն
յանձնել Օսմ. կառավարութեան՝ իրենց նորեկ
պարագլուխները։
2. Զէյթունի նորեկ վեց պարագլուխները պիտի ձը-
գեն Օսմ. հողը։ Բ. Դուռը երաշխաւորութիւն
կուտայ Օսմ. Պետութեան ծախքով անոնց ա-
պահով Եւրոպա անցնելուն։
3. Բանակցող հիւպատոսները իրենց վրայ կ'ա-
նեն այս պատասխանատուութիւնը։
4. Կատարեալ ներում բոլոր ապստամբներուն եւ
Զէյթուն ապաստանողներուն։
5. Պիտի հաստատուի քրիստոնեայ կառավարիչ,
ընտրութեամբ կառավարութեան և հաւանու-
թեամբ Եւրոպ. Պետութեանց։
6. Ոստիկանութիւն, հարկահան, զինուոր և կա-
ռավարական պաշտօնեայ՝ պիտի ընտրուին ու
կազմուին նոյնիսկ Զէյթունցիներէն։
7. Զէյթունցիք չպիտի վճարեն յետամնաց տուր-
քերը և հինգ տարի տուրքէ զերծ պիտի ըլլան։
8. Պիտի հաստատուի տուրքերու համեմատական
դրութիւն։
9. Զէյթունցիներու կեանքը, պատիւը, ինչքն ու
կրօնական ազատութիւնը պիտի ապահովուի
Եւրոպական տէրութիւններու կողմէ։
10. Զօրանոցէն գրաւուած պատերազմական զէն-
քերու վերադարձում։
11. Այրուած զօրանոցը կառավարութիւնը պարտի
վերաշինել։
12. Բանակցող Եւրոպացի հիւպատոսներ չպիտի Զէյ-
թունէն մեկնին, մինչեւ այս պայմաններուն գոր-
ծադրութիւնը։

13. *Եւրոպական տէրութիւններ Մարաշի մէջ պիտի հաստատեն հիւպատոսներ, որոնք պիտի հսկեն Զէյթունի նոր ռէժիմին գործադրութեանը եւ պահպանութեանը։*

*Հայկական կոտորածներէն ու Զէյթունի ապստամբութենէն վերջ, անպաշտպան Հայութիւնը, կիսամեռ ու չուառած, կը մնայ դէմ առ դէմ իր դահիճներուն հետ։ Սոսկալի ճգնաժամ մը կը սկսի, ուր չնչել կարելի չէ։ Երթեւեկը կը դադրի, ապահովութիւնը չվերահաստատուիր ըստ արժանւոյն և խեղճ ժողովուրդը երկրէն փախչելուն վրայ կը մտածէ։ Փճացած հարստութիւններ մեծապէս կը վնասեն Հայ վաճառականութեան և արհեստներու, որոնք կը սկսին Թուրքերու ձեռքն անցնիլ աստիճանաբար։*

*Հայկական ճգնաժամը իր հետ տարբեր տարբեր տարբեր յեղափոխական ծրագիրներ ու հոսանքներ կը բերէ, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ գլուխին մէջ։*

# XXII

Հ. Յ. Դաշնակցութեան կազմակերպութիւնը.— Իր հայեացքը Տաճկահայկական հարցին համար.— Պանք-Օթոմանի գրաւումը.— Երկրորդ շարժը.— Դէպի Խանասոր.— Սասունի Բ. ապստամբութիւնը. - Մահափորձ Աբտիւլ-Համիտի կեանքին դէմ։

Մինչ Տաճկահայ իրականութեան մէջ Հնչակեան Կուսակցութիւնը, 1887ին հիմնուած, կը գործէր անընդհատ, ամբողջ հայութիւնը իր ազատագրական իտէալին կապած էր և Սուլթանն ու իր պաշտօնեաները ահու դողի մատնած, անդին Կովկասի մէջ 1890ին կը սկսէր կազմակերպուիլ Հ. Յ. Դաշնակցութիւնը, որուն պաշտօնաթերթը «Դրօշակ» լոյս կը տեսնէր Ժընեւի մէջ։ Քրիստ. Միքայէլեանն էր գլխաւոր հիմնադիրը այս նոր Կուսակցութեան, որ մերժելով ընկերվա-

րութեան դաւանանքը, ազգային-քաղաքական ուղղութիւն մը կ'որդեգրէր Տաճկահայ դատին վերաբերմամբ, Ռուս կառավարութեան դէմ որևէ պահանջ չէր ներկայացներ և հետևաբար ալ Կովկասիոյ մէջ կը գործէր արձակ համարձակ՝ հանգամանակութիւններ կատարելով, տաճկահայկական հարցին ի նպաստ պրօպականդ մղելով և տակաւ ընդարձակելով իր կազմակերպութիւնը։

1890-95, երբ Հնչակեան Կուսակցութիւնը բուռն և տենդոտ գործունէութեան մէջ էր Տաճկաստանի մէջ, Հ. Յ. Դաշնակցութիւնը հազիւ հազ քանի մը կոմիտէներ ունէր և յեղափոխական ազգիւ գործունէութիւն չէր ցոյց տուած հոն։ Հնչակեան կուսակցութեան ցոյցերէն, շարժումներէն և Հայկական կոտորածներէն վերջը, այն կարծիքը արմատացած էր այլևս այդ կազմակերպութեան բոլոր գործիչներուն մէջ ալ, թէ մասնակի ցոյցերը անզօր են ազդելու Եւրոպայի շահերուն և նոյնիսկ Թուրք կառավարութեան վրայ, որով և Եւրոպական միջամտութիւն տեղի չունենար։ Ուստի ընդհանուր ապստամբութենէն միայն կարելի ըլլալով արդիւնք մը յուսալ, հարկ է որ Մայր-Երկրին մէջ լուրջ պատրաստութիւններ տես-

նուրն, ցոյցերու գաղափարը մէկդի դրուի, և, քաղաքականապէս յարմարագոյն րոպէն երբ ներկայանայ՝ ընդհանուր շարժումով մը ապստամբական դրօշը պարզուի։ Իսկ Հ. Յ. Դաշնակցութիւնը կը մտածէր թէ հայկական ճգնաժամի շրջանին որպէսզի հայ ժողովուրդը բոլորովին սպառաբեկ և դատալիք չըլլայ, հարկ է ցոյցերու միջոցաւ վառ պահել Հայ ժողովուրդին յոյսերն ու յեղափոխական գաղափարները և կառավարութիւնն ալ մասնաւոր գիջումներու հրաւիրել։

Անդրանիկ գործը, որ կատարեց Դաշնակցութիւնը, Թուրքիոյ մէջ, Պա՛նք-Օթօմանի գրաւումն էր։ Պոլսոյ մէջ Պապը Ալիի ցոյցէն վերջ այնպիսի դժոխային մթնոլորտ մը կար ստեղծուած, որ ժողովրդային շարժումներու դրութիւնը անիրականանալի եւ վտանգաւոր էր բոլորովին։ Ուստի Դաշնակցութիւնը որդեգրած էր խիստ սահմանափակ թիւով գործիչներու միջոցաւ և վերջին ծայր գաղտնապահօրէն գործելու դրութիւնը։ Ճիշդ այս կերպով ալ պատրաստուած էր Պանքայի Ցոյցը։ 1896 օգոստոս 14ին, քսանըհինգ կտրիճներ գրաւած էին Պանք-Օթօմանը։ Անհաւասար կռիւն սկսած էր այս բուռ մը քաջերուն և Օսմ. կանոնաւոր զօր-

Պանքային Ա. տնօրէնը և Ֆրանսական կառավարութեան ելմտական ներկայացուցիչը, Պ. Օպուանօ՝ Պանք Օթոմանի Բ. տնօրէնը։ Պանքայի հերոսներու պահանջները հետևեալներն էին.

1. Պանքային պաշարումը վերցնել։

2. Խուժանին ու զինուորներուն յարձակումը դադրեցնել և ջարդերն արգիլել։

3. Բոլոր Հայ քաղաքական բանտարկեալներուն ներումն։

4. Հայկական բարենորոգումներու անյապաղ գործադրութիւնը։

5, Պանքայի ցոյցի միջոցին նահատակուած երեք ընկերներու պատշաճ թաղումը՝ Հայ եկեղեցիի ծէսերուն համաձայն։

6. Վիրաւորուած հինգ ընկերներու դարմանումը՝ օտար հիւանդանոցի մը մէջ և առողջանալէ յետոյ արտասահման փոխադրութիւնը, օտար շոգենաւով և ապահով պայմաններու ներքև.

7. Մնացեալ տասնըեօթ ցուցարար ընկերներուն զինուած վիճակի մէջ պանքայէն դուրս ելլելով երեք ներկայացուցիչներու պաշտպանութեան տակ օտար շոգենաւով մը ապահով կերպով արտասահման ղրկուիլը։

Համաձայնութիւնը կայացաւ երկու կողմին միջև, և ցուցարարները Պանքան թողելով շոգենաւ մտան շուտով, ա՛յն խղճմտութեամբ թէ մի՛ դուցէ իրենց երկար ատեն Պանքային մէջ մնալը կրնայ կոտորած-

ներ առաջացնել Թուրքիոյ մէջ։ Սակայն չոգենաւը Տարտանելէն դուրս չ'ելած տակաւին, ջարդը սկսած էր Պոլսոյ մէջ, ամէն կողմ։ Սոսկալի ընդհարում մը յառաջ եկած էր Սամաթիոյ մէջ՝ զինուորներուն և Միսաքեաններու տունը ամրացած կտրիճներուն մէջ։ Ամբողջ Պոլիսը արիւնոտած էր։ Հայեր սարսափահար եղած էին։ Շատ սորտանձլիկ էր Խասգիւղի ջարդը։ 1896ի ջարդին 10,000 զոհեր տուաւ Պոլի՛սը միայն, մինչ անդին գաւառներու մէջ ալ կրկնուեցաւ։ Նշանակելի էր Վասպուրականի կռիւը, ուր Հայ երեք կուսակցութիւններ միացած ինքնապաշտպանութեան գործը կը ղեկավարէին։

Ահա թէ ի՞նչ կ'արժէին Եըլտըզի խոստումներն ու յանձնառութիւնները...։

Օսմ. Պանքայի ցոյցէն վերջ Հ. Յ. Դաշնակցութիւնը կազմակերպեց Խանասօրի արւանքը, 1897ի ամառը՝ ջնջելու համար յայտնի հայահալած Շէրէֆ Պէկի ցեղը։ Երեք հարիւր հոգիէ բաղկացած հայկական բանակիկ մը նոյն տարւոյ Յուլիսին յարձակում գործեց Շէրէֆ Պէկի վրանատեղիին վրայ։ Բուռըն ընդհարում տեղի ունեցաւ։ Հայերը տըւին քանըմէկ զոհեր, իսկ Թշնամիին կո-

*Սասունի, այնպէս որ այն գաւառը այլեւս մտահոգիչ ըլլալէ դադրած էր։ Զէյթունը կար սպառնական, այն Զէյթունը, որ քանիցս ի դերեւ հանած էր կառավարութեան ծրագիրները, ուժգին ընդդիմութեամբ և իր անպարտելի կամաւորներով։ Մինչեւ* 1890 *արդէն քանիցս փորձուած էր բնաջինջ ընել այս լեռնային գաւառը։ Վերջին անգամ* 1895 *ին, Գում Գափուի ցոյցէն ետքը շատ մը ծրագիրներ մշակած էր կառավարութիւնը՝ ջնջելու համար Զէյթունի Հայութիւնը, պատրուակ բռնելով տեղական քանի մը խըռդիրներ, սակայն չէր յաջողած։* 1895 *ի աշունը կարգ մը Հնչակեան գործիչներու ձերբակալումը պատրուակ նկատելով Զէյթունի վրայ՝ կը յարձակի։ Զէյթուն կը ստիպուի ապստամբութեան դրօշը բարձրացնել և Օսմ. զօրանոցը գրաւելով պատերազմական դիրք բռնել։ Սուլթանը* 110,000 *զօրք կը ղրկէ, բայց ի զուր. Ռէմզի և Էթհէմ փաշաները իրարու ետեւէ բանակին գլուխը կ'անցնին, սակայն կարելի չըլլար պարտութեան մատնել կիլիկեան այս կորիճները։ Պատերազմը կը տեւէ* 45 *օր։ Վերջապէս դեսպաններու միջոցաւ Յունվ.* 16*ին հաշտութիւն կը գոյանայ հետեւեալ պայմաններով։*

1. Զէյթունցիները անպայման կերպով կը մերժեն յանձնել Օսմ. կառավարութեան՝ իրենց նորեկ պարագլուխները։
2. Զէյթունի նորեկ վեց պարագլուխները պիտի ձըգեն Օսմ. հողը։ Բ. Դուռը երաշխաւորութիւն կուտայ Օսմ. Պետութեան ծախքով անոնց ապահով Եւրոպա անցնելուն։
3. Բանակցող հիւպատոսները իրենց վրայ կ՚առնեն այս պատասխանատուութիւնը։
4. Կատարեալ ներում բոլոր ապստամբներուն եւ Զէյթուն ապաստանողներուն։
5. Պիտի հաստատուի քրիստոնեայ կառավարիչ, ընտրութեամբ կառավարութեան և հաւանութեամբ Եւրոպ. Պետութեանց։
6. Ոստիկանութիւն, հարկահան, զինուոր և կառավարական պաշտօնեայ՝ պիտի ընտրուին ու կազմուին նոյնիսկ Զէյթունցիներէն։
7. Զէյթունցիք չպիտի վճարեն յետամնաց տուրքերը և հինգ տարի տուրքէ զերծ պիտի ըլլան։
8. Պիտի հաստատուի տուրքերու համեմատական դրութիւն։
9. Զէյթունցիներու կեանքը, պատիւը, ինչքն ու կրօնական ազատութիւնը պիտի ապահովուի Եւրոպական տէրութիւններու կողմէ։
10. Զօրանոցէն դրաւուած պատերազմական զէնքերու վերադարձում։
11. Այրուած զօրանոցը կառավարութիւնը պարտի վերաշինել։
12. Բանակցող Եւրոպացի հիւպատոսներ չպիտի Զէյթունէն մեկնին, մինչեւ այս պայմաններուն գործադրութիւնը։

13. *Եւրոպական տէրութիւններ Մարաշի մէջ պիտի հաստատեն հիւպատոսներ, որոնք պիտի հսկեն Զէյթունի նոր ռէժիմին գործադրութեանը եւ պահպանութեանը։*

*Հայկական կոտորածներէն ու Զէյթունի ապստամբութենէն վերջ, անպաշտպան Հայութիւնը, կիսամեռ ու չուարած, կը մնայ դէմ առ դէմ իր դահիճներուն հետ։ Սոսկալի ճգնաժամ մը կը սկսի, ուր չնչել կարելի չէ։ Երթեւեկը կը դադրի, ապահովութիւնը չվերահաստատուիր ըստ արժանւոյն և խեղճ ժողովուրդը երկրէն փախչելուն վրայ կը մտածէ։ Փճացած հարստութիւններ մեծապէս կը վնասեն Հայ վաճառականութեան և արհեստներու, որոնք կը սկսին Թուրքերու ձեռքն անցնիլ աստիճանաբար։*

*Հայկական ճգնաժամը իր հետ տարբեր տարբեր տարբեր յեղափոխական ծրագիրներ ու հոսանքներ կը բերէ, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ գլուխին մէջ։*

# XXII

Հ. Յ. Դաշնակցութեան կազմակերպութիւնը.— Իր հայեացքը Տաճկահայկական հարցին համար.— Պանք-Օթօմանի գրաւումը.— Երկրորդ ջարդը.— Դէպի Խանասոր.— Սասունի Բ. ապստամբութիւնը. - Մահափորձ Ապտիւլ-Համիտի կեանքին դէմ:

Մինչ Տաճկահայ իրականութեան մէջ Հնչակեան Կուսակցութիւնը, 1887ին հիմնըւած, կը գործէր անընդհատ, ամբողջ հայութիւնը իր ազատագրական իտէալին կապած էր և Սուլթանին ու իր պաշտօնեաները ահու դողի մատնած, անդին Կովկասի մէջ 1890ին կը սկսէր կազմակերպուիլ Հ. Յ. Դաշնակցութիւնը, որուն պաշտօնաթերթը «Դրօշակ» լոյս կը տեսնէր Ժընեւի մէջ: Քրիստ. Միքայէլեանն էր գլխաւոր հիմնադիրը այս նոր Կուսակցութեան, որ մերժելով ընկերվա-

րութեան դաւանանքը, ազգային-քաղաքական ուղղութիւն մը կ'որդեգրէր Տաճկահայ դատին վերաբերմամբ, Ռուս կառավարութեան դէմ որևէ պահանջ չէր ներկայացներ և հետևաբար ալ Կովկասիոյ մէջ կը գործէր արձակ համարձակ՝ հնազանդութիւններ կատարելով, տաճկահայկական հարցին ի նպաստ պրօպականդ մղելով և տակաւ ընդարձակելով իր կազմակերպութիւնը։

1890-95, երբ Հնչակեան Կուսակցութիւնը բուռն և տենդոտ գործունէութեան մէջ էր Տաճկաստանի մէջ, Հ. Յ. Դաշնակցութիւնը հազիւ հազ քանի մը կոմիտէներ ունէր և յեղափոխական ազդիւ գործունէութիւն չէր ցոյց տուած հոն։ Հնչակեան կուսակցութեան ցոյցերէն, շարժումներէն և Հայկական կոտորածներէն վերջը, այն կարծիքը արմատացած էր այլևս այդ կազմակերպութեան բոլոր գործիչներուն մէջ ալ, թէ մասնակի ցոյցերը անզօր են ազդելու Եւրոպայի շահերուն և նոյնիսկ Թուրք կառավարութեան վրայ, որով և Եւրոպական միջամտութիւն տեղի չունենար։ Ուստի ընդհանուր ապստամբութենէն միայն կարելի ըլլալով արդիւնք մը յուսալ, հարկ է որ Մայր-Երկրին մէջ լուրջ պատրաստութիւններ տես-

նուրն, ցոյցերու գաղափարը մէկդի դրուի, և, քաղաքականապէս յարմարագոյն բոպէն երբ ներկայանայ՝ ընդհանուր շարժումով մը ապստամբական դրօշը պարզուի։ Իսկ Հ. Յ. Դաշնակցութիւնը կը մտածէր թէ հայկական ճգնաժամի շրջանին որպէսզի հայ ժողովուրդը բոլորովին սրտաբեկ և դասալիք չըլլայ, հարկ է ցոյցերու միջոցաւ վառ պահել Հայ ժողովուրդին յոյսերն ու յեղափոխական գաղափարները և կառավարութիւնն ալ մասնաւոր գիջումներու հրաւիրել։

Անդրանիկ գործը, որ կատարեց Դաշնակցութիւնը, Թուրքիոյ մէջ, Պա՛նք-Օթոմանի գրաւումն էր։ Պոլսոյ մէջ Պապը Ալիի ցոյցէն վերջ այնպիսի դժոխային մթնոլորտ մը կար ստեղծուած, որ ժողովրդային շարժումներու դրութիւնը անիրականանալի եւ վտանգաւոր էր բոլորովին։ Ուստի Դաշնակցութիւնը որդեգրած էր խիստ սահմանափակ թիւով գործիչներու միջոցաւ և վերջին ծայր գաղտնապահօրէն գործելու դրութիւնը։ Ճիշդ այս կերպով ալ պատրաստուած էր Պանքայի Յոյցը։ 1896 օգոստոս 14ին, քսանըհինգ կտրիճներ գրաւած էին Պանք-Օթոմանը։ Անհաւասար կռիւն սկսած էր այս բուռ մը քաջերուն և Օսմ. կանոնաւոր զօր-

քին մէջ։ Ռուսիան էր որ կը խօսէր, սարսափահար ըլլալով թէ՛ պանքային պաշտօնէութիւնը և թէ չէնքը պաշարող զօրքն ու խուժանը։ Միեւնոյն ատեն երեք լեզուով տպագրուած հետեւեալ պահանջագիրը կ'ուղղուէր Եւրոպական պետութեանց դեսպաններուն.

«Մենք անդուլ բողոքեցինք Եւրոպային՝ Թուրք բռնապետութեան դէմ, բայց մեր բողոքները, որ օրինական էին, արհամարհաբար մերժուեցան։

«Սուլթան Համիտ արիւնահեղ վրէժխնդրութեամբ պատասխանեց մեզ։

«Եւրոպան տեսաւ այդ ահաւոր ոճիրը և լռեց։

«Դիւանագիտական խաղերու ժամանակը ա՛լ անցած է։

«Մեր հարիւր հազար նահատակներուն թափուած արիւնը մեզի իրաւունք կուտայ ազատութիւն պահանջելու։

«Մեր թշնամիներուն տարածած բոլոր նենգամիտ զրոյցներուն հակառակ մենք խնդրած ենք և հիմա ալ կը խնդրենք մի՛միայն անհրաժեշտը, այսինքն՝

1. Նշանակել ծագումով և ազգայնութեամբ Եւրոպացի բարձրագոյն գոմիսէր մը՝ Հայաստանի համար, ընտրուած վեց մեծ տէրութիւններու կողմէն։

2. Վալիները, միւթէսարրըֆները և գայմագամները պիտի նշանակէ բարձր գոմիսէրը և Սուլթանը պիտի վաւերացնէ.

3. Եւրոպացի սպաներու հրամանատարութեան

Ներքև պիտի կազմակերպուի տեղական ազգերէն միլիցիա, ժանտարմա և ոստիկանութիւն։

4. Դատական բարենորոգումներ՝ եւրոպական սիստեմով։

5. Կրօնի, կրթութեան և մամուլի կատարեալ ազատութիւն։

6. Երկրի հասոյթներու երեք քառորդ մասը պիտի յատկացուի տեղական պէտքերուն։

7. Յետնեալ հարկերը ջնջել։

8. Հինգ տարի հարկէ ազատ պահել ժողովուրդը, և այդ գումարը գործածել վերջին խռովութեանց վնասներու դարմանումին։

9. Բռնագրաւուած կալուածները անմիջապէս դարձնել իրենց տէրերուն։

10. Բոլոր գաղթականներուն ազատ վերադարձ։

11. Ընդհանուր ներում հայ քաղաքական յանցաւորներուն։

12. Եւրոպական տէրութիւններու ներկայացուցիչներէն առժամեայ Յանձնաժողով մը կազմել, որ Հայաստանի գլխաւոր քաղաքներէն մէկին մէջ հաստատուելով՝ պիտի հսկէ վերոյիշեալ յօդուածներու գործադրութեան։

Եւրոպական պետութեանց ներկայացուցիչներ և կայս. թիկնապահներ անմիջապէս բանակցութեան մտած էին հերոսներուն հետ՝ Երլտըզի անունով։ Ռուսական մեծ դեսպանին Ա. Թարգմանը Պ. Մաքսիմոֆ, Բրիտանական կառավարութեան ելմտական ներկայացուցիչը, Սըր Էտկար Վինսըն, Օսմ.

Պանքային Ա. տնօրէնը և Ֆրանսական կառավարութեան ելմտական ներկայացուցիչը, Պ. Օպուանօ՝ Պանք Օթոմանի Բ. տնօրէնը։ Պանքայի հերոսներու պահանջները հետևեալներն էին.

1. Պանքային պաշարումը վերցնել։
2. Խուժանին ու զինուորներուն յարձակումը դադրեցնել և ջարդերն արգիլել։
3. Բոլոր Հայ քաղաքական բանտարկեալներուն ներումն։
4. Հայկական բարենորոգումներու անյապաղ գործադրութիւնը։
5, Պանքայի ցոյցի միջոցին նահատակուած երեք ընկերներու պատշաճ թաղումը՝ Հայ եկեղեցիի ծէսերուն համաձայն։
6. Վիրաւորուած հինգ ընկերներու դարմանումը՝ օտար հիւանդանոցի մը մէջ և առողջանալէ յետոյ արտասահման փոխադրութիւնը, օտար շոգենաւով և ապահով պայմաններու ներքև.
7. Մնացեալ տասնըեօթ ցուցարար ընկերներուն զինուած վիճակի մէջ պանքայէն դուրս ելլելով երեք ներկայացուցիչներու պաշտպանութեան տակ օտար շոգենաւով մը ապահով կերպով արտասահման ղրկուիլը։

Համաձայնութիւնը կայացաւ երկու կողմին միջև, և ցուցարարները Պանքան թողելով շոգենաւ մտան շուտով, ա՛յն խղճմտութեամբ թէ մի՛ դուցէ իրենց երկար ատեն Պանքային մէջ մնալը կրնայ կոտորած-

ներ առաջացնել Թուրքիոյ մէջ։ Սակայն չո-
գենաւը Տարատնելէն դուրս չելած առկա-
ւին, ջարդը սկսած էր Պոլսոյ մէջ, ամէն
կողմ։ Սոսկալի ընդհարում մը յառաջ ե-
կած էր Սամաթիոյ մէջ՝ զինուորներուն և
Միսաքեաններու տունը ամրացած կտրիճ-
ներուն մէջ։ Ամբողջ Պոլիսը արիւնոտած էր։
Հայեր սարսափահար եղած էին։ Շատ սրր-
տաճմլիկ էր Խասգիւղի ջարդը։ 1896ի ջար-
դին 10,000 զոհեր տուաւ Պոլի՛սը միայն,
մինչ անդին գաւառներու մէջ ալ կրկնուե-
ցաւ։ Նշանակելի էր Վասպուրականի կռիւը,
ուր Հայ երեք կուսակցութիւններ միացած
ինքնապաշտպանութեան գործը կը ղեկավա-
րէին։

Ահա թէ ի՞նչ կ'արժէին Եըլտըզի խոստում-
ներն ու յանձնառութիւնները....։

Օսմ. Պանքայի ցոյցէն վերջ Հ. Յ. Դաշ-
նակցութիւնը կազմակերպեց Խանասորի ար-
ւանքը, 1897ի ամառը՝ ջնջելու համար յայտ-
նի հայահալած Շէրէֆ Պէկի ցեղը։ Երեք հա-
րիւր հոգիէ բաղկացած հայկական բանակիկ
մը նոյն տարւոյ Յուլիսին յարձակում գոր-
ծեց Շէրէֆ Պէկի վրանատեղիին վրայ։ Բու-
ռըն ընդհարում տեղի ունեցաւ։ Հայերը տը-
ւին քսանըմէկ զոհեր, իսկ թշնամիին կո-

բուստն անհագին էր։

Հայկական ճգնաժամը շարունակուեցաւ, բայց մանր մունր ապստամբական շարժումները վերջ չգտան՝ Վանի, Բաղէշի և Կարնոյ նահանգներուն մէջ։ Կառավարութիւնը իր՝ բոլոր ոյժերը լարած կը հետապնդէր յեղափոխականները, ամէն կողմ։ Պոլիսը լրտեսներով պաշարուած էր, իսկ գաւառներու մէջ կեա՛նք չկար, կարելի է ըսել։ Պոռթկաց Սասունի Բ. ապստամբութիւնը, ղեկավարութեամբ Անդրանիկին։ Դեռ Սասունի կռիւներէն առաջ Բոսենի մեծ ճակատամարտը ահեղ տպաւորութիւն գործած էր մահմետական զօրքին ու խուժանին վրայ։ Ֆէտայիներու խումբերը հարիւրաւոր դիակներ ձգած էին կանոնաւոր զօրքէն ու խուժանէն։ 1903ի վերջերը Մշոյ դաշտէն մինչեւ ռուսական ու պարսկական սահմանագլուխը հայկական հերոսախմբեր գերմարդկային ճիգեր կը թափէին օգնութեան հասնելու համար Սասունին, բայց իզուր։ Ապստամբութիւնը կը խեղդուէր անհաւասար ոյժերու մարտընչումին մէջ և 1904 թուականի Սասունի շարժումները վերջ կը գտնէին ոգեսպառ մարտիկներու անօգնական կացութենէն։ Ու Սասունի անդրանիկ ապստամբութեան արիւ-

նոտ տասնամեակը կը տօնուէր (1894-1904)։

Ահա 1905 ի մահափորձը կուգար ցնցել ամբողջ դիւանագիտական աշխարհը։ Կրկին ռումբն էր որ կը խօսէր․ բայց այս անգամ ո՛չ թէ Եըլտըզէն հեռու, այլ՝ Եըլտըզին շատ մօտիկ, սէլամլըգի պահուն, կարմիր դահճապետին գլխուն մօտ։ Անսպասելի յապաղում մը ձեռնարկը կը վիժեցնէր, և գազանը կ՚ապրէր դժբաղդաբար, բայց և այնպէս այդ ահռելի ցոյցը կուգայ Սուլթանին, իր կառավարութեան ու Եւրոպայի հասկըցնել թէ դեռ հայ յեղափոխականներին միջոցները չեն սպառած, դեռ ցեղին ըմբոստ ոգին չէ՛ մեռած։ Կը սկսէր աղմկալից դատավարութիւն մը, որ ամբողջ մամուլը կը զբաղեցնէր։

Եըլտըզը կը տիրապետէր տակաւին։



# XXIII

Եւրոպա եւ Հայկական Հարցը.— Երիտասարդ թուրքեր եւ իրենց ուղղութիւնը.— Բարիզի գօնկրէն.— Թուրքիոյ բաժանման հարցը.— Օսմ. Սահմանադրութեան վերահռչակումը։

Բացատրելու համար թէ ի՞նչ է եղած եւրոպական պետութիւններու վերաբերումը Հայկական Հարցին հանդէպ, նախ անհրաժեշտ է ըսել թէ ի՞նչ կը մտածէր Եւրոպան՝ ընդհանրապէս Արեւելեան Խնդիրին և մասնաւորապէս Տաճկաստանի համար, որովհետև եւրոպական դիւանագիտութիւնը միևնոյն աշխարհահայեացքով կը դիտէ իրերը՝ իրենց ընդհանուր երանգներուն մէջ։

Յայտնի է որ Օսմանեան Պետութեան պատմութիւնը երեք շրջաններու կը բաժնուի՝ սկիզբէն մինչև հիմա։ Առաջինը 300 տարիի

շրջան մ'է, որ Էրթօղրուլէն կը սկսի և կը հասնի մինչև Վիէննայի պարտութիւնը(1288-1683)։ Այս շրջանին մէջ պետութիւնը տակաւ կը կազմակերպուի, Փոքր Ասիոյ մէջ կը ծաւալի և իր շրջանակներուն մէջ ապրող բոլոր ցեղերուն տիրելէ յետոյ՝ կը սկսի յարձակողական-աշխարհակալական ուղղութեան մը մէջ մտնել։ Տաճկական Պետութեան այս զօրացման շրջանին մէջ, երբ իր յարձակումները յաղթութիւններով կը վերջանային, Եւրոպական փոքրիկ տէրութիւնները բոլորովին անկազմ, իրարու հետ անհամերաշխ, յարաժամ վէճերու և անհասկցողութիւններու մէջ, անկարող էին մէկ ույժ, պատկառելի մէկ զօրութիւն առաջ բերել և թումբ կանգնել Օսմանեան արշաւանքներուն։ Ուստի սարսափահար՝ տեղի կուտային Փոքր Ասիայէն հեղեղող այս բանակներուն առջև։ Այս անդիմադրելի հոսանքը, իր աշխարհակալական բուռն արկածախնդրութիւնով, հասաւ Վիէննայի պարիսպներուն։ Առաջին պարտութիւնը հո՛ն էր որ կը կրէր Օսմանեան բանակը՝ Եւրոպայի մէջ։ Հսկան կը պարտուէր ահա, և, բոլոր մունր մանր պետութիւններ այնուհետև համարձակութիւնը կ'ունենային ետ մղելու Օսմանեան ույժը։

Շատ չանցած Ռուսական Պետութիւնը կազմակերպուեցաւ և առաջ եկաւ խոշոր ույժ մը, որ միևնոյն երկրակալական ձգտումները կը մշակէր: Օսմանեան Պետութեան դիմաց նորանոր ույժեր կուգային գոյութիւն ունենալ՝ ուստի պէտք էր յարձակողական դիրքէն պաշտպանողական դիրքի մէջ մտնել: Այս էր Օսմանեան Պետութեան երկրորդ շրջանը, որ կը սկսի 1683 էն և կը տևէ մինչև 1815: Այս շրջանին մէջ արտաքին թշնամութիւնները կը շեշտուէին. և միևնոյն ատեն Թուրքիոյ հակառակորդներուն մէջ կը մտածուէր բաղկացուցիչ ազգութիւններու մասին: Իսկապէս, Օսմանեան Պետութիւնը, երկիրներու տիրելէն վերջ, ցոյց չէր տար վարչական այն ճարպիկութիւնն ու գիտակցութիւնը, որոնցմով կարելի էր շինարար գործունէութիւն ունենալ և պետութեան մեքենան լարուած պահել: Ընդհակառակը յայտնապէս տկարութեան, փըճացումի և անկումի նշաններ սկսան երևնալ պետութեան մարմինին վրայ, որ բանակներով և սուիններով միայն պաշտպանել կարելի չէր այլևս: Եկաւ երրորդ շրջանը, 1815 էն վերջ, երբ Թուրքիոյ բաղկացուցիչ ազգութիւններն սկսան կենդանութիւն և չար-

ժում ցոյց տալ և նորանոր մտահոգութիւններ աւելցնել Պետութեան ղեկավարներուն մտքին մէջ, վասնզի իրերու վերջին ծայր աննպաստ երեւոյթներուն մէջ, երբ հետզհետէ կ'աճէին մեծ համեմատութեամբ երկիրը քայքայող արտաքին ու ներքին ազդակները, Օսմանեան Պետութեան կործանումը անխուսափելի կը համարուէր այլեւս, իբրեւ անբուժելի հիւանդ մը, և զանազան ծրագրեր կը կազմուէին մեծ պետութեանց կողմէ։ Յայտնի քաղաքագէտ-ընկերաբան Ս. Սապահ Գիւլեան հետեւեալ երեք կերպով կը սահմանէ պետութեանց կողմէ ընդունուած կիրամիջոցները՝ Թուրքիոյ նկատմամբ։

1. Նախապէս ընդհանուր համերաշխութեան գալ իրարու հետ, միանալ և ապա բաժանել։
2. Պահպանել Թուրքիոյ գոյութիւնը, երբ կարելի չէր ընդհանուր համաձայնութեան յանգիլ։
3. Օգնել, միջոց տալ նոր զարթնող և Թուրքիոյ բաղկացուցիչ մասերը կազմող ազգութիւններու, որ իրենց բուն հայրենի երկիրն ստանան։

Եւրոպական բոլոր պետութիւններ ալ Թուրքիոյ գոյութիւնը չարիք և անբուժելի հիւանդի մը կեանք քաշկռտելը համարելով հանդերձ, գտնուեցան այնպիսի պետութիւններ ալ, որոնք իրենց տնտեսական ու պետական շահերու տեսակէտով՝ բարեկարգը-

ւած Թուրքիա մը տեսնելու բաղձանքը մշակեցին ։ Այս պետութիւններու մէջ կան Անգլիա և Ֆրանսա , որոնք զանազան ժամանակներու մէջ զանազան ճնշումներ ի գործ դըրին՝ երկրին մէջ՝ բարենորոգումներ գործադրելու համար ։

Համառօտակի քննենք իւրաքանչիւր Պետութեան ընթացքը , Տաճկաստանի վերաբերմամբ , և այն ատեն ի՛նքնին պիտի յաջողինք հետևցնել անոնց իւրաքանչիւրին մեկնակէտը՝ մասնաւորաբար Հայկական Հարցին վերաբերմամբ։

ԱՆԳԼԻԱ .— Աւելորդ է ըսել թէ այսօր համաշխարհային քաղաքականութեան գըլխաւորագոյն ղեկավարներէն մին Անգլիան է ։ Նա առաջ կ՚ուզէ՛ր պահպանել Թուրքիոյ գոյութիւնը՝ կլանելու դիտումով ։ Եւ իր այդ քաղաքականութիւնով ինչ որ կը յուսար՝ ստացաւ ։ Անոր համար այլևս վտանգաւոր է որչափ թոյլ , նոյնչափ ալ զօրեղ Թուրքիա մը , ուստի անոր քաղաքականութիւնը այլևս վճռական է և յարձակողական ։ Նա իր այս քաղաքականութեան հետևանքով անկեղծ կերպով ձգած է Հայկական Հարցի լուծմանը , բայց անկարող եղած է իրագործել իր ցանկութիւնները ։

ՖՐԱՆՍԱ.— Այս մեծ ազգին աւանդութի՛ւնն է արդէն ճնշուած ժողովուրդներու զարթնումին ու անոնց ազատագրութեան օգնելը ։ Սա ուրոյն քաղաքականութիւն մ՚է, որ անպայման օգտակար էր Փրանսական շահերուն ։ Ուստի իր դիրքն ալ շատ որոշ պիտի ըլլար ազատագրական շարժումներով կռուի ասպարէզ եկող Հայ ժողովուրդի համար ալ ։

ՌՈՒՍԻԱ.— Այս Պետութիւնը ունի պահպանողական քաղաքականութիւն՝ Թուրքիոյ վերաբերմամբ, այսինքն, նա կ՚ուզէ պահպանել Թուրքիան՝ ապագային իրե՛նը դարձնելու յոյսով, օգնել ու հովանաւորել ապստամբ ազգութիւններուն, որպէսզի իր առաջխաղացմանը համար ստեղծուին բարեյաջող հանգամանքներ ։ Հայկական Հարցի լուծմանը նա միշտ հակառակեցաւ, վասնզի վասնզի իր տիրապետական ախորժակը պիտի փակցնէր ինքնավար Հայաստան մը և կամ բարեկարգուած երկիր մը ։

ԳԵՐՄԱՆԻԱ.— Սա կը պաշտպանէ Թուրքիոյ ամբողջութեան գաղափարը, մինչև որ պէտք եղած կերպով կը զետեղուի երկրին մէջ, ծովային պատկառելի ոյժի կը տիրանայ և իր տենչացած բաժինները ձեռք կը

բերէ ։ Հարցը կը փոխուի սակայն, երբ Գերմանիան իր խաղաղ նուաճումները կը լըրացնէ ։ Այնուհետեւ անո՛ր ալ քաղաքականութիւնը կըլլայ՝ նոյնը ։

ԻՏԱԼԻԱ.— Պաշտօնապէս Թուրքիոյ ամբողջականութեան պահպանման գաղափարն ունի, սակայն Թարապլուսի գրաւման փորձըն ու վերջին պատերազմը ցոյց տուին թէ իր առջի քաղաքականութիւնը սպառողական էր ։

ԱՒՍՏՐԻԱ.— Պահպանողական միենոյն քաղաքականութիւնն ունի նաեւ Աւստրիան, որովհետեւ նա կը մշակէ իր որոշ ծրագիրները՝ Թուրքիոյ վերաբերմամբ։ Նա մինչեւ հիմա դիւանագիտական ճարպիկութեամբ է գործած, որպէսզի խաղաղ միջոցներով առիթէն օգտուի ։ Բոսնա-Հերսէկի կցումը զօրաւոր ապացոյցն է իր քաղաքականութեան ։

Եւրոպական՝ Պետութիւններու վերաբերումն ուրեմն, Հայկական Հարցին հանդէպ, պիտի բղխէր ուղղակի իրենց ընդհանուր քաղաքականութենէն ։ Եւ յիրաւի, ուշի ուշով քննելով Հայկական Խնդրի բոլոր իրադարձութիւններուն մէջ Եւրոպական Պետութեանց ցոյց տուած վերաբերումն ու

ուղղութիւնը, որոշապէս կրնան նշմարուիլ անոնց քաղաքականութիւնն ու շահերը։

Մուրկէ ծագում առին Երիտասարդ Թուրքերը։ Նոյն ինքն Թուրքիոյ ներքին անգոհացուցիչ կացութիւնն և Եւրոպական Պետութեանց սպառնական քաղաքականութիւնն։ Ֆրանսական կրթութիւնով ու գրականութիւնով սնած սերունդ մը, անխուսափելիօրէն պիտի հանէր նաև այդ փառաւոր անցեալով օժտուած պատմական ազգի քաղաքական մտքերուն ալ, որոնք արձագանգ գտած էին իրենց մէջ։ Ֆրանսացի քաղաքագիտական գրողներու ազդեցութեան տակ ծնաւ Թուրք քաղաքագէտներու խմբակ մը, որ 30 ական Թուականներուն սկսաւ իր ուշադրութիւնը դարձնել Օսմանեան Պետութեան ընթացքին։ Ռաշիտ փաշա գլխաւոր արտայայտիչն էր այդ խըմբակին, որուն ձգտումն էր եւրոպականացնել ու զօրացնել Թուրքիան, բաղկացուցիչ ազգութիւնները վերածել մէկ ամբողջութեան և մէ՛կ ազգութեան, — Օսմանեան, — երկիրը վերակազմել և վերահաստատել այնպիսի հիմունքներով որ անոր մէջ ապրող այլացեղ և այլակրօն ազգեր ապրէին ընդհանուր ներդաշնակութեան մէջ, միևնոյն

ձգտումներով և մի՛ևնոյն իտէալներով: Երիտասարդ Թուրքերու առաջին ջանքերը անհետեւանք մնացին, իրականութեան մէջ, բայց հետզհետէ միեւնոյն միտքերը մշակեցին Րաշիտ փաշայի աշակերտները (Ալի Ֆուատ և Ճէմալ փաշաները), որոնք յաջողեցան 1856 ի Խաթթը Հիւմայունը հրատարակել տալ Սուլթան Ապտիւլ-Մէճիտի, իբրեւ հիմունք Թուրքիոյ բարենորոգման: Վերջին անգամ Միտհատ փաշան էր որ իր խորհրդակից ընկերներով մշակեց Օսմանեան Սահմանադրութիւնը (Գանունը էսասի), իբրեւ միակ դարմանը Թուրքիոյ ամբողջականութեան պահպանուելուն: Պատմական ուղղութիւնը փոխուեցաւ տակաւ, Օսմ. Սահմանադրութիւնը «մեռած տառ» մնաց, Երիտասարդ Թուրքեր իրենց ապաստան ընտրեցին արտասահմանը և սկսան գործել բանաւոր ու գրաւոր պրօպագանտով: Երիտասարդ Թուրքերու գործունէութեան հիմունքները եղան(1):

1. Սուլթան Համիտի գահընկեցութիւնը.
2. Պահպանութիւն Սուլթանականութեան և խալիֆայութեան:

(1) Երիտասարդ Թուրքիա, Ս. Սապահ Գիւլեան, Բարիզ, 1908, էջ 19:

3. Հակառակիլ օտար պետութիւններու միջամտութեանը՝ Թուրքիոյ ներքին գործերուն մէջ, մասնաւորապէս դէմ ըլլալ անոնց միջամտութեանը՝ հայկական, մակեդոնական, կրէտական, արաբական և ալպանական շարժումներու պատճառով։

4. Ճանչնալ՝ ո՛չ հայկական և ո՛չ ալ մակեդոնական խնդիրներ։ Դէմ ըլլալ ու պայքարիլ բաղկացուցիչ ազգութիւններու շարժումներուն՝ Օսմանեան Կայսրութեան միութեան և ամբողջականութեան անունով։

5. Պաշտպանել Թուրքիոյ ներկայ ընկերական, կրօնական և տնտեսական հաստատութիւնները իրենց ամբողջութեան մէջ։

6. Ներքին քաղաքականութեան տեսակէտով պաշտպանել և իրականացնել օսմանականութեան գաղափարը. ընդունիլ քաղաքական բացարձակ կեդրոնացում, ժխտել ամէն տեսակ ապակեդրոնացում։

7. Վերահաստատել Միտհատի Սահմանադրութիւնը, և իրենց հեռաւոր ու մօտաւոր իղձերու իրականացումը անոր մէջը տեսնել ու անով առաջ երթալ։

8. Արտաքին քաղաքականութեան տեսակէտով պաշտպանել Ալճէրիցիները, Թունիզցիները, Մարոքցիները, Պուլկարիոյ, Կրէտէի, Կովկասի, Անդրկասպեան երկիրներու և Հնդկաստանի մէջ եղող մահմետականները՝ իրենց տիրապետող կառավարութիւններուն դէմ։ Ամբողջ մահմետական աշխարհը մէկ ընտանիքի զաւակ համարիլ և անոնց յոյսերու առանցքը

դարձնել Օսմանեան Պետութիւնը, և այդ նպատակով ջանալ սերտ յարաբերութիւններ մշակել մահմէտական անկախ և կիսանկախ պետութիւններու միջև։

9. Ծանօթացնել Եւրոպացիներուն իսլամութեան բարձր կողմերը և մահմէտական քաղաքակրթութիւնը։

Բայց ի հարկէ վերջին ծայր խնդրական է այս հիմունքներուն բաւարարութիւնը՝ Թուրքիոյ բաղկացուցիչ ազգութիւններուն, քանի որ ո՛չ մէկ գոհացում կայ տրուած ազգութիւններու ձգտումներուն և ո՛չ ալ անոնց մէջ նկատի առնուած են ազգերու ցանկութիւնները, գոնէ իրենց պատմա-անհատականութեան պահպանման տեսակէտով։ Մինչդեռ, եթէ բաղկացուցիչ տարրերը վերածնութեան գործին ազդակները կը նկատուին, պէտք էր որ միեւնոյն ատեն անոնց իրաւունքներուն սահման մը ճշդուէր, իբրեւ ազգ՝ Թուրքիոյ ամբողջականութեան մէջ տեղ մը դրաւելու համար։

Երիտասարդ Թուրքերու մղձաւանջը սակայն միշտ արտաքին միջամտութիւնն էր։ Աւելի խաղաղ գործունէութեան կողմնակից՝ կը վախնային որ յեղափոխական որեւէ գործունէութեամբ արտաքին միջամտութիւն կը հրաւիրուի և Օսմանեան Պետութեան

ամբողջականութիւնը կ՚անդամատուի։ Երկար ատեն յամառած մնացին իրենց տեսակէտին վրայ, մինչեւ որ վերջապէս՝ խըրախուսուած Գասթէմունիի եւ Կարնոյ 1907 ի Թուրք ժողովուրդի շարժումներէն՝ եւ այլեւս յուսահատ թուղթով ու գրիչով միայն պայքարելէ, ստիպուեցան ընդունիլ յեղափոխական գործելակերպը եւ այս Բարիզի Գօնկրէին մէջ որոշեցին.

1. Տապալել բռնապետական րէժիմը եւ գահընկէց ընել Սուլթան Համիտը։
2. Հաստատել Միտհատեան Սահմանադրութիւնը։
3. Իբրեւ յեղափոխական միջոց՝ ընդունիլ հետեւեալները. Ա.) Զինուած դիմադրութիւն՝ կառավարութեան քայլերուն, Բ.) Անզէն դիմադրութիւն՝ քաղաքական եւ տնտեսական գործադուլով, գործադուլ՝ պաշտօնեաներու եւ ոստիկանութեան, Գ.) Մերժում հարկերու, Դ.) Պրօպականտ զօրաբանակին մէջ.— Հրաւէր կարդալ զինուորներուն՝ չի՛ քալել՝ ո՛չ ժողովուրդին, ո՛չ ալ յեղափոխականներուն դէմ. Ե,) Ընդհանուր ապստամբութիւն. Զ.) Մարտական այլ միջոցներ, համաձայն պարագաներու թելադրութեան։

Մեր նպատակէն դուրս է հոս քննել Բարիզի Գօնկրէին էութիւնը։ Սա ըսենք միայն թէ մինչ արտասահմանի Երիտասարդ Թուրքերը մերժելով կը մերժէին որեւէ յեղափոխական գործելակերպ, անդին, երկրին մէջ,

Սելանիկի մէջ իսկ կը կազմուէր Ազատու-թիւն գաղտնի գոմիթէն, որ կանխաւ որեւէ կապ և առնչութիւն չունէր արտասահմա-նի Երիտասարդ Թուրքերուն հետ։ Ի վեր-ջոյ համաձայնութիւն կայացաւ. և Բարիզ մէջ բնակող Երիտասարդ Թուրք կուսակ-ցութեան անդամներէն Ահմէտ Րիզա Պէյ և ընկերները դարձան այդ կուսակցութեան Եւրոպայի գործակալները, պայմանաւ որ ընկերութիւնն ալ անուանուի Օսմանլը իթ-թիհատ վէ թէրագգը ճէմիյէթի։

Րէվալի մէջ Էդուարտ Է. և Նիքօլա Բ. պատմական տեսակցութեան մը մէջ համա-ձայնեցան Թուրքիոյ բաժանման մասին։ Այս առաջին պատճառն էր Երիտասարդ Թուրքերու շարժման։ Երկրորդ շարժառի-թըն էր Սելանիկի մէջ գէպքերու զահավի-ժումը, որ ստիպեց շուտ գործի սկսելու։ Ուստի Նիազի և Էնվէր Պէյերը Օխրիտայի կողմերը, Րէսնէի մէջ ապստամբութեան դրօշը պարզելով՝ Սահմանադրութիւն հռչակեցին։ Կեդրոնական կառավարութիւնը թէև ատոնց վրայ ոյժ ղրկեց, բայց ապըս-տամբներու վրայ քալող Շէմսի փաշան ըս-պաննուեցաւ զօրականներէն և Իզմիրէն բերուած զօրքերն ալ ապստամբներու կող-

*մըն անցան։ Սահմանադրական շարժումը շուտով ծաւալեցաւ Ռումելիի բանակներուն մէջ, այնպէս որ Կ. Պոլսոյ վրայ քալելու ըսպառնալիքով Սահմանադրութեան վերհըռչակումը պահանջեցին Սուլթանէն։ Յուլիս 10ի գիշերը, Նախարարաց խորհուրդը, որ գումարուած էր Սայիտ փաշայի Նախագահութեան տակ, այդ կացութենէն փրկուելու համար Սահմանադրութեան հռչակումէն զատ ուրիշ միջոց չգտնելը յայտնեց Սուլթանին, որ զիջաւ վերջապէս և հռչակեց Միտհատեան Սահմանադրութիւնը՝* 1908 *Յուլիս* 10 *ի գիշերը նոյն իսկ։*

*Ըստ Երիտասարդ Թուրքերու՝ Տաճկաստանը փրկուած էր այլեւս։*



# XXIV

Ռուսահայոց հալածական կացութիւնը.— Հայոց եկեղեցապատկան կալուածներու գրաւումը.— Իշխան Կալիցին եւ իր վաս դերը.— Ռուսական մեծ յեղափոխութիւնը.— Ռուսական Սահմանադրութիւնը.— Հայ-Թաթարական ընդհարումներ եւ Հայ քաղաքական կազմակերպութիւններ.— Իշխան Վարանցով Տաշկով.— Ռուսահայոց եւ տաճկահայոց առընչութիւնները։

Հայոց և Ռուսաց արքունիքին յարաբերութիւններուն վրայ խօսած ժամանակ մենք մատնանշած էինք այն իրողութիւնը թէ Ռուս կառավարութիւնը հայերը սիրաշահելու քաղաքականութիւն բռնած էր՝ գըլխաւորաբար երկու նպատակներով, 1.) Հայոց շինարար ձեռքերուն և ոգիին միջոցաւ Ռուսական Կայսրութիւնը շէնցնել ու բարգաւաճեցնել և 2.) Հայ տարրը միջոց դարձընել իր աշխարհակալական ծրագիրները յա-

ջողցնելու համար՝ Պարսկաստանի և Տաճկաստանի մէջ ։ Եւ այս երկու նպատակներուն մէջ ալ յաջողեցաւ անվրէպ ։ Ռուսիան շէնցաւ, զարգացաւ, վաճառականութիւնը առաջ գնաց, արհեստներ ու արուեստներ ծաղկեցան, ու ատոնց բոլորին մէջ Հայ ժողովուրդը հանդիսացաւ գլխաւոր քաղաքակրթիչ տարր ։ Ռուս բանակը,— միւս կողմէ,— հայ կարող, անձնուէր ու փայլուն զօրապետներով օժտուեցաւ, յաջող արշաւանքներ ունեցաւ Պարսից ու Օսմանեան պետութեան հողերուն վրայ և մտադրուած աշխարհակալութիւնները յաջողեցան ։ Ինչ կը մնար ուրեմն այնուհետև ։— Փոխել քաղաքականութիւնը, թոյլ չտալ որ ազգայնական ոգին պահպանուէր Ռուսիոյ Հայոց մէջ, ձուլել այս ուշիմ ժողովուրդը՝ ռուս զանգուածին մէջ՝ իր ձեռքէն խլելով այն բոլոր ազդակները, որոնք իր ազգային-պատմական գոյութիւնը կը պահպանեն ։ Ռուսաց արքունիքը կը խանդավառուի ռուսացման ծրագրով և կը սկսի լուռ հալածանքի մը, որ ի վերջոյ մերկապարանոց յայտնուեցաւ ։

Ֆրանսական Յեղափոխութեան շնորհիւ նոր սերունդ մը դուրս եկաւ, ազատասէր, գի-

տալից ու ազգասէր։ Ռուսահայ երիտասարդներ Դորպատի համալսարանը մտան։ Հոն մշակուեցաւ ազգային քնարը։ Ս. Նազարեանց, Մ. Նալբանդեան, Գամառ-Քաթիպա և այլն դուրս ելան իբրեւ ճշմարիտ առաջնորդողներ Հայ ժողովուրդի գաղափարական ձգտումներուն։ Ահա հիմնարկուեցաւ Ռուսահայ աշխարհիկ գրականութիւնը։ Խաչատուր Աբովեան, Գամառ-Քաթիպա, Նալբանդեան, Շահազիզեան և Ս. Նազարեան առաջին գիծի գլխաւորները դարձան նորածին գրականութեան։ Ազգային զգացումներ թև առին։ Հայկական ոգին էր որ կը պատկերանար գրականութեան մէջ։ Գիտակցութիւնն էր որ կ'արթննար։

Բայց այս բոլորը հաշտ աչքով չէին դիտուեր Պետութեան կողմէ։ Ռուսացման գաղափարն ու ծրագիրը, որ ընդհանուր քաղաքականութիւն մ'էր, միացած ազգային վերածնութեան երեւոյթներուն, հայերը կասկածելի դարձուցած էր այն գահուն, որուն համար ա՜յնչափ զոհողութիւն և անձնուիրութիւն ցոյց տուած էր այս ժողովուրդը և որուն համար մատաղ եղած էր մէկ խօսքով։ 80 ական թուականներուն՝ այլեւս բացայայտ գործունէութեան ժամանակը հա-

տած կը համարուէր Ռուս կառավարութեան համար։ Իշխան Դօնդուկով Կորսագով, որ կառավարչապետն էր Կովկասի, շատ նպաստաւոր կը գտնէր հայերն ռուսացնելու առիթը։ Բարձրագոյն հրամանաւ 1885ին յանկարծ կը գոցուին բոլոր հայ վարժարանները։ 30,000 աշակերտ և 900 ուսուցիչ բացը կը մնան բոլորովին։ Հայկահայ տրամադրութիւնները կը շատնան հետզհետէ, բռնաբարութիւնները կը սկսին, նոյն իսկ կաթողիկոսարանը Բեդրոպուրկ փոխադրելու համար անօգուտ ստիպումներ ի գործ կը դնէ կառավարութիւնը։ Կորսագովի յաջորդը Շերեմետէվ կը շարունակէ Պետութեան միևնոյն քաղաքականութիւնը։ Տակաւ հայոց հալածանքը կը չեշտուի։ Պահ մը կը մոռածուի հայերը նոյն իսկ Սիպիր քշել։ Իշխան Կալիցին, որ 1897ին կը յաջորդէր Շերեմիտէվի, բոլորովին նոր շրջան մը կը բանար Հայ և Ռուս յարաբերութեանց մէջ՝ հայաջինջ ծրագրով մը, որ Մայրաքաղաքին կողմէ շատ ծայրայեղ գտնուած էր։ Հետզհետէ հայ աստիճանաւորներ կը քշուէին երկրին այս ու այն կողմերը, Կովկասէն հեռու, Թաթարներն ու Թուրքերը կը տեղաւորուէին Կովկասիոյ մէջ՝ Հայոց վտանգաւոր մեծա-

մամնութիւնը հաւասարակշռելու և չէզոքացնելու համար, զարգացական ընկերութիւնները և հիմնարկութիւնները կը բռնաբարուին. Թատրոնը կ'արգիլուի և տաճկահայ գաղթականներու առջև յայտնի աստիճան դժուարութիւններ կը ստեղծուին: Վերջապէս Իշխան Կալիցին (Կովկասի փոխարքայ) 1903 յունիս 12 ին կը յաջողի հրաման ստանալ երկրորդ անգամ ըլլալով գրաւելու եկեղեցապատկան և դպրոցական կալուածները: Ամբողջ հայութիւնը կը ցնցուի: Ռուս Սինոդի ձգտումն էր Հայ եկեղեցին իր մէջ ձուլել, իսկ կառավարութեան մտադրութիւնն էր կեանքը մեռցնել Հայոց իմացական կեանքին մէջ՝

1. Փակելով հայոց դպրոցները, որոնք ուրիշ բան չեն, եթէ ոչ՝ հակակառավարչական քարոզչութեան վայրեր:
2. Փակելով հայոց ընկերութիւնները, որոնց իւրաքանչիւրը մէկմէկ յեղափոխական օճախ է:
3. Ձեռք առնելով զէկը Հայ հոգևորականութեան, որ անկախ Հայաստանի վերականգնման գլխաւոր գործիչն է:

և վերջապէս Հայութիւնը բնաջնջել հետևեալ ծրագրով.

1. Ոչնչացնելով ժողովուրդը լուսաւորող հիմնարկութիւնները:
2. Հարուածելով Հայ Եկեղեցին.

3. Սահմանափակելով հայոց իրաւունքները քաղաքացիական բոլոր ազատ ասպարէզներու մէջ։

4. Եւ նուազեցնելով հայոց թիւը Թուրքիոյ և Պարսկաստանի սահմանակից նահանգներու մէջ։

Եկեղեցապատական և դպրոցապատական կալուածներու գրաւման այս երկրորդ փորձը մեծ յանդգնութիւն մ՚էր, որ չարիքներու սկիզբը դրուած էր։ Ամբողջ հայութիւնը գրգռող հարց մ՚էր այս, որ թէև իրականին մէջ քաղաքական խնդիր մ՚էր, բայց ըստ եւրոյթին ազգային էր, կրօնական էր։ Իսկ Հայ ժողովուրդը չէր կրնար հանդուրժել այս լրբութեան։ Ուստի ձեռնարկը ո՛րչափ խիզախ և յանդուգն, ընդդիմութիւնն ալ նո՛յնչափ բուռն էր։ Հայոց Կաթողիկոսը, Խրիմեան Հայրիկ, Պատրիարք, Կուսակցութիւններ, կղեր ու ժողովուրդ մէկ մարդու պէս ոտքի կանգնած՝ ո՛չ միայն կը բողոքէին այս անօրինակ բռնաբարութեան դէմ, այլև պատրաստակամութիւն կը յայտնէին մինչև վերջին շունչն ընդդիմանալու։ Հայ դաղութները իրենց ձայները կը բարձրացնէին ամէն կողմէ, Հայ յեղափոխականները ասպարէզ կուգային և Ալեքսանդրապօլի, Երևանի, Ախալքաղաքի, Կարսի, Գանձակի, Թիֆլիսի, Էջմիածնի, Բագուի, Շուշիի, Նոր Նախիջևանի և այլնի մէջ սոսկալի

ժողովրդական արիւնահեղ ցոյցեր կ'ըլլային և կառավարութիւնը ամեն միջոց իգործ կը դնէր՝ զինու զօրութեամբ գրաւելու այս կալուածները ։

Բռնութիւնն ու հալածանքը սակայն, Ռուս Պետութեան մէջ, միայն հայերու յատուկ չէին ։ Բոլոր առաջդիմական տարրերն ալ միևնոյն յոռի կացութեան մէջ էին, միայն թէ ո՛չ մէկ տարր հայոց չափ եկեղեցական ու ազգային կազմակերպական ոյժ մը կը ներկայացնէր Կովկասի մէջ. ու հետևաբար ալ անոնցմէ սկսելու էր ձուլման ու ճնշման գործը ։ Անհաւոր բռնակալութիւնը իր ճիրաններուն մէջ կ'երկնէր Մեծ Յեղափոխութիւնը ։ Բոլոր յեղափոխական կուսակցութիւններ ապաստողական դիրքի մէջ՝ պատրաստ էին համայնական շարժումի սկսելու ։ Ռուս և Ճապոն պատերազմը, անոր ընթացքին մէջ Ցարին բանակներուն չարունակական պարտութիւնները, երկրին վարչութեան հետևանքով՝ ժողովրդական բոլոր խաւերու մէջ ստեղծուած գժգոհութիւնն ու ամեն նպաստաւոր պայմանները ընդհանրացուցած էին յեղափոխական գաղափարը ։ Շոգին ճընշուածէր արդէն և պայթելու վիճակին մէջ ։ Ռուսիոյ սիրտը, Պաքուն՝ յեղափոխութեան

ազգանշանը կուտար անա։ Ընկերվարական կուսակցութիւններ կազմակերպած էին հրակայական արիւնահեղ գործադուլ մը, որ պայթելով 1904 Դեկտ. 14ին՝ կը տարածուէր երկրին ամեն կողմը։ Բիւրաւոր գործաւորներ փողոցները լեցուած դրօշակներով ու թափօրներով՝ իրենց պահանջները կը ներկայացնէին, պահանջներ՝ քաղաքական ազատութեան, սահմանադրական կարգերու, Խորհրդարանի բացման և ութժամեայ բանուորական աշխատութեան։ Ամբողջ Պաքուն եռուզեռի մէջ էր։ Կառավարութիւնը սարսափահար՝ դէպքին առջեւ անելու անզօր կը զգար ինքզինքը։ Յեղափոխութեան ալիքները կը հասնէին Պետութեան նախկին և արդի մայրաքաղաքները, և ահա հարիւր հազարաւոր բանուորներ Մոսկուայի ու Բեդրապուրկի փողոցներուն մէջ դուրս կը լեցուէին իրենց որոշ պահանջներով, — քաղաքական ու տնտեսական։ Գապօն քահանայ բանուորներու գըլուխն անցած էր, կուսակցութիւններ գործադուլն ու յեղափոխութիւնը կը ղեկավարէին։ Խուզախներ անխնայ կը կոտորէին բանուորներն ու ժողովուրդը։ Հետզհետէ կը բանտարկուէին նշանաւոր մտաւորական-

ներ, ինչպէս՝ Մաքսիմ Կօրքի, Կարիէվ, Պէշէխանոֆ են.։ Մոսկուայէն ու Բեթըրսպուրկէն վերջ Պաթումն ու Թիֆլիսն ալ բռնկեցան։ Ամբողջ Ռուսաստանը ուրեմն հրդեհի մէջ էր։ Ամեն կողմ տէրրօրական գործողութիւններ կը կատարուէին, ահ ու սարսափով լեցնելով բոլոր մեծ ու պըզտիկ բռնակալներն ու բռնակալութեան պաշտօնեաները։ Հայերն ալ անմասն չեն մնար այս համաձայնական շարժումէն, և իբրև Ռուսական Պետութեան քաղաքացիներ, առաջապահներու շարքին մէջ կը մընան։

Շուարումը կը պաշարէ կառավարութիւնըն ու իր վեհապետը։ Զարը՝ նեղուած բոլորովին՝ փախուստ տալ կ'ուզէ։ Կոտորածը կը սկսի բովանդակ Ռուսաստանի մէջ, Լեհաստան ու Ֆինլանտիա ինքնավարութիւն և Կուրիա հանրապետութիւն կը հռչակեն։ Վերջապէս նաւատորմիղն ալ կ'ապստամբի և Օտեսայի առջև՝ ծովակալ Բադէմքին ըմբոստութիւն կը յայտարարէ։ Արտաքին ու ներքին թշնամիներ այսպէս կը տկարացնեն բոլորովին պետութիւնը, որ՝ ստիպուած՝ տեղի տալով ընդհանուր պահանջին՝ Սահմանադրութիւն կը հռչակէ։

Յեղափոխական այս շրջանին մէջ տարրերը իրարու դէմ լարելէն զատ ուրիշ ճար չկար ։ Կառավարութիւնը «Բաժանեա զի տիրեսցես» ի քաղաքականութեամբ՝ Կովկասաբնակ Թաթարները Հայերու դէմ կը հանէ ։ 1905 Փետր. 5 ին ընդհարումը կը կը սկսի Պաքուէն, ինչպէս որ Յեղափոխութիւնն ալ նախ հոն պայթած էր ։ Հայ-Թաթարական ընդհարումները կը տարածուին ու կ՚արձագանգուին ամեն կողմ և հետզհետէ Երեւանի, Նախիջեւանի, Շուշիի, Զանգեզուրի, Թիֆլիզի և այլ շրջաններու մէջ կատաղի ու արիւնոտ պատերազմներ կը մղուին Հայերու և Թաթարներու միջև ։ 1895 ի Հայկական կոտորածներու կարմիր տասնամեակը կը տօնուէր կարծես այսչափ դժոխային եռանդով մը ։ Հայ կուսակցութիւններ, իրենց դրօշին հաւատարիմ, Հայ ժողովուրդի պաշտպանութեան գործը կը կատարեն անձնուիրաբար և միենոյն ատեն յաջողակօրէն ։ Ընդհարումները կը տեւեն ամիսներ, մինչև որ Թաթարներուն կարելի կ՚ըլլայ հասկցնել թէ ասիկա արուեստական թշնամութիւն մ՚է բռնապետութեան կողմէ սարքուած ։

Իշխան Կալիցինի վատ մտքը Կովկասի

մէջ հազարաւորներու մահուան պատճառ դարձած էր: Փոխարքայութիւնը յանձնուեցաւ Կոմս Վարանցով Տաշկովի (905 Ապրիլ)։ Ամէն աչք իրեն յառած էր։ Կաթողիկոսը առաջին առթիւ իսկ հարկ եղած դիմումներն ըրաւ գրաւուած կալուածներուն համար։ Եւ վերջապէս 905 Օգոստ. 1 ին վերադարձուեցան Հայոց այն բոլոր կալուածները, որոնք բռնի գրաւուած էին կառավարութեան կողմէ։

Հրատարակուած Ռուսական Սահմանադրութիւնը կը տրամադրէր.

1. Տալ ազգաբնակչութեան քաղաքական ազատութեան անփոփոխելի խարիսխները, հիմնըւած անհատի իրական անձեռնմխելիութեան վրայ.— ազատութիւն՝ խղճի, խօսքի և գումարումներու։
2. Դումայի անդամներու ընտրութիւն,
3. Նոր Սահմանադրութեան գծում։

Այս ի հարկէ բռնապետական խաղ մ՚էր, վասնզի այնուհետեւ Զարը երկու անգամ գումարուած Դումաները լուծեց՝ համեմատաբար ազատական տարրերով կազմըւած ըլլալնուն համար, կառավարութիւնը տակաւ խիստ հալածանք մը կազմակերպեց յեղափոխականներուն դէմ։

Ի՞նչ էին սակայն Ռուսահայոց և Տաճ-

կահայոց յարաբերութիւնները քաղաքական այս ճգնաժամերու միջոցին ։ Արդարութեան հարկ մըն է խոստովանիլ թէ Տաճկահայ զուլումի միջոցին Կովկասահայը օժանդակ էր ։ 1876 ի Վանի հրդեհին , ապա Զէյթունի և Վանի սովերուն ատեն Գր. Արծրունի իր Մշակով հազարաւոր լիրաներ հաւաքեց ու հասցուց անօթի ժողովուրդին ։ Կովկասի Հայութիւնը երկար ատեն ասպնջականութիւն ըրաւ Տաճկահայ փախստականներուն ։ Յեղափոխական կուսակցութիւնները Ռուսահայերով սկսան ։ Տաճկահայ դատին համար նոյն իսկ Գօլօշեան և Կուկունեանց զէնք առին ։ Գամառ-Քաթիպա , Ռաֆֆի և այնուհետև ալ Ահարոնեան և ուրիշներ՝ Տաճկահայուն ցաւերը երգեցին ։ Ռուսահայ հրապարակագիրներ միշտ արձագանգ եղան Տաճկահայոց կեանքին և միշտ ձայն բարձրացուցին թշուառութիւններու դէմ ։ Ամբողջ 25 տարի Տաճկահայոց կեանքով դեկավարուեցաւ Ռուսահայ մամուլը ։ Եւ մէկ խօսքով սահմանէն անդին բնակող Հայութիւնը եղբայրական ձեռք կարկառեց Թուրք բռնապետութեան լուծին տակ ճնշուող իր տանջուած եղբայրներուն , անոր ցաւերովը լացաւ ու հրճուանքներուն միացաւ ։ Ռուսահայի ու Տաճկահայի պատուարն ու խըրտիրը՝ փշրուած , վերցուա՛ծ է ալ ։

## XXV

Հայերը Ասիոյ մէջ մի՛շտ առաջդիմականներ.— Պարսիկներն ու հայերը.— Մահմետականութիւն եւ հայերը.— Թաթարներն ու հայերը.— Հայերը առաջդիմական տարր՝ ամէ՛ն տեղ, ամէ՛ն երկրի ու ամէ՛ն շրջանի մէջ.— Օսմանեան Յեղափոխութեան մէջ հայոց դերը.— Ռուսական Մեծ Յեղափոխութեան մէջ՝ հայերը առաջապահ.— Պարսկական իրականութեան մէջ՝ կրկին առաջատար.— Հայուն պատմական դերը մինչեւ այսօր.— Հայը կայ եւ կը մնայ իր ընդունակութիւններով։

«Հայուն ծառայելը քաղաքակրթութեան ծառայել է» (To serve Armenia is to serve civilization) յայտարարած էր Անգլիոյ դիւանագիտական մեծագոյն դէմքերէն մին, Կլատսթըն, որ ապահովաբար իր դատաստանը վարկպարազի ենթադրութիւններու եւ թեթեւ քննութիւններու վրայ հիմնած չէր։ Այս նշանաւոր հայասէրին յայտարարութեան

մէջ կայ այնպիսի խորունկ նշանակութիւն մը, զոր ըմբռնելու համար պէտք է խորապէս ուսումնասիրել Հայ ցեղը՝ իր պատմութիւնով, գրականութիւնով, կրօնքով և բովանդակ կեանքով։ Հայոց պատմութիւնը վերծանելու համար չբաւեր անուններու և թուականներու հմտութիւնը։ Պէտք է ուսումնասիրել բոլոր իրարու յաջորդող դէպքերու և պատմութեան ընթացքին մէջ թատըր եկող դէմքերու յարաբերականութիւնը, Հայ կեանքին բոլոր դիմայեղումները, անոր աղերսը համապատասխան ժամանակաշրջաններու ընդհանուր ազգերու պատմութեան հետ, և այն ոգին, որ կը տիրէ զանազան շըրջաններու մէջ։ Հայոց պատմութեան էութիւնը կը կայանայ քաղաքակրթութեան բոլոր տարբերքներու ճանաչողութեան և պատմական-տնտեսագիտական, ընկերային, քաղաքական ու հասարակական ազդակներու ու ստորճանական զարգացման ըմբռնողութեանը մէջ։ Այս բոլոր գործօններու ուսումնասիրութիւնը մեզ պիտի հասցնէր այն անժըխտելի եզրակացութեան թէ Հայ ցեղը, իր ծագումով արեւմտեան, խառնուածքով ու նըրկարագրով արեւմտեան, երկար դարեր ապրելով Ասիոյ խորը, պահպանած է միշտ իր ձըգ-

տունմները և ապրած է արևելեան այդ միջավայրին մէջ՝ մի՛շտ առաջդիմական ոգիով դրօշակակիրն հանդիսացած այն քաղաքակրթութեան, որ իրն էր։ Հայը կը նմանի այն պանդուխտին, որ՝ հեռացած իր հայրենի օճախէն, հաստատուած օտար երկինքներու ներքեւ, շրջապատուած տարբեր տարբեր պայմաններով և դրուած նոր միջավայրի մը մէջ —, համեմատաբար սահմանափակ, — կարօտով կը յիշէ իր ծագումը, իր հայրենի կեանքն ու կենցաղը և շարունակ կը ջանայ իր նոր բնակավայրին մէջ իսկ քիչ մը իր ծննդավայրի կեանքը ապրիլ, և կամ կը նըմանի այն ծառին, որ փոխադրուած իր բընական միջավայրէն, տնկուած է տեղ մը՝ ուր կը պակսին իր բարգաւաճման պայմանները, ու այլ և այլ ծառեր ու թուփեր կ՚ուզեն արգիլել իր անկաշկանդ աճումը, այսուհանդերձ անիկա, լի կենսունակութեամբ, վեր կը բարձրանայ ու ճիւղեր կ՚արձակէ։

Հայ ցեղը՝ Արեւմուտքէն եկած ու Փոքր Ասիա հաստատուած, իր հետ բերած ըլլալով արևմտեան ազգերու աշխուժութիւնը, ընդունակութիւններն ու ուշիմութիւնը, ճակատագրէն բերումով զետեղուած է արևելեան միջավայրի մը մէջ, շրջապատուած

այնպիսի ազգութիւններէ ու ցեղերէ, որոնք համեմատաբար ստոր ու բարբարոս ձգտումներով տոգորուած՝ կը ճգնէին սպաննել միշտ իր բոլոր զարգացման ճիգերը և մէկիկ մէկիկ ու բրտօրէն կը փետրատէին անոր բոլոր բարձրագոյն իղձերն ու կամեցողութիւնները։ Դարերու ընթացքին այս խակական նահատակութիւնը կը շարունակուի՝ անհաւասար և սոսկալի պայքարի մը ձևով, որուն մէջ ներքին անդիմադրելի առաջդիմական միտում մը կը մղէ զինքը հերոսական զոհաբերութիւններու և խելայեղիչ դիւցազնութեանց։ Քաղաքակրթական ոգին կը զարթնու իրմով, առաջդիմութեան կայծը կը վառի իր մէջ և նորանոր հարուածներ կը սպաննեն իր յառաջդիմասէր ոգին, նորանոր բարբարոս հոսանքներ կը սպառնան խեղդել զինքը՝ իր բոլոր ձգտումներով ու ընդունակութիւններով։ Պատմական յանձնառութեան մը առաքեալը և արևմտականութեան ջահակիրը՝ Հայ ժողովուրդը կը մարանչի շարունակ բարձր բռնելով ա՛յն դրօշը՝ որ կը պատկանի արևմտեան քաղաքակրթութեան։ Ահա՛ այն պատմական դերը, զոր կատարեց Հայ ազգը, ահա՛ այն պատմական ուղին, որուն մէջէն քալեց այս ցեղը անօրինակ և

ապշեցուցիչ արիութեամբ մը։ Իր աշխարհագրական դիրքով և միջավայրով անիկա կը գտնուէր հոն, ուր պէտք է իրարու շփուէին, — կամ աւելի ճիշդը բախէին, — երկու քաղաքաքաքակրթութիւնները Արեւմուտքին ու Արեւելքի, առաջինը՝ իր առաջդիմական, բարեշրջական բոլոր ստորոգելիքներով և երկրորդը՝ իր ամենի, վայրագ ու պահպանողական բնազդներով։

Ու Հայ ժողովուրդը ստիպուեցաւ փոխընփոխն մաքառիլ զանազան արեւելեան ցեղերու հետ։

Պատմական առաջին բախումը պարսիկներուն հետ ըլլալ վիճակուած էր։ Ի՛նչ ահեղ յարձակումներ, ի՛նչ սոսկալի հոսանքներ և կրօնական ի՛նչ բուռն հալածանքներ՝ Պարսկաստանէն եկան Հայաստան, կրօնքի անունով, ձգտումներու անունով, արեւելեան ոգիի անունով։ Հող Հայ ցեղը իր դերին մէջն էր, այնպիսի ամենի լուծի մը տակ, զոր իրեն տուած էր իր նոր կրօնը, իր իսկական հայրենիքէն հասած նոր դաւանանքը։ Դարեր անցան։ Ահա Արեւելքի ուրիշ մէկ ախոյեանն էր որ ասպարէզ կը կարդար։ Մահմետական կրօնքին հիմնուելէն վերջ արաբական արշաւանքը կազմակերպուեցաւ։

Ուժգին հրոսում մը Հայոց Աշխարհէն ներս, լաց, կոծ, արիւն, արցունք։ Սակայն Հայ ցեղը իր կուրծքովը կը դիմակալէր ամեն տեսակ խոչնդոտներու։ Ապա, Թաթարական մեծ արշաւանքը կ'ուգար քանդել իր բոլոր էութիւնը, մինչ ներքին նո՛յն ոգին էր որ զօրավիգ կ'ըլլար իրեն՝ աւանդաբար իրեն յանձնուած քաղաքակրթական շինարար դերը պահպանելու։ Առաջդիմական տա՛րրն էր Հայը. Ասիոյ մէջ քաղաքակրթութեան ջահակիրը, որ ամե՛ն տեղ, ամե՛ն երկրի, ամե՛ն շրջանի ու ժամանանակի մէջ՝ երբե՛ք չդաւաճանեց իր կոչումին, իր դերին։ Արեւմտեան բազմաթիւ ազգեր ալ իրենց կարգին հսկայական բաղխումներ ունեցան Արեւելքի ներկայացուցիչներուն հետ, բայց անոնցմէ ո՛չ մէկը տեւական ու միայուն կերպով վըտանգին ապասեց, ինչպէս Հայը, և ո՛չ մէկը պահապան հրեշտակի մը պէս իր դրօշէն չզատուեցաւ ինչպէս Հայը։ Ասիոյ մէջ Հա՛յն էր որ պահեց Արեւմտեան քաղաքակըրթութիւնը և քրիստոնէական կրօնը։

Ահա՛ Հայ Ցեղին դերը պատմութեան մէջ։

Նորագոյն ժամանակներու մէջ ալ, երբ բաղդը միեւնոյն ժողովուրդին զաւակները անջատած է իրարմէ և երեք տարբեր քա-

ղաքական սահմաններու մէջ կաշկանդած, կրկին միեւնոյն պատմական դե՛րն է որ կը հետապնդուի հայկական բոլոր հաստատուած-ներուն մէջ ալ: Օսմանեան պետութեան մէջ անհատարկ Հայ ցեղը՝ առաջապահներու կարգին մէջ և ուսուցիչը առաջդիմական ոգիին. արեւմտեան ազգ, ուշիմ և ընդունակ: Ռուսական Պետութեան մէջ հայրենիքին երիտասարդ ու զարգացած դասակարգին ըստեղծած քաղաքական ու տնտեսական ահեղ պայքարին մէջ՝ կրկին ձախակողմի՛ն հետն է Հայ ժողովուրդը, առաջապահներու գունդին մէջ: Իսկ Պարսկական իրականութեան մէջ Հայ ժողովուրդին ազատատենչ ձգտումները դեռ նոր արձագանգեցին աշխարհի չորս կողմը:

Ի՞նչ է այն ներքին ոյժը, որ ափ մը Հայ ժողովուրդը լեցուած է առաջդիմական ոգիով, ի՞նչ է այն մղիչ զօրութիւնը, որ հերոսութիւններու մղած է Հայ Ցեղը, տրուեալ ղանազան պայմաններուն մէջ: Անիկա աներեւոյթ այն ձեռքն է, որ այս ուշիմ ցեղին ուղեղին մէջ իմացականութեան բո՛ցը վառած է, որ հպարտութեամբ մատնանիշ կ՚ընէ այն մեծ իտէալը՝ որ մեծ ազգերուն յատուկ է:

Ու Հայ ժողովուրդը իր մաքուր իտէալով, իր բարձրագոյն ձգտումներով և իր գնահատելի ընդունակութիւններով մեծ ազգ մըն է ապաքէն, մեծ՝ իր մաքառումներուն մէջ, ու մեծ՝ իր զոհաբերութիւններով:

Ծառայութիւնը, զոր Հայ Ցեղը մատուցած է Արեւմտեան Քաղաքակրթութեան, իրաւունք կու տայ իրեն ըսելու թէ «Հայուն ծառայելը՝ քաղաքակրթութեան ծառայել է»:



## ԿԱՐԵՒՈՐ ՎՐԻՊԱԿ

*Կը խնդրուի ընթերցողներէն՝ կարդալէ առաջ ուղղել յետագայ կարեւոր վրիպակը, որ սպրդած է գրքիս 145 էջին վրայ։ Հայկական տպագրութեան երախայրիքը* Սաղմոսարանը *չէ, այլ՝* Պարզատումարը։ *Ուստի «Սաղմոսարան» բառը կարդալ* Պարզատումար։

# ՄԱՆԱՆԱՅ

ԺՈՂՈՎԵԱՑ

ԵՒ

Ի ԼՈՅՍ ԷԱԾ

Գ. Վ.

ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ





Կ. ՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. Մ. ՏՆՏԵՍԵԱՆ

ՊԱՀՃԷ ԳԱՓՈՒ ԷՍԱՏ ԷՖԷՆՏԻ ԽԱՆ ԹԻՒ 13

— 1876 —

Ի ՆՇԱՆ

ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ՄԵԾԱՊԱՏԻՒ ԵՒ ԱԶԳԱՍԷՐ

ԱՂԱՅ ՅՈՎՍԷՓԱՅ ԻԶՄԻՐԵԱՆՑ

ՂԶԼԱՐՑԻՈՅ

ՆՈՒԻՐԷ

# ՄԱՆԱՆԱՅՍ

ԺՈՂՈՎՈՂ

Գ. Վ.

ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ:

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Մանկանայս կը մատուցանեմ Հայ բանասիրաց ոչ իբրև Արեայ Անապատին երկնատեղաց նուիրական հաց, այլ իբրև Հայաստանի Գազպին, որ երկրի ծաղկանց հիւթերէն օդին մէջ կը գոյանայ, ցօղոյն այգոյն կը շաղախի, արևուն ջերմիկ ճառագայթներէն կը զանգի, կը հասունանայ, և շաքարախմորի և մեղրի համով իբրև զինդ յակինթ կամ հատ հատ մարգարիտ կ՚իջնայ մացառներու, տերևոց, գազի փշոց, և մատուտակի ոստոց վրայ ՚ի գոյն որձաթափայլ, և ՚ի ձև նուռան հատի, զոր ժողովեն մանկտիք և հարսունք բլիթ բլիթ յօրինելով պաշար կազմեն ՚ի քաղցր ճաշակ անձանց, և հիւրոց ՚ի մեծարանս։

Ստոյգ է թէ բազմազան են տեսակք պարունակութեան գրչոյս, և խառնակ. բայց ես դիտմամբ ըրած եմ զայդ, որ գելով նիւթէ նիւթ փոփոխել փոյթ ընդ փոյթ, որպէս զի զուարճալի և անձանձրանալի ընեմ գործս, և միանգամայն բազմախուռն զրուցաց, երգելեաց և բանից ծանօթ՝ զընթերցողս։

Գիտեմ թէ զանազան ախորժակ ու ճաշակ ունեցողներն՝ զանազան դատաստան կ՚ընեն ո և իցէ գործոյ մը. ուստի ջանացի, գէթ որ իւրաքանչիւր, ոք իւր քիմքը գոհացնելու պատառ մը ուտելիք համով պտուղ մը ընծայելիք կարողանայ գտնել այս թղթերուս մէջը.

հեղինակութիւն չէ ։ Ճատեր՝ իրենց գիտցած և խօսած բաներ պիտի տեսնեն Մանանայիս մէջ․ գուցէ և շատերն արհամարհեն իմ այս երկը․ բայց և վստահ եմ թէ պիտի գտնուին գնահատող ոմանք ոչ միայն նիւթոյն նկատմամբ, այլ և պիտի գտնուին՝ որ ճանչնան թէ այսպիսի գործ մը պատրաստել և 'ի լոյս ածել՝ աւելի վաստակ կ'առթէ գրասիրի մը, քան 'ի նորոյ բան մը հեղինակել։

Արժէք մը չունի ըստ ինքեան թէպէտ, բայց և ես իբրև բարձր գործ մը չեմ ներկայացներ զայս ։ Այս՝ որ կը նմանի ծուէն ծուէն կցկցեալ դրօշուց, զոր կը ժողովէ կարկատողն և կը կազմէ գոյնզգոյն վարագոյր կամ սփռոց 'ի զարդ և 'ի պէտս սպասուց տանն։ Այսպէս և իմ Մանանայն՝ 'ի կարգս սպասուց գրականութեան ։

Ես գրականութեան այն չինական մըշակն եմ, որ 'ի վայրիս և 'ի մայրիս կը թարթափի․ լեռնային, դաշտային տունկեր ծաղիկներ և բուսեր կը ժողովէ, և կողովով կ'ածէ զայն 'ի վաճառ 'ի հրապարակս քաղաքին, յորմէ առեալ քաղաքացին՝ արուեստիւ կը վերատնկէ զայն և կը զարմանէ 'ի պարտէզս և 'ի բուրաստանս ապարանից մեծատանց ։

Իսկապէս այս է իմ երկն․ Բանասիրաց և գրասիրաց համար պատրաստած նախնական նիւթ ։

Ահա ՀԱՄ ԵՒ ՀՈՏ ՀԱՑՐԵՆԵԱՑ ։ Վանայ Այգեստանեայց տեղագրութիւնը․ Բնակչաց Վայելչասիրութիւնն և պէս պէս կենցաղավարութիւնք․ Խաղ մանկտւոյն․

Նախապաշարմունք · Սովորոյթք · Զրոյցք ու Մրոյցք ։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆՈՒԹԻՒՆՔ ։ Գիր · Բարբառ, Ջընուըզ կամ Ջինուազն · Քանի մը ազգեր ։

ՎԷՊՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ ։ Հէքեաթներ · Առասպելներ ։

ԵՐԳՔ ԵՒ ՆՈՒԱԳՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ ։ Գըրական և ժողովրդական Երգեր · Տաղեր · Ասացուածքներ · Հանելուկներ ։ Առակներու և Առածներու վրայ · Ծածկաբանութիւն · Ծածկագրութիւնք և Ծածկագիր ։ Դիւթութիւնք և Բժժանք · Հետաքըրքրական մի քանի կտոր բան՝ Դիւթական և բժշկական ։ Հաւախօսութիւն ։ Ջուարճալիք՝ Ազդեցութիւնք կենդանակերպից և Աստեղաց ոմանց ։

ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ։ Պատմութիւն վանայ ։ Երաժշտական ։

ՀԱՅՐԵՆԵԱՑ ԳԱՒԱՌԱԿԱՆ ԲԱՌԵՐ ։ Բոյսք և Տունկք ։ Երկրագործական բառեր ։

Ասոնք են համառօտութիւնք Մանանայիս, կամ բովանդակութիւն գրքոյս ։ Հմուտ ընթերցողն պիտի նկատէ իմ գրած տեսութեանց և յառաջ բերած ժողովըրդական խօսքերուն մէջ այնպիսի կտորներ, որ ինչպէս անգիր պահուած է Հայաստանի բնակչաց բերանը, նոյնպէս և անոնց հետքը մեր ազգային հինգերորդ դարէն՝ ընտիր մատենագրաց մէջն ևս յիշուած է, որով կը հասկցուի թէ անոնցմէ մաս մը ո՛րքան հին և վաղեմի բաներ են եղեր ։ Տեղ տեղ կը յիշատակէ Խորենացին իբրև «Բանս Առասպելաց» ։

ի գրոց Խորենացւոյն ։

«․․․ Բիւրասպի Աժդահակայ առասպելքիցն՝ զդիւացն իմա սպասաւորութեան․ ուսոցն համբուրումն․ և անդուստ վիշապացն ծնունդ․ և յայնմհետէ չարութեան յաճախութիւն ծախել զմարդիկ ՚ի պէտս որովայնի ։ իսկ ապա և Հրոդանայ ումեմն զնա կապել սարեօք պղնձեօք և ՚ի լեառն տանել, որ կոչի Դմբաւընդ․ այլև ՚ի ճանապարհի ննջել Հրոդանայ, և Բիւրասպեայ քարշել ՚ի բլուրս․ և ՚ի զարթչելն Հրոդանայ և տանել զնա յայրս ինչ լերինն և կապել, և զինքն անդրի ընդդէմ նորա հաստատել․ յորմէ պակուցեալ և հնազանդեալ կայ շղթայիցն, և ոչ զօրէ ելանել և ապականել զերկիր ։» ԳԻՐՔ Ա․ ։

«․․․ Անտեղի է մեզ երկրորդել զառասպելն (զազգէն Պարսկաւկաց) յաղագս երազոյն փափագոյն և արտադրութեանց հրոյն մանուածոյ որ ՚ի Սասանայ, և պատումն զհօտին․ և Լուսնակն՝ և Աստարմողացն յառաջասացումն, որ են քաւդեայք․ և որ ինչ զկնի այսոցիկ՝ պոռնկական խորհուրդն Աստաշրի հանդերձ սպանութեամբքն, և անմիտ հանճարաբանութիւն մոգին զստեր վասն Նոխազին, և որ ինչ այլք ամենայն ։ Նաև այծի դիեցումն մանկան ընդ հովանեաւ արծւոյն․ և գուշակումն ագռաւուն, և զերապանծին պահպանութիւն առիւծուն՝ հանդերձ որքանեկութեամբ գայլուն ։» Եւ ։ ԳԻՐՔ Բ․ ԳԼՈՒԽ ԿԷ․ ։

«․․․ Զ Աստուածազդեայ (Արտաշիսեանն) երգիչք Գողթան առասպելաբանեն․ եթէ

'ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց. դժուարի Արտաւազդ ասելով ցհայրն. Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակա՞ց թագաւորեմ: Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի, ասաց այսպէս. Եթէ յորս հեծցիս յԱզատն 'ի վեր 'ի Մասիս, զքեզ կալցեն քաջք, տարցին յԱզատն 'ի վեր 'ի Մասիս. անդ կացցես և զլոյս մի' տեսցես: Զրուցեն ըզսմանէ և պառաւունք. Եթէ՝ արգելեալ կայ յայրի միում կապեալ երկաթի շղթայիւք. հանապազ կրծելով զշղթայսն ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ 'ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան ասեն կապանքն. վասն որոյ և առ մերով ժամանակաւ՝ բազումք 'ի դարբնաց զհետ երթալով առասպելին, յաւուր միաշաբաթոջ երիս կամ չորս բաղխեն ըզսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ»: Եւ թէ, «Վիշապազունքն գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին»: ԳԻՐՔ Բ. ՊՐԱԿ ԾԸ.:

«Ասեն զԵրուանդայ (Արշակունւոյ)՝ ըստ հմայից դժնեայ գոլ ական հայեցուածով, վասն որոյ ընդ այգանալ՝ սովորութիւն ունել ասեն, սպասաւորացն արքունի վէմս որձաքարեայս ունել ընդդէմ Երուանդեայ. և 'ի հայեցուածէ, ասեն, դժնէութեան, պայթել որձաքար վիմացն. ուժս դիւականս առ իւր ունել զօրութիւնս»: ԳԻՐՔ Բ. ՊՐԱԿ ԼԹ.:

«Ի գուսանականացն Հայկայ այր խոժոռադէմ և բարձր, կապուտակարագ անձն և

տափակաքիթ, խորակն և դժնահայեաց, Ցուրք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահաղիմութեան կոչէին Անգեղեայ. վիթխարի հասակաւ և ուժով: կարի աննմանագոյնս թուին և նմա երգ բանից վասն ուժեղութեան և սրտեայ լինելոյ. որ ոչ Սամփսոնի և ոչ Հերակլեայ և ոչ Սաճկին նմանին այն գրոյցք: Քանզի երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք, և ճեղքուլ ըստ կամաց՝ մեծ և փոքր, և քերել եղնգամբքն և կազմել որպէս տախտակ, և գրել նոյնպէս եղընգամբք զարծուիս. և այլս այսպիսիս: Նոյեզեր ծովուն մեծի Պոնտոսի, դիպեալ նաւաց թշնամեացն՝ դիմէ 'ի վերայ, և 'ի խաղալ նոցա 'ի խորն իբր ասպարէզս ութն և տասն, և սա ոչ ժամանեալ, առնու վէմս և ձգէ զկնի, և 'ի սաստիկ պատառմանէ ջուրցն ընկղմին նաւք ոչ սակաւք. և ամբարձումն ալեացն՝ որ 'ի պատառմանէ ջուրցն, վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս »: — « Վասն Ռոստոմայ Սաճկի, ասեն Պարսիկք, ճ. և ի. փղոյ ույժ ունել » (1): ԳԻՐՔ Բ. ՊՐԱԿ Է.:

Իսկ Եզնիկ բաւական մանրամասնօրէն կը նկարագրէ յիշելով. «Համբարուք, Նհանգք, Պարիկք, Յուշկապարիկք, Իշացուլք, Առլէզք, Ծովացուլք, Պայք, Վիշապք, Շահապետք վայրաց,» ևն. «յուրոց ոմանք 'ի կեղծս կեղծս կերպարանին 'ի կանանց կերպարանս, 'ի գրաստս, 'ի

(1) Այս հատուածը կարծես ամբողջապէս կը տարբերի Խորենացւոյն սեպհական ոճէն և բանէն:

հեծեալս ։ «Մին աստ․ Թէ 'ի մերում գիւղ Ծովացուլ զկով գործեաց, և զգոչիւնն հանապազ մեք լսեմք ։ «Եւ զԱրալեզսն' թէ յառաջին ժամանակսն Արալեզք մըզէին զվիրաւորս դիւցազունս և ողջացուցանէին ։ «Են վիշապք և օձք, որ լեռնաբնակք և մեծամեծք են․ որս առնեն, տաճարք են նոցա իբրև մարդկան 'ի բնակութիւն, և 'ի թագաւորազգեաց և 'ի դիւցազանց ունին կապեալ առ իւրեանս կենդանի ։ «Արտաւազդ Հայոց' արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կայ կենդանի․ նա ելանելոց է և ունելոց զաշխարհս ։ «Նհանգն երբեմն 'ի կնոջ կերպարանս երևի, և երբեմն փոկ լինի և լուղորդաց ընդ ոտս անկեալ' հեղձուցանէ ։

«Ի կալս ջորիք և ուղտք երևին․ 'ի դաշտս երագազունք ձգին, և հեծեալք իբրև զմարդիկ զհետ էրէոյ արշաւեն ։ «Բառնայցի 'ի վեր վիշապն եզամբք ինչ անուանելովք ։ «Բասիլիսկոս ազգ, ինչ օձից' հայելով միայն սատակէ զմարդ կամ զանասուն․ ուստի յորժամ 'ի ջրհորս գըտանիցի, ճրագ առնալ իջանեն 'ի ներքս ըմբռնել․ զի հայեցեալ ընդ ճրագն' ոչ մեղանչիցէ մարդոյն օձն ։» ԵԶՆԻԿ ԳԻՐՔ Ա․ ԻԷ․ ։

Երկարագոյն գրուած կայ Խարամանոյ դիւաց, խաւարի շրջողաց, յաւերակս բնակողաց, չարիս պատճառողաց եւ, հաւաքեալ 'ի կարծեաց, յաղանդոց, և 'ի քէշէն Զրադաշտին․ որք մերձաւոր իմն կը համարուին Նարգիզ և Շողեր խաթուններու խօսքերուն ։

Ահա և աստեղաց ազդեցութեանց վրայ գրուածէն : «Քաւղեայքն աստեղանշմարք զծննդոց պատճառս և զմահուանց՝ յաստեղաց իբրև 'ի կենդանեաց դնեն : «Որպէս թէ յորժամ ծնանիցին՝ անդէն և մահուանք իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցին. և ըստ այն ոչ յառաջել ումեք մեռանիլ հնար իցէ, և ոչ յամենալ: «Քաղցրաւորութեանց և չուառութեանց զաստեղսն դնեն պատճառս : «Մինչդեռ Արիւծն, ասեն, յաստեղատանն իցէ, և ծնանիցի ոք, թագաւոր լինելոց է : «Եւ մինչդեռ Եզն է, և ծնանիցի ոք, հզօր և բարենշան գալոց է : «Եւ մինչդեռ Խոյն է, և ծնանիցի ոք, մեծատուն լինելոց է որպէս նայն թաւ և ասուեղ : «Եւ յորժամ Կարիճն է, և ծնանիցի ոք, չար և մեղանչական լինելոց է : «Յորժամ Կրանոսն յաստեղատունն մտանիցէ, թագաւոր մեռանի:» Եզ: ԵԶՆ. ԳԻՐՔ Բ. ԺԳ. ԺԴ. :

— Նաև «Յորժամ ակն մարդկան խաղայցէ, բնական ազդեցութեամբ վասն ըղնորոգ ոք տեսանելոյ լինի նշանակ : «Յորժամ յերանս կամ յայլ անդամս մեւս խաղայցէ, նշանակ հեծանելոյ ուրուք է. կամ զգոնդերձս ազնիւ ագանելոյ, կամ սիրելւոյն պատահելոյ, կամ գան ըմպելոյ : «Յորժամ ոտն կծիցէ կամ ձեռն, մին՝ ճանապարհի գնալոյ նշանակ է կամ անձրևի, և միւսն՝ առնլոյ ինչ յումեքէ կամ տալոյ : «Փնչելն՝ և վեղուին կծել, և ունկանն հարկանել, և ըմբռնելն կծել 'ի բնական ազդեցութենէ անուրծն. զոր ունկեալ է Աբարշին յանդաման. զի յորժամ 'ի խաղհն-

դական զգուշութենէն զերծիցի, բնական ազդեցութեամբն պատսպարեցի։ Իւ յօրանջելն և ձգտելն կարծեցին ոմանք՝ ի դեւէ. և փնչելն՝ ՚ի հրեշտակէ։» Խտ։ ԵԶՆ ԳԻՐՔ Բ. ԺԹ.։

Բուսոց և արմատոց նկատմամբ.

Ի Ս. Գ. Նարեկացւոյ մեկնութենէ Երգոց երգոյն. «Զկինամոմոնէ, ասեն, թէ ՚ի սաստիկ եռանդն կաթսայի մատչի, չիջուցանէ զջերմութիւն եռացման ջրոյն որ ՚ի նմա. և եթէ ՚ի յոյժ ջերմին բաղանիս մտանէ, առ ժամայն իսկ զովացուցանէ ըղտուծն. և այլ այնպիսի իրս անհաւատալի լսողացն ասեն. թէ մարդ որ ՚ի քուն լինի, և կինամոմոն առ նմա իցէ, և որ հարցանէ ոք բան ընդ ննջեալն, պատասխանի առնէ. բայց միայն ՚ի բերանոյն վերայ դիցէ զկինամոմոնն. և ՚ի քուն լինի, և արթուն է. և պատասխանիս բանիցն հարցանողացն առնէ. ՚ի քուն թուի, և արթուն է»։

Ի ձեռագիր մատենէ։ «Մեռոնի ծաղիկք. այս է զօրութիւն։ Բայց պարտ է յայտնել զէութիւն չորիցս ծաղկանցս, թէ ուստի՞ է, կամ ո՞րպէս գտանի, և ո՞րպէս ունի զօրութիւն։ «Հերիկն՝ յԵթովպիայ գտանի յեզր փիսոն գետոյն, և ունի զօրութիւն զդեւս հալածելոյ ՚ի մարդկանէ. և այս է յանդիմանութիւն դիւաց. որ անկար խօսողս խորտակի։

«Ոսկեղէգն՝ Նորաքաղանչ և անուշահոտ ՚ի Սինա լերին գտանի. այլ և զցաւսն բժշկէ. մանաւանդ դքոս և զսրխայնս «Կի-

նամոն 'ի Թեբաիդ գտանի. սքանչելատես և զարմանալի. զի յորժամ ոք 'ի խոր քուն լինի և 'ի վերայ շրթանց դնեն, զամենայն խորհուրդս սրտին ասէ, և ոչ գիտէ. և յորժամ յեռանդ ջուր հասուցանի՝ զովացուցանէ: «Զմուռն 'ի Բաբիլոն գտանի. խնկի նման է. որով մարմին թագաւորաց օծանի, զի անապական մնասցէ. և զի գառն է իբրև զլեղի. յորժամ 'ի քացախ խառնեն և մարդոյ տան, թմբրի. զոր և Քրիստոսի արբուցին: «Այոքան ծաղիկ յարդարեալ յիւղն այն յօծումն քահանայից և թագաւորաց: » եա:

Ի գրոց Եզնըկայ: «Ի բանջարս է ինչ՝ որ առանձինն սատակիչ է, և խառնեալ ընդ այլ բանջարս՝ բժշկիչ պէսպէս ցաւոց լինի: «Զմանրագորն եթէ ոք լոկ ուտիցէ, սատակիչ է. և խառնեալ ընդ այլ արմատս, քնածու լինի քնահատաց: «Եւ զհազար՝ եթէ 'ի տօթ ժամանակի ուտիցէ ոք, վնասէ. և եթէ զջուրն քամեալ անապակ ըմպիցէ ոք, սատակի. և եթէ ըզսերմն աղացեալ՝ ջրով ըմպիցէ ոք, 'ի ցանկութենէ արկանէ: «Եւ կանեփուկն թուփ ինչ է. որոյ սերմն նորա դեղ է. և նոյն դարձեալ կասեցուցիչ ցանկութեան: «Եւ մոլախինդ, որ առանձինն 'ի յայտնի ինչ ժամանակի սպանող է, նովիմբ զմաղձս հընացեալս հնարին բժիշկք հատանել: «Եւ կաղանչանան ազգ ինչ՝ առանձինն սպանող է. և խառնեալ ընդ այլ դեղոյ՝ մաղձադեղ է, բուժիչ 'ի մահուանէ »:

Զանազան քարանց կամ ականց նկատմամբ․ յԸուաքէլ Պատմագրէն ։

« Ալմաստի խասեաթն թէ հարցանես, նա մարդն որ ռանգն մաստանայ լինի, ալմաստն տանի զռանգն․ ու թագաւորաց քաղցր երևնայ․ ու խօսքն ղաբուլ լինի․ 'ի չարէ չվախենայ․ փորցաւութիւն չքաշէ․ մոռացկոտ չլինի․ տայիմ ֆառահ կենայ » ։

« Ասացած են իմաստունքն թէ՝ ով որ 'ի հետն 'Լալ պահէ, ամեն մարազի աղէկ է․ միջացաւի լաւ է․ մարդկան աչաց աղէկ երևնայ․ վատ երազ չտեսնու․ տղոց հետն պահել չէ լաւ, դիւաց այլ աղէկ է․ 'ի մաջունն խառնեն՝ ուրախ առնէ․ երեսի գոյնն կարմիր լինի․ մատէ բանայ » ։

« Զմրուխտն՝ թէ մարդոյ որ գինիր տուած լինին, երկու ղիրաթ ռամանի ուղտի կաթնով տան, նա ազատի Աստուծով․ քրտունք 'ի դուրս ձգէ․ և թէ վիշապ օձ տեսնու՝ 'ի դիմացն բռնէ, օձու աչքերն պատառի․ թէ կարիճ կամ օձ խայթէ, վարդեջրով հմայեն, 'ի վերայ քսեն, ողջըննայ․ ցնորք չքաշէ կամ հոգայ » ։

« Մարգարիտն՝ խասեաթն սուր է ու թաց է․ չաւքօռին աղէկ է՝ աչաց եռալուն․ թէ ալաճայ լինի մարդ՝ սղկեն ու քացախով քսեն, ողջըննայ Աստուծով» ։

« Փանզահրն 'ի հետ պահել շնորհաւոր է, մոնօլի հայոց ասեն․ որ չարաթն վեց ղիրաթ հարնէ 'ի վերայ քարին՝ ուտէ, իւր ժամանակն հարիւր և քսան տարւոյ լինի․ ցաւ չտեսնու․ ով ուտէ կամ 'ի հետ պահէ՝ սրտով լինի․ վատ աչք չբանի․ օձ կամ

իժ չխայթէ · ով որ ամեն օր կէս տանկ ուտէ, խլսի յամենայն չար վտանգէ, և յամենայն մահացու դեղոյ · օգտէ ամենայն գազանահարի, և զչարութիւն խափանէ »:

« Մարջանն՝ մոռացկոտին աղէկ է · գըլուխն չժաժի · սրտի ոյժ տայ · 'ի թութիայն խառնեն՝ աչքից աղէկ է »:

« Աղեղն՝ չարկամին յինքն հայիլ աղէկ է · տղացկանի հետն՝ աղէկ է »:

« Ցեաշմ՝ ով հետ չպահէ՝ յայն տեղն ('ի Չին) էհտիպար չեն լներ · ով հետ պահէ, ժաժկ չի լինի · մարդոյ սիրտ չի թըռնայ · կայծակի աղէկ է :» ևն :

Հարկ չկայ օտար ազգաց պատմութեանց և ժողովրդոց դիմել այսպիսի օրինակներ հաւաքելու համար, որով լի են. մինչև իսկ Աստուծոյ ժողովրդեան պատմութիւնն, Աստուածաշունչ, խորշած չէ իր սրբազան էջերու մէջ զետեղել զանոնք տեղ տեղ:



# ՇՆՈՐՀՆԵՐ

Երեք փշուր գրքոյկներ 'ի լոյս ածինք 1874—75 թուականին, որք համակրութեան արժանացան այնքան, որքան չէին արժանի։ Իբր 'ի քաջալերութիւն մեր տկարութեան ընդունելով ինչ որ խրախուսական և գովասանական խօսքեր, նամակներ, և հրապարակական գրուածքները տեղի ունեցան թէ՝ խմբագրաց և թէ՝ մասնաւորաց կողմանէ. ամենեցուն բարեացապարտ՝ իմ սրտագին շնորհակալութիւնս կը ձօնեմ, սկսեալ Սիօնէն, Արև. Մամուլէն, Կ. Պօլսոյ համայն Հայ լրագիրներէն՝ մինչև Թիֆլիզի Մեղուն և Մշակի Մէլիք-զատէն, որ մկրտեցին, օծեցին իրենց զգացման աւիւնով և շնորհաց իւղով մեր երախայ գրիչը։

Համբուրեմ զաջ Ամենապատիւ Տ. Ներսէս Ս. պատրիարք հօր, որ իւր միւռոնահոտ մատներով հոտաւորեց իմ անհոտ «Շուշանս»։

Համբո՛յր Պատկանեան տէր Գաբրիէլ ծերունի հօր, որ իւր նարդոսածոր գրչով իւղ անոյշ և ցօղ սրսկեց նոյն վայրի «Շուշանիս», և զուարթացոյց և բուրեցոյց զայն։

Համբո՛յր Հ. Գ. Ախշանեանի, որ իւր հայրենաշունչ շնորհաց արժանի ըրած է իմ անշնորհ «Գրոցն ու Բրոցն»:

Ողջո՛յն Պ. Ց. Շահնազարեանին, որ իւր ոգեւանդ խանդով և բարձրաթռիչ մաքով ոգևորած և թևաւորած է նոյն «Գրոց ու Բրոցիս» քօղեալ և թաղեալ իղձեր ու մաղձերը:

Օրհնութիւն և գոհութի՛ւն Աղայ Յովսէփ Իզմիրեանին, որ 'ի գիր և 'ի գանձ հանդիսացաւ ինձ Մեկենաս. գնահատեց իմ գնոց անարժան «Հնոցն ու Նորոցն», և լոյս ու խրախոյս ընձեռնեց նոր նոր վաստակոց, ոչ միայն ինձ, այլ և ամեն գրասիրաց լինիլ մրցանակող:

Զորս յանուանէ շնորհակալեցի, նոցա շնորհաձիր դիրերը կը շարեմ աստէն, որպէս զի նոցա պատուականութեամբ գրքոյկս պատուի, նոցա համով Մանանայս համեմի: Հուսկ՝ իմ մէկ ուղերձն կը կցեմ:



. . . Գարեգին վ. Սրուանձտեանց.

Սիրելի եղբայր 'ի Քրիստոս.

Ինձ մատուցած «Շուշանդ» ընկալայ. անմահն Եղիշեայ դարաստանէն քաղելէիք. ճանչցայ և համբուրեցի զցօղ, որով ցօղեալ

էր Ձեր փունջն․ հառաչեցի Եղիշէի և Ձեր՝ որ անոր թոռն էք՝ սրտերէն ելած հառաչանքով․ օրհնեցի զՁեզ՝ որ այսպէս պարզ ու գեղեցիկ թարգմանեցիք զՄեղուաշուրթն Եղիշէն․ և աղօթեցի՝ որ Հայոց խօսնակին զգացմունքն՝ և նորա հռչակած Հայ խոստովանողաց և արիագունդ նահատակաց սիրտն ու ոգին 'ի Ձեզ հանգչին ընդ միշտ․ և զշունչ յետին՝ Աւարայրի սուրբ դաշտին հաւատարիմ քրտնաջան մշակն լինիս 'ի ցնծութիւն և 'ի մխիթարութիւն հոգւոյ մերոյ և ամենայն Հայաստանեայց ։

Աղօթարար
Գ. Կ. ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

1875 Յուլիս 12
Պատրիարքարան Հայոց



. . . Գարեգին վարդապետ․

Արինդ Աստուածային Հոգւոյն․

ԶՇուշանն Շաւարշանայ՝ կապեալ 'ի փունջ՝ ընկալայ 'ի զմայլումն երիթացեալ հոգւոյս․ որ 'ի բազմաց հետէ զրկեալ է 'ի հոտառութենէ, յազդեցութենէ սառնամանեաց․ այլ անուշութիւն բուրմանց

Նորին, և անարատ սպիտակութիւն լուսատեսիլ փայլմանց, յորս Նիշք բոսորայինք 'ի կայլականց արեան մերոց խնկաւորեալ դիւցազանց, որք սկզբնաւորեցան Վարդանաւ և վերջացան Գարեգնաւ, նման երկնատեղաց ցօղոյ՝ դիւրաքանչիւր թերթիկ Նորին որպէս յակնթօք գոհարաց զարդարեալ, նորոգեաց որպէս արծուոյ զմանկութիւն իւր. և շարժեաց Նախանձ՝ ագահիլ առ մէն մի ակն յեռեալ 'ի Նոսին:

Հրաման տուր՝ ե՛րիտասարդ արդիւնարար, զառամեալ և անպիտանացեալ ծերոյս, ձօնել համբոյրս ջերմիկս այնոցիկ մատանց, որ 'ի վերայ Գրոցին և Բրոցին, Հնոցին և Նորոցին, զայս Նոր փունջ Շաւարշանեան Շուշանին բոլորեաց, և հայցել յամենապարգև շնորհաց Վերնոյն՝ կազդուրել զնոսա 'ի պէտս կարեաց ազգիս և եկեղեցւոյ Նորա. և ընձեռել Նոցա զայն զօրութիւն, զոր եդեալ էր 'ի թաթն երեւեալ յակումբ խրախճանացն՝ որ 'ի Բաբիլոն:

Հա՛յր սուրբ, դուք Շուշան Շաւարշանայ արարեալ էք զՎարդան և զընկերս Նորա, և ընտրեալ էք զմասն բարի, որ և ո՛չ բարձցի 'ի ձէնջ, այլ ծերունիս զառամեալ՝ Շուշան Շաւարշանայ արարեալ էր զՅանդուխտ, զՊատարագն Նորա նկարա-

գրելով յանձնուկ դաստառակի ։ Արիացի՛ր՝ մշա՛կդ 'ի բազմաց ակնկալեալ, և ուրախ արա՛ զծերոյս զառամելոյս թախծեալ սիրտ, որում անդադար լսելի լինի ձայն հոգւոյն, թէ՝ Նմա պարտ է աճել և քեզ մեղմանալ ։

Մնամ . . .

Ծերունի Գաբրիէլ Պափազեան .

1875 Յուլիսի 25

Ս. Պ. Բուրգ .



Ս. Ղազար, 16 Յունվ. 1875.

. . . Տ՛էր Վարդապետ .

Քաղցրիկ լրագրաց մէջ նախ կարդալով Ձեր Գրոց և Բրոց ծանուցումն՝ գրեցի առ թղթակիցս խաւրել ինծի օրինակ մը . բայց իրմէ առաջ ընդունեցայ Ձեր իսկ ընծայածը, որով կ'իմանաք թէ ինծի քանի՜ պատիկ հաճոյ եղաւ, և ո՛րքան շնորհակալ եմ, թէ՛ ընծայելուդ և թէ՛ ընծայիդ . որ աւելի հաճոյացաւ երբ կարդացի, և երբ իմ ընկերակիցքս ալ նոյն հաճութեամբ կարդացին ։ Շատոնց իմ երթևեկ միափա-

քանացս մէկն ալ էր լսել 'ի զանազան կողմանս Հայոց աշխարհի գաւառական աւանդութիւնս և հաւատարմութեամբ նշանակել· և ահա նոյն է Ձեր ըրածն ալ· և ուրիշ քանի մ'ազգասէր վարդապետաց, զոր յիշէք, և որոց հաւաքման հրատարակութեանց ալ սպասեմ փափաքանօք, և արդէն շատ ալ սպասած եմ, որովհետև տարիներով առաջ խոստմունք եղած էր՝ յազգային լրագիրս՝ այդպիսի հրատարակութեանց, յորոց մէկն ալ էր Ղևոնդ վարդապետի հաւաքեալ Յիշատակարանք Ձեռագրաց։

Ձեր հրատարակեալ աւանդութեանց մէկ մասն արդէն ծանօթ էր ինձ՝ մեր Հ. Ներսէս վարդապետի ուղևորութեամբ, բայց գտայ և նոր զրոյցներ Ձեր քով։ Միայն թէ ես այդչափով գոհ չեմ ըլլար, աւելի մեծ Բրոցներ կ'ուզեմ որ Գրոցն ալ աւելի ընդարձակ ըլլայ։ Ունէի քանի մը հարցունելիք ալ, այլ գրքոյկդ ուրիշի քով ըլլալով՝ մնաց ուրիշ թղթի։ Միայն յիշեմ որ յ'85 երես երգ մը յիշես, փափագէի այդոր օրինակն ունենալ։ — Յ'82 երեսն ալ յիշէք Կապուտան ծով մը· իմ գիտցածս նոյն պէտք է ըլլայ ընդ Ուրմիայ ծովուն։

Փափագէի ևս որ Դաւթի պատմութեան մէջ գրուած քանի մը բառից ծանօթու-

թիւն ըրած ըլլայիք, որք ինծի պէս 'ի պանդխտութեան ծնած և ապրածի ան-ծանօթ են ։

Ընդ թղթոյս խաւրեմ Ձեզ յիշատակ գրքոյկ մ'ալ (1) զոր հաճեցէք ընդունիլ. և ողջ լերուք ։

Հ. Ղեւոնդ Մ. Ալիշանեան.



1875 Մարտ 4, Կ. Պօլիս
Մէքթէպի Սուլթանի.

. . . Գարեգին վարդապետ.

Ձեր Գրոց ու Բրոց գրքոյկն է այն ազգի գրութիւններէն՝ որք շատ քիչ անգամ 'ի հրապարակ կ'ելլեն, և որք իրենց պատուա-կանութեան համար միշտ փնտռուած ու կարդացուած են ։ Ընթերցողն ձեր գրքոյ-կին մէջ չգտներ միայն վէպեր, զորս պարզ ու կարճ կերպով կը գրէք կ'անցնիք, բայց 'ի պայծառութենէ մի որ ունի շատ մը նուրբ և կորովի դարձուածքներ, կը գտնէ նա ամեն տեսակ նիւթոց առատութիւն մի՝ իր ուշադրութիւնը գրաւելու արժանի։ Երկրաբանին կը ցուցնէք իրեն անծանօթ

---

(1) Ներբողս Շնորհալի և Պարագայք իւր ։

նամոն 'ի Թեբաիդ գաւառի · սքանչելատես և զարմանալի · զի յորժամ ոք 'ի խոր քուն լինի և 'ի վերայ շրթանց դնեն , զամենայն խորհուրդս սրտին ասէ , և ոչ գիտէ · և յորժամ յեռանդ ջուր հասուցանի՝ զովացուցանէ ։ « Զմուռն 'ի Բաբիլոն գաւառի · խնկի նման է · որով մարմին Թագաւորաց օծանի , զի անապական մնասցէ · և զի դառն է իբրև զլեղի · յորժամ 'ի քացախ խառնեն և մարդոյ տան , Թմբրի · զոր և Քրիստոսի արբուցին ։ « Այսքան ծաղիկ յարդարեալ յիւղն այն յօծումն քահանայից և թագաւորաց ։ » եւն ։

Ի գրոց Եզնըկայ ։ « Ի բանջարս է ինչ՝ որ առանձինն սատակիչ է , և խառնեալ ընդ այլ բանջարս՝ բժշկիչ պէսպէս ցաւոց լինի ։ « Զմանրագորն եթէ ոք լոկ ուտիցէ , սատակիչ է · և խառնեալ ընդ այլ արմատս , քնածու լինի քնահատաց ։ « Եւ զհազար՝ եթէ 'ի տօթ ժամանակի ուտիցէ ոք , վնասէ · և եթէ զջուրն քամեալ անապակ ըմպիցէ ոք , սատակի · և եթէ ըզսերմն աղացեալ՝ ջրով ըմպիցէ ոք , 'ի ցանկութենէ արկանէ ։ « Եւ կանեփուկն թմբի ինչ է · որոյ սերմն նորա դեղ է · և նոյն դարձեալ կասեցուցիչ ցանկութեան ։ « Եւ մոլախինդ , որ առանձինն 'ի յայտնի ինչ ժամանակի սպանող է , նովիմբ զմաղձս հընացեալս հնարին բժիշկք հատանել ։ « Եւ կաղանչանան ազգ ինչ՝ առանձինն սպանող է · և խառնեալ ընդ այլ դեղոյ՝ մաղձադեղ է , բուժիչ 'ի մահուանէ » ։

Զանազան քարանց կամ ականց նկատմամբ․ յԱռաքէլ Պատմագրէն ։

«Ալմաստի խասեաթն թէ հարցանես, նա մարդն որ ռանգն մաստանայ լինի, ալմաստն տանի զռանգն․ ու թագաւորաց քաղցր երևնայ․ ու խօսքն ղաբուլ լինի․ ՚ի չարէ չվախենայ․ փորցաւութիւն չքաշէ․ մոռացկոտ չլինի․ տայիմ ֆառահ կենայ»։

«Ասացած են իմաստունքն թէ՝ ով որ ՚ի հետն՚ Լալ պահէ ; ամեն մարազի աղէկ է․ միջացաւի լաւ է․ մարդկան աչաց աղէկ երևնայ․ վատ երազ չտեսնու․ տղոց հետն պահել չէ լաւ, դիւաց այլ աղէկ է․ ՚ի մաջունն խառնեն՝ ուրախ առնէ․ երեսի գոյնն կարմիր լինի․ մատէ բանայ»։

«Զմրուխտն՝ թէ մարդոյ որ զէհիր տուած լինին, երկու ղիրաթ ռամանի ուղտի կաթնով տան, նա ազատի Աստուծով․ քրտունք ՚ի դուրս ձգէ․ և թէ վիշապ օձ տեսնու՝ ՚ի դիմացն բռնէ, օձու աչքերն պատառի․ թէ կարիճ կամ օձ խայթէ, վարդեջրով հմայեն, ՚ի վերայ քսեն, ողջըննայ․ ցնորք չքաշէ կամ հոգայ»։

«Մարգարիտն՝ խասեաթն սուր է ու թաց է․ չաւքօռին աղէկ է՝ աչաց եռալուն․ թէ ալաճայ լինի մարդ՝ սղկեն ու քացախով քսեն, ողջնինայ Աստուծով»։

«Փանզահրն ՚ի հետ պահել չնորհաւոր է, ծանօղի հոյան ամեն․ որ չաքաթն վեց ղիրաթ հարնէ ՚ի վերայ քարին՝ ուտէ, իւր ժամանակն հարիւր և քսան տարւոյ լինի․ ցաւ չտեսնու․ ով ուտէ կամ ՚ի հետ պահէ՝ սրտով լինի․ վատ աչք չբանի․ օձ կամ

իժ չխայթէ ․ ով որ ամեն օր կէս տանկ ուտէ , խլսի յամենայն չար վտանգէ , և յամենայն մահացու դեղոյ ․ օգտէ ամենայն գազանահարի , և պչարութիւն խափանէ » ։

« Մարջանն՝ մռուացկոտին աղէկ է ․ գըլուխն չժաժի ․ սրտի ոյժ տայ ․ ’ի թութիւն խառնեն՝ աչից աղէկ է » ։

« Աղեղն՝ չարկամին յինքն հայիլ աղէկ է ․ տղացկանի հետն՝ աղէկ է » ։

« Ցեաշմ՝ ով հետ չպահէ՝ յայն տեղն (’ի Չին) էհտիպար չեն լներ ․ ով հետ պահէ , ժաժկ չի լինի ․ մարդոյ սիրտ չի թըռնայ ․ կայծակի աղէկ է ։ » և։ ։

Հարկ չկայ օտար ազգաց պատմութեանց և ժողովրդոց դիմել այսպիսի օրինակներ հաւաքելու համար , որով լի են ․ մինչև իսկ Աստուծոյ ժողովրդեան պատմութիւնն , Աստուածաշունչ , խորշած չէ իր սրբազան էջերու մէջ զետեղել զանոնք տեղ տեղ ։



# ՇՆՈՐՀՆԵՐ

Երեք փչուր գրքոյկներ 'ի լոյս ածինք 1874—75 թուականին , որք համակրութեան արժանացան այնքան , որքան չէին արժանի։ Իբր 'ի քաջալերութիւն մեր տկարութեան ընդունելով ինչ որ խրախուսական և գովասանական խօսքեր , նամակներ , և հրապարակական գրուածքները տեղի ունեցան թէ' խմբագրաց և թէ' մասնաւորաց կողմանէ . ամենեցուն բարեացապարտ՝ իմ սրտագին շնորհակալութիւնս կը ձօնեմ, սկսեալ Միօնէն , Արև. Մամուլէն , Կ. Պօլսոյ համայն Հայ լրագիրներէն՝ մինչև Թիֆլիզի Մեղուն և Մշակի Մէկեքզատէն, որ մկրտեցին, օծեցին իրենց զգացման աւիւնով և շնորհաց իւղով մեր երախայ գրիչը։

Համբուրեմ զաջ Ամենապատիւ Տ. Ներսէս Ս. պատրիարք հօր, որ իւր միւռոնահոտ մատերով հոտաւորեց իմ անհամ «Շուշանս»։

Համբո՛յր Պատկանեան տէր Գաբրիէլ ծերունի հօր , որ իւր նարդոսածոր գրչով իւղ անոյշ և ցօղ սրսկեց նոյն վայրի «Շուշանիս», և զուարթացոյց և բուրեցոյց զայն։

Համբո՛յր Հ. Ղ. Ալիշանեանի, որ իւր հայրենաշունչ շնորհաց արժանի ըրած է իմ անշնորհ «Գրոցն ու Բրոցն»։

Ողջո՛յն Պ. Ց. Շահնազարեանին, որ իւր ոգեռանդ խանդով և բարձրաթռիչ մտքով ոգևորած և թևաւորած է նոյն «Գրոց ու Բրոցիս» քօղեալ և թաղեալ իղձեր ու մաղձերը։

Օրհնութիւն և գոհութի՛ւն Աղայ Յովսէփ Իզմիրեանին, որ 'ի գիր և 'ի գանձ հանդիսացաւ ինձ Մեկենաս. գնահատեց իմ գնոց անարժան «Հնոցն ու Նորոցն», և յոյս ու խրախոյս ընձեռնեց նոր նոր վաստակոց, ոչ միայն ինձ, այլ և ամեն գրասիրաց լինիլ մրցանակող։

Զօրս յանուանէ շնորհակալեցի, նոցա շնորհաձիր դիրերը կը շարեմ աստէն, որպէսզի նոցա պատուականութեամբ գրքոյկս պատուի, նոցա համով Մանանայս համեմի։ Հուսկ՝ իմ մէկ ուղերձն կը կցեմ։



... Գարեգին Վ. Սրուանձտեանց.

Ամէնի եղբայր 'ի Քրիստոս.

Ինձ մատուցած «Շուշանդ» ընկալայ. անմահն Եղիշեայ դարաստանէն քաղելէիք. ճանչցայ և համբուրեցի զցօղ, որով ցօղեալ

էր Ջեր փունջն . հառաչեցի Եղիշէի և Ջեր՝ որ անոր թոռն էք՝ սրտերէն ելած հառաչանքով. օրհնեցի զՋեզ՝ որ այսպէս պարզ ու գեղեցիկ թարգմանեցիք զՄեղուաչութիւն Եղիշէն . և աղօթեցի՝ որ Հայոց խօսնակին զգացմունքն՝ և նորա հռչակած Հայ խոստովանողաց և արիագունդ նահատակաց սիրտն ու ոգին 'ի Ջեզ հանգչին ընդ միշտ . և զշունչ յետին՝ Աւարայրի սուրբ դաշտին հաւատարիմ քրտնաջան մշակն լինիս 'ի ցնծութիւն և 'ի մխիթարութիւն հոգւոյ մերոյ և ամենայն Հայաստանեայց ։

Աղօթարար

**Գ. Կ. ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

1875 Յուլիս 12

Պատրիարքարան Հայոց



. . . Գարեգին վարդապետ .

Արինդ Աստուածային Հոգւոյն .

ԶՇուշանն Շաւարշանայ՝ կապեալ 'ի փունջ՝ ընկալայ 'ի զմայլումն երիթացեալ հոգւոյս . որ 'ի բազմաց հետէ զրկեալ է 'ի հոտառութենէ , յազդեցութենէ սառնամանեաց . այլ անուշութիւն բուրմանց

նորին, և անարատ սպիտակութիւն լուսատեսիլ փայլմանց, յորս նիշք բոսորայինք 'ի կայլակաց արեան մերոց խնկաւորեալ դիւցազանց, որք սկզբնաւորեցան Վարդանաւ և վերջացան Գարեգնաւ, նման երկնատեղաց ցօղոյ՝ դիւրաքանչիւր թերթիկ նորին որպէս յակնթօք գոհարաց զարդարեալ, նորոգեաց որպէս արծուոյ զմանկութիւն իմ. և շարժեաց նախանձ՝ ագահիլ առ մէն մի ակն յեռեալ 'ի նոսին:

Հրաման տուր՝ ե'րիտասարդ արդիւնարար, զառամեալ և անպիտանացեալ ծերոյս, ձօնել համբոյրս ջերմիկս այնոցիկ մատանց, որ 'ի վերայ Գրոցին և Բրոցին, Հնոցին և Նորոցին, զայս նոր միունջ Շաւարշանեան Շուշանին բոլորեաց, և հայցել յամենապարգև շնորհաց վերնոյն՝ կազդուրել զնոսա 'ի պէտս կարեաց ազգիս և եկեղեցւոյ նորա. և ընծեռել նոցա զայն զօրութիւն, զոր եդեալ էր 'ի թաթն երեւեալ յակումբ խրախճանացն՝ որ 'ի Բաբիլոն:

Հա'յր սուրբ, դուք Շուշան Շաւարշանայ արարեալ էք զՎարդան և զընկերս նորա, և ընտրեալ էք զմասն բարի, որ և ո'չ բարձցի 'ի ձէնջ, այլ ծերունիս զառամեալ՝ Շուշան Շաւարշանայ արարեալ էր զՍանդուխտ, զՊատարագն նորա նկարա-

գրելով յանձնուկ դաստառակի ։ Արիացի՛ր՝ մշա՛կդ 'ի բազմաց ակնկալեալ , և ուրախ արա՛ զծերոյս զառամելոյս թախծեալ սիրտ , որում անդադար լսելի լինի ձայն հոգւոյն , թէ՝ Նմա պարտ է աճել և քեզ մեղմանալ ։

Մնամ . . .

Ծերունի Գաբրիէլ Պատկանեան .

1875 Յուլիսի 25

Ս. Պ. Բուրգ .



Ս. Ղազար , 16 Յունվ. 1875.

. . . Տէր Վարդապետ .

Քաղքիդ մրագրաց մէջ նախ կարդալով Ձեր Գրոց և Բրոց ծանուցումն՝ գրեցի առ թղթակիցս խաւրել ինծի օրինակ մը . բայց իրմէ առաջ ընդունեցայ Ձեր իսկ ընծայածը , որով կ'իմանաք թէ ինծի քանի՛ պատիկ հաճոյ եղաւ , և ո՛րքան շնորհակալ եմ , թէ՛ ընծայելուդ և թէ՛ ընծայիդ . որ աւելի հաճոյացաւ երբ կարդացի , և երբ իմ ընկերակիցքս ալ նոյն հաճութեամբ կարդացին ։ Շատոնց իմ երթևեկ փախա-

քանացս մէկն ալ էր լսել 'ի զանազան կողմանս Հայոց աշխարհի զտեղական աւանդութիւնս և հաւատարմութեամբ նշանակել. և ահա նոյն է Ձեր ըրածն ալ. և ուրիշ քանի մ'ազգասէր վարդապետաց, զոր յիշէք, և որոց հաւաքման հրատարակութեանց ալ սպասեմ փափաքանօք, և արդէն շատ ալ սպասած եմ, որովհետև տարիներով առաջ խոստմունք եղած էր՝ յազգային լրագիրս՝ այդպիսի հրատարակութեանց, յորոց մէկն ալ էր Ղևոնդ վարդապետի հաւաքելու Յիշատակարանք Ձեռագրաց:

Ձեր հրատարակելու աւանդութեանց մէկ մասն արդէն ծանօթ էր ինձ՝ մեր Հ. Ներսէս վարդապետի ուղևորութեամբ, բայց գտայ և նոր զրոյցներ Ձեր քով: Միայն թէ ես այդչափով գոհ չեմ ըլլար, աւելի մեծ Բրոցներ կ'ուզեմ որ Գրոցն ալ աւելի ընդարձակ ըլլայ: Ունէի քանի մը հարցունելիք ալ, այլ գրքոյկդ ուրիշի քով ըլլալով՝ մնաց ուրիշ պառթի: Միայն յիշեմ որ յ'85 երես երգ մը յիշես, փափագէի այդոր օրինակն ունենալ: — Յ'82 երեսն ալ յիշէք Կապուտան ծով մը. իմ գիտցածս նոյն պէտք է ըլլայ ընդ Ուրմիայ ծովուն:

Փափագէի ես որ Դաւթի պատմութեան մէջ գրուած քանի մը բառից ծանօթու-

թիւն ըրած ըլլայիք , որք ինծի պէս 'ի պանդխտութեան ծնած և ապրածի անծանօթ են ։

Ընդ թղթոյս խաւրեմ Ձեզ յիշատակ գրքոյկ մ'ալ (1) զոր հաճեցէք ընդունիլ · և ողջ լերուք ։

Հ. Ղևոնդ Մ. Ալիշանեան.



1875 Մարտ 4 , Կ. Պօլիս
Մէքթէպի Սուլթանի.

. . . Գարեգին վարդապետ ·

Ձեր Գրոց ու Բրոց գրքոյկն է այն ազգի գրութիւններէն՝ որք շատ քիչ անգամ 'ի հրապարակ կ'ելլեն , և որք իրենց պատուականութեան համար միշտ փնտռուած ու կարդացուած են ։ Ընթերցողն ձեր գրքոյկին մէջ չգտներ միայն վէպեր , զորս պարզ ու կարճ կերպով կը գրէք կ'անցնիք , բայց 'ի պայծառութենէ մի որ ունի շատ մը նուրբ և կորովի դարձուածքներ , կը գտնէ նա ամեն տեսակ նիւթոց առատութիւն մի՝ իր ուշադրութիւնը գրաւելու արժանի։ Երկրաբանին կը ցուցնէք իրեն անծանօթ

(1) Ներսէս Շնորհալի և Պարագայք իւր ։

բոյսեր․ Աշխարհագիրին ընդարձակ ու ցանկալի տեղեկութիւններ կուտաք սիրելի երկրի մի վրայ, որոյ ոտքերդ կոխեր է հողն, ու բերանիդ շնչեր է օդը․ Հնախօսին սիրտը եռանդ կը ձգէք խուզարկութիւններ ընելու այն երկրին մէջ, ուր շատ քաջութեան հետքերն ընդ հողով ծածկեալ՝ դիպուածով միայն յերևան գան մերթ ընդ մերթ․ իսկ Բանաստեղծին կը վառէք կը բորբոքէք սիրտն ու խանդը, երբ շնորհալի առասպելները քաղելով բնակչաց շրթներէն մեզ կը պատմէք։ Բայց ի՞նչպէս յայտնեմ Ձեզ այն ազդեցութեան ոյժն ու սաստկութիւնը, որ Գրոց ու Բրոց առջի տողէն սկսեալ մինչև յետինը կ՚ազդեն ազգասէր սրտից վրայ։ Բանահիւսն մինչև ցարդ յուսակտուր ջայլեր արձակելով իր աւերակուռ աշխարհին վրայ չընդարձակէր, չաստկացնէր ՚ի մեզ ա՛յլ զգացմունք մի, բայց միայն ծանրակիր անյուսութիւն մի․ Դուք՝ թէև նման անոնց ունիք իբրև առարկայ ձեր խօսից զհողն ու ջուրն այն տխուր երկրին, Դուք տարբեր ազդում մի կը գործէք կրծքի և երևակայութեան վրայ, վասն զի յանդիման կարծես մեր աչաց կը բերէք Դուք կը դնէք գրութեամբ մի կարի յոյժ սիրելի երկիր մի՝ իր բոլոր աւերակներովն, ուր միանգամայն վեհա-

գլուխ սարերու ստորոտն փոշւոց հետ խառն տեսնելով սննդագործ ցողուններ ու բարունակներ, մեր կենդանի յոյսեր, տրտմելու փոխան կը քաջալերուին ու կը զուարթանան ։ Այսպէս ես, և հաւանականաբար շատերն ալ ինծի նման, երբ կը կարծէի թէ Հայերն Հայաստանի մէջ ընկճուելով հազարամեայ թշուառութեանց տակ, կորուսած ըլլային իրենց հարանց դրոշմն ու բարբառը, և ասոնց հետ մէկտեղ ամէն մտաւորական գոյութիւն, սքանչացած կը կարդամ այն սիրուն առասպելները, ուր կ'ըսուի թէ «Հայաստանի լճակներ և գետերը հրեղէն աղջիկներ ունին իրենց ալեաց մէջ»։ Զգիտեմ ասո՞նք աւելի գեղ ունին արդեօք թէ Յունաց Նայեադք ։ Երևակայութեան շատ ընտիր մի ծնունդ է այն Մշոյ մշուշին բացատրութիւնը․ «Ահա՛ չքնաղ Աստուածուհի մի, որ կը լոգանայ, ահա՛ սրտատրոփիկ պատանիներ լերանց բարձանց վրայ խարոյկ արկանել կ'ուզեն կրակին լուսով դիտել այդ գեղեցկութիւնը, որ սրտմտած հրաման կուտայ իր աստուածային իշխանութեամբ մռայլներու՝ մշուշներու՝ իջնալ պատել, իբր պատիժ, այն անոյշ ջրերն ու հողերը»։

Միտքս իրաւապէս կը յափշտակուի երբ կը կարդամ այն խորհրդային թանաստեղ-

ծութիւնը, որ մեզ իբր «մի հրաշալի դիտարան կը ցուցնէ Վարագայ Սարը, ուր ելլողը կը տեսնէ եղեր թէ ի՞նչպէս օրուան թագաւորն ցերեկին՝ և թագուհին աղ գիշերայն՝ իր աստղաճաճանչ նաժիշտներով լուելեայն, ամչկոտ, ու քօղ ծզած երեսին, կ՚ընթանան երկնից դաւառներէն. թէ այն աղօտավառ լոյսերն որ կը տեսնուին Ցարդգողին մէջ՝ ի՞նչ են»: Ո՞ր խօսքն աւելի յարմար է արևուն զօրութիւնը իմացնել տալու քան այս խօսքը. «Այդ լերան լուսեղէն ճակոթներով ճառագայթի պէս կը զարնեն. ԼԵՌԸ ԿԸ ՑԱԾՆԱՑ, ԱՄԷՆ ՍԱՐԵՐՆ ԻՐԵՆՑ ԳԼՈՒԽԸ ԿԸ ԽՈՆԱՐՀԵՆ»: Իսկ մրրկի գոռում գոչումը, փայլակը, կայծակը և ծիածանը՝ մէկմէկ մտաւորական վսեմ յղութիւններ են: Աստուաներու տեղափոխութիւնն այնչափ շնորհալի բանաստեղծութիւն մի կ՚երևայ ինձ իր պարզութեան մէջ, որ անհնարին է զգացմանս ստիճանը յայտնել Ձեզ:

Միևնոյն ժամանակը որ գրիչնիդ հարևանցի զասոնք գրելով կ՚երթայ յառաջ, կաթիլ մի մաղձ հոս և հոն թափելով կը սահի կ՚անցնի: Ձկայ թերթ մի, որ իր տխուր մասը չունենայ զգացող սրտին համար, և եթէ այդ ստորագրութեանց մէջ երբէք երբէք կարճ բացագանչութիւն մ՚ալ տես-

նուի, բաւական է ան 'ի վեր 'ի վայր յուզելու միտքն ու սիրտը։ Ո՛րչափ խորունկ կը հնչէ սրտիս մէջ այս խօսքը. «Ո՛հ, միթէ կարելի՞ է գերեզմաններն ալ կրօնափոխ ընել»։ Է՛հ, միթէ մնա՞ց ուրիշ բան մ'ալ, այդ քարերուն սրբութի՞ւնն ալ կողոպտել կ'ուզեն։ Լոկ անուն մի, որով կը պարծենանք, տեսէք ահա եղծանել, փոխել կ'ուզեն զայն ալ. «Քիւրտիստան կը կոչեն առաւել անգթութեամբ քան թէ անգիտութեամբ այն երկիրը, որ տակաւին մինչև այսօր և մինչև յաւիտեան Հայաստան է ու Հայաստան պիտի մնայ»։ Ո՛հ, որչափ ալ դժնդակ է այն ցաւը, զոր կ'զգայ Հայու սիրտն իմանալով՝ որ իր եղբայրք կը նուիրեն իրենց հանճարը օտարին, թէ «Քրտերու և Տաճկաց կեանքին վերաբերեալ խաղերէն ալ շատը՝ կը յօրինեն Հայեր»։ Թո՛ղ, թո՛ղ կարկամ մնան այն ատեն շրթունք։

Աշխարհագրական տեղեկութիւնները շատ թանգագին են մեր ազգաց առջև. սակայն կարծեմ թէ ինչպէս ինձ, նոյնպէս շատերուն ալ շատ փափաքելի է ունենալ աւելի ընդարձակ տեղեկութիւններ «Հասնանցի կամ Մըմըկանի Քրդից վրայ որ Մամիկոնեան տունն ենք» կ'ըսեն. նմանապէս Զըլըգցւոց վրայ որ «Հայ եմք եղեր», կ'ըսեն,

ու մեր ազատութեան համար զէնքը չձգեցինք, հաւատքը փոխեցինք»։ Դարձում մի, որ ազատասէր սիրտ մի չկարէր շատ պարսաւել։

Մեծ զարմացման մէջ ինկայ, երբ կարդացի այն տողերը ուր կ'ըսէք թէ «Կինճ լերանց բնակիչք 'ի հնուց մինչև ցայժմ անկախ վիճակ մի ունին, թէ Սասնոյ և Խութայ ներկայիս բնակիչք իրենց զէնքն ու վառօդը իրենք կը շինեն, և որոց կանայք իսկ զէնք կը կրեն»։

Հոս կանգ կ'առնում, և առանց քաղաքավարութեան ստապատիր ձևերը գործածելով խօսքիս մէջ, կ'աղաչեմ ձեր ազգասիրութենէ տալ ինձ մի քանի ուրիշ տեղեկութիւններ այս երկիրներուն մարդոց կենցաղավարութեան վրայ. «հարկ է մեզ զմեզ լաւ ճանչնալ», նոյնպէս և մեր երկիրը ու իր այլ և այլ ազգերը։ Ձեմ նայիր որ Դուք ամենևին զիս չէք ճանչնար, նոյնպէս և ես զՁեզ. մի գրութիւն կամ մի տող գիր կամ մի խօսք միայն բաւական է գրողին սիրտը ընթերցողին առջև դրքի մի պէս բանալու որ մէջը կարդայ։

Առ այժմ այսչափով գոհանալով կը մնամ յարգանօք.

Ց. Շահնազարեան.



4/16 Մարտի 1875, Ս. Պետերբուրգ.

. . . Հա՛յր.

Ի վերջաբանի Ձեր պատուական գրքոյկին որ կոչի «Հնոց և Նորոց»՝ ուրախութեամբ սրտի կ'ընթեռնում որ դուք մտադիր էք շարունակել Ձեր հրատարակութիւնքը, եթէ ազգայինք մեր դրամօք քաջալեր հանդիսանան Ձեզ առ այդ ։

Արդ որպէս համակրող Ձեր արդիւնաւոր վաստակոց՝ ես ևս 'կը ցանկամ նոցա տպագրութեան ձեռնտու ընթերցողներէն մին լինիլ և յօժարութեամբ կ'առաքեմ այն 200 ֆրանկի մուրհակը, զոր կ'խնդրեմ ընդունել իբրև դուզնաքեայ՝ բայց անկեղծ նպաստ վասն յաջողութեան Ձեր փութաջան երկոց և իբրև համեստ նշան յարգանաց առ անձն Ձեր մեծարոյ, որոյ հայրական օրհնութեանց

Մնամ միշտ կարօտ

Յովսէփ Իւնիքեան.



# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Առ

Մեծապատիւ Աղայ Յովսէփ Իզմիրեանց.

Եօթանասնամեայ ծերունւոյ մը՝ որ արմաւենի կը տնկէր, կը պատահի Տաճկաց Սուլթան Մուրատն յԱսորեստան ։

— « Կը յուսա՞ս, ո՛վ ծեր, քառասուն տարի ևս ապրիլ և տնկածիդ պտուղը վայելել», կը հարցունէ Սուլթանն ։

— « Ապրիմ չապրիմ՝ Աստուած գիտէ. բայց որովհետև ուրիշներու տնկած արմաւենիէն վայելեցի ես, պէտք է այլոց համար ալ ես տնկեմ», կը պատասխանէ ծերն ։

Սքանչացած այս զրուցուածքին, և աշխատութիւնը քաջալերելու նպատակաւ՝ ափով մը ոսկի կը պարգևէ ծերոյն Սուլթանն, որում կը փոխադարձէ տնկողն այս ոսկեղէն խօսքը ։

— « Տէ՛ր, ահա տնկածիս պտուղն այժմէն իսկ վայելեցի լիուլի» ։

Ծերոյն պատահումն պատահեցաւ ինձ։ Նայելով իմ փանաքի երկոցս, Ձեր ըրած քաջալերն լիուլի վարձատրեց զիս. և արդարև արքունական բարձր գաղա-

փարով մի ընդհանուր գրիչները մրցանա-կել կ՚այցելէք դուք ահա Ձեր միւս իմ վսեմ Նամակաւ, զոր հրատարակեց Մասիս պատուական լրագիրն իւր 1661 Թուահա-մարաւ ։

Ես կու գամ այժմ շնորհակալել ձեզ ոչ միայն իմ անձինս կողմանէ, այլ յանուն ազգային գրական կաճառոյն, որոցմով 'ի ձեր խրախոյս մեր հայրենեաց քարերը քնարի պիտի փոխուին, և բրիչները գրչի։ Ո՜վ իմաստուն վաճառական, որ զՀայս և զՀայաստանեայս գլխովին կը գնահատես ։

Ներեցէք ինձ, որ այս առթիւ իմ շնոր-հակալիքս յայտնեմ նաև այն ամեն պա-տուարժան Ազգայնոց, որ զիս քաջալերե-ցին դրամով ։ Շնորհակալի՛ք Խմբագրաց, Բանասիրաց, որք 'ի գիր և 'ի բան խրա-խուսեցին զիս, քան զոր չէի արժան. և ես մեղայ, զի չէի երբէք յուսար ։

Չէի յուսար, վասն զի գրել գիտցողը՝ մուրացող է մեր մէջ. և ոչ ոք է՝ որ օգ-տակար գրուածք մը հրատարակեց ու պարտուց մուրհակ մը չստորագրեց, ար-համարհանքներ չկրեց ։ Անփորձ չէի ես, և իմ բաժինս ալ ստացած եմ բազմիցս։

Բայց արդ կ՚առատանամ յուսով. կ՚ա-ռատանամ, վասն զի այնպիսի մութ ան-դունդներէ ձայներ լսեցի կենաց, ուր

անոր հսկող ու մշակող գաղափարաց մէջ։ Կ'իյնան, այո՛, թագեր, կը փշրին սուրն ու սուին. բայց այս գաղափարը կը ծաւալի։ Թիւյըրիի կայսրն անձնատուր կը լինի, Ակադեմեան կը շարունակէ. հողեր կը գրաւուին, միտքերն ազատ կ'ընթանան։

Ո՞վ և 'ի մեզ մտածէր քեզ պէս, թողուլ թօթափել մեր գրական հրապարակին փուտ և փուչ խնդիրները, սին վէճերը, կեղտոտ կեղտոտ մէկ մէկու երեսին թքնելը, ազգն և ազգի անհատները յիշոցներով նախատելը. իսկ աւելին քան զայս՝ ոչինչ։ Է՛հ, այսպիսի ազգի մը ոչ միրաց դեղ են դոքա, ոչ պատուոյն վայելուչ. դժբաղդաբար քիչեր կան ազնիւ՝ ծառայող գրական վեհ թագաւորութեան 'ի մեզ։ Եւ առ այս մեծ եղաք դուք, որ գրեթէ զառաջին հանդիսացաք, իբրև զօրավըլուխ առաքինի, դրօշակ պարզել, մարզել և պսակ բաշխել կամակար և մտադիւր զինուորողաց, հայրենի յիշատակներն և աւանդները սրբելու և փրկելու ծառայողաց, գրագէտ կամաւորաց։

Ինչպէս ընտիրն և լաւն վարձուց ու մրցանաց արժանի կը սեպուին գրուածքները, երանի՛ թէ լինէին այնպիսիք, որք սահման դնէին պատիժ տալ յոռի և մոլի գրիչներուն։

Քաբիրացի ծեր Գիւցաղնոյն կը հայէր և կը հիանայր, որ ողջոյն Իտալիոյ և իւր ազատելոյն Հռովմայ դափնիները, պսակները, դրօշակները, ոսկիները, պատիւները՝ անձին նուիրեալ, որոց արժանի էր, կը վերադարձնէր ժողովրդեան. և ինքն Տիբերեայ ջրոյն կը նուիրէր իր ուշն ու իղձը, կրկնելու և յարև հանելու դարաւոր ալուց խորերը ծածկուած Հռոմուլոսին և յաջորդաց յիշատակները, ժողովրդեան և ազգին անեղծ փառքերը: Կա՞յ արդեօք աստեղաց ներքև գործ մը, որ 'ի կշիռ գայ այսպիսի մեծագործութեան մը:

—Ի՛նչ նպատակ ունին այսպիսի հոգիք:

—Կենդանութեան և անմահութեան գաղափար ընծայել ազգաց, թէ՝ Ազգ մը չմեռնիր —:

Հողերու խաւերը, ջրերու խորերը, շինից փլատակներն ու աւերակները փորփորել և խառնել պէտք է բրչով ու գրչով, և ազգ իւրաքանչիւր՝ իւր նախնեաց անձանց և արարոց ծանօթ առնել. Հայ ազգն մանաւանդ, որոյ հայրենիքը Դրախտին և Ջրհեղեղի մարդոյն բնակադաւառն է եղած, և նշանաւոր դարերով ու արարքներով ապրած: Հարկ է որ մենք զմեզ քաջ ճանաչենք. պէտք է որ ուշադրութիւն և փոյթ նուիրենք մեր անցեալ և ներկայ

կեանքին․ ընդմիաւորենք մեր գաղափարը։ Առանձին ճանչցուած հասարակութիւն մ'ենք․ ազգ մը ու ժողովուրդ ենք․ կայ մեզ լեզու, հայրենական երկիր և անուն, նախնիք, լիճեր, լեռներ, տաճարներ․ բայց ո՞ւր են մեր մտաց և հայրենեաց պատմական ու գրական բերքերը։ Շատ քիչ, շատ քիչ։ Կը զարհուրիմ ասել, գրող և ընթերցողներ ունինք բաւական շատ, սակայն անոնցմէ շատերն անգէտ են ազգային հին պատմութեան և ներկայ կենցաղավարութեան․ ներուի ինձ ասել թէ՝ անգէտ են նաև անոնցմէ շատերն, որ այսօր ազգին օրէնսդրի կամ կառավարողի պաշտօնն ունին․

Ուժգին զարկ մը պէտք է սթափեցնելու համար զմեզ մեր խորին թմրութենէն և ափշութենէն։

Հայք հարստահարութենէ փրկելու համար, իրենց ճանչցնել տալ պէտք է զիրենք․ Հայք անտարբերութեան գերեզմանի ափէն ետ դարձնելու համար՝ իրենց հայրենական բարբառով կանչելու է զիրենք։ Մասեաց սրինգները հնչեցնելու է իրենց ականջին․ ժամ է սրբել մեր քնարից փոշիները․ կքել լարել անոնց թոյլ և կտրտած լարն ու թելը․ 'ի գործ դնել տպագիր մամուլը, և անոր միջոցաւ հան-

գերմի և հացի պէս տարածել ազգային տաղերը, վէպերը, գրաքննական և հնախօսական գրուածներն ու ասացուածները, անհատական և ժողովրդական կենսագրութիւնները և տեղական նկարագիրները․ կրօնական պարզութեան և սրբութեան վրայ, ընտանեկան և ընկերական բարոյականին վրայ գաղափար և ճառագայթ սփռել, որոց պէտքը կարի զգալի է այս դարուս մէջ․ բանալ և զգուշացնել Բիւզանդական և Միարարական խաբող և կործանիչ խորերն ու խմորները, զորս Յունաց և Լատինաց քաղաքականութիւնը՝ կրօնի, խաչի, սիրոյ դրօշակով կը բերէր և կը բերէ 'ի մեզ, ապականելու կամ կլանելու զմեզ։

Միտքեր կան մեր մէջ, միտքեր եռանդուն և զեղուն․ բայց գրագէտ լինելն՝ աղքատ և աննշան լինել էր մեր մէջ․ և ասոր հետևանք՝ լքումն մտաց, փտումն գրեանց։ Գնահատել գրականութիւնը, դաստիարակութիւնը մշակել և պտղաբերել կը նշանակէ։ Դուք, ազնի՛ւ Իզմիրեանց, Ձեր անհատականութեամբ անդրանիկն եղաք դարուս Հայկական մուսայից պսակադիր բազմիլ յաթոռ։ Օ՛հ, անհատները շատ կը գործեն, եթէ գործեն․ ժողովքները միայն կը վիճին և իրենց

*խորհուրդները կը գահավիժին։*

*Եկած հասած է Հայոց համար պայծառ ապագայն, եթէ Իզմիրեանցները յառնեն, որք ազգին մէջ գիր և բան տարածելու պանծալի վաճառականութեան ձեռնարկեն։*

*Այո՛, ազգ մը՝ գրողներէ և խօսողներէ կը զարթնու և կ'ուղղուի, գործողներով կը շինուի, և խորհողներով կը փրկուի։*

**1875 ապրիլ 16** — Սրուանձտեանց

Կ. Պոլիս. — Գարեգին Վարդապետ.



# ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՄՆ ՈՒ ՀՈՏ

## Ա.

Վանայ այգեստանք, որ տեղական բարբառով կ'ըսուին Էգէօտար, բնութեան և բնակչաց ձեռքով վայելչագեղ զարդարած երանաւէտ վայրեր են. ուր իւրաքանչիւր տունը իրեն կից ունի ծառաստան, այգեստան, բուրաստան. և իր դրան առջևի փողոցին երկու եզերքը՝ առուներ ջրալից, որոց ափերը կարգաւ տնկուած են սաղարթախիտ մանրատերև ուռիներ, տեղ տեղ ևս բարդին, կաղամախ, հացենին, թեղին։ Փողոցներու մէջտեղը՝ հասարակաց ընդարձակ ուղին, և ճղազարդ ծառոց թևերն ու տերևները այսևայն կողմէն իրարու գրկուած խռնուած, սքանչելի հովանոց կը կազմեն անցորդաց. որոց մէջէն արևու ճառագայթները մանր մանր հողմածըփիկ աստղերու նման կը ծագի գետնին վրայ, անցնողին կամ նստողին գլխուն ու

երեսաց վրայ ծածանելով, ինչպէս խաղաղ գիշերուան մը մէջ Լուսնոյ հով ճաճանչները կը փայլեցնէ զեփիւռը ծովուն ափանց մօտ եղած նօսր ջրերուն ծոցիկ։ Նոյն ծառերը՝ որոց կանանչ ու դալար վարսեր կ'օծանին օդին ցօղով և արևուն ջերմով, իրենց արմատները 'ի գնացս ջուրց կ'ուճանան. ջուրք խոխոջելով, գլգլալով կ'անցնին, լզելով այն ծառոց ոտները, ոռոգելով իւրաքանչիւրին սահմանեալ այգին, պարտէզն ու բուրաստանը, մատակարարելով առ հասարակ տանց 'ի լուացումն, 'ի յըմպելիս և առ ամենայն պէտս։

Այն տեղի առաւօտը՝ ոչ արևածագումն է, և ոչ քաղաքակիրթեալ տեղերու պէս՝ արևածագումէն քանի մը ժամ ետքը. այլ երբ Լուսոյ աստղը իր գլուխը կը բարձրացընէ Վարագայ Գալիլիայէն, վայրիկ մի ևս, և ահա կը հորիզոնանայ Շուշանից գագաթան Զիաթռնուկին վրայ, ուր Կարմըրուորայ վանից գմբէթի խաչն առաջին անգամ բարի լոյս կուտայ կ'առնու, և մթնանչմար կը փէլկտայ. այս վայրկենիս Այգեստանեայց եկեղեցեաց ժամհարները տանիքն ելած՝ երեսները երից կը խաչակնքեն. «Գողու ժամ» կը զարնեն — գողերը կ'անհետանան —. դևերը կը հա-

լածուին, և գազանները որջերը կը քաշուին: Ժամհարը ժամին դուռը բանալով երեք բերան «Օրհնեալ ես Աստուած» կ'ըսէ. ու կ'սկսեն ձեռաց կոչնակները դըգըլ դըգըլ հնչեցնելով թաղէ թաղ շուրջ գալ, ամէն Հայ Քրիստոնէի դրան ձկիկը զարնել և «Ողորմի՛ Աստուած» կանչել. երբ իրենց շրջանը լմնցնելով ետ կը դառնան, իրենց ետևը ձգելով կը բերեն խուռներամ մանկտիները, անոնք որ հայր կամ մեծ եղբայր չունին տան մէջը. իսկ որք ունին, կը ստիպեն կը յարուցանեն ծնողք կամ եղբարք, որք ձեռքերէն բռնելով կ'երթան դէպ եկեղեցին «Զարթիք» կարդալու:

Արուսեկին ծագումը և ժամհարի կոչնակն՝ ընդհանուր ազդեցութիւն կ'ընեն մեր աշխարհի բնակչաց. ընդհանուր նշան է այդ կէտը, այդ պահը, սթափելու 'ի քնոյ: Ճիշտ այն րոպէին երկրագործի գոմէշն ու եզն իր խոնջանքը անցուցած լինելով, ընկողմնած տեղէն փքալով փընքփընքալով յոտին կը կանգնի. կովն իր բառաչը կ'արձակէ. այծը կը մկմկայ. մաքին կը բըռայ. ձին կը տրոփէ և կը վրնջէ. էշն իր անճոռնի զռռնան կը փչէ: Աւագ մշակն արդէն ելած է, մշակները՝ իրենց ուղղէյէն

(շուանէ և փայտէ կազմած մանէժ) վար կ՚իջնեն, ջուր, խոտ և դարման կը մատակարարեն։

Ճիշտ այն րոպէին, երբ Վանայ Երկաթուղեաց կոչնակները որոտալից կը հնչուին, աքլորն իր թևերը թափ ու ծափ տալով իր «Կուկլուկուկուն» կը կանչէ. և որովհետև տուն չկայ որ աքլոր չունենայ. — աքլոր՝ որ Արարչի չինած ու լարած ոգևոր և կենդանի ժամացոյցն է, որ անվրէպ իր վայրկեաններուն կը հսկէ ու իր պահուն կը կանչէ, և իր իմաստութեան հետ ունեցած գեղեցկակերտութեամբն ալ փառք անձին կը համարի, պարագ բնութեան կը համարի, անսխալ և անթերի կատարել իր պաշտօնը, որով և իր Արարիչը կը փառաւորէ —. այսպէս խուռն բազմութեամբ ձայնից աքլորներուն ընդհանուր աղաղակաւ կը լնանի բնակչացտունն ու թաղը. և կը գրգռին ականջները։

Մեր Այգեստանեայց ծառերու ոստերէն կախուած, կամ անոնց ճղներու արմունկներուն վրայ հաստատուած են բոյներ զանազան թռչնոց. որք իրենց ձագերով ծուարած կը թառին հոն. զեփիւռը կ՚երերէ զիրենք, և 'ի ներքուստ գլգլալով գնացող առուին ջուրը քաղցր օրօր կը

սուլոււլէ ․ Լուսոյ աստղ իր շառաւիղը կը ծագէ չծագեր , խիկոյն կը բացուին սանց բիբերը ․ հաւկոր կեղևը կ՚իյնայ անոնց աչերէն , ծագման շողէն կը շողշղայ կէծեկի պէս անոնց լոյս պտուղը ․ մեր այս քնացած քնարներ կը սկսին գեղգեղել հազար ու բիւր եղանակները ։

Տուներու մէջէն ընդհանուր շարժման ձայներ և նշաններ կ՚ելլեն ։ Մանկիկը արթընցեր կուլայ , մէկին մայրը կաթ կուտայ , մէկ՝ կ՚օրօրէ դար դար ասելով ։ Ձոչ մամէն՝ չախմախ և կայծքար իրար կը զարնէ , որ կրակ հանէ , ճրագ վառէ ։ Քեռ մամէն՝ չապիկ մխմէլ (ողջերանի տաւան) հագեր կ՚ելնէ ժամ երթալու ։ Տանտիկին՝ թոնիրը կպուցեր կը վառէ ։ Հայցթուխը՝ թոնիրի չուրթը նստած հաց կը կողէ , Բողէ հացի և գիշրաեփի հոտը չորս կողմը բռներ է ։ Մէկ թաղ՝ հաց կը բաժնեն փողոցէն անցուդարձին ․ մէկալ տեղը՝ մատաղ ․ ուրիշ տեղ մը՝ հարիսայ ։ Դեռ Լուսոյ աստղը մեր ցոյց տուած հորիզոնին վրայ կեցած՝ այս ամենը տեղի կ՚ունենան ։

Տունէ մը ճախրակ մանելու ձայն կուգայ ․ տեղ մը՝ կտաւ կը գործեն ։ Փողոցէն ջուրըվեր երթացողներ կ՚անցնին ․ եթէ

հայ են՝ շատ մեղմիկ կը մրմնջան, իսկ եթէ տաճիկ՝ մեծ ձայնով մոնք կը կանչեն ։

Ամեն դուռ մէկ աղջիկ կամ հարս կ՚երևան, որոնք ձև ձև ջրջանք (Չըշան+) ըրած են, և ներսի թաղերը աւլելէն զկնի եկած են փողոցներն աւլելու. — ժամանակ մը երբ իբրև զարդ Երուսաղէմէն բերած չիչ ապարանջաններ կը շարէին իրենց բազուկները ամեն նորահարսներ, մի նոր ներդաշնակութիւն ալ ասոնց աւել ըրած ժամանակ այն չիչերու չընկչընկոցէն կը յօրինուէր — ։ Ամեն տուներու եզերքը լի են արք, կանայք, մանկտիք, որք իրենց երեսները կը լուանան, և իրենց անգիր աղօթքներ կը մրմնջեն դէպ՝ աղօթրան դառնալով և խաչակնքելով ։

Եթէ օրն ուտիք է կամ տօն է, գլխաւոր փողոցներու հրապարակները, — զոր տեղացիք՝ փօղնէֆլօ կ՚անուանեն, և փողոցը՝ փօղան. — մեծ լուսով ճրագներ կ՚երևին, ուր ճրագուն կը վառեն մսագործները. և ճիշտ ժամհարի ժամուն կը զենուն պատրաստեն միսերը, որպէս զի թոնէր վառելուն հասնի, և մինչև ժամէն ելնելը եփուի ։ Ուրեմն դի՛ր վեր նկարագրածիս կարգին նաև փօղնի գլուխներու

չանց հաչիւնն ու չառաչիւնն և կատու-ներու բազմութեան մլաւուները․ հոն արդէն եկեր պաշարեր են ագռաւները, ցիները, անձեղները դաս դաս, երամ երամ, ո՛ր յիսուն, ո՛ր հարիւր, ,մորթա-ծէն առնց բաժիններն կան․ սարսափելի յարձակումներ կ՚ընեն մորթողին, որ չատ սոսկալի և սխրալի տեսարան կը դառնայ․ չունն իրեն համար կ՚ուզէ խլել, իրար հրե-լով, լեզուներով իրենց չրթները լզելով, և մերթ դռմռալով, մերթ հաչելով և պոչը չարժելով․ կատուն՝ թագնաբար թռչէն կ՚ուզէ յափչտակել․ անձեղն ալ որ հասնի կտուցը կը զարնէ․ և մորթողն ոչ իր հաստ ձայնով, ոչ իր դանակով, ոչ վաղակաւո-րով և ոչ տապարով չկրնար այս բանակին յաղթել․ ամեն կողմ կը դառնայ զարնելու, ոչ մէկին կրնայ զարնել, եթէ մէկին տա-րածին ետևէն վազէ, մէկալոնքը մնացեալն աւար կ՚ընեն․ ղ[illegible]քը կը բոռայ, և իր չորս կողմն գռմռոց, գվգվոց տիրած է։

Ջրբաշխս՝ քար մը դրեր գլխի տակ և իր ձեռքի փայտը գրկած պառկեր փողոցի ծառերու մէջ, ականջ տուեր ջրի ձայնին կը խորդայ․ և իր վրայէն, ոստերու ան-տառէն կը լսուի սոխակին դայլայլիկը․ ճախրակմանիկն (Ն[illegible]ն է) «ճի՛վի ճի՛վի» մա-

փուկ ձայն կ՚արձակէ․ ծիծեռնակը «ծի՛ծու ծի՛ծու» ծլվլալով հողմոց չափ արագութեւ անցուդարձ կ՚ընէ․ և սարեկը՝ իր ամենարուեստ եղանակաւ հրեշտակաց նախանձը կը շարժէ ։

Ահա եկաւ ամիսը Ումրշատն կուգայ առուն չիթերը լուանալու ։ Խիաք (Ջուլէյ) ամիսը Պատուրն՝ ստեծները (ֆեւրիէն ցցառոց ջոյրեր) կը շարէ հինած հինելու ։ Սարակները՝ բաւը թևերուն վրայ դրած կ՚երթան ժամու դուռը , այգի փորելու համար վարձուելու ։ Պատ շարողներ , աղիւս կըտրողներ՝ եւեւէ եւեւ կ՚երթան ժամ , քանի մը ծունր աղօթք ընելու և երթալու իրենց գործին ։ Հատ հատ ձիաւորներ կը տեսնուին , որ կ՚երթան գեղերը իրենց արտերուն նայելու ։

Իսկ գեղացիները՝ արդէն սթափած են այն փոքրիկ թռչնիկի ազդաձայնէն , որ կուգայ կը նստի երդիքներուն վրայ և կը կանչէ «լծէ՛ լծէ՛»․ արդէն պատրաստած են իրենց հարօրներ և լուծերը , երկիրը բաւական հերկեր են ։ Տուներու մէջ մատակներ , կովերը կթեր են և ծծում կը դարնեն ։ Ոչխարի հօտ գիշերուան ցօղով թրջած մատղաշ արօտներէն քաղցր նախա-

ճաչ մը ճարակեր է ․ և Ցանտիկին Մամիկը տան մեծին ու պզտիկին ակրատ (խոհմալըհէ) բաժներ է ուտելու ․ և ահա Նախիրն ու որթիկները կը հանէ ։

Գայլն ու գազան փախեր են դաշտէն ու լեռներէն , հովիւներու և հօտաղներու հետ գնացող շուներու ոտն ու հոտն հալածական ըրեր է զանոնք ։

Գեղի աղջիկներ մէջքարներ (շուլէ ֆեղղայ) կապած երամ երամ կը քալեն դէպ 'ի մարգահովիտները , ծաղիկները կոխելով, ծաղիկներ քաղելով և իրարու վրայ ցանելով, ծիծաղելով, խայտալով․ կը պատահին կաքաւներու երամին, լորին, արտուտիկին , որք իրենց ձագերով կը գվգվան և խոտերու տակէն կը թռչտին թուփէ թուփ , տերևէ տերև ․ Նմանել ուզելով իրարու․—Դու ասա, թէ ո՞ր որոց, աղջկո՞ւնք թևաւոր թռչնոց, թէ թռչո՞ւնք ոտնաթափկ աղջկանց—։ Եւ կ'անցնին կ'երթան յառաջ՝ բանջարները ժողվելու , իրենց արձագանք տալով առնելով զեփիւռին , աղջկունք՝ «քա՛, քա՛, քա՛», կաքաւունք՝ «գա՛վ, գա՛վ, գա՛վ»։

Կռունկն երամով կարաւան է կազմեր ոլաքաձև , բարձր օդերէն 'ի վեր կ'անցնի

երեսաց վրայ ծածանելով, ինչպէս խաղաղ գիշերուան մը մէջ Լուսնոյ հով ճաճանչները կը փայլեցնէ զեփիւռը ծովուն ափանց մօտ եղած նօսր ջրերուն ծոցին: Նոյն ծառերը՝ որոց կանանչ ու դալար վարսեր կ'օծանին օդին ցօղով և արևուն ջերմով, իրենց արմատները 'ի գնացս ջուրց կ'ուռճանան. Ջուրք խոխոջելով, գլգլալով կ'անցնին, լզելով այն ծառոց ոտները, ոռոգելով իւրաքանչիւրին սահմանեալ այգին, պարտէզն ու բուրաստանը, մատակարարելով առ հասարակ տանց 'ի լուացումն՝, 'ի ըմպելիս և առ ամենայն պէտս:

Այն տեղի առաւօտը՝ ոչ արևածագումն է, և ոչ քաղաքակիրթեալ տեղերու պէս՝ արևածագումէն քանի մը ժամ ետքը. այլ՝ երբ Լուսոյ աստղը իր գլուխը կը բարձրացընէ Վարագայ Գալիլիայէն, վայրիկ մի ևս, և ահա կը հորիզոնանայ Շուշանից գագաթան Չիաթռնուկին վրայ, ուր Կարմրրուորայ վանից գմբէթի խաչն առաջին անգամ բարի լոյս կուտայ կ'առնու, և մթնանշմար կը փէլկտայ. այս վայրկենիս Այգեստանեայց եկեղեցեաց ժամհարները տանիքն ելած՝ երեսները երիցս կը խաչակնքեն. «Գողու ժամ» կը զարնեն — գողերը կ'անհետանան —. դևերը կը հա-

լածուին , և գազանները որջերը կը քաշուին ։ Ժամհարը ժամին դուռը բանալով երեք բերան «օրհնեալ ես Աստուած» կ'ըսէ. ու կ'սկսեն ձեռաց կոչնակները դըգըլ դըգըլ հնչեցնելով թաղէ թաղ շուրջ գալ, ամէն Հայ Քրիստոնէի դրան ճկիկը զարնել և «Ողորմի՛ Աստուած» կանչել. երբ իրենց շրջանը լմնցնելով ետ կը դառնան , իրենց ետևը ձգելով կը բերեն խուռներամ մանկտիները , անոնք որ հայր կամ մեծ եղբայր չունին տան մէջը . իսկ որք ունին , կը ստիպեն կը յարուցանեն ծնողք կամ եղբարք, որք ձեռքերէն բռնելով կ'երթան դէպ եկեղեցին «Զարթիք» կարդալու ։

Արուսեկին ծագումը և ժամհարի կոչնակն՝ ընդհանուր ազդեցութիւն կ'ընեն մեր աշխարհի բնակչաց . ընդհանուր նշան է այդ կէտը , այդ պահը , սթափելու 'ի քնոյ ։ Ճիշտ այն րոպէին երկրագործի գոմէշն ու եզն իր խոնջանքը անցուցած լինելով, ընկողմնած տեղէն փքալով փրնքփրնքալով յոտին կը կանգնի . կովն իր բառաչը կ'արձակէ . այծը կը մկմկայ . մաքին կը բըռայ . ձին կը տրոփէ և կը վրնջէ . էշն իր անճոռնի զռռնան կը փչէ ։ Աւագ մշակն արդէն ելած է , մշակները՝ իրենց տըղէկէն

(շուտնէ և ջայրէ կաղմած մանէժ) վար կ՚իջնեն, ջուր, խոտ և դարման կը մատակարարեն։

Ճիշտ այն րոպէին, երբ Վանայ Երկոտասան եկեղեցեաց կոչնակները որոտալիր կը հնչուին, ագլօրն իր թևերը թափ ու ծափ տալով իր «կուկլուկուկուն» կը կանչէ. և որովհետև տուն չկայ որ ագլօր չունենայ. — ագլօր՝ որ Արարչի չինած ու լարած ոգևոր և կենդանի ժամացոյցն է, որ անվրէպ իր վայրկեաններուն կը հսկէ ու իր պահուն կը կանչէ, և իր իմաստութեան հետ ունեցած գեղեցկակերտութեամբն ալ փառք անձին կը համարի, պարապ բնութեան կը համարի, անսխալ և անթերի կատարել իր պաշտօնը, որով և իր Արարիչը կը փառաւորէ —. այսպէս խուռն բազմութեամբ ձայնից ագլօրներուն ընդհանուր աղաղակաւ կը լնանի բնակչաց տունն ու թաղը. և կը գղրդին ականջները։

Մեր Այգեստանեայց ծառերու ստուերէն կախուած, կամ անոնց ճղներու արմուններուն վրայ հաստատուած են բոյներ զանազան թռչնոց. որք իրենց ձագերով ծուարած կը թառին հոն. զեփիւռը կ՚երերէ զիրենք, և ՚ի ներքուստ գղգղալով գնացող առուին ջուրը քաղցր օրօր կը

սուլսուլէ․ Լուսոյ աստղ իր շառաւիղը կը ծագէ չծագեր, իսկոյն կը բացուին աստոնց բիբերը․ Հաւկոր կեղևը կ'իյնայ անոնց աչերէն, ծագման շողէն կը շողշղայ կէծելլի պէս անոնց լոյս պտուղը․ մեր այս քնացած քնարներ կը սկսին գեղգեղել հազար ու բիւր եղանակները ։

Տուներու մէջէն ընդհանուր շարժման ձայներ և նշաններ կ'ելլեն ։ Մանկիկը ար-թընցեր կուլայ, մէկին մայրը կաթ կուտայ, մէկ՝ կ'օրօրէ դար դար ասելով։ Ձոչ մամէն՝ չախմախ և կայծքար իրար կը զարնէ, որ կրակ հանէ, ճրագ վառէ ։ Քեռ մամէն՝ շապիկ մխմէլ (ողջերան սատան) հագեր կ'ելնէ ժամ երթալու ։ Տանտիկին՝ թոնիրը կպուցեր կը վառէ ։ Հայթուխը՝ թոնիրի չուրթը նստած հաց կը կողէ, Նազէ հացի և գիշ-րաեփի հոտը չորս կողմը բռներ է ։ Մէկ թաղ՝ հաց կը բաժնեն փողոցէն անցու-դարձին․ մէկալ տեղը՝ մատաղ․ ուրիշ տեղ մը՝ հարիսայ։ Դեռ Լուսոյ աստղը մեր ցոյց տուած հորիզոնին վրայ կեցած՝ այս ամենը տեղի կ'ունենան ։

Տունէ մը ճախրակ մանելու ձայն կու-գայ․ տեղ մը՝ կտաւ կը գործեն ։ փողոցէն ջուրըլվեր երթացողներ կ'անցնին․ եթէ

կեանքին. բեղմնաւորենք մեր գաղափարը։ Առանձին ճանչցուած հասարակութիւն մ'ենք. ազգ մը ու ժողովուրդ ենք. կայ մեզ լեզու, հայրենական երկիր և անուն, նախնիք, լիճեր, լեռներ, տաճարներ՝ բայց ո՞ւր են մեր մտաց և հայրենեաց պատմական ու գրական բերքերը։ Շատ քիչ, շատ քիչ։ Կը զարհուրիմ ասել, գրող և ընթերցողներ ունինք բաւական շատ, սակայն անոնցմէ շատերն անգէտ են ազգային հին պատմութեան և ներկայ կենցաղավարութեան. ներուի ինձ ասել թէ՝ անգէտ են նաև անոնցմէ շատերն, որ այսօր ազգին օրէնսդրի կամ կառավարողի պաշտօնն ունին.

Ուժգին զարկ մը պէտք է սթափեցնելու համար զմեզ մեր խորին թմրութենէն և ափշութենէն։

Հայք հարստահարութենէ փրկելու համար, իրենց ճանչցնել տալ պէտք է զիրենք. Հայք անտարբերութեան գերեզմանի ափէն ետ դարձնելու համար՝ իրենց հայրենական բարբառով կանչելու է զիրենք։ Մտաց սրինգները հնչեցնելու է իրենց ականջին. ժամ է սրբել մեր քնարից փոշիները. կքել լարել անոնց թոյլ և կտրտած լարն ու թելը. 'ի գործ դնել տպագիր մամուլը, և անոր միջոցաւ հան-

դերձի և հացի այս տարածել ազգային տաղերը, վէպերը, գրաքննական և հնախօսական գրուածներն ու ասացուածները, անհատական և ժողովրդական կենսագրութիւնները և տեղական նկարագիրները. կրօնական պարզութեան և սրբութեան վրայ, ընտանեկան և ընկերական բարոյականին վրայ գաղափար և ճառագայթ սփռել, որոց պէտքը կարի զգալի է այս դարուս մէջ. բանալ և զգուշացնել Բիւզանդական և Միարարական խաբող և կործանիչ խորերն ու խմորները, զորս Յունաց և Լատինաց քաղաքականութիւնը՝ կրօնի, խաչի, սիրոյ դրօշակով կը բերէր և կը բերէ 'ի մեզ, ապականելու կամ կլանելու զմեզ։

Միտքեր կան մեր մէջ, միտքեր եռանդուն և զեղուն. բայց դրագէտ լինելն՝ աղքատ և աննշան լինել էր մեր մէջ. և սոսր հետևանք՝ լքումն մտաց, վիտումն գրեանց։ Գնահատել գրականութիւնը, դաստիարակութիւնը մշակել և պտղաբերել կը նշանակէ։ Դուք, ազնի՛ւ իգմիրեանց, Ձեր անհատականութեամբ անդրանիկն եղաք դարուս Հայկական մուսայից պսակադիր բազմիլ յաթոռ։ Օ՛հ, անհատները շատ կը գործեն, եթէ գործեն. ժողովքները միայն կը վիճին և իրենց

խորհուրդները կը գահավիժին։

Եկած հասած է Հայոց համար պայծառ ապագայն, եթէ Իզմիրեանցները յառնեն, որք ազգին մէջ գիր և բան տարածելու պանծալի վաճառականութեան ձեռնարկեն։

Այո՛, ազգ մը՝ գրողներէ և խօսողներէ կը զարթնու և կ՚ուղղուի, գործողներով կը շինուի, և խորհողներով կը փրկուի։

1875 ապրիլ 16 
Կ. Պոլիս.

Արտասանեց
Գաբրիէլին Հայրապետ.



# ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՄՆ ՈՒ ՀՈՏ

## Ա․

Վանայ այգեստանք, որ տեղական բարբառով կ'ըսուին էգէսփար, բնութեան և բնակչաց ձեռքով վայելչագեղ զարդարած երանաւէտ վայրեր են․ ուր իւրաքանչիւր տունը իրեն կից ունի ծառաստան, այգեստան, բուրաստան․ և իր դրան առջևի փողոցին երկու եզերքը՝ առուներ ջրալից, որոց ափերը կարգաւ տնկուած են սաղարթախիտ մանրատերև ուռիներ, տեղ տեղ ևս բարդին, կաղամախ, հացենին, թեղին։ փողոցներու մէջտեղը՝ հասարակաց ընդարձակ ուղին, և ճղազարդ ծառոց թևերն ու տերևները այսևայն կողմէն իրարու գրկուած խռնուած, սքանչելի հովանոց կը կազմեն անցորդաց․ որոց մէջէն արևու ճառագայթները մանր մանր հողմածըփիկ աստղերու նման կը ծագի գետնին վրայ, անցնողին կամ նստողին գլխուն ու

երեսաց վրայ ծածանելով, ինչպէս խաղաղ գիշերուան մը մէջ Լուսնոյ հով ճաճանչները կը փայլեցնէ զեփիւռը ծովուն ափանց մօտ եղած նոսր ջրերուն ծոցին։ Նոյն ծառերը՝ որոց կանանչ ու դալար վարսեր կ'օծանին օդին ցօղով և արևուն ջերմով, իրենց արմատները 'ի գնացս ջուրց կ'ուռճանան. ջուրք խոխոջելով, գլգլալով կ'անցնին, լզելով այն ծառոց ոտները, ոռոգելով իւրաքանչիւրին սահմանեալ այգին, պարտէզն ու բուրաստանը, մատակարարելով առ հասարակ տանց 'ի լուացումն՝, 'ի յըմպելիս և առ ամենայն պէտս։

Այն տեղի առաւօտը՝ ոչ արևածագումն է, և ոչ քաղաքակրթեալ տեղերու պէս՝ արևածագումէն քանի մը ժամ ետքը. այլ՝ երբ Լուսոյ աստղը իր գլուխը կը բարձրացընէ Վարագայ Գալիլիայէն, վայրիկ մի ևս, և ահա կը հորիզոնանայ Շուշանից գագաթան Ձիաթոնուկին վրայ, ուր Կարմըրուորայ վանից գմբէթի խաչն առաջին անգամ բարի լոյս կուտայ կ'առնու, և մթնանչմար կը փէլկտայ. այս վայրկենիս Այգեստանեայց եկեղեցեաց ժամհարները տանիքն ելած՝ երեսները երից կը խաչակնքեն. «Գողու ժամ» կը զարնեն — գողերը կ'անհետանան —. գևերը կը հա-

լածուին, և գազանները որջերը կը քաշուին։ Ժամհարը ժամին դուռը բանալով երեքբերան «օրհնեալ ես Աստուած» կ'ըսէ. ու կ'սկսեն ձեռաց կոչնակները դըգըլ դըգըլ հնչեցնելով թաղէ թաղ շուրջ գալ, ամէն Հայ Քրիստոնէի դրան ճկիկը զարնել և «Ողորմի՛ Աստուած» կանչել. երբ իրենց շրջանը լմնցնելով ետ կը դառնան, իրենց ետևը ձգելով կը բերեն խուռներամ մանկտիները, անոնք որ հայր կամ մեծ եղբայր չունին տան մէջը. իսկ որք ունին, կը ստիպեն կը յարուցանեն ծնողք կամ եղբարք, որք ձեռքերէն բռնելով կ'երթան դէպ եկեղեցին «Զարթիք» կարդալու։

Արուսեկին ծագումը և ժամհարի կոչնակն՝ ընդհանուր ազդեցութիւն կ'ընեն մեր աշխարհի բնակչաց. ընդհանուր նշան է այդ կէտը, այդ պահը, սթափելու 'ի քնոյ։ Ճիշտ այն րոպէին երկրագործի գոմէշն ու եզն իր խոնջանքը անցուցած լինելով, ընկողմնած տեղէն փքալով փընքփընքալով յոտին կը կանգնի. կովն իր բառաչը կ'արձակէ. այծը կը մկմկայ. մաքին կը բըռայ. ձին կը տրոփէ և կը վրնջէ. էշն իր անճոռնի զռռնան կը փչէ։ Աւագ մշակն արդէն ելած է, մշակները՝ իրենց օրչէկէն

(շուտնէ և ջայրէ կողմած մաշէն) վար կ'իջնեն, ջուր, խոտ և դարման կը մատակարարեն։

Ճիշտ այն րոպէին, երբ Վանայ Երկոտասան Առաքելոց եկեղեցւոյ կոչնակները ժամերգութեան կը հնչուին, ագռաւն իր թևերը թափ ու ծափ տալով իր «կուկլուկուկուն» կը կանչէ․ և որովհետև տուն չկայ որ ագռաւ չունենայ․ — ագռաւ՝ որ Արարչի շինած ու լարած ոգևոր և կենդանի ժամացոյցն է, որ անվրէպ իր վայրկեաններուն կը հսկէ ու իր պահուն կը կանչէ, և իր իմաստութեան հետ ունեցած գեղեցկակերտութեամբն ալ փառք անձին կը համարի, պարապ բնութեան կը համարի, անսխալ և անթերի կատարել իր պաշտօնը, որով և իր Արարիչը կը փառաւորէ —․ այսպէս խուռն բազմութեամբ ձայնից ագռաւներուն ընդհանուր աղաղակաւ կը լնանի բնակչաց տունն ու թաղը․ և կը դղրդին ականջները։

Մեր Այգեստանեայց ծառերու ոստերէն կախուած, կամ անոնց ճղղերու արմունկներուն վրայ հաստատուած են բոյներ զանազան թռչնոց․ որք իրենց ձագերով ծուարած կը թառին հոն․ զեփիւռը կ'երերէ զիրենք, և 'ի ներքուստ գլգլալով գնացող առուին ջուրը քաղցր օրօր կը

սուլսուլէ․ Լուսոյ աստղ իր շառաւիղը կը ծագէ չծագեր, իսկոյն կը բացուին ասոնց թիթերը․ հաւկոր կեղևը կ՚իյնայ անոնց աչերէն, ծագման շողէն կը շողշղայ կէծելի պէս անոնց լոյս պտուղը․ մեր այս քնացած քնարներ կը սկսին դեղգեղել հազար ու բիւր եղանակները ։

Տուներու մէջէն ընդհանուր շարժման ձայներ և նշաններ կ՚ելլեն ։ Մանկիկը արթընցեր կուլայ, մէկին մայրը կաթ կուտայ, մէկ՝ կ՚օրօրէ դար դար ասելով ։ Ձոչ մամէն՝ չախմախ և կայծքար իրար կը զարնէ, որ կրակ հանէ, ճրագ վառէ ։ Քեռ մամէն՝ չապիկ մխմէլ (ողջորակ ստուան) հագեր կ՚ելնէ ժամ երթալու ։ Տանտիկին՝ թոնիրը կպուցեր կը վառէ ։ Հայթուխը՝ թոնիրի շուրթը նստած հաց կը կողէ, Նաղէ հացի և գիշրանեփի հոտը չորս կողմը բռներ է ։ Մէկ թաղ՝ հաց կը բաժնեն փողոցէն անցուդարձին․ մէկալ տեղը՝ մատաղ․ ուրիշ տեղ մը՝ հարիսայ ։ Դեռ Լուսոյ աստղը մեր ցոյց տուած հորիզոնին վրայ կեցած՝ այս ամենը տեղի կ՚ունենան ։

Տունէ մը ճախրակ մանելու ձայն կուգայ․ տեղ մը՝ կտաւ կը գործեն ։ փողոցէն ջուրըվեր երթացողներ կ՚անցնին․ եթէ

հայ են՝ շատ մեղմիկ կը մրմնջան, իսկ եթէ տաճիկ՝ մեծ ձայնով ծանք կը կանչեն ։

Ամեն դուռ մէկ աղջիկ կամ հարս կ՚ե- րեւան, որոնք ձեւ ձեւ ջրջանք (չըջանք) բրած են, և Ներսի բակերը աւլելէն զկնի եկած են փողոցներն աւլելու. — ժամանակ մը երբ իբրև զարդ Երուսաղէմէն բերած չիչ ապարանջաններ կը շարէին իրենց բազուկ- ները ամեն նորահարսներ, մի նոր ներ- դաշնակութիւն ալ ասոնց աւել բրած ժա- մանակ այն չիչերու չընկչընկոցէն կը յօ- րինուէր — ։ Ամեն տուներու եզերքը լի են արք, կանայք, մանկտիք, որք իրենց երեսները կը լուանան, և իրենց անգիր աղօթքներ կը մրմնջեն դէպ՝ աղօթրան դառնալով և խաչակնքելով։

Եթէ օրն ուտիք է կամ տօն է, գլխա- ւոր փողոցներու հրապարակները, — զոր տեղացիք՝ փօղէնէյլը կ՚անուանեն, և փո- ղոցը՝ փօղա. — մեծ լուսով ճրագներ կ՚երևին, ուր ճրագուն կը վառեն մսա- գործները. և ճիշտ ժամհարի ժամուն կը զենուն պատրաստեն միսերը, որպէս զի թոնէր վառելուն հասնի, և մինչև ժամէն ելնելը եփուի ։ Ուրեմն դի՛ր վեր նկարա- գրածիս կարգին նաև փօղնի գլուխներու

շանց հաչիւնն ու չառաչիւնն և կատու-
ներու բազմութեան մլավունները․ հոն
արդէն եկեր պաշարեր են ագռաւները,
ցինները, անծեղները դաս դաս, երամ
երամ, ո՛ր յիսուն, ո՛ր հարիւր, մորթա-
ծէն առոնց բաժիններն կան․ սարսափելի
յարձակումներ կ՚ընեն մորթողին, որ շատ
սոսկալի և սխրալի տեսարան կը դառնայ․
շունն իրեն համար կ՚ուզէ խլել, իրար հրե-
լով, լեզուներով իրենց շրթները լզելով,
և մերթ գռմռալով, մերթ հաչելով և պոչը
շարժելով․ կատուն՝ թագնաբար թոքէն
կ՚ուզէ յափշտակել․ անծեղն ուր որ հասնի
կտուցը կը զարնէ․ և մորթողն ոչ իր հաստ
ձայնով, ոչ իր դանակով, ոչ վաղակաւո-
րով և ոչ տապարով չկրնար այս բանակին
յաղթել․ ամեն կողմ կը դառնայ զարնելու,
ոչ մէկին կրնայ զարնել, եթէ մէկին տա-
րածին ետևէն վազէ, մէկալոնքը մնացեալն
աւար կ՚ընեն․ ղասաբը կը բոռայ, և իր
չորս կողմն գռմռոց, գվգվոց տիրած է։

Ջրբաշխ՝ քար մը դրեր գլխի տակ և
իր ձեռքի փայտը դրկած պառկեր փողոցի
ծառերու մէջ, ականջ տուեր ջրի ձայնին
կը խորդայ․ և իր վրայէն, ոստերու ան-
տառէն կը լսուի սոխակին դայլայլիկը․
ճախրակմանիկն ([illegible]) «ճի՛վի ճի՛վի» փա-

փուկ ձայն կ՚արձակէ․ ծիծեռնակը «ծի՛ծռ ծի՛ծռ» ծըլվըլալով հողմոց չափ արագաթեւ անցուդարձ կ՚ընէ․ և սարեկը՝ իր ամենարուեստ եղանակաւ հրեշտակաց նախանձը կը շարժէ։

Ահա եղաւ տօնը Ումրչատոն կուգայ առուն չիթերը լուանալու։ Խիաք (Ջուլըհոկ) տօնը Պատուրն՝ սանծները (գեդէն ցցուած ֆույտեր) կը շարէ հինած հինելու։ Սարակները՝ բահը թեւերուն վրայ դրած կ՚երթան ժամու դուռը, այգի փորելու համար վարձուելու։ Պատ շարողներ, աղիւս կըտրողներ՝ ետեւէ ետեւ կ՚երթան ժամ, քանի մը ծունր աղօթք ընելու և երթալու իրենց գործին։ Հատ հատ ձիաւորներ կը տեսնուին, որ կ՚երթան գեղերը իրենց արտերուն նայելու։

Իսկ գեղացիները՝ արդէն սթափած են այն փոքրիկ թռչնիկի ազդաձայնէն, որ կուգայ կը նստի երդիքներուն վրայ և կը կանչէ «լծէ՛ լծէ՛»․ արդէն պատրաստած են իրենց հարօրներ և լուծերը, երկիրը բաւական հերկեր են։ Տուներու մէջ մատակներ, կովերը կթեր են և ծծում կը զարնեն։ Ոչխարի հօտ գիշերուան ցօղով թրջած մատղաշ արօտներէն քաղցր նախա-

ճաչ մը ճարակեր է • և Տանտիկին Մամիկը տան մեծին ու պզտիկին ակրատ (Խօհճօլըէ) բաժներ է ուտելու • և աղա Նախիրն ու որթիկները կը հանէ ։

Գայլն ու գազան փախեր են դաշտէն ու լեռներէն , հովիւներու և հօտաղներու հետ դնացող շուներու ոտն ու հոտն հալածական ըրեր է զանոնք ։

Գեղլի աղջիկներ մէզարներ (Չօլէ Քէքլայ) կապած երամ երամ կը քալեն դէպ 'ի մարգահովիտները , ծաղիկները կոխելով, ծաղիկներ քաղելով և իրարու վրայ ցանելով, ծիծաղելով, խայտալով • կը պատահին կաքաւներու երամին , լորին , արտուտիկին , որք իրենց ձագերով կը գվգվան և խոտերու տակէն կը թռչտին թուփէ թուփ , տերևէ տերև • Նմանել ուզելով իրարու •—Դու աստ, թէ ո՞ր որոց, աղջկո՞ւնք թևաւոր թռչնոց, թէ թռչո՞ւնք ոտնաթռիկ աղջկանց—։ Եւ կ'անցնին կ'երթան յառաջ բանջարները ժողվելու , իրենց արձագանք տալով առնելով զեփիւռին , աղջկունք՝ «քա՛, քա՛, քա՛», կաքաւունք՝ «գա՛վ, գա՛վ, գա՛վ» ։

Կռունկն երամով կարաւան է կազմեր սլաքաձև , բարձր օդերէն 'ի վեր կ'անցնի

«կռո՛ւ, կռո՛ւ» կանչելով. — ծառայ եմ ձայնին — ։

Կօտ կօտ Առաջէլ, որ է Արագիլն, երկան սրունքները քշտած, կտուցը սրած, «հօ՛դ, հօ՛դ» ձայնելով իր բունէն ելեր 'ի դաշտ կը վազէ՝ ջրի և ցամաքի օձերը ձերբակալելու և սպաննելու, իբրև ոստիկան և իբրև դատաւոր ։

Զորթան տարուկ՝ գողի պէս չինականի տանիքներուն վրայ և բակերուն մէջ պահկըտուեր, որպէս զի չորթան մը յափըշտակէ ։

Կոր բուն այս ժամուս իրեն համար բոյն մը կ'որոնէ, որ ծածկուի ծուարի այն տեղ, դադրեցնելով իր գուժարկու «վա՛յ վա՛յ» ձայնը, զոր կը հնչեցնէր՝ չորցած ծառի մը կամ գերեզմանաքարի մը վրայ նստած ։

Ցին՝ 'ի վեր և 'ի վայր կը խորանայ կը խոյանայ սուր ձայնիւ «ցի՛ննիննի» կանչելով. և Զկնկուլն՝ գետերու ափերը կը դիմէ, և «ձըկ ձըկ» ձայն հանելով ձուկ մուկ կ'որոնէ կլլելու ։

Արօս, Բադն, ու Ղազ՝ ջրերու վրայ նստած՝ կայտառ նաւաստիներու պէս կը թռվռան և կ'եղանակեն ։

Սանդրակատար Բուբուն անհանգիստ կ'ոստոստէ և անդադար կ'աղաղակէ «բո՛ւ, բո՛ւ» ։

Դեղնապորտիկն՝ Եւրոպացի օրիոլդաց նման փափուկ և մաքուր շղարշներ հագած ճերմակ ու դեղին, և Հայաստանի հարսներու նման իր աչքերը թուխ դեղով ծարուրած՝ մանր մացառներու մէջէն կամ խիտ խոտերէն իր ձայնը կը լսեցնէ, իր դէմքը կը ցուցնէ ու կը թագուցանէ, բուլբուլին անճանաչ եղողներուն ինքզինքն իբրև բուլբուլ կը ծախէ ։

Բուլբուլին ձայնը ամեն եղանակողաց ձայնին հետ կը լսուի. Նորա շունչը բնութեան համայն երաժշտական գեղգեղանաց զսպանակն է ։

Բարբարոս Բազէն, որոտընդոստ ձայնիւ և չեչտակի սաւառնմամբ օդէն 'ի վար, օդէն 'ի վեր սաւառնաթև կը սլանայ, անմեղ ու անզգոյշ Աղաւնի մը կամ Տատրակ մը պատառելու ։

Անգղերը՝ լօռ (Յէէ) ուտող քիւրդերու պէս ընկեր ընկեր կ'անցնին, հոտ առած են մեռածի մը կամ մեռուցածի մը, աւարելու կ'երթան և կողոպտելու անոր դիակին միսերը ։

Արծիւն հազիւ ուրեք կ'երևի. անոր հզօր թևոց բաղխումէն, օդը շառաչմամբ պատռելէն բոլոր թռչունք կը լռեն վայր մի, մինչև անցնի այդ ահեղ և փառահեղ արքայն ։

Շինական հարսները երեսները փաթաթած՝ բազուկները բաց, սափոր մը ուսին և սափոր մի 'ի ձեռին՝ կ'երթան աղբիւրէն ջուր առնելու. իսկ պառաւ Դադէն քարի կտորի մը վրայ կրակ դրած, վրան պտուղ մը խունկ, խաչքարի մը առջև կը տանի, և ինքն իր երեսները հողին վրայ դնելով, 'ի ծունկս նստելով, երերալով մաղուելով, բռամբ իր կուրծքը կը ծեծէ. և խիստ սրտառուչ մորմոքելով մը՝ «Տէր ողորմեա» կ'ըսէ ։

—Այս կերպն է աղօթից այն ամեն գեղերն ու տեղերը, ուր կա՛մ եկեղեցին աւեր է, կամ տէրտէր չունին ։ Մամիկն հարսներով ու աղջիկներով, պապիկն երիտասարդներով ու ճժերով կը դիմեն խաչքարերը կամ եկեղեցւոյ չէն ու աւերակ պատերուն մէջն ու քովերը. իւրաքանչիւր իր սրտէն բղխած կամ իր մեծէն ուսած աղօթք մը կ'ըսէ ու կ'երկրպագանէ Աստուծոյ — ։

## Բ.

Այսպէս ընդհանուր շարժում, արթնութիւն, և փառաբանութիւն կը սփռէ բոլոր մեր աշխարհի արարածոց մէջ Արու-

տեակին լուսաբեր · և ահա Արշալոյսն անոր ետևէն կը սկսի բացուիլ, զոր «Աղջերջան» կ՚անուանեն տեղացիք։ Արշալուսին ամեն տուն ընկողմանք վերցուած են · թոնիրն իջած է վառուելէ ։ Ի գարնան, այս պահուս, Այգեստանեայց փողոցներէն ետևէ ետև ձայներ կը լսուին · «Ջո՛ւկ առէք, ձուկ»։ Այս ձայները ամեն տարի Ապրիլի կիսէն մինչև Յունիսի կէսը կը շարունակուի· քանզի այն միջոցը միայն Վանայ ծովէն, Հայկայ լիճէն, այս միակ ու համեղ տարեխ ձուկն կ՚ընծայէ բնակչաց այնքան առատութեամբ, որպէս Ապրիլի ամսոյն հարաւ քամիին հալեցուցած ձիւներուն լեռներէն ՚ի վայր ՚ի լիճն հոսող հեղեղները ։ Ջուկ ծախողները կառավարութեան ստակ կը վճարեն, գրաստով բառնալու բեռելու վարձք կը վճարեն, իրենց աշխատանքն ալ վրան դիր · ու կը վաճառեն հինգ ձուկ՝ մէկ փարայ, և երբեմն մինչև տասն ձուկ մէկ փարայ։ Ամեն տունը կը գնեն հազար հազարներ, աղը դնելէն զկնի · քանի որ նորը կուգայ, կը գնեն, թոնիրի մէջ կը կողեն, կամ կը վաղեն տան մէկ անկիւնը՝ հաւի նոր ածած տաք տաք ձուն կը բերեն, ու ածուէն դալար բանջար, կը տապակեն արդար եղով · ժամէն դարձողները ձկան հոտով կը լնանին · փողոցները

կը բուրէ անոյշ հոտով։ Հո՛տ՝ որ մինչև հոս յիս կը բուրէ, քիմքս կը գրգռէ, և բերանս ջրով կը լեցնէ։ Բայց, ո՛հ, անոնք կ'ուտեն, ես կը հալիմ։

Արշալոյս է։ Գեղերէն աղջկանց ժող-ված բանջարները բերեր են փողնի գլխները և ժամու դռները դիզեր են, Աւուտկու բանջար, Եղրջայ, Սուխուկ, Մանդակ, Երնջնակ, Ախտորուկ, Պտուկ, Պոզիկ, Ճախ, Կանգառ, Շրէշ, Նուլիկ, և այլն։ Մէկ կողմը դիզեր են իրարու վրայ նոր պանիր բլիթ բլիթ, որոյ մէջ դրուած Ուռցն, Դաղձն և ուրիշ հոտաւէտ բան-ջարներն՝ պանիրներն ու հրապարակը հո-տաւէտած են։ Հոն է Մանդկով ճաժիկ, Պինթան, Ջորթան, Մածուն, Կարագ-եղ, և ամեն դեղջկական բերքեր, զորս կը գնեն ժամէն ելողները։ Այս բերքերէն եզներու վրայ բարձած, կամ իրենք շա-լակած, թաղէ թաղ ալ կը պտըտցունեն։ Մեծ պահոց՝ Ոսպ, Գլուլ, Կանճրակ, Կա-նափատ, Բագլայ, և այլ տեսակ տեսակ հնդեղէն, և ընտիր Մեղր, Բուբ, և Նար-դանգ, եւն։

Իսկ Աշնան՝ աւելի զանազան են այդ բերքերը. ինչ որ արտն ու բոստան գե-ղացւոյն տուեր, հոս կ'իջեցնեն. և այ-

գեստանեայց բերքերէն գեղը կը փոխադրեն ։ Այնան արշալուսին՝ ցորեանները պայլաբարձ կուգան ճռնչալով. և անասնոց համար խոտ ու յարդ բեռնաւորած գըրաստներով. Ջաղացներ աղուն կը ղրկուին և ալիւրներ կը բերուին. հատիկ կը խաշեն, ծաւար ու կորկոտ կը ծեծեն. ղո-ձորմոցուներ կը մորթեն, և անոնց տիկերը հանելով նոր գինիներ (շիրա) կը կրեն անոնցմով։ Ցան, ցախ, փթիր, քակոր, պտըտուր, գազ՝ բարձած եզանց փողոցէ փողոց կը շրջին գեղացիք՝ ծախելու համար. և այգեստանցիք այգիներու մէջ ու փողոցները ծառերէն թափած հողուղ «տերևները» կ'աւլեն, և ծառերու չորուկները կ'իստկեն ։

Արշալուսին ամեն մարդ իր գործին ակսեր է ։ Արևը կ'ելլէ իր գահոյքէն, և Վարագայ Սարը՝ իբրև իրեն սեմու սանդուխտ՝ ոտքը կը կոխէ, ու կը բարձրանայ երկնից աթոռը։ Այս բոպէին ոչ ոք 'ի քուն պիտի մնացած լինի. ապա թէ ոչ՝ օրուան քաղդէն ու ղըմձինէն կը զրկուի։ Միտ դիր, ընթերցո՛ղ, այս բարոյականին, այս խորհըրդական բանին ։

Ցերեկուան զբաղումներն յայտնի են ։

Էրիկ մարդիկ առհասարակ չուկայ գնացած են . և որոնք տունն են՝ տունը կը գործեն ։ Կանայքն ալ զբաղուած են իրենց լուացքին , կար ու ձևին , ճախրակին , մաջան քրքրելուն, բուրդ և բամպակ գզելուն և կ՚աշխատին իրենց ածուները փորելուն և անոնց մէջ ծաղիկ և զանազան բանջարները ցանելուն ։ Մեծ աղջիկներն իրենց մօր կ՚օգնեն , իսկ պզտիկներն ծաղիկներ կը քաղեն կը փնջեն , և իրենք վայելելէն զկնի , իրիկուան հայր կամ եղբայրը գալուն՝ անոնց կ՚ընծայեն ։

## Գ.

Կուգա՞ս , բարեկամ , քեզի տանիմ շրջեցունեմ մեր Այգեստանները ։ Ահա Այգեստանեայց Արևելեան ծայրը, Վարագայ լեռը՝ ճիշտ Արծուոյ օրինակ կեռ գլուխ մը կը ցուցնէ բարձրասար , և թևերը տարածած ՚ի հիւսիս և հարաւ . իր ծաղկազարդ ու դալար պարանոցն , իր սաթենի քիթ, խնծորենի բերանն, ու մեղրոտ կտուց դէպ արևն է դարձուցած . իր կոկորդէն կախուած թնթուխ թթուցը Քէշիշ Գօլն է. իր աչերը Տօնեայ Գէլին և Սուլթան Խօյլումն, յորոց կը բղխին կայլակ կայլակ , վտակ վտակ պաղ և ջինջ ջրեր . իր դէմքը կը

նայի Հայոցձորոյն վրայ , իր գագաթին ունի իբրև թագ՝ արիւնագոյն քարեր Գաւթիրային , և իր պուճուճակ՝ վերին Վարագայ լեռնահովիտ ։ Շատ գեղեր , անթիւ թռչունք, անհամար ծաղիկունք, անասունք , էրէներ , ոչխարներ , կովեր և եզներ , որսորդներ և հարօրվարները կը զարդարեն իրեն թև թիկունք ։ Սև է իր քարերու գոյնը Արծւոյ փետուրներուն նման և տեղ տեղ պլրակներ ու անտառակներ կը կրէ ։ Աջ թևին վրայ շինուած է մեծ-արդի Վարագայ վանքը , ձախ թևին վրայ՝ Սուրբ Գրիգորի վանքը , և ուսոց ներքև կռնակին վրայ՝ Կարմրուորայ վանք ․ իսկ Արևելեան կողմը ճիշտ սրտին կամ պորտին ուղղութեամբ Խէք (Հոյկ) գեղն է ․ և անոր կից՝ Ղևոնդեանց աշակերտ երանելի Աբրահամու խոստովանողին մատուռը կամ ճգնարան ։ Իբրև չորս պորտէն կամար՝ առջի երեքը գմբէթայարդար , իսկ վերջինը անշուք , կը կապէ այս վանքերը Վարագայ լեռն իր գօտին ։

Կարմրուորայ վերևը նայէ , սա հարթլեռնակը , որ հեռուանց կից կը թուի վերին Վարագայ և անոր՝ իբրև փետրաթևիկ ուսոց ձև մը կուտայ , Ջիաթռնուկն է այն ։ — Թերևս յիշատակ մը ունի իր

Հետ այս անունը, քաջ ձիաւոր մը թուած լինի այս լեռնէն —: Կարմրուորայ մէկ քովն է Շուշանց գեղը: Դիտէ սա հովիտը, որ կը սկսի Կարմրուորայ տակէն և կը հասնի մինչև Այգեստանեայց չուրթն. բոլորն ալ մշակեալ արտեր են, և այս ընդարձակութեան երկու կողմէն ու մէջ տեղէն վազած մեծ ջուրերը՝ Քէշիշ գօլին և Ցօնիայ գալին, Վարագայ սարին ջուրերն են, որք շատ մը գեղերու բաժին լինելէն զկնի, այսքան կ'աւելնայ և մշտահոս կուգայ Այգեստանները ոռոգանելու:

Այս տեղ՝ ուր մենք կայներ ենք, Ուրբաթառուն է: Ցես ո՞րքան հորեր կան բացուած, և քանքաններ կը բանին. աղոնք ալ Այգեստանեայց և քաղաքին մէջ հանուած տասն և երկու քահրէզներու ջրոց ականց հորերն են:

Այժմ դարձունենք մեր երեսը դէպ յարևմուտս:

Ահա տափարակ և ընդարձակ դաշտ մը, զարդարուած ծառաստաններով, և բաժանուած զատ զատ պատերով. պատերուն կից երկու կողմը ջուր, մէջ տեղ պողոտայ և վրան ծառոց հովանի: Ունկն դիր թռչնոց դայլայլիկին, տերևոց սօսափիւնին, ջրոց գլգլուն ձայնին: Ասկէց

կը բաժնուին Այգեստանեայց փողոցները։ Մէկ կողմը յառաջ երթալով Աւօյի գարն է· ուսկից կ'իջնան Ջալղի փողան։ Քիչ մը անդին Արարուց ձեյթան, ուր չհասած տակաւին՝ այդ աւազուտ ասպարէզը կը տեսնա՞ս · Աւղնոց կ'ըսեն աղոր · այդ տեղ ամէն տարի Զատկի Նոր կիրակիին հայ ու տաճիկ՝ նոյն աւուր համար պահուած իրենց նժոյգ ամեհի ձիերը հեծած կուգան Ջերիդ կը խաղան բաւական կանոնաւորութեամբ, բայց յանդուգն յարձակմամբ · այնպէս որ շատ անգամ անձանց վնասներ կը պատահին · տեսնալու բան է այնքան բազմութիւն արանց և կանանց, որ ճանճերու նման կը լեցուին այդ ասպարիզի շրջապատը և դատաւոր կը հանդիսանան խաղցողներուն · Նախատանաց քրքիջներ կ'արձակեն իյնողին կամ զարնուողին. և խրախուսանաց աղաղակներ կ'ընծայեն ճարտարին, յաղթողին · մանաւանդ անոր՝ որ ամենէն վերջը տէր կը հանդիսանայ ասպարիզին, և սիգապանծ ինքն 'ի նժոյգ կը ճեմէ միայնակ յայս և յայն կողմն ճօճելով, հայելով։ Երբեմն՝ ընդհանրապէս միշտ յաղթող կը լինէին Տ· Ցուսիկանորդւոյ վանից Գաբրիէլ Վ· կամ Արջունից վանից Տէր Յակոբ · կամ Արճիշեցի Յօհ· Կայծակ վարդապետն։

Արարուց անդին Մանուկ աղենց թաղն է. ալ անդին մ'երթար, դաշտ է և Արարուց ու Կենդանանից սարը: Դարձիր մէկալ կուշտը. այս մեծ պողոտան Արդգայու Չօղբեն է, Այգեստաներայց ամենէն ընդարձակ ու վայելուչ փողոցն. անոր անդին՝ Փշոտ փողան, որուն եզերքէն կ'անցնի Ցանկուաներու գետ. և անոր միւս երեսն է Ջըմէ ղըմէ մաղալէն, Սև ջըւէն, Մհերի դուռն և Ակրփու սար: Իսկ մենք ուղղակի մեր կեցած տեղէն պիտի յառաջ երթանք: Մեր երկու կողմն եղած այգեստաներայց այս մասը՝ Նորաստունկներ կ'անուանին. և քանի՛ յառաջ երթանք, այնքան տուներ և բնակիչներ կը շատնան

Դ.

Այսօր կիրակի է ըսենք: Կը նայի՞ս ինչպէս ամենուն դրան առջևն ալ ջրջնած ու մաքուր աւելուած են: Ահա հասանք Ճոչ Քէնդրչի ըսուած ջրի ակն. նշանաւոր փողնիգլօխներէն մէկն է այստեղ: Կրնանք քիչ մը նստիլ այս ծառոց հովերը, ջրի ափերը, ուր այնքան բազմութիւն կայ մարդոց. որք նստած սուրճ կը խմեն, ծուխ կը ծխեն, և խումբ խումբ եղած կը խօսին կամ կը զուարճանան:

Դիտէ սա մանկտիներ, որ մէկ շապիկ մերկներ՝ առուի քովը ջրերու մէջ կը մտնեն կ՚ելլեն. և քեղ խոտէն ջրապզտիկ շինած՝ անցնող ու դարձողին վրայ ջուր կը պզտա-ցընեն : Մէկալ խումբին նայէ, որ քարեր ու գնգլիկներ ժողված և փայտի կտորներ, պզտիկ մզտիկ տուներ կը շինեն. —Մանո՛ւկ ճարտարապետներ — : Ուրիշ խումբ մը՝ ջրի առւազներէ թումբեր կը կազմեն, և ակօս ակօս բաժնելով կամ խաղողի այգի, կամ վարունկ ու դդում ևն, կը տնկեն, կը ջրեն. —Արո՛ւն այգէգործներ— : Խումբ մ՚ալ՝ թոնիր կը շինեն գետինը փորելով. ահա կրակը վառեցին, ալիւր խմոր են շաղա-խեր, պապապաճիկ հաց կը թխեն և ձուկ կ՚եփեն կուտեն. —Ճժո՛ւկ տնտեսներ— : Խումբ մի ևս, գետնի փոշիներ հաւաքած ջրով հաւ շինած են, և ձեռները վրան քսելով մէկ կողմէն չոր հող կը ցանեն վրան և կը պրտեն ու միաձայն կ՚ըսեն «Փարաբոյիկ մաղաբուտիկ». կլոր բոլորաձև բերդ մը կը յօրինեն. — Թզո՛ւկ Տրովա-ցիներ — : Մէկալոնք ալ թղթէ կամ կուէզի թաւէ նաւակ շինած, չիր ու չամիչ մէջը դրած, ջրի երեսին ձգեր են կը տանի. — Պզտի՛կ նաւավարներ — :

Քիչ մը աւելի հասակ առած մանկտին անդին պատին տակ փոսեր փորեր և պնդուկ կը խաղան · խումբ մը ևս ճան (Ճէֆ) կը խաղան՝ մէկ քանիներն ալ նստած են՝ ճանով «Պարոն գզիր» կը խաղան ։ Գիտե՞ս ինչու նա մէկ տղային գլուխը ծռեցուցեր ու կռնակին կը զարնէ ուրիշ մը ։ Ճանը չորս կողմ կամ երես ունի · չորսն ալ իրենց անունն ունին · երկու բարձր կողմերու մէկին կ՚ըսեն «ճուկ», մէկին՝ «թաւ» · իսկ ցած կողմերուն՝ մէկին՝ «սալ», մէկին՝ «կոռ» ։ Կարգով տըղաքները ճանը կը ձգեն, որին որ ճուկ գայ, նա՝ պարոն կը լինի · որին որ թաւ գայ, նա՝ գզիր կը լինի · որին որ սալ գայ, ոչ չար է՝ ոչ բարի · իսկ որին որ կոռ գայ, նա գող կը համարուի ։ Ահա ուշ դիր · նորէն կոռ եկաւ · գզիր՝ ճանը խլեց և պարոնին դառնալով կ՚ըսէ ·

— « Պարո՛ն, պարո՛ն, գող մ՚եմ բըռներ » ։ Պարոնը կը հարցնէ ·

— « Ի՞նչ է գողցեր » ։ Գզիրը գողին կը հարցնէ ·

— « Ի՞նչ ես գողցեր » ։ Գողը կը խոստովանի · (Օրինակ)

— « Ցանձ մ՚եմ գողցեր » · կամ ինչ և իցէ բանի մը անուն կուտայ ։ Եթէ ծանրակշիռ է ըսած բանը, պարոն հրաման

կ՚ընէ՝ տասն գօմի (ֆռնչէ) զարնեն, կամ աւելի. եթէ թեթև է, թեթև. շատ անգամ ալ պարոնական վեհանձնութեամբ ներողութիւն կ՚ընէ։ Այսպէս կարգով ճանը ձգելձվ՝ եթէ ճուկն ուրիշի մը գայ, սա կը լինի պարոն. և նախկին պարոնը իր իշխանութենէն կ՚իյնայ։ Ճանը նաև երբեմն բաղդ փորձելու ալ գործ կ՚ածեն. ի՛նչ խորհուրդ որ ըրած են՝ եթէ ճանը ճուկ եկաւ, յաջող և բարի է. իսկ եթէ կօռ՝ շատ ձախորդ է։

Նայէ մէկալ խումբերուն, որ աւելի հասակաւոր են։ Մէկ դասը՝ Խըռ կը խաղայ. մէկալոնք՝ Կորոց կը խաղան. ի՞նչ ճարտարութեամբ ու հնարքներով իրարու ետևէն կը վազեն, խաբս կուտան, տափիկ կ՚ընեն, վրայ կը դառնան, տղայական բանակ և ռազմ է։ Դու կ՚ասես փրանգօ—Բրուսական ճակատամարտն է։

Անդիիններն ալ Տուշ փէտ կը խաղան. Թօփ կը խաղան։ Ասոնք նայէ, որ մեծ եռ (գէծ) մը կլորաձև գծեր են, և մէկը ներս՝ մէկալոնք դուրս. ամենի ձեռքն ալ թուրայ կայ, կը զարնեն ներս կեցողին. իսկ նա եռի կեդրոնը կը դառնայ և որին որ իր թուրան զարնէ, ինքն կ՚ազատի, զարնուողն ներս կը մտնէ. կարծեմ՝ Խրակ-

տարրոց կամ Ջուանոցիկ կ'ըսեն ստ խաղին։
—Կը հաւնի՞ս այս ժիմնաստիկներուն ։

Պզտիկներուն նայէ ․ սուտիկ մուտիկ հարսուփեսայ են եղած , և ուռի դալար ճիւղէն կամ ոստի մը կոզակէն , կամ մասրայէ մը տուտուկ շինած զուռնայի պէս կը փչեն ․ դափ կը զարնեն , տամբլաբազ կը տփեն , խաղ կ'ասեն , տաղ կ'ասեն ․ փայտէ ձիեր հեծած կ'արշաւեն , փայտէ թուր՝ թղթէ վահան բռնած թրախաղ կը խաղան 'ի հանդէս հարսանեաց ։

Աղէկ դիտէ սա մեծ ծառի տակ նստող պատանին , որոյ շրջապատը բոլորեր են այնքան պատանիներ ։

Նստողը կերպ մը հանելով կ'ըսէ թռչնոց վրայ ․ ահա ըսածը ․

—«Հաւքմը հանեմ էսքանդարի» (այօրան է)։
Բոլորը միասին կը պատասխանեն
—«Ագամդարի»։

—«Ուր ուտելիքն էսքանդար ի»։
—«Ագամդարի»։

—«Ուր խմելիքն էսքանդար ի»։
—«Ագամդարի»։

—«Ուր տօտիկներ էսքանդար ի»։
—«Ագամդարի»։

—«Ուր կտուցիկ էսքանդար ի»։
—«Ագամդարի»։

—«Թէ կը բանայ Էսքանդարի»։

—«Ագամդարի»։

Ամէն մէկ ըստծի քանակութիւնը՝ իր ձեռներով, մատներով, աչերով կը ցուցնէ։ Լսողներէն ո՛վ որ ճարտարամտութեամբ կրցաւ իմանալ թէ ո՞ր հաւքն էր, խկոյն իշխանութիւն կ՚առնու խօսքի հեղինակէն, որ թուրայ մը կուտայ ձեռքը․ և նա անով կը վարէ կը զարնէ մէկալ բոլոր հոն հեցող ժողովը․ մինչև յանկարծ հեղինակն յետոյ կոչէ զվարիչն, որ կընշանակէ պաշտօնանկ ընել, որ այնքան արագոտն պիտի վազէ և դառնալով զինքը կը ձգէ հեղինակին քով յապաստանի, ուր ապահով կը մնայ․ իսկ եթէ 'ի փախստեան՝ հասնին իրեն՝ իրմէն վարուածներն ու բռնեն, սարսափելի վրէժ կը հանեն։ — Կարծես Պարսից Շահին կուսակալ կամ կառավարիչ կարգելուն խաղն է կը խաղան․ ․ ․ ․։

# Ե․

Եթէ հաճիք, ելնենք քիչ մը յառաջ քալենք։ Նայէ՛ սա պատկերուն վրայ փռուած մրդաբեր ծառոց ճղերը, որ ծաղկեր են, ու տեսքով և հոտով այս փողոցները զարդարեր են։ Վարդավառէն ետքը մինչև

աշունը , այս պատերու տակերը ասոնց պտուղները կը փռուին , փողոցէն անցնողներուն բաժին . շատերը կը թափեն ջրերու մէջ . մէյմ՚ ալ տեսնես ծիրան , ալուչայ , տանձ , խնձոր , եւն . ջրերու մէջ լող տալով կ՚երթան ։ Ի՞նչ կը քաշեն այս ողորմելի ծառերը չարաճճիկ տղայոց ձեռքը , որ քարալեխ կ՚ընեն ։ Ահա արդէն ուռի ծառերուն քարեր կը զարնեն , որ մեղրածըծուկ ձգեն , ծըծեն ։

Սա քովերնուս մէկ առուն նոր ջուր կապեցին . պզտիկ ճժեր՝ նայէ , ի՞նչ կ՚ընեն . կը վազեն ջրի ծայրը պագելու . «Ո՛վ որ յաջողի յառաջագոյն պագէ , անոր մայրը լաճ մը կը բերէ» ։

Աս մէկալ ճժերուն նայէ , որ ճչալով քըրքըչալով կը դիմեն խա Մօրըփներուն (ճնշաններուն) , որպէս զի անոնց միսը կըմըտեն . վասն զի «Մօրըփի միսը կըսմօզին ձեռքը կը դիւթուի , դանակ , տապար , ուրագ եւն սրելու ձիրք կ՚ստանայ» ։ Ան ինչ այդ Մօրըփներու կնիկները մեր տղայոց մայրեր և քոյրերը կը խաբեն ֆալով , թիզ չափելով , գարի ձգելով բաղդը նայելու . տղաքներն ասոնց միսերը կը փրցունեն , ծաղր առնելով անոնց դիւթութիւնը .

Կը տեսնա՞ս որքան ձեռ պետ (մանր ու խոշոր) տղաք կան փողոցներու մէջը, այնքանէն աւելի ալ տուները և այգիները կը զբօսնուն։ Վանը այս մասին օրհնուած է։

Կը պատմեն թէ, ժամանակով Էջմիածնի նուիրակ մը յարևելս յարևմուտս ամեն քաղաքներ՝ ուր որ հայ կայ, շրջեր, և ամեն քաղաքի մէջ վանցիներ տեսեր է. Հնդկաստանի էն վերջին ծայրը հասեր, լսեր է թէ կաղ հայ մը կայ. երբ «Ո՞ւր տեղացի ես» հարցուցեր, «Վանցի եմ» ըսեր է։ Ուստի առած եղած է թէ՝ վանցւոց կաղը մինչև Չինաստան է հասեր։

Բայց դու դիտէ որքան բազմաթիւ անձինք 'ի Պօլիս և յայլուր պանդըխտած են. մեր գիտցածները՝ անշուշտ կնոջ տէր և տղոց հէր են։ Վասն զի երբ հարկն կ'ստիպէ որ մէկը պարտուց և կարօտութեան երեսէն պիտի պանդխտի, անոր ծնողք կամ ազգականները կ'աճապարեն «Աստուծոյ կամօք» աղջիկ մը կը պատրաստեն, կընշանեն, և պարտք մ'ալ անոր հարսանեաց համար կ'առնեն, կը կարգեն. «Ոտքը կապենք, որպէս զի դառնայ» ըսելով։ Արդարև որքա՛ն դժուարաւ այնուհետև պսակեալն կը մեկնի իր առաջաստէն, ու թէպէտ իւր ոտքը կ'երթայ,

բայց սիրտը կապուած կը մնայ պսակա-նարօտին կապով. կ'անձկայ պանդխտութեան մէջ թուղթ մը ստանալ, որոյ գլուխ գրուած է «Ցիսուսի Քրիստոսի ծառայ քո տան անդիւորից (տմնանէն) շատ սիրով և յոյժ կարօտով բարև իմ երկու աչաց լոյս ազիզ գլխաւորին»: Եթէ ինն ամիս անցեր է իրենց ամուսնութեան, նոյն թղթի մէջ այս սիրտը խշխշացնող բառերն ալ կ'ընթեռնու. «Ես քո նորաբոյս ծաղիկ, քո սիրոյ պտուղ, անուշահոտ վարդ-վարդանից, կամ Մանուշակից»: Եթէ տարիներ վրայ անցեր է, կը յաւելուն «Որ բուլբուլի պէս կը խօսի. որ հրեղէն հրեշտակի աչքեր ունի. որ արեգական պէս կը փէլլտայ. որ սարեկի պէս կը ճխայ, կը թռվռայ. որ կաքվու պէս կը գվգվայ. ա՛խ, կ'ասի, ե՞րբ կուգայ իմ խէրիկս»... եւն: Իրաւ է ծնող մայր, ծերունի հայր, դրացիք, բարեկամք, քորք, եղբարք, այգին, ջուր, ծառ, տուն, տեղ, և այլն, ասոնք ամէնքն ալ կը յիշատակուին պանդխտին թղթին մէջ. և իւրաքանչիւրն իւր խորին ազդեցութիւնը կ'ընէ, բայց անոնց բուն կապը, որ գիրենք կը ձգէ և կը վերադարձնէ 'ի հայրենիս, բուն բոցն ու կրակը, որ դիշեր ցերեկ անոնց ջիգարը կը խորովէ, Տան Անտիւորն է և անոնց

սիրոյն անուշահոտ Պտուղն ։ Ա՛յս միայն է, որ այն ամենի Սև Ծովու ալիքը և լերանց] սառնամանիքը, զանազան վտանգներ և տագնապները կը քաղցրացնէ մեր հայրենակցաց, առ ոչինչս կը համարին Պօլսոյ փափկութիւնը, բարեկեցութիւնն ու ազատութիւնն, որոց թէև հարկ լինի՝ հինգ, վեց, եօթն, և աւ աւելի անգամ դիմել Պօլիս, նորէն կը վերադառնան. ու այսքան մանկանց հայր կը հանդիսանան ։

Օրհնեա՛լ պառաւունք. օրհնեա՛լ հարսունք. օրհնեա՛լ մանկունք, որ այս կապը հնարած և յօրինած էք, և բուն կայն եղած էք. ապա թէ ոչ, արդ մեր շրջած այս գեղազարդ այգեստանեայց փողոցները կամ թափուր կամ անհայ ալիտի գտնէինք։

Նայէ սա մանուկը՝ իր երեսներուն վրայ էրէթիկ, ջրջրուկ (Եարբայ) ունի. մայրը ձեռքէն բռներ կը տանի Պարոնկանց տունը, որ կայծքար ու պողպատ (ֆար ու ղուխ-ֆուխ) զարնել տայ Եարբային վրայ, և փչել տայ, որ առողջանայ. վասնզի Պարոնկանց Ուսէփ ախբէր քանի մ'անգամ Պօլիս գացեր եկեր է Եփրատին վրայէն անցնելով։ «Ով որ դրախտի գետէն անցած ու խմած լինի, անոր տրուած կը լինի այս կերպով եարան առողջացնելու շնորհն» ։

Սա Մամիկը Ներշէհը թևն անցուցած նստեր դրան մէջ, և մանուկ մը առջևն առած. անոր երկու բազուկները բռնած է ու իր բոյթերով ու մատերով տղայի բազկերակները կը ճնշէ, կը շօշափէ, բազուկն 'ի վեր և 'ի վայր մատները կը տանի ու կը բերէ. իր աչքերը անթարթ մանուկի աչքերուն յառած է. և երբեմն ալ արմունկներէն վեր՝ թևերը կը ճմլէ, կը դառնայ տղայի երեսն 'ի վեր կը խաչակնքէ, և ձեռքը պորտին ու կուրծքին վրայ դնելով բոյթով կը ճնշէ. վզին մայր երակները կը ճմլէ. ճակատը կը շփէ. երբեմն երբեմն ալ երեսին կը փչէ, և միշտ կը պտպտայ, աղօթք կ'ընէ: Յաճախ տղան կը յօրանջէ, և ինքն կը յօրանջէ: — Կը մագնիսացնէ՞, կ'ելեքտրականացնէ՞, թէ աղօթիւք հրա՞շք կը գործէ — : Վերջապէս այդ տղան հիւանդ էր, և կ'առողջանայ. քանի մը առողջապահիկ պատուէրներ կուտայ մօր, և կը պարտաւորէ որ այս ինչ Սուրբին, կամ Եկեղեցւոյն, կամ Խաչին, կամ Մասունքին կամ Աւետարանին ուխտի տանի, և ըստ կարողութեան՝ խունկ, մոմ, մատաղ, եւն., նուէրներ տայ. վասն զի տղան «Աչք առեր է», կամ «Չարոց պատահեր է»: Իսկ եթէ վախէ յառաջ եկած

հիւանդութիւն է, «վախերակ» կը բռնէ, կ՚աղօթէ, և կը պատուիրէ որ «Ճամը տանի եօթն գլուխ Աւետարան կարդալ տայ վրան, և եօթն դոյլ ժամի ջրհորէն ջուր թափէ վրան, եօթն մոմ վառէ, կամ տղու հասակի չափով մոմ մը տանի Նարեկայ, կամ Տիրամօր, կամ Ս. Նշանայ»։ Աչք առածի համար նաև «կապոյտ ուլնիկ» մը, զոր «աչից ուլնիկ» կ՚ըսեն, կը պատուիրէ կարել տղու գտակին (ֆըլճուրկէն) կամ կռնակին վրայ։ Եւ իր այս ամեն բժշկութեան, գուշակութեան, աղօթարարութեան վարձքը՝ մի միայն կտոր մը օտղօն, կամ թափթափայ հաց մը, կամ բաղարջ մը, կամ քիչ մը միրգ, կամ այս տեսակ փանաքի արժողութեամբ իր մը, ի՛նչ բանի որ նա պէտք ունի, և ինչ բան որ տղու մայրը կարող է տալ. մինչև չախսու, դերձան, ասեղ, եւն։ Իսկ եթէ տասն կամ քսան փարայ տան՝ իբրև անոր քօմուսիօնս գին, աւելի ուրախ կ՚ըննեն զինքն։

Այս կարգի Մամիկներուն կը բերեն աղօթելու ընդհանրապէս երբ մէկը «քան զմեզ աղէկներէ» (օճինէրէ) զահահարած լինի, կամ «հրեշտակակոխ», կամ «գրողի զարկած»։

Նայէ սա երիտասարդին, որոյ բազկին կամ պարանոցին վրայ պալար մը կամ խոց մը կայ, կ'երթայ աղօթել տալու. և Մամիկը աղօթելէն զկնի, կը փչէ, ապա քովի առուի եզերքէն Եղանլեզու բանջարէն տերև մը կը կտրէ, վրան կը թքէ, և զայն դնելով խոցին վրայ կը կապէ, կ'երթայ ու կը բժշկուի։

Նա տղան Մատիշուրթն ըսուած վէրք մը ունի մատին վրայ, հաւկթի դեղնուցէ և մեղրէ շինած սպեղանի մը կը քսէ վրան, կ'աղօթէ, կը կապէ և կը ղրկէ։

Մէկալ տղայի ոտքը ջնջխուեր է. առուոյտ խոտը կը ծամէ, կը դնէ վրան, կը կապէ, և կը ղրկէ։

Սա մարդը տանիքէն վար ինկեր, սրունքի ոսկորը ջախջախուեր է. Մամիկը կը մաժէ, և տեղնի տեղը կարգադրելէն զկնի, անլուայ կտաւի վրան չրէշ կ'անցունէ, անով կը պատէ, և տախտակի մանր կտորներով պինդ կը կապէ, որ չը խաղան կոտրած մասերը։

Հրաման կուտայ անոր, որ եօթն օրէն ետքը ձեռնէ իր գործին աշխատէ։

## Չ.

Եթէ կենանք նայինք այսպէս բաներու, չպիտի կրնանք ճամբայ երթալ, թող միանուրիշ առթիւ քեզ շատ բաներ պիտի պատմեմ։ Քալե՛նք ։

Ալիւտակ մօրուս հալիւորը դմփիկ (մնփեզ) ձգեր հինաւուրց բօղացած մեծ ուռենւոյն տակը նստեր, կռնակը զարկած այն ծառին, որ իրեն պէս զառամեր և թառամեր է․ բայց ջուրը՝ որ ասոնց ոտքի տակով կ'անցնի, անհեցութիւն կ'ընծայէ ուռենւոյն, և զուարթութիւն՝ ծերունւոյն։ Հոն կարգ մը հասակաւոր մարդիկ նստած զանազան առարկայից վրայ կը խօսին․ սովորաբար թաղի տուրքերուն, կամ հասարակաց պէտքերուն խորհրդարանը փողնիգլխներն են, որ 'ի գիրս կը կոչուի «Հրապարակ ծերոց»։ Իսկ մեր ալեւորն մէկ երկու իրեն նմանները գտած, կը պատմեն իրարու իրենց երիտասարդութիւնը, իրենց ըրածներն ու տեսածներն․ Վանայ տիրապետող հին փաշաներու անուններ ու անոնց ըրածները․ Հայ Գօջաբաշիներու գործքերն ու ազդեցութիւնը․ Առաջնորդաց, նշանաւոր Վանականաց և Տէրտէր-

ներաց պատմութիւնը կ՚ընեն։ Քովինատողն ալ խան Ապտալին և խան Մահմուտին ժամանակը, անոնց բռնաւորութիւնն ու ձերբակալութիւնը կը պատմէ։ Տես ի՛նչ կ՚ըսէ։

— «էն տարին որ խան Մահմուտ եկաւ Շուշանց գեղը նստաւ իր ճէլօնէրով (ճըրդէրօվ), պիտի Այգեստան և քաղաքը թալանէր․ չորս դեհէն գեղացիք եկեր լցուեր էին քաղաքը, փաշան քաղաքի դռները փակեր էր․ Այգեստանեայց տուները մէկ մէկ ամրոց դարձեր էին․ կնիկ, մարդ, ճիժ, բիժ տանիքներ ելեր էին արապահներու ետևը կեցած, փողնի քարերը, կուէթներ (հօղէ ղըր կօշտ), հող, մոխիր և կրամոխիր կուտած էին, որ ճէլօներուն գլուխին և երեսներուն զարնեն, մարտակ, ձողին, թոնիրի շիշ, կրակ, ուրագ, դանակ, ինչ որ ձեռքերնին գըտնուէր․ վասն զի՝ «Արգիլուած էր Հայերուն զէնք ունենալ» ․ ․ ․ ․ ։

—Ի՞նչպէս, կը հաւնի՞ս մեր Սպարտացի Այգեստանցւոց։

Նայէ ի՞նչ կը պատմէ սա մէկալ ծերը։ «Երանե՛կ էր էն օրերուն, որ կ՚երթայինք ուխտ Տիրամէր, Տէր Յուսկանորդին (վօնքը), Ականից Լուսապատուզ Ս․ Սահակը, Մեծոփ, Արծուաբեր, Աքանչելագործ։ Սու-

սուն խաթուն (Տ. Յուսկանորդեայ վէպէց փոփոխէջին մը, Նշանաւոր Թաղջաթեամբ) ձին հեծած, տունէն գլուխ կրակ ու օխլահ, մէկ ձեռքն էլ միզրաղ, կուգար կը ժողվէր ուխտաւորները, ինքն կ՚առաջնորդէր․ էն արունթերան քրդերէն ո՞րն հոգի ունէր Սուսունի դէմն ելնէր․ Սէյտանցիք, Եզտիք, Հէյտարանցիք, Հասնանցիք ըմէն կը դողին Սուսունի անունէն․ Էջմիածնայ ուխտաւոր կը տանէր, Մշոյ Ս. Կարապետի ուխտաւոր կը տանէր, Փութկու Ս. Գէորգ, Նարեկ, Հոգւոց վանք կը տանէր կը բերէր։ —Գէ՛ իդի՛ ժամանակներ, դէ՛ —։ Քրդու դավր (դար) էլ աղէկ հաւատք կէր․ Աստուածն էլ շատ կորիճ մարդեր ու կնիկներ կը հանէր։ Միտըդ կուգա՞յ Զափկըն (հայ մ՚է), որ Թօխաթու ճանապարհով տասն օր քէլելով Ստանբօլ կ՚երթար, տասն օր ետ կը դառնար։ Խթման իրիկուն մը ժամեր կը զարնեն, Զափկընի կնիկ թոնիր կը վառէ․ ճաշ պիտի եփէ, եղ չը կայ․ Զափկըն կ՚երթայ Արջակ գեղէն եղ կը բերէ կը հասցնէ, որ վեց ժամու ճանապարհ է․ ու խթման պատարագին էլ կը հասնի»։

Կը գովեն և կը գովաբանեն իրենց հին ժամանակը․ «Մեր օրերը Աստուծոյ չէնք

չնորհք կար, մկայ (ճէմայ) ղորդ է ըսւըմ չը կայ․ ոչ էլ սէր կայ, ոչ աստուոր (Երկրա-յէն) ուրախութիւն կայ, ոչ էլ Աստուած յիշող կայ։ Էն կրակ օրերու մէջ ինչ կտրիճ-ներ, ինչ հունարի տէր մարդեր կ'ին (կոյէն) մեր հայերաց մէջ։

Միտըդ կուգա՞յ Ջանկայ Պուղոս (Ջա-նէկ՝ գէլ է), որ չորս գոմշու ոժ (գուճ) ունէր։ Իսախ փաշի (ֆուշայէ) օրով Աճմու ֆոհըլիվան էկեր էր Վան, «Ես մէկ բա, որ ...ին բռնենք (ըմբշամարտին+), եա էպքանդար ձող ու խաղնոյ կ'ուզեմ» կ'ասէր։ Դէւու նման անհաւատ գազան մարդ մ'էր․ ո՞վ ո՛ւր հոգւոցն ընցեր էր։ Ջանկայ Պուղոս որ լսեց, «Ես՛, ասաց, Վանայ երկիրն ըսկուն (այսպէս) աւերաւ, որ Աճմու Բօյընէկէ մը գայ Վանայ թալա՞նը տանի»։ Քշեց Պու-ղոս էկաւ փաշին․ փաշէն էն օր պիտի ֆոհըլիվանի ուզածը տէր (տայր), տուրերից ու ղաւաւֆոնից թթուեր աչք ւիրես դարձեր էր բազլի ջուր․ քիթմութէն լու մը կ'ինէր գետին՝ հազար կտոր կ'ըլնէր։ Ի՞նչ անէր․ ֆոհըլիվան շատ կէր, կը քաշուին էս Աճ-մուց։ Աճամ մ'աւե, Աժդահար ասա։ Դօր որ գնացեր էր, անուն հաներ էր, թերնի բռնածն (ըռղածն) առեր էր։

Պուղոս կ'էլնի մէյդան, կը կանչի ֆոհ-լիվանը։ Հողագործ մարդ էր Պուղոս, շա-

լաքի շալվար մը, խամաքի զըպուն մը ու քազախիկ մը հագած, դաշտից՝ գերընդին դրեր գետին, էկեր էր։ Քանի մը տակ (փանդոյր) ճէյրանի մէջ կ'երթայ կուգայ Աճամն, խօսք կը թալի, ձեռ կը թալի, վիշապի նոճոր կը քօռայ։ —ինչի°.— վախցուցի Պօղոսուն—. Մէկէլ որ իրար կուգան, Պօղոս կը վերու Աճմուն կը զարնի գետին, քանձ վիշապ մ'իյնի երկնուց կը դրմփայ, իդոր փորի ձէն կ'երթայ չում Իրան ու Թէհրան։ — Ա՛ռ քե ծուղ ու խաշինայ. դէ՛ գնա՛ մարդ ճանչցի — ։

Բերէք, կ'ասի Պօղոս, ես՝ կնկան հաւլաւ հագուցեմ իդոր, թող ճանչնայ ուր քեռին, թող հասկնայ թէ՛ Վանայ խայեր, խոյայ խաներ չեն» ։

Պօղոսուն շատ խալաթներ կուտայ փաշէն, վեց լուծ գոմէշներով գուխան մը ։ Առաջ էս տեսակ մարդեր կ'ին, բաներ կ'ին. մկաւան (հէմախօսան) մարդերն էլ մա°րդ են ։

—Էյն տարին որ Ս. Կարապետ գնացինք, վրայ բերաւ ուրիշ մէկը, Մշոյ դաշտի մէջ Ցրօնք գեղին մօտ գեղ մը կէր, — անունը ի՞նչ է, գիտե՞ս — . լեզուխս ծէրի վէրէնի, չեմ կարնայ ասե ։ —Դո՛ւ ասա, Բաբիկ ախբէր ։

—Արքհա՛ր— ։ Հը՛ ։ Մարդ մը կէր (Նոյը) էն տեղ, որ կ՚ասին ․ Ջաղցի քարեր մէկ ձեռնով կը վերուցի ․ կ՚խնի քըդերաց եաև, ձիերու պոչէն կը բռնի, պոչ դուրս կը քաշի ․ չորս գոմէշ լծած սէլը (սայլ) ի– տեանց կը քաշի կը դադրցուցի․ շատ այլ և այլ բաներ կը պատմին ։ Անուն ի՞նչ էր, դու ասա ։ — Ալօ՛— ։ Հը՛ ․ Ալօ՛ ։ Հայ ջաղց– պանի մը տղայ է եղեր»։

— Իդոնց ոժ տուածուրիկ ի (Երկնային փառքէ), վճռակի կրկնեց ամենէն ծերու– նին ․ «Ով եօթն տարի Սուրբ Կարապետի պահս պահի, եօթն դիր (անգամ) երթայ Սուրբ Կարապետի գերեզման համբուրի, ինչ որ ուզի, կ՚առնի»։

—Էսա դավր ո՞վ միտք կ՚անի ուխտ, սըրբեր, հունար ։ Քօռ օղլին ասեր ի՞ ․ «Թվանք իջատ օլտի, իգիթլըղ բաթտի» ․ մերն էլ՝ վարժատըներ, ղազաթաներ ե– լաւ, ըմէն բան ջուր տարաւ․» ․ ․ ․ — ։

Կը գովեն իրենց կեանքի մէջ ունեցած սովորութիւնները, այսինչին ծնունդը, այնինչին մահը կը պատմեն ․ մէկին հար– սանիքը, եօթն օր եօթն գիշեր ըրած ու– րախութիւնները՝ դաշտ ու մաղ կախելը․ մէկին չափազանց դինի խմելը, որ քա– ջութեանց կարգին է ։ Միւսին նոր նոր ու հանճարեղ խաղեր հնարել և խաղալ ։

Մէկին ճարտարախօսութիւնը ։ Միւսին ճարպիկ ձեռնածութիւնը ։ Մէկն իր ուղեորութեան արկածներըկա՛մ ըրած քաջասրտութիւնը կը ճառէ , միւսն իր երիտասարդութեան օրերն և երիտասարդաբար ըրածները ։ Կը դառնան նորէն իրենց ներկայ կեանքին վրայ խորհրդածել ու անցեալին հետ բաղդատել , և զայն ըստ ամենայնի անմխիթար կը գտնեն ու անհամեմատ իրենց ժամանակին ու ճաշակին։

## Է.

Քալէ , բարեկամ․ բաւական շատ յապաղեցանք հոս , յառաջ քալէ , տեսնելիք ու լսելիք շատ ունինք ։

Ահա մէկ ջրի ակն ալ , ասիկայ Խմոր քասան կ՚ըսուի ։ Մեր աջ թևի կողմի փողոցը կը հանէ Սղգայու մեծ ջաղացէն . մենք նորէն ուղղակի պիտի երթանք ։ Ական վրայի սա տունը «Թուղթ իրիշկող» (հօմայօղ) Բարդաղիմոսը կը նստի , որ ռամ թաղել ալ գիտէ ։ Ահա երկու կնիկ ելան այդ տունէն կ՚երթան խօսելով․ մենք կամաց կամաց անոնց հետևինք և մտիկ ընենք ։ Զգո՛յշ , եթէ իմանան թէ իրենց ձայնը կը լսենք , կը լռեն ։ Արդէն կը տեսնաս ի՞նչ-

պէս ոտքէն մինչև գլուխ ծածկուած են կարմիր չիլայ չապիկով, և վրայէն ճերմակ սաւանով մը, իրենց գլուխը, երեսները և բերաններն ալ ամուր ամուր փաթթա- թած են ։

— Շողեր խաթուն, ուրբաթ գիշեր հաւխուսոցին (հաւաախօշէն) փօղնի չները դարչել դարչել կ՚ունային․ մեր դրկցենց տան Նարգիզ խաթուն հիւանդ էր, «Գրողը իկեր էր դեհ ինոր արև, չներաց ունալուց խմցանք»։ Իմ ատէգէրկլինս (պա- զէր կէն, էրկան եղեօր կէն) հիւանդպահ էր գնացեր էն գիշեր․ Գրողի էկած ջան (ղա- հան) պառկուկ կ՚էլնի, աչք կ՚առնի Գրո- ղին, կը զահահորի (ղահվէ հանէ)․ Գրողն ու հիւանդ չատ կուտան կ՚առնեն, հոգին չիտայ․ իրեք օր ի որ հոգեդարճ ի։ Տէ- գէրսկնկան լեզուն կապուե, կեռիկ փակ- ուե (նարկիլէ), խելք թռուցե․ ոչ կանայ նստել, ոչ պառկել, ոչ կայնել, ոչ ուտել խմել․ էլե կտոր մը կոճ ինկե տուն։ Կ՚ա- ռեն հրեշտակակոխ էլե․ սուրբ սրբե- րէնք չմնաց կանչեցինք․ խաչ աւետարան հանել տուինք․ Էսօր էլ էկայ թուղթ մը անել տուի, թուղթ իրիշկողն էլ ասաց․ «Գրող տիսե վախէցե․ Խաթուն Տիրամօր ըմտաւոր արէք»։

— Թառիկ խամթուն, աւատա որ ըս-
կուն ի ։ Նարգիզ խամթուն գրողներաց
հետ կ'առնի կուտայ (յօրօքեբօսնէկօն օնէ),
աշխարհ գիտի ։ Քանի՛ քանի՛ դիր լսեր եմ
ուրնից (եըմէն) որ կ'ասէր. «Գիշերս գրող-
ներաց. գլխաւոր կանչեր էր, գնացինք
խորհուրդի, երբ ուր ձեռաց հրեղէն կա-
նանչ ճպող իրեք դիր իղարկ գետին, հա-
զար հազար գրողներ մէկ աչքը թարթի
մէջ ժողուան էկան ։ Ինոնց ժողված տեղ՝
ինչխ որ Բաղդադու աշխարհն ըլնի, քանի՛
աչքդ կտրի անոռ անդլօխ մութ դաշտ
մը, ոչ կանանչ կը գտնուի, ոչ էրունք
թռչունք. սև քարեր, աւազէ սարեր ։
Գրողներաց գլօխ ամպերաց մէջն ի, ոտ-
քեր չգետնի տակ անդունդք հասեր ի.
իդոնց իրեսներ սև՝ քանձ Աղամայ մութ,
իդոնց մըռթներ կախուերի չում ուրենց
ծընկուեր. բերըններ քանձ Վանայ ծով.
լեզուըները մէջ քանձ Վանայ բերդ. քիթ՝
քանձ Սիփանայ սար ։ Խոզու պէս մազոտ ի
իդոնց լեշ. ըմէն մազից բոց կ'էլնի, կրակ
կը թափի ։ Հաւքու պէս թև ունեն կը
թռնեն, խոանի պէս կը քէլեն. մէկ ոտ
Բաղդադանի, մէկ ոտ կը թափի Սև ծով.
մէկ ձեռ կը խառնի Չինմաչին, մէկ ձեռն
կը սպարդի Ֆրանգստան ։ Ուզեն կը պատիկ-

նան կ'ելնեն քանձ լու մը ու անիծ, ուղեն կը դառնան քանձ երկինք գետին պատող սեւ ամպ մը ։ Ըմէն գրողն ուր «ընօրն» ունի, կը պատռեն, ռաստ էկածին կը զարնեն ․ չե՞ս տեսեր, մեռնողներաց որու ոտքը, որու թեւ, որու քամակը, որու երեսը, որ ուրիշ տեղ մը կը կապուտնայ, գրողէ զարկած ճպոտի տեղնի ։ Նաֆահան մէկը կը հիւընդնայ, մէկը կ'իյնի կը մեռնի ․ էն ի՞նչի ․ — Գրողից զարկուած կ'ըլնի — ։ Մէնակ միր («չէ») տուն որ աղօթք արող կայ, ո՛վ որ առաւօտուն իրիկուն Նարեկ կը կարդայ, Սաղմոս կ'ասի, Ներսիսի կ'ասի (24 տուն Հաւատով), օր քսանը չորս ծունր կը դնի ․ ո՛վ որ կիրակմուտ գիշեր ճրագ վառ կը թողնի, կիրակի իրիկուն խունկ կը ծխի, չորեքշաբթմուտ, ուրբաթմուտ կը պահի, միր տուն, միր մէրէն որ համայիլ կայ, գրող էն տներաց փախսի ․ պահապան հրեշտակից կը խափանուի »։

—Համայիլը՝ քանի մը կանգուն երկայնութեամբ թուղթ է, որոյ մէջ գրուած կայ շատ մը հրեշտակաց անուններ, զորս 'ի պահպանութիւն կը կոչէ զայն կրող անձին ։ Աստուծոյ հազար ու մէկ անունները գրուած կայ ․ «եղիցի օգնական պահապան այսինչ անուան ծառային» ։ Նարեկացւոյ

աղօթքներէն «Յարեբանեալ», և Որդի Աս-տուծոյ» գլուխները, «Հաւատով խոստո-վանիմ» աղօթքը, և «Կիպրիանոսի վարքը», յորում սատանաներու անունները կան. և ամեն մէկ սատանան ի՛նչ չարեաց պատ-ճառ ունի, ու անոնցմէ ամեն մէկի դէմ՝ ո՛ր հրեշտակ կարգուած է յԱստուծոյ պահապան հաւատացողին, գրուած է։ Այսու՝ Սատանաներ կամ Գրողներ կը լի-նին խարամանոյ դէւերը, զորս Պարսից կեշտ կամ Զրադաշտին օրէնքը կը սահ-մանէր, և որոց վրայ բաւական գրած են մեր Եղիշէն՝ իր պատմութեան մէջ, և Եզնիկ՝ Եղծ աղանդոցին մէջը —։

Նարգիզ խաթունի պատմութիւնը կը շարունակէ Շողերն։

«Ո՛ր տեղ որ սով, մահ (մահտարաժամ), հէծել (տաղտապան) կը պատահի, Գրողներուն գլխաւոր կ'իմնայ որ Աստուած ուր ձեռ-քաշէ էն տեղից, էն մարդուց, ինոր ա-նուն կը գրուի գրողի դաֆթար· գրողները կը ժողվի կ'օրօխկի էն տեղեր, որ կ'երթան արտեր կ'ուրեն, հասածին կը զարնեն հողին կ'առնեն։ Տղաբեր ծննդական կնկան շատ թշնամի են. թէ որ ինոնց բարձի վէրէն համայիլ, Նարեկ, Սաղմոս,

Աւետրան, աղօթագիրք մը չտեսնան, մէ-կէցմէկ կը զարնեն։ Մէկէլ ծննդականի պառկած՝ տան պատերուն վէրէն խաչ կը քաշեն, խաչից կը խափանուին։ Մարդ որ օրօչկտայ, բերնի վրէն խաչ չհանէ, գրողներ կը մտնեն մարդու փոր կը դիւա-հարցուցեն։ Մութ ժամանակ ծառերաց մէջ, ջրի ակներաց մօտ, ծուծակներաց մէջ, ջրի հորերու մէջ, աւեր տներու մէջ կը բնակուին. ո՛վ որ էն տեղերէն ընցնի «Յիսուս Քրիստոս» չասի, չար կը հասու-ցեն։ Գօւերաց մէջ կը մտնեն, ո՛ր մեռլի վէրէն որ «փառք 'ի բարձունս» չասեն, էն մեռել գօռնադար կ'անեն։

—Մէջ Ակրվի մէջ Շաղբաղի հին գօւեր կան. ընցած տարուըտանք Լ. Բ. գիշրանց ելեր էչ հէծե կ'երթայ՝ պիտի երթայ Շաղ-բաղի ուրենց իգլին ջրել. մէկէլ կը տեսնայ որ ճամխի (ճանապարհի) բերան կատուու ձագ մը, ինքն ինք կը մէզի (մօտէն) կ'ասի, տես-նաս վի՞ր (ուրէ՞) կատուունի գողցեր տարեր են՝ ղառձե կ'երթայ տիրոջ տուն. կը տեսնայ որ չէ՝ կատուն կը պէտնայ (մեծնայ) կ'ըլնի ղողոզ (ղըղըէն ձայն). դէ՛, դէ՛, կ'ըլնի քանձ ճողէ (բարակ ձայն) մը. դէ՛, դէ՛, դէ՛, կ'ըլնի քանձ էշ մը. Բ. ի թուք մէջ բերնին կը չորնայ ահու. մէկէլ ի՞նչ տեսնայ, գօ՛

(ոհա) մօրէ մերկ մարդ մը ելեր հեծեր ուր իշու Նալբէն ։ Աստուած փրկի ազատի՝ ահու կը չորնայ, չում գողու ժամեր կը զարնեն, գօռնադարք կը խափանուի ․ ամա՛ Բ․ ի գլխու մազեր կը դիզանան, գագաթից մուխ կուտայ դուրս ․ անձն փուշ փուշ կ՚ելնի, լեղին կը պատռի ․ ինոր վէրէն ծռաւ, կեռիկ փակուաւ (ոկուանըր էըօրու-վըրայ կը ...), քառասուն օր ոչ գրուցեց, ոչ կերաւ, ոչ խմեց, ինչքանդար չէր, մօլայ, տէրտէր, անքախտի ([illegible]) Թուղթ արող, ստող իրիշկող (Աստղաբէտ) կէր՝ էկան, ճար մը չկարցան անել ։ —Մեռնեմ ուր զօրաց — Կենդանանից աւետրան բերին, Կարմիր աւետրան բերին, Շէկ աւետրան բերին, Թագաւոր աւետրան բերին, Նարեկ հանին, Կիպրիանոս կարդացին, համայիլ գրեցին, աւազանի ջրեր բերին, Հոգւոց վանից գեղարդ բերին, Խաթուն Տիրամօր գերեզմնից հող բերին Ջրով տորորիցին լցին բերան, չէլաւ չէլաւ, իտին դրին Աըք Նըշանայ բալնիս բերին մլիցին ([illegible]) բերան, կեռիկ բացւաւ ․ երկու տարի տեղով ջլով ([illegible]) պառկաւ, հազար ջորով (հօգէ ...) աղէկցաւ» ։

—Գօռնադարներու հաւատք ընծայող չատեր կան Հայաստանի մէջ ։ Առաքէլ

պատմագիրն առ իւրն խոստութիւն կը պատմէ հետևեալը . . . :

. . . « Ցետ չորից աւուրց ուրանալոյ իւրոյ սատակեցաւ Ղարաչորակն , և յետ չորից աւուրց թաղմանն իւրոյ՝ յաւուր միում ընդ մերձենալ երեկոյին տեսին զՂարաչորակ ուրացողն , զի ելեալ էր 'ի վհէն յորում թաղեալն էր , մերկ և խայտառակ և գարշադէմ և այլագունակ , իբրև զշուն կատաղի . և զպատառն իւր արկեալ 'ի վերայ ուսոց իւրոց գայր ընդ մէջ քաղաքին 'ի շուկայն և 'ի կրպակսն շրջէր . և որք տեսանէին՝ զահի հարեալ ահաբեկ լինէին , քանզի ամենեքեան ճանաչէին զնա . . . : Եւ յամենայն աւուր եղանէր ընդ մերձենալ երեկոյին . . . և մինչ 'ի լուսանալ առաւօտուն շրջէր . և ընդ մերձենալ՛ առաւօտուն գնայր 'ի դիրն իւր մտանէր : Եւ վասն ստուգելոյ թէ նա է Ղարաչորակն , յորժամ նա եկն 'ի շուկայն , միաբանեալ ոմք տասն , գնացին 'ի վիհն , և տեսին ոչ էր անդ Ղարաչորակն . և զայս արարին չորս անգամ : Ցաւուրս եօթն այսպէս առնէր , յորոյ զարհուրելի տեսլենէն զարհուրեցաւ քաղաքն (Նախիջևան) , և յորում ժամու ժամանէր ժամ գալստեան նորա , թողուին ամենեքեան զխանութս և զգործս իւրեանց և

փախչէին ։ Եւ և դասք գիշերապահաց, որոց հասս ասեն, լուեցին 'ի գիշերի շրջելոյ ։ Ապա ընտրեցին զարս արիասիրտս և զքաջազօրս և զկորովիս աւելի քան զերեսուն, և վառեցին զնոսա զրահիւք, զինուք պատերազմականօք, նետիւք և աղդեղիւք և սուսերօք, և պատուիրեցին նոցա սպանանել զՂարաջօրակն ։

Եւ յերեկոյեան պահուն ածին զի գայր, պատրաստեալ արքն ընթացան առաջի. իսկ նորա զխախուստ առեալ գնացեալ եմուտ 'ի յորջն յորմէ ելեալն էր. իսկ զինակրից արանց հասեալք 'ի տեղին անդէն խողխողեցին զնա սրով և կտրեցին զգլուխն, տարին յայլ հեռաւոր տեղի և և կորուսին» ։

Վանայ մէջ ալ ընդհանրապէս գօ-նաղարները «թաղով կամ փայտատով մինչև գլուխները չկտրեն, անհետ չեն լինիր» կ'ըսեն ։

Շողերն ու Թառիկ տիկնայք իրենց երեսները կը խաչակնքեն. կուրծքը ծեծելով՝ յԱստուծոյ կը խնդրեն, որ փրկէ ազատէ զիրենք և իրենց պարագայքը և համայն Լուսաւորչու ազգը այսպիսի չար պատահարներէ ։ Ապա կը հարցնէ Թառիկը.

— «Շողեր խաթուն, կ'առ'ինչ ա-

սաց (Եօլչիւս ն՛ըսեն) ինչքանդար չըլնի, դու քանձ ծիկ (թան գէօ) չապիկմ՝ երկու աւելի հադերես (Թէծ և ֆօրչատաս ես)․ էս երկու տարի ի որ մեր Թաղի Գրողի Գզիրենց (գրան և գուհմի անուան է) Պարիկ (մօրչօտա անուան է) ինկաւորուեր ի (ըստանօրեր է), գիշեր մը աղուն բարձե կ'երթայ ջաղաց, մարդագէլ (մօրչօտօյլ) կը տեսնայ ճանբան․ խնորից կը պրծնի կ'երթայ աւեր ջաղցի մը ջրտան (Ջրտան ն'ըսեն, տօօրէ ջըտաղոցին ջօրը անխանըրան ղարնօսելով և փարեր դօրյանելով՝ արօրափա կը հօսէ) բերան կը նստի կտոր մը հանգ (Հօնգչօր) առնի․ լուսնակ նոր գլօխ կը բանձրացուցի, մէկէլ կը տեսնայ որ Նօճօր Նօճօր ձէներ կը լսի․ ես ասեմ հարիր (հօրչօր), դու ասա հազար, սև սև ջուրէ պառւըներ մէկ մէկ օձ բռնած ուրենց ձեռը կուգան կը մոնեն էդ աւեր ջաղաց․ Պարիկի սուսունք կը դօղայ (Բօլըր ան} կը փարմէ)։ Մէկէլ կ՛իըիշկի որ ի՞նչ․ գետի ջրից կ'ելնեն անթիւ աղջիկներ հուրն ի հրեղէն մազերով, ուրենց իրես գարնան լուսնկի պէս պոծառ, կ'ելնեն կը փռուին սար ու ձոր, գեղն ու քաղաք։ Մարդ կը զարմանայ, ի՞նչ պիտի ըլնին խոնք։

—Ափա՛ր, քա՛, դու՛ էդ աւուր հասեր ես, դէլ ալա՛ (դեռ ցուրտ) չե՞ս գիտե։

էն սեւ պառավընէր գիշըրուան մէրերն (ճոյ-րեչն) են․ աւեր ջաղցնէր, ցամաք հորեր կը մտնեն ցերեկները, էն տեղեր ճանբախ են չինե կ'էջնեն (կ'էջնան) չում գետնի տակ, ծովու տըկներ աշխար երկիր կայ, կ'երթան կը փռան (չըչին), իրիկուընէր սարերաց տակէն կ'ելնեն մեր աշխար։ Աստուծուց անիծած, Աստծու իրիսանց ինկածներն են իդոնք․ էն օձեր [illegible] են․ թէ որ արեւու իրեն տիսնան, հողի իրեն մարդ չմնայ՝ ըմէն կը փչացուցեն, օձերով կը լցեն։ Աղամայ տարուընէ բաց (հետէ) Արեդական իտև կը պտտեն․ Արեգակ կը քէլի (տոյլէ), ինոնք կը քէլեն, չեն կանա հասնե․ իրկուընէր կը հասնեն մեր աշխար, կը տիսնան որ արև մտէ, մեռլի արեն ի (վերջնուլույօ) մնացե, մէկ բերան կը փչեն մուժ խաւար արարած կը բռնի․ սար, քար, տուն, տեղ, գեղ, քաղաք ըմէն տեղ կը մտնեն կ'ելնեն, գիտեն թէ Արեգակ տեղ մը պահկուեր ի, չեն գտանե (գտնէր), կը մտնեն գետնի տակ փտրտեն․ ինոնք կը մտնեն չեն մտնե, աղօթրան կը մաղկտայ (տըշլուղու նը ճաճանչէ), արեգակ գետնի տըկէն (տոկէն) կ'էլնի․ գիշերուան չարեր ըմէն իտոնցից կուդայ ետանի գլօխ․ անդա՛ր (անբիւ) հազար են ինոնք, աշխար արարած բռներ են»

Էն մէկէլ աղջկըներ փարի (Փէրիէ կամ փէրիլէ) են . ինոնցից դաս մը կայ որ ըը-նէրաց մէջ կողուանքըներաց (ոնկուշնոց) տակ մութ պուճախներ կը բնակուին . գիշըր-ները քընու դեղ կը թափեն վէր մարդու, մարդու աչքերաց թարթափներ կը խփեն, մարդու ճակատն ու սիրտ սակատը (կուրծք կամ մէջքը) կը մածեն (շաթն), բարի քաղց-րիկ երազ կը տեսնայ մարդ ։ Դասմ՝ էլ կայ, որ ջրերաց մէջ կը հունաւորուին, Լուսնըկին եւ Լուսաստղի շառաւեղք որ տեսնան, կ'ելնեն ինչքանդար Աստծու ստեղծած ծաղիկ ու կանանչ-կայ, կը ջրեն . առաւօտըման էն մեղրահամ զըզըլուն հով քամին (օէփէն) ինոնց նաֆասն (շունչը) է » ։ — Աստծուն մեռնեմ ուր անուան . ինքը մէկ, ուր ստեղծածը՝ հազարը մէկ — ։

— Ութիս էսօր գնացեր ինք Ցակառուց ժամ . Ցամմէր (դօլթուկ) Ախրիկ խօ գի՞տես, ի՞նչ բաներ ասաց, ի՞նչ բաներ ասաց ։ Ուրբաթ օր գնացեր էր Ցէպէլք . (Տէփէլէ՛ նի՛ը-ձին, եղէ էէէ [illegible] կը [illegible] ըն-ցու կամ յանձնամորտ, ուր [illegible] [illegible] կը տեսնեն, իսկ մորթինը կը մնայ անշշուկ) . իմ օղորմած կիսուր տեսեր էր ։ — Վա՜յ, Աստո՛ւած, նշանց (ցոյց) չիտաս — ։ Շատ խ-շունց (չէշոց, հոյհոյանք) կուտէր (կուտար),

տղքըլտի , քահանի հետ շատ քարսիրտ էր · ո՛վ ինոր անուն տայ , կ՚ասի «Օղօրմիս հողին ; չհասնի կողին» : Պատմէր Ասլէկ կ՚ատէր · Հասայ հրեղէն գետ , տեսայ Մազէ կամուրջ կապեր են · էն գլօխ դրախտն էր , էս գլօխ դժոխք · կիսուրդ մնացեր էր բուր բլուրոց սատանի ձեռ · մէկ՝ արճիճէ (կապար) հարէզանով (եղ լաբելա [illegible]) կը զանէր , մէկ՝ պողպատէ շիշեր կրակցուցեր՝ ինոր կող կուշտ կը դաղէր , մէկ՝ թալքաֆնով (ափսան) մսեր կը պռծուցէր · Աստուած ազատի՝ բերնի մէջ խլին որդ էր , խաւ՝ եօթն գլխէն հրեղէն վիշապ բերան բացեր էր որ կուլ տէր · էն գահ ինչ կը Փշէր ([illegible]) բոց կ՚էլնէր էնի կը վառէր · կ՚ուզէր փախնիլ , առջև՝ հրեղէն գետն էր · ոտ կը դնէր մազէ կարմնջի վէրէն , մեղք ծանր էր , մազ կը կտրէր կ՚ինէր գետ : Կրճելատամն («Անդ եղիցի լալ և կրճել ատամանց» խօսքին անձնաւորութիւն [illegible]) ուրագի պէս ատամներ կըրճըտած ինոր միսը կը ծամէր · կուպրի կարասներ պռկապռուկ ([illegible] է) եռման կուպրեր լցած շարեր ին էնտեղ , մեղաւոր հոգիք չում վիզ դրեր մէջ կ՚իփեն : Էն դեհ Բարիդըրկցենց (դրան անուն է) հարս դրախտի մէջ հազար հազար հրէշտակներ ուր կողկուշտ ([illegible]) անմահ֊

հուժնի ջրեր, անմահութնի խնծոր, ծաղ-կըներ, պտուղներ, Աստուծոյ սեղան Աս-տուծոյ բարութնով լի ուր առջև․ հրեշ-տակ մ'էլ ինքն էր դարձե․ իղոր նստած աթոռ, իղոր բնակուած դարպասի քարեր մէկ մէկ արեգակ էն (էին)։

— Հազար երանեկ արդար հուգոյն, հազար երանե՛կ ինոր, որ ուր ձեռնով ուր դրախտ կը շինի —։

Խիստ երկար է տէգէլքներու նկարա-գիրը և սաստիկ հետաքըրքրական․ այն-պիսի պատիժներ կը նկարագրեն չարա-գործաց, որոցմէ կրնանք իմաստասիրել թէ՝ բարբարոս դարերու մէջ բռնաւորաց ՚ի գործ դրածներն են, մնացեալն ալ երևակայութեան ծնունդ։ Իսկ դրախտի նկարագիրը երկրային համեստ վայելչու-թեանց բովանդակութիւնն է, անմահա-ցընելով զայն ամենայն, և հրեշտակաց ու Աստուծոյ ներկայութեամբ վսեմացուցած և երանութեամբ օծած։

Ափսո՜ս, ընդհատեցան Շողերի և Թա-ռիկի խօսքերը․ վասն զի ահա մենք հա-սանք մեր տունը, և անոնք կ'անցնին․ սակայն խօսք կուտամ քեզ, բարեկամ, ուրիշ անգամ լսել տալու այդպիսի խօս-քերը․ երթանք քիչ մը հանգչինք և զբօս-

նունք մեր տունն ու պարտէզը․ ուր կրնաս նորէն հետաքրքրական և հաճոյական լսելիքներ և տեսնելիքներ ունենալ։

## Ը․

Սովորութիւն ունինք գարնան և յամարան պարտիզի հովաստանը կը նստինք․ եկող հիւրերն ալ նոյնպէս պարտէզը կը հրամցունենք ։

—Ի՞նչ է սա իրարանցումը ,

—Հարսները տեսան որ մարդ կուգայ , տունը փախան․ արդէն լաթերով ծածկեալ դէմքերը՝ ափերով ալ կրկին կը գոցեն և այծեամանց նման խոյս կուտան , ճիշտ ինչպէս եղնիկը խուսափի որսորդի տեսութենէն ։ Իրա՞ւ է որ , ահա կը նկատեմ թէ ի՞նչ խոր և խոր տպաւորութիւն կ՚ընէ Ջեր վրայ այս սովորութիւնը․ բայց ամբողջ Վանայ կանանց , հարսանց և հասած աղջկանց համար՝ այդ օրէնք մի է․ և կարելի է ասել թէ բոլոր ասիական հին ազգաց քաղաքաբնակաց սովորոյթ մ՚է ։ Աւելի ազատ են յայսմ մասին գեղջկականք , մանաւանդ քաղաքներէ հեռու եղածները , ուր քիւրդի և հայու ընտանիք թէ՝ հարսունք լինին թէ աղջկունք՝ մարդէ

չեն փախչիր. ոչ ֆէրահլոյի պէս ծածկող սաւաններ ունին, և ոչ վրայի չապիկ ու միմէլ. ուրեմն քաղաքաց կանանց այս վիճակը, քաղաքաց արանց բարոյականին հետևանքն է: Սակայն, եթէ չեմ կրնար յայսմ պաշտպան հանդիսանալ այս սովորութեան, ներեսցի ինձ դիտել թէ, չեմ ալ ուզեր մէկալ ծայրայեղութեան հասած տեսնել կանանց սեռը, որ ըստ ամենայնի հլանի երևին, և իրենց մայրեր ու սկեսուրներն աղախնոյ պէս ծառայեն, հարսն ու աղջիկ կուռքի պէս հոպոպանոց զարդարուն ու բազմին, կամ իրենց ծնողք, եղբարք, էրիկները՝ սպասաւորի մը պէս անոնց ետևէն ընթանան, անոնց հրամանները կատարեն. ինչպէս են կիսաքաղաքակիրթ ազգերը, որ Աստուածային և բնական օրինաց ու կարգաց հակառակ է իսպառ:

Ահա մայրս կուգայ: Արտի թնդումէն կականաբարձ կուլայ. և թևերը բացած կը թռի յիս հասնելու, զիս գրկելու, կրծոց վրայ սրկելու և համբուրելու....: Երթամ ձեռքը պագնեմ: Ետևէն եկողներն ալ եղբարքս են. և այն երամով թռվռացող կանոր ու գլուղները (մանըքէն մանկոքէ) եղբարցս զաւակներն են:

Թո՛ղ։ Ներէ խնձի վայրկեան մը ծնո-ղական և ընտանեկան երանութիւնս վա-յելեմ, բարեկամ։ Ա՛հ, բաւակա՛ն շատ միջոց եղաւ կարօտի և անձկութեան կրակը սիրտս կը լափէ . . . մի քանի պուտ (կօՐէկ) արտասունք ալ իմ աչերէս . . . թող կա-թին . . . որ հովանայ հոգիս . . . ։

Ցո՛ւշ, առ հասարակ պանդուխտները . . Ցո՛ւշ հեռացելոց և միացելոց սրտի վիճա-կը, մորմոքումն ու լացը ։

Աստուած հանէ ամեն օիրտերը արեան կարմիր ծովեն։ Աստուած փրկէ ամեն ան-ձերը կամաւոր գերութենէն, ղուրէթ ղուր-բաՆի կարօտ քաշելէն . . . ։

Ես, թէպէտ ամենուրեք մարդասիրա-բար ու պատուասիրաբար հանգիստ գտած եմ, այլ սակայն չէի կրնար մոռնալ ոչ մեր փողոցի ծառն ու ճիւղ, ոչ ջուրն ու հող, ոչ շոգն (արևան փաղ) ու հով, ոչ ժուռն (ջնաւած մեղք նամ աղոխ) ու խաղող, ոչ տանձն ու խնձոր, ոչ ծիրանն ու սա-լոր, ոչ աղբիւրն ու ջրհոր, ոչ դաշտն, ոչ սար և ոչ ձոր։ Երբ ուտէի հաց ու կեր (Ձերանոսր), կը յիշէի մօրս եփածները. երբ 'ի պարտէզ և 'ի բուրաստան մը հրաւիր-ուէի, կը յափշտակուէի հոս։ Զկրցի երբէք գոհ ընել զիս, և մոռնալ տալ սրտիս ու մտքիս այս հողաշէն անշուք խրճիթը, որ

իմ հայրենական տունն է, յորում ես առաջին անգամ աչերս բացած և արև տեսած եմ։ Զկրցի մոռնալ տալ այս չուքերը, որոց ներքև իմ օրօրոցս օրօրուեր և իմ ծնօղ մօրս սրտաբուղխ ձայնով խաղեր և դարդարներ եմ լսեր. մոռնալ այս ճղերը, որոց վրայ ելլելով ձեռօքս միրգեր եմ քաղեր և կերեր. մոռնալ՝ այս դալարաւէտ և ծաղկաբոլոր վայրը, ուր ծնողացս, եղբարցս, և հիւրերու ու ընկերաց հետ նստած հաց կերեր, ծաղիկ փնջեր, մանկական խաղեր և զուարճութիւններ անցուցած ենք։

Ո՛ մանկական երանաւէտ օրեր և ժամեր. այսօր Ձեզ կը հանդիպիմ վերստին, և շատ դիւրութեամբ մէկէն կը մոռնամ տեսածս սքանչելի շէնքեր, պալատները, պարտէզներ, ջրեր, ճոխութիւնք և վայելչութիւնք պայծառ և մեծամեծ քաղաքաց, որք իրենց ամեն պերճութեամբ և չքեղութեամբ չկրցան մոռցնել տալ զձեզ ինձ. այլ յաւէտ առ ձեզ կը գտնուիմ յափշտակեալ։

Եղան՝ Թերևս ծնողքէս աւելի խնամածուք ինձ, եղան եղբայրներէս ու մանկական ընկերներէս առաւել սիրողք և մտերիմք ինձ. այլ չեղաւ հնար որ միևնոյն յարգանք ու համակրանք դրաւէին, ինչ-

աչքս այս պառաւ մայրս, այս հասարակ մարդ երեւցած ընկերքս և եղբարքս։

Քանի՛ բուռն է բուռն վայրն ու տուն, բուն հայրենիք մարդուն։

Աստուած դարձնէ ամեն ղուրէն ղուրբէթն իւր տեղն ու տուն։

Այս տեղը, սիրելի բարեկամ, ուր նստեցանք մենք, աչերդ վեր առ, տես ի՜նչպէս մրգաւէտ ծառոց ճղերը իրարու պլօլուած հով գործած են մեր վրայ. աչերդ շուրջ ած, բոլոր բոլոր վարդի թփեր են, և ահա որը բացուած, որը կոկոն, քաֆուր վարդ, սիւտակ վարդ, դեղին վարդ, կարմիր վարդ, բոզ վարդ՝ որոյ թերթի մէկ երեսը կանանչ է, մէկ երեսն՝ բոցագոյն կարմիր. տես լէլաղ ծաղկի ծառերը վարդենեաց շրջապատն, իսկ ստորոտները կարմիր կակաչ, դեղին կակաչ, մանուշակ, սուսամբար, բարդխաբան, զումբուլ, նօնօֆար. այս ծաղիկները որ իւրաքանչիւր ամսոյն կարգ 'ի կարգ կը ծաղկին, իրենց տեսքով ու հոտով դրախտի մանրանկարը կը կազմեն։ Բարակ առուով մը ջուրը պտոյտ կ'ընէ այդ փոքրիկ դրախտին շուրջը, և կ'անցնի ոռոգելու քովի ածուները, ուր ցանուած են ռէհան, նանա, ալըրխուն, նարգիզ, համեմ, սև

սունիչ, բադրաքո, գինձ, կարօս, բողկ, սոխ, սպանախ, բադուկ, շողգամ, դը-դում, վարունկ, սխտոր, կանճրակ, գլուլ, բադլայ, տապղին, եւն ։

Իսկ առուի եզերքները խոտերու մէջ կը բուսնին ուտելու բանջարներէն՝ կոտեմ, ճակտիկ, պառվու մէզար, սիւեղ, աղջը-կուտակ, դառուղմակ, մատուկ, աւե-լուկ, փշփշուկ, ճնճղկու պռոշար, թրինձ, թանի բանջար, ճարճրտուկ, եղինձ, եւն ։

Այս կարգով ու ճաշակով յօրինուած են մեր այգեստանեաց ամէն այգիները ։ Վերը նայէ, խնձորենին, տանձենին, սա-լորենին, ծիրանին, կեռասը, շարտառուկն (ջեղձ) իրենց ճղերով կանանչ երկինք մ'են կազմեր մեր վրայ․ և այս կամարէն կա-խուած են պտուղներ գոյնզգոյն, ո՛ր ժուռ, ո՛ր հասուն ։ Շրջապատող անու-շաբոյր հոտերէն չե՞ս զմայլիր ։ Հո՛ս, այս տեղ կը դնեն մեր մայրերը իրենց ման-կանց օրօրոցները, և ծառերու ծաղկած օրերը՝ ծաղիկներով կը ծածկուի մանկան օրօրանը, հոտաւէտ խոտերու և ծաղկանց հոտով կը շաղախուի մանկան ծծած օդն, երբեմն կ'արձակէ մայրիկն տղեկի պինդերը (տղան օրօրոցէ մէջ կապելու կապն), և կը դնէ իր ծաղիկը այս ծաղկանց ծոցը, որ գլոր-ուելով թաւալելով ծաղկանց թերթերը

կը ճռփէ, ուր փմփուս կատուն ձագ մ'ալ իրեն նման փափուկ մանկիկին թաթիկներուն հետ խաղ կ'ընէ, մէկ կողմէն ալ ճնճղուկները աչքի տակով կը դաւէ։

Այգեստանեայց այգիներու ձեւը միապէս են. ինչպէս կը տեսնաս, չորս կողմը ուղղանկիւն պատ մը կը գործեն. պատերէն մէկ կանգուն հեռաւորութեամբ ջրի առուն է. առուներու երկու չրթները բարդի ծառեր են. պարտիզին մէջտեղը՝ ծառոց հովերէն հեռու՝ խաղողի այգին է՝ թումբ թումբ բարձրացած. որուն «Ափներ» կ'ըսեն, որոց վրայ է որթատունկն. և խաղողները կը պառկին արեւուն հանդէպ ու կը ջեռնուն ափներու հողերուն վրայ. ափները կը փորեն ամեն գարնան. թումբերու միջոցները փոս առուներ կը մնան, որոց մէջ ջուր կը կապեն որթերու արմատը ջրելու համար. այդէկութին՝ այս փոսերու մէջ կը կայնին խաղողներ կը կթեն, որ ողկոյզները չտրորուին։

Նորատունկները՝ այգիներու մէջտեղը աշտարակաձեւ շէնք մը ունին եռայարկ, հնձան է այն. որոյ բարձր տանիքէն կ'երեւայ այգիին չորս կողմը. խաղողի հասած ամիսը Նորատունկներու մէջ մեծ ուրախութիւն կ'ընեն երիտասարդները,

հրացաններով կը հալածուին այդ աշտարակները, և գիշերուան գողերէ կը պահպանեն այգին՝ հնձանի տանիքն ելլելով ։ Լուսնակի լուսոյն՝ պատուական տարեխձուկը, սունկով ջրլբուր, և մեր խորովածը չամչի արաղով և տարի մը առաջ այգիի մէջ տուճիկով թաղած կարմիր գինիով կը ճաշակեն, խաղ ու տաղ կը կանչեն, հրացան կ՚արձակեն ։

—Բերէք, հողմունք, այդ կրակի ծուխն ու հոտ, այդ աղաղակի ձայնն ու դղորդը, հասուցէք ինձ մօտ — ։

Խաղողի ափներէն հեռու մինչև պատերուն քովի առուն չորս դեհէն ածուներ կան. զորս փորելով ամեն գարնան՝ զանազան հունդեր կը սերմանեն և այն ածուներու ցած թումբերուն եզերքը կարգ 'ի կարգ տնկուած են ծառեր սերկևիլի, քաղցրակողին և դառնակողին ծիրանի, դամոնի, շարտաղուկի, ամառնուկ և ձմեռնուկ խնձորի, կէսիկ և թթու ալուչայի, պնտուկի, ընկուզի, կեռասի, բալի (ֆիշնէ), տանձի ։ Տանձի տեսակները և անունները տարբեր են. զոր օրինակ, վաղահաս (Բեզդէյէն) տանձ, մեղրուկ տանձ, ճենճուկ տանձ, դըդդըղեկ տանձ, պռկօչ տանձ, մարտիրոս տանձ, չալաբիկ տանձ, մոկաց տանձ, մալաչիկ տանձ, մէրնիկ տանձ,

նունեկ տանձ, մալաղի տանձ։ Մալաղին՝ պատիւ ունի անուանիլ տանձից արքայ, թէ՛ իր համեղութեամբ և թէ մեծութեամբ։

Այս մրգերը, մանաւանդ տանձն ու խնձորն, սկսեալ մայիս ամսէն մինչև հոկտեմբեր իւրաքանչիւր տեսակներն զատ զատ ամսոց մէջ կը հասուննան. աշնան հասածները «ձմեռնուկ» կ'ըսուին, զորս կախուան (ասգը) կ'ընեն սենեակներուն մէջը կը կախեն, և մինչև նորն հասնի, դեռ հինէն կը ճաշակեն։ Ամռնուկներէն ալ տապակ տապակ, շերտ շերտ կը կտըրտեն, կ'իստակեն, «չիր» կ'ընեն, կը չորցընեն կ'ուտեն. ինչպէս նաև ծիրանն ու ալուչան կը չորցնեն, կուօվայ (քէօփէլ) կ'ընեն, և կերակուրի մէջ գործ կ'ածեն. ծիրանի չիրէն «մուժբանայ» կ'ընեն, մարդու կերպ, թռչնոց կերպ, և այլ զանազան ձևերով կը շարեն։ Քաղցր կողինձները ասեղով ու դերձանով շարելով հագնելու զրահ կը շինեն, տուրիկ (ճանճուր) կը յօրինեն, ևն։ Ամռնուկ տանձի և խնձորի բռուածք (Ռօսօշէ) կը դնեն, որ շատ համեղ կըլլինի. նոյնպէս խաղողի, սեխի բռուածքներ ունինք, որոց հետ ռէհան և այլ հոտաւէտ բանջարներ դնելով, և կամ քիչ

մը մեղր, կամ աշնան օրերը քաղցր գինի (շէրպէթ) լեցնելով մէջը, աղանց համին ու հոտին մարդ մշտակարօտ կը մնայ։

—Օ՛հ, բերանս ջրալիր կը չըփչըփայ... ուտողաց կմուռքն (քիմքը) ակուկի—։

Խնձորեննեաց ազնիւ տեսակներէն՝ Արտամետու խնձորն անուանի է, կեղեւը շատ նուրբ, միսը փափուկ, խատուտիկ կարմրով և անոյշ հոտով։ Զմեռնուկները «Խլաթ խնձոր» ըսուած, որ քանի մը տեսակի կը բաժնուի, և որ նոյնպէս կարմրախայտ ու հոտաւէտ է. իսկ «Դալալլիկ խնձոր» կրնայ պարծիլ իբրև թագուհի բոլոր մրգեղինաց, որ իր վրայ կը կրէ ամեն ազնուական յատկութիւնը. մեծ, կարմիր, նրբակեղև, անուշահոտ և սաստիկ ախորժահամ. ասոր ծառին վրայ կ՚ելլեն լուսնակ գիշերները աղջիկներ ու հարսներն, դեռ աղէկ չհասած ժամանակ. և կարօսի (մաղդանոզի) տերևիկները կը փակցունեն. երբ հետզհետէ հասուննայ, կարմիր կը գունաւորի, այնուհետև կարօսի տերևները կը փրցունեն վրայէն, և անոնց փակած տեղեր՝ ըստ գեղեցիկ ձևոց տերևոց կը մնան ճերմակ, այնինչ բոլոր մարմինը արեան գոյն կարմրած է։ Սովորաբար, երբ բարեկամ մը կամ սիրելի մը պատուեն,

և յարգի ու հրաւէրի համար խնդրակ ղրկեն, կամ աչքի լուսի երթան, հատ մը այս խնձորէն իրենց ծոցէն կը մատուցանեն. երբեմն նաև գինւոյ պօզիկի (հօշէ նէ՞բըլ) թերանը կը դնեն, և ընդհանրապէս սե-ղանի զարդ և գինւոյ մօզէ է աս։

## Թ.

—Մարէ (մայրիկ), ինչ որ պատմեցի մեր բարեկամին, գտնուածներէն հասածներէն բերել տուր. քիչ մ՚ալ հաց ու կեր, ինչ որ ունիս. պօզիկ մը Շաղքաղու գինի, Ջի-րաչէնու (գեղ է) նոր կուռիկով (հօղէ նոր գաւաթով) պիտի խմենք։

—Չարսներ կը պատրաստեն, տղէկներ հանգօ (ահա) առին էկան;

—Ախորժակդ բաց՝ ընկեր. ի՞նչ բերա-նաբաց յափշտակուեր ես։ Մեր Շաղքա-ղու գինին՝ Շամքանիոյ գինին է Վանոյ համար. և ըստ մեզ՝ գերազանց ևս է. նայէ ասոր գոյնը, Քրիստոսի անարատ արիւն, բաժակի մէջ լեցուած ատենը ջինջ փրփուրը, անմահական հոտը. իսկ խմանդ-ժամանակ՝ հարկ չկայ ձեռքովդ 'ի բերան տանելու. նա իր հրապուրիչ գունով, հո-

տով, ու մզմզուն ձայնով կոկորդը կը դիւթէ, յինքն կը ձգէ ։

Յուռմայ մի (լօշի մէջ փաթթած խոր-տիկ) սա կարմիր աղով պանիրէն, մաճառ (չէրօղ) ճուկէն, պաղ միսէն (ռէօյէ-շ)․ խո-րովածէն, մանդկով ժաժիկէն բըռնէ (հը-րամմէ)․ տես ի՞նչքան կը հրճուի ախորժակդ․ վանցիք՝ ասոնք կ՚անուանեն «Գինւոյ ֆէ-շանդ» ։ Ահա սեղանի շուրջը շարուած են կանանչեղէնները, որ այս՝ և մէկալ կերակրոց հետ կ՚ուտենք ։

— Մարէ, մեզի գինի կը լցես, դու խմի (երբէք) չես խմեր․ հատ մ՚առ խմէ, մեզի օրհնէ ։

— Դուք խմէք, մեռնեմ ձե․ խուրի (հէ-րէ) առջև ամօթ ի կնիկ զաւակ ուտի խմի ։

— Նա օտար չէ․ Հայ է, և իմ սիրելի ընկերն է․ քո զաւակի տեղն է, մի՛ ա-մըչնար ։

— Աղէն էն ո՞ւստ ի (ուստի՞ է) ։

— Ստամբօլցի է ։

— Ես գիտեմ որ Հայերէն չգիտեն ։

— Ծիծա՛ղ — ։ Ի՞նչի կը ծծղաք․ «փան, ընդո՞ր, ըըալ, չըըալ, հօս, հօն, խոշոր, կօր, սանկ, նանկ»․ ես ի՞նչ գիտնամ՝ հազար ռանգ տուիք ասիք ։

— Օրհնէ , օրհնէ մեզի՛ · գինին ձեռքդ ա՛ռ , օրհնէ մեզի ։

— Ձե ողջութեան · Աստուած ձեր արև պահէ · Նամարդի կարօտ չըլնէք , երկէն արև , սիպտակ իրես ըլնէք , չար աչքից , չար սատանից , չար մարդու չառից պարդ-իրես մնաք · Երկնաւոր Թագաւոր Աստուած ուր եօթն աթոռով ձե օրհնի , ձեր չարկամն կուրնայ , ձեր ոտ քարին չդէպնի · Աւագ Սրբ Նշան ձեր չարն՝ քարին դառձուցի · ի՞նչ բանի ձեռ թալէք՝ կանանչի · ձեր մէկ օր հազար անի , հոգուց մարմնուց չհանի · վատ օր չտեսնաք · էն Խաթուն Տիրամէրն իմ կանչէ՝ ուր զօրքով ձե յօգ հասնի · Աստուան ձեր կանանչ արև բաշխի · · · ։

Երկար օրհնութիւններ կը կարդան մեր մայրերը ամեն առթի մէջ իրենց զաւակաց և հիւրերուն կամ բարեկամաց տեսութեան ։ Բայց այս անգամ կարճը կապեց · աչքերը երեսիս յառեր , տեսանք ուրիշ ի՞նչ ունի ըսելիք ։

— Էստ եօթն օր էր որ աջ ականջս կը կանչէր · ես գիտէի որ բարի բան մը պիտի լսէի ։ Քիթ բերանս կը քորուէր · գիտէի որ սիրելիս պիտի համբուրէի ։ Աչքերս կը շրտէր (անթարթ յառեր) , պիտի բարի խուր մը դէր ։ Ըրմէն տռտռտուն կատուն

ուր թաթիկով իրեն կը լուար , տօտիկ կը տնկէր․ ճամխից մարդ պիտի գէր ։ Գինի չցինք խմելու՝ վերէն աչք (պաղպաջակ) կը կապէր․ երբ քո անուն տ'ինք՝ հետ հետուն (իսկոյն) կը փթխէր (կ'անցնէր)․ հաց ուտ'ինք կը շարուէր , չուռ (մինչև) քե չը յիշինք՝ կուլ չէր երթար․ տղէկներաց ըմէնի աչքն էլ կը խաղէր , սիրելի հեռաւոր պիտի տխն'ին ։ Պատիկներաց ափին մէջը կը քորուէր․ քե համար կ'աս'ին պիտի գայ փարայ տայ մե ։ Ոտաց տակ կը քորուէր , քե կ'աչկ'ին (կ'ակնկալէին) որ գաս տեղ տանես պտըտցուցես ։ Խաբրաբեր ծիծռնակ կը մտնէր տանտուն . (Ներքին տուն) կ'ելնէր ։ Անծեղ՝ յըմէն իրիկուն կուգար երդիսի վերէն կր կրկչէր ։ Էս տարի ճոչ պահոց միջնոցին (միջինքին) կանափատով հաց փուռնիկ բաժնիցինք , բաղդն ու ըլսմաթն քո բաժնի մէջն էլաւ ։ Ջորս օր դիր մը երալի մէջ կը տխն'ինք ․․․ ։

Աստուծուն մեռնեմ, որ մե չիթող հասրաթով — ։

Ի՞նչ կ'ըսես , բարեկամ, այս լածներուդ ։ Անշուշտ ամեն երկրի բնակիչք և ամեն ազգերը իրենց մէջն ունին այսպիսի գուշակական հնարածին նախապաշարումները , որոցմով իրենց սրտի իղձեր և կա-

թօռները կը պատրեն կը հանդարտեն ժուկ մը ։

Բաւական բաները մինչև ցայժմ լսեցիր․ կ՚ուզեմ քիչ մ՚ալ նոյն տեսակ գուշակական, կամ ինչպէս կըսեն գիտնականք, աւելորդապաշտական խօսքերը և արարքները պատմել քեզ, յորոց գուցէ իմաստասիրողները ազգի հնութեան և նախնի պաշտամանց հետքեր նշմարեն, զորս ժողովրդեան ռամիկ մասը անգիտաբար կը պահպանէ, և զորս դարուս լուսաւորութիւնը անհետացնելու վրայ է ։

Երբ լուսինը միօրեայ կամ երկօրեայ է, «Նոր» կ՚անուանեն զայն․ և առաջին անգամ տեսած ատենը՝ անոր նայելով իրենց երեսը կը խաչակնքեն․ միևնոյն վայրկենին ի՛նչ մարդու երեսը որ նային, այսպէս կ՚ըսեն «Տեսնանք բարեա՞ց պիտի հանդիպիմ թէ չարի, վասն զի լուսինը տեսած ժամանակ՝ առաջին անգամ քու երեսը նայեցայ» ։

Ինչպէս լսեցիր, անծեղը երբ գայ կրկչայ, նոր խաբար կը լսեն, կամ ղարիբներէն գիր կուդայ․ ընդհակառակն՝ երբ բուի ձայնը առնուն, կամ սև ագռաւները գան տան մէջ կռկռան, վատ համբաւ լսելոյ նշան է ։

Երազի եթէ պայծառազգեաց կորիճ ձիաւոր և սպառազէն քիւրդ կամ տաճիկ տեսնան, սուրբը տեսած կը լինին․ իսկ եթէ սևազգեաց տէրտէր կամ կրօնաւոր մը տեսնան, սատանայ է։

Ինչ և իցէ գործ մը սկսելուն, կամ ճանապարհ գնալուն, կամ խորհուրդ մը ընելուն՝ եթէ մէկը զոյգ փռնգտայ, խիստ յաջող է, զոր «ջախտ» կ'անուանեն․ իսկ եթէ մէկ՝ կամ երեք, կամ աւելի՝ բայց անզոյգ փռնգտայ, «սաքր» կ'անուանեն, եւ կը կենան այն գործն սկսելէ։ Նոյնպէս երբ տեղ մը երթալու համար ոտքի ելլեն և թափառս առնուն (կյնան) իրենք, կամ եթէ ձիով են՝ ձին թափառս առնու, անյաջողութեան նշան կը համարին, եւ կը կենան։

Ձիով տեղ մը գնացողները խիստ յաջողակ կը սեպեն իրենց, եթէ ձին աշխոյժ և զուարթ վիճակի մէջ լինի, խրխնջայ․ և ասոր հակառակ՝ եթէ տխուր ու անձայն մնայ ձին, կամ ինչպէս կը նշմարեն եղեր շատ անգամ ալ կ'արտասուէ ձին, մեծ վտանգ գայ գալիք։

Աքլոր եթէ իր ժամանակէն դուրս խօսի, կամ հաւն եթէ աքլորի պէս խօսի, իսկոյն կը մորթեն․ վասն զի չարեաց գուշակ է։

Եթէ ուզեն մէկը իր գնացած ճանապարհէն ետ չդառնայ, անոր մեկնած ժամանակ՝ աման մը կը կոտրեն ետեւէն, եւ կ՚ըսեն «Կրունկդ ըստէս (ասդին)». կամ թէ «Երթալդ լինի, գալդ չլինի»։

Իսկ եթէ դարձին փափագին, ջուր կը թափեն ետեւէն։

Տարուան մէջ օր մը յանուն «Թալալոսի» կիրակի կը պահեն զաւկի տէր մայրերը, որպէս զի իրենց մանուկները չը թալկանան։

Նոյնպէս օր մը կիրակի կը պահեն, որ մկները ջարդուին. եւ այն օրը կ՚անուանեն «Մկան կիրակի»։

Սիրոյ կամ չարոց թուղթ (դիւթ) ընել տալու համար սեւ հաւ մը տանելու է դիւթին, որ մորթէ եւ անոր արիւնով գրէ. սեւ հաւու արիւն ջըլէ՛ըմ է. (միսն ալ դիւթի փորին ջըլէ՛ըմ է)։

Սրբոց համար ալ մատաղցու սեւ խոյ մը կամ մաքի կամ կով մը տանել աւելի հաճոյական է։

Պարսկահայոց սահմանագլուխը Վասպուրականի գաւառը Բաշգալէին մերձ է Ս. Բարդուղիմէոսի վանքը. հոն մշտնջենապէս կը գտնուի զոյգ մը ճերմակ գոմէշ արու եւ էգ. որքան ծնին՝ որքան մեռնին, միշտ երկու հատ կը մնան. երբ մէկը

քանի մը տարի տենդով տանջուի , այն գոմէշներէն մազ մը բերեն իրեն , վրան պահելու լինի , մէկէն կ'առողջանայ ։

Հայոցձորի գաւառը Անգղ անունով գեղ մը կայ և անոր կից՝ Ս. Աստուածածնի վանք. առոր տաճարի ձախակողմը պատուհան մը կայ , որոյ մէջ դրուած խաչքարէ մը ձէթ կը բղխէր , և աչքացաւի դեղ էր . բայց հիմայ ա՛լ չբղխիր եղեր ,

Տեառնընդառաջի իրիկուն ամեն եկեղեցեաց բակերը փայտակոյտ մը կը վառէին , և նոյն տարուան մէջ եղած նոր փեսաները կրակին չուրջը կը կայնեցնէին . այժմ միայն մոմ կը վառեն քաղաքաց եկեղեցիները . իսկ գեղերը նոյն են . բայց ամեն մարդ իր տունը տանիքի վրայ փայտակոյտ մը կը վառէ , և կերակրոց ու ըմպելեաց բարութեամբ զարդարեալ սեղան մը կը պատրաստէ . ամեն մարդու ձեռքը մոմ մը պիտի լինի . երիտասարդները կրակի վրայէն կը թռնին , հարսն ու փեսայն բոցերու չուրջը ձեռք ձեռքի տալով 'ի պար կ'ածեն . այն օրուան համար յատուկ շինուած աղանձ (բոված ցորեան) , կանափատ , չամիչ , և զանազան քաղցրեղէնք ու մրգեղէնք կ'ուտեն . ամէնքը իրենց ճագուտէն դրօշ մը կ'այրեն այն իրիկուան

կրակով, որպէս զի կախարդութիւն չներգործէ իրենց վրայ․ կրակի մոխիրէն կը պահեն տուներու մէջ, որ այնպէս ցաւոց և փորձանաց դեղ է․ ածուներուն, արտերուն, և այգիներուն վրայ կը սփռեն, որպէս զի թրթուրէ և այլ վնասակար որդերէ և ճճիներէ ապահովին։ Եթէ փայտակոյտի բոցն ու ծուխը դէպ 'ի աղօթրան ծառանայ, շատ բարի տարի է․ իսկ գիւղացւոց համար՝ եթէ ծուխն արտորէից կողմը դառնայ, բարեբեր է․ եթէ հակառակ կողմերը, ձախորդ է։ Նոյն իրիկուան վառած ճրագ կամ մոմերը եթէ չսպառած մարին, անբաղդութեան նշան է, ևն, ևն։ Այսպէս մեծ հանդիսիւ կը կատարեն Տեառնընդառաջի ճրագալոյցը, զոր կ'անուանեն «Տէնդառէջ»։ Հայաստանի համար ընդհանուր է այս տօնի վսեմութիւնը․ Կաղանդին կամ տարեգլխոյն այնքան հանդիսաւոր չէ, որքան այսօր․ մեծամեծ խնջոյքներ և ուրախութիւններ կը կատարեն, տաղերով, երգերով, պարերով, ուտելիքով և ըմպելիքով կը զուարճանան։

Առաջաւորաց պահոց, որ Ս· Սարգսի պահքալ կ'անուանեն, կենայք և աղջկունք իւրաքանչիւր խորհուրդի մը կամ նպա-

տակի մը համար ծոմ կը պահեն . ոմն օր ըստ օրէ կը ճաշակէ , ոմն երկու օր մի-անգամ . ոմանք ևս հինգ օր ամբողջ անսուաղ կ'անցունեն աղօթքով և ծնրադրութեամբ . տան մեծ մամիկը՝ որ իւրաքանչիւրի խորհրդոց կը թափանցէ և պահողներուն կը հսկէ , և ըստ սովորութեան պաշտօն ունի վերջին երեկոյ ուրբաթէն 'ի շաբաթ լուսնալու գիշերը քաղցրով փոխինդ շաղախել ու դնել տան բարձր պատուհան մը . եթէ դոհ եղեր է անոնց սրտի խորհուրդէն և պահեցողութենէն , գիշերը գաղտնի պայտ մը կը դրոշմէ փոխինդին վրայ . առաւօտ կը տեսնան զայն և կը համարին թէ իրենց պահք ընդունելի

րհուրդը կը կատարէ Աստուած , վասն զի Ս. Սարգիս աներևութապէս գիշերն եկեր ձիով կոխեր փոխինդին վրայ և անցեր է . եթէ այս նշան չկայ , ուրեմն ընդունելի չէ եղեր ։ Յայտնի է թէ աղջիկները ի՛նչ խորհուրդ կ'ունենան իրենց սրտի մէջ , իրենց սիրածը . և կանայք՝ զաւակ մը ունենալ , կամ իրենց ղարիբին դարձը ։

Մանուկ մը յուշ լեզու ելլէ , կամ անձ մը որ պապանձի՝ , անդրանիկ ծնած մէկի մը ճկոյթ կը խոթեն բերանը ու կը բացուի ։

Օձի շապիկը վրան կրողը՝ օձահար չը լինիր ։

Դժնիկ չար փուշը որի տան դըրան վրայ զարնուած լինի, չար (ոգի) այն տունը չը մտներ ։

Մանկանց և հասակաւորաց գլխարկին կամ սրտին ու թևին վրայի հանդերձին եթէ պողպատի մը կտոր կապուած կամ պահուած լինի, չարը չմօտենար անոր ։ Այն զօրութիւնն ունի՝ աչքից ուլնիկն, և Նուսխայի թուղթն ։

Չար աչքէ շատ կը վախնան, և զարհուրելի բաներ կը պատմեն․ ինչ որ Խորենացին գրած է Երուանդ Բ․ Արշակունւոյն վրայօք, կատարելապէս կ'ընդունին այսօր Հայաստանցիք․ բայց աչքէն աւելի սրտի չարութեան արդիւնք կը համարին․ զոր օրինակ․ եթէ չար աչք մէկը՝ զոյգ մը ընտիր գոմէշ՝ տեսնայ, ու ըսէ « օ՜ ինչ աղէկ են », իսկոյն կը պատռին անոնք ։ Եթէ ձիու նայի, ձիերը կ'իյնան կը սատկին․ եթէ գեղեցիկ տան մը՝ պիտի փլչի այն տուն․ եթէ մէկի մը յաջողութեան՝ պիտի ձախորդի անոր գործը․ մարդոցմէ շատերը կը հիւանդանան, շատերը կը մեռնին․ քար անգամ կը հալի․ կանանչ ծառեր և արտեր կը գօսանան, եւն ։ Ընդ-

հանրապէս խիստ կապոյտ և կանանչ աչք ունեցողներ չար աչք կը լինին • զորս կ'անուանեն «Զալաղապտուղ» ։

Տազ գլուխ (քաչըլ), անմազերես (քօսայ), միականի, շլակն, կաղ մարդիկ՝ չարեաց մասն ունեցող և վտանգաւոր անձինք կը համարին ընկերութեան • և եթէ պատահին այնպիսեաց, ձախորդ է իրենց գործը • զանազան վնասուց և հնարից վէպերը շինած կը պատմեն, որ այսպիսիներէ պատահած եղեր են ։

Եթէ մէկը վտանգէ մը ազատի, կ'ըսեն «Ձկան խաչ կար գլուխը» • ձկան խաչ ըսածնին՝ ձկան գլխու մէջ ոսկոր մը կայ խաչաձև, այն է ։

Իրէքնուկ խոտ, որ երեք տերև ունի և որ յաճախ ամեն տեղ կը գտնուի, մուրիկ մուրիկ կը փնտռեն անոնց մէջէն բոյս մը, որ չորս տերև ունենայ խաչաձև • և առ այնուհետև ազատ կը լինին զայն իրենց վրայ պահողներն ամեն չարէ և կախարդանքէ ։

Եթէ խիստ կարկուտ տեղայ, որ վնաս կը բերէ արտորէից, այգեաց և ծառոց, խաչերկաթը կը ձգեն երկնքի առջև, կարկուտը կը կտրի,

Եթէ երաշտ լինի, անձրև չգայ, փայտի մը վրայ լաթեր կը փաթթէին և մարդակերպ ձև մը կուտային անոր, զոր «Խուրձկուլուլու» կ'ըսեն. փողոցները և տուները կը շրջեցունէին, վրան ջուրեր կը թափէին, զայն ջուրերու մէջ կը թաթախէին և խիստ անարգանք ու չարչարանք կուտային անոր. կարծես Հնդկաստանի չաստուածն լինէր. և երկինք կապելուն համար, այսպէս վարուէին հետը։

Կան նաև տեղեաց տեղեաց բնակիչք, որք հրացաններ կ'արձակեն երբ արև կամ լուսին «բռնուի» խաւարի. և այս հրաձակներով ու դղրդոցներով կ'փախցունեն մեր լուսոյ դէմը բռնողներն. ոմանք ևս ջերմեռանդ և ողբաւոր ձայնիւ Տէր ողորմեա կըսեն, պղնձէ ամաններ և ծնծղաներ հնչեցնելով։ Աստուած կը կանչեն, որպէս զի խաւարման չար հետևանքներէն, զոր կը գուշակեն, ազատէ զիրենք։

Այս սովորութիւնը, ինչպէս նաև մէկալ բաներն ալ միայն Վանայ մէջ չեն, այլ շատ գաւառներու մէջ կը տեսնուին. մինչև 'ի Թիֆլիզ ևս ասկէ 12 տարի յառաջ տեսանք, որ այծու կամ խոզի մը գլուխ անցուցած փայտի վրայ, և լաթերով, ճիւղերով, փաթթած ցեխոտած թաղէ ցթաղ կը շրջեցնէին, և վրան ջուր կը

լեցնէին ։ Թէ այս և թէ քանի մը աւելոր-դապաշտական ու դիւթական բաներու մասին հատուած մը կարդամ քեզի , մեր խմբագրութեամբ հրատարակուած «Տարօնոյ Արծուիկ» էն 1865 , թիւ 45 թերթէն , քաղելով այն նամակէն՝ զոր Սասնոյ և Տիգրանակերտու գեղերէն Աղձնեաց գաւառէն , (ուր հայերը քրդերէն կը խօսին և քրդաբար կը վարին) , գրած էր Արժ․ Յօհ․ Վ․ Մուրատեանն , արդի վանահայր Մշոյ Ս․ Առաքելոց վանից ։

․ ․ ․ «Հրզու քաղաք կոչուած՝ տասն քահանայ ունին․ յորում 80 տուն հայ կայ ։ Ուընդվան՝ ինն քահանայ․ 60 տուն հայ ։ Ասոնց քահանայք մուրացկանութեամբ կ՚ապրին գեղեր ու քաղաքները շրջելով․ հասարակ կարդալէ անգամ տգէտ են․ բայց շատերը կախարդութիւն կ՚ընեն ։

«Այս կողմերու հայերը մեռելի վրայ սաստիկ ողբ և կոտորում կ՚ընեն․ եթէ անդրանիկ զաւակ է մեռնողն , յուղարկաւորութեան ժամուն ձի մը կը զարդարեն , մեռնողին հագուստը ձիու վրան կը դնեն , անոր սուր , վահան , հրացանն ձիուն վրայ կը կախեն․ մեռնողին կամ ծնողաց Հայ , Քիւրդ և Եզիդի բարեկամներ կը ժողվին կուգան․ երբ գեղին կը մօտին՝ սև ապայով , մաշլաղով մը գլուխ-

ները կ'աքօղեն, և մեծ ձայնով կը բօռան «Ψ'ογιέμι Ξένοι, Ζογιέμι Ξένοι» · սաէպ կրկնելով այս փայերգը ։

«Ցուղարկաւորութեան հանդէսը կ'սկսի ամբողջ գիւղացւոց բազմութեամբ · և դագաղի առջևէն իբր քսան կանայք անուշ ձայներղ, սևեր փաթթած գլխները, քիւրդերէն լեզուաւ ողբեր կը կարդան · քանէն աւելի ալ այր և աղջիկները քաշած գլխները սգաւոր՝ ողբասաց կանանց ետևէն կ'երթան · մէջ ընդ մէջ կ'ընդհատի կանանց ողբոց ձայնը, և սգաւոր մարդիկ միաձայն կ'աղաղակեն «Ψ'ογιέμι Ξένοι, Ζογιέμι Ξένοι» ։

«Թաղումէն մինչև եօթն օր այս հանդիսով կ'երթան գերեզման կուգան ։ Ով որ զննջեցեալ շատ կը սիրէ, շատ կը բռնայ ։ Եւ եթէ բարեկամները թաղման օրը զատ զատ գան, իւրաքանչիւրին զատ զատ կը դիմաւորեն զարդարուած ձիով, գոյժ և ողբ 'ի բերան ։

. . . «Սասնոյ և Մոտգանու քահանայից գործն ալ կախարդութիւն է ըստ մեծի մասին · փոխանակ Աւետարանի՝ մէկ մէկ Ախդարք ունին ծոցերնին · գիւղէ գիւղ կը շրջին հիւանդաց թուղթ ընելու · ոմանք ալ աղջկանց սիրտը՝ զինք սիրող երիտասարդին դարձնելու, կամ երիտա-

սարքին սիրտը՝ զինքն սիրող աղջկան.

«Ապրիլ ամսոյ մէջ անձրև չեկաւ. Ներքին դաշտ. ընդհանուր կարծիք հասարակաց այս էր թէ՝ հարուստները կախարդութեամբ կապած են երկինքը, (որպէսզի իրենց ամբարած ցորենները թանգ թանգ վաճառեն). ուստի որքան ժողովրդական կախարդներ կան կը տանին ամպոց կապանքն արձակելու. որը՝ քարի վրայ բան մը գրելով կը ձգէ ջրին մէջ. որը՝ մեռելի գանգ գերեզմանէն հանելով գետը կը ձգէ. որը՝ իշու գլուխ ջրով կը լուանայ. սև էշ, ճերմակ էշ չմնաց որ չը լուային. և ինչ որ ըրին, անձրև չեկաւ։ Ըլիբընկի գիւղացիք իրենց կանայք կ'ապառաջինեն կ'ուղարկեն Խօշավայ գիւղին վրայ, և այն գիւղի կանայքն ալ սպառազէն ասոնց դէմ կ'ելլեն. երկու կողմէն հրացաններ կը պարպուէին, վերջապէս Ըլիբընկցի կանայք կը յաղթողին ոչխար մը առարել, և կը բերեն զոհել, գլուխը կտրելով մեծ հանդիսով կը տանին ձգեն գետը, որ անձրև գայ։ Տիգրանակերտու մօտն ալ երեք Հրէի գանգ հաներ են գերեզմանէն ջուրը ձգեր են, բայց նորէն անձրև չգար, խորհած էին ողջ քահանայի մը կամ կարդացողի մը գլուխ կտրել ջրոց նուիրել. Աստուած տուաւ որ մայիս 6ին

տուաւ անձրեւ եկաւ, եւ կենդանիք զոհէն ազատեցաւ։

«Այս կողմերը ծառայապաշտութիւն եւ Ջրապաշտութիւնը ընդհանուր է Հայոց, Քրդաց եւ Եզիդեաց մէջ։

—Դիտելու է որ Ցիգրիսի եւ Եփրատայ շուրջ՝ բնակողաց նկատմամբ է այս խօսքը—։

«Քրդասօր գեղը շէխի մը կին կայ, որուն երեսը որ ուռչի կամ ակռան ցաւի, կ՚երթայ այդ խաթունի կօշիկը բերան կ՚առնու, որ բժշկուի։

—Այս կարգի բաներ շատ կան, բայց մենք չենք կրնար պատմել—։

. . . «Քրիստոսի Ս. Ծննդեան եւ Մկրտութեան առաւօտը ամեն կողմէն քիւրդեր կուգան Հայոց քահանաներէն կը հարցնեն. «Աստուած սիրէք, խաչն ի՞նչ ըսաւ. այս տարի ձմեռը խի՞ստ պիտի լինի թէ մեղմ. ամառը լի՞ է թէ նեղ»։ —Եթէ Ս. Մեռոնը Ջրի երեսին ծաւալեր է, տարին բարելի է—։

. . . «Այս կողմերը զանազան օձախներ կան շեխերու անունով. առ որս կը դիմեն զոհերով եւ ընծաներով այր եւ կանայք։

—Փաշարուելու չենք թէ Շեխեր քիւրդ կամ տաճիկ են այսօր. անոնք երկրի հայրերն են, եւ անխտիր խնամք ու պաշտպանութիւն կը վայելեն ասոնցմէ քրիստոնեայն եւ ոչ—քրիստոնեայն. զորս մարդա-

սրտագար կ'ընդունին. և խիստ յանդիմանիչ են բռնաւորաց, անօրինաց։ Հարկ չկայ ըսել թէ՝ մաս մ'ալ կայ ասոնց, որ ընդհակառակն շատ վնասակար են երկրին, ժողովրդոց ու նոյն իսկ կառավարութեանց։ Բարեսէր չեխերու և անոնց օճախին վրայ այնպիսի համարում ունին տեղացիք, և այնպիսի գերբնական գաղափար, որ շատ կը համեմատի Հնդկաց Բրահմաններուն։ Ի՞նչ է Շեխ անուն՝ որ ամեն հին ազգաց մէջ նուիրական է—։

. . . «Ահարօնք գեղէն տղայ մը Հեցին գեղ երթալուն՝ անյայտ եղած էր. ծնողք և ազգականք ամենուրեք խնդրելէն զկնի, կախարդաց դիմեցին. կախարդք յայտնեցին թէ Տղան՝ ջիներ (ոգիք) յափշտակեր տարեր՝ ըրեր են վայրի էրէոց հովիւ։ Որսորդ մ'ալ կը վկայէ թէ՝ էրէ մը տեսայ լեռը, պիտի զարնէի հրացանովս, մարդու պէս կ'երևնար աչքիս. հրացանս վար դրի, էրէ եղաւ. նորէն առի զարնելու, մարդ դարձաւ. հարցուցի՝ Դու ո՞վ ես. ասաց՝ Ես Խաչօն եմ. ու աներևոյթ եղաւ»։

—Արդարև մինակ Արտաւազդ մանուկ չէ՛ր դիւաց յափշտակեալ. այլ մինչև ցայսօր կը հսկեն մանկանց, որ Ջիները չյափշտակեն տանին—։

Նոր պսակուածները դիւթութեամբ կը կապեն, որ տարիներով չկրնան հարսն ու փեսայն մերձաւորուիլ, զոր «կապս» կ'ըսեն. և ատոր համար փակուած կողպէք մը, կամ գոցուած չախու մը, կամ հանգոյց եղած բան մը կը կրեն իրենց վրայ նշանածները. որպէս զի կախարդութիւնը չբռնի իրենց վրայ. և որպէս զի պսակի հաւու հագած ժամանակ՝ «Մի՛ իշխեսցէ 'ի նոսա չար աղանդ դիւաց կամ կախարդաց». վասն զի դէւեր մարդկային ազգի որդէծնութեան թշնամի են, և կ'ուզեն մեր ճետն սպառի։

Այս կապս քակելու իշխանութիւն ունին քահանաները, ուխտատեղիք, և չեխերու օճախները։

Այսպիսի բաները, ինչպէս ըսի, մէկ գաւառի չեն վերաբերիր, այլ գրեթէ ընդհանուրին. բայց իւրաքանչիւր գաւառն իրեն յատուկ ու համբաւաւոր վանք մը, անձ մը, վայր մը և օճախ մը ունի։ Մեզ համար վանքերը, ուխտատեղիք, սուրբերը դիւթականաց կարգին չեն անտարակոյս, այլ ճշմարիտ քրիստոնէութեամբ և Աստուածպաշտութեամբ կը հաւատանք այն հրաշից, որ կը գործուին ցայսօր յանուն Աստուծոյ և սրբոց և սրբեղինաց.

բայց խնդիրը հնախուզական լինելով, և մեր վանքերն ալ 'ի հնումն մեհեանից տեղեր էին ըստ աւանդութեան, ուստի այսպիսի ակնարկներ ընել հարկ կը լինի երբեմն։ Իբրև օրինակ խօսինք Խաթուն Տիրամօր վրայօք։

Վանէն դէպ 'ի հիւսիս իբր ութն ժամու չափ հեռաւորութեամբ, Բզնունեաց ծովուն ափը, բարձրադիտակ դիրք մը ունի այս վանքը. և քանի մը տուն հայ գեղացիք կը բնակին անոր շուրջը. ծովն իր երկայնութեամբ կը տարածի անոր առջևը, և իր եղջերաձև սպառուածքը սոյն դարևանդին տոներուն ներքևն է. ուստի կ'ընդունի իր մէջ Բանդիմահուի գետը, որ է ձկանց առուն. իր առջևը կ'երևի Արճէշ քաղաքը, տակաւին չէն իր պարիսպներով, դռներով, շուկաներով, եկեղեցիով, և մինարայով մը, զոր շրջապատած է ծովուն ջուրը և դարձուցած է կղզի մը, բայց անբնակ։ Արճիշոյ, որ նոյն է Քաջբերունեաց գաւառը իր գեղանի գեղերով, լեռներով, հովիտներով. տանոց քով դիր նաև Սիփան լեռը, աչքիդ առջևն են, որք իրենց շնորհալի և շքեղ շուքը կը ձգեն ծովուն երեսը։ Այս վանքը գերեզման մը ունի իր տաճարին մէջը, և կ'ըսեն թէ Աստուածածնի հագուստ-

ներքէն մաս մը զետեղուած է հոն ։ Այս գերեզմանն է կ'երդնուն «Խաթուն Տիրամօր» անունով. այս անունով օրհնութիւն և անէծք կուտան. և շատ հրաշալի է. հոս կուգան՝ ո՛չ միայն Վանայ բոլոր գաւառաց կողմերէն, այլ և Պարսկաստանի և Երևանի ու Նախիջևանայ գաւառներէն ամեն տարի բազմախիւ ուխտաւորները. Ուրուկներու ժողով մը կայ անպակաս այս տեղ, որ զանազան աշխարհներէ կուգան, և քանի մը տարի կը ծառայեն, կ'աղօթեն. ու գեղացիներէն կը զրկուին այս և այն գաւառները ժողովք ընելու բերելու զիրենք զրկողին. վասն զի գեղացիք բաժին ըրած են իրենց վրայ, մէկը՝ Վան քաղաք և անոր շրջապատի գիւղօրայք. մէկը՝ Բաշգալան. մէկը՝ Պարսկաստան. մէկը՝ Մուշ. մէկը՝ Տիգրանակերտ. մէկը՝ Պայազիտ. միւսը Երևան, մինչև Կարնոյ և Ախլաթայ կողմերը, եւն. ամեն տարի իրենց մարդ կ'երթայ շրջելու, և յանուն Տիրամօր եղած խոստումները թէ մոմ, թէ խունկ, շուշփայ, խաչ, դրամ, կանանց խոստ ըրած արծաթի զարդերը, մատաղցու կենդանիք, մանաւանդ «Տիրամօրնշան» ունեցող կով և եզ, որոց ճակատին վրայ ճերմակ նշան մը կը լինի, կը բերեն, և այդ գեղացիք կը տիրեն. Ուրուկներ հետ-

զնէտէ կ'առողջանան ու կ'երթան, ոմանք ալ նոյն կը մնան, և հոն կը մեռնան։ Այսպիսիք կ'անուանին «Տիրամօր խեղճ»․ և իրենց ախտի անունն է «Տիրամօր եարա»։

Ամեն տարի Ս․ Աստուածածնի վերափոխման տօնին անթիւ բազմութիւն կը հաւաքուին հոս 'ի հեռաւորաց և մերձաւորաց․ ուխտ ու մատաղ ընելու հետ, առատ կեր ու խում կ'ընեն, ինչպէս ամեն վանքերը ուխտ գնացողներ կ'ընեն։ Մերձակայ Քիւրդերը և Եզդիները կը զարդարուին և իրենց ձիերը հեծած, սպառազինած հոն կուգան ձի և ջիրիտ կը խաղան, որոց հետ կը մրցին թէ Ռուսաստանէն ու Պարսկաստանէն եկած և թէ տեղացի կտրիճ ձիաւոր հայեր։ Ասոնց մէջ մշտայաղթ դիւցազն է այս դարու՝ վանքին մօտ եղած Գործոթ գեղի հայ Մէլքոն․ դեռ անոր դէմքն դարձնող և թևն ոլորող մը չգտնուեցաւ։ Երբ այս անձն կ'ելլէ ասպարէզ, ամէնքն ալ ռայայ կուգան իրեն։ Իրօք ալ իր հասակը, իր դէմքն ու իր հագուստը տեսնողը կ'զմայլի։ Այս հանդէսը կատարելու համար Վանայ փաշայէն և առաջնորդէն հրամաններ կը ղրկուին, երբեմն ալ իրենք անձամբ կուգային։ Այս տօնը կ'անուանեն «Ասպարածնի տօն», և գեղն ու վանքը՝ մէկ ա-

նունով «Ասպարածին» կ'անուանեն · այն ինչ զԱստուած՝ Ասպած, և Աստուածածինն՝ Ասպածածին կ'արտասանեն վանցիք, միայն այս տեղին Ասպարածին անունը կուտան, կամ՝ Խաթուն Տիրամէր ։

Արդ այդ դիրքը, այդ արարողութիւնք, այդ անունը արդեօք հնախուզաց համար նոր լոյս մը չը՞նծայեր, թէ քրիստոնէութենէն յառաջ ի՛նչ վայր է եղեր դա ։

Եւ միթէ Մշոյ Ս. Կարապետի վանքը իր Վարդավառի տօնովը Զենովբի գրածին համեմատ Նախնի Դիսանեանց և Վահունեանց տօնը չե՞ն յիշեցներ · ինչպէս նաև հոն մինչև ցայսօր Աշտիշատ ուխտի երթալը նոյն օրը · ուր զոյգ մը սրբազան ոսկերաց գանձ ունինք, Պարթևին Իսահակայ և Շուշանայ՝ իւր թոռին գերեզմանք ։ Այնպէս և Անձևացեաց գաւառի մէջ Հոգւոց վանից Դարբնաքարերուն ականջ դնել, կռանի ձայնը լսելու, և անկէ փոշիներ առնուլ 'ի պահպանութիւն անձանց, և այլն ։

Բաւական երկարեցաւ մեր ճառը · հիմայ մայրս կ'ըսէ «հացի վրայ այդքան չեն խօսիր · հացի հրեշտակ կայնած է, մեղք է» ։

Մարէ, գեղացի մը ինձի պատմեց թէ, «Հացի հրեշտակ կայնել» խօսքը քաղաքցիներն ստեղծեր, որ ծառայողներ շատ չը

հոգնին, կամ հիւրերը քիչ հաց ուտեն։ Օր մը, կ՚ասէր, քաւորանց տունն էի, հացի վրան ըսին․ «Մեռնեմ քե սանախէր, չոր արտ, հացի հրեշտակ կայներ, մեղք է»։ Ես ալ գլօխս բացի․ ասի, «Մեռնեմ հրեշտակին, ինչի՞ կայներ․ թող նստի վէր իմ գլխու գօլօզին, չում ես կշտանամ»։

— Ո՞ւր կը նայիս այն կողմը, բարեկամ։

— Ի՞նչ կ՚ընեն կանայք ժողվեր են այն տեղը։

— Հողը կը մաղեն չորցուննեն, որովհետեւ Հայաստանը նոր ծնած տղայի վրայ աղ ցանելէն զկնի, տղայն խանձարրին, օրօրոցին և ծանրմակին (չուանէ օրօրան) մէջ կապած ժամանակ, անոր տակ միշտ հող կը դնեն, կը պառկեցնեն․ տղու անկողինը մաքուր, տաքուկ պահելու, և տղան առողջ մեծնալու համար։ Նաև ամեն օր տղան լողացուցած ժամանակ, ճիտէն վերցնելով պզտիկ մը կը ցնցեն «Ջղավզիկ» կ՚ըսեն, ջիղերը կազդուրելու համար․ օրօրոցէն հանած ժամանակն ալ, թեւերը խաչձեւ բռնելով փոկուկ մը կը ձգձգեն, երակներն ու բաշուկները արձակուելու համար․ կարգ մը այսպիսի խնամքներ ունին մանկանց սնուցանելուն։

—Մարէ, սա Կորէծի (հայ կախարդի մը անունն է եղեր) պատմութիւնը ըրէ. ես պիտի գրեմ, բարեկամս ալ մտիկ կ'ընէ.

—Կորէծ մեր դրկցենց տընէն էր. գօսկօ (ահռուասիկ) ինոնց տուն. ինոր բայնսեր (վէպեր) շատ են. վի՞ր միտ կուդայ: Կ'ասեն «վեց խազարեկլ» (վեց հազարեակ) ունէր. ռամ կր թալէր, սատղունք կ'իրիշկէր. մարդու սրտէն ինչ որ ընցնէր՝ գիտէր. երկնուց իրեւ, գետնի տակ ինչ որ ըլնէր, գիտէր: Արեգական խաւարումն, ժաժկ, սով, մահ. ո՞վ պիտի մեռնէր, ով պիտի ապրէր. ըմէնու ախտն ու բաղդն, կ'իմնէր: Փաշէք, աղէք, տռանց ինոր չ'ին մնե: Գողութեն ըլնէր, մարդասպանութիւն ըլնէր, մէկէցմէկ կը հանէր: Փակած դռներ կը բանէր. երդսից կը մտնէր տուներ կ'ելնէր: Աստուած փրկի աղատի, մարդու խելք գլխուց կ'առնէր, թուղթ կ'անէր հարսներ կնիկներ մօրէ մերկ կ'ելնէին կը պտտէին: Ով ուզէր՝ վիր տուն՝ կը մտուցէր կը հանէր: Ինք զըմէնք կը տեսնէր, մարդ զինք չէր տեսնէ: Ցորեններ, պտուղներ քար ու հող կը դառցուցէր: Ո'ր երկիր ինչ բան կ'ըլնէր, էն սհաթին՝ էստեղ կը տեսնէր կը պատ-

մէր ։ Խաղնայ կը հանէր · գէմի գաղանի բերան կը կապէր · մարդը կալ կայծն կ՚ա-նէր ։ Մէյ դիր Աճմու աչքակապներ (ձեռ-նածուներ) էկած էին · ինչ որ արեր էին, կորէծն արեր էր · դաւձեր կորէծն էլ բան մ՚էր ասե, թէ Երկնուց Արեգակն ու Լուսնակ, Լուսոյ սարողն ու Քարվան-կորուս սարը (այն մեծ սարըն է որ Էրզրումըն կը ծածկէ և կը յառաջանայ յարևելս, որուն հա-սնելով ընդ այնքան կարօտան կամ ասելուրդ կը խա-ռնուին կործելով իւր Արարատեանն է) ցածր պիտի իջնուցի · չեն աւատացե · աշխար երկիր ժողվեր են Աւանուց չայիր (ծովափնեայ ընդարձակ մարգագետին), մէկէլ տեսեր են որ Արեգակ բոլորակ քանձ սէմի ակն (անիւ) կրակոտ իջեր · Լուսնակ սեղանի պէս կլորիկ, սարղերն էլ մէկ մէկ ջաղցի քարի օրինակ խոնարհեր են · ինչ արե՝ որ պղտիկ-ցուցե իդոնք · թէ չէ՝ վանն ուր սաւոր կը վառին կը կործանին ։ Խաղք արե Ա-ճամները, ետ ի դարձուցե ։

—Տեսա՞ր բարեկամ, մեր սարղագէտ, բնագէտ, հնագէտ, և ճարտար ձեռնա-ծուն աչքակապող կորէծ ինչ հիանալի գերբնական մարդ է դարձեր ժողովրդեան մէջ, մոդ՝ որ ափշեցուցած է զամենքը ։

ինկաւորներն ալ մեր աշխարհի մէջ

նշանաւոր են . բայց 'ի ճշմարիտ լուսնոտաներէն , կամաւոր դաս մը կայ կանանց , «ինկաւոր» ըսուած , որոց թեւերն ու թիկունքը , նաև երեսներ ու ճակատները զանազան նկարներ ունին ասեղներով ծակած և կապոյտ գունաւորած . որոց իւրաքանչիւրը մէկ մէկ սուրբի , կամ վանքի , կամ անուանի հրաշագործ Աւետարանի մը ինկաւորներն են . տունէ տուն կը շրջին, և կանանց համար թիզ կը չափեն , աղօթք կ'ընեն , և կը յորդորեն անոնց ախտերուն կամ ուխտերուն համար իրենց սուրբին դիմել ։ Երբ ուխտաւոր կանայք լցուեր են թագաւոր Աւետարանին առջև , կամ որ և իցէ ուխտատեղ մը , ինկաւորը առաջուց գիտակ եղած է անոնց իւրաքանչիւրի սրտի խորհուրդին , և անոնց ունեցած իրին , կամ վրանները կրած զարդին . ուստի յանկարծ կը փրփրի ու գետինը կ'իյնայ 'ի մեծ զարհուրանս ներկայից . կ'անշնչանայ պահ մը , և խաչը կը դնեն բերան , կը հանդարտի . ապա յափշտակեալ իմն՝ գուշակութիւններ կ'սկսի ընել . «Կատիկ խաթուն , քո սրտի խորհուրդն այս ինչ է , բարի է , իմ աղէն (նոյն սուրբը) քեզնից ('ի քէն) կ'ուզէ ճակտիդ մաղչան (արծաթէ զարդ է) , կամ վզիդ ճտնոց ոսկին , կամ գինդերդ, ևն . որ քո սրտի մուրատը տայ» ։

Երանելի կը դառնայ այն տիկինը, և մեծաւ զուարթամտութեամբ կը հանէ կը ձգէ հոն ուզած բանը ։ Այսպէս իւրաքանչիւրէն ուզած կողոպուտը կամաւորապէս կ'առարէ Թշուառականը․ վերջը Աւետարանի կամ խաչին տիրոջ հետը մէջերնին կը բաժնեն ։

Այսպիսիք են, որ բազում շահս տան տերանց իւրեանց մոլելովն․ իսկ իրենց մարմնոյ վրայ եղած նկարն և միւս ձևերն ու հնարքները աւելի հին և հնդկական կը թուին ։

Երաշտ ժամանակ, կամ երկնային պատուհասի մը պատահած ատենը, սովորութիւն ունին բարեպաշտաբար մատաղներ ընել․ աւելի մեծ և հանդիսաւոր ընելու համար իրենց մատաղը, գեղի կամ թաղի ամբողջ հասարակութիւնը հաղորդ կը լինի հանգանակութեան․ և մատաղներ՝ կով կամ ցուլ՝ միջոց մը աղէկ կը պարարեն․ սահմանեալ օրն որ կը կատարուի ընդարձակ սրահի մը, կամ այգիի մը մէջ, կամ մարգագետնի մը վրայ, մեծ բազմութեամբ իրենց հանդէսը կը կազմեն, և 'ի ժամ զենման՝ երբ քահանայն աղ կ'օրհնէ, մատաղցուի եղջիւրները կը զարդարեն մոմեղինօք և կը լուցանեն․ շատ տեղ ալ շուրջառ մը կը ձգեն կովին կամ ցուլին վրայ,

իրենք ալ ու հասարակ մոմ 'ի ձեռին Թափօր մը կը կատարեն • մատաղի կաշիներն անգամ նուիրական են, զորս կը նուիրեն եկեղեցւոյն կամ վանքի մը ։ Սովորաբար իւրաքանչիւր գեղն, Թաղն, քաղաքն, իրենց յատուկ Սուրբ մը և պաշտպան մը ունին • ինչպէս արհեստաւորքն ալ՝ իրենց ֆէր մը, որոց ամեն տարի օր մը յատկացուցած են մատաղ մատուցանելու • և տաճիկներն ալ կը հաղորդուին Հայոց հաւասար ։

Անհատնում են այս օրինակ բաները • և ես կը տեսնամ ահա թէ խիստ երկար եղաւ մեր խօսակցութիւնը ։

Ես միտք ունէի զքեզ տանիլ պտըտցունել մեր տանտունն, մառանը, օդաներ, երեսբացները, և մուծանել 'ի տուն գինւոյն • որով ծանօթութիւն մը կ'ունենայիր տնական շէնքերու ձևոց և բաժանմանց վրայ ։

Ես միտք ունէի քեզի առաջնորդել Այգեստանեայց նշանաւոր տեղերը, և քանի մը գեղեր • քեզի ցուցնէի շատ մը հին բերդեր, որոց համար չեմ գիտեր ի՞նչ աւանդութեամբ է որ կ'ըսեն «Ջընըվըզի ժամանակէ մնացած են» ։ Ես կը կարծեմ որ Ջընըվըզ՝ Ջենովացւոց համար չեն ըսեր • վասն զի Հայաստանցւոց երբէք

ծանօթ չէր այդ ազգը․ և ոչ միայն այդ, այլ ընդհանուր արևմտեան ազգերը․ որոնք մինչև ցայսօր երկու ազգի անուն միայն վերջին Արևելեան պատերազմին ծանօթացաւ իրենց, այն է Խնգլիզ, Ֆռանսըզ․ և սովորաբար Հայաստանցիք՝ Հայէն զատ քրիստոնեայ ազգ չեն ճանչնար իրենց խօսքերուն նայելով․ վասն զի Քրիստոնեայ բառին հետ միշտ Հայ բառը կը կցեն․ օր․, Սպանիացւոյն կամ Աւստրիացւոյն վրայօք բան մը պատմես, քեզ կը հարցունէ՝ «Հայ քրիստոնեա՞յ են անոնք»։

Այլ իմն կը թուի թէ «Ճընըվըզի բերդը», «Ճընըվըզի չէնք» անուանելով ամէն հնութիւնները, ինչպէս բևեռադիրներն ալ անոնց դարձուած կուտան, և «Կուտաղազի ժամանակի» կը կոչեն․ այսպէս կը նշանակէ կամ Ճենովազն ազգը, կամ, որ աւելի կը հաւանիմ ընդունել, Ջինեւրու (դէշեւրու), Ջինուազն, Հոկայից, Տիտանեանց դար կ'ակնարկեն։

Քեզի պիտի հանէի վանուց բերդին գլուխը, և անկէ չորս կողմի տեսարանները ցուցնէի, սակայն թող միան անոնք ուրիշ տարի մը․ երբ կրկին քեզի հետ Աստուած արժանի կ'ընէ կուգանք այցելութեան մեր Հայրենեաց։

Վանեցւոց կամ Հայաստանցւոց կեանքն այսքան չէ․ անոնք ինչպէս գարուն և ամառն, նոյնպէս աշուն և ձմեռն ունին, ամեն եղանակի մէջ առանձին եղանակ է կենաց․ ձմեռն ալ իրեն զուարճութիւններն ունի, մանաւանդ հարսնիք, հարիսայ, խաչօրհնէնք, տօները ընդհանրապէս ձմեռուան վերապահեալ են․ ձմեռնային զբաղումն է Հայաստանցւոց շարունակ ձիւն սրբել տանիքներէն, բակերէն, ժամ երթալ գալ, ուտել, խմել և ուրախանալ։ Իրիկունները տաքուկ թոնիրին չորս կողմը շարուելով խաղեր կ'ըսեն, և խաղեր կ'ընեն․ մամիկը հէքեաթ կ'ըսէ, զոր մի անգամ լսելով կը սորվին պզտիկները․

Վանայ ժողովրդական կենցաղը, և իրենց շուրջ եղած բնութեան տեսարանը ազդած է իրենց լինել ճարտարամիտ և բանաստեղծ․ տեղ մը՝ որ ջրէն առաւել գինի կայ, խոտէն առաւել ծառ և միրգ․ ամբերն անգամ վարդ ու ծաղիկ են․ յօդն անդադար թռչունք գոյնզգոյն և ձայն 'ի ձայն կը ճխան կը ճախրեն․ ծով և ձուկն ունին, բարձր բերդ և շէն քաղաք․ ծաղկաւէտ լերինք․ շուշանաւէտ հովիտք․ որսականով և որսով լիք․ Ջրհեղեղի դարէն յիշատակներ և զրոյցներ ունին իրենց մէջ․ աշխարհի փորձեր և մարդ-

կային զանազան հնարքներ տեսած անցու-
ցած, ինչե՞ր չեն կրնար ստեղծել երևա-
կայութեամբ կամ պատմել աւանդու-
թեամբ ու աւելորդութեամբ․ որոց մէջ
արդէն միշտ նոր և սովորական է սնոտիա-
պաշտութիւն և ոգիներու երևոյթն ու
գործողութիւնք մարդոց հետ․ հրեղէն
մարդոց, ձիոց, և ամեն էակաց ու անմա-
հական վայելչութեանց գաղափարն այնքան
հասարակ է իրենց խօսակցութեանց մէջ,
ինչպէս հացի և ջրի գաղափարն։ Ամեն
շարժումն, ամեն շուք, ամեն երևոյթ։
ամեն դիպուած իրեն հետևանք մը ունի
այս ժողովրդեան մէջ, և իր ազդեցու-
թիւնն ասոնց սրտին վրայ․ ասոր յառաջ
եկած են կախարդական գրքեր, ախդարք-
ներ, աստղագուշականք կամ ռամ գիրք,
հաւախօսութիւն, երազահան, վիճակա-
հան․ թէև լինին այս բաները շատ և շատ
հին՝ մինչև «ցՑուռութս յուլունսն Շամի-
րամայ»։ Եթէ կարգ գայ, Մանանայիս
մէջ բժշկարանէն և հաւախօսութենէն,
այն է տեսակ մը հմայութիւն, իբրև 'ի
զբօսանս հետաքրքիրներու պիտի դնեմ
մաս մը․ նաև մաս մը խաղերու, ընտիր
տաղերու, և կարճ կարճ զրոյցներու։

Բայց յառաջ քան զամենայն քանի մը հատ
տեղական բարբառով հէքեաթներ, վէ-

պեր կ'ընծայեմ ընթերցողաց , յատուկ ուշադրութիւն հրաւիրելով բանասէր մտաց՝ անոնց մէջ պարունակուած գիւտոց , չարադասութեանց , ասացուածոց ոճոյն և դարձուածքներուն . ուր պիտի հանդիպին նաև նոր նոր բառերու , նորաձև բարդութեանց և կրճատութեանց ։ Բաւական խնամ տարած եմ որ բառն և բանն նոյն մնալով, կարելի լինի նաև հասկնալի լինել ընթերցողին ։



# ՀԱՅՐԵՆԵԱՑ ՎԷՊՔ ԵՒ ԶՐՈՅՑՔ.

Գիտութիւն կ'ստուգէ թէ դրարուեստը կարծուածին չափ նոր գիւտ կամ նոր արուեստ մը չէ մարդկային ազգի մէջ ։ Նինուէի և բոլոր Ասորեստանի մէջը Եւրոպացի հնախուզաց ջանքով գտնուած աղիւսները, Եգիպտոսի աղիւսները և գետնաթաղ վէմերը, որոց ամենքն ալ իրենց վրայ գիրեր կը կրեն, ապացուցին թէ գրի գործածութիւնը կարի վաղ ժամանակաց գործ էր ։ Սոյնպէս և Պարսկաստանի ու մեր Հայաստանի բևեռագիրերը նոյն բանի վկայութեան համար մէկ մէկ անտարակուսելի և անեղծանելի մատեան են ։ Դեռ ժամանակ չհասաւ որ Հայաստանի դերբուկներն ևս խրխրուէին, տեսնայինք մեր հողերու խաւերուն տակէն ինչ կոմինտրներ, վէմեր պիտի ելլէին, «Զրնուըղաց» դարու պատմութիւնը լուսաւորելու համար ։

Չին, և Կորէ հնագոյն աշխարհաց և ազգաց շարունակութիւնք՝ կը թուի թէ՝ պահուած եղեր են Հնդիկք և Չինք․ որոց կրօնք, լեզուն, սովորութիւնք, կրնանք ապացոյց 'ի մէջ ածել մեր ըստածին։ Այսօր այն ամեն բաները՝ որ մեր մէջ, կամ դիտութիւն ու կրթութիւն ունեցող ազգաց առջև՝ կը համարուին առասպել, կը համարուին նախապաշարումն, կը համարուին մութ և խաւար, 'ի Հնդիկս և 'ի Չինս իրականութիւն է, կենցաղագիտութիւն է, բարեպաշտութիւն է, լուսաւորութիւն է։ Երկրագնդիս միջնաշխարհեան և Արևմտեան մասին բնակիչք շատ նոր կը թուին, նայելով յիշեալ ազգաց հնութեանն և բնութեան․ կամ այսպէս ըսենք․ մեր վայրերու բնակիչ ազգեր 'ի դարս դարս՝ անկումն, աւերումն, երբեմն ևս ջնջումն կրեր են․ եղեր է նաև որ ազգէ յազգ, լեզուէ 'ի լեզու յեղափոխուեր են․ պատմական աչօք դիտելով արշաւանքներ միշտ յարևելից կուսէ եղած են․ և արշաւողները հասած տեղերնին տիրութիւն և գաղթականութիւն հաստատած են․ բայց 'ի հարկէ այս տեղերն ալ ազգեր եղած են, որոց վրայ կը դիմէին նոքա․ այս տեղերը եղած ազգերը չանհետացան բնաւ․ սակայն շատերը փոխուեցան յայլ։

Պատմագէտները և հնագէտները յայտնապէս գիտեն թէ ոչ միայն անյիշատակ ժամանակները , այլ և մինչև միջին դարու մէջ տեղի կ'ունենային այս կերպ դէպքեր և փոփոխութիւնները ։

Ո՞ր դարէն մնացած են Հայաստանի մէջ Եզդիները, որ տեսակ մը արեւապաշտներ են ։ Ո՞ր դարէն և ո՞ր կողմէն եկած ցրուած են Հայաստանի և Ասիոյ ուրիշ գաւառները՝ ազգ Գնչուները . — այս ազգանունն ալ չեմ գիտեր ո՞րքան տարի է յօրինած են . այլ իրօք անոնք կը յորջորջուին «Մըտրըբ , Չինկեանէ , Բօշայ» — , որք զանազան դասեր կամ ցեղեր կը կազմեն . առանձին լեզու ունին, ամենքն ալ ուր որ բնակին միևնոյն կեանքն ունին, բացօդեայք, վայրաշրջիկ, թափառական, կաշէգործ , մաղագործ , դուսան , նուագածու , պարող և կաքաւող. դիւթող և կախարդող . ոչ հպատակութիւն ունին տէրութեան մը , և ոչ տուրք կը վճարեն , քանզի տուն և երկիր չունին . ոչ գիրք ունին և ոչ օրէնք. հին ազգ մ'են , և կարծածնէս աւելի բազմաթիւ ։ Արդեօք Հնդկա՞ց մաս մը թէ Քաղդէացւոց մնացորդք են սոքա ։

Ինձ կը թուի թէ Քաղդէացւոց մնացորդքն են Քիւրդանիք , որ առանձին լեզու

և ազգ մի են, և որոցմէ բաւական մաս մը կը բնակին Տիգրանակերտու և Սղերդու կողմերը։

Մեր քիւրդերէն մաս մը Ասորիք և մաս մը Հայք են. բայց այնքան բազմաթիւ են, որ կրնանք ըսել թէ քան զՀայս կրկնապատիկ, և ասոնց մէջ կան բաժան բաժան մասեր։ Դաս մը Ազնուականաց, որ Թոռուն կ'ըսուին, ազատ և ոստանիկ տուներ են իրենց արեանառու ամբողջ սերընդով. մաս մը ասոնց «Խոլամ» ըսուող ու ծառայ են իբրև պատրաստական անձնուէր զինուոր և կապարճակիր, որոց ձին, զէնք և հաց՝ Թոռուններ կը բաշխեն։ Այս կարգեր ոչ զօրք և ոչ տուրք կուտան տէրութեան։ Մաս մը կայ, որ բոլորովին կը տարբերին վերոյիշեալներէն, ռայայ են. տուն ունին, երկիր կը մշակեն, տուրք և զօրք կուտան տէրութեան, և միանգամայն ճորտ և ստրուկ են Թոռուններուն։ Ասոնց կրօնք մահմէտականութիւն է, բայց ըստ մեծի մասին Գըզըլպաշ են, և Զրադաշտական. մեծ մաս մ'ալ Զազայ կ'ըսուին, որ շատ բազմաթիւ են և առանձին լեզու ունին։ Ասոնք կը բնակին Մշոյ և Տիգրանակերտու կողմերը. Խնուս, Վարդօ, Ճապաղջուր, Բղի, Ցուժիկ լեռը, ևն։ Մեր պատմութիւններ բան մը չեն ըսեր մեզի այս ազ-

դաշտ վրայ, և անոնց 'ի Հայաստան գալուն վրայ։ Լեզուաց ո՞ր արմատին կը պատկանի ասոնց բարբառը, կամ ազգը՝ ո՞ր ազգին. ի՞նչ բերանացի աւանդութիւններ կան մէջերնին, գիտնականաց հետազօտութեան արժանի։ Ո՞րդեօք Չինկիզ խանին, կամ Նետողաց ազգին, Թաթարաց տր-չաւանաց բերած ու թողածներն են, թէ աւելի հին՝ Վահեւունեանց ճետերն են. որք՝ առ ահին վեհին Տրդատայ՝ երեսանց միշտ քրիստոնեայ, իսկ ծածուկ միշտ Գիսանէին երկրպագուք կը մնային. ինչպէս գրեթէ դարերէ հետէ Տրապիզոնի լերանց մէջ ապրող «Կէս կէս» Յոյները, որ առ երես կը կոչուին Մահմուտ և Մուստաֆայ, բայց իրօք Եօրկի են և Եահեայ. կը թլփատուին և կը մկրտուին. մօլլայ ալ ունին. քահանայ ալ ունին։ Կարելի չէ՞ արդեօք մեր Զազաներն ալ երկար ժամանակ քրիստոնեայ՝ միևնոյն ժամանակ և Գիսանեան քրմաց պաշտօնեայ մնային։ Ջենովք պատմիչին ցոյց տուած նշաններն ալ իրենց վրայ մինչև ցայսօր ունենալով, այն է հերաց գիսակներ թողուլ գլխոց 'ի կախ, զորս արգիլէց Ս. Լուսաւորիչն խափանելու համար քրմականաց յիշատակը Նա, այսու ենթադրութեամբ, ահա ասոնց Շէխեր, որոց վրայ այնքան գերբնական

կարծիքներ ունին, զորս մինչև անգամ 'ի Թևս հրեշտակաց յերկինս կը ճեմեցուցանեն, կը լինին Բրահմանաց յաջորդք։ Արդէն յայտնի է որ Գիսանէ և Գեմետրէ երկու եղբարք 'ի Հնդկաց եկած են 'ի Տարօն, և իրենց անունով այն կուռքերը հաստատեր են․ իրենց սերունդ և իրենց հետ եկած ժողովուրդն ալ բնակած են եզեր հազարաւոր տներով 'ի Կվարս, Մեղդի, Բազու, Բարեխ, եւն. ինչպէս կը պատմէ Զենոբ և այլ պատմագիրք․ և գեղեցիկ իմն կ'իմաստասիրէ գիտնական Մեսրովբն Թաղիադեանց 'ի Սօս և Սօնդիպի բանաստեղծութեանն։ Արդէն սոյն հանգամանքն է որ Ձենազն Մամիկոն Տրդատէն ժառանգեց զՏարօն իբրև պաշչան հատուցումն իւր մէկ քաջութեան և տիրասիրութեան, այն էր Տարօնոյ Աշուկ իշխանն սպաննել, որ իբրև անկախ նախարար՝ ապստամբած էր հայոց հսկայ արքայէն․ և Հնդիկ Տարօնեցին Արշակունեայն դէմ ըմբոստ, Հնդիկ Ձենազն Մամիկոնին հլու հնազանդեցաւ։

Եթէ այս մասը քիչ մը ընդարձակ խօսեցանք, մեր միտքն այն չէր որ մեր ազգային պատմական հնութիւնը կրկնէինք կամ բացատրէինք․ այդ ամեն մտաւոր ընթերցողաց յայտնի է։ Ցայտնի է

թէ Հայկազանց ժամանակ Քանանացիք, Արծրունի Ասորիք, Հրէից գաղթականք, Մարաց մեծ գերեվարութիւնը, Աժդահակեան ազգ և տոհմն, Գողթնեաց վիշապազունք, վեհազն Արշակունիք, և այլն։ Սոնք յայտնի են. որքա՛ն ևս առաւել Պարսկական, Յունական, Ալանական, հիւսիսային և հարաւային ազգաց հատուածք և պատուաստք եկած յարած են 'ի մեզ. է որ իրենց ազգային յատկութիւնք և պաշտօնք ընդ երկար պահած են, է որ յեղափոխուած են 'ի մեզ։

Ըստ այսմ է նաև ամեն ազգաց գոյութեանն և քաղաքականութեան կենաց պատմութիւնն ու բնութիւնը։

Դեռ միջին դարու մէջ յԱրաբիոյ և յափանց Հնդկաց յառաջանալով ազգերը Եւրոպիոյ հարաւն ու հիւսիս մարդակուլ ըրին, և այս օրուան լուսաւորութեան աշխարհի ազգերը, որ ելած են Եգիպտոսի, Բաբիլոնի, Նինուէի, Եկբատանայ սեպագիրեր և գրեալ կոմինտրները կը հետազօտեն, զուգադիպութեամբ մը գուցէ բուն իսկ իրենց ազգաց նախնի հայրենեաց փառքերն 'ի լոյս կը հանեն։

Գերմանացիք, գիտութեան մէջ մեծ ազգ, որ 'ի ծագ'աց արևելից եկած են գաղթական Պէրլինի արևուններըքև, իրենց

հետքերը թողած են Հայաստանի մէջ, մանաւորապէս Սիւնեաց աշխարհը, ուր մեծ հիւրընկալութիւն վայելած են. բաւական կեցած են, բաւական իրենց սերունդէն հոն ձգած և այն տեղի բնիկներէն իրենց ընկերացած մեկներ են։

—Կը հաւանիմ և կը հետեւիմ յայսմ՝ Շահն. գիտնական Կ. Վ.ի այս մասին գրածին. զոր տես 'ի Շարս Հայ պատմագրաց, 'ի Յառաջաբանութեան Ստեփաննոսի Օրբէլեան Պատմութեանն Սիւնեաց—։

Գերմանական ազգին կը մնար որ Հայաստանին բևեռագիրերն հաւաքէր և ընթեռնոյր։ Թէպէտ գիտնականն Մորթման 1871 ին քանի մը բան ասաց, այլ բան մը չհասկցուց. վասն զի Հայաստանը շրջած չէր. վասն զի միայն Հայոցս գրաբառ և Պօլսեցւոց աշխարհաբառ լեզուներով լուծել կը կարծէր. այն ինչ բևեռագրի լեզուին առջև դուցէ մեր գրաբառն այնքան տարբեր, նոր և բոլորովին հեռու ոճեր և բառից կազմութեան ու հոլովմանց ձևեր ունի, որքան արդի Պօլսոյ և զանազան գաւառաց աշխարհիկ բարբառն՝ գրաբառին առջև. մանաւանդ թէ մեր սուրբն Մեսրովբ կարգաւորեց իր քերականն և քերականութիւնն ըստ ալփաբետից և արուեստին յունաց։

Որովհետեւ մեր ժողովուրդն աւելի հին է քան մեր գրաբառն, ուրեմն ժողովրդեան խօսած լեզուն աւելի մօտ լինելու է բևեռագրի լեզուին։ Իրաւ է, դարեր և դէպքեր փոփոխութեանց ազդեցութիւն կը գործեն ինչպէս ժողովրդեան կենաց և բարուց վրայ, նոյնպէս և լեզուին վրայ. բայց շատ պարզ կ՚երևի թէ հայ ժողովրդեան այն մասը՝ որ անփոփոխ մնացեր է իր դրից մէջ, կրելով և տոկալով ամեն արկածները, Հայ անունը և Հայաստանը չթողլով, պահած է նա և իր նախնական աւանդութիւնք մինչև յաւուրց հեթանոսութեանց անտի, պահած է նաև անշուշտ Հայ լեզուն ՚ի դարուց նախնեաց։ Անկայն նկատելի է որ Հայաստանի իւրաքանչիւր գաւառը զատ զատ ոճ մը ունի խօսից, եղանակ մը ունի արտասանութեան բառից, ինչպէս նաև իր կենաց հանգամանքն ու պարագայքն ալ տարբեր են. ուստի ո՛ր գաւառի բևեռագիր պէտք լինի կարդալ, անշուշտ նոյն գաւառի քաղաքաց, գիւղորէից, աւերակաց, գետոց, լերանց, մարդոց, գտնուած անձանոց անունները և բնակչաց լեզուն գիտնալու է գիտնական ընթերցողն. և, թէ կարելի է, մինչև անդամ ժողովրդեան բերան եղած աւանդութիւնք և առասպելներն ալ լսած լի-

նելու է։ Օրինակի համար ըսենք․ վանայ մէջ եղած բևեռագիր մը ընթեռնլու համար, կատարեալ հայ վանցի մը լինելու է, որ «Պակրիտուր» անուն մը կարդալով հասկնայ նաև թէ այսօր ևս վանայ մէջ «Պատուր» անունկրայ․ և գուցէ Տիարպաքիր Տուրպակրի է․ քան թէ Տիգրանակերտ, զոր նորոգած լինի մեր Տիգրան երկրորդ իւր անունով։

Խնդիր է թէ «Հա՞յր, մա՞յր» ուղիղ են․ եթէ «Հէր, մէր» հնչել․ արդեօք ո՞ր ձևով կարդալու է եթէ բևեռագրի մէջ պատահի։

«Երիցս», որ կընշանակէ երեք անգամ, վանցիք կ՚ըսեն «Երեք դիր»․ ո՞վ գաւառացիէն զատ «դիր» բառն «անգամ» կը հասկնայ։

«Մէկ զարնելուց չուռ իտու գետին»․ — «Ընդար անդէն կործանեաց յերկիր»։

«Դեհ Խիզան»․ — «Ի կողմանս Խիզանայ»։

«Մըշկեց վէր Աստուրուն»․ — «Մշեցւոց յԱստուծին»։

«Մէլի պտուղը»․ — «Մոյծ յաչս քո»։

«Ջեռնակոկուլ ծառին»․ — «Կռուեցաւ ձեռն ’ի ծառն»։

«Աղօթրան»․ — «Արևելք և Արշալոյս»։ «Ցոլայրին»․ — «Արևմուտք»․ և ըստ Մշեցւոց՝ — «Արևպատ»։ Հիւսիս, Հարաւ

բառեր երբեք չկան ժողովրդեան բերանը, այլ կամ «Ալ, ձախ» գործ կ'ածեն, կամ լերան մը ու գեղի մը սահմանը, կողմը ցուցնելով կը հասկցունեն ։

Շատ մը այսպիսի օրինակներ կան ։

Քաւ լիցի թէ ես գիտնական Մութմանին կամ ուրիշ գիտնականաց և լեզուագիտաց չհաւանիլ կը ցուցնեմ․ վասն զի ես այս գրածներէս անդին բան մը չգիտեմ, և ոչ ալ արուեստ մը կամ ուրիշ լեզու մը․ այլ միայն մեր ազգային գիտնականաց ուշը կը հրաւիրեմ այս խնդրոյն և այս առաջարկիս վրայ․ վասն զի կը փափագիմ ես ալ որ այս պանծալի դարուս լուսաւորութեան սեղանին վրայ դրուած տեսնեմ նաև Հայաստանի հին գրականութեան կնքեալ և փակեալ փառաց մատեանը, յորում ազգային և ընդհանուր հնութեան և պատմութեան գանձեր կան ծածկեալ, և զորս հայերը բանալու միայն կարող են ։ Ես կ'աւետեմ ընթերցողաց, թէ արդէն ծանուցեալ երկու գիտնականք Մեծապատիւ Պ․ Քերովբէն Պատկանեան, որ Արևելեան լեզուաց բրոֆէսոր է 'ի Ս․ Պետրբուրգ Ռուսաց կայսերական Ակադէմիան, և Մեծապատիւ Յովհաննէս Էփէնտի Հիսարլեան 'ի Պոլիս՝ որ քաջ հնագէտ և հայագէտ է, երկուքն ևս կը տքնին այս

վսեմ նպատակին համար ,՝ որոց անգին բարեկամութիւնն վայելելու շնորհն ունեցած եմ. յոյս կուտան յաւիտենական մոխիրներէ և մթութենէ սրբել մեր Հայկական ազգի պատմութիւնը սեպագրաց բանալիով. ինչպէս կան նաև քանի մը հնագէտ և պատմագէտ հեռախոյզ ազգայինք ։

Այժմ մէկ դի դնելով ազգային լեզուի խնդիրը , գրական ժամանակի և նախնի պատմութեան վրայ խօսինք խուն ինչ ։

Նախկին կամ հնագոյն ազգաց գրերը շատ բնական բայց բազմազան ձևերով են. և ամէկայ ծանօթ է ամենուն , որ Չինաց նշանագիրները և Եգիպտական քանդակագրեր տեսեր են . կենդանագիր , մարդագիր , թռչնագիր , ծառագիր , և այլ ինչ որ բնութեան մէջ կայ , անոնց նշաններով գրեր յօրինուած կան , խորհրդական նշանակութեամբ ։

Դի՛ր դու հայոց հին ձեռագիրները , թէև Մեսրովբեան աւուր և անկից ետքն ալ եղած լինին . և ահա կը տեսնես հրեշտակագիր , մարդագիր , թռչնագիր , ծաղկագիր , կենդանագիր , եւ ։ Երկու մարդ կը գծէ , երկրորդի ոտքին տակէն եղջերաձև նշան մը կ՚աւելցնէ , կ՚ընէ «Ա» ։ Հրեշտակ մը կը գծէ թևերը ծալլած , ձեռքը ծաղկանոց մը կուտայ ՚ի կախ , այն է «Ի» ։

Օձ մը կը պատատէ՝ տուտը պարանոցէն տակէն մտցունելով և դուրս հանելով, այն է «Ծ»: Թռչնոյ մը անանկ ձև մը կուտայ, որ կը տեսնաս թէ «Հ» է: Այսպէս բոլոր մեր Այբ բենն մինչ Քէն:

Առանցմէ զատ կայ նաև փակագիր, որ երկու գիծ գծելով ամբողջ անուն մը կամ բառ մը կը զետեղէ մէջը, մէկալ տառից գծերէն միայն մասն մասն նշանելով: Իսկ իբրև սղագիր, կամ իբրև բուն նշանագիր իւրաքանչիւր բառը մէկ մէկ գծանիշով մը կը հասկցնէ. ինչպէս ձեռագիր ընթերցողներ տեսած են, աշխարհ, երկինք, երկիր, արեգակն, լուսին, աստղ, տուն, եկեղեցի, եւն: Գուցէ ասոնք լինին Ս. Մեսրովբէն առաջ հայոց Դանիէլեան ըսուած նշանագիրները:

Կայ նաև տեսակ մը գիր Հայոց, որ աւելի նման համարելու է Եգիպտականին և Չինականին, այն է գերեզմանաքարերու վրայ քանդակուածներն. Վարսավիրայի մը տապանաքարին վրայ՝ մկրատ և ածելի. Հիւսան՝ ուրագ և սղոց. Դերձակին՝ չափ և ձևիչ. Ջինուորի մը կամ քաջի մը՝ սուր և վահան: Հայաստանի մէջ դեռ կան շատ գեղեր, իմ տեսածներէս Խնուսայ Գաբաչօրան գեղին և Բարերդու Բալախոր գեղին տապանաքարերը ոչ անկուած խաչ-

քար են ՝և ոչ պատկերացուցած կափարիչ · այլ խոյաձև, ձիաձև, առիւծաձև, ցլաձև հսկայ քարեր, որոց կողերու վրայ սուր, տապար, հրացան, եւ, քանդակուած ։ Կայ տեղ տեղ ալ մատաղ օրիորդ մը, հրեշտակատիպ մանկիկ մը, ալևոր մը, տէր-տէր մը, կամ կրօնաւոր մը, որ Սաղմոս և Նարեկ ունի ձեռքը · սպանեալ մը կամ նահատակ մը՝ ըստ իւր կերպարանաց · Վարդապետի և եպիսկոպոսի գերեզմաններն յայտնի են գաւազանով և ճղակ թագով ։ Ո՞չ ապաքէն և այս ամենը կարդալ կուտան մեզի առանց տառերու՝ թէ ո՞յք են և ո՞րպիսիք են հանգուցեալք ՚ի նոյն տապանի ։ Եւ այս ևս հնութեանց նշան մի է ։

Այսքան մը ևեթ խօսելով առ այս, կը փութամ Հայրենեաց վէպերու և զրոյցներու վրայ ևս սակաւ ինչ գրելու ։

Տեսանք ահա մենք թէ գիր շատ հին է մեր ազգին մէջ · բայց այդ ձև գրեր և բևեռագրեր և կղմինարները կը գործածուէին միայն մեծամեծ և նշանաւոր անցքերու և յիշատակներու · իսկ հասարակութիւն կը մնար անհաղորդ և անձեռընհաս ։ Մինչ միջին դարու մէջն իսկ՝ երբ այնքան դիւրացած էր ձեռագիրն ՚ի թուղթ, դարձեալ անհաղորդ և անձեռն-

հաս չէ՞ր ժողովուրդ գրելուն և կարդալուն մինչև ցկուլթթէմպէրկի տպագիրն ,

Այս այսպէս լինելով․ սակայն ժողովըրդեան միտքն ու բանականութիւնը չէր կարելի մնալ անգործ և անզգայ․ նա իր տեսած, ըրած, ու լսած անցքերը կը խօսէր բերանացի, կը շարադրէր կը վիպասանէր բանացի․ և իր զգացած սէրն ու թախիծ կ՚երգէր կը մրմնջէր թէ յանձին առանձին և թէ յընկերութեան․ անշուշտ երևակայութիւնն ալ բան մը կը յաւելուր բուն եղածին վրայ, բան մ՚ալ լսողը կը յաւելուր՝ երբ ինքն ևս այլում կը հաղորդէր։ Մինչև ցայսօր ևս վէպեր ու զրոյցներ, որ կը շինուին թէ բերանացի, և թէ գրաւոր․ յօրինող վիպասանն սա ստոյգ նշանով մը կը հասկցուի ուր տեղացի լինելն․ նա իր խօսքերը կը յօրինէ իր բնակած գաւառի բնակչաց տեղական սովորութեան և կլիմային և իր չուրջ գտնուած բնական կենդանեաց և վայրաց անուամբ՝ և նմանութեամբ՝ և նկարագրով։ Ծով չունեցող գաւառի մը վիպասանը ծովու վրայ գաղափար չունենալով, երբէք զայն չգործածեր իր ասից մէջը․ իսկ Վանցին իր տաղին, ողբին, խաղին և խօսքին մէջ յաճախ կը խառնէ․ մերթ գեղեցկի մը աչքը ծովի կը նմանցընէ․ մերթ

յաղթեալ սիրտը՝ ծովի ալեծուփին, ևն ։

Վէպն ու գրոյցը, որ ժողովրդեան բերնով «Հէքեաթ» է, յօրինուած կը լինի բարոյական խրատու համար. և իբր դիւցազներգութիւն՝ քաջաց քաջութիւն հռչակելու կամ այլոց օրինակ տալու համար ։ Հէքեաթներու շարադրութեան մէջ միշտ կարգ մը կայ. ուղևորութիւն. հեռաւոր և անծանօթ աշխարհները. հրաշալի և ահռելի նկարագրութիւնք վայրաց և անձանց. դիպուածք. արկածք 'ի նենգութենէ ընկերաց կամ եղբարց, երբեմն ևս 'ի ծնողաց ։

Արտահարականն ամեն հէքեաթի աղն է. բաւական ճարտար հանդոյցներ ու կապեր ունի. բարի և չար ոգեաց՝ ջիներու դէւերու դերեր. անմահութեան ջրոյն և պտղոյն, տեղւոյն և կենաց միշտ հետամուտ ։ Ի պաշտօն կը կոչուին կենդանիք, գազանք, և թռչունք. որք իւրաքանչիւր մէկ մէկ մարդ անձանց դեր կը կատարեն ։

Դիւցազունք և դիւցազնուհիք երբ 'ի հանդէս կուգան, և երբ ճապուկ ճարտար լեզու մը զանոնք կը գրուցէ, մարդու մտաց առջև կը պզտիկնան Հերակլեայ դիւցազնութիւնք. Ոսկի գեղման հէքեաթն. Տրովադայի վէպն. Ոդիսեան և իւր կղզիները

Եւրեկորեայ պատրաստեցներն , յորս Հռոմեայս կը սպանծայ• կամ Ցեղբեռնաքն ու Կայլիփսէն , և որ իրօք ժողովրդական վէպեր են ։

Ո՞չ ապաքէն վէպ ու զրոյց են մեր Մեծին Խորենացւոյ յիշած Շամիրամայ աղուական ծնունդն ու սնունդն , անոր տարփանքն և արարքն ։ Ի՞նչ է Աժդահակայ անունն , օձ • անոր երազքին լաւ միտ դիր • անոր խորամանկ խնամութիւնը • մեր Տիգրանուհեայ իմաստութիւնն • Տիգրանին անձին և քաջութեան հանգամանքը ։ Վահագն՝ իր անունով• երկնից և երկրի որդի • երկն• ծով• կարմրիկ եղեգնիկն • բոց • հրածին • հրահեր • արեգակն աչքն ։ Ի՞նչ անուն է Վարդ գէս • — վարդահեր • Հրաշեայն • Ձիկայորդին • Գոռ • Գոռակն • եւ ։ Ո՞վ է Հայոց Տորք սարսափելի նախարարն • ո՞ր աստուծոյ տուրքն է նա • որ մէկ ձեռնով որձաքար վէմեր կը փշրէ , լեռներ կը տապալէ , բլուրն իբրև պարսքար մը կը նետէ • քանի՛ ահարկու է անոր կերպարանքը , քանի՛ անսահման անոր ուժը ։ Երուանդին Արշակունեաց չար աչքերէն մարդ և վէմ պատառուած են ։ Արտաւազդն պտուղն Սաթինկան տարփանաց բարձից Արգաւանայ , դիւաց յափշտակութեան և փոխարինութեան արժանի • ՚ի վիհս Մասեաց անոր կործանումն • ՚ի քաջաց կալեալ կապ-

եաւ մնայ , անմահ մնայ , բայց լոյս չտեսնայ · չունք անոր շղթաներ կրծեն · դարբինք սալը հարկանելով անոր շղթաները հաստատելու են , որ չելնէ վախճան տայ աշխարհին ։ Ի՞նչ է Սանատրուկ · շան դատած տղան ։

Իսկ Բիւրատսպեանց վէպն բացարձակ առասպել կ'անուանէ Խորենացի հայրն , և անոր մէկ քանի մասերը մէջ կը բերէ ։

Այսպիսի առասպելաց մէջէն ծագած են և 'ի նոյն մնացած ամեն հին ազգաց Նախնականութիւնք ։ Ամենուն գիտցած բանն է թէ՝ Աղէքսանդր Մակեդոնացին Փիլիպպոսի որդին նոյն իսկ Արիստոտէլեան օրերուն մէջ ծնած , «Վիշապի ծնունդ» է ։ Հռոմմայ հիմնադիրները «Հովուի մը այծու կաթով 'ի վայրիս սնած» , եւն ։ Դիւցազանց ինչպէս ծնունդն, նոյնպէս և վախճան կամ փոխումն յաստեաց հրաշալի են · ո՛ր յԱստեղատունս համբարձեալ · ո՛ր յամբրոպս · ո՛ր 'ի ջուրս և 'ի կղզիս կը բնակի յաւէրժապէս · ո՛ր յանդունդս 'ի դժոխս · ո՛ր փոխակերպեալ 'ի ծաղիկ · ո՛ր 'ի ձուկն · ո՛ր 'ի դազանս և 'ի ցիռս վայրենիս , եւն ։ Կան դիւցազունք ալ, որոց անուանք և անոնց անուամբ լերինք , աշխարհ , քաղաք , բերդ , կոթող , ջուրք անբարբառ կը պատմեն մեզ անոնց վէպերը ։

Ես խոստովանիմ թէ իմ այստեղ գրելիք վէպերը այնքան հին և վսեմ չեն. բայց կրնանք օրինակ տալ բանասիրաց, որ հետեւին ձեռք բերել աւելի հնագոյնները, և իրենց ուշադրութիւնը դարձունեն ժողովրդեան շուրջ և բերանը եղած ամեն զրուցաց և աւանդութեանց։ Կրնան ասոնցմով գրասէրներն ալ ազգային գրական վէպեր յօրինել. բաւական օտար ազգաց վէպերը յեղափոխուեցան 'ի մեզ, որոց կեանքն ու հանգամանքը մեզմէ օտար գոլով հանդերձ, այսօր առաւել ծանօթ են Հայ ընթերցողին քան մեր ազգային վիպական հայրենական կեանքն ու հանգամանքն։

Ցայսմ՝ առաջին հանդիսացած է Թիֆլիզի ուսումնական Գ. Ղ. Աղայեան «Երկու քոյրեր» վիպասանութեամբ։ Եւ 'ի մեզ գիտնականն Հիսարլեան, «Նեռն և կատարած աշխարհի» վէպով։ Նաև Արև. Մամլոյ խմբագիր Մեծ. գրագէտ Մ. Էֆ. Մամուրեանն «Սև լերին մարդ» ով։ Իմ սիրելի բարեկամ և հայրենակիցս բանասէր Գ. Սեդրակ Տ. Սարգիսեանցն ևս մի պատուական նոր երկասիրութիւն յօրինած է «Շատախն ո՛ւր Սիպիրն ո՛ւր». որ կատարեալ Հայկական վէպ մի է, արդարև գնահատելու արժանի. զոր 'ի լոյս պիտի

ածէ 'ի մօտոյ ։ Գուցէ կան այլք ևս , որոց ես հանդիպած չեմ ։

---

# 1·

## ԳԱՌՆԻԿ ԱՂԲԷՐ

Ռուբեւէրի կնիկ մը կ'ելնի , մէկ աղջիկ ունի ։ Էդ կնիկ կ'երթայ իրկան․ էն իրիկն էլ մէկ լաճ մէկ աղջիկ ունի ուր առջի կնիկից ։

Կնիկ՝ կ'անի չանէ՝ չուամ իրիկ գլխուց կը հանի , մարդու ճար ճարանք կը կտրի , իլլահ ուր լաճն ու աղջիկ պիտի տանի սարերաց գլօխ կուրիսի ։ Օր մը քանիմ՝ հատ թափթափայ հաց կը թխի կը դնի տուրիկ , կ'առնի ուր ճըժեր կ'երթայ սարերնը վեր․ կ'երթայ կ'երթայ կը հասնի անասուն տեղ մը , ճըժերաց կ'ասի․ Կըտոր մը նստենք ըստայ հանգ առնենք ։ Տղէյներն ի կը նստեն ։ Խէրն ի , իրես կը շրջի մէյ դեհ , ընքուռ ընքուռ կուլայ ։ Կը դառնայ տղէյներաց կ'ասի․ Ճըժեր , պրտուճ մը հաց կերէք ։ Կուտեն կը պռծնեն ։ Լաճ վէրուց ասաց․ Բաբօ՛, ծարաւ եմ ։ Խէրն ի ուր ձեռաց կօռ կը տնկի գետին , ուր կօռտիկ կը հանի թալի վէր կօռին․ կ'ասի․ Արե , իմ լաճ , արե իմ կօռտիկի հովը նստի ․

ես երթամ տիսնամ դո՞ր ջրի աղբիւր կայ։ Քոր ւաղբէր կը նստեն․ խէրն ի կը թողնի կ'երթայ մէյ դեհ կը կուրխի ։ Էդ սարի ճըժեր կը մնան էն տեղ։ Շատ կ'աչքեն , քիչ կ'աչքեն , կը տիսնան որ խէր չդարձաւ․ կ'ելնեն չորս դեհ կը գարնուեն , հը՛, մարդ․ մարդասանք չկայ։ Կը դառնան կըմ էն տեղ․ ու մէկ ձէնով կուլան կ'ասեն․

«Վա՛յ վա՛յ,
«Կօռը կայ , կօռտիկը կայ , թաթօն չը կայ․
«Վա՛յ վա՛յ,
«Կօռը կայ , կօռտիկը կայ , թաթօն չը կայ»։

Շատ են նստեր , քիչ են նստեր․ էլեր են․ քոր ւաղբէր մէկը կօռն ի առեր , մէկը՛ կօռտիկ․ ճարը ճամբան մոլորած կը քէլեն։ Իկեր են իկեր ե՛ն հասեր են տիսեր են ձիու ոտաց կոխած փոս մը, որ անձրեւաջուր կայ մէջը․ աղբէր քուրոջ կ'ասի․ Դադէ՛, ծարաւ եմ։ Քոր կ'ասի․ Մի՛ խմեր, կը դառնաս ձի ։

Կուգան կուգա՛ն կը հասնեն եզան ոտաց տեղ․ աղբէր կ'ասի․ Դադէ՛, ծարաւ եմ։ Քոր կ'ասի․ Մի՛ խմեր , եզ կը դառնաս ։

Կուգան կուգա՛ն կը հասնեն գոմշու ոտաց տեղ։

Աղբէր կասի․ Դադէ՛, ծարաւ եմ։

Քոր կ'ասի․ Մի՛ խմեր , գոմշու ձագ կը դառնաս ։

Կուզան կուզա՛ն կը հանեն արջու-տայց տեղ։

Աղբէր կ'ասի. Դաղէ՛, ծարաւ եմ։

Քոր կ'ասի. Մի՛ խմե, արջու քօթօթ կը դառնաս։

Կուզան կուզա՛ն կը հանեն խոզու-տայց տեղ։

Աղբէր կ'ասի. Դաղէ՛, ծարաւ եմ։

Քոր կ'ասի. Մի՛ խմե, խոզ կը դառ-նաս։

Կուզան կուզա՛ն կը հանեն գէլու-տայց տեղ։

Աղբէր կ'ասի. Դաղէ՛, ծարաւ եմ։

Քոր կ'ասի. Մի՛ խմե, գէլ կը դառնաս։

Կուզան կուզա՛ն կը հանեն դառու-տայց տեղ։

Աղբէր կ'ասի. Դաղէ՛, եաման է, ես ծարաւ մեռայ է։

Քոր կ'ասի. Ես ի՞նչ անեմ. հոգիս էլ-նի, կ'ուզես խըմի, պիտի դառնաս դառն։ Աղբէրն ի, կը խմի, կը դառնայ դառն. ու քայելով կ'ինկնի քուրոջ ետեւէն կ'եր-թայ. կը պտըտեն կը պտըտե՛ն, կ'երթա-տուն կը հանեն։

Օր մը օրանց խորթ մէր աղրով կ'ըլնի. իրկան կ'ասի. Քո դառն բե մորթի ու-տեմ։ Հազար ջորով քոր կ'առնի ուր դառ-նիկ աղբէր կը փախնի սարեր. ու յետէն

բառեր երբեք չկան ժողովրդեան բերանը, այլ կամ «Աջ, ձախ» գործ կ'ածեն, կամ լերան մը ու գեղի մը սահմանը, կողմը ցուցնելով կը հասկցունեն ։

Շատ մը այսպիսի օրինակներ կան ։

Քաւ լիցի թէ ես գիտնական Մօւթմանին կամ ուրիշ գիտնականաց և լեզուագիտաց չհաւանիլ կը ցուցնեմ. վասն զի ես այս գրածներէս անդին բան մը չգիտեմ, և ոչ ալ արուեստ մը կամ ուրիշ լեզու մը. այլ միայն մեր ազգային գիտնականաց ուշը կը հրաւիրեմ այս խնդրոյն և այս առաջարկիս վրայ. վասն զի կը փափագիմ ես ալ որ այս պանծալի դարուս լուսաւորութեան սեղանին վրայ դրուած տեսնեմ նաև Հայաստանի հին գրականութեան կնքեալ և փակեալ փառաց մատեանը, յորում ազգային և ընդհանուր հնութեան և պատմութեան գանձեր կան ծածկեալ, և զորս հայերը բանալու միայն կարող են ։ Ես կ'աւետեմ ընթերցողաց, թէ արդէն ծանուցեալ երկու գիտնականք Մեծապատիւ Պ. Քերովբէն Պատկանեան, որ Արևելեան լեզուաց բրոֆէսոր է 'ի Ս. Պետրբուրգ Ռուսաց կայսերական Ակադէմիան, և Մեծապատիւ Յովհաննէս Էֆէնտի Հիսարլեան 'ի Պոլիս՝ որ քաջ հնագէտ և հայագէտ է, երկուքն ալ կը տքնին այս

վսեմ նպատակին համար, որոց անգին բարեկամութիւնն վայելելու շնորհն ունեցած եմ․ յոյս կուտան յաւիտենական մոխիրներէ և մթութենէ սրբել մեր Հայկական ազգի պատմութիւնը սեպագրաց բանալիով․ ինչպէս կան նաև քանի մը հնագէտ և պատմագէտ հետախոյզ ազգայինք։

Այժմ մէկ դի դնելով ազգային լեզուի խնդիրը, գրական ժամանակի և նախնի պատմութեան վրայ խօսինք խուն ինչ։

Նախկին կամ հնագոյն ազգաց գրերը շատ բնական բայց բազմազան ձևերով են․ և ասիկայ ծանօթ է ամենուն, որ Չինաց նշանագիրները և Եգիպտական քանդակագրեր տեսեր են․ կենդանագիր, մարդագիր, թռչնագիր, ծառագիր, և այլ ինչ որ բնութեան մէջ կայ, անոնց նշաններով գրեր յօրինուած կան, խորհրդական նշանակութեամբ։

Դի՛ր դու հայոց հին ձեռագիրները, թէև Մեսրոպեան աւուր և անկից ետքն ալ եղած լինին․ և ահա կը տեսնես հրեշտակագիր, մարդագիր, թռչնագիր, ծաղկագիր, կենդանագիր, ևն։ Երկու մարդ կը գծէ, երկրորդի ոտքին տակէն եղջերաձև նշան մը կ'աւելցնէ, կ'ընէ «Ա»։ Հրեշտակ մը կը գծէ թևերը ծալլած, ձեռքը ծաղկանոց մը կուտայ 'ի կախ, այն է «Ի»։

Օձ մը կը պատատէ՝ տուտը պարանոցի տակէն մտցունելով և դուրս հանելով, այն է «Ծ»։ Թռչնոյ մը անանկ ձև մը կուտայ, որ կը տեսնաս թէ «Հ» է։ Այսպէս բոլոր մեր Այբ բենն մինչ քէն։

Ասոնցմէ զատ կայ նաև փակագիր, որ երկու գիծ գծելով ամբողջ անուն մը կամ բառ մը կը զետեղէ մէջը, մէկալ տառից գծերէն միայն մասն մասն նշանելով։ Իսկ իբրև սղագիր, կամ իբրև բուն նշանագիր իւրաքանչիւր բառը մէկ մէկ գծանիշով մը կը հասկցնէ. ինչպէս ձեռագիր ընթերցողներ տեսած են, աշխարհ, երկինք, երկիր, արեգակն, լուսին, աստղ, տուն, եկեղեցի, եւ։ Գուցէ սոյնք լինին Ս. Մեսրովբէն առաջ հայոց Դանիէլեան ըսուած նշանագիրները։

Կայ նաև տեսակ մը գիր Հայոց, որ աւելի նման համարելու է Եգիպտականին և Չինականին, այն է գերեզմանաքարերու վրայ քանդակուածներն. Վարսավիրայի մը տապանաքարին վրայ՝ մկրատ և ածելի. Հիւսան՝ ուրագ և սղոց. Դերձակին՝ չափ և ձևիչ. Ջինուորի մը կամ քաջի մը՝ սուր և վահան։ Հայաստանի մէջ դեռ կան շատ գեղեր, իմ տեսածներէս Խնուսայ Գարաչօբան գեղին և Բաբերդու Բալախոր գեղին տապանաքարերը ոչ տնկուած խաչ-

քար են 'և ոչ պատկերցուցած կափարիչ․ այլ խոյաձև, ձիաձև, առիւծաձև, ցլաձև հսկայ քարեր, որոց կողերու վրայ սուր, տապար, հրացան, եւ, քանդակուած։ Կայ տեղ տեղ ալ մատաղ օրիորդ մը, հրեշտակատիպ մանկիկ մը, ալևոր մը, տէր-տէր մը, կամ կրօնաւոր մը, որ Սաղմոս և Նարեկ ունի ձեռքը․ սպանեալ մը կամ նահատակ մը՝ ըստ իւր կերպարանաց․ վարդապետի և եպիսկոպոսի գերեզման-ները յայտնի են գաւազանով և ճղլակ թագով։ Ո՞չ ապաքէն և այս ամենը կար-դալ կուտան մեզի առանց տառերու՝ թէ ո՞յք են և ո՞րպիսիք են հանգուցեալք 'ի նոյն տապանի։ Եւ այս ևս հնութեանց նշան մի է։

Այսքան մը ևեթ խօսելով առ այս, կը փութամ Հայրենեաց վէպերու և զրոյց-ներու վրայ ևս սակաւ ինչ գրելու։

Տեսանք ահա մենք թէ գիր շատ հին է մեր ազգին մէջ․ բայց այդ ձև գրեր և բևեռագրեր և կղմինտրները կը գոր-ծածուէին միայն մեծամեծ և նշանաւոր անցքերու և յիշատակներու․ իսկ հասա-րակութիւն կը մնար անհաղորդ և անձե-ռընհաս։ Միթէ միջին դարու մէջն իսկ՝ երբ այնքան դիւրացած էր ձեռագիրն 'ի թուղթ, դարձեալ անհաղորդ և անձեռն-

հաս չէ՞ր ժողովուրդ գրելուն և կարդալուն մինչև ցկուրթթէմպէրկի տպագիրն ,

Այս այսպէս լինելով. սակայն ժողովրդեան միտքն ու բանականութիւնը չէր կարելի մնալ անգործ և անզգայ. Նա իր տեսած, լրած, ու լսած անցքերը կը խօսէր բերանացի, կը շարադրէր կը վիպասանէր բանացի. և իր զգացած սէրն ու թախիծ կ՚երգէր կը մրմնջէր թէ յանձին առանձին և թէ յընկերութեան. անշուշտ երևակայութիւնն ալ բան մը կը յաւելուր բուն եղածին վրայ, բան մ՚ալ լսողը կը յաւելուր՝ երբ ինքն ևս այլում կը հաղորդէր։ Մինչև ցայսօր ևս վէպեր ու գրոյցներ, որ կը շինուին թէ բերանացի, և թէ գրաւոր. յօրինող վիպասանն ։սա ստոյգ նշանով մը կը հասկցուի ուր տեղացի լինելն. Նա իր խօսքերը կը յօրինէ իր բնակած գաւառի բնակչաց տեղական սովորութեան և կլիմային և իր շուրջ գտնուած բնական կենդանեաց և վայրաց անուամբ՝ և նմանութեամբ՝ և նկարագրով։ Ծով չունեցող գաւառի մը վիպասանը ծովու վրայ գաղափար չունենալով, երբէք զայն չգործածեր իր ասից մէջը. իսկ Վանցին իր տաղին, ողբին, խաղին և խօսքին մէջ յաճախ կը խառնէ. մերթ գեղեցկի մը աչքը ծովի կը նմանցնէ. մերթ

՚յուզեալ սիրտը՝ ծովի ալէծուփին, ևն։

Վէպն ու գրոյցը, որ ժողովրդեան բերնով «Հէքեաթ» է, յօրինուած կը լինի բարոյական խրատու համար. և իբր դիւցազներգութիւն՝ քաջաց քաջութիւն հռչակելու կամ այլոց օրինակ տալու համար։ Հէքեաթներու շարադրութեան մէջ միշտ կարգ մը կայ. ուղևորութիւն. հեռաւոր և անծանօթ աշխարհները. հրաշալի և ահռելի նկարագրութիւնք վայրաց և անձանց. դիպուածք. արկածք 'ի նենգութենէ ընկերաց կամ եղբարց, երբեմն ևս 'ի ծնողաց։

Արտահարականն ամեն հէքեաթի աղն է. բաւական ճարտար հանգոյցներ ու կապեր ունի. բարի և չար ոգեաց՝ ջիներու դէւերու դերեր. անմահութեան ջրոյն և պտղոյն, տեղւոյն և կենաց միշտ հետամուտ։ Ի պաշտօն կը կոչուին կենդանիք, գազանք, և թռչունք. որք իւրաքանչիւր մէկ մէկ մարդ անձանց դեր կը կատարեն։

Դիւցազունք և դիւցազնուհիք երբ 'ի հանդէս կուգան, և երբ ճապուկ ճարտար լեզու մը զանոնք կը գրուցէ, մարդու մտաց առջև կը պզտիկնան Հերակլեայ դիւցազնութիւնք. Ոսկի գեղման հէքեաթն. Տրովադայի վէպն. Ոդիսևսն և իւր կղզիները

Ներկորեայ պատրաստւածներն, յորս Հոմերոս կը պանծայ. կամ Ցելլեսոֆաքն ու Կալլիփսէն, և որ իրօք ժողովրդական վէպեր են ։

Ո՞չ ապաքէն վէպ ու զրոյց են մեր Մեծին Խորենացւոյ յիշած Շամիրամայ աղուական ծնունդն ու սնունդն, անոր տարփանքն և արարքն ։ Ի՞նչ է Աժդահակայ անունն, օձ. անոր երազքին լու միտ դիր. անոր խորամանկ խնամութիւնը. մեր Տիգրանեան իմաստութիւնն. Տիգրանին անձին և քաջութեան հանգամանքը ։ Վահագն՝ իր անունով. երկնից և երկրի որդի. երկն. ծով. կարմրիկ եղեգնիկն. բոց. հրածին. հրահեր. արեգակն աչն ։ Ի՞նչ անուն է վարդ դէս. — վարդահեր. Հրաշեայն. Հսկայորդին. Գոռ. Գոռակն. են ։ Ո՞վ է Հայոց Տորք սարսափելի Նախարարն. ո՞ր աստուծոյ տուրքն է նա. որ մէկ ձեռնով որձաքար վէմեր կը փշրէ, լեռներ կը տապալէ, բլուրն իբրև պարսքար մը կը նետէ. քանի՛ ահարկու է անոր կերպարանքը, քանի՛ անսահման անոր ուժը ։ Երուանդին Արշակունւոյ չար աչքերէն մարդ և վէմ պատառուած են ։ Արտաւազդն պատուղն Սաթինկան տարփանաց բարձիցն Արգաւանայ, դիւաց յափշտակութեան և փախարինութեան արժանի. 'ի վիհս Մասեաց անոր կործանումն. 'ի քաջաց կալեալ կապ-

եալ մնայ, անմահ մնայ, բայց լոյս չտեսա-
նայ. չունք անոր շղթաներ կրծեն. դար-
բինք սալը հարկանելով անոր շղթաները
հաստատկուեն, որ չելնէ վախճան տայ աշ-
խարհին։ Ի՞նչ է Սանատրուկ. չան դատած
տղան։

Իսկ Բիւրասպեանց վէպն բացարձակ
առասպել կ՚անուանէ Խորենացի հայրն,
և անոր մէկ քանի մասերը մէջ կը բերէ։

Այսպիսի առասպելաց մէջէն ծագած
են և 'ի նոյն մնացած ամեն հին ազգաց
Նախնականութիւնը։ Ամենուն գիտցած
բանն է թէ՝ Աղէքսանդր Մակեդոնացին
Փիլիպպոսի որդին նոյն իսկ Արիստոտէլեան
օրերուն մէջ ծնած, «Վիշապի ծնունդ»
է։ Հռոմմայ հիմնադիրները «Հովուի մը
այծու կաթով 'ի վայրիս սնած», եւ։
Դիւցազանց ինչպէս ծնունդն, նոյնպէս և
վախճան կամ փոխումն յաստեաց հրա-
շալի են. ո՛ր յԱստեղատունս համբարձեալ.
ո՛ր յամպրոպս. ո՛ր 'ի ջուրս և 'ի կղզիս կը
բնակի յաւէրժապէս. ո՛ր յանդունդս 'ի
դժոխս. ո՛ր փոխակերպեալ 'ի ծաղիկ. ո՛ր
'ի ձուկն. ո՛ր 'ի գազանս և 'ի ցիռս վայ-
րենիս, եւ։ Կան դիւցազունք ալ, որոց
անուանք և անոնց անուամբ լերինք, աշ-
խարհ, քաղաք, բերդ, կոթող, ջուրք ան-
բարբառ կը պատմեն մեզ անոնց վէպերը։

Կը խոստովանիմ թէ իմ այստեղ գրելիք վէպերը այնքան հին և վսեմ չեն. բայց կրնանք օրինակ տալ բանասիրաց, որ հետեւին ձեռք բերել աւելի հնագոյնները, և իրենց ուշադրութիւնը դարձունեն ժողովրդեան շուրջ և բերանը եղած ամեն զրուցաց և աւանդութեանց։ Կրնան ասոնցմով գրասէրներն ալ ազգային գրական վէպեր յօրինել. բաւական օտար ազգաց վէպերը յեղափոխուեցան 'ի մեզ, որոց կեանքն ու հանգամանքը մեզմէ օտար գոլովհանդերձ, այսօր առաւել ծանօթ են Հայ ընթերցողին քան մեր ազգային վիպական հայրենական կեանքն ու հանգամանքն։

Ցայսմ՝ առաջին հանդիսացած է Թիֆլիզի ուսուցչական Պ. Ղ. Աղայեան «Երկու քոյրեր» վիպասանութեամբ։ Եւ 'ի մեզ գիտնականն Հիսարլեան, «Նեռն և կատարած աշխարհի» վէպով։ Նաև Արև. Մամլոյ խմբագիր Մեծ. գրագէտ Մ. Էֆ. Մամուրեանն «Սև լերին մարդ» ով։ Իմ սիրելի բարեկամ և հայրենակիցս բանասէր Պ. Սեդրակ Տ. Սարգիսեանցն ևս մի պատուական նոր երկասիրութիւն յօրինած է «Շատախն ո՞ւր Սիպիրն ո՞ւր». որ կատարեալ Հայկական վէպ մի է, արդարև գնահատելու արժանի. զոր 'ի լոյս պիտի

ածէ 'ի մօտոյ ։ Գուցէ կան այլք ևս , որոց ես հանդիպած չեմ ։

---

# 1.

## ԳԱՌՆԻԿ ԱՂԲԷՐ

Ռուբեւէրի կնիկ մը կ'ելնի , մէկ աղջիկ ունի ։ Էրդ կնիկ կ'երթայ իրկան . էն իրիկն էլ մէկ լաճ մէկ աղջիկ ունի ուր առջի կնիկից ։

Կնիկ՝ կ'անի չանե՝ չում իրիկ գլխուց կը հանի , մարդու ճար ճարանք կը կտրի , իլլահ ուր լաճն ու աղջիկ պիտի տանի սարերաց գլօխ կուրիսի ։ Օր մը քանիմ՝ հատ թափթափայ հաց կը թխի կը դնի տուրիկ , կ'առնի ուր ճըժեր կ'երթայ սարերնը վեր . կ'երթայ կ'երթայ կը հասնի անասուն տեղ մը , ճըժերաց կ'ասի . Կըտոր մը նստենք ըստայ հանգ առնենք ։ Տղէյներն ի կը նստեն ։ Խէրն ի , իրես կը հրջի մէյ դեհ , ընքուռ ընքուռ կուլայ ։ Կը դառնայ տղէյներաց կ'ասի . Ճըժեր , պըտուճ մը հաց կերէք ։ Կուտեն կը պռծնեն ։ Լաճ վէրուց սաաց . Բաքօ՛, ծարաւ եմ ։ Խէրն ի ուր ձեռաց կօռ կը տնկի գետին , ուր կօռտիկ կը հանի թալի վէր կօռին . կ'ասի . Արե , իմ լաճ , արե իմ կօռտիկի հովը նստի .

Ես երթամ տիսնամ գո՞ր ջրի աղբիւր կայ։ Քոր ւաղբէր կը նստեն․ խէրն ի կը թողնէ կ'երթայ մէյ դեհ կը կուբիսի ։ Էդ սաբի ճըժեր կը մնան էն տեղ։ Շատ կ'աչքեն, քիչ կ'աչքեն, կը տիսնան որ խէր չդարձաւ․ կ'ելնեն չորս դեհ կը զարնուեն, հը՛, մարդ մարդասանք չկայ։ Կը դառնան կըմ էն տեղ․ ու մէկ ձէնով կուլան կ'ասեն․

«Վա՛յ վա՛յ,
«Կօռը կայ, կօռտիկը կայ, բաբօն չը կայ․
«Վա՛յ վա՛յ,
«Կօռը կայ, կօռտիկը կայ, բաբօն չը կայ»։

Շատ են նստե, քիչ են նստե․ էլեր են քոր ւաղբէր մէկը կօռն ի առե, մէկը կօռտիկ․ ճարը ճամբան մոլորած կը քելեն։ Իկեր են իկեր ե՞ն հասեր են տիսեր են ձիու ոտաց կոխած փոս մը, որ անձրեւաջուր կայ մէջը․ աղբէր քուրոջ կ'ասի․ Դադէ՛, ծարաւ եմ։ Քոր կ'ասի․ Մի՛ խմե, կը դառնաս ձի ։

Կուդան կուդա՞ն կը հասնեն եզան ոտաց տեղ․ աղբէր կ'ասի․ Դադէ՛, ծարաւ եմ։ Քո՛ր կ'ասի․ Մի՛ խմե, եզ կը դառնաս ։

Կուդան կուդա՞ն կը հասնեն գոմշու ոտաց տեղ։

Աղբէր կասի․ Դադէ՛, ծարաւ եմ։

Քոր կ'ասի․ Մի՛ խմե, գոմշու ձագ կը դառնաս ։

Կուզան կուզա՛ն կը հասնին արջու-ոտաց տեղ։

Աղբէր կ'ասի · Դաղէ', ծարաւ եմ։

Քոյր կ'ասի · Մի' խմե, արջու քօթօթ կը դառնաս։

Կուզան կուզա՛ն կը հասնին խոզու-ոտաց տեղ։

Եղբէր կ'ասի · Դաղէ', ծարաւ եմ։

Քոյր կ'ասի · Մի' խմե, խոզ կը դառնաս։

Կուզան կուզա՛ն կը հասնին գէլու-ոտաց տեղ։

Աղբէր կ'ասի · Դաղէ', ծարաւ եմ։

Քոյր կ'ասի · Մի' խմե, գէլ կը դառնաս։

Կուզան կուզա՛ն կը հասնին գառու-ոտաց տեղ։

Աղբէր կ'ասի · Դաղէ', եամման է, եա ծարաւ մեռայ է։

Քոյր կ'ասի · Ես ի՞նչ անեմ, հոգիս էլը-նի, կ'ուզես խըմի, պիտի դառնաս գառն։ Աղբէրն ի, կը խմի, կը դառնայ գառն · ու քայելով կ'ինկնի քուրոջ ետևէն կ'եր-թայ · կը պտըտեն կը պտըտե՛ն, կ'երթան տուն կը հասնին։

Օր մը օրանց խորթ մէր աղջով կ'ըլնի · իրկան կ'ասի · Քո գառն բե մորթէ ու-տեմ։ Հազար ջորով քոր կ'առնի ուր գառ-նիկ, աղբէր կը փախնի սարեր · ու յըմէն

օր կը տանէր արածալ․ ինքն էլ առչկան կը մանէր։ Մէյ դիր աղջկան ձեռնէն առչըկան կը փրթնի կ'իյնի փոս էրի մը մէջ․ գառն կը մնայ վեր կ'արածայ, աղջիկ կ'երթայ որ առչկան բիրի․ կը մտնի յէր, կը տեսնայ որ ի՞նչ․ դէւու հազար տարեկան պառաւ մը պառկեր էն տեղ։

Նադաստան աչքը կ'առնի աղջիկն, ու կ'ասի․

Աղջիկ հաւքն ուր թեւով, օձն ուր պորտով չէր կանայ գայ ըստայ, դու ի՞նչխ էկար։

Աղջիկն ուր ահուն կ'ասի․ Քո սէր ձիկ իբե, մամիկ։

Կ'առնի կը նստի․ սարից ձորից հարցմունք կ'անի։ Էս աղջիկ շատ դիւր կուգայ դէւի պառուուն․ Երթամ քիչ մը ձուկ բիրեմ, կե, կ'ասի, անօթի ես մըկայ։ Բիրած ձըկներ մէկ մէկ փիշապ օձ են։ Աղջիկ կը զահահորի․ գահնի լեղին պատռի․ ուր ահուն կուլայ։ Պառաւ կ'ասի․ Աղջիկ քնչի՞ կուլաս։ Աղջիկ կ'ասի․ Մէրս միտս կ'իյնի, կուլամ։

Ու կը նստի ուր գլխու էկած բաներ նաղլ կ'անի պառուուն։ Որ ըսկունի, կ'ասի պառաւ, դէ դու նստի, ես իմ գլօխ դընեմ քո գոգ քընեմ։ Կրակ կը վառի, խաչերկաթ կը դնի կրակի մէջ․ աղջկան կ'ասի․

Թէ որ Սէն էկաւ գնաց, ագահ մ'անէր· ինչ գահ որ Կանանչկարմիր կուգայ, կրակցած խաչերկաթ դիր վէր իմ ոտաց, որ ագհեմ ելնեմ վեր։

Աղջկան հոգին դառձե քանձ կորեկի մը հատ· աման ի՞նչխ անի։ Կը նստի· պառաւնի գլօխ կը դնի վէր աղջկան ծըն-կուերաց կը քնի։ Քիչ մը կենայ, կը տեսնայ որ գազան անհաւատ Սէն կուգայ կ'ընցնի, ըսկի ձէն չհանե աղջիկ։ Քիչմ' էլ կը կենայ, կը տեսնայ որ Կանանչկարմիր կուգայ· էն գահն ինե աղջիկ՝ խաչերկաթ բարկ կրակ դարձած՝ կը վերցի թալի վէր պառուու ոտաց· պառաւն ի Օ՜փ կ'ասի, լուեր կծեցին· ու կ'ագհի։ Աղջիկ ձէն կուտայ, պառաւ կ'ելնի, աղջիկ կը կայնըցուցի· Կանանչկարմրի չողերաց աղջկան մազերն ու հալաւներն ըմէն կը դառնան ոսկի։ Աղջիկն ի կ'ելնի պառուու ձեռ կը պագի, իզին կ'առնի, կ'ելնի ուր գառնիկ աղբէր կ'առնի կ'երթայ տուն։ Մօր մօտէն գաղտիկ Թորուան չուրթը կը փորի, ուր ոսկի հալաւները կը պահի· հին հալըըներ կը հագնի նստի։ Խորթ մէրնի կուգայ տուն կը տեսնայ որ, էս աղջկան ծամեր ոսկի են։ Կ'ասի· Աղջիկ էն ի՞նչ աբիր, որ ծամերդ ոսկի դարձան։

Աղջիկն ի տեղոց տեղ կ'ասի։

Խորթ մէր որ կը լսէ, էն մէկէլ օր կ'ելնի ուր հալալ աղջիկ կ'օրօխկի էն սա-րը · առուչկան ձեռնէն կը փրթուցի կ'իյնի մէջ էրին · կ'երթայ որ առնի, դէւու պա-տոււ փոր գէշ ու գարշէլ բան մը կը դառ-ցուցի կ'օրօխկի ։ փոշման կ'ելնեն, ամա՜ն ինչխ անեն ։

Օր մը էդա քաղքի թագաւորի տուն հարսնիս կայ · թագաւորի լաճ կը փռակեն-աշխար երկիր կը թափի թամաշայ ։ Էսայ կնիկն էլ կ'էլնի ուր չապիկ մըխմէլ կը հագնի · մէտակ կը քաշի ուր աղջկան գլօխ, քօ ուզածի պէս կը զարդըրրի, կ'առնի կ'երթայ թամաշայ ։ Որբ աղջիկն էլ կ'ելնի ուր ոսկի հալըընէր կը հագնի, ոտով գլխով կը դառնայ խուռնի խրեղէն · կ'երթայ հարս-նիս թամաշայ ։ Դառնալուն հրեղէն աղջիկ կը վազի որ քանձ մէրն առաջ դայ տուն, հալըընէր հանի պահի · թափ վազելուց, ոսկի սօլի թակ կ'իյնի մէջ աղբրին · թա-գաւորի ձիանք կը բերեն ջուր խմելու · ձիանտերաց աչքը կ'իյնի ոսկի սօլ, կը խրտնեն, ջուր չեն խմէ ։ Թագաւոր քան-քան կը կանչի կը մտուցի աղբրի ակը հոր-դելու · ոսկի սօլի թակ կը գընդըընեն հա-նեն դուրս ։ Թագաւոր դալալ կանչել կուտայ, թէ՝ էսա սօլի թակ վիր ոտնով ըլնի, էն կը բերեմ իմ լաճուն ։

Մարդ կ'իսկեն չորս դեհ քաղքի մէջ ըմէնի տոն էլ կը չափեն ։ Կ'երթան կը հասնեն դառնիկի տուն . խորթ մէրն ի կը բռնի որբ աղջիկ կը մի թոնէր կը ծածկի , ուր աղջիկ նշանց կուտայ ։

Ագլօրն ի ուր թառից կը թռնի , կը վազի կուգայ տան դռան շեման վէրէն կը կայնի , իրեք բերան կը կանչի · «Կուկլուկուկո՛ւ . խաթմա խաթըն թանդըրգայ դըր» ։ Մարդերն են , համան կը բռնեն մէր կը մնչկեն դէն , աղջիկ թոնրից կը հանեն , տանով կը չափեն ։ Նա՛, երթանք , կ'ասեն , թագաւորի հարս դու ես ։

Աղջիկ թոնրի շուրթը կը քակի , ուր ոսկի հալըըներ կը հագնի · ուր գառնիկ աղբէր կ'իսկի առջև կ'էրթայ · եօթն օր եօթն գիշեր հարսնիս կ'անեն . կը փսակեն վէր թագաւորու լաճուն ։

Խորթ մէր օր մը կ'առնի ուր հալալ աղջիկ կ'երթայ թագաւորու տուն՝ մէկէլ աղջկան տես · աղջիկն ի՝ ինչքանդար չըլնի ուր մօր տեղն ի , կ'առնի կ'երթան խաս բաղչէն · բաղչից կ'ընցնեն կ'երթան ծովու պռուկ կան կուգան · կը վերցի խորթ մէր կ'ասի · Քալա , աղջիկներ , էկէք մտնենք ծով լողգնանք · կը մտնեն ծով ։ Խորթ մէր էն հրեղէն աղջիկ կը դըմչկի ծովու օրթէն · պէտ ձուկ մը կուգայ աղջիկ կուլ կուտայ ։

Մէր կը ժողուէ ոսկի հալաւներ կը հագուցի ուր աղջկան՝ կ'առնի կ'երթայ թագաւորու-տուն, կը նստցուցի հարսի տեղ. աղջկան քիթ բերան, աչք ունքեր ծածկուկ ի, մարդ չ'իմնայ, մէրն էլ մարդու խոսա չիգայ ։

Էն մէկէլ խեղճ աղջիկ քանի մ'օր կը մնայ ձկան փոր. օր մը գիշըրուան ժամհարի ձէն կ'առնի, ինքն էլ ձկան փորից կը կանչի ։

«Ճամհար, ժամհար, որ քո ժամ կը կանչես.
«Եօթ խաչ քո իրես կը հանես.
«Դու քո բարիլուսու Աստուած կը սիրես.
«Երթաս թագաւորի լաճուն խաբրիկ մը տանես.
«Ասես. իմ գառնիկ աղբէր չը ղենես»։

Ճամհար մէկ երկու դիր էսա ձէն կը լսի. կ'երթայ թագաւորի լաճուն կ'ասի. թագաւորու լաճն ի մէկ գիշեր կ'ելնի կուըդայ ժամհարի հետ ծովու պռուկ կը կայնի ականջ կ'անի. ձէնից կ'իմնայ որ ուր հուրնի հրեղէն կնիկն ի. թուր կը չըլտի, զինք կը թալի ծով. թրով ձկան փոր կը ճըղի, աղջիկ կը գրկի հանի դուրս. կ'երթան տուն. կը կանչի խորթ մէրն ուր առջև, կ'ասի. Ջօքա՛նչ խաթուն, ասա, քե ի՞նչ հաղեայ պիտի. գարուկէր ձի՞ մը թէ սևկոթ դանակ մը ։

Ջօքանչն ի կ՚ասի · Սեւակոթ դանակ քո չարկամի փորը· ձիկ գարուկեր ձին պիտի։

Էն գահն ինե մէր աղջիկ կապել կուտայ ձիու պոչից · սէխսին կ՚ասի · Քե տխնամ, տա՛ր, զա՛ր, սարէ սար, քարէ քար, չում ճոչ կտոր ականջ մնայ ու մէ յմէկ բուռ գլխներրաց մազ· բե ւարի։

Հարսն ու փէսէն առին մէ յմէկ նստան· Գառնիկ աղբէրն էլ ուրենց հետ։ Ինոնք գնտան ուրենց պալէն · Իսոնք հասան ուրենց մուրատին։

Երկնուց իրեք խնձոր ինկաւ։

---

2.

## ԱՆԽԵԼՔ ՄԱՐԴ

Ժամանակով մարդու մէկ չատ ունեւոր կ՚ըլնի · ու քուռ ծուռ տպրելով ինչ որ կայ չը կայ զըմէն կ՚ուտի կը նստի · հաց թաց կը կըտրի վէրէն · մէկ ձեռն կը դնի ծոց, մէկ ձեռն իրեսին՝ կը մէզի վէր ուր հալքին, ա՛խ վա՛խ անելով կը հալի մաշի։

Ուր ճանչւորներ կը ժողվեն կուգան խռոր բոլոր, ու ինոնցից հալիւոր մը կը վէրցի կ՚ասի · Դու բան մ՚արքըրես, քո դօլվաթ քեզնից խլտներ փախեր ի · էմ՛

դնա քո դօլվաթի խուն, բաղքի դռներս ձեռ բերես, առաջուայ պէս բաղդաւորուես :

Գլխու ինկաւ մարդ . էլաւ զինքն խառա տարեր քարեր, գիշեր ցերեկ ուր դօլվաթ կը փըռտուէր : Գիշեր մը քընաւկ տեղ էրազի մէջ կը տեսնայ որ ուր դօլվաթ բանձր սարիմ՛ գլօխ ինկուկի բերանսըմէր . ա՛խ վա՛խ կ՚անի ուր պէս : Առաւօտուն հետ զարթելուն. կ՚ելնի կը շիտկուի դեհ էն սար :

Կ՚երթայ կ՚երթայ, կը տեսնայ որ ճամհու վէրէն ասլան մ՚ի նստեր . Ասլան կը կանչի մարդուն կը հարցուցի . Դո՞ր կ՚երթաս : Մարդ կ՚ասի . Կ՚երթամ իմ դօլվաթ գտնեմ : Ասլան կ՚ասի . Ես գիտեմ քո դօլվաթ շատ գիտուն ի . ուրմից հարցու տե ես ինչո՞վ կը ծրեմ . (էսա եօթ տարի է որ անկըյցեր եմ .) դառնալուդ արե ձիկ ասա . ես էլ իմ ձեռնից էկած աղէկութեն կ՚անեմ քե : — Մարդ խօսք կուտայ, կ՚ընցնի կ՚երթայ :

Կ՚երթայ կ՚երթայ, կը տեսնայ իդի մըն որ հազար նըմուշ պըտղով լցուկ ի . քանի՛ կը քաղի որ ուտի, կը տեսնայ որ լեղի են : Իդու տէր ռասա կուգայ, էս մարդուն կը պըծտի . սօրսայ կը հարցուցի դո՞ր կ՚երթաս : Մարդն ուր դարդը կ՚ասի իդու տիրոջը — Որ ընկուն ի քո դօլվթից հարցու իմ իդու դարմանն ինչ ի, որ ինչ կ՚անեմ

Ջրհէլը կը տխնայ, կ'ասի. Քո դեղն էն ի, որ դու կտրիճի մը հետ փսակուես, քո դարդն ու ցաւ կ'ընցնի։

Կուգայ իգին. իգու տէր կը կանչի, կ'ասի. Քո իգու ջուր ո՛ր առուից որ կուգայ, էն առուի մէջ ոսկւոյ մաղան կայ, ոսկւոյ փշրանք ջրի հետ կուգայ, ծառեր կը ծծեն, պտըղներ կը դառնանան. եա ջրի առուն փոխի, եա մաղան քակէ հան դուս, պտըղներաց համը կ'անուշնայ։

Կուգայ ասլանի մօտ կը նստի մարդ. նաղլ կ'անի ուր դօլվաթ տխնալը, իգու տէրն ու ջրհէլն։ Ասլան կը հարցուցի կ'ասի. Ջրհէլ քե աղէկութեն մը չարա՞ց։ Մարդ կ'ասի. Ասաց արե ձիկ առ, նըստենք մէկտեղ Աստծու բարութեն վայելենք. ես ղայիլ չեղայ։

Ասլան կը հարցուցի. Իգու տէ՞րն ինչ աղէկութեն արաց։ Մարդ կ'ասի. Իգու տէր ոսկւոյ մաստաններ քակեց իհան, կօլօն մը ոսկի էլաւ, իտու ձիկ. եռ չառի, ասի. Ո՞վ իդոնք կը շըլկի կը տանի չաւմ տուն։

Է՛, կ'ասի, ասլան. Ձիկ համար ի՞նչ դեղ ասաց։ Մարդ կ'ասի. Քե համար էլ ասաց, որ անխելք մարդու մը գլօխն ուտի կը ժրի։

Ասլան աղէկ մը վեր դիր կ'անի խօսը ասածները. յուշիկ մը թաթը կը պարզէ,

դէն մարդու գլօխը․ կը բռնի ղարնի գետին, կը փշրի կ'ուտի ։ Կ'ասի․ Ես՝ իմ Աստուած․ քանձ քե անխելք մարդ չեմ կանայ գտնե աստուորիս իրես ։

---

## Յ.

## ԲԻՒՐԱՊԱՏԻԿ

Կ'էլնի կ'էլնի մէկ մարդ մէկ կնիկ․ էսայ մարդ շատ ժամաւէր կ'ըլնի․ զըմէն օր կ'երթայ ժամ, օր մէկ ղուրուշ կուտայ տէրտէրոջ ։ Տէրտէրն էլ զըմէն օր ինոր կ'ասի․ Օչնած, Բիւրապատիկ մէկին տեղ հազար տայ քե․

Մարդ կ'ուրախանայ, ուրն ուր կ'ասի․ էս աղէկ բան ի․ մէկ կուտամ հազար պիտի առնեմ։

Երթալով գալով ինչ որ ունի կուտայ տէրտէրքջ, կ'աղքըտնայ ։ Կնիկն ի կ'ասի էս մարդուն․ Էլի՛ գնա մօտ տէրտէր, հազար մը բե տանք մե հացի մացի, չում էն մէկէլ հազարներն էլ եաւաշ եաւաշ թող տայ ։

Մարդ կ'երթայ․ — Օչնեա՛ 'ի տէր․ — Աստուած օրհնէ ։ — Տէրտէր ջան, եա

քե ընկուամ տուրի, որ հազար հազար տաս․ մըկայ քե մէկ հազար տու առնեմ․ էն մէկէլներն էլ սօրայ կուզամ տու ։

—Օրհնա՛ծ, կ՚ասի տէրտէր, դու ձիկ տուիր, որ Բիւրապատիկը քե մէկին հազար տայ ։

—Բիւրապատի՞կ որն ի ։

—Ճամբան մը նշանց կուտայ ։ Էսա էրկէն ճամբան կը բռնես կ՚երթաս․ մէկ ճոչ մարդ ուսատ կուգայ, որ ոսկի աթոռի վէրէն նստուկ կ՚ըլնի, Բիւրապատիկն էնի․ կ՚ասես․ Ջիկ տէրտէրն օրօխկեց, մէկ տուեր եմ՝ հազար պիտի տաս ։

Մարդն էն էրկէն ճամբան կը բռնի կ՚երթայ ։ Կ՚երթայ մէկ էրի մը ուսատ կուգայ․ կը մտնի ներս, կը տխնայ որ ի՞նչ քառասուն հոգի ջալալի դող շարուեր են, խոզ պատիւ կ՚անեն, տեղ կը բանան, կ՚առնեն ուրենց մէջ կը նստեն ։ Կը դառնան կը հարցուցեն․ Դու ո՞վ ես․ էս քանդար ճամբանակ մարդ մանա չէր եկե ըստայ․ ո՞ւստ կուգաս, ո՞ւր կ՚երթաս ։

Մարդ կ՚ասի․ Կ՚երթամ Բիւրապատիկին․ մէկ տուեր եմ, հազար կ՚առնեմ ։

Գողեր կ՚ասեն․ Աղբէր, էդ խելք՝ խելք չէ, ականջ մ՚անե․ արե՛ բառկղէն քե լէփ մը ոսկի տանք, դարձիր գնա քո տուն ։

—Չէ՛, կ՚ասի մարդ, էդա փարէն հալալ չի: Գողեր կ՚առնեն. Որ ընկունի դատարկ մարդ եմ. կ՚երթամ Բիւրապատիկին հարցու մը համար մէկէլ աշխարհ տեղ կա՞յ: —Վէր իմ գլխուն, կ՚ասի մարդ . . . կ՚երթայ: Կ՚երթայ հալիւորի մը ուստ կուգայ, որ նստեր քարի մօտ. Հա՛ կ՚ասի. Փառք քեզ Աստուած, փառք քեզ Աստուած: Քանի էն կ՚ասի, քարից հա ոսկի կը բխայ:

Հալւոր կը հարցուցի էս մարդուն. Աղբէր դո՞ւր կ՚երթաս: Կ՚ասի. Կ՚երթամ Բիւրապատիկին մէկ տուեր եմ, հազար կ՚առնեմ:

Հալւորն ի կ՚ասի. Արի էսա ոսկուց կուց մը տամ, ու ետ դարձի:

Չէ՛, կ՚ասի մարդ. էդա ոչ իմ տուածն ի, ոչ իմ վաստակածն ի. ծիկ հալալ չի:

Հալւոր կ՚ասի. Որ ընկուն ի, կ՚երթաս Բիւրապատիկին հարցու ե՞բ պիտի կըտրի ոսկին էս քարից: —Վէր աչքս, կ՚ասի մարդ, ու կ՚երթայ:

Կ՚երթայ ճամփի վէրէն մէկ բաղչապան մը կը տեսնայ, կը հարցուցի. Ճղամբի՛ն, դո՞ւր կ՚երթաս: Մարդ կ՚ասի. Կ՚երթամ Բիւրապատիկին մէկ տուեր եմ, հազար կ՚առնեմ:

Բաղչապան կ՚ասի. Կ՚երթաս հարցու

Բիւրապատիկին · ինչի՞ իմ բաղչի պատը որ քաշեմ, պըտըղներ կանանչներ ըմէն կը չորնան · պատը որ քակեմ կը կանչընան ։ —Վէր իմ իրիսին, կ'ասի մարդ ու կ'երթայ ։

Կ'երթայ կը տեսնայ որ տէրտէր մը մէջքէն հետ դըրեր են պատի մը մէջ, կը տըքտըքայ ։

Տէրտէր կը հարցուցի կ'ասի · Ո՞դի դո՞ր կ'երթաս ։ Մարդ կ'ասի · Կ'երթամ Բիւրապատիկին մէկ տուեր եմ, հազար կ'առնեմ ։

Տէրտէրն ի կ'ասի · Կ'երթաս բիւրապատիկին հարցու · ես ե՞բ էսա պատից պիտի ազատուեմ ։

—Աղէկ կ'ըլնի, կ'ասի մարդ, ու կերթայ ։

Կ'երթայ կը տեսնայ որ մէկ ճոչ մարդ մը ոսկի աթոռի մը վէրէն նստե · խոր կը հարցուցի · Դո՞ր կ'երթաս ։

Մարդ կ'ասի · Բիւրապատիկ դո՞ւ ես ։ Կ'ասի · —Հա ես եմ · ի՞նչ կ'ուզես ։ Կ'ասի · Մեր տէրտէրն ի ձիկ օրօխկէ ։ Ես քե մէկ տուեր եմ, դու ձիկ հազար պիտի տաս ։

Բիւրապատիկ կ'ասի · Կ'երթաս քու տուն, բակիդ մէջ թըթի ծառ մը կայ, ինոր տակ կը փորես, կարասմ' ինին ոսկի

Կ՚ելնի, կ՚առնես քու մէկի տեղ հազար հա-զարոց ։

Էն մարդ կը դառնայ ինչ որ ապսպրեր էֆն կ՚ասի Բիւրապատիկին. ու գըմէնի ջուղաբն էլ կ՚առնի կը դառնայ.

Կուգայ պատի մէջի տէրտէրին կ՚ասի. Ի՞նչ գահ որ Աստծուն մեղայ գաս, էդտեղից կ՚ազատուես.

Տէրտէր կ՚ասի. Ես ի՞նչխ մեղայ գամ Աստծուն ։ — Խօսքը բերան, մէկէցմէկ պատով մատով կ՚երթայ գետնի տակ ։

Մարդ կ՚երթայ կը հասնի թաղչապա-նին. կ՚ասի. Քու թաղչի պատեր քակի, որ ընցնող դարձող ուտի, թաղչէդ կը կա-նանչի ։ —Տէլ խօսք բերան էր, թաղչա-պան հասաւ պատեր քակեց. թաղչէն կա-նանչաւ ։

Մարդ կ՚ընցնի կ՚երթայ մօտ հալւոր. կ՚ասի. Քանի Աստուած քո բերնից չես պակըրցուցե, քարից ոսկի չը պակսե ։ Հալւորն ի կ՚ասի. Ըսկի մարդ Աստուած ուր բերնից կը պակըրցո՞ւ. փառք Աստ-ծու ։ Կ՚ասի չասե, քարի մէկէլ իրեսէն էլ ոսկի կը բխայ քանձ առջին շատ ։

Մարդ կուգայ գողերու յէրի մէջ. գո-ղերաց կ՚ասի. Թէ որ ձեր գողութեն թարկէք, էն մէկէլ աշխըրի մէջ ձե տեղ կ՚ըլնի ։ Գողեր կը թարկեն ուրենց էրը,

ու կ՚երթան ուրենց մեղքեր կուլան, կը փրկուեն:

Մարդն ի կուզա՛յ կը հասնի ուրենց տունը. կնկան կը կանչի, կ՚ասէ. Կնիկ, բահ ու փէշտամալ բեր: Կ՚առնեն բահն ու փէշտամալ, թըթի ծառի տակ կը փորեն. կարասմ՝ լիքն ոսկի կը գտնեն: Կնիկուն կը մըթնի, կը թողնեն առաւօտուան կարաս հանել: Գիշեր գողեր կ՚իմանան, կուզան կարաս գողնան տանեն. կը տեսնան որ դեղին հող ի մէջը, կը վերուցեն կարաս չուռ կուտան էն մարդու բաղչէն. կարաս կը կոտրի, հողեր կը ցրուին: Առաւօտուն կ՚ելնեն որ ի՞նչ. իզլին չորս դեհ ոսկի ի փռուեր: Կնիկ կը բոռայ. Քա՛ կնիկ, ցախաւել բեր. իզլին ըմէն ոսկի ի բուսեր: Կ՚աւելեն կոլոն կոլոն ոսկիք, մէկի տեղ հազար չէ, անդար հազար կ՚առնեն, կը զանգինանան, Աստուծուն փառք կուտան:

Ինոնք հասան ուրենց մուրատին, դուք հասնէք ձեր մուրատին:



## 4.

Կայ ու չկայ մէկ թագաւոր կայ, իրեք լաճ ունի. էդ թագաւորնի կը հիւընդնայ. ինչքանդար հէքիմ կայ, թուղթ իրիշկող կայ, կը ժողվեն չեն կանայ ճար մ՚անե։ Ինոնցմէ մէկը շատ իմաստուն կ՚ըլնի. կ՚ասի. Թէ որ մեր թագաւորն ապրի, մէկ բանով կ՚ապրի։ Կ՚ասեն. Էն ի՞նչ ի։ Կ՚ասի. Հնդստանու աշխարհն մէկ խաս բաղչայ կայ. ինոր մէջ անմահութեան խնծորի ծառ մը կայ. թէ որ էն խնծորէց բիրեն հատ մը ուտի, կը ժրի, կ՚ըլնի մօրէ մէկ։

Խօսք մէկ կ՚անեն կ՚երթան թագաւորին կ՚ասեն։ Թագաւորն ի, կ՚ասի. Ես լսեր եմ որ դէւեր կուգան էն խնծորներ կը տանեն, հողածին չի կանայ ձեռ բիրե։

Թագաւորի ճոչ լաճ կ՚ելնի կ՚ասի. Թագաւորն ապրած կ՚ենայ. ես կ՚երթամ բիրեմ։ Կ՚երթայ, կ՚երթայ կը հասնի էն ծառի տակ. էն գիշեր որ էդա խնծորները կը հասնեն, թագաւորի լաճու քունը կը տանի. դէւն ի կուգայ խնծորներ կը ժողվի կը տանի։ Ցղէն ի փոր փոշման ետ կը դառնայ։ Էն մէկէլ տարին միջնեկ լաճ կ՚երթայ. ինոր էլ քուն կը տանի, գալի դարտակ կը դառնայ ետ։

Պստիկ լաճ կ'ելնի կ'ասի· Թագաւոր ապրած կ'ենայ· ես կ'երթամ կը բիրեմ,

—Թօ՛, կ'ասեն· ճոչ աղբէրներդ ի՞նչ աբին, որ դու ի՞նչ պիտի անես·

Շատ խրես կը դնի, կը ճըյընկայ, չում Թագաւոր կ'ասի· Դէ՛ գնա։

Պզտիկ լաճն ի, կ'էլնի նետ ւանեղ կ'առնի կ'երթայ կըհասնի խնծորի ծառի տակ· էն գիշեր որ խնծորներ կը հասնեն, չախուռով ուր մատը կը ճղի, մէջը աղ կը ցլի· ցաւի մռմռուից քունը կը խրտնի։ Կը տեսնայ որ դէւ կուգայ պիտի ելնի ծառը· կը քաշի ուր նետ ւանեղը, նետ մը կըզարնի դէվի ոտաց ձկան, կը ծակի· դէվ կը փախնի պօռալով· տղէն ի կ'ելնի խընծորներ կը ժողվի բիրի հօր· Թագաւոր կ'ուտի, կ'առողջանայ։

Կը դառնայ էդ պստիկ լաճը աղաչանք կ'ինի ուր հօր, կ'ասի· Իզյին տու, երթամ իմ տուշմընից քէն առնեմ։

Կ'ելնեն երկու աղբէրներն էլ ինոր հետ կ'երթան· ծառի տըկէն դէու արուն ջըռչըռալով գնացեր ի· կը բռնեն էն արուն ու կ'երթան· կ'երթան կ'երթան կը հասնեն մէկ գուղան անհատատ խորի մը· կը տեսնան որ դէվը մտեր ի գուն։

Դաշ ճոչ աղբէր կ'ասի· Զիկ կախէք, ես կ'էջնեմ ինոր հետ ջանք կ'անեմ։

Ջում խորի կէսը կը կախեն · կը բոռայ · Նամա՜ն · ես մրկայ · ձիկ քաշէք դուս ։ Ջնի կը հանեն ։

Մինչեւ աղբէր կը կախուի · էն էլ չուր կէս կը կախեն · կը բոռայ · Նամա՜ն, ես մրկայ, ձիկ քաշէք ։ Կը քաշեն ։

Գօր կուգայ պստիկ աղբօր ։ Կ'ասի · Աղբէրներ, քանի ես կանչեմ՝ վառուա՜յ, մրկա՜յ, դուք ձիկ իջուցէք ։ Կ'իջուցեն · քանի՛ կը բոռայ, ինոնք կ'իջուցեն ։

Կ'էջնի կ'էջնի, կը տեսնայ ի՞նչ · մէկ աժդահար դէւ մը պառկեր, ուր գլօխ դրեր մէկ հուրնի հրեղէն աղջկան մը ծնկան վէ-րէն քներ · աղջիկ քըրկած կը բանի · գօ ինոր առջեւն էլ ոսկի մուկ ոսկի կատու մը մէջ ոսկի դաշտին կը խաղան ։

Աղջկան աչք կ'առնի տղէն · կ'ասի · —Հո՛ղածին, օձն ուր պորտով, հաւքն ուր թեւով չէր կարցեր իկեր ըստեղ, դու ի՞նչխ էկար ։

Տղէն ի կ'ասի · —Քո սէր ձիկ իբեր ։

Աղջիկ կ'ասի · —Քո գլխու սաղ-աղէն ըլնի, կտրիճ, էլի քաշուի ըստուց · թէ որ դէւ զարթնի, քո ճոչ կտոր ականջդ կը մնայ ։

Տղէն կ'ասի · —Ջէն տու, թող ելնի, ես իկեր եմ ինոր հետ կռիւ անել ։

Աղջիկ կ'ասի, —Քառասուն օր կը քնէ

էնի․ ութն օր է որ աչքեր խփեց․ երե-սուներկու օր կայ չուր զարթնի ։ Թէ որ սաքր չես անե, էդա գութնի խոփ կրակ-ցու, զարկ դէւի ոտաց վէրէն․ դէւ կ'ազնի ։

Տղէն գութնի խոփ կը կրակցու կը զարնէ վէր դէւու ոտաց․ դէւ ոտքեր իրաք կու-տայ, աչքեր ճմռթկելով կ'ելնի, կ'ասի․ — Օ՜ֆ, լուեր տաքս կծիցին ։

Աղջիկ կ'ասի․ —Ի՞նչ սև լուն է, էլի, տե, կարիճմ՛ իկե, հետ քե կռիւ պիտի անի ։

Դէւ կ'իրիշկի տղին, կ'ասի․ —Օ՜, ի՞նչ անուշ ակռածածիկմ՛ է ։

Տղէն կ'ասի․ —Էլի՛ տխնանք, Աստ-ուած ձի՞կ կուտայ թէ քե ։ Կ'առնեն ու-րենց նետ ւանեղ, կ'ելնեն կռիւ ։

Դէւ կ'ասի տղին․ —Դաշ դու զա՛ր ։

Տղէն կ'ասի․ —Զէ՛, դաշ դու զար ։

Դէւ կը զանի նետ, տղէն կը տառափի, նետ կ'ընցնի ։ Տղէն է, ուր նետ կը զանի, դէ-ւու կող կը ծակի, կը չուչի գետին․ նետ կէսն էլ կը մնանի հողի մէջ․ ընկուն կ'ելնի, որ դու կ'ասես բլրուեր են դէւի լէշը դե-տին ։ Կը հասնի տղէն դէւի վիզը կը կըտ-րի, ակնջներըը կը պրծուցի կը թաղի ուր ջորըը ։

Էնի կը թողնի զինն, մէկ քիչ կ'առա-

Տղէն կ՚ասի · —Էյվ տիկնանք , Աստուած եա ձիկ կուտայ , եա քե · Վալլա՛հ աղէն ի , էս էլ կը բիթուի գետին · վիզ կը կտրի · ականջները կը պրծուցի թալի ուր ջուրը ։

Էն էլ կը թողնի էն տեղ , կ՚առաջանայ , տեսնայ որ , հա՛ մէկ անհատուատ դէւ մը գլօխ դրե հօւրնի հրեղէն աղջկան մը դոգ քնե · էդ աղջիկ արեգական պէս կը փէլքվտայ · աղջիկ քըրկահ կը քանի · ու մէկ ոսկի թազի շուն մէկ ոսկի սև աղուէս մէջ ոսկի սինիին կը խաղան ։

Աղջկան աչք կը դէպնի տղին · կ՚ասի ·

—Հո՛ղածին · օձն ուր պտուտով , հաւքն ուր թևով չէր կարցե իկե ըստեղ · դու ի՞նչիս էկար ։

Տղէն կ՚ասի · —Հրեղէն , քո սէր ձիկ իբե ։

Աղջիկ կ՚ասի · —Քո կանանչ արեւն ափսոս ի , փախի ըստուց · թէ որ դէւն զարթաւ , քո ճոչ կտոր ականջդ կը թողնի ։

Տղէն կ՚ասի · —Ջէն տու , թող էլնի · ես ինոր հետ կուիւ անելու իկեր եմ ։

Աղջիկ կ՚ասի · —Որ ըտկաւն ի , դէ՛ էդա ջաղցի ցից կրակցու զա՛ր վէր դէւի ոտաց , կ՚արթննայ ։

Տղէն ջաղցի երկթէ ցից կը կրակցուցի կը զանի վէր դէւու ոտաց · դէւ ոտն իրաք ,

կուտայ․ ու կ՚ասի․ —Է՛․ լո՛ւեր, ոտքս կծիցին ։

Աղջիկ կ՚ասի․ —Ի՞նչ սև լու ի, էլի՛, տե, կտրիճմ՚ իկե, հետ քե կռիւ պիտի անի ։

Դէւ աչքեր մաժելով կ՚՚իրիշկի դեհ տղէն․ կ՚ասի․ —Օ՛, էս անփիտուր կաքաւ, ուրն ուր ինկե ակնատ ։

Տղէն կ՚ասի․ —Ելի, տխնանք․ Աստուած եա քե կուտայ, եա ծիկ ։ Կը զանեն, կը զարնուեն․ գօջայ տղէն ի նետովմ՚ էլ էս գէւուն կը շուլուլի գետին․ վիզը կը կտրի, ակընջները կ՚առնի կը դնի ուր ջոբը․ ու կը դառնայ աղջիկներաց մօտ․ իրեքն էլ կը բերի մէկ տեղ ։

Աղջիկները կ՚առնեն թագաւորի տղէն կը պտըտցուցեն յըմէն տեղեր․ անդար հազար արծաթ, ոսկի, ակներ ջաւահիրներ, սիլահներ, հալաւներ, ինչ որ կան, յըմէնիցն էլ բայ կ՚առնի, զատ զատ իրեք ձեռք կը կապի ։ Մէնակ կէծակէ թուր ուր մօտ կը պահի․ մէկ էլ դըըսմի մատնիկ մը կուտայ ինոր՝ պստիկ աղջիկ ։ Կը մտնեն դէւէրաց ախոռներ, կը տխնայ որ զատ զատ իրեք հրեղէն ձի կայ կապուած․ մէկը սև, մէկը կարմիր, մէկը սիւտակ․ ինոնցից մէկ մէկ մազ կը քաշի ուր քօլօզի մէջ կը պահի ։ Կ՚երթան խորի բերանը․ տղէր-

Ներաց կը կանչի։ Երկու ճոչ աղջիկ ու-երկու ձեռք զինաթ կը կապի. կ'ասի.
—Քաշէք, առէք, աղբէրներ, էս աղջիկ-ներուց նոչը՝ ճոչիդ, մինչեւ՝ միջնիկիդ. ջրհէզներն էլ մէկտեղ ի։ Պստիկ աղջկան ջրհէզն էլ քաշել կուտայ։ Աղջիկ կը դառ-նայ տղին կ'ասի. —Առաջ դու էլի։

—Չէ, կ'ասի տղէն, առաջ դու պիտի ելնես։

Աղջիկ կ'ասի. —Ձիկ որ տխնան, քե չեն հանե. կը մնաս խորի մէջ. խեղճ ես։

—Ինչ, կ'ասի տղէն. չէ՞ ինոնք իմ աղբէրներն են։

—Է՛, կ'ասի աղջիկ, դու գիտես։ Ամմ՞ թէ որ մնացիր, ուրբաթ գիշեր իրեք գօչ կուգան ըստեղ, մէկը սեւ, մէկը կարմիր, մէկը սիպտակ. քե թա՛լ վէր սեւ քօչին, սեւ քօչը կը թալի վէր կարմիր քօչին. սիպ-տակ քօչ կը թալի լոս աշխարհ։ Մէկէլ իմ տուած մատնիկին դըլըըմ կայ. ի՞նչ խորհուրդ որ անես, ինչ որ սիրտդ ուզի, կ'առնես։ Ջիու մազերն էլ որ կրակին տաս, ձիեր դոր որ ուզես, կուգան քե կը գտնեն։ —Դէ մնա՛ս բարով։

Աղբէրներ պստիկ աղջիկ որ կը հանեն, հէյրան կը մնան իդոր տեսքին ու խօրօտ-կութնին։ Կը դառնան կ'ասեն մէյմէկու. —Իշտե, իշտե, իշտե, խօրօտն ուր պա-

հեց, էն մէկէնմէկը խոտա մե ։ Արտեր նե-խանձութենով կը լեցուի . խոտերն պտտիկ պը-քէր կը թողնեն մէջ խորքին, ուրենք կ՚առ-նեն աղջիկներ ու պինտաթներ կ՚երթան ։

Ուրբաթ գիշեր իրեք քօչ էկան տղի մեր . տղէն ալ մը սրտի ցաւից վռազ վռազ գնեց կը թալի վէր սիպտակ քօչին, սիպ-տակ կը թալի վէր կարմրին, կարմիր կը թալի վէր սեւուն, սեւն է կը թալի մութ մութ աշխարհ ։ Տղէն ափլփելով դուռ մը կը գտնի, դուռ կը տիքի . պառաւ մը կուգայ բանալու՝ կ՚ասի . —Ով է ։

Տղէն կ՚ասի . —Անխէր, անմէր, որ-բուկ տղէ մ՚եմ, մամիկ ։

Պառաւ դուռ կը բանայ, տղէն ներս կ՚առնի, կ՚ասի . —Ես էլ զաւակ չունեմ . դու ծիկ լաճ, ես քե մէր . մէ յտեղ ապ-րենք . հացն Աստծուն է ։ Ու կ՚ըլնեն մէր ու տղայ ։

Քիչ մը կը մնան, տղէն կ՚ասի . —Մա-րէ, շատ ծարաւ եմ, պուտ մը ջուր ։

Պառաւ կ՚ասի . —Հոգիս էլնի . ջուր չկայ . մէյ կտոր սաբր արա, չուր ջուր առնենք ։

Տղէն կը հարցուցի . —Մամիկ, էդ ի՞նչ խօսք է ։

Պառաւ կ՚ասի . —Մեռնեմ քե . մեր աշխարհն մէկ աղբուր կայ, էն էլ վիշապ

մը բերան տուեր դէմ կայներ․ Աստծու օր մէկ ազար աղջիկ պիտի տանեն վիշապին ուտելի, որ ջուր թողնի գալ․ էն գահ ըմէն մարդ կ'երթայ ջուր կ'առնի․ վիշապ աղջիկն ուտելու ատեն, էլմը կ'երթայ աղբրի բերան կը բռնի ։ Էս օր դօր թագաւորի աղջկան ի ։ Հանդօ ձէնձէնոց կուգայ․ ես կ'ասեմ աղջիկ կը տանեն վիշապին ։

Տղէն կ'իրիշկի որ ըղորդ, լուսնըկի պէս աղջիկ մը առեր են կը տանեն․ ինքն էլ կ'երթայ․ կը տանեն աղջիկ կը թողնեն վէր աղբրի ական մէնակ․ ու ըմէն մարդ կ'երթայ ուր տեղ։

Տղէն կէծակէ թուր հետն ի առեր, կ'երթայ աղջկան մօտ, կ'ասի․ —Աղջիկ, թող գլօխս դնեմ քօ գոգ քնեմ․ դու մի վախենայ․ եր վիշապ կուգայ, ձիկ ձէն տու․ ես քե կ'ազատեմ։ Կը քնի ՚

Վիշապն ի բերանը բաց, պոչը ոլորելով, ֆըշֆըշալով կուգայ դեհ աղջիկ․ աղջկան կեռիկ կը փակուի, կը բռնուի, ու կուլայ․ արտասունք տաք տաք կը թափի վէր տղի իրիսին․ տղէն կ'արթննայ, վեր կը թռնի, կը տեսնայ որ ի՞նչ․ աղջիկ չում ծնկներ վիշապ կուլ տուեր ի ։

Համա՛ն ուր կէծակէ թուրը կը քաշի, կը դնի աղջկան գոգը․ քանի որ վիշապը աղջկան կուլ կուտայ, թուրն էլ վիշապի

թէքան կը կտրի · աղջիկ ամենէն չուամ գլուխ կը մտնի վիշապի փոր · տղին թուրն էլ վիշապին կ'անի երկու տապակ ։ Աղջիկ կ'ելնի դուրս ողջ ողջ · վիշապ կը հատնի ։ Տղէն կ'առի աղջկան · —Դէ՛ ելի, գնա տուն ։

Աղջիկն ի ձեռ կը զարնի վիշապի էրունք մէջ ու կը ծիփի տղին քամակին, որ էն նշանով ճանչնայ տղին ։

Աղջիկ կ'երթայ իւր հօր տուն · տղէն էլ կ'երթայ պառւուն մօտ ։

Ըմէն մարդ բօլ բօլ ջուր կը կրեն · աղջիկ իւր հօր կը պատմի էն կտրճի պատմութեն ։ Տղէն էլ պառւուն կը հարցուցի · —Մամի՛կ, ձեր աշխարհըն ինչի՞ մութն ի ։ Պառաւ կ'ասի · —Որդի, մէկ արծիւ մը յըմէն տարի ձագ կը հանի · վիշապ մը կայ կուգայ ինոր ձագեր կ'ուտի · արծիւն էլ իւր սրտի մռմռուից արեւու լոս կտրեր ի մեր վերէն ։

Տղէն իգլին կ'առնի պառւուց, կ'երթայ · կը տեսնայ որ հա՛ վալայ, արծիւ իւր բուն դրե քարի մը վերէն · տղէն էլ կը պառկի էն քարի տակ · վիշապն ի կ'ելնի ֆըշֆըշալով կ'երթայ դեհ ձագեր ։ Տղէն իւր կէծակէ թուրը կը թալի, վիշապին կտոր կտոր կ'անի · ինոր մսեր կուտայ արծուու ձագերաց ։ Ձագեր կը ճըվճըվան, մէջ

մնաց։ —Թագաւորն ապրած կենայ, կ'ը-սեն, մէկ աղքատ պառաւ մը տուն ղար-բը տղէ մը կայ, էն-ի մնացեր։

—Գնացէք բերէք, կ'ասի Թագաւոր։

Կը բերեն. ու աղջիկ կ'ասէ. —Գօսկօ՛ չէտ ի։ Ուր զարկած էրմի նշանն էլ նշանը կուտայ։

Թագաւոր կ'ասի էն տղին. —Ուզի՛, կարգին, քո ազատած աղջիկ քե հալալ ըլնի. ուզի տեսնանք ուրիշ ի՞նչ կ'ուզես։

Տղէն կ'ասի. —Թագաւոր ապրած կե-նայ. քո աղջիկ Աստուած ուր գըսմաթին բաշխի. քո դօվլաթն էլ Աստուած քե բարի վայելեցում տայ։ Իմ ուզածն էն ի, որ ձիկ քառասուն տիկ գինի տաս, քառասուն հատ զօշու դմակ, որ արծիւ ձիկ հանի էս աշխարհ։

Էն զաւհն ինձ տղի ուզած կուտայ Թագաւոր։ Տղէն ի կ'առնի իրանք կ'եր-թայ մօտ արծիւ։

Արծիւ կ'ասէ. —Դէ բերածներդ բար-ձի իմ թեւերացս վէրէն. դու էլ նստէ վիզս վէրէն. եր քոռ կ'անեմ՝ գինի տուր, եր չոռ կ'անեմ՝ դմակ մը տուր։

Տղէն կուզայ պառաւուն ձեռ կըսպաղ-ընմիթը կ'առնի, կ'երթայ։

Արծիւն ի կ'առնի վէր ուր թեւերաց կը բանձրանայ. քանի քոռ կ'անի՝ տիկ մը

դինի կուտայ․ քանի հոս կ՚անի՝ մէկ դմակ կուտայ տղէն ։ Կը բանձրանա՛յ կը բանձրանա՛յ չուիմ կ՚ելնեն լոս աշխարհ , կ՚երթան տղի հօր երկիրը ։ Իտին դրին արծիւ կ՚անի հոս ․ տղէն ուր ուրախութնից կը վռազնայ ․ մէկ դմա՛կ ի մնացե , կը փրթնի կ՚ինի ․ ուր թուր կը թալի ուր մէկ ոտաց կակուղ կուշտը կը կտրի կուտայ արծուուն ․ արծիւ համից կ՚իմնայ որ խոսնի միս ի , լեզուի տակ կը պահի ։

Կը հասնեն․ արծիւ տղին կը դնի դետին ․ կ՚ասի ․ —Դէ՛ էլի , քէլի , գնա , տխնամ ։

—Չէ՛ , կ՚ասի տղէն ․ դու գնա , եւ կ՚երթամ ․ ոտքերս կըռմեր ի ։

Արծիւ շատ զօր կ՚անէ տղին ․ տղէն կ՚ելնի , չկանայ քէլե ։ Արծիւ ուր լեզուի տակից կը հանի պահած միս կը կպուցի տըղի կուշտ , ուր թքով ու լեզուով կը եռցուցի ․ ճամհու կը դնի դեհ քաղաք , ինքն էլ կը թռնի կ՚երթայ ուր ձագերաց կը հասնի ։

Տղէն կ՚ելնի դրէ դրէ կ՚երթայ ․ հովիւ մը ռաստ կուգայ , ոչխրի փոր մը կ՚ուզի հովուուց , կընցուցի ուր գլօխ , կ՚ըլնի քաչալկի պէս ․ կ՚էրթայ քաղաք , կը տիսնայ որ թագաւորի լաճեր հարսնիս կ՚անեն , էն օրն էլ ուր նշանլին կը փսակեն վէր

Թագաւորութեան։ Տղի սիրտ կը գալրի․ ամա ի՞նչ կանայ անէ։

Կ'երթայ շուկէն, ոսկրչի մը մօտ, կ'ասի․ —Ջիկ չե՞ս առնէ մօտ քե աշկերտ։

Ոսկրիչ կ'իրիշկէ՛ կ'իրիշկէ՛, կ'ասի․ —Դէ՛ արի, քաչլիկ։

Էն օր թագաւորի մարդեր բեռ մը ոսկի արծաթ կը բիրեն էդ ոսկրչուն․ կ'ասեն․ —Մէկ ոսկի մուկ մէկ ոսկի կատու պիտի շինես, որ ոսկի դաշտի մէջ փազեն։

Ոսկրիչ կ'ասի․ —Ես կը շինեմ, ամա՛ հոգի չեմ կընայ տայ, որ վազվռտեն․

—Ջենք գիտէ, կ'ասեն, թագաւորի ամրն ի․ Նոր նշանլըն ըսկուն կ'ուզի, տանր ի․ Զում շինել չիտաս, քե չեմ առնէ։ Ու կը թողնեն կ'երթան։

Ոսկրիչ սև սուգ կը կապի․ չգիտէ ի՞նչ անի․ շինի՝ չկանայ, չշինի՝ գլօխ կ'երթայ։

Քաչլիկ կը վէրցու կ'ասի․ —Ուսթա՛, ի՞նչ կը մէզես․ ինչի՞ ես չիւարե։

Էն էլ կ'ասի․ —Ըսկընայ, ըսկընայ։

—Դու դարդ մ'անե, կ'ասի Քաչլիկ․ գնա ծիկ երկու նուկի պնդուկ ա՛ռ, չորս նուկի գող․ ես գիշերս կը շինեմ։

Ուսթէն կ'ասի․ Ա՛խ իմ կնի շունչանորդի քաչլիկ․ իմ դարդ հերիք չի, դու էլ տընազ կ'անես։

—Չէ՛, վալահա՛յ, կ'ասի քաչլիկ․ դու

ճուն անդառած ճանբահմ՝ շանց տուր (ցոյց տուր) · գօ՛՛ երթալն եղնի, դալ չեղնի ։ Կ՛ասայ · Աղէկ ։

Մէր չոր լօշ (լաւաշ հաց) կը ձգայ տակ, կը պառկայ վրէն · կ՛անայ․ Ա՛խ, ա՛խ, որդի՛, կը մեռնեմ, ոսկրտանքս կը խշխշան · (սո՛ւտ, գօ՛ լօշերն այ կը կչկչան) ։

Լաճ կ՛ասայ · —Մարէ, քե ի՞նչ կը կըպի · (ի՞նչ կ՛ախորժես) ։

Մէր կ՛ասայ · —Որդի, ալըքի եմ առե · պըտի եհաս անմահութնի ջուղուլու (ճմերուկ) բիրես, ուտեմ, ժրեմ · թա չբիրես, գօ՛ տը մեռնեմ ։

Լաճ կ՛ելնի կ՛եհայ, կ՛եհայ կըլնի մէկ պառաւու դռնախ ։

Պառաւ կ՛ասայ · —Որդի, դու դո՞ր պըտի եհաս ։

Կ՛ասայ · —Մամի՛կ, տ՛եհամ եմ մօր անմահութնի ջուղուլու բիրեմ ։

Պառաւ կ՛ասայ · —Թօ՛ · որդի, դու պառաւու խաբուած ես ։

Կ՛ասայ · —Չէ, պըտի եհամ, պըտի բիրեմ ։

Պառաւ կ՛ասայ · —Տ՛եհա՛ս, արե քե ճէբահ էնեմ (խորհուրդ տամ) · ասաց · կ՛եհաս, քառասուն դէվ գօ՛ կնարմ՝ են (մէկ կողմն են), հիսուն դէվ գօ՛ կնաբմ՝ են · էն քառասուն դէվերաց ճօչ նատերայ հաց կը թխայ տուն · թա կարցար ուր ծիծ

մըշթեցի՞ր (ծծեցիր), քե զկան չկայ․ գօ՛ չէ՝ չը ծծեցիր, աւուր մի ճանբահ զատն էլ եղնիս, քե պըտի ուտայ։

Լաճ կ'եհայ կը ծըծայ, դէվ չում կ'իմնայ․ էլ ի՞նչ։ Կ'ասայ․ —Քե չանց տուողի վիզ տակ մնայ, պռծար․ թա չէ՝ դու զիկ աղէկ պօշի (ընթրիք) տ'եղնէր։ Կ'ասայ, դէ՛ արի քե դնամ սանդուղ, որ յէվարին դէվեր չը գան քե ուտեն։ Կը դնայ սանդուղ։

Իրիկուն դէվեր կը գան կ'ասեն․ —Ա՛խ մարէ, մենք տարին տըսուէրկու ամիս դէլ դազան կը բիրենք հըդրաց (միատեղ) կուտենք․ գօ՛ մարդ մարդահոտ կը գայ, դու էսօր մարդ ես կիրե․ թող ոսկրի կտորմ'է մե տիր (տայիր)։

Մէր կ'ասայ․ —Սարէն ձորէն դուք կըգէք, մարդ մարդահոտ ձենէ կը գայ։

—Չէ, կ'ասեն։

Մէր կ'ասայ․ —Գօ՛ իմ մօրքրօջ լաճ էկերայ։

Դէվեր կ'ասեն․ —Մարէ, քօ մօրքրօջ լաճն էկերայ, հան դուրս․ չենք ուտե, մենք էլ տիտուլթեն անենք։

Մէրն զլաճ սանդուղից կը հանայ, կը հանայ՝ էն քառսուն դէվ կ'առնեն չանճ (քան ըզ) բուռմ՝ ծաղիկ հոտոտան (1),

---

(1) Ընթերցողք կը յիշեն անշուշտ Կիւլիվերի ճանապարհորդութիւնն. Լիլիբուլին։

ձեռնէ ձեռ կուտան ։ Ուրանց մօր կ'ասեն ․
—Մօրքրոջ լաճն էկերայ յի՞նչ ։

Մէր կ'ասայ ․ —Էկերայ անմահութնի ճաշալայ պըտի տանայ ուր մօր ․ հիւանդ-այ ․ դուք պըտի եհաք անմահութնի ճա-շալայ բիրէք ։

Քառասուն դէվ մէկ տրայ (միատեղ) կ'ասեն ․

—Վալա՛հ, մենք չենք կանայ ․ մեր մօտից չը գայ ․ (մեր ձեռքէն չգայ) ։

Թօփալ դէվմ' կէր մէջ էն քառասունին ․ էս Թօփալ էն տղին կ'աձայ ․ —Մօրքրորդի, ա՛ռ կուժ, ա՛ռ սանտր, ա՛ռ արծլին, ես դու եհանք հըղըրաց ։

Կ'ելնեն հըղըրաց կ'եհան ․ կ'եհան ան-մահութնի ճաշալի տեղ կը դադրեն ։

Թօփալ դէվ կ'ասայ ․ —Մօրքրորդի, դու արի ըստայ ։ Կ'եհայ տեղ, ճաշալից կաղ մը (շերտ մը) կը կտրայ կը դնայ վէր ձիուն, կ'ասայ ․ —Դէ՛ դու գնա՛ ․ գօ՛ ես քե կը հասնեմ ։

Դէվ սաղ ոտ կը թալայ ճանբահ, կաղ ոտ ինչ կը քաշայ՝ կը մնայ 'ի ցանկ, հիսուն դէվանք կ'աղհին (կ'արթննան), հասնէ հաս կը հասնեն ։ Կաղ դէվ կ'ասայ ․ —Մօրքրորդի, կուժ թալ ։ Կը թալայ, հող ու սար ջուր կը կտրեն ։

Ջուր էնոնք ջուր կ'ընցնեն կը գան

հասնէ հաս, կ՚ըսայ. — Մօրքրօրդի, սանտր թալ։ Նը թալայ, կ՚եղնի պրակ՚

Ջուրի պրակ կը կարեն կը գան հասնէ հաս, կ՚ըսայ. — Մօրքրօրդի, աբծլին թալ։ Նը թալայ, կ՚եղնի փուշոր փուշոր ըամ։ Ջուր խնոկք կ՚ընցնեն կը գան, ըադեհու քառասուն դէվեր կը հասնեն կը պրծուցեն։ Տղէն ծօշօլէն կը բռնայ ձիուն կը դառ-նայ։ Նը գայ կ՚եղնի էն պառաւու տնոխ։ Պառաւ կ՚ըսայ՝ Բերի՞ր։

— Հա՛ վալահ բերի, կ՚ըսայ, մամի՛կ։

Լաճ կը քնի գիշեր, պառաւ կ՚ելնի անմահութնի ծօշօլէն կ՚առնայ, ուրիշ կը դնայ տեղ։

Խլիսուն լաճ ծօշօլէն կը տանայ մօր. մէր կուտայ, կ՚ըսայ. — Օխէ՛շ, հոգիս հանգաւ, դուրիս էլ չըմ մեռնի։

Լաճ կ՚եհայ նէ՞ծը։ Մէր դէպուն կասայ. — Դէվ, քո կանանչ արև կտրտեմ. իմ լա-ճուն անդարձ ճանբան չանց տուր. գօ՛ եհալ, եղնի գալ չեղնի։ Կ՚ըսայ. Աղէկ։

Լաճ կը գայ. մէր չոր լօշ կը դընայ տակ, կը կրչկրչայ. կ՚ըսայ. — Ա՛խ որդի, ես պըտի մեռնիմ. էլ գի չը պըտի տինաս։

Լաճ կ՚ըսայ. — Մարէ, ի՞նչ կ՚ուզես։

Կ՚ըսայ. — Որդի, սուլըխ եմ առե, ե-հաս առուծու կաթ բիրես. ուտեմ, ծրեմ։

Լաճ կ'ելնի կ'եհայ . կ'եհայ կ'եղնի էլմ՝ էն պառաւուն դռնախ : Պառաւ կ'ասայ .
—Որդի , դո՞ր կ'եհաս :

Կ'ասայ . —Մամիկ , տ'եհամ եմ մօր առուծու կաթ բիրեմ :

Ասաց . —Թօ՛ որդի , դու պառաւու խա-բած ես :

Ասաց . —Չէ , պըտի եհամ բիրեմ :

Ասաց . Ոնէ (քանի որ) դու տ'եհաս , արի քե չէբաթ էնեմ : Կ'ասայ . Կ'եհաս , դո՛ առուծներաց ճոչ՝ ոտն եղերայ քարկոխ (խոց) , խլիսուն ինչ արև կը ծէգայ , կը գայ ու կը հանայ չինարի ծառնը վեր , կանչ մը երկի՛նք՝ կանչ մը գետի՛նք կը թօռայ : Կ'ասայ . Թա դու նետ ւանեղով կարցար զքարկոխ փլուցիր , քե բա՛ն չկայ . Թա չկարցար՝ քե պըտի ուտայ . ինչ կը զանես քարկոխ փլուցե՛ս , զքեկ երևան չհանես . ինչ քարկոխ կըռընաթէ՛, դուրիս երևան էլի : Հոգին Աստծուն , ինչ որ ուզես՝ քե պըտի տայ :

Լաճ կ'եհայ , կ'եհայ կը տինայ դո՛ առուծ ոտքեր հաներայ չինարի ծառնը վեր , կանչ մը երկի՛նք՝ կանչ մը գետի՛նք կը թօռէր . լաճ նետ ւանեղ կը զանայ քար-կոխ կը փլուցայ :

Առուծ կ'ասայ . —Ա՛խ էնիկ ո՞րն էր . ես զէնիկ պըտէր ուտէր . Ա՛խ , ա՛խ :

Քիչ մը նը —ընհամբէ · դորիս կուգայ, կ'ասայ, Ա՛խ, կ'ասայ · էնիկ ո՞րն էր, հոգին Աստծուն · ինչ որ ուզէր՝ ես տը տէր ։

Լաճ թըռաւ էռջև · Հարցուց · —Եմ քարկոխ դո՞ւ փլուցիր ։

Ասաց · —Հրամանքայ, ծառէդ եմ ։

Ասաց · —Դէ՛ ուզա՛ · ինչ որ ուզես՝ տը տամ քե ։

Լաճն ասաց · —Եմ մէր հիւանդ այ, առուծու կաթ կուզեմ ։

Առուծ կ'ասայ · —Գնա յէնա եմ մէկ բոն, երկու խորթ ձագ ունեմ, էնոնք զենայ (զե՛ն · մորթէ՛) արուն առ գնա · չըլնեմ չիմնամ որ ձէնձէնոց առնեմ · որ առայ՝ քե կուտեմ ·

Լաճ առուծի երկու ձագ կը զենայ, կաթն արուն կը լըլայ տիկ կը բեռնայ ձիուն · առուծի երկու քօթօթ էլ կը գողնայ · չա՛տ կերթայ լաճ, քիչ կերթայ, առուծի ճոչ հասուէ հաս յիտև կը հասնի · ջլաճ կը բռնայ, կասայ · —Հէ՜յ, քօթօթներ վրէ՞ կը տանես ։

Լաճ կ'ասայ · —Կը տանեմ՝ չըմզեններ, կը սանեմ պըտի տիրեմ, ձի պըկէր (պէտք) կը գան ։

—Դէ՛ որ այնսկուն ի, ա՛ռ գնա ։

Լաճ կեհայ, կեղնի էլմ էն պառուուն ղծուխ, կասայ · —Բարև քե, մամիկ ։

— Աստուծու բարի՛ն, որդի. կ՚ըսայ. Բերի՞ր կաթ։

— Հա՛ ճոլլաճ բերի, կ՚ըսայ։

Գիշեր լաճ կը քնի. պառաւ կ՚ելնի առուծի կաթ կը դարտկայ. ջուր կը լըլայ էծու կաթի մէջ՝ կը դնայ առուծի կաթի տեղ. լաճ չ՚իմնայ։ Խլիսուն լաճ կ՚ելնի զկաթ կ՚առնայ, զձին կը հեծնայ, կ՚եհայ մօտ մէր։

Մէր կը խմայ, կ՚ըսայ. — Խէ՛չ, հոգիս հանգաւ։

Մէկէլ խլիսուն լաճ կ՚եհայ Դէվին. լաճու մէր Դէվուն կ՚ըսայ. — Դէ՛վ, քու կանանչ արև կտրտեմ. չէ՞ քե կ՚ասեմ եմ լաճուն անդարձ ճանբան մը չանց տուր. գօ՛ երթալ եղի, գալ չեղի. չէ խօ՝ տ՚ասեմ քըզի զենայ։

Դէվ կ՚ըսայ. — Ես ի՞նչ անեմ. էն լաճ ափսոս մարդ այ, էլէլ մարդ այ. դոր ճանբհենք կը գայ. ասաց. Թող էսդըրիս էլ եհա քե անմահութենի ջուր բերայ։

Մէր չոր լօշեր կը ձգայ տակ, քամակ կը թալայ վրէն. յէվարին լաճ կը գայ. մէր կ՚ըսայ. — Ա՛խ, (լօշեր կը ջարդուեն). ա՜խ որդի, պըտի մեռնեմ։

Լաճ կ՚ըսայ. — Մարէ, յէ՞ր կը մեռնես. ի՞նչ կուզես քե բերեմ։

Մէր կ՚ըսայ. — Որդի, ասլըխ եմ ա-

ու, երթաս անմահութնի ջուր բերես. ես խմեմ ու ժրեմ, թէ չէ՝ էլ ճար չկայ, ու մեռնեմ։

Լաճ խլխուն կ՚էլնի, ձին կը հեծնայ, կ՚առնայ երկու առուծի քօթօթներ, կ՚եհնայ. կ՚եհնայ կ՚եղնի էն սպառուսուն ղծոխ։ կ՚ասայ. —Բարիկուն քե, մամիկ։

Կ՚ասայ։ —Աստծու բարին վրէդ, որդի. Դո՞ր կ՚երթաս.

Կ՚ասայ. —Տ՚եհնամ եմ մօր անմահութնի ջուր բերեմ. եմ մէր հիւանդ այ։

Պառաւ կ՚ասայ. —Թօ՛, որդի, դու պառուսու խաբած ես։

Լաճ կ՚ասայ. —Եղնիմ չեղնիմ, տ՚եհնամ։

Պառաւ կ՚ասայ. —Որդի, էռաջ ինչ խրատ որ քե էրի, եկիր. էս դիր կ՚եհնաս՝ չըս իգայ. ով գըցեր այ՝ չէկերայ։

Լաճ կ՚ասայ. —Ի՞նչ խօ, մամիկ։

Պառաւ կ՚ասայ. —Կ՚եհնաս տիկ կը դնես դէմ աղբիւրին, եօթն օր եօթն գիշեր կը մնաս քընուկ. օձ կ՚ելնի, կարիճ կ՚ելնի, դէվ կ՚ելնի, ջանավար կ՚ելնի զքե կուտայ, ազատելու ճար չկայ։

Լաճ —Ինչ եղնի եղնի, տ՚եհնամ հետ եմ Աստըծուն, կ՚ասայ. կ՚եհնայ առուծի քօթօթներ կ՚առնայ կ՚եհնայ. կ՚եհնա՛յ չուր կը հասնի անմահութնի աղբուր. տիկ կը

*տայ յէռջև աղբրին․ քուն կը կոխայ․ ձիուց կըյնի տակ․ եօթն օր եօթն գիշեր քընուկ կը մնայ․ օձ կ՚ելնի, կարիճ կելնի, ջանավար կ՚ելնի․ առուծներ կը բռնեն ձի-ւըռ տեն թալեն ։*

*Ինչ եօթն օր եօթն գիշեր կը թըմմի, Լաճ կը զարթի ։ Կ՚իրիշկայ որ առուծի ձըգեր արուն են կտրե, աղէկ մը կը լըւայ, ան-մահութնի ջրից տիկ կը լըլայ կը բռնայ վէր ձիուն, կը դառնան ։ Կը դառնան կը գան կ՚եջնեն պառաւու տուն ։ Պառաւ կա-սայ․ —Բիրի՞ր ։*

*Լաճ կ՚ասայ․ —Հա՛յ հա՛յ, բիրի ։*

*Պառաւ կ՚ասայ․ —Էնիկ դու չբիրիր, Աստուած՝ ու առուծի ձըգեր եղան տա-թէք․ չէ խօ՝ դու չէր բիրե ։*

*Լաճ կը քնի, պառաւ կ՚էլնի անմա-հութնի ջուր կը դարտկայ, ուրիշ ջուր կը բերայ կը լըլայ տիկը վեր ։ Լաճ չ՚իմնայ․ խլխսուն կ՚ելնի կը բռնայ ձիուն կ՚եհայ մօտ մէր, կ՚ասայ․ —Մարէ, գօ քե ան-մահութնի ջուր բիրի ։*

*Մէր կ՚առնայ կը խմայ, կ՚ասայ․ —«Խէ՞չ ; հոգիս հանգաւ․ դորիս կը ժրեմ» ։*

*Լաճ կ՚եհայ Նէճիր․ մէր կ՚էլնի դէվուն կ՚ասայ․ —Դէ՛վ, քո կանանչ արև կտըր-տեմ․ քե կ՚ասեմ անուշարձ ճանբահ մը։*

շանց տուր իմ լաճուն․ երթալ եղի, գալ չեղի։

Դէվ կ'ասայ․ —Վալլահ էն լաճ զօրաւոր մարդ այ․ դոր ճանըչենք կը գայ․ էլ ես չըմ գինայ դոր ճանըչամ։

Մէր կ'ասայ․ —Դէվ, չէ՝ խօ իմ լաճուն տ'ասեմ քեզ սպանայ։ Ցէվարին լաճ կը գայ, մէր կ'ասայ․ —Որդի, արի գլօխդ դիր վէր իմ ծնկան քնի։ Լաճ վէր մօր ծնկան կը քնի։ Լաճու գլօխ նշնով ըրեք մազ կայ․ մէր կը փաթթայ վէր ուր ձեռաց կը քաշայ, լաճ կը մեռնի։ Մէր դէվուն կ'ասայ․ —Առ թուրն արե, բրդենք։

Դէվ կ'ասայ․ —Ես չըմ իդար․ իմ ձեռ չերթայ ես էն լաճ բրդեմ։

Մէր կ'էլնի կ'առնայ թուր, զլաճ կը բրդայ․ ճկոթ կը թալայ պադն իտակ, զլէշ կը լըլայ մազէ տուրիկ (տօպրակ) մի, կը դնայ դէն։ Առուծի ձըգեր կ'ակնեն, կը գան կ'առնեն զտուրիկ, կ'եհան տանեն պառվու տուն։

Պառավ ոսկոռ վէր ոսկոռի կը դնայ, լէշ վէր լէշի կը դնայ, գլօխ վէր գլխի կը դնայ, կը թըմմայ, մէկ ճկոթ կը մնայ պակաս․ առուծի ձըգեր կը դառնան կը գան ճկոթն էլ կը տանեն․ կը կպուցայ ուր տեղ․ կը բերայ առուծի կաթ կը լըլայ վէր լաճուն, կը կպի յիրուր, կ'եղնի մօրէ մէկ։

անմահութենի խնձորներէն ոսկի քիթն՝ փը- ընդացած․ անմահութենի ջուրն ալ մէկ վրէն- սրբեցաւ նորէն։ Լաճ մամիկէն կ'ըսէ․ —Մամիկ, էս ինչ էր եղերեր զի։

Պառաւ կ'ըսէ․ —Թո՛, որդի, քո մէջ քե սպաներայ։

Լաճ կ'ըսէ․ —Ապա ես ինչխ սաղ- ցայ։

Պառաւ կ'ըսէ․ — Ինչ դու առուծի կաթ բերիր, ես էնիկ պահեցի, ուրիշ կաթ տուի քե տարար քո մօր․ անմահութենի բաշուլէն, անմահութենի ջուրն էլ անսկուն էրի։ Քո մէր զքե սպանած լըլած էր մազէ տուրիկ․ առուծի ձըգեր զտուրիկ բիրին․ ես լէշ վէր լէշին դրի, ոսկոռ վէր ոսկռին, անմահութենի կաթ լըցի վրէդ եղար մէկ կտոր․ անմահութենի բաշուլէն տվի քթիդ՝ փռնգտացիր, անմահութենի ջուր լցի վէ- րէդ՝ սաղացար էլար։

Լաճ կ'ըսէ․ —Էհ՛յ մամիկ, աղէկու- թեն հետ Աստուծուն էրեր ես․ ես չեմ կա- նայ․ Աստուած քե աղէկութեն էնա։ Կ'ե- հայ բերայ բեռ մը ոսկի, մէկ՝ արծաթ, կը տայ պառւուն․ — Դէ՛ կե, կ'ըսէ, ձի քաշը էրայ․ ես տ'եհամ հետ իմ հացին։

Լաճ կ'առնայ առուծի ձըգեր կ'եհայ մօտ մէր, առուծներաց անուն կը տայ

լաճ. առուծներ կը հասնեն մօր, մէկ մէկ ոտ կը ճըվտայ, մէկ՝ էն ոտը, կ'եղնի երկու կտոր, կը թալեն երկնուց իրես, կը գայ տակ: Կը մնայ դէվ. դէվ կ'էլնի զինք պատից կը թալայ տակ. առուծի ձըգեր կը հասնեն բռնեն, ճվտեն, թալեն յերկնուց իրես, կը գայ տակ, կ'եղնի հըզար կտոր: Լաճն, ուր կնիկներ, ուր առուծներ կը մնան ումր կէնեն:

Ինոնք հասան ուրանց մուրատին,
Աստուած մե հասու մեր մուրատին:

---

7.

## ՆԱՀԱՊԵՏԵՆՑ ԱՂՋԻԿ

Նահապետենց Մ. Բաղիկ կէր ժամանակով, շատ ղանգին էր. միտք արաց Երուսաղէմ երթալ. ուր լաճուն, ուր կնկան հետ ճամբահ ելան: Մէկ աննման աղջիկ մը կ'էր իսոնց. հասած աղջիկ ալաջը. էդ աղջիկ տուին գեղի ռէսի տուն պահ:

Ռէսի միտք փոխուաւ վէր էդ աղջկան. շատ կը դատի չկարնայ աղջկան սիրտն

առնե․ Ջաղի պառաւու մը ձեռնով բան կ՚աղջողի ։ Աղջիկն ի կ՚ասի ռէսին՝․ Դէ որ ըսկուն ի, արե առաջ քե լօղգցուցեմ ։ Խօրօտիկ մը սապոն կը փրփրացուցի, քիթ բերան, աչք ւիրես փրփուրով կը լցի, կ՚առնի օթակ մը քո ուզածի ալէս ռէսի թև թիկունք, գլօխ մլօխ կը ջարդէ, կը թողնի կը փախնի ։

Ռէս՝ սապոնի մռմռուռից աչքեր չկարնայ բանայ․ արունն էլ զինք կը բռնի, խելք կ՚երթայ, կ՚իյնի, չում հան հուն խելք գլօխ կուգայ, կ՚ելնի կը լուացուի, սրբուի, կը մէզի ուր խաղքութնի վէրէն․ կ՚ասի․ Համ կամքս չկատարաւ, համ խաղք էլայ մէջ աշխրին, գեղի ճօչի պստիկի առջև ։ Ի՞նչ անեմ։ Էլաւ գիր գրեց աղջկան հօր ՝ թէ․ Դուք ձեր աղջիկ թասլիմ արիք ձիկ, ամա աղջիկ օր հարիր մարդու հետ կուտայ կ՚առնի ։ Աղջկան հէր մէր հետ գիր առնելուն ուխտ մուխտ կը հարամի վէր ուրենց․ կ՚ելնեն ետ կը դառնան ։ Գեղ հասնելուն երկու օր կը մնայ, լաճ կ՚օրօխկեն, որ երթայ աղջիկ տանի սպանի կուրիսի ։ Լաճ կուգայ քուրոջ կասի․ Հէրս մէրս էկան․ եկի երթանք դէմ։ Երկուս կը հեծնեն մէկ ձի, կ՚երթան անվէրի սարի մը գլօխ, կ՚էջնեն․ Նստած տեղ աղջկան քուն կը տանի ՝ ախբօր ձեռ

չերթայ որ քորն սպանի․ կը թողնի էն տեղ, ինք կը հեծնի ձին կը քաշուի․ աղջկան ծոցէն ալնախ գաղտիկ կ՚առնի․ ճամբան հաւք մը կ՚սպանի, ալնախ մէջ հաւքու արնին կը թաթխի, կը տանի հօր մօր նշանց կուտայ․ կ՚ասի․ Սպանիցի, էս էլ ձե նշանաբան բիրի։ Հէր մէր կուգան տուն․ ռէս կ՚աւտացուցի ինոնց ուր խօսքեր։

Աղջիկ կուշտ մը ուր կունքն առեց․ ելաւ տեսաւ որ ոչ աղբէր կայ, ոչ աղբօր նմուշ, ոչ ինս, ոչ ջինս․ ելաւ իզարկ պըռակները վեր գնաց․ գնաց գնաց մոլրաւ էդ պըռակներաց մէջ․ գնաց հասաւ տեսաւ ջրի աւուզ մը․ աւուզի մօտ չինարի ծառ մը․ ելաւ չինարի ծառի գլօխ նստաւ։ Շատ կը մնայ քիչ մը մնայ, կը տեսնայ որ Ոստանայ Թագաւորի լաճն էկաւ նէճիր․ էկաւ իջաւ էդ աւուզի չուրթն․ արև չինարի ծառի շուք ղարկեր էր մէջ աւուզին․ շուքի մէջէն մարդում՝ շուք էլ կ՚երևէր։ Թագաւորի լաճ իրիշկեց դեհ ծառնըվեր, տեսաւ որ մէկ կծկուե մէջ ճղերաց։ Ասաց․ Ի՞ն ես, ջի՞ն ես, ադամորդի՞ ես․ ցածր կ՚էջնես՝ էջի, թէ չէ՝ մէկ նետ ւանեղով քե կը բիրեմ ցածր։ Աղջիկն ասաց․ Ես ոչ ին եմ, ոչ ջին եմ․ ես էլ քե պէս Ադամորդի եմ․ Ինչի՞ ձիկ կը ղանես․ ես կ՚էջ-

նեմ, ամա տկլոր եմ․ աղջիկ ալայ եմ․ քո կապէն հան դիր էդա տեղը, դու քաշուի մէյ դեհ․ ես իջնեմ հագնեմ։

Աղջիկն իջաւ․ կապէն հագաւ․ Թագաւորի լաճն էկաւ տեսաւ որ մարալ աղջիկմ՝ ի՛, որ չուտես չխմես, իդոր իրեսն իրիշկես։ Վերուց աղջիկ հեծուց ձին, տարաւ տուն։ Էլ ի՞նչ անի նէճիր։ Ես ասեմ տարի մը, դու ասա երկու տարի՝ մնացին։

Ստեփուն Թագաւորն ուր լաճուն կասի․ Եկի, գնա, տես, ո՞ր Թագաւորի աղջկան կը հաւնես, ուզեմ քե համար։

Տղէն կ՚ասի․ Իմ ուզած՝ իմ բերած աղջիկն ի։

Հէր մէր կ՚ասեն․ Որդի, ո՛վ գիտի էն ի՞նչ ջինս ի․ պրակներաց մէջ՝ գնտած աղջիկ մը․ մարդո՞ւց ի, դիւանակա՞ն ի, ի՞նչ ի։

Չէ՛, կ՚ասի տըղէն․ իլլա՞հ ես էնիկ պիտի առնեմ։

Քո մուր՝ քո ճակատ, կ՚ասեն․ աղջկան նշան կը դնեն․ փսակ կ՚անեն․ մէկ տարուց ետք Աստուած երկու լաճ կուտայ խոնց։ Ձում էս օր՝ հարս փէսի հետ չի գրուցե։ Օր մը հարսն ուր տըղէն գրե ուրուրոց․ մէյդեհէն կ՚օրօրի, մէյդեհէն գովք կ՚ասի, մէյդեհէն կուլայ։ Փէսէն կ՚ուրդի (հանդիպի) վէրէն, կ՚ասի․ Կնիկ, ինչի՞ կուլաս, քո դարդն ի՞նչ ի։

Ա՛խ, ասաց, ընկի չես ասե. ես էլ հէր ունեմ, մէր ունեմ, ջիգյար ունեմ, կարօտցեր եմ. խօ՛ ես քարից չեմ ծնե, ծառի վէրէն չեմ բուսե. ի՞նչ կ'ըլնի, թողնես երթամ հէրս մէրս տեսնամ՝ դառնամ։

Թագաւորի լաճ կանչեց ուր սարասքար, սէլեր դրուշել իտու. 500 ջան էլ ասքար։ Սարասքարին ասաց. Քո խաթուն տանես ուր հօր տուն, դու կը դառնաս։

Ելան մէկ աւուր ճամբահ գնացին. իրիկուն օրդուն իջաւ ջրի մը բերան, կերակրուան, ըմէն մէկ ուր տեղ սաղախան. Սարասքար չքնե։ Դու մ'ասե զարկուերի խաթունի խօրոտկութնին։ Ելաւ գնաց մօտ խաթուն, ասաց. Եա ձիկ խօսք տու, ես քո մէկ լաճ կըսպանեմ։

Խաթուն ասաց. Ես քե խօսք չեմ իտա. կ'ուզես իմ լաճն սպանի։

Սարասքարն իզարկ լաճու մէկն սպանեց։

Առաւօտուն էլան բարձին գնացին. իրիկուն իջան. էլմ սարասքար գնաց մօտ խաթուն. չկարցաւ խօսք առեր էր. մէկէլ լաճն էլ սպանեց։

Էն մէկէլ իրիկուն սարասքար էլմ գընաց. զօրով նեղի իբե. թէ չէ, ասաց, երկու տղէդ սպանիցի, քեզ էլ կ'սպանեմ։

Դու քո Աստուած, ասաց խաթուն. թող երթամ լուացուեմ, մէկ բերան Աստուած կանչեմ, հայր մեղայ ասեմ, դառնամ գամ։

Սարասքար չուան մը իրիր խաթունին ոտ կապեց, որ չփախնի. գնաց ջրի բերան, չուան ինհան կապեց բութէ մը, ինքը փախաւ։ Գնաց հասաւ հովուու մը. ասաց. Չովիւ հովիւ, իմ հալաւ տամ քե, քո հալաւ տու ձիկ։

Ասաց. վէր իմ աչից։ փոխեցին։ Քօլօղմ' էլ ընցուց գլօխ, մազեր կտրտեց, քշեց գնաց ուր հօր տուն։

Մ. Բաղիկ նստէ վէր դրան, չըբուխ կը քաշի. գնաց ձեռ պագեց. բարև իտու, բարև առեց։ Դարձաւ Մ. Բաղիկ հարցուց. Քօլօղով լաճ ո՞ւստ կուգաս. ի՞նչ կուզես։

Ասաց. Աղա, լսեր եմ քե շատ մշակներ կան. ձիկ էլ բռնի, բանի մը վերայ դիր. հացբերան կ'աշխատեմ։

Գնա, ասաց, մեր հաւերն արածա՛։

Էն թող մնայ դան, մի՞նչ դառնանք դեհ սարասքար։

Սարասքար ետ դարձե, Թագաւորի լաճուն ասե. Քո կնիկ քո երկու լաճն սպանեց, գիշըրանց թողեց փախաւ։

Թագաւորի լաճն ի՝ կառնի սարասքար

չատոմ՝ էլ տաւքար կ՚էլնեն փտրտել. կ՚եր-
թան Մ. Բազկանց տուն կ՚իջնեն. հարց
փորձ կանեն, բան մը չեն հասկնայ։ Իրի-
կուան հաց կերան. թագաւորի լաճն
ասաց. Հէքաթ սաղ մը չկա՞յ, ականջ
անենք։ Ջէն ինկաւ հաւարածի ականջ.
Ես հէքաթ կ՚ասեմ։ Մ. Բազիկ կ՚ասի.
Ամօթ ի. էն կեղտոտ տըղէն մի՛ հանէք
թագաւորի լաճու իրես։ Թագաւորի լաճն
իմցաւ. ասաց. Թողէք. թող գայ. բան
մը չկայ։ Էկաւ քօլօզով տըղէն, նստաւ.
ասաց. Ես հէքաթ կասեմ, ամա գեղջ
ռէսն ու սարաւքար պիտի գայ ըստայ
նստի. դռներ փակեմ, մարդ դուս չէլնի,
չում ասեմ պրծնեմ։ Կանչիցին սարաւ-
քարն ու ռէսն էկան. դռներ փակեց,
բերան իբաց. ուր գլխով ընցածներ հէ-
քաթ էր շինե, ասաց։ Որ խօսքն էկաւ
վէր ռէսին, ռէսի փորի ցաւ բռնեց.
խօսքն էկաւ վէր սարաւքարին, սարաւ-
քարի փորի ցաւ բռնեց. ի՛նչ արին՝ դռներ
չիբաց, չում ուր հէքաթ թըմըմեց։ Դար-
ձաւ ասաց. Դու իմ հէրն ես, էսա իմ
աղբէրն ի, էսա իմ էրիկն ի, էնա էն սա-
տանայ ռէսնի. էդա էլ սատանի քեռին
սարաւքարն ի. ես էլ ես եմ։

Էն ժահն ինե սարաւքարի վիզ կըթը-
ռուցեն. ռէսի փոր կըթափեն։ Հէրն ու

տըղէն, իրիկ ու կնիկ մէյմէկու վէրէն կ'ուրախնան։

Երկնուց երեք խնձոր ինկաւ։

---

# Ց.

## ՀԱԶԱՐԱՆ ԲՈՒԼԲՈՒԼ

Ժամանակով Թագաւորի մէկ՝ եկեղեցի մը շինել կուտայ․ եօթն տարի կը շինեն․ կ'օծեն․ Թագաւոր կ'երթայ որ աղօթք անի, կը տեսնայ որ բուք կ'ըլնի, քիչ կը մնայ Թագաւոր պիտի խեղդուի․ մէկ էլ ի՞նչ տեսնայ․ ճգնաւոր մը կայնե ուր առջև, կ'ասի․ Թագաւոր, ապրած կենաս․ խօրօտիկ եկեղեցի շինեցիր․ ամա մէկ բան պակասի իսոր։ Բուք կը խստի, ճգնաւոր աներևոյթ կ'ըլնի։

Թագաւոր քակել կուտայ եկեղեցին․ եօթն տարի կը շինեն, վէր առաջուան էլ աղէկ։ Կ'օծեն․ Թագաւոր կ'երթա՛յ աղօթք անի․ անասելի բուք մը կ'էլնի․ էլմ էն ճգնաւոր կ'երևայ Թագաւորին․ կ'ասի․ Թագաւոր, ապրած կ'ենաս․ շատ պուծառ եկեղեցի մ'ես շինե․ ամա բան մը պակաս ի։

Մէկ էլ քակել կուտայ Թագաւոր · էսա դրիս՝ Ինն տարի աշխատէք , կ՚ասի , ըսա կուն շինէք , որ Ջիհանի իրես նման չգըտնուի · Կը շինեն · կ՚օծեն ։ Թագաւոր կերթայ աղօթք անելու · բուք կ՚էլնի , ճգնաւոր կը տնկուի առջև · կ՚ասի · Թագաւոր , ապրած կենաս , աննման ի քո շինած եկեղեցին · ախսոս որ մէկ բան պակաս ի ։ Հետ հետուն Թագաւոր ձեռ կը թալի ճըգնաւորի փողպատ կը բռնի · Դէ՛ ասա մէյ խեմ՝ իմ եկեղեցւոյ պակասն ի՞նչ ի · էսա իրեք դիր դու քակել կուտաս ։ — Էսա եկեղեցւոյն Հազարան բուլբուլ պիտի , որ վայելէ ։ Ճգնաւորն աներևոյթ եղաւ ։ Թագաւորն էկաւ տուն ։

Իրեք լաճ ունէր էս Թագաւոր · լաճեր տեսան որ ուրենց հէր դարդ մ՚ունի · հարցուցին · — Բաբօ՛, ի՞նչ դարդ ունես ։

— Կը մէզեմ որ , ասաց , ես հալւորեր եմ · ժամու համար Հազարան բուլբուլ պէտք է , ես ի՞նչխ էրթամ բիրեմ ։

— Մենք կ՚երթանք բիրենք , ասին տըղէյներ ։ Ելան իրեքն էլ ձիան հեծան գընացին · մէկ ամսուց ետքը , տեղ մը հասան , տեսան որ ճամբան իրեք ճուղ ի · չիւարպն կայնան ։

Ճգնաւորն ռաստ էկաւ իսոնց , հարցուց · Դո՞ր կերթաք , կտրիճներ ։ — Կեր-

թանք Հազարան բուլբուլ բերենք. չենք գիտեր ո՞ր ճամբով երթանք։

Ճգնաւորն ասաց. էս լէն ճամբան երթացող կը դառնայ. միջին ճամբան երթացողը՝ եա դառնայ եա չդառնայ. ցածրի ճամբան երթացողը՝ ումուտ չկայ որ դառնայ։ —Ինչի՞։ —Կ'երթաս ասաց, գետ մը կայ, Հազարան բուլբուլի տէր էնի արե (կախարդութեամբ) աղու, չի խմեր. դու պիտի խմես, ասես. Օ՛խ, անմահութենի ջուր է։ Գետ կ'ընցնես, մէկ պրակ կուգայ. էն արե չարփուշ, իրխանց իսկե. դու պիտի քաղես, հոտոտաս, ասես. Օ՛խ արքայութենի ծաղիկ է։ Պրակ կ'ընցնես, կը տեսնաս մէյ դեհ գէլ կապուկ, մէյ դեհ գառն. գէլու առջև խոտ, գառու առջև միս. պիտի վերցես միս դնես գէլու առջև, խոտը՝ գառու առջև։

Կ'ընցնես կ'երթաս կը հասնես ճոչ դուռ մը, մէկ փեղկը փակ, մէկ փեղկը բաց. փակ փեղկը պիտի բանաս, բացը՝ փակես. Ներս կը մտնես կը տեսնաս որ Հազարան բլբուլի տէրն քներ է. եօթն օր կը քնի, եօթն օր արթուն կը մնայ։ Թէ որ կարցար ասածներս արերիք, Հազարան բուլբուլ կը բիրես. թէ չէ, ոչ կարնաս երթալ, ոչ կարնաս դառնալ։

Ճոչ աղբէր լէն ճամբով գնաց. գնաց

գնաց հասաւ քօշկ ու սարէ մը · ասաց · ինչի՞ պիտի երթամ սպանուեմ · կը մտնեմ ջաս տուն ծառայութեն կ'անեմ , կ'ապրեմ ։

Միջնեկ աղբէրն էլ միջին ճամբհով գնաց · գնաց սարն ընցաւ էն իրես , տիսաւ սարէ մը ճրագի պէս կը վառուէր · իջաւ , ձին կապեց · գնաց խաս բաղչէն կանանչ աթոռ մը կ'էր , ինոր վէրէն նըստաւ · տեսաւ մէկ սև արար մէջ երկինք մէջ գետին կուգայ · էկաւ , հասաւ , խոր ճպոթմ' իզարկ , դարձաւ կլոր քար մը , կլորուաւ' աթոռի տակ ։

Գանք դեհ պստիկ աղբէր ։ Պստիկ աղբէր ձին հեծաւ , ցածրի ճամբահ բռնեց գնաց · իտիւէ իտև ռաստ էկան գետ , պրակ , գէլ, գառն , դուռն · ճգնաւորի ասածներ ըմէն էլ արաց · ներս մտաւ տիսաւ որ ջէհրան մարալ աղջիկ մը պառկե · Հազարան բուլբուլ ուր վանդըկից իջաւ էկաւ վէր աղջկան սրտին հազար լեզուով կը ճվլէր կը բըբլէր · աղջկան քուն տարաւ , տըղէն էլաւ Հազարան բլբուլն առեց , աղջկան իրեսի վէրէն էլ ուր պռկներով նշանմ' իդիր , ետ դարձաւ ուր ճամբահ ։

Աղջիկ քնուց արթնցաւ տիսաւ որ Հազարան բլբուլ չկայ · գիտցաւ որ տարեր են , բոռաց · Դո՛ւռ , բռնէ ։ Դուռն ասաց ·

Աստուած հետն ըլնի, իմ բաց փեղկ փա-
կեց, փակ փեղկն իբաց:

Բոռաց. Գէ՛լ, Գա՛ռն, բռնէք:

Ասին. Աստուած ուր հետն ըլնի. խոտ դառուս իտու, միս՝ գէլուս:

Բոռաց. Պրա՛կ, բռնէ:

Ասաց. Աստուած ուր հետն ըլնի. դու ձիկ արերիր չարփուշ, էնիկ արքայութնի ծաղիկ արաց:

Բոռաց. Գե՛տ, դու բռնի:

Ասաց. ինչի՞ բռնեմ. դու զիկ արերիր պղու գռեխ, էնի արաց անմահութնի ջուր. Թող երթայ, Աստուած ուր հետն ըլնի:

Աղջիկ անճար մնաց. ելաւ ուր ձին հե-ծաւ: Թող մնայ վէր ձիուն:

Լաճն էկաւ հասաւ ճգնաւորի մօտ. բարև իտու. ասաց. Գօ՛ քե Հազարան բլբուլ: Աղբէրներն հարցուց. ասաց. Ջեն իկե: Հազարան բլբուլն իտու ճգնաւորին պահ. ինք գնաց դեհ լէն ճամբահ. ճոչ քաղաք մը հասաւ, գնաց կերակուլ իփո-ղէ մը մօտ հաց ուտելու. տեսաւ որ ուր ճոչ աղբէր էնտեղ ծառայ ի. գաղ-տիկ ճանչուորութեն իտու. առեց ետ դարձաւ. իդիր մօտ ճգնաւոր, ինք գնաց դեհ միջնեկ աղբէր: Գնաց, սարից չուռ առեց էն իրես, տեսաւ քօշկ սարէ մը՝

ճրագի պէս • իջաւ , ծին կապեց , գնաց խաս բաղչէն , կանանչ աթոռի վէրէն նըստաւ • սև արաբն էն դեհէն էկաւ , բոռաց • էյ՛ , էդա տեղ անտէ՞ր ի , որ իկեր նստեր ես ։ Վերուց ճըպօղ պիտի զարնէր , վալա՛յ տըղէն էլ ճարպիկ էլաւ , թըլեց Արաբու ձեռաց ճպօղ , իզարկ ինօր • էն դահն ինե Արաբ դարձաւ քար ։ Տըղէն ուրն ուր ասաց • Կայ չկայ , իմ աղբէր ըստեղ եօխ են արե ։ Ձեռաց ճպօղով էն կօլօն քարերացն իզարկ , տեսաւ քարեր ըմէն դարձան մարդ , էլան կը փախնեն ։ Խրիչկեց որ ուր աղբէր մէջեր չի • տեսաւ աթոռի տակն էլ քար մը կ՚էր , ճպօղով իզարկ , էլաւ որ ուր աղբէրն ի , կը փախնի ։ Կանչեց իտիւէն , Ախբէ՛ր , մի՛ փախնե , ես քո ախբէրն եմ ։ Դարձաւ ո՞ր հա՛ ։ Մէյտեղ էկան մօտ ճգնաւոր ։

Հազարան բլբուլն առին , իրեք աղբէր մէյտեղ կուգան • ծարւըցեր են , հասան հորի մը բերան • պստիկ ախբէր իջուցին որ ջուր հանի • ջուր քաշիցին , ախբէր թողին մէջ հորին • երկու աղբէր մէյմէկու ասին • էն որ հետ մե ըլնի , մեր հօր առջև մենք ի՞նչ իրիսով էլնենք ։ Առին Հազարան բլբուլ գնացին ։ Հասան տունը , հօրն ասին • Մեր պստիկ աղբէր սպանուաւ • Հազարան բլբուլ մենք առինք բիրինք ։ Հա-

զարան բլբուլ կախեցին ժամու մէջ, բայց ոչ ձէն կ'ածի, ոչ շունչ։

Աղջիկն ոսր ձիով հասաւ մծան թագաւորին, ասաց. Էն կտրիճ ո՞վ է որ իմ Հազարան բլբուլ բերեր է։ Երկու ախբէրն ասին. Մենք ենք։ — Ի՞նչ տեսաք՝ վէր ճամբէին։ — Բան մը չտեսանք։ — Բերող դուք չէք. դուք գող էք, ասաց։ Բռնեց իդիր բռնատուն, թագաւորն էլ, երկու լաճն էլ, ինք զաւթեց քաղաք նստաւ։ — Ջում Հազարան բլբուլ բերող չի գայ, ձէ ածել չկայ։

Իսոնք թող մնան ըստայ, մենք երթանք դէհ տղէն։

Գարի քաղող կնիկներ տղէն հորեց հաներ են, էն մէկ պառաւ առե ուր հոգեզաւակ։ Քանիմ՝ չարաթ ընցաւ, ձէն ձէնոց ինկաւ դուս, էկաւ հասաւ չում տղին, թէ՝ Հազարան բլբուլ բերողն իկեր ի, տէրն էլ խուլէն իկեր ի։ Մէկ օր պառաւուց իզլին առեց տղէն, ասաց. Երթամ քաղաք, նոր ժամմ՝ են շինե, թամաշայ անեմ։ Գնաց։ Գնաց ուրենց տուն, տեսաւ որ ոչ հէր կայ, ոչ ախբէրներ։ Հարցուց. Ո՞ւր են։ Ասին. Հազարան բլբուլի տէրն իկե, բռնե դրե բռնատուն։ Տղէն գնաց բռնատնից իհան հէրն ու ախբէրներն։ Աղջիկն ասաց. Ես Հազարան

քաղաքէն և տունէն, և գնաց հեռու ան-տառի մը մէջ կը բնակէր, և կ'աղօթէր օր ըստ օրէ որս մ'ընելով։

Օր մը սովորականին հակառակ երկու որս ունեցաւ. 'ի դարձին տեսաւ որ իւր բնակարանին մերձ նստած է աղուէս մը. որ անմիջապէս փախեր մարդուն ձեռքէն որսերն առաւ, շնորհքով մաքրեց պատ-րաստեց, մէկն բերաւ մարդուն, միւսն ինքն ճաշակեց։

Հետևեալ առաւօտ դարձեալ որսի գնաց. և այս անգամ երեք որս որսաց։ Ուրեմն նոր հիւր մ'ալ ունիմ այսօր, ասաց։ Եկաւ, տեսաւ ահագին արջ մը նստեր առընթեր աղուէսին։ Վազեց ա-ղուէսն, առաւ որսերը, պատրաստեց. և երրորդ մասն արջին հրամցուց։

Յաջորդ օր չորս որս որսաց իշխանա-զունն. և 'ի դարձին տեսաւ ահա գայլ մը բազմեր է արջին հետ։ Դիմաւորեց աղուէսն, առաւ որսերը, պատրաստեց և բաժանեց։

Միւս օր՝ հինգ որս որսաց. դարձաւ, տեսաւ ամեհի առիւծ մը վեհափառ բազ-մեալ։ Աղուէսն իր պաշտօնը կատարեց ըստ առաջնոյն։

Գիշերը լուսցաւ. Նորէն գնաց իշխա-նազունն յորս, և այսօր բերաւ վեց որս.

վասնզի ինձ (ղուֆլան) գաղանն եկած էր ։

Վեցերրորդ օր գնաց, և եօթն օրս որսալով դարձաւ. տեսաւ ահա մեծ հաւք մը, որ մէկ թև կը բանայ Բաղդադ, մէկ թևն կը հասնի Բասրայ. Անկա Զմրութ կ'ըսուի այդ թռչունն ։ Աղուէսն ժիր ծառայի մը պէս՝ պոչ ցնցելով կը վազէ Իշխանազունին ընդ առաջ. յարգանքներ մատուցանելով, կ'առնու ձեռքէն որսերը, կը պատրաստէ, և նախ որսորդին կուտայ, մնացեալն ևս հաւասար կը մատակարարէ իւրաքանչիւրին ։

Զարմանքն և սարսափ բռնած է Իշխանազունը. կը սոսկայ գազանաց գազանութենէն. կը հիանայ անոնց ընտելութենէն ։ Բայց ի՞նչ կ'ուզէ. ահա աքանչելի գերդաստան մը իրեն. ընտանիք, բարեկամք և ընկերք ։ Կը շարունակէ մարդ իւր այս նախանձելի վիճակը, և օրէ օր կ'անդորրանայ ։

Ասոնց բնակավայրին մերձ կայծակնահար եղած հաստաբուն կաղնիի մը կոճ կար, որ յայսմհետէ պիտի անուանուի Աղուէսի գահ. և անոր առջև տարածուած մարգագետինն՝ ասոնց Խորհրդավայր կամ հրապարակն ։

Երբ Իշխանազունն մեկնեցաւ ըստ սովորութեան երթալ յորս, պարոն աղուէսն

ելաւ իր գահը, ատեանը հրաւիրեց գա-ղանները, երախտագիտութեան ճառ մը խօսեցաւ, և պարգևք դրաւ իւրաքանչիւրին վրայ՝ այսուհետև ճանչնալ և կոչել զիշ-խանազունն իրենց Տէր․ և ծառայել անոր սրտի մտօք և անձնուիրութեամբ: Կեն-դանիք իրենց մէկ թաթիկը բարձրացուցին և հաւքն իր մէկ թևը բացաւ՝ ինչան ուխտի հաւատարմութեան:

Ուրեմն, առաջարկեց աղուէսն, այս-օրուընէ սկսելու ենք մեր անձնուիրու-թիւն ցոյց տալ․ գիտէք ամենքդ որ մեր Տէրն մարդ է և ազնուական մարդ․ անոր պէտք է պատուական վրան մը, մէջը բազ-մոցներ, անկողին, և ուտելու խմելու անօթներ․ արդ այսօր այս պէտքեր պիտի հոգայուին․ ո՞վ ձեզմէ յանձն կ'առնու այս ծառայութիւնս ընել:

Ամենքն վճռեցին թէ՝ Անկա Զմրութն: Յանձն առաւ նա․ վայրիկ մի ևս, և ահա իր թևոց վրայ բարձած բերաւ՝ամենայն ինչ: Աղուէս կանգնել տուաւ վրան, կազ-մաւորեց կարասիներ և անկողին․ իրիկուն դարձաւ Տէրն, դիմաւորեցին ամենքը, և հանգուցին ՚ի փառանոր հանգիստ: Ոսերը մաքրեց աղուէսն․ և Իշխանազունին բա-ժինը սանով եփեց, չնորհքով սեղան մը պատրաստեց․ ճաշակեց Տէրն գոհութեամբ

և դողութեամբ հանդերձ ։ Լափեցին կենդանիքն ալ իրենց բաժինը ։

Հետևեալ առաւօտ գնաց իշխանազունն 'ի յորս, և Գ. Աղուէսն տուտն երերելով ելաւ բազմեցաւ 'ի գահ, հոն ժողվեցան անասնականք ։ Գահակալն սկսաւ նոր առաջարկութիւն մ'ընել ։

«Գիտէք որ, ըսաւ, Աստուած մարդն ստեղծեր, անոր օգնական մ'ալ ստեղծեր է. այս աւանդութիւնը մեր պապերը իրենց պապերէն լսելով պատմած են մեզ. Ադամ ամեն կենդանիք աչքէ անցուցեր, զոյգ զոյգ տեսեր. Աստուծմէ գանգատ ըրեր իր միանձնութեան համար, ուստի Աստուած՝ Եւան տուեր անոր ։ Արդ Աստուծոյ հակառակ, բնութեան հակառակ է որ մարդ մինակ ապրի. մեր Տիրոջ կնիկ մը պէտք, կնիկ մը՝ որ թագաւորի աղջիկ լինի. ո՞վ յանձն կ'առնու ձեզմէ այս ծառայութիւնն ընել ։

Կը խորհին. — Թէպէտ յօժար ենք ամենքս ալ, կ'ըսեն, բայց միջոցներ կը պակսին մեզի. իբրև գազան՝ կը հալածեն չեն թողուր մերձենալ պալատին կամ պարտիզին. կ'աղաչեն Անկա Ջմրուխտը, որ այս պաշտօնն ալ ինքն կատարէ ։

Կը հաւանի հաւքն, և կը խոյանայ արքունի բուրաստանը ; ուր արքայադուստր

եղած նաւզ 'ի նաւզ կը հեծէ ծաղկանց և վարդենեաց այծելու. կը յափշտակէ զաղջիկն. և ահա աղջիկը զինք կը գտնէ անտառի գազանաց վոհմակի մը մէջ. ուրուականն մեծ յարգանքներ կ'ընդունի. Մանաւանդ Պ. Աղուէսն ձևեր կը ձևանայ, լեզու կը թափէ, կ'ապահովէ, կ'անձնդրուրացնէ:

Այսօր Իշխանազունն ութն օրս տրտմացած էր. և իր մտքէն կ'անցընէր թէ ո՞վ գիտէ ի՞նչ նոր գազան մ'ալ եկած է իրեն հիւր կամ ընկեր: Այլ սակայն քանի՜ մեծ եղաւ իւր հիացումն, երբ իրիկուն դարձաւ. աղուէսն սովորականէն աւելի անձկոտոր կը լինէր, կը քծնէր, կ'երկրպագէր. և գազանք առ հասարակ հպատակօրէն կ'առաջնորդէին իրեն 'ի վրան. ուր մտնելով տեսաւ իւր սիրահար արքայադուստր. քանի՜ մեծ եղաւ երկոցունց ալ ուրախութիւնն.

Թագաւոր կը լսէ թէ իր դուստր յափշտակեցին, սպառազէն չորս սուրհանդակ կը հանէ, որ ուղղակի դէպ' անտառ կուգան. Աղուէսն կը տեսնայ 'ի հեռուստ և կը գուշակէ. հրահանգ կուտայ արջոյն և գայլոյն, կ'երթան երեքը կը պատառեն, մէկն ողջ կը ձգեն, որ կը դառնայ արքային կը պատմէ:

Արքայն ութն սպառազէն և կը հանէ · անոնց դէմ կը ղրկէ աղուէս զառիւծն և զինձն , նոյն պատուէրը տալով · որք եօթն կը պատառեն , մէկը միայն ողջանդամ կը դառնայ և կը պատմէ արքային ։

Արքայն բանակ կը կազմէ անտառը գալու , Աղուէս կը գուշակէ զայն · ուստի 'ի գահ կ՚ամբառնայ , կ՚ազդարարէ գազանաց որ երթայ իւրաքանչիւր իւր ազգը բերէ ։ Հետևեալ օր իշխանազունն որսէն դառնալով բոլոր անտառը գազանօք լի կը գտնէ · բայց իր ընտանիներ կ՚առաջնորդեն իրեն , և աղուէսը կը բացատրէ խընդիրն ։ Ի վաղիւն արքայի բանակը կուգայ · գազանաց բանակ կը ճակատամարտի , և գազանք կը յաղթանակեն · իրենց Տէրն կը տանին կը թագաւորեցնեն մայրաքաղաքի մէջ · Աղուէսն փոխարքայ կը լինի , միւսներն ալ նախարար · այսպէս կը բաղդաւորին ամենքն ալ ։

Երկնուց երեք խնծոր ինկաւ ։

---

# ԵՐԳՔ ԵՒ ՆՈՒԱԳՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ

Կարծենք հարկ չկայ այս մասին երկար գրելու. ծանուցեալ է ամենուն թէ, ուր որ ծաղկունք, ծառք, ջուրք, թռչունք, մարգ, արտորայք, լերինք, անտառք, բուրաստանք, հովաստանք իրենց հայրենիք կը ճանչնան և Աստուածատունկ եղեմայ վայր. այն աշխարհի մարդիկ 'ի հրեշտակաց աշակերտեալ, 'ի բնութենէ զգածեալ ամեն հոգի երգող կը լինի և նուագող։ Մեր աշխարհի մէջ կը տեսնաս ուղևոր մը իր երկայն ուղևորութեանը մէջ կ'ընթանայ՝ խաղ ասելով. յերիվար հեծանող՝ իր ձինը լաւ քալեցնելու համար խաղ մը կ'ըսէ. գրաստավարն, եզնավարն, մանաւանդ սայլավարն և հերկարարն պատշաճ իմաստով պատշաճ եղանակաւ քաղցրաձայն կը կանչեն խաղեր. և այնքան սովորած են անասունք, երբ վարիչն լռէ, անասունն կը կենայ։ Ձմեռն ձիւն կը սրբէ, խաղ կըսէ. փայտ կը կտրէ, խաղ կ'ըսէ. բուրդ ու

թամպակ կը գզէ, կը մանէ, կամ չալ ու կտաւ կը գործէ, խաղ կ'ընէ: Տիկինը նստած կով կամ այծ կը կթէ, երգ մը կը մրմնջէ. ճախրակ կը մանէ, մանուկը կ'օրօրէ, խմոր կը շաղախէ, աւել կ'ընէ, քաղհանք կ'ընէ, ծաղիկ կը փնջէ, միրգ կը հաւաքէ, բանջար կը ժողվէ, կար կը կարէ, վերջապէս ինչ որ կ'ընէ, աղուական ձայնիւ եղանակ մը կը մրմնջէ:

Հիւսն իր ուրագ դարձնելուն, դարբինն երկաթ ծեծելուն, որմնադիրն աղիւս շարելուն, սարակն այգին փորելուն, քանքանն ջրհոր փորելուն կամ հորդելուն, անդաստանաւ բան մը կը մրմնջան: Մանաւանդ շատ հանդիսաւոր է խաղողի կութին այգեստանեաց համար. եւ առաւել խոտի և ցորենի հունձն գեղացւոց համար. երբ գեղացւոց բազմութեամբ՝ ուէսին, երէցուն, եկեղեցւոյն, վանքին, աղային արտը կը հնձեն, զուռնան նաղարան կը դղրդեցընէ լեռները, քաղուորներ մանգաղ 'ի ձեռին կ'երգեն, կը կայտռեն, կը կաքաւեն, և հունածին եռեւէն ջրի ակէս արտը փանցելով կը կտրեն կը լափեն արտը. իսկ երբ լմննան, իրիկունները խաղ անելով, սայլ բոլորելով մինչև գիշերուան քանի մը ժամեր կ'անցունեն, բացօթեայ քա-րածուելով քնքոյշ օդային վրայ կամ ցա-

մաղթերգին՝ երջանիկ քուն մը կը քնանան։ իսկ ասոնք, հարսանեաց, խնջոյից, և այլ հանդիսաւոր առթուց համար յատուկ յօրինուած, հարուստ հնչուն խաղեր ու տաղեր կան, թէ հոգևոր թէ մարմնաւոր, թէ հայերէն թէ տաճկերէն կամ քրդերէն, 'ի ձեռին ունելով ջութակ մը կամ տաւիղ մը. կը խառնեն նաև այս խաղուց հետ զօրավանք 'ի վերայ Նարեկացւոյն, Ս. Կարապետին, Ս. Երուսաղէմին. երբեմն ես ազգաշխարութեան յորդորներ, մեր անգիր աշուղներ։

Երգոց և նուագաց վրայ խօսած ժամանակ, չեմ ուզեր հեռանալ մինչև Գողթնեաց երգերը, չեմ ուզեր ուշադրութեան առնուլ բամբիռն, ցուցն, պարն, լարն քնարն, կիթառն, կայթիռն և կաքաւիլն։

Ոչ ալ մեր Մեղեդեաց և Շարականաց նկատմամբ պիտի խօսիմ, որք յատուկ Հայկական մտաց սեպհական հանք են Աստուածային զարդուց անզուգական և անգին ականց գոհարեղինաց՝ իրենց բարձրութեամբ և վսեմութեամբ։

Այլ սակայն Ս. Գրիգոր Նարեկացւոյն մէկ երկու տաղերը 'ի մէջ կը բերեմ, որոյ տիպն և ոճն ևեթ Նորին Սրբութեան իբրև յատուկ համարուած են. բայց ուշադիր մը մինչև ցայսօր իսկ Նարեկեան կընարին

(սահմանին) Հայոց ժողովրդական բերան գտնուած երգերէն կրնայ համոզուիլ թէ նոյն ինքն Ս. Գ. Նարեկացւոյն ոճն ոչ թէ իր յատկական անձնական, այլ հայրենի գաւառի տեղական ժողովրդեան ընդհանուր ոճն է ։

Ահա Մոքոյն երգերէն մաս մը ։

## ՄԵՂԵԴԻ ԾՆՆԴԵԱՆ

Երգ զարմանալի, երգ չարժվարժենի,
Տեղի եղեր բարեկերտին․
Խորհուրդ խորհուրդ համերամ,
Զարդ երամից զարդ ։
Նոճ 'ի նոճ յեռից,
Սափոր եղեգնաչէն տնկոյն,
Մատն օրինօրէն, նշդարենի ռահ ։
Զօնից նրբենից 'ի մի կից կամար,
Նշենմ թէ նշենմ միջօրէի ժամ ։
Աչքըն ծով 'ի ծով ծիծաղախիտ
Ծաւալանայր յառաւօտուն․
Երկու փայլակնաձև արեգական նման․
Շողն 'ի ժմին իջեալ յառաւօտէ լոյս ։
Վարսիցն երամից զարդ,
Երամից զարդ ոլորս են առեալ,
Եռահիւսակն բոլորեալ այտիւք ։
Ցայտէն նռնենի սարդիատունկ
Գեղաչիտակ ծայրից ծաղկանց․

Որոյ սիւնն 'ի պոտին
Նուսխայօրէն կարկաջայր ։
Ջեռացն Եղիշոյ կամարակապ կապէր ,
Ատիճաղ պատիճաղ, սըտղի խըտղի երգով ։
Հիւսէր գեղեւելսն ընդ միմեանս ,
Հանգարտիկ խաղայր , Թիկնէթեւլին ճեմէր ։
Բերանն երկթերթի , վարդն 'ի շրթանց կաթէր ,
Լեզուին շարժողին քաղցրերգանայր տաւիղն ։
Ծոցըն լուսափայլ , կարմիր վարդով լցեալ ,
Ծղիքն ծիրանի , մանուշակի հոյլք ։
Խնկեալ 'ի կնդրկէ բուրվառ
Հրով աստուածայնով լցեալ.
Ձայն քաղցրանուագ , որ 'ի նմանէ հնչէր ։
Գեղեցիկ պատմուճանաւըն զարդարեալ էր ,
Ի կապուտոյ , 'ի ծիրանւոյ , 'ի բեհեզոյ , 'ի յորդանէ ։
Գօտին արծաթափայլ ոսկէտըտուն ,
կամարակապ յականց , յականց շափիւղայ.
Մանրամասին յօրինուածով պճնեալ ։
Անձինն 'ի շարժել մարգարտափայլ գեղով,
Ոտիցն 'ի գնալ շողն 'ի կաթել առնոյր ։

## ՏԱՂ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան։
Սայլն այն իջանէր 'ի լեռնէն 'ի Սաւեայ.
Եւ 'ի վերայ նորա աթոռք են կարգեալ.
Եւ 'ի վերայ նորա գահոյք ոսկեղէնք.
Եւ 'ի վերայ նորա բեհեզք ծիրանիք.
Եւ 'ի վերայ նորա որդի արքայի.
Եւ յաջմէ նորա վեցթեւեան սրովբէք.
Յահեկէ նորա բազմաչեայ քրովբէք.
Առաջի նորա մանկունք գեղեցիկ.
Ի գիրկըս նոցա խաչն տէրունական.
Ի ձեռին նոցա սողմոսարան և քնար.
Որք երգէին և ասէին.
Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան։

Ածեալ են ածեալ զսայլիկն,
Ածեալ են կացուցեալ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն.
Եւ ահա չխաղայր անիւն այն։

Եթէ հարիւր բարդ խոլըրձուն, վեց կորընկանն,
Մին մանուշակ խրձադիզեալ.
Ի Սաւեաց յաջ կողմանէն
Սայլիկն ածեալ են կացուցեալ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն,
Եւ ահա չխաղայր անիւն այն։

Եթէ սամիքն են արծաթի, լուծն էր ոսկի
Եւ սամոտիքն ապրիշումի ·
Փոկեր շարած, շարանըման հոյլ մարգարիտ·
Եւ ահա չշարժէր սայլիկն այն,
Եւ ահա չխաղայր անիւն այն ։

Այն ճորտն ճոխ էր և ճապուկ ;
Ուռամիջակ, հաստաբազուկ,
Լայնաթիկունք, խարտիշագեղ, ահեղագոչ·
Նա ձայն ածէր եզն ամոլին,
Կանչիւն առնէր աթոռակին ։

Եթէ եզինքն են սաթ սպիտակ,
Ծաղկախայտուցք, արագաքայլք, ընթա-
ցականք ·
Եղջիւրն ամեն խաչանըման ·
Եւ մազն ամեն հոյլ մարգարիտ ·
Եւ ահա շարժէր սայլիկն այն,
Եւ ահա խաղայր անիւն այն ։

Ի յառեղէն առեալ շարժումն կուրծն
սայլին,
Նա ձայն ածէր եզն ամոլին ։
Սայլն 'ի Սինայ երկրորդ օրէնքն էր Մով-
սիսին ։

Եւ այն հարիւր բարդ խուրձան,
Այն Նահապետքն են մարգարէք ·
. . . . . . . . . . . . . . . . . . . . . .
Ի գիւղ գայր 'ի գիւղ, սայլիկն 'ի գիւղ·
Եւ ճռնչալով գայր մտանէր յԵրուսաղէմ·
Եւ որդիք նոր Սիոնի նոր երգէին զայս
ասելով,
Փառըք Քրիստոսի ամենազօր յարութեան.

Կը տեսնա՞ս Ռշտունեցւոյ մը երգն · Աչքն 'ի ծով, Այտն նռնենի · կուսին նկարագիր՝ Բերանն երկթերթի · Վարդն 'ի չրթանց կաթէր · Ծոցն լուսափայլ՝ կարմիր վարդով լցեալ· · · ։ Կը տեսնա՞ս Ռշտունեցի հօտաղեզնավարին սրբազնացուցեալ երգն· ընտիր նկարագիր սայլին որայից խրձաբարձ ։ Իսկ մէկ քանի բառեր դեռ կը մնան անվերծանելի ։

Այս արժան կը համարիմ դասաւորել դարուս ականաւոր Հայ բանաստեղծ Հ. Գաբրիէլ Պատկանեանի մէկ երգն, որ Գողթնեաց բամբռամբ և Ռշտունեան քերթուածով յօրինած է · կարծես բամբիռն 'ի ձեռին՝ հոգւով սլացեր յալիսն ալեաց ծովուն Ռշտունեանց, անոր երեսաց և եզերաց բնակաց բնութեան ձայնիւ և տեսարանով չաղեալ իր երգն՝ կ'երգէ զՅուռութս Յուլունան Շամիրամայ 'ի ծովն ծիրանի ։ Եւ ահաւասիկ ։

---

## ԵՐԳ ԳՈՂԹԱՆ

Յուլունան Շամիրամայ,
Յուռութք յուլունան Շամիրամայ ·
Յուռութք 'ի ծով ծածանէին,
Ծածանէին 'ի ծով ծիրանի ·
Յուռութք 'ի ծով ծիրանի,
Ծիծղաղախիտ ծածանէին ։

Ու

Յուլունան Շամիրամայ,
Յուռութք յուլունան Շամիրամայ.
Ծածանէին 'ի հով զովարար,
Ծածանէին 'ի հով ծիրանի.
Գիսակք 'ի հով հիւսիսոյ,
Աիրապատար տարուբերէին:

Յուլունան Շամիրամայ,
Ծածկոյթք յուլունան Շամիրամայ.
Ծածկոյթք զստինան սքօղէին,
Սքօղէին յաչաց պատանեկաց,
Ծածկէին յաչաց պատանեկաց.
Յաչաղելով զստինան սքօղէին:

Յուռութք յուլունան պատանեկուհւոյն,
Նռռունք յուլունան Շամիրամայ.
Նռռունք կիսեալք քօղարկէին,
Քօղարկէին 'ի ծոց սպիտակ.
Նռռունք 'ի ծոց սպիտակ,
Պատուածովք քօղարկէին:

Յուլունան Շամիրամայ
Ի սպիտակ ծոց Շամիրամայ
Խնծորք անոյշք բուրէին.
Բուրէին խնծորք սպիտակք,
Խնծորք 'ի ծոց արքայուհւոյն.
Քաղցրանոյշ սփռէին բուրումն,
Ջանոյշ բուրումն տային:

Յուլունան 'ի ծոց Շամիրամայ,
Ամբառնան բրդունք ստեանց.

Բրգունք անուշահոտ նռնանց ,
Նռնանց կիսելոց , խնձորոց կիսաբոլոր .
Ընդ զմայլին 'ի հոտ անուշութեան ,
Զմայլին քաղջիկք Ասորեստանի ։

Ցուռութք յուլունան Շամիրամայ ,
Ցուռութք 'ի ծոց արքայուհւոյն ,
Թովեն զազգն Արարատայ .
Արբեն յաչաց զարտասուս ,
Զարտասուս վասն մահուն Արայի .
Տեսանեն զկարդոս 'ի գահի ։

Ծով է ծոց իւր , ծոց Շամիրամայ ,
Յուլունան 'ի ծոց մատաղաւուրց աշխարհակալին ,
Ամբառնան բրգունք սպիտակք .
Ամբառնան բրգունք ստեանց ,
Ամբառնան բոլորակք սմեանց .
Ի ծով անդ ծիրանի
Ծածանին ճաճանչք արփւոյն ։

Ցուռութք յուլունան արքայուհւոյն ,
Գործք ձեռաց Զրադաշտայ ,
Կառուցանեն զընթացս գետոց ,
Շիջուցանեն զթափ նետից , նիզակաց .
Կրթեցուցանեն զսիրտս քաջաց
Ի սէր մատաղաւուրց Թագուհւոյն .
Արտացուցանեն զերիտասարդս ,
Ի գեղ երեսաց Շամիրամայ ։

Յուլունան Շամիրամայ
Ծիրանի ծածկոյթք ծածանէին ,

Ծիրանիք 'ի ծով տարուբերէին․
Յուռութք 'ի ծով ծիրանի,
Յուռութք 'ի ծոց արքայի։

Յուռութք յուլունան յաղթողին
Ձգէին հազարաւորս սրտից,
Քարշէին բիւրաւորս թագակալաց․
Ամենեքեան սիրով թագուհւոյն վառեալք
Ամենեքեան վառեալք 'ի մարտ․
Վառէր զնոսա Շամիրամայն սէր,
Վառէր զնոսա ժպիտ շրթանց թագուհւոյն
Յուռութք յուլունան նորա։

Յուռութք Շամիրամայ յաչս,
Յուռութք Շամիրամայ 'ի շրթունս․
Ձգեաց զաչսն և ետես զլեառն․
Ըզլեառն, որ վկայէր քաջութեան Հայկին,
Որ տեսեալ էր զմահ Նեբրովթայ,
Զհարուած երեքթևեան փքնին։

Յուռութք 'ի շրթունս հզօր պատուա նեկուհւոյն
Ժպիտք շարժեն յազգս և լեզուս․
Սեպացեալ լեառն փոխի 'ի քաղաք,
Մանեակ 'ի պարանոց լերին․
Գօտի ընդ մէջ լերին
Ածաւ ձեռամբ թագուհւոյն,
Կառուցաւ Շամիրամակերտ։

Յուռութք յուլունան Շամիրամայ
Ժողովեցին անդ զամենայն հրաշակերտս․

բամպակ կը գզէ, կը մանէ, կամ շալ ու կտաւ կը գործէ, խաղ կ'ըսէ։ Տիկինը նստած կով կամ այծ կը կթէ, երգ մը կը մրմնջէ. ճախրակ կը մանէ, մանուկը կ'օրօրէ, խմոր կը շաղախէ, ալեւր կ'ընէ, քաղհանք կ'ընէ, ծաղիկ կը փնջէ, միրգ կը հաւաքէ, բանջար կը ժողովէ, կար կը կարէ, վերջապէս ինչ որ կ'ընէ, աղուական ձայնիւ եղանակ մը կը մրմնջէ։

Հիւսն իր ուրագ դարձնելուն, դարբինն երկաթ ծեծելուն, որմնաշարն ապիւս շարելուն, սարակն այգին փորելուն, քանքանն ջրհոր փորելուն կամ հորդելուն, անպատճառ բան մը կը մրմնջան։ Մանաւանդ շատ հանդիսաւոր է խաղողի կութին այգեստանեաց համար. եւ տաւար խոտի և ցորենի հունձն գեղացւոց համար. երբ գեղացւոց բազմութեամբ՝ ուէսին, երէցուն, եկեղեցւոյն, վանքին, աղային արտը կը հնձեն, զուռնան նաղարան կը գղրդեցընեն լեռները, քաղուորներ մանգաղ ի ձեռին կ'երգեն, կը կայտռեն, կը կաքաւեն, և հունածին եռաէն ջրի պէս արտագ վազելով կը կտրեն կը լափեն արտը. իսկ երբ ընթրեան, իրիկունները խաղ ասելով, պար բոլորելով մինչև գիշերուան քանի մը ժամեր կ'անցունեն, բացօթեայ քառաթածուելով քնքոյշ օթայից վրայ կամ ցա-

մաքուր գետոյն՝ երջանիկ քուն մը կը քնանան։ իսկ ատենի, հարստանեաց, խնջոյից, և այլ հանդիսաւոր աւուրց, համեմատ յատուկ յօրինակ, հարուստ հարճուստ խաղեր ու տաղեր կան, թէ հոգևոր թէ մարմնաւոր, թէ հայերէն թէ տաճկերէն կամ քրդերէն, 'ի ձեռքն ունելով ջութակ մը կամ տաւիղ մը. կը խառնեն նաև այս խաղուց հետ գովասանք 'ի վերայ Նարեկացւոյն, Ս. Կարապետին, Ս. Երուսաղէմին. երբեմն ևս ապաշխարութեան յորդորներ, մեր անգիր աշուղներ։

Երգոց և նուագաց վրայ խօսած ժամանակ, չեմ ուզեր հեռանալ մինչև Գողթնեաց երգերը, չեմ ուզեր ուշադրութեան առնուլ բամբիռն, ցուցն, պարն, լարն քնարն, կիթառն, կայթիռն և կաքաւիլն։

Ոչ ալ մեր Մեղեդեաց և Շարականաց նկատմամբ պիտի խօսիմ, որք յատուկ Հայկական մտաց սեպհական հանք են Աստուածային զարդուց անզուգական և անգին ականց գոհարեղինաց՝ իրենց բարձրութեամբ և վսեմութեամբ։

Այլ սակայն Ս. Գրիգոր Նարեկացւոյն մէկ երկու տաղերը 'ի մէջ կը բերեմ, որոյ տիպն և ոճն ևեթ Նորին Սրբութեան իբրև յատուկ համարուած են. բայց ուշադիր մը մինչև ցայսօր իսկ Նարեկեան կընարին

(սահմանին) Հայոց ժողովրդական բերան գտնուած երգերէն կրնայ համոզուիլ թէ նոյն ինքն Ս. Գ. Նարեկացւոյն ոճն ոչ թէ իր յատկական անձնական, այլ հայրենի գաւառի տեղական ժողովրդեան ընդհանուր ոճն է ։

Ահա Արբոյն երգերէն մաս մը ։

## ՄԵՂԵԴԻ ԾՆՆԴԵԱՆ

Երգ զարմանալի, երգ չարժվարժենի,
Ցեղի եղեր բարեկերտին.
Խորհուրդ խորհուրդ համերամ,
Զարդ երամից զարդ ։
Նոճ 'ի նոճ յեռից,
Սափոր եղեգնաշէն տնկոյն,
Մատն օրինօրէն, նշդարենի ռահ ։
Զօնից նռբենից 'ի մի կից կամար,
Նշճեմ թէ նշճեմ միջօրէի ժամ ։
Աչքըն ծով 'ի ծով ծիծաղախիտ
Ծաւալանայր յառաւօտուն.
Երկու փայլակնաձև արեգական նման.
Շողն 'ի ժմին իջեալ յառաւօտէ լոյս ։
Վարսիցն երամից զարդ,
Երամից զարդ ոլորս են առեալ,
Եռահիւսակն բոլորեալ այտիւք ։
Ցայտէն նռնենի սարդիատունկ
Գեղաշիտակ ծայրից ծաղկանց.

Որոյ սիւնն 'ի պտուին
Նուսխայօրէն կարկաչայր ։
Ջեռացն Եղիշոյ կամարակապ կապէր ,
Ատիճաղ պատիճաղ, սլտղի խլտղի երգով ։
Հիւսէր գեղեցկան ընդ միմեանս ,
Հանդարտիկ խաղայր , թիկնէթեկին ճեմէր ։
Բերանն երկթերթի , վարդն 'ի շրթանց կաթէր ,
Լեզուին շարժողին քաղցրերգանայր տաւիղն ։
Ծոցըն լուսափայլ , կարմիր վարդով լցեալ,
Ծղիքն ծիրանի , մանուշակի հոյլք ։
Խնկեալ 'ի կնդրկէ բուրվառ
Հրով աստուածայնով լցեալ.
Ձայն քաղցրանուագ , որ 'ի նմանէ հնչէր ։
Գեղեցիկ պատմուճանաւըն զարդարեալ էր ,
Ի կապուտոյ , 'ի ծիրանւոյ , 'ի բեհեզոյ , 'ի յորդանէ ։
Գօտին արծաթափայլ ոսկէտըռաւն ,
Կամարակապ յականց , յականց շափիւղայ.
Մանրամասին յօրինուածով պճնեալ ։
Անձինն 'ի շարժել մարգարտափայլ գեղով,
Ոտիցն 'ի դնալ շողն 'ի կաթել առնոյր ։

---

# ՏԱՂ ՑԱՐՈՒԹԵԱՆ

Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան։
Սայլն այն իջանէր 'ի լեռնէն 'ի Մասեաց.
Եւ 'ի վերայ նորա աթոռք են կարգեալ.
Եւ 'ի վերայ նորա գահոյք ոսկեղէնք.
Եւ 'ի վերայ նորա բեհեզք ծիրանիք.
Եւ 'ի վերայ նորա որդի արքայի.
Եւ յաջմէ նորա վեցթևեան սրովբէք.
Յահեկէ նորա բազմաչեայ քրովբէք.
Առաջի նորա մանկունք գեղեցիկ.
Ի գիրկըս նոցա խաչն տէրունական.
Ի ձեռին նոցա սաղմոսարան և քնար.
Որք երգէին և ասէին.
Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան։

Ածեալ են ածեալ զսայլիկն,
Ածեալ են կացուցեալ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն.
Եւ ահա չխաղայր անիւն այն։

Եթէ հարիւր բարդ խոլորձուն, վեց կորընկանն,
Ային մանուշակ խորձադիզեալ.
Ի Մասեաց յաջ կողմանէն
Սայլիկն ածեալ են կացուցեալ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն,
Եւ ահա չխաղայր անիւն այն։

Եթէ սամիքն են արծաթի, լուծն էր ոսկի
Եւ սամոտիքն ապրիշումի.
Փոկեր շարած, շարանըման հոյլ մարգարիտ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն,
Եւ ահա չխաղայր անիւն այն։

Այն ճորտն ճոխ էր և ճապուկ;
Ուռամիջակ, հաստաբազուկ,
Լայնաթիկունք, խարտիշագեղ, ահեղագոչ.
Նա ձայն ածէր եզն ամոլին,
Կանչիւն առնէր աթոռակին։

Եթէ եզինքն են սաթ սպիտակ,
Ծաղկախայտուցք, արագաքայլք, ընթա-
ցականք.
Եղջիւրն ամեն խաչանըման.
Եւ մաղն ամեն հոյլ մարգարիտ.
Եւ ահա շարժէր սայլիկն այն,
Եւ ահա խաղայր անիւն այն։

Ի յառեղէն առեալ շարժումն կորբն-
սայլին,
Նա ձայն ածէր եզն ամոլին։
Սայլն 'ի Սինայ երկրորդ օրէնքն էր Մով-
սիսին։

Եւ այն հարիւր բարդ խոլրձան,
Այն նահապետքն են մարգարէք։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Ի գիւղ գայր 'ի գիւղ, սայլիկն 'ի գիւղ.
Եւ ճռնչալով գայր մտանէր յԵրուսաղէմ.
Եւ որդիք նոր Սիօնի նոր երգէին զայս
ասելով,
Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան.

Կը տեսնա՞ս Ռշտունցւոյ մը երգն . Աչքն 'ի ծով, Այտն նռնենի . կուսին նկարագիր՝ Բերանն երկթերթի . Վարդն 'ի չրթանց կաթէր . Ծոցն լուսափայլ՝ կարմիր վարդով լցեալ . . . : Կը տեսնա՞ս Ռշտունցի հօտաղեզնավարին սրբազնացուցեալ երգն. ընտիր նկարագիր սայլին որայից խրճաբարձ : իսկ մէկ քանի բառեր դեռ կը մնան անվերծանելի :

Աստ արժան կը համարիմ դասաւորել դարուս ականաւոր Հայ բանաստեղծ Հ. Գաբրիէլ Պատկանեանի մէկ երգն, որ Գողթնեաց բամբռամբ և Ռշտունեան քերթուածով յօրինած է . կարծես բամբիռն 'ի ձեռին՝ հոգւով սլացեր յալիսն ալեաց ծովուն Ռշտունեանց, անոր երեսաց և եզերաց բնակաց բնութեան ձայնիւ և տեսարանով շաղեալ իր երգն՝ կ'երգէ զՅուռութս Յուլունան Շամիրամայ 'ի ծովն ծիրանի : Եւ ահաւասիկ :

---

## ԵՐԳ ԳՈՂԹԱՆ

Յուլունան Շամիրամայ ,
Յուռութք յուլունան Շամիրամայ .
Յուռութք 'ի ծով ծածանէին ,
Ծածանէին 'ի ծով ծիրանի .
Յուռութք 'ի ծով ծիրանի ,
Միծքաղախիտ ծածանէին :

Մր

Յուլունան Համիրամայ ,
Յուռութք յուլունան Համիրամայ ․
Ծածանէին 'ի հով զովարար ,
Ծածանէին 'ի հով ծիրանի ․
Գիսակք 'ի հով հիւսիսոյ ,
Սիրապատա՛ր տարուբերէին ։

Յուլունան Համիրամայ ,
Ծածկոյթք յուլունան Համիրամայ ․
Ծածկոյթք զստինան սքօղէին ,
Սքօղէին յաչաց պատանեկաց ,
Ծածկէին յաչաց պատանեկաց ․
Յաչաղելով զստինան սքօղէին ։

Յուռութք յուլունան պատանեկուհւոյն,
Նըռունք յուլունան Համիրամայ ․
Նըռունք կիսեալք քօղարկէին ,
Քօղարկէին 'ի ծոց սպիտակ ․
Նըռունք 'ի ծոց սպիտակ ,
Պատուածովք քօղարկէին ։

Յուլունան Համիրամայ
Ի սպիտակ ծոց Համիրամայ
Խնծորք անոյշք բուրէին ․
Բուրէին խնծորք սպիտակք ,
Խնծորք 'ի ծոց արքայուհւոյն ․
Քաղցրանոյշ սփռէին բուրումն ,
Զանոյշ բուրումն տային ։

Յուլունան 'ի ծոց Համիրամայ ,
Ամբառնան բրգունք ստեանց ․

Բրգունք անուշահոտ նըռանց,
Նըռանց կիսելոց, խնծորոց կիսաքողոր·
Անդ զմայլին 'ի հոտ անուշութեան,
Զմայլին քաջիկք Ասորեստանի։

Ցուռութք յուլունան Շամիրամայ,
Ցուռութք 'ի ծոց արքայուհւոյն,
Թողեն զազգն Արարատայ·
Սրբեն յաչաց զարտասուս,
Զարտասուս վասն մահուն Արայի·
Տեսանեն զկարդոս 'ի գահի։

Ծով է ծոց իւր, ծոց Շամիրամայ,
Յուլունան 'ի ծոց մատաղաւուրց աշխար-
հակալին,
Ամբառնան բրգունք սպիտակք·
Ամբառնան բրգունք ստեանց,
Ամբառնան բոլորակք ստեանց·
Ի ծով անդ ծիրանի
Ծածանին ճաճանչք արփւոյն։

Ցուռութք յուլունան արքայուհւոյն,
Գործք ձեռաց Զրադաշտայ,
Կառուցանեն զընթացս փեռոց,
Շիջուցանեն զթափ նետից, նիզակաց·
Կրթեցուցանեն զսիրտս քաջաց
Ի սէր մատաղաւուրց Թագուհւոյն·
Արտացուցանեն զերիտասարդս,
Ի գեղ երեսաց Շամիրամայ։

Յուլունան Շամիրամայ
Ծիրանի ծածկոյթք ծածանէին,

Ծիրանիք 'ի ծով տարուբերէին .
Յուռութք 'ի ծով ծիրանի ,
Յուքութք 'ի ծոց արքայի ։

Յուռութք յուլունան յաղթողին
Զգէին հազարաւորս սրտից ,
Քարշէին բիւրաւորս թագակալաց .
Ամենեքեան սիրով թագուհւոյն վառեալք
Ամենեքեան վառեալք 'ի մարտ .
Վառէր զնոսա Շամիրամայն սէր ,
Վառէր զնոսա ժպիտ շրթանց թագուհւոյն
Յուռութք յուլունան նորա ։

Յուռութք Շամիրամայ յաչս ,
Յուռութք Շամիրամայ 'ի շրթունս .
Զգեաց զաչսն և ետես զլեառն .
Ըզլեառն , որ վկայ էր քաջութեան Հայկին ,
Որ տեսեալ էր զմահ Նեբրովթայ ,
Զհարուած երեքթևեան փքնին ։

Յուռութք 'ի շրթունս հզօր պատառ
նեկուհւոյն
Ժպիտք շարժեն յազգս և լեզուս .
Սասանեալ լեառն փոխի 'ի քաղաք ,
Մանեակ 'ի պարանոց լերին .
Գօտի ընդ մէջ լերին
Ածաւ ձեռամբ թագուհւոյն ,
Կառուցաւ Շամիրամակերտ ։

Յուռութք յուլունան Շամիրամայ
Ժողովեցին անդ զամենայն հրաշակերտս .

Բրդունք երկնաչափք բարձրացան,
Նկարիլ յերևոյթս ծովուն ծիրանի․
Ծովուն, առ որով կանգնեցաւ կոթող,
Կոթող յաղթութեան մարին Նեբրովբայ․
Անդ մնաց փառաւոր անուն յԱղթա—Մար։

Ցուռութք յուլունսն Շամիրամայ
Ծածանէին 'ի ծով անդ ծիրանի․
Շամիրամ լուանայ զերեսս 'ի ծով անդ․
Շամիրամ աւազան արար զծովն․
Ծածանէին անդ գիսակք հերաց,
Ծածանէին յուռութս ուլանցն։



Այս տեղ կը յարենք քանի մը երգեր, որք թէպէտ գրական են, բայց ժողովրդական ոճ կը կրեն․ և ինչպէս կ'երևի, աւելի հին աւուրց յօրինուածք չեն։ Ասոնցմէ մաս մը՝ որ «Գրիգորի Աղթամարցւոյ» են, օրինակուած է Աղթամարայ վանուց ձեռագիր տաղարանէ մը։ Մի քանի տեղերը բառեր չկրցայ երբէք որոշել, ուստի կէտեր շարեցի․ Նոյնպէս քանի քանի տողեր և տուներ անգամ անհնարին լինելով վերծանել, իսպառ չդրի։ Այս կարգին կը շարայարի Վանայ բնակչաց թերանացի խաղերէն մաս մը, որոց տեսակները և թիւը շատ են, բայց աւելի

թարձր և նուրբ չեն. ասոնցմէ հատ հատ արդէն հրատարակեալ կան Բազմավէպ-ներուն մէջ, Նոր քնարի մէջ, անցեալ տարի Ս. Էջմիածնի Միաբան Արժ. Արիստակէս վ. Սեդրակեանի՝ Վանեցւոց և Մշեցւոց երգոց հրատարակած տետրակին մէջ, և այս տարի Կ. Պօլիս «Վանցի պանդուխտ» սիրուն գրքոյկին մէջը, զորս հաւաքեց և հրատարակեց Վարագայ Միաբան, իմ սիրեցեալ աշակերտակից և պաշտօնակից Արժ. Արիստակէս Վ. Տէր Սարգիսեանն, հանդերձ առածներով և առեղծուածնե-րով, ըստ Վանեցւոց բարբառոյն. յորում նշանաւոր կը համարուին իրենց արժանեօք հրատարակողին բուն հեղինակած նամակ-ները, յորս կը տեսնուի մտքի ճարտարու-թիւն և զգացմանց փափկութիւն. փափա-քելի էր որ եղերական մասանց հետ զուար-ճաբանութիւն չխառնուէր տեղ տեղ. և եթէ դասաւորելու փոյթ տարուէր խա-ղերու և խօսքերու կտորներուն ու ան-դամներուն, և առեղծուածներու լու-ծումն դրուէր։ Այսու ամենայնիւ կը շնոր-հաւորենք զինքն, և կը յուսանք քաջա-լերուի շարունակել և նա կատարեալ ու հարուստ բերքեր բերել գրական հրապա-րակին մէջ, գաւառացի Հայոց ժողովրդա-կան բանաւոր բերքեր, որոց աւելի ծա-

նութ եւ ճարպիկ է ինքն, վասն զի նա շա՛տ գաւառներու մէջ կեցեր է ։

Ես ունէի թէպէտ մտադրութիւն 'ի ձեռքիս գտնուած այնպիսի խաղերէն, ատածներէն եւ հանելուկներէն առանձին գիրք մը կազմել, բայց արդ աւելորդ կը թուի. միայն մի քանի կտորները հրատարակելով կը բաւականանամ։

---

## ՏԱՂ ԳԵՂԵՑԻԿ

### ԵՐԳ Ի ԳՐԻԳՈՐԻՍԷ

Գարուն երեկ բլբուլն յայգին,
Ծաղկունքն ամէն շնորհօք արին.
Մուժդուլուխ տարան վարդին.
Թէ՛ Ելիր, կուգայ քո սիրելին ։
Բախացեալ հաւ բլբուլին.
Ընդ կանաչիլ վարդի թփին,
Գընաց բլբուլն իբեր ղումրին,
Թ'արեկ եւ տես զեղքըն վարդին ։
Ի մէջ բաղչին մըրան զարկին,
Վարդն քընէր մէջ կոկոնին.
Կանչեց բլբուլն մէջ ղուղուլին.
Ուրախացաւ 'ի տես վարդին ։
Գիշեր ցորեկ կամ երերուն,
Թէ ե՞րբ ելնէ ինքն 'ի քընոյն.

Եւ ես այրիմ 'ի դէմս վարդուն ,
Քանի՛ տեսանեմ զգոյն իւր սիրուն ։
Ո՞վ սիրելիք իմ հաւատար ,
Թէ դեղ գիտէք , արէք ինձ ճար .
Գընամ 'ի վարդըն զենահար ,
Եւ ծառայեմ մըտաւքս յաւժար ։
Բա՛մբ Թըռչնոց , զՋեզ մոռացայ ,
Ցորժամ զքավուր վարդըն տեսայ .
Ընդ անհեղ գոյնըն հիացայ ,
Ի բուրմանէ հոտոյն արբայ ։
Ի քէն հայցեմ , վարդ պատուական ,
Մի՛ համարիր զիս անարժան .
Կամ սպասաւոր 'ի քում դըրան ,
Մի՛ արձակեր զերիս ունայն ։
Սէր քո անհեղ անտանելի ,
Տըկար Թըռչունս զիա՞րդ լինի ,
Սիրտըս վառեալ յորովայնի ,
Թէ ինձ չառնես պատասխանի ։



## ՏԱՂ ԳԵՂԵՑԻԿ Ի ԳՐԻԳՈՐԻՍԷ

Դու ես արեգակ լուսին 'ի լըրման ,
Զըր կայ քեզ աւրինակ 'ի յորդիս մարդկան ։
Պայծառ Արուսեակ 'ի յառաւօտու .
Ես եմ քեզ փափագ , յլանէ ես հեռու ,
Իմ շուշան ծաղիկ , կարմիր վարդըն դու ։
Ծաղկեալ գեղեցիկ ոսկի Մադրասայ ,
Մեհրաբ է քաշած , ջահերդ 'ի նըման ,

Աչուերդ է զարթել 'ի ներքոյ նորա ,
Կարդան անդադար անդ ծաղկամոլլան ։
. . . . . . . . . . . . . . և մարախոլլան ,
Գամ էդ հեռաւոր ճամբադ որ քեզ 'կայ ,
Ըստանամ ճըչճէհ , ափրաշամ խըհայ ,
Լինի՛ թէ աչուերս քեզ արժանանայ ։

Իմ սուն , իմ սրտիկս , իմ ուրախութիւն ,
Իմ շունչ , իմ հոգիս , իմ կենդանութիւն ·
Աչացս առաջի ես՝ 'ի քուն 'ւ ի արթուն ·
Դուշմանէդ արա լաւ . . . . . . հուն ։

Նորաբոյս ծաղիկ և ծառ՝ նըշնենի ,
Երեսդ է պայծառ քան ըզթերթ վարդի ·
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Շրթունքդ է շաքար , ու խօսքդ ղանդ է ·
Լեզուդ 'ի բերանդ , անգին ջաւհար է ·
Համասփիւռ ծաղիկ հոտն 'ի քէն բուրէ ,
Չէ քեզ աւրինակ , քոյ դուլ փարթամ է ։

Առիւծն 'ի շամբին բազկօք զօրաւոր ,
Ամէն կենդանեաց դու ես թագաւոր ·
Երբ աղաղակես ձայնիւդ ահաւոր ,
Սարսափին դողան աշխարհըս բոլոր ։

Կարմիր , ըսպիտակ խընծոր յանտառին ,
Ծըրար սատաշխից և իւղ մեծագին ,
Վազելով գընաս 'ի վերայ լերին ,
Նըման այծեմանց և որդւոյ եղին ։

Բերկրութեան բաժակ և ախտահայեաց ,
Ես եմ ծարաւեալ , արբո ինձ մի կաթ ·
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

'ի պայծառ հաւատն մեր ։ Ես զայս 'ի Բաղէշ արարի, և եկի զի և աստ հաստատեցից ։ Զայս առնելով կարծէր հաճոյ լինել նոցա ։ Եւ ասէ դատաւորն . Ես Ստամբօլայ թագաւորանիստ քաղաքի դատաւորաց դատաւորի աշակերտն եմ . և նորին հրամանաւ մայրաքաղաքիս Վանայ դատաւորն եմ, և չորս կողմն աշխարհի դատաւորքն ամենեքեան նորա հրամանաւ կուգան ։ Այս ի՞նչ զարմանք, որ մեք ամէնքս չեմք կարդացեր, և ոչ լսեր . դու որ քիւրդմօլայ մի ես, և գիւղաքաղաքի մի դատաւոր, ո՞ւր ես կարդացեր կամ լսեր, որ զմեզ զամենեսեան և զմեր առաջին և զմեծ փեղամբարի գիրս սուտ համարես, միթէ դու նոր (փօ . . ի ամբուր) փեղամբէ՞ր ես ։ Եւ նոյն ժամայն ամենայն ամբոխն 'ի մի բերան ասացին թէ՝ Սա մահու արժանի է, զի զմեր նախնեաց օրէնս խափանէ և իւրն հաստատէ ։ Ասէ դատաւորն . Ցիրաւի՛ մահապարտ է . այլ վասն Սհաթ խանի խաթերին մի ինչ չար առնէք դմա ։ Եւ զկնի բազում անարգանաց հանին դուրս 'ի դիւանէն, և նա ամօթալի դիմօք ելեալ գնաց ։

Բայց խօջայ Սաֆարին աւելի քան զէնճղուրուշ խարճ եղև, թէ դատաւորին կաշառ և թէ աղայից, և ուլամայից ֆուլֆուլ

որ ամենեքեան եղեն 'ի կողմն խօջայ Սա-ֆարին. և ապա թէ՝ չարն այն բարձաւ 'ի մէնջ և 'ի Բաղիշոյ։

ՌՃԾԵ. Մաղթուլ օղլի Ալի փաշայն, 'ի սորա աւուրս քաղաքի ոչ՛ինչ վասն կարի և սաստիկ հարկապահանջութեան եկին 'ի քաղաքէն մեծք և փոքրիկք աւելի քան զՆԾ. անձինս, 'ի Վարդավառին պահոց երեքշաբթին, և գնացին մինչ 'ի Բանդիմահին և կամէին 'ի դուռն Թագաւորին գնալ. և ծերունի աղայք դնացեալ դարձուցին յետս 'ի Վարդավառի կիրակէն եկին 'ի քաղաքս։

Սա 'ի մարտի ԻԴ. հրամայեաց Հայոցս որ զքաղաքի խանդակն երեք օր փորեցին։ Սա մայիսի Գ. բազում զօրօք գնաց 'ի վերայ խօշաբայ և շատ վնաս արար. և Յուն. Ա. ապա էառ զբերդն, և հանեալ զխան Մահմատն՝ զիբրահիմ բէգ եդ Գա-րոն, և դարձան բազում աւարաւ։

Եւ 'ի սոյն ՌՃԾԶ. մայիսի ԻԷ. էր օդն պարզ, բամպակ տեղաց յերկիր։ Եւ 'ի սոյն ամի շինեցաւ Նարեկայ վանք ձեռամբ Մի-նաս վարդապետին։ Եւ 'ի Յուլիսի Ե. շարժ եղև սաստիկ։ Եւ յաւուրս նոյն Ալի փա-շային, 'ի Ներկատան մօտ՝ ջամին շինեցին։

Ի յայսմ ամի Ճ. լիտր չիրայն Գ. ղու-րուշ եղև 'ի Վան։

րինչ. և զղջացան և աղաչեցին հանել զդատաւորն 'ի բանտէն. և Ենգիչարիքն ոչ թողին, ասելով. Դուք թողէք զմեր Ենգիչար աղասին, և մեք թողումք զձեր դատաւորն. և Դուլաղասիքն իբր թէ ծաղր առեալ ասէին. Դուք թողէք մեր Ղոզին, և մեք թողումք զձեր Խոզին. և ապա միաբանեալ սիրով թողին զերկոսեանսն ։

Եւ 'ի սոյն թուոջս, Ապրիլի ԺԳ. ծերունի Իբրահիմ փաշայն եկն 'ի Վան. սա ազգական էր Իսմայիլ փաշային որ փախեաւ, որ և սա աստ մեռաւ ։ Նաև 'ի սոյն ամի, ՌՃԾ. ին, մարտի Է. 'ի մեծ պահոց և առաջին ուրբաթն սաստիկ շարժ եղև 'ի քաղաքս Վան. և 'ի գիշեր ևս շարժ եղև ։ Եւ 'ի կիրակէն Բ. և Գ. անգամ շարժ եղև. և չորեքշաբաթ առաւօտուն ևս սաստիկ շարժ եղև, որ ամենայն քաղաք ահաբեկ եղեալ սասանեցան, և Հայ և Տաճիկ ամենեքեան թողեալ բզտունս իւրեանց 'ի քաղաքէն դուրս կազմեցին վրանս և մնացին տամբք և տղայիւք, ոմանք յայգիս, ոմանք 'ի դաշտս և 'ի գերեզմանատունս աւուրս բազումս. և սակաւ ոմանք՝ որ և 'ի քաղաքս մնացեալք էին, գնացեալ 'ի ժամատունն Նշէին տամբք իւրեանց. և 'ի միւս շաբաթ օրն

դարձեալ անհադին շարժ եղև , յորմէ բազում տունք խախտեցան 'ի մէջ քաղաքին և ոչ փլան · և ոչ մարդոյ ինչ վնաս եղև , սակայն 'ի գեղն Բերդ սակաւ ինչ տուն փլան · և այսպէս եկաց քաղաքս յերերմանի իբրև զնաւ 'ի ջուրս մինչև 'ի յօրն զարնանամտին , և ապա հանդարտեցաւ նախախնամութեամբն Աստուծոյ · և հասեալ 'ի Նոյ· Լ· կրկին ևս սաստիկ շարժեցաւ , և վնաս ոչ եղև ողորմութեամբն Աստուծոյ ։

ՌՃՄԱ· Յունվար ԺԲ· Ջարկուլահ Մուստաֆայ փաշայն եկն 'ի Վան քաղաքս · սա զԱրճիշու Յաղի գիւղի ուէսն անդ սպան 'ի գալն · և 'ի ճանապարհէն երեք քիւրդ եբեր 'ի յԱլիւր (գիւղն) , և անդ եառ 'ի ղօղանջ , և միւսն եբեր 'ի քաղաքս , և 'ի նոյն օր եառ 'ի ղօղանջ · և հասեալ յիւրեանց յըստամաղանն 'ի ղայէքն Մուղնին շինեաց և անդ յաղօթս կայր · և 'ի մարտ ԺԸ· բազում հեծելօք գնաց 'ի Վարագ , և 'ի Ապրիլ ԺԷ· որ էր օր Նոր կիրակէին . . . գնաց 'ի տեսանել զձկան բոնդ , և յայնմ աւուր քաղաքացի ուխտին՝ որք կարի նեղացեալ էին 'ի Թօխմախ Միրաքէն , որ էր ուէս քաղաքին , խորհրդով . . . . . . . . . ժողովեցան միաբան և գնացեալ 'ի յայգի Թօխմախին · և զի դուռն փակեալ էր ,

ոմանք 'ի պատէն իջին զդուռն բացին, և ամբոխն ամենայն մտեալ 'ի տունն որոնէր բռնութեամբ. և գտին զնա, զի թագուցեալ էր 'ի բոյն հաւուց, — և բերեալ արտաքս անարգանօք հարկանէին, և ընկեցեալ յերկիր եդին պարան 'ի յոտսն. էին իբրու ԵՃ. մարդ, որք քարշեցին զնա անողորմ 'ի վերայ երեսաց, որ հարաւ փորն 'ի թուփս և անդէն 'ի ճանապարհին մեռաւ դառն մահուամբ, և տարեալ ընկեցին 'ի դուռն քաղաքին։ Իբրև եկն փաշայն և եհարց թէ՝ Ո՞վ է սա. և ծանուցին թէ՝ ռէս թօխմախն է, և քաղաքացիք ինքնագլուխ սպանին զնա։ Իսկ նա կարծեաց թէ՝ կամակցութեամբ խօջայ Ջանգուլին է եղեալ այս. քանզի նա էր անուանի, և մեծ, խօսաց տէր։ Կայր ընդ փաշային Արաբկերցի խօջայ մի, զոր անուն Ջիման չալաբի ասէին. որ էր սա յոյժ սիրելի և բարեկամ խօջայ Ջանգուլին և ռէս թօխմախի Միրաքին. զայս Ջիմանս 'ի գիշերի գաղտ կոչեաց փաշայն, և առաքեաց բերել զՋանգուլն. իսկ նա ոչ գիտելով ինչ՝ գնաց եբեր զխօջայ Ջանգուլն, որպէս և յայլ աւուրս. և նոյն ժամայն հրամայեաց փաշայն և խեղդեցին զնա և ընկեցին արտաքս. և 'ի վաղիւ հրամայեաց բառնալ և թաղել զնա

ըստ օրինի . և ապա էառ 'ի քաղաքէն ՉՃ· դուրուշ գին արեան Թօխմախին ։ Եւ 'ի Հայոցս պահանջէր զի տացեն ինքեան ձեռագիր , որպէս թէ մեր կամօք փաշայն սպան զխօջայ Ջանգուլն . քանզի երկնչէր թէ մի՛ գուցէ եղբարք նորա գնացեալ բողոքեսցեն 'ի դուռս թագաւորին . և քաղաքացիքն ոչ հաւանեցան այնմ, և ոչ ետուն ձեռագիր . և 'ի կարի նեղել՝ փակեցին զդուքաննեքն և զեկեղեցիսն ևս , և ելին 'ի քաղաքէն քահանայք և դօլվաթաւորք և ռամիկք , անձինք իբր ՌԽՃ· և խորհուրդ արարին զի 'ի միասին 'ի դուռն Արզրումայ փաշային գնասցեն , և 'ի յայն փաշայէն գիր և մարդ առեալ 'ի դուռն թագաւորին գնացեալ բողոքեսցեն ։ Եւ 'ի վերայ այսր խորհրդին՝ 'ի Համբարձման ուրբաթ օրին ելին 'ի քաղաքէն և գնացին մինչև 'ի Բանդի մահի . փաշայն և զուլաղասիք առաքեցին արս ըղդէխօրս և մեծամեծս բազում զօրօք , որք եկեալ պաղատանօք հազիւ թէ յետս դարձուցին զժողովուրդ 'ի Մեծահրաշի կիրակէին . և եկեալ 'ի քաղաք , որպէս թէ հաշտեցան . և 'ի յուլիսի Գ· մանզուլ եղեալ կ . . եաւ ։

Եւ 'ի սոյն ՌՃՄԱ· Մեպ· Բ· Աբդի փաշայն եկն , և բազում զօրս հաւաքեաց առ ինքն 'ի յԱրճէշոյ , 'ի յԱրծկոյ , 'ի Բերկ-

րոյ, և 'ի Բաղէշոյ Ահաթ խանն եկն ԲՌ· զօրօք · և . . . . . . ելեալ ՁՌ· զօրօք և Թօփով գնացին 'ի վերայ Խօշաբայ, և կամէին զի Խան Մահմատ հանիցեն 'ի բերդէն, և զիբրահիմ բէգի տղայն դնիցեն Պարոն, և ոչ կարացին · այլ բազում գիւղս այրեցին · իսկ զօրքն Մահմուտանայ (գաւառի) եկեալ 'ի մէջ բանակին հարին ըզզօրսն Բաղիշոյ, և կողոպտեալ վիրաւորեցին և տարան 'ի նոցանէ ՃԻ· ձի · վասն որոյ ամօթալի դիմօք դարձան 'ի քաղաք · և փաշայն Թալանեաց զՀաջի աղի տունն, որ էր 'ի քաղաքս · և 'ի Նոյ· ԻԷ· առանց մոնզուլէ գնաց · և յետ երկու ամսոյ յունվար ԻԱ· դարձեալ եկն 'ի քաղաքս · բայց Ղուլն Վանայ ոչ ելին 'ի դէմ 'ի յայս աւուրս : Եւ 'ի ՌՃԾԲ· Թիւ Սարգուտայ փաշայի գլխոյն ֆարման էր 'ի Թագաւորէն . . . . . . . սպանեալ էր · և ինքն փախըստական սակաւ մարդով 'ի Վան քաղաքս (անկեալ) · և Արդի փաշայն սիրով ընկալաւ զնա և մեծարեաց և խիլայեաց զիւրսն և զինքն · և եկաց աստ ամիս մի և գնաց : Եւ 'ի սոյն աւուրս յՍտամբօլ զՖէզուլլահ աֆանտի որ էր դատաւորաց դատաւոր և մեծ հրամանատար 'ի դուռն Թագաւորին՝ ընկեցին 'ի փառաց և 'ի պատւոյն, և զերկու որդիս առաջի մօր.

մանրամասնաբար կտրատեցին, վասն զի 'ի Թագաւորի խազնայէն ՌՃՌ. քիսայ փող վատնեալ էր. վասն որոյ զինքն եւս չարաչար եւ դառն մահուամբ սպանին։

Նաեւ զՍուլթան Մուստաֆայն ընկեցին, եւ զՍուլթան Ահմատն եդին Թագաւոր. Եւ 'ի սոյն ամի Ախիջեանց խոջայ Սաֆարն՝ որ Լ. տարի էր որ գնացեալ էր 'ի մէջ Ֆռանկաց եւ յայսմ ամի եկն, եւ ունէր ընդ ինքեան բազում գանձս, եւ յոլով մեծագին ոսկեղէն եւ արծաթեղէն անօթներ եւ զարդարանս. եւ 'ի գալն եկաց Գ. ամիս եւ մեռաւ. եւ ունէր եղբօրորդիս. եւ վանայ Գուլն ամէն թալան արին աւելի ....... ապրանք, եւ եղբօր որդւոց ինչ ոչ ետուն։

ՌՃՄԳ. Յունիսի ամսոյ ԻԸ. Տօրեջան Ահմատ փաշայն եկն. սա յՕգոս. Ա. ին զբերդի Ենգիչար աղասին ընկէց յիշխանութենէ, եւ փոխանակ նորա զայլ կացոյց 'ի տեղին. եւ բերեալ 'ի քաղաքն էարկ 'ի բանդ։ Սա զԱւանուց գիւղի զսուրբ Յօհաննէս զեկեղեցին շինեաց, եւ զՕսման բէգ բերեալ յԲստան՝ Պարոն կարգեաց. եւ քաղաքիս պարսպի նէֆէր ամէն զէնջուֆով ներկեաց։ Սա 'ի Դեկտ. Ժ. ֆորման եհան Խալիլ աղին եւ Քիւրդ Հիւսէն աղային դըլխոյն, եւ զքաղաքի դռներ փակեաց, որ

եկաց մինչ 'ի Ցունվար ԺԳ· բայց 'ի նոյն աւուր Ղոփողջի եկն 'ի Թագաւորէն , և ջարման եբեր իւր գլխոյն , զոր յայնժամ սպանին և գլուխն քերթեցին և տարան Թագաւորին , և զինչսն՝ Ղուլաղասիք թալանեցին , մինչ զի և զկինն կողոպտեցին ։ Եւ Ցունվար ԻԷ· Խալիլ աղէն և Հիւսէն աղէն՝ 'ի գիշերի գաղտ փախեան ։

Ոմանք ասէին թէ՝ սա քրիստոնէի տղայ էր , և լոյս էջ 'ի վերայ նորա · ուստի ըղհող գերեզմանին տանէին Հայք և Տաճիկք , և ցաւագարք , և ըստ հաւատոց իւրեանց առողջանային ։ Եւ այս Ցունվար Ժ.Գ· մեծ շարժ եղև 'ի քաղաքս Վան · և 'ի սոյն ԻԷ· Ցունվարի մեծ շարժ եղև 'ի քաղաքն Բաղէշ , և բազում տունք փլան , և շատ մարդիկ 'ի ներքոյ տանց մնացին ։ Եւ 'ի սոյն ամի՝ Բաղիշեցի մեծ և անուանի վարդան վարդապետն մեռաւ ։

ՌՃԾԴ· փետր· Ա· Քօսայ Խալիլ փաշայն եկն Արզրումայ 'ի քաղաքս · սա հրամայեաց զպլիկ դամղայ զարնել , և Ցունիսի Դ· մանղուր եղև · բայց քաղաքացիք ոչ թողին · ապա Ցուլիսի ԺԲ· օրն գնաց 'ի Բասրա ։

Ի սոյն թուին , 'ի քաղաքն Բաղէշ ոմն . . . . մօլայ , որ էր դատաւոր , 'ի դըրոց իւրեանց հրաման (եհան) թէ՝ 'ի Ջա-

յոց ով ոք որ տաճկանայ, նորա մօտակայ ազգականաց մէջ ով որ անկատար արու տղայ (մինի), տղայն նմա հատանի: Տահմանեաց այս 'ի Բաղէշ, և ինքն եկն 'ի քաղաքս Վան, զի և անդ զնոյն հաստատեսցէ: իսկ Բաղիշոյ մեծ վարդապետք և դօլվաթաւորք միաբանեալ աղերսանաց գիր խրկեցին առ մեր առաջնորդ Ստեփաննոս վարդապետ, և իշխանաց իշխան պարոն խօջայ Ախիջան Ղարասափարն, և ծանուցին զաղէտս դառնութեան իւրեանց, զսուգ և զկորուստ ազգիս Հայոց: իսկ խօջայ Սափարն հրամայեաց վարդապետին որ յեկեղեցիս ծանուսցէ, և ինքն յոլով դանձս և ֆեշքէշ ցրուեաց 'ի դրունս օճախ աղայիցն և մեծամեծաց, և զամենեսեան դարձոյց յինքն:

Եւ գնացեալ առ դատաւորն նստաւ· և դատաւորն կոչեաց զմեծամեծս քաղաքին, և 'ի միասին խորհեցան և կոչեցին զմօլլայն զայն և հարցին զպատճառ գալոյն:

Եւ նա որպէս հաւատարիմ գոլ օրինաց իւրեանց, ասաց թէ՝ Ես կամիմ զի յազգէն Հայոց ով ոք որ տաճկանայ և գայ յօրէնս մեր, նորա արիւնամերձ ազգականաց որչափ անկատար արու տղայ կայցէ պատրաստ է որ զամենեսեան բերցէ ընդ իւր

'ի պայծառ հաւատոն մեր ։ Ես զայս 'ի Բա-
ղէշ արարի , և եկի զի և աստ հաստա-
տեցից ։ Զայս ասելով կարծէր հաճոյ լինել
նոցա ։ Եւ ասէ դատաւորն · Ես Ստամբօ-
լայ Թագաւորանիստ քաղաքի դատաւորաց
դատաւորի աշակերտն եմ · և նորին հրա-
մանաւ մայրաքաղաքիս Վանայ դատաւորն
եմ , և չորս կողմն աշխարհի դատաւորքն
ամենեքեան նորա հրամանաւ կուգան ։
Այս ի՞նչ զարմանք , որ մեք ամէնքս չեմք
կարդացեր , և ոչ լսեր · դու որ քիւրդ-
մօլայ մի ես , և գիւղաքաղաքի մի դատա-
ւոր , ո՞ւր ես կարդացեր կամ լսեր , որ
զմեզ զամենեսեան և զմեր առաջին և զմեծ
փեղամբարի գիրս սուտ համարես , միթէ
դու նոր (փօ . . ի ամիւր) փեղամբէ՞ր ես ։
Եւ նոյն ժամայն ամենայն ամբոխն 'ի մի
բերան ասացին թէ՝ Սա մահու արժանի
է , զի զմեր նախնեաց օրէնս խափանէ և
իւրն հաստատէ ։ Ասէ դատաւորն · Ցիրաւի՛
մահապարտ է · այլ վասն Սհաթ խանի
խաթերն մի ինչ չար առնէք դմա ։ Եւ
զկնի բազում անարգանաց հանին դուրս
'ի դիւանէն , և նա ամօթալի դիմօք ելեալ
գնաց ։

Բայց խօջայ Սաֆարին աւելի քան զէնձ-
ղուրուշ խարջ եղև , թէ դատաւորին կա-
շառ և թէ աղայից , և ուլամայից ֆուքէհայ

որ ամենեքեան եղեն 'ի կողմն խօջայ Սա֊փարին . և ապա թէ՝ չարն այն բարձաւ 'ի մէնջ և 'ի Բուղիշոյ ։

ՌՃԾԵ. Մաղթուլ օղլի Ալի փաշային, 'ի սորա աւուրս քաղաքի ոչխոյն վասն կարի և սաստիկ հարկապահանջութեան ելին 'ի քաղաքէն մեծք և փոքրիկք աւելի քան գՆՃ. անձինս, 'ի Վարդավառին պահոց երեքշաբթին, և գնացին մինչ 'ի Բանդի֊մահին և կամէին 'ի դուռն թագաւորին գնալ. և ծերունի աղայք դնացեալ դար֊ձուցին յետս 'ի Վարդավառի կիրակէն եկին 'ի քաղաքս ։

Սա 'ի մարտի ԻԴ. հրամայեաց Հայոցս որ զքաղաքի խանդակն երեք օր փորեցին ։ Սա մայիսի Ժ. բազում զօրօք գնաց 'ի վե֊րայ խօշաբայ և շատ վնաս արար . և Յուն. Ա. ապա էառ զբերդն, և հանեալ զխան Մահմատն՝ զիբրահիմ բէգ եդ Գա֊րոն, և դարձան բազում աւարաւ ։

Եւ 'ի սոյն ՌՃԾԶ. մայիսի ԻԷ. էր օդն պարզ, բամպակ տեղաց յերկիր ։ Եւ 'ի սոյն ամի շինեցաւ Նարեկայ վանք ձեռամբ Մի֊նաս վարդապետին ։ Եւ 'ի Յուլիսի Ե. չարժ եղև սաստիկ ։ Եւ յաւուրս նոյն Ալի փա֊շային, 'ի Ներկատան մօտ՝ ժողմն շինեցին ։

Ի յայսմ ամի Ձ. մեծ շիրայն Գ. ղրու֊րուշ եղև 'ի Վան ։

Այս Անի փաշայս ՌՃԾԶ. Հոկտեմբերի Ջ. գնաց ։ Նաև 'ի սոյն ամի շինեցաւ Պետրոս Առաքելոյ եկեղեցին ձեռամբ Տէր Իգնատիոսին ։

ՌՃԾԷ. Մարտի Բ. Զարքագ. Ահմատ փաշայն եկն . սա հրաման (երեր) վասն գլխոյ Խալիլ աղային, Ուսուֆ աղային, և մեծ Մուֆթուն . և նոքա ոչ հնազանդեցան . զի Ուսուֆ կլեալ 'ի Ներքին բերդն ամրացաւ, և Խալիլ աղայն իւրեանց տունքն, և Մարտի ԺԲ. օրէն մինչ Ապրիլ Ը. և ապա միաբանեալ Բ. աղայք և Մուֆթին Աբաս Անիի լաճ և Դուզան աղէ Բ. լաճ աւելի քան երեք հարիւր արամբք՝ որպէս թէ յՍտամբօլ 'ի դուռս թագաւորին կամին գնալ, փախեան ։

Սա եւ 'ի բերդ և նետ ձգեաց դէպ 'ի հարաւ . որ նետն անցեալ զքաղաքն անկաւ 'ի շուշէն . և եկեալ 'ի վայր 'ի տեղի նետին քարեայ արձան կանգնեաց . և նոյն արձանէն դարձեալ նետս ձգեաց դէպ 'ի ծովն, և անդ ևս քարեայ արձան կանգնեաց և գրեաց 'ի վերայ նորա . որք կան 'ի նետոէ արձանին մինչև ցմիւս արձանն իբրև քայլս Ռ. մեծ մարդոյ, աւելի և ոչ պակաս ։ Եւ ՌՃԾԹ. մանզուլ եղև և գնաց ։

ՌՃԿ. Օգոս ԻԵ. Ռաճար փաշայն եկն 'ի վան . սա Յունվար Ա. սպան Ջաֆիվար

(գուցէ Տիլաւար) օղլի Հուսէն աղէն. և Յուլիս Ի· գնաց բազում հեծելօք և Բօֆով մեծաւ 'ի վերայ Խօշաբայ. և 'ի ճանապարհին թալանեաց Ջեռնակայ բերդ, որ մի էր բազում գանձիւք· զի բոլոր նահանգյանէ փաշային և հեծելին անդ էին թագուցեալ զամենայն ինչս իւրեանց վասն ամրութեան, և ապա անցեալ գնացին 'ի Խօշաբ. և Իբրահիմ բէգն, որ էր 'ի բերդ, ոչ եկաց հակառակ ընդդէմ· այլ ինքնին իւր կամօք ել 'ի բերդէն, և տարեալ ըղխան Մահմատի տղայն եդ Պարոն, և 'ի Ծայիս Ա· դարձան բազում աւարաւ։

Ի սոյն թուին Սպահանայ Շահի եղբայրն փախստական յեղբօրէն եկն 'ի քաղաքս Վան· Բաջար փաշայն յղեաց և կոչեաց առ ինքն, և նա ոչ եկն. վասն որոյ հրամայեաց տանել զնա 'ի բերդն և առնել 'ի թաքստի։ Եւ ինքն իւրայնօք և բազում զօրօք ելեալ գնաց 'ի Ջուխուր, և թալանեաց զերկիրն. և 'ի Յուլիսի ամսոյ Ը· որ էր Վարդավառի երկուշաբթին դարձաւ 'ի քաղաքս. զՇահի եղբայրն իջոյց 'ի բերդէն և եդ 'ի նաւ և յղեաց 'ի Աղթամար, և խուղն ինքն հոգայր. և առ Շահն և առ թագաւորն մարդ յղեաց, և մնայր հրամանաց նոցին։

Եւ 'ի սոյն աւուրս Վարագայ մարագն

փլաւ, և երկու մարդ 'ի Ներքև մնացին, և երկուք մեռան, և երկուք սողջոփ մնացին, բայց մեռեալք Թ· օր առանց թաղել մնացին : Այս Ռւաջար փաշայն ոչ եթող թաղել մինչև ԷՃ· ղշ· արեան գին էառ և ապա ետ թաղել · յորում աւուր էր Առաջնորդ Ստեփաննոս վարդապետ և Ջէքէլ Նադր Ամիրխան՝ որ ԷՃ· ղուրուշ պարտք առին շահով, և ետուն :

Նաև 'ի սոյն ամի Բարդուղիմէոս վարդապետ գնաց մօտ փաշային և ասաց · Ես ԳՃ· քէլոյ գարի կուտամ, զիս արա Առաջնորդ քաղաքիս · և փաշայն ազդեաց քաղաքի դօլվաթաւորացն, և քաղաքացիք ոչ կամեցան : Իսկ փաշայն ըստ հայցման Հայոց զԲարդուղիմէոս վարդապետ 'ի բերդ 'ի զնդան ձգեաց · և կալեալ 'ի քաղաքէս Դ· մարդ, ամեն մարդայ ԴՃ· փայտ եհար · և ԳՃ· քէլոյ գարին՝ զոր խոստացեալ էր նա, զայն 'ի Վարագայ էառ · և զՍտեփաննոս վարդապետ կրկին հաստատեաց · և ԳՃ· ղուրուշ 'ի Բարդուղիմէոս վարդապետէն էառ, յորոյ պատճառս բազում պարտք եղև Վարագայ :

'Ի սոյն ամի Խալիլ աղայն զկարմիր Մաչիթի մօտի աղբիւրն եբեր 'ի քաղաքս · բայց բազում տանց մնաս եղև 'ի քաղաքին :

Նաև 'ի սոյն տարիս 'ի գիւղն Բերդակ ումեմն թուրքի կովն ծնաւ . և էր անձն մի որթին , գլուխն Բ. բերան , աչք , և ականջ Դ. և ոտք Զ. 'ի ծնունդ մայրն մեռաւ . և թուրքն այն եհար թրով զորթն և կտրեաց և արար Բ. կտոր . և գլխոյ կողմն եբեր 'ի քաղաքն , զոր ամենեքեան տեսին , և զարմացեալ փառս տային Աստուծոյ ։

ՌՃԿԱ. փետր. ԺԲ. Հասան փաշայն եկն . սա զՍուխթայ (սօֆտայք) մի եա 'ի ղողոխ , և տուտ մի սպան . և 'ի մարտի ԺԲ. զՍամէլի Նազարն 'ի յէշ դրին և 'ի մէջ քաղաքին շրջեցուցին ։ Եւ 'ի սոյն ամի Արճիշոյ դատաւորին երկու գոմէշ ջամուկ ծնան , և 'ի միւս օրն դատաւորն մեռաւ ։ Նաև յերկիրն Գաւաշու ումեմն քրդի խոր մի տարեկան , խոր մի ցորեն , և խոր մի գարի , ամենեքեան 'ի քար դարձան . զոր բերեալ 'ի քաղաք ցուցին փաշային և օճախներաց , որ և մեք ևս աչօք տեսաք ։ Եւ՝ 'ի սոյն աւուրս Նադր Ջերօն զինով եղեալ գնաց 'ի բաղանիս , և թուֆէը եա թուրքերացն , որք առժամայն կալեալ զնա տարան փաշայի սարայն , և անդ՝ դառն մահուամբ սպանին , և ապա կախեցին 'ի փայտէ վասն նախատանաց 'ի տեսութիւն ամենայն ։ Եւ 'ի սոյն օր հրամայեաց որ

փողող ձայնեց 'ի մէջ շուկային թէ՝ Քրիստոնեայ որք մի՛ իշխեսցէ սիւտակ կողոյ, դեղին օձլ, և մըզ-ո հագնել, և ոչ թուր, թուանք, խանչալ, դանակ պահել, և ոչ թամքով այարով ձի հեծնել, և կամ գինով 'ի շուկայն շրջել, և ոչ տաճկին գինի տալ: Այս Հասան փաշայն Յուլիսի ԺԴ· գնաց 'ի վերայ Խօշաբայ, և Նասաւ ԺԵ· օր, զի կամէր որ զխան Մահմատի լաճ հանէր 'ի բերդէն և զիբրահիմ բէգ Պարոն դնէր, և ոչ կարաց. և յՕգոս. Ը· դարձաւ:

'Ի սոյն Սեպ· Ը· քուրդ մի գող եմուտ Խալիլ աղայի այգին, և շուն ըմբռնեաց զնա. վասն որոյ իմացեալ կախեցին զնա:

Այլ և Բ· Թուրքի կին 'ի յէշս դրին և շրջեցուցին 'ի քաղաքս: Այլ երկու Թուրքի կին ածիլեցին (զհերս գլխոյն) և 'ի յէշ եղեալ փողողով շրջեցուցին, և ապա քշեցին 'ի քաղաքէս:

ՌՃԿԲ Հոկ· ԺԲ· Աբրահիման փաշայն եկն 'ի Վան, և 'ի սոյն Դեկ· Դ· ին գնաց:

'Ի սոյն թիւ Նորոգեցաւ կտուց ծովապատ Անապատ Սուրբ Կարապետու եկեղեցին սրբատաշ քարամբք, ձեռամբ նորին առաջնորդ Սիմէօն վարդապետի և Երեմիային, բայց արդեամբք ամենայն քրիստոնէից:

ՌՃԿԳ· Մարտի ԻՁ· Մուրթազայ փաշայն եկն, և յԱպրիլի ԺԳ· կլօջայ Մարութի թոռն զՄարութայն և զՄինօյի լաճ զՍահակ կախեց։ Ի սոյն ամի խիստ ձիւնամեծ և կարի ցուրտ ձմեռն եղև, այնքան մինչ զի պղնձէ ճոռճոռք և ճճռճռք 'ի մէջ տանցն պատռեցան. և 'ի յունվար Ջ· 'ի Յայտնութեան դիշեր ԺԴ· Արար 'ի ցրտոյ մեռան, թող զայլսն. յաւուրս՝ Գ· Դ· աւելի կամ պակաս մեռանէին. և 'ի սաստիկ ձմեռն ցրտոյս լուաք որ 'ի յԱրճէշ քաղաք Ա· լիար միթիր ղուռուշ մի եղև, և մէկ փաթ խոտ Գ· ղշ· և մէկ ղաթար յարդ՝ . . . . ղուրուշ և կէս. և Բ· խուրձ խոտ՝ լաւ ոչխար մի տային. և այն ևս հազիւ 'ի ձեռս անկանէր։

'Ի սոյն ամի Փիրկանց Ախիջան մեռաւ, որ ունէր եղբօր որդի, և քոյր, և քրոջ որդի. և վանայ Ղուլն զտունս, զայգիս և զապրանս տիրեցին։

Եւ 'ի Յուլիսի ԺԵ· Ուսուֆ աղայից Ժ· մարդ 'ի գիշերի գաղտ գնացին զի զՆօհ Աղի լաճ սպանցեն, և ոչ կարացին, զի նոքա արթունք էին և սոքա փախեան. իսկ նոքա զհետ մտեալ կալան զմինն և տարեալ կախեցին։

Եւ ՌՃԿԴ·ին այս Մուրթազայ փաշայն գնաց 'ի վերայ Խօշաբայ Ջէնալ բէգ

Քարոն հանել և զիբրահիմ բէգ դնել Քարոն ․․ և 'ի գնալն՝ իմացեալ Ջէնալ բէգն թաղում զօրօք եկն 'ի դէմ փաշային ․ և 'ի Ջանկայ դաշտն հանդիպեցան միմեանց և յոյժ պատերազմեցան ․ և յերկու կողմանց աւելի քան զՄ․ այր անկան, մինչ զի և դատաւորն որ էր միակամնի Աւդուլլահ աֆանդին մեռաւ, և փաշայի գլուխն ևս վիրաւորեցին ․ բայց յետոյ Ջէյնալ բէգ խոյլայեաց զփաշայն և հաշտեցան ։ Սա 'ի Նոյ․ Ի․ ծանդուլ եղև, և ԻԱ․ Ղափուլի եկն և զգլուխն եհատ ։

'Ի սոյն ամի Մարտի Ը․ յառաւօտէ շարժ եղև 'ի քաղաքս Վան, յորմէ 'ի յայգիքն Սուրբ Ցակոբայ վեր տուն մի փլաւ ․ վեց հոգի տակն մնացին, չորսն մեռան և երկուքն ապրեցան ։ Նաև Բարդուղիմէոս Առաքելոյ գմբէթն թռաւ, և Խօշաբայ բերդի Ծաղկանն խախտեցաւ ․ Ղարա սարայ բերդի Ջէլովդին վերայ քօշկն փլաւ և ըզՋէլովդն աւերեաց, որ և բազում մարդիկ 'ի ներքև մնացին ։ Այլ և Սաթմանից քօշկն փլաւ և զբազումս սպան ․ և այլ բազում գիւղք տապալեցան և յոլովք մնացին 'ի ներքև, և բազում վնաս եղև Մահմոտանայ երկրին ։ Եւ 'ի սոյն ամի 'ի յԱրճէշ քաղաքի 'ի մեծի հինգշաբաթի գիշերն առաւօտեան ժամուն շարժ եղև, որ եկեղեցւոյ գմբէթն

անկաւ , և ԼԷ· մարդ ՚ի ներքև մնացին · բայց խնամօքն Աստուծոյ մինն մեռաւ , և այլ ամենեքեան ապրեցան, այլ չաւքն տօչնաւք եղեն ։

ՌՃԿԵ· Ցունվար ԺԸ· Ջանվի Մահմատ փաշայն եկն , որ Բաղլի (գուցէ Ֆաղլի) ասէին. սա հասեալ ՚ի յԱրճէշ, զՄուստաֆին իւր յղեաց ՚ի քաղաքս , և հրամայեաց զի ամենայն մեծամեծք և փոքունք գնասցեն ընդդէմ նորա մինչև ՚ի Բերկրի , որ և ելին ամենայն զօրք քաղաքին աւելի քան զԵՍԻ· անձինս · և հասեալ ՚ի Բերկրի հանդիպեցան միմեանց և եղեն անձինք ՋՌ· և գնացին ՚ի վերայ Աբաղու երկրին , և Մահմուտանայ, բազում և անասելի ոճիրս գործեցին · քանզի Եգիպտու ազգն և զանժեղ քրիստոնեայսն առհասարակ սպանին · զտունս լի մարդով և զախոռս լի անասնօք այրէին , և նոքա ՚ի մէջ տոչորէին մինչև յեըս չնչոց · նաև Դ· Ե· և Զ· անգամ սրով հարեալ սպանանէին · և զայլսն որպէս զանասուն դանակաւ զենուին · և զողայս կախեալ յերկու ոտիցն յերկուս հերձէին և ձգէին յերկիր · և զկաթնասունս ցրուեալ ՚ի յերկրի՝ ձիոց կոխան առնէին · զծերս և զպառաւունս սրով սպանանէին · զհայոց և զԵգիպտաց զարս և զկանայս զգեզեցիկս , զերիտասարդս և զմանկունս ՋՃ·

հողի գերի բերեցին . նաև ԼԹ. ոչխարս և անթիւ ձիս և ջորիս , եզինս և գոմէշս , պղնձեղէնս և արծաթեղէնս թալան բերին, որ թիւ ոչ մտանէր . և զի էր առաջաւորացն ձմեռն ձիւնամեծ, և կարի ցուրտ էր . և չորսք 'ի յանհէն փախստական եղեն 'ի լերինս և 'ի ձորակս , 'ի դարակս և 'ի սանձմանս , և անդէն բքածեծք և ցրտասառոյց մեռան : իսկ այն ողորմելի գերիքն հետիոտս 'ի ճանապարհին առաջի ձիոցն թէ զի՞նչ տանջանս կրէին, մանաւանդ խղճալի կանայքն 'ի ձեռս զազրագործ և անաստուած անօրինաց. և 'ի յունվար ԻԴ. եմուտ 'ի քաղաքս բազում գերեաւ և աւարաւ . և 'ի միւս գիշերին Գ. Եզիդի եդ 'ի ղողանն . և 'ի յուն. ԻԶ. գխալիլ աղայն սպան . և հասեալ 'ի մարտի ԼԱ. որ էր Ցարութեան Զատկի մեծ շաբաթ օրն, ինքն մեռաւ , և զբերեալ գերիսն ոմանք ցրուեցան և զերծեալք փախեան , և զոմանս քրիստոնեայսն գնեալ ազատեցին , և զոմանս հանեալ 'ի հաւատոցն ուրացուցին :

ՌՃԿԶ. Օգոս. ԻԶ. Գ.ալի Հուսէն փաշայն եկն Խ. բայրաղօք . և քաղաքացիք ելին ընդդէմ և պատերազմեցան ընդ միմեանս 'ի Լէզգքայ դաշտն , և զօրք փաշային յաղթեցին զվանեցիս և զբազումս վիրաւո-

ըեցին, և զձիս, և զզէնս, և զհանդերձս կողոպտեցին, որք մերկ և ամօթալի դարձան 'ի յետս. և փաշայն գնաց 'ի յետս 'ի յԱւանց, և զգիշերն անդ մնաց. և 'ի վաղիւն եմուտ 'ի քաղաքն, իսկ քաղաքացիքն այլ ոչ եկին 'ի դէմ։ Սա եկաց մինչ 'ի Նոյ. ԺԳ. որ էր իւրեանց Ղուրբան բայրամ, և 'ի նոյն գիշերի ելեալ գաղտ գնաց սակաւ զօրօք։

Ապա եկն Ջալալի Իւսուֆ փաշայն, և չուտ մանզուլ եղև և գնաց. և դարձեալ եկն, և քաղաքացիքն ևս կրկին ելին ընդդէմ մեծաւ փառօք. սա եկաց մինչ 'ի ՌՃԿԼ. և Մարտի ԺԳ. գնաց։ Եւ 'ի սոյն ամի Ցուլիսի սասն Ղադու մի լաճ զտաճիկ զուլամիրն և քուրդ մի 'ի ղըղուխ հարին. և Օգոստոսի ԺԵ. լուսինն՝ որ էր ԺԵ. աւուր, խիստ խաւարեցաւ և սևացաւ իբրև ժամ Բ. և ապա դարձաւ 'ի գոյն արեգական, և յետոյ սակաւ սակաւ պայծառացաւ։

ՌՃԿԼ. Օգոս. Ի. Քալալջի Մահմատ փաշայն եկն. և 'ի փետր. մէկ մեծ խռովութիւն եղև 'ի մէջ Խալիլ աղայի լաճ Մահմատ բէգին և Խալիլ աղային. իսկ Մահմատ միաբանեցաւ ընդ Նոհ աղի լաճ Մահմատ բէգին, ելեալ առին զբերդն և ամրացան, և չառ հարին 'ի վերայ Ալի աղի

տան. և Ալի աղայն փախստական լինէր տանէ 'ի տուն. և նոքա ուր և լսէին թէ անդ է՝ անդ հարկանէին զնօք. որ և բազում տանց վնաս եղև, յորում մարդիկք մեռան. իսկ Ալի աղայն ոչ կարաց համբերել, այլ 'ի փետր. ԻԸ. ելեալ գաղտ փախեաւ 'ի քաղաքէն և եղբայր իւր Աբդուլլահ աղայն և թամուր Աղի լաճ Մահմուտ ֆէհէն: իսկ Դուլաղասիք հրամանաւ թագաւորին համարձակեալ թալանեցին և այրեցին զտուն Ալի աղային, և զեղբօրն Աբդուլլահ աղային, և ապա յետ աւուրց առաքեցին խաբանօք բերին զՄահմուտ ֆէհէն 'ի քաղաքս, և յԱպրիլի Գ. սպանին զնա Բոստանֆով: Եւ այս համբաւս տարածեցաւ ընդ ամենայն աշխարհս, թէ վան քաղաքի Դուլն ապստամբեալ է. և նոքա իջեալ 'ի բերդէն զոմանս թողին անդ պահողս որպէս սեպհական ժառանգութիւն, և ոմանք զքաղաքս տիրեցին, և բերդի նստողն ևս 'ի հրամանս սոցա կայր, և մնացին այսպէս աւուրս ինչ:

Եւ ՌՄԿԸ. Յունիսի ԺԸ. հրամանաւ թագաւորին Քօփրուլիի որդին Աբդուլլահ փաշայն եկն առնել դիւանբէկչ և դատաստան, քննել և իմանալ և հատուցանել ըստ գործոց. յորում աւուրս էր 'ի քաղաքս վան սոյն Քալաջի Մահմատ փաշայն, որ և ինքն

իւր ամենայն զօրօք ելեալ գնաց ընդդէմ, և քաղաքի Դուլաղասիք զօրօք իւրեանց . և միաբան գնացին ընդ յառաջ մինչև 'ի գիւղն Ադնականց, յայնկոյս գետոյն հանդիպեցան իրերաց ։ Էին ընդ նմա բազում անթիւ հեծելազօրք, նաև յԱմթայ բէգն իւր զօրօք, Բաւայ և Ջզերու Պարոններն իւրեանց զօրօք, և այլ բազում հեծեալք և անհամար հետևակք ։

Եւ 'ի վաղիւն ելեալ անտի եկին յԱդնականից դաշտն իջին . և անդ մեր փաշայն մեծ պատիւ արար նմա և զօրաց նորա ։ Եւ ապա նստեալ խօսեցան վասն ամենայն անցիցն եղելոց և զպատճառսն չարեաց ։ Եւ նոյն ժամայն 'ի մէջ դաշտին եհատ զգլուխ Ալի աղային և Նօհ աղայի լաճ Մահմատ աղային, և անդէն եթող 'ի մէջ դաշտին . և ինքն ելեալ զօրօք և բանակեցաւ 'ի մէջ դաշտին Աւանուց, և զբերդն դարձեալ յանձնեաց 'ի Դէլլար և յԵնգիչար աղասին, և ինքն եկաց անդէն աւուրս ԺԵ․ և ապա գնաց զօրօքն իւրովք ։

Եւ յաւուրս սոյն Քալաջի փաշային Մօլայ Խըտըրի Թոռն գինով եղեալ գնաց 'ի Ցարութիւնի տան վերայ վասն քուերն . և զի արևն 'ի մուտ էր՝ Ցարութիւն և իւր դրացի Ախիջան՝ զոր Գառու ատամ ասէին,

սոքա երկոքեանս նստեալ էին 'ի սեղան
'ի տան դրան . և յանկարծակի տեսին
զտաճիկ իջեալ 'ի պատէն և եկն առ նոսա
զինուք , և նոքա երկուցեալ մեծարեցին
զնա , և կանգնեալ ինքեանք նստուցին
զնա 'ի վեր . և նա ասէ ցՅարութիւն՝
Կոչեա աստ և զքոյրն քո . և նա ասէ՝
Մեծ ամօթ է քեզ այդ ասելն . զի աՀա
մեք բ· կարիճ , կեր և խմիր որչափ պիտի :
Եւ նա ասէ՝ Ոչ , թող նա ես գայցէ , վասն
զի ես վասն նորա եկեալ եմ . և Ախիջան
սասաց , Զամաչե՞ս որ ասես եկեալ եմ նմա
ապով . ել և գնա : Եւ նոյն ժամայն եՀար
զսուր 'ի սիրտ Ախիջանին և սպան զնա :
և Յարութիւն եՀան զսուրն 'ի ձեռաց նո և
եՀար զսիրտ և սպան զտաճիկն , և մտեալ
'ի տունն զքոյրն ես սպան . և 'ի յառա-
ւօտն ել ինքնին և գնաց առ փաշայն և
պատմեաց զեղեալսն թէ՝ Տաճիկ եկն 'ի
վերայ իմ տան վասն իմ քրոջս և սպան
զդրացին մեր , և ես սպանի զտաճիկն և զք-
քոյրն իմ : Եւ նոյն ժամայն կալան զնա և
եդին 'ի շղթայս . այս եղև 'ի Սեպ· Ա· և
պաՀեցին զնա մինչև 'ի Նոյեմբեր Ի· և
ապա կախեցին զնա և այլ տաճիկ մի ընդ
նմա . և ՌՃ· ղուրուշ արեան գին առին
'ի յԱրարուց Հողի այգեստանեայց :
ՌՃԿԸ· Օգոս· Լ· ծերունի յանջի [illegible]

փախչանքն ելին. ևս 'ի Փետր Ը. առաջին զՆաւա-
ման աղի լճն Հռունէն աղէն և զՆաւամաթի
լճն Աւր աղէն, և այլ երկերեան, 'ի յաւ-
հէն. վասն որոյ Ռուսուֆ աղէն խարով զծո-
րնք եւ 'ի Ներքին բերդ. Եհար զվրան և
զանգնևաց զԾայրուն մինչև 'ի լոյս զմանկան
վառէր և Նոյ ձգէր ընդդէմ փաշային. և
Խալիլ աղի լճն Մահմատ բէգ՝ այն որ
զհետ Նօհաղի լաճուն զբերդն գողացան
և 'ի գալն Աւզունլահ փաշային փախեաւ,
և այժմ 'ի կունէմ այս փաշայիս է. և զկո-
շերի անեղի քան զեմ: Ծոց զարիքն յերկուց
կողմանից բերդէն 'ի քաղաք, և 'ի քաղաքէն
'ի բերդն. և այսպա խալիլ աղայի լճն հաս
'ի փաշայէն Մ. ընտիր մարդ, և գնացեալ
եկին 'ի բերդն վերին, և 'ի գիշերի բոլոր
անուն հնարիւք 'ի Ներքին բերդ. և միոյ
Ռուսուֆ խարով զօրաք Նստեալ կորյին տա-
հող 'ի մէջ կայանին, և տղա ցառաեւօռէ
յանկարծակի հասին 'ի վերայ նոցա զի-
նուք և սուսերօք՝ հարին զվրան և սուսերին
զպէնս նոցա, և կալեալ զգլխաւորս նոցին
զՂօթողց Ռուսուֆ աղային, զՄիրանհիմ քէհ-
եէն, զՄուստաւայ բէգն, զՕսման աղէն,
զՏուղլանտի երեք լճն, և զայլս մեծա-
գոյնս, կապուցին զձեռս, և այլք փախեան
և ցրուեցան. և զկապեալսն տարան դէմ
փաշային 'ի սուրայն, և 'ի նոյն պահն զծփ.

'ի Նոցանէ գլխատեաց. և Ժ. 'ի ղօղօխ եհար. և 'ի սոյն պատճառ է՝ 'ի Ծաղկազարդի կիրակէն որ էր Ապրիլի Ժ. զՀաւգողենց խօջայ Մաղաքեայն և զկոր Ուսուֆն կախեաց. և Յունիսի Ե. զՆոհ աղի կորն ըսպան. 'ի յունվարի ԺԵ. զԻբրահիմ քէհէն և զկանանչագլուխ մօլայ մի 'ի յէշ հեծոյց և 'ի մէջ քաղաքին այնպէս խայտառակ շրջեցոյց զուռնով։

Սա զփաշայի սարայն և զբերդի պարիսպն բազում տեղիս Նորոգեաց. զսարայն մէջի բակն մեծացոյց, և միւս ևս Նոր զարխանա երաց 'ի դուրս, և աւելի խորան Գ էառ 'ի Հայոց։ Սա հրամայեաց թէ Տաճիկ ոք մի՛ իշխեսցէ ձիով և խանչարով շրջել 'ի մէջ քաղաքին, որ և յահէն ամենեքեան զէնընկէց շրջէին. և ազգս Հայոց էին 'ի խաղաղութեան։

Սա 'ի խնդրոյ Տէր Իգնատիոսին՝ զՊետրոս Առաքելոյ եկեղեցւոյ դուռն դրսին երկու փեղկով ետ բանալ, որ Գ. աստիճանաւ ելանէին։ Սա 'ի Յունվարի Ի. մահւամբ եղև և ել 'ի քաղաքէն և գնաց 'ի գիւղն Աւանց մինչ փետր. Բ. անդ եկաց և ապա գնաց. և 'ի միւս ամին Մօլայք քաղաքին ժողովեցան և եկեալ զՊետրոս Առաքելոյ դուռն քակեցին. և ինքն Տէր Իգնատիոս փախեաւ. և կալան Ե. մեծ

իշխան և եղին 'ի բանդ. և յեօթն եկեղեցեաց եօթն քէսայ տուգանս առին, որ բազում ոսկեղէն և արծաթեղէն սպասք հային և եառուն և ապա թողին իշխանաց գաւառին փոքր դուռն չինել: Զայս ամենայն չարիքս Խալիլ աղայի լաճն գործեաց, և ինքն փախեաւ Ստամբօլ, և անդ սպանին զնա, և ընկեցին 'ի հրապարակ. որ շունք կերին զնա:

ՌՃՀ. փետր. ԺԸ. դարձեալ Ախտուլլահ փաշայն եկն և Մայիսի մէկն գնաց 'ի վերայ Խօշաբայ. խոկ Զէյնալ բէգ պարոնն զեղբայրն իւր եթող 'ի բերդն, և ինքն էջ և եկն առ փաշայն և մեծարեաց. և եղեն սիրելիք և բարեկամք. և փաշայն մեծ պարգևօք դարձաւ 'ի քաղաք. և 'ի նոյն աւուր Օսմանցին էառ զԹիֆլիզ:

Եւ հրամանաւ թագաւորին 'ի ՌՃՀԲ. եկին 'ի Վան Ասմանոյ փաշայն, Ուրհայու փաշայն, Զանգրու փաշայն, և այլ փաշայք զօրօք իւրեանց և հեծելովք առ Ախտուլլահ փաշայն, որ եղև նոցա զօրագլուխ և սարասքեր, և գնացին 'ի վերայ Պարսից և առին զԽոյ, զՈւրմի, զԵրևան, զԹավրիզ, զՀամատան, զՄուղան, և այլ բազում փոքր քաղաքս:

Բայց թէ որչափ անողորմ արիւնս հեղին և գերի բերին, որ 'ի թիւ և 'ի գիր

ոչ մնանէ · զի ոչ մնաց աշխարհ, որ ԴՃ·
ԾԶ· գերի ոչ տարան · մինչ զի յՍտամբօլ
Անկիւրեցի Նորընծայ կաթողիկոս ԸՃ· գերի
գնեալ ազատեաց · թող զայն որ ուրա-
ցուցին · և այլազգի գերիս կրկին էին քան
զքրիստոնէից գերիս, որք ամենեքեան ցիր
և ցան եղեն ; և ցրուեալ խառնեցան յայլ
ցեղս և յազգս և 'ի լեզուս օտարս, և
նեղեալք ըստ ամենայն յամենայնի : Եւ
Ապդուլլահ փաշայն յամենայն տեղիս զօ-
րավար և զօրագլուխս կարգեաց, և ինքն
եկեաց 'ի Թավրիզ մինչև ՀԵ· թիւն · և
ապա Ալի փաշայն 'ի Թագաւորէն եկն 'ի
Թավրիզ, և Ապդուլլահ փաշայն յՕգոս-
ՃԶ· եկն 'ի Վան, և զորդին իւր զԱրիֆ-
փաշան 'ի տեղին եդ փաշայ քաղաքին ·
և 'ի Սեպ· Գ· գնաց 'ի յՍւրհայ ·

Եւ ՌՃՀԶ· Այս Աբդրահման փաշայս
իւր ամօթոյն մէջ Նոր քաղաքիս շինեաց, և
'ի յԱւանուց ճանապարհէն 'ի մօտ տեղիս
ԲԻԵ քայլս Բ· նալայատակս արար · Եւ
քանզի մանուկ էր և գինեսէր, ևս զի
յՍտամբօլ տեսեալ փոքրիկ նաւեր տուա-
շինեաց և փոքր թօփեր եւս դնել 'ի մէջ, և
ամէն երեկոյի սակաւ մարդով մտանէր 'ի
նաւն գինով և ածողով կզիշերն ողջ շրջէր
'ի վերայ ծովուն, թօփ ձգէր այսր և անդր,
ուտելով և ըմպելով ուրախանայր · և յան

ռաւօտ ելեալ զայր յիւր առջոյն. 'ի Մարտի ԺԲ. մանուկ եղև և գնացեալ 'ի Տրապիզոն մեռաւ :

Թիւ ՌՃՀԷ. Քանլի Մուստաֆայ փաշայն եկն 'ի Վան :

Թիւ ՌՃՀԸ. Արաբկերցի Մահմատ փաշայն եկն, որ փաշաջի ասէին. եկն վճարոյ 'ի Վան և խորքուն էառ :

Թիւ ՌՃՀԹ. Գարայ Մուստաֆայ փաշայն եկն, որ Թավրիզ առեալ էր. և փոխեաւ էկաւ մօտ Ջավուշբաշին. յամիս տարին, յետոյ գնաց :

Թիւ ՌՃՁ. Արիֆ Մահմատ փաշայն եկն 'ի Վան :

Թիւ ՌՃՁԱ. Մեծ Թամուր փաշայն եկն 'ի Վան Ապրիլի Գ. Աւագ երկուշաբթին, և միւս օր ել և գնաց յԱրզրում. Մայիսի Ջ. օրին դարձեալ եկն, և հասեալ 'ի Քառրասիոս՝ Ջաւուշբաշի Աստուլլահ աղայն սպան. Նոհ աղի լաճ Մահմատ քէհէն և այլք փախեան. և զօրք փաշային զհետ մտեալ բազումս թալանեցին, և շատս վիրաւորեցին, և այնպէս ջարդելով եկն ներմուտ 'ի քաղաքս. և Գ. դարպասն և գաւտան դուռն կոխեալ և դաշտաղուռն շինեց, որ 'ի դէմն տանէին՝ կոխեալ ձգել տայր. և ամենայն երկիր դողային 'ի յահէ նորա. և յայսմ ամի գնաց 'ի վերայ Բաղիշոյ.

զխանն փոխեաց, Գ. մեծ աղայ սպան, և բազում զանձս էառ, և եկն դարձեալ 'ի Վան ։

Եւ ՌՃՁԲ. Գնաց 'ի վերայ Սալմաստու՝ Մայիս ամսոյն, և կողոպտեաց զնա. էառ զԱխբակ, Գ. ԴՌ. մարդ սուր քաշեց և դարձեալ եկն 'ի Վան. [illegible] ժողովեաց քան զԿ. քիսայ աւելի. 'ի Մայիսի Ի. ել և գնաց 'ի վերայ Թավրիզոյ և էառ. և զբազումս 'ի Պարսից ազգէն կոտորեաց և գերի արար, որ թիւ ոչ գոյր ։

Ի սոյն թիւ, Ցունիսի Ժ. օրին եղև տօնամայ Գ. օր և Գ. գիշեր. որ Թահմազն յետ դարձուցին 'ի Բաղդատ զօրքն Թոփալ Օսման փաշային ։

'Ի սոյն թիւ եկն ազգ մի Թաթար, որ մարդակեր էին, գնացին 'ի Թավրիզ առ Թամուր փաշայն. և փաշայն 'ի ձմեռն եղած դուդուադնէրաց օր ԺԵ. մարդ Նոյէն տայր նոցա, որք մորթէին և ուտէին ։ 'Ի սոյն ամի դարձաւ Թամուր փաշայն 'ի Թավրիզոյ և եկն 'ի Սալամաստ. իսկ վանայ զու-լն՝ որք էին Թամուր աղի լաճ Ահմատ բէգ, Ահիտի Խըդըրի լաճ, Ալի աղի լաճ Օսման բէգ և այլ մեծամեծ աղայք, խորհուրդ արարին թէ փաշայն ոչ թողումք որ 'ի քաղաքս մտանէ. և վանայ Մուսալիմ Ալի աղայն իմացաւ, մարդ յղեաց առ փաշայն 'ի Սալամաստ. և նա մէկ օր Սալ-

մաստոու եկն 'ի խօշաբ . իսկ Վանայ Հայք
և Տաճիկք 'ի յահէն դողային . և դիմեալ
'ի քաղաքն նորա շինած պարապըլըներ ու
ըմփօըլըներ ջարդեցին . փաշայն Գ. որ նստաւ
'ի խօշաբ թէ գան 'ի դէմն , սակայն ոչ
գնացին այլ պորքօրըններ գործեցին և լըստնփօ-
ւէր 'ի ճօրըն լցին . փաշայն իմացաւ որ
կռուիլ կամին , 'ի խօշաբայ եկն 'ի Ղոռու-
բաշ գիւղն , և դուրս եղած ամէն քրիս-
տոնեայ ռայէն գնացին 'ի մօտն . երկնչէին
թէ թալանէ զինքեանս . և նա յուսա-
դրեաց զնոսա ասելով թէ՝ Մի՛ երկնչիք ,
երթայք , նստարուք միամիտ 'ի ձեր տե-
ղին ։ Յետ գնալոյ նոցին ինքն ևս հեծեալ
'ի ձին 'ի Ղռուբաշայ եկն 'ի Կենդանանից
գեղջն առաջովն անց գնաց 'ի ծովու ե-
զերն 'ի բերդի ետևն . զի յետ Ենգիչար
աղասուն բանս եղեալ էին . 'ի գիշերի եւ
'ի բերդն , և լցեալ զթօփերն ձգեաց 'ի վե-
րայ Աղայոց տանց ուր և կամէր , և ան-
ճար մնացեալ բացին ամենեքեան զդրունս
և փախեան . և ապա եկն փաշայն 'ի սա-
րայն և նստաւ 'ի տեղի իւր , և կալեալ
զԵնգիչար աղասին սպան փոխանակ տա-
լոյ բերդին ինքեան ։ Յետոյ սարասքարն
խնդրեաց զնա 'ի Ղարս , և գնաց . անդ
Առնաւուտ փաշայն եհատ զգլուխ նորա
'ի ՌՃՁԴ. թիւ ։

Ի թիւ ՌՃՁԵ. Քուրդ Իպրահիմ փա-շայն եկն աստ, մեռաւ ։

Թիւ ՌՃՁԶ. . . . . եկն . յետ Գլուն (Գուլին) կռուաւ . շատ տաղէլու-Յնտանց դուրս արին 'ի քաղաքէն գնաց ։

Թիւ ՌՃՁԷ. Մուսուլցի յաջի Հուսէն փաշայն եկն 'ի վան . յետ Գլուն կռուաւ . տըլամի ինկաւ, որքան Նախըն ունէր եա Օս-ման աղին, ինքն ահու ղարով գնաց 'ի Մու-սուլ ։

Թիւ ՌՃՁԸ. վանեցի Օսման աղայն էղև վանայ փաշայ . 'ի սոյն թիւ շինեցաւ Հայ-կավանից Սուրբ Աստուածածին եկեղե-ցին ։ Եկաց սա 'ի վան մինչ 'ի ՌՃՂ. և ապա մանզուլ եղև 'ի Մուսուլ . և անդ Հու-սէն փաշայն եհատ զգլուխ նորա, զի ա-սէն թէ ֆէրմանլիք էր վասն շինման նորքին . . . (բան պակասի) ։

Թիւ ՌՃՂ. Սուզանջի օղլի Օմար փա-շայն, յետոյ Մուրթազայ փաշայն եկն, Մուսալիմ Սարխօշ Ալի փաշայն Գ. ամիս նստաւ և ղնաց . Մուրթազայ փաշայն և Օմար փաշայն մնացին 'ի վան . այլէն շատ նեղացան 'ի յՕմար փաշայէն . ուստի հո-գելոյս մեծ Ախիջան աղէն Ղարասաֆար-եան առեալ զայլէն գնաց յԱրզրում առ Համալ օղլի սարասքար վազիրն . և կամէր 'ի դուռն Թագաւորին գնալ, վասն որոյ

պատսպարեաց ՚ի դուռն Թագաւորին և ծա-
նոյց զպարագս նորին և զգայն որոցն ՚ի
կարին. և բերեալ հրաման յղեաց ՚ի Վան
՚ի վերայ Մուրթազայ փաշային. և Մուրթ-
թազայ փաշայն եղբայրագիր գրով նմա,
սակայն զԹագաւորի հրամանն կատարեաց.
յաւուր միում եկին երկոքին փաշայք ՚ի
բերդն վասն ճաշ առնելոյ, և անդ կա-
մեցան սպանանել զնա, և ոչ եղև հնար.
և իջեալ ՚ի բերդէն եկին Թավրիզու ըղդ-
նով. քանզի Մուրթազա փաշայն ՚ի Ջա-
ւուշբաշոնց տունն էր իջեալ, և Օմար փա-
շայն ՚ի սորայն. հասեալ ՚ի Թավրիզոյ դրան
փոքրիկ Ղօձին յառաջ, Օմար փաշայն կա-
մենայ Աչաբաղասոնց փողան գնալ, սա-
կայն ձին ոչ գնաց և շատ կանգնեցաւ
, . . . (Բան պակասէ) :

Թիւ ՌՃՂԲ. Արծկեցի Սուլէյման փա-
շայն եկն ՚ի Վան. մեծ սղութիւն եղև,
որ Ժէլտր մի ցորեան հարիւր ղուրուշ ծախ-
ուեաւ. լիտր մի ալիւր Գ. ղուրուշ. ամէն
բան սոցա նման :

Թիւ ՌՃՂԳ. Ղարիբ Իյիթ Օմար փա-
շայն տեղս եկն. ծանօթող չունէր :

Թիւ ՌՃՂԴ. . . . . Հուսէյն փաշայն.
սա սպան զՇկակ մեծ Օմար աղէն :

՚Ի սոյն թիւ Աստուածածնի պահոց
Թահմազ եկն ՚ի վերայ Վանայ. մեծ նեղ-
նեղ եղև. Աստուած ետ յետս դարձաւ :

տան . և Ալի աղայն փախստական լինէր տանէ 'ի տունն · և նոքա ուր և լսէին թէ անդ է՝ անդ հարկանէին զնոսա · որ և բազում տանց վնաս եղև , յոլով մարդիկք մեռան · իսկ Ալի աղայն ոչ կարաց համբերել, այլ 'ի փետր · ԻԲ · ելեալ գաղտ փախեաւ 'ի քաղաքէն և եղբայր իւր Ադուլլահ աղայն և Թամուր Աղի լաճ Մահմուտ ֆէհէն : իսկ Գուլաղասիք հրամանաւ թագաւորին համարձակեալ թալանեցին և այրեցին զտուն Ալի աղային , և զեղբօրն Ադուլլահ աղային , և ապա յետ աւուրց առաքեցին խաբանօք բերին զՄահմուտ ֆէհէն 'ի քաղաքս , և յԱպրիլի Գ · սպանին զնա խեղդելով: Եւ այս համբաւս տարածեցաւ ընդ ամենայն աշխարհս , թէ վան քաղաքի Գուլն ապստամբեալ է · և նոքա իջեալ 'ի բերդէն զոմանս թողին անդ պահողս որպէս սեպհական ժառանգութիւն , և ոմանք զքաղաքս տիրեցին , և բերդի նստողն ևս 'ի հրամանս սոցա կայր , և մնացին այսպէս աւուրս ինչ :

Եւ ՌՃԿԸ · Յունիսի ԺԸ · հրամանաւ թագաւորին Քօփրուլիի որդին Ադուլլահ փաշայն եկն առնել ջոռնէշ և դատաստան, քննել և իմանալ և հաստուցանել ըստ գործոց · յորում աւուրս էր 'ի քաղաքս վան սոյն Քօլաջի Մահմատ փաշայն , որ և ինքն

իւր ամենայն զօրօք ելեալ գնաց ընդդէմ, և քաղաքի Ղուլաղասիք զօրօք իւրեանց . և միաբան գնացին ընդ յառաջ մինչև 'ի գիւղն Աղնականց, յայնկոյս գետոյն հան-դիպեցան իրերաց ։ Էին ընդ նմա բազում անթիւ հեծելազօրք, նաև յԱմթայ բէգն իւր զօրօք, Բաւայ և Ջղերու Պարոններն իւրեանց զօրօք, և այլ բազում հեծեալք և անհամար հետևակք ։

Եւ 'ի վաղիւն ելեալ անտի եկին յԱղ-նականից դաշտն իջին . և անդ մեր փա-չայն մեծ պատիւ արար նմա և զօրաց նորա ։ Եւ ապա նստեալ խօսեցան վասն ամենայն անցիցն եղելոց և զպատճառն չարեաց ։ Եւ նոյն ժամայն 'ի մէջ դաշտին եհատ զգլուխ Ալի աղային և Նօհ աղայի լաճ Մահմատ աղային, և անդէն եթող 'ի մէջ դաշտին . և ինքն ելեալ զօրօք և բանակեցաւ 'ի մէջ դաշտին Աւանուց, և զբերդն դարձեալ յանձնեաց 'ի [illegible] և յԵնգիչար աղասին, և ինքն եկաց ան-դէն աւուրս ԺԵ. և ապա գնաց զօրօքն իւրովք ։

Եւ յաւուրս սոյն Քալաջի փաշային Մօլայ Խըտըրի թոռն գինով եղեալ գնաց 'ի Ցարութիւնի տան վերայ վասն քուերն . և զի արևն 'ի մուտ էր՝ Ցարութիւն և իւր դրացի Ախիջան՝ զոր Գառու ատամ ասէին,

տղայ երկոքեանս նստեալ էին 'ի սեղան 'ի տան դրան. և յանկարծակի տեսին զտաճիկ իջեալ 'ի պատէն և եկն առ նոսա զինուք, և նոքա երկուցեալ մեծարեցին զնա, և կանգնեալ ինքեանք նստուցին զնա 'ի վեր. և նա ասէ ցՅարութիւն՝ կոչեա աստ և զքոյրն քո. և նա ասէ՝ Մեծ ամօթ է քեզ այդ ասելն. զի աչօք մեք Բ. կարիճ, կեր և խմիր որչափ պիտի։ Եւ նա ասէ՝ Ոչ, թող նա ևս գայցէ, վասն զի ես վասն նորա եկեալ եմ. և Ախիջան ասաց, Զամաչե՞ս որ ասես եկեալ եմ նմա ապով. ել և գնա։ Եւ նոյն ժամայն եհան զսուր 'ի սիրտ Ախիջանին և սպան զնա. և Յարութիւն եհան զսուրն 'ի ձեռաց ն եհար զսիրտ և սպան զտաճիկն, և մտեալ 'ի տունն զքոյրն ևս սպան. և 'ի յառաւօտն ել ինքնին և գնաց առ փաշայն և պատմեաց զեղեալսն թէ՝ Տաճիկ եկն 'ի վերայ իմ տան վասն իմ քրոջս և սպան զդրացին մեր, և ես սպանի զտաճիկն և ըզքոյրն իմ։ Եւ նոյն ժամայն կալան զնա և եդին 'ի շղթայս. այս եղև 'ի Սեպ. Ա. և պահեցին զնա մինչև 'ի Նոյեմբեր Ե. և ապա կախեցին զնա և այլ տաճիկ մի ընդ նմա. և ՌՃԾ. ղուրուշ արեան գին առին 'ի յԱրարուց հողի այգեստանեայց։

ՌՃԿԸ. Օգոս. Լ. ծերունի յայլի [illegible]

'ի Նոցանէ գլխատեաց . և Ժ. 'ի ղօղօխ եհար . և 'ի սոյն պատճառ է՝ 'ի Ծաղկազարդի կիրակէն որ էր Ապրիլի Ժ. զՀաւգողենց խօջայ Մաղաքեայն և զԿոր Ուսուֆն կախեաց . և Յունիսի Ե. զՆոհ աղի Կորն ըսպան . 'ի յունվարի ԺԵ. զԻբրահիմ Քէհէն և զկանանչագլուխ մօլայ մի 'ի յէշ հեծոյց և 'ի մէջ քաղաքին այնպէս խայտառակ շրջեցոյց փողոցով :

Սա զփաշայի սարայն և զբերդի պարիսպն բազում տեղիս նորոգեաց . զսարայն մէջի բակն մեծացոյց , և միւս ևս նոր փաշխան եբաց 'ի դուրս , և աւելի խարաջ դի էառ 'ի Հայոց : Սա հրամայեաց թէ Տաճիկ ոք մի՛ իշխեսցէ զուռով և խանչարով շրջել 'ի մէջ քաղաքին , որ և յահէն ամենեքեան զէնընկէց շրջէին . և ազգս Հայոց էին 'ի խաղաղութեան :

Սա 'ի խնդրոյ Տէր Իգնատիոսին՝ զՊետրոս Առաքելոյ եկեղեցւոյ դուռն դրսին երկու փեղկով ետ բանալ, որ Դ. աստիճանաւ ելանէին : Սա 'ի Յունվարի Ի. ճանղօշ եղև և ել 'ի քաղաքէն և գնաց 'ի գիւղն Աւանց մինչ փետր. Բ. անդ եկաց և ապա գնաց . և 'ի միւս ամին Մօլայք քաղաքին ժողովեցան և եկեալ զՊետրոս Առաքելոյ դուռն քակեցին . և ինքն Տէր Իգնատիոս փախեաւ . և կալան Ե. մեծ

իշխան և եդին 'ի բանդ . և յեօթն եկե-ղեցեաց եօթն քէսայ տուգանս առին , որ բազում ոսկեղէն և արծաթեղէն սպասք հալին և տուն և ապա թողին իշխանաց զառաջին փոքր դուռն շինել: Զայս ամե-նայն չարիքս Խալիլ աղայի լաճն գործեաց, և ինքն փախեաւ Ստամբօլ, և անդ սպա-նին զնա , և ընկեցին 'ի հրապարակ . որ շունք կերին զնա :

ՌՃՀ. փետր. ԺԲ. դարձեալ Ավտուլլահ փաշայն եկն և Մայիսի մէկն գնաց 'ի վե-րայ խօշաբայ . իսկ Զէյնալ բէգ պարոնն զեղբայրն իւր եթող 'ի բերդն , և ինքն էջ և եկն առ փաշայն և մեծարեաց . և եղեն՝ սիրելիք և բարեկամք . և փաշայն մեծ պարգևօք դարձաւ 'ի քաղաք . և 'ի նոյն աւուր Օսմանցին էառ զԹիֆլիզ:

Եւ հրամանաւ թագաւորին 'ի ՌՃՀԲ. եկին 'ի Վան Ամասիոյ փաշայն , Ուրհայու փաշայն , Զանգրու փաշայն , և այլ փա-շայք զօրօք իւրեանց և հեծելովք առ Ավ-տուլլահ փաշայն , որ եղև նոցա զօրագլուխ և սարտաւար , և գնացին 'ի վերայ Պարսից և առին զԽօյ , զՍրմի , զԵրևան , զԹավ-րիզ, զՇամատան , զՄուղան , և այլ բա-զում փոքր քաղաքս :

Բայց թէ ո՞րչափ անողորմ արիւնս հե-ղին և գերի բերին , որ 'ի թիւ և 'ի գիր

ոչ մնացանէ․ զի ոչ մնաց աշխարհ, որ ԴՃ․ ԵՃ․ գերի ոչ տարան․ մինչ զի յՍտամպօլ Անկիւրեցի Ներընթացկաթողիկոս ԸՃ․ գերի գնեալ ազատեաց․ Թող զայն որ ուրացուցին․ և տղայոցն գերիս կոյսին էին քան զքրիստոնէից գերիս, որք առնէին երբեան զիր և ցան եղեն ; և ցրուեալ խառնեցան յայլ ցեղս և յազգս և 'ի կեղծուս օտարս, և նեղեալք ըստ ամենայն յամենայնի ։ Եւ Ավդուլլահ փաշայն յամենայն տեղիս զօրավար և զօրագլուխս կարգեաց, և ինքն եկեաց 'ի Թավրիզ մինչև ՀԵ․ թիւն․ և ապա Ալի փաշայն 'ի թագաւորէն եկն 'ի Թավրիզ, և Ավդուլլահ փաշայն յՕզոսմ․ ՃՁ․ եկն 'ի Վան, և զորդին իւր զԱբդուլ ժողման 'ի տեղին եդ փաշայ քաղաքին․ և 'ի ՄԵԺ․ Գ․ գնաց 'ի յՍուրհայ ։

Եւ ՌՃՀԶ․ Այս Աբդրահման փաշայս իւր օրոք մէջ Նոր քաղանիս շինեաց, և 'ի յԱւանուց ճանապարհն 'ի տղմոտ տեղիս թիլև քայլս Բ․ սալայատակս արար․ Եւ քանզի մանուկ էր և գինեսէր, և ս զի յՍտամբօլ տեսեալ փոքրիկ նաւեր տուեալ շինել և փոքր Թօփեր եւ դնել 'ի մէջ, և ամէն երեկոյի սակաւ մարդով մտանէր 'ի նաւն գինով և օղով կզերերն ողջ շրջէր 'ի վերայ ծովուն, ետ ձգէր այսր և անդր, ուտելով և ըմպելով ուրախանայր․ և յան

զխանն փոխեաց, Գ· մեծ աղայ սպան, և բազում գանձս էառ, և եկն դարձեալ 'ի վան ։

Եւ ՌՃՁԲ· գնաց 'ի վերայ Սալմաստու՝ Մայիս ամսոյն, և կողոպտեաց ղնա · էառ զԱխբակ, Գ· ԴՌ· մարդ սուր քաշեց և դարձեալ եկն 'ի վան · խմբաւոքն առաջնոյն ժողովեաց քան զԿ· քիսայ աւելի · 'ի Մայիսի Ի· եւ և գնաց 'ի վերայ Թավրիզոյ և էառ · և զբազումս 'ի Պարսից ազգէն կոտորեաց և, գերի արար, որ թիւ ոչ գոյր ։

Ի սոյն թիւ, Յունիսի Ժ· օրին եղև քօ-նամայ Գ· օր և Գ· գիշեր · որ Թահմազն յետ դարձուցին 'ի Բաղդատ զօրքն Թօփալ Օսման փաշային ։

'Ի սոյն թիւ եկն ազգ մի Թաթար, որ մարդակեր էին, գնացին 'ի Թավրիզ առ Թամուր փաշայն · և փաշայն 'ի ձնջէլ եղած զուաքուաչններուց օր ԺԵ· մարդ Նոյեն տայր նոցա, որք մորթէին և ուտէին ։ 'Ի սոյն ամի դարձաւ Թամուր փաշայն 'ի Թավրի-զոյ և եկն 'ի Սալամաստ · իսկ վանայ ղուլն՝ որք էին Թամուր աղի լաճ Ահմատ բէգ, Սէիտի Խըդըրի լաճ, Ալի աղի լաճ Օսման բէգ և այլ մեծամեծ աղայք, խորհուրդ արարին թէ փաշայն ոչ թողումք որ 'ի քաղաքս մտանէ · և վանայ Մուսալիմ Ալի աղայն իմացաւ, մարդ յղեաց առ փաշայն 'ի Սալամաստ · և նա մէկ օր Սալ-

մատոու եկն 'ի խօշար․ իսկ վանայ Հայք և Տաճիկք 'ի յահէն դողային․ և դիմեալ 'ի քաղաքն նորա շինած պարապըմներ ու ըմեֆոըներ ջարդեցին․ փաշայն Գ․ օր նստաւ 'ի խօշար թէ գան 'ի դէմն, սակայն ոչ գնացին այլ ռումբաններ գործեցին և ըոմանփճէ 'ի ծառըան լցին․ փաշայն իմացաւ որ կռուիլ կամին, 'ի խօշարայ եկն 'ի Ղոուբաշ գիւղն, և դուրս եղած ամէն քրիստոնեայ ռայէն գնացին 'ի մօտն․ երկնչէին թէ թալանէ զինքեանս․ և նա յուսադրեաց զնոսա ասելով թէ՝ Մի՛ երկնչիք, երթայք, նստարուք միամիտ 'ի ձեր տեղին ։ Յետ գնալոյ նոցին ինքն ևս հեծեալ 'ի ձին 'ի Ղոուբաշայ եկն 'ի կենդանանից գեղջն առաջովն անց գնաց 'ի ծովու եզերն 'ի բերդի ետևն․ զի յետ Ենգիչար աղասուն բանս եդեալ էին․ 'ի գիշերի ել 'ի բերդն, և լցեալ զնօֆէրն ձգեաց 'ի վերայ Աղայոց տանց ուր և կամէր, և անճար մնացեալ բացին ամենեքեան զդրունս և փախեան․ և ապա եկն փաշայն 'ի սարայն և նստաւ 'ի տեղի իւր, և կալեալ զԵնգիչար աղասին սպան փոխանակ տալոյ բերդին ինքեան ։ Յետոյ սարասքարն խնդրեաց զնա 'ի Ղարս, և գնաց․ անդ Առնաւուտ փաշայն եհատ զգլուխ նորա 'ի ՌՃՁԴ․ թիւ ։

Ի Թիւ ՌՃՁԵ· Քուրդ Իպրահիմ փա-շայն եկն աստ , մեռաւ ։

Թիւ ՌՃՁԶ· . . . . եկն . յետ Գլուն (Գուլին) կռուաւ . շատ տաղէլունեանց դուրս արին 'ի քաղաքէն գնաց ։

Թիւ ՌՃՁԷ· Մուստուլցի յաջի Հուսէն փաշայն եկն 'ի Վան . յետ Գլուն կռուելն . տղէն ընկաւ , որքան Խախոր ունէր եւ Օս-ման աղին , ինքն առու ղարով գնաց 'ի Մու-սուլ ։

Թիւ ՌՃՁԸ· Վանեցի Օսման աղայն եկև Վանայ փաշայ . 'ի սոյն թիւ շինեցաւ Հայ-կավանից Սուրբ Աստուածածին եկեղե-ցին ։ Եկաց սա 'ի Վան մինչ 'ի ՌՃՂ· և ապա մանդուլ եղև 'ի Մուսուլ . և անդ Հու-սէն փաշայն եհատ զգլուխ նորա , զի ա-սէին թէ ֆերմանլը էր վասն շինման նորքին . . . (բան պակասէ) ։

Թիւ ՌՃՂ· Սուզանջի օղլի Օմար փա-շայն , յետոյ Մուրթազայ փաշայն եկն , Մուստաֆիմ Սարխօշ Ալի փաշայն Գ· ամիս նստաւ և գնաց . Մուրթազայ փաշայն և Օմար փաշայն մնացին 'ի Վան . տայէն շատ նեղացան 'ի յՕմար փաշայէն . ուստի հո-գելոյս մեծ Ախիջան աղէն Ղարասաֆար-եան առեալ զայէն գնաց յԱրզրում առ Համալ օղլի սարասքար վալիին . և կամէր 'ի դուռն Թագաւորին գնալ , վասն որոյ

առաքեաց 'ի դուռն Թագաւորին և ծա-
նոյց զարարս նորին և զգալն ոսկին 'ի
կարին. և բերեալ հրաման յղեաց 'ի Վան
'ի վերայ Մուրթազայ փաշային. և Մուր-
թազայ փաշայն եղբայրագիր գլուխ նմա,
սակայն զթագաւորի հրամանն կատարեաց.
յաւուր միում եկին երկոքին փաշայք 'ի
բերդն վասն ճաշ առնելոյ, և անդ կա-
մեցան սպանանել զնա, և ոչ եղև հնար.
և իջեալ 'ի բերդէն եկին Թավրիզու ղըդ-
նով. քանզի Մուրթազա փաշայն 'ի Ջա-
ւուշբաշոնց տունն էր իջեալ, և Օմար փա-
շայն 'ի ոտբայն. հասեալ 'ի Թավրիզոյ դրան
փոքրիկ Չօմին յառաջ, Օմար փաշայն կա-
մենայ Աչաբաղասոնց փողան գնալ, սա-
կայն ձին ոչ գնաց և չար կանգնեցաւ
, . . (բառ պակաս) :

Թիւ ՌՃՂԲ. Արծկեցի Սուլէյման փա-
շայն եկն 'ի Վան. մեծ սղութիւն եղև,
որ +ելը մի ցորեան հարիւր ղուրուշ ծախ-
ուաւ. լիտր մի ալիւր Գ. ղուրուշ. ամէն
բան սոցա նման :

Թիւ ՌՃՂԳ. Ղարիր Իյիթ Օմար փա-
շայն տեղս եկն. մնաստող չունէր :

Թիւ ՌՃՂԴ. . . . . Հուսէն փաշայն.
սա սպան կՇկակ մեծ Օմար աղէն :

'Ի սոյն թիւ Աստուածածնի պահոց
Թահմազ եկն 'ի վերայ Վանայ. մեծ կըռ-
ւըն եղև. Աստուած ետ յետս դարձաւ :

Թիւ ՌՃՂԵ· Զալիք Օմար փաշայն եկն · Բ· Գ· ամիս եկաց, գնաց ։

Թիւ ՌՃՂԶ· Ղայաջի Աբդուլլահ փաշայն եկն · խօջէք շատ տուգնեց · Հայկավանից եկեղեցւոյ Թառմէն (վերնատուն) փլաւ · տէրտէր օրհնէլն, անտի եւ տուգանս էառ ։

Թիւ ՌՃՂԷ· Աինադ Մուստաւայ փաշայն եկն ։ Եւ 'ի ՂԸ· Ղարայմիրաքենց Լալէն մեռաւ · Դ· օրէն ետք մարմին 'ի գերեզմանէն հանին, գլուխ կտրեցին, ճաշունենց դռնէն կախեցին ։ Յայսմ ամի Գազանչոնց Սաֆար կախեցին, որ Խօջինկայ Շարամիրի տունն կոխեաց ։

Թիւ ՌՃՂԹ· Զարբինի Օմար փաշայն եկն 'ի Վան · դրամ կտրեց · հինգ փարանոց արաց ԼԲ· փարայ, ամաղանի ԻԵ· ։ Դաւուդ աղէն սօլաղասի էր, 'ի մէջ ղալէին սպան ։

Թիւ ՌՄ· Աւտի Ջալալօղլի յաջի Հուսէն փաշայն եկն · սա սպան զՆաբի Հասան, զՂաւուջի Մուռն, Քռէզի Լօլօն, ոտ պոչներ շատ սպանեց · խօջէք բռնեց, շատ դրամ էառ · հացն շատ թանգ էր · գարին ԻԵ· ղշ· էր, ալիւրի լիտրն մինչ Բ· ղշ· յղեաց Մուսուլայ շատ հաց բերաւ · լիտր աբասի մի իջաւ ։ Անիծեալն . . . թէ ինչ . . . կերաւ, գրել ոչ անկանի ։

ՌՄԲ· Թօփչենց Մուստաւայ աղայն . . . սարասգար Լաւանդ հետ Ղուլին գնացին 'ի վերայ Թագուրցւոցն, (քուրդի ցեղ է), Թաթար խանն այնպէս պարտեաց, որ ոչխարի պէս ամէնն իբաց (մերկացոյց), և խայտառակ եկին տեղս ։

Թիւ ՌՄԳ· Ղարսեցի կոր (կոյր) Ուսուֆ փաշէն հետ Ղլուն կռուան, մտուցին սօ-ջոյն, էլան Մուշն, բռնեցին Ռումանէ յա-ռաջ· յղեաց Խօշաբայ մարդ բեր, էլան դէմ չթողին, գիշերով գաղտ դռնէն ե-լեալ փախեաւ ։ Ի սոյն ամի Խաչլի օղլին Արզրմայ Իբրահիմ փաշէն եկն, Ծէ· օր նստաւ ղոշէր, գնաց ։ Ի սոյն Թիւ Շահսա-վար օղլի Մուստաւայ փաշէն եկն և գնաց ։

Թիւ ՌՄԴ· Մարտի Ա· եկն . . . Նորա-վանց (գիւղ) նստաւ, քաղաք գալ չթո-ղին· Խաս աղէն ոտքով էառ գնաց դէմ· շատ մարդիկ մեռան, գիւղացիք ամեն փախեան, ցանքեր կերցուցին· յետոյ Եէնգիչար աղասին Եէնգիչարեօք, Ղազ-եօք առին Խաս աղէն տարին մօտ փաշայն· Մարմետ (գիւղ) ետ աղային, ինքն մօնղօլ եղև, գնաց· ԳՌ· մարդ աւելի ունէր ։

Ի սոյն ամի Խաս աղի լաճ Մահմուտ աղէն եղև . . . ։ Ապա Ահջաք Մուստաֆայ փա-շէն եկն 'ի Վան· Գօջայ Արաբ սպան Շխու Օմար աղէն ։ Ի սոյն ամի, Համբարձման

տօնին, մահն անկաւ․ որ Ե․ Ժ․ մեռանէին 'ի Հայոց և 'ի Տաճկաց․ եհաս մինչև աշունն, ապա վերացաւ ողորմութեամբն Աստուծոյ ։ Ի սոյն թիւ Սուրբ Խաչի պահոց՝ Սուրբ Նշան հանին Գ․ օր 'ի Տիրամայր եկեղեցին ։

ՌՄԵ․ Ռաջաբ փաշայն եկն ։

Թիւ ՌՄԷ․ Դարձեալ Շահսաւար օղլի Մուստաւայ փաշայն եկն․ հաց շատ սուղ էր․ ցորեն Ի․ ղշ․ հացի հօխեն Է․ փարայ, և կորեկ ալիւր Լ․ փարայ լիտր ։

Թիւ ՌՄԹ․ Աղայ փաշէն եկն 'ի վան․ Թոքադ օղլին քէհայ էր․ շատ ջանաց թէ Իսա աղէն սպանի, ոչ կարաց․ աղէն մօտ չգնաց բնաւ ։ Ցայսմ ամի Դօրոյի Աղախանն խօղէնէ մի եհան ։

Թիւ ՌՄԺ․ Նոյ․ ԺԲ․ օրին Զարար օղլի Ֆէզուլլայ փաշէն եկն․ սա սպան զԱւտի Քարիմի լաճն Ենգիչարի գոլով Ալիճիչէրէ օրթէն (գնդէն) քշել ետ ձմռան ձեան վրայ ։

ՌՄԺԱ․ Դօնանմայ եղև Է․ օր, քանզի Սուլթան Մուստաֆային տղայ եղև ։

Եւ 'ի սոյն թիւ Զօրան աղէն խօշաբայ պարոնի լաճ բռնեց․ վանեցիք գնացին առֆար 'ի վերայ Աբազու․ Աշքէքէօյլ Նօֆ տարան հետ․ Նօֆ զարկողն Աւթանդիլն էր․ Զօրան աղէն փախեաւ․ բերդն առին ։

Ի սոյն թիւ Բաղդադայ Սուլէյման փաշայն մեռաւ ։

Ի սոյն թուին Ապրիլ ԺԴ. Ապարանից Սուրբ Խաչ (վանք է) լոյս էջ գմբէթին բազում աւուրս. և բազում ուխտաւորք գնացին անդ և տեսին ։

Թուին ՌՄԺԲ. եկն Քարիմ խան 'ի վերայ Սարդար Վաթալի խանին և հալածեաց զնա բոլոր տարին. և 'ի հասանել կէս ձմեռուան՝ ռայ եկն , և էառ զՍրմի ։

Ի սոյն թուին հանգեաւ Շամախեցի Ցակոբ կաթողիկոսն ։

Ի սոյն ամի Ապրիլ ԺԴ. Նստաւ յաթոռն Սիմէօն արժանաժառանգ կաթողիկոսն ։

Ի սոյն թուին Սեպ. եկին ջահըլքլանք և խաղացին 'ի վերայ պղնձէ թեւի ։

Ի սոյն փաշայի ժամանակ շինեցան յԱրարուց և Ցանկուսներաց եկեղեցիք , էջմիածին , Սուրբ Պօղոսայ և Ղուռուպաշայ եկեղեցիք , և բազում վանքեր ։

Ի սոյն թուին սպանին Երուսաղէմի ճանապարհին Զարուխչու Բարսեղ և Երիզու Նազարն ։ Ի սոյն թուին Այվազ օղլին կախեաց փաշայն երկու մարդ հետ ։

Ի սոյն ամի Սարի փաշայն եղև սարասագար. գնաց 'ի վերայ Բաշի աչուխին , շատ ջարդուաւ. հինգ , վեց մարդով հազիւ փախեաւ և եկն 'ի Կարին ։

Ի սոյն թուին Դեկտ. ԻԹ. այս Ֆէյզուլլահ փաշայս մահլուլ եղև գնաց 'ի Սուազ ։

Թուին ՌՄԺԳ. Ապրիլ Ա. Խասաքի Քօռ

Ահմատ փաշայն եկն. շատ ջանաց թէ Իւ-
սա աղէն սպանանէ, և ոչ կարաց. աղէն
'ի տուրքոյն ոչ երթայր, այլ փաշայն ամէն օր
աղենց այգին էր ։ Ի յայս թիւ, և 'ի սոյն
փաշայի ժամանակ, աղէն՝ իւր տղայ Մահ-
մուտ աղէն սուլթան դուռյանէն արաց. բայց
յոյժ զարմանալի նամուսոյ կայր 'ի ֆշանքէն ։
Այս նամուսոյն յետին գիշերն հարին քարքար
Օխանին Աստուածատուրի տղայ Օհաննէ-
սին, և մեռաւ Յունիսի ԺԵ. ։

Ի սոյն թիւ Համադանցի Ասլան 'ի մէջ
խանին 'ի Թավրիզ 'ի գողոյն սպանաւ ։

Ի սոյն թիւ Սեպ. Ժ. Ահմատ փաշայն
գնաց 'ի փիլս ։ (Գուցէ Կ. Պոլիս կամ Թիֆլիզ։)

Թիւ ՌՄԺԴ. Քօրփուլի օղլի Նաման փա-
շէն, որ Խուշ ասէին, եկն 'ի Վան, շատ
հուքամ ունէր. իւր երկու լաճուն սուլթան
նշան արաց, ԲՃ. տղայ աւելի սուլթանեցին ։
Ի սոյն ամի եկին 'ի Մշոյ Ե. ՋՃ. ձիաւորք
և քէթխուդայք, խանք և խօջայք, յաղագս Իսա
աղի աղջիկ Ռունդուսուն խանըմին շարբաթ
խմելոյ. ՃԻ. նաքաշ, լաւ սուրաթով ղումաշ
փակած ձգած 'ի վերայ նաքաշներուն, այնպէս
Ճէրգոյ (կարգ) սօլ աղասոնց Մահմուտ ա-
ղենց տնէն բոլորան թօփչոնց դռնով գնա-
ցին աղենց տուն. շատ լաւ նամուսոյ եղև։

Ի սոյն ամի քէնա էմինէն սկսաւ բերդ
և քաղաքներ նորոգել։

Ի սոյն ամի Նոյ. Ի. Ամիր Մուստաֆայ փաշայն եկն ։ Ի սոյն՝ յաջլի Ահմատ աֆանդու լաճ Ահմատ բէգին հարսանիք արին, Ինչ բէգէն քանի շուն սյուրած նէտոն կուքաչէր. շատ կերաւ. . . ։

Թիւ ՌՄԺԵ. Մայիս ամսի ԺԴ. ահագին շարժ եղև 'ի մայրաքաղաք Ստամբօլ. անթիւ տեղեր փլան, և շատ մարդ մեռաւ ։

Ի սոյն թիւ Քօլօզ փաշայն եկն 'ի վերայ Մաղսուտ բէգին, Նոռանէօվ հարին գաղտ 'ի Մշոյ (երկիր) և սպանեցին ։

Ի սոյն՝ Ակրփու քարի ջուրն (գետն) այնչափ շատցաւ, որ մտաւ Թավրիզու դուռն, զի Մայիսին այնքան անձրև եկն ։ Ի յայսմ ամի, Յունիսի ԺԴ. Ամիր Մուստաֆայ փաշէն մանզուլ եղև, գնաց իւր երկիրն ։

Թիւ ՌՄԺԶ. Մայիսի ամսոյն, Եազըճի օղլի Իբրահիմ փաշէն եկն. և 'ի սոյն ամի Հոկ. ԺԴ. աստ մեռաւ ։

Ի սոյն օրս Ղարաստաֆարեան լուսահոգի Սահակ մեռաւ ։

Ի սոյն ամի Դեկտ. ԻԵ. օրին, Առաջնորդ Գրիգոր վարդապետ՝ Սուրբ Նշան 'ի Տիրամայր եկեղեցւոյն հանեալ տարան եդին յԷջմիածին 'ի ժամանակս Իսա աղին, քանզի տեղս փաշայ ոչ գոյր, ձեռնտուութեամբ Մ. Թովմա աղային և Պարիկ աղային. և քանզի Տիրամայր եկեղեցւոյ ժո-

ժողովուրդք ոչ կամէին, Ջ. խօջայս ըմբռնեաց և ՉՃ. ղչ. տուգանս էառ. յառաջագոյն վարագ կամէին տանել, յետոյ եդին յէջմիածին:

Ի Թիւս այս ՌՄԺԷ. . . . Հասան փաշէն եկն 'ի Վան. ապա Քուրդ Իբրահիմ փաշէն եկն. խանդակներ հորդեցին:

Թիւ ՌՄԺԸ. Մոսկովու սաֆար բացուաւ:
Ի սոյն Թիւ Նոյ. Ջ. ին Գրիգոր առաջնորդ վախճանեցաւ:

Թիւ ՌՄԺԸ. Դեկտ. ամսոյն, յետ մեռանելոյ Խալիլ աղային՝ Թամուր աղայն կամէր լինիլ սօլ աղասի, ոչ ետուն. վասն որոյ մեծ խռովութիւն եղև 'ի մէջ նոցա. և սկսաւ Ղուլն դառնալ 'ի վերայ Թամուր աղային. միաբանեցան ընդ Օսման փաշայի տղին դաշինս եդին, յետոյ յաւելան 'ի կողմն նորա Շահը օղլի Իսմայիլ բէգ, Ջսար աղասին, Աշարի լաճն, Իսախանի Իբրահիմ բէգն, Իրզի լաճերն, Սօղբաթօղլին, և այլ անթիւ մարդիկք ամէն եղեն 'ի կողմն Թամուր աղային: Եւ զի տեղս փաշայ ոչ գոյր; օէլահով և ջօլօլայով շուրջ գային. յաւուր միոջ վստահացեալ հարին փշտօյով զկոր (կոյր) մուֆթին, որ Գաւըմ օֆանոթ ասէին, և սպանին. մեծ ումն էր. և ապա սկսան կռուել՝ ռամազանն մինչ 'ի գլուխ. շուկայք դատարկեցին և բոլոր փակեցին 'ի յահէ թալանելոյ. և

մարդ ոչ կարէր ելանել 'ի տանէ յահէ ֆուլուլույէցն , որ այնչափ հարկանէին միմեանց , եւ առաւել գիշերն · յետ Մալըլքէն , քանիցս անգամ եեըեչ արարին 'ի վերայ միմեանց , և ողջ տաճաղանին մինչ 'ի Քայըրամն այնպէս կռիւ արարին , մինչև խաքար առին թէ փաշան Հուսէն փաշայն գալոց է տեղս · յաւուր Ենար աղասին Թամուր աղայի խօսքով գնացեալ ընդ Եէնֆէնչէրի աղասան խօսեցան , գիշերով փաժէր ղափուն բացին , էլաւ բերդն վերին · ցածրի բերդն Ղասար օղլի Յուսուֆ աղայն էր բռներ · սկսան երկու կողմանց և ճաչըերւոց և նամարքիններոց միմեանց հարկանել · Բ· Գ·Ճ· ճանապքէն առելի կայր · կամէին նօֆ ձըգել 'ի վերայ իսա աղենց տան բայց ոչ կարացին · երկեան 'ի Թագաւորէն , քանզի իսա աղի ննանչն միշտ գնայր , գայր այսր անդր , և փաշայն եւս մօտեցաւ գալու :

Թիւ ՌՄԺԹ· Յունիսի Ա· Դամաշ Հուսէն փաշայն եկն յԱրճէշ · ելան Թամուր աղէն , և Օսման փաշի լաճ , Շանէշ օղլին , բոլոր Ղուլ ճետն , Գ· Դ· էլ մեծագլուխ մօլայ դնացին, հասան Բանդըֆմահէն (գետն), մօլէքն յղեցին մօտ փաշէն գանգատ 'ի վերայ իսա աղին · փաշէն վերուց (ասաց) թէ՝ Ես գալոց էի քաղաք , դուք վասն է՞ր եկիք : Ապա Բ· մօլի միգ եհար կտրեց ·

Նափասի մօլէն Ռասուլ աֆանդին յղեաց Աղթամար. Աղէք պրծան փախեան 'ի Բայազիտ։ Միւս օր Իսա աղէն իւր Եօլու-գով գնաց դէմ փաշային, Խալիլ հազաւ. փաշէն առին եկին քաղաք։ Գիր յղեցին Բայազիդ թէ՝ տող եկէք. ոչ եկին։ Էն վախտ՝ որ մտաւ քաղաք՝ Կարայ Քէհէն Ջավհար աղի լաճու վիզն եզարկ։ Ի. օրից յետ Թամուր աղէն հետ միւս աղայից, Ղուլն ամէն, Է. ԸՃ. ձիաւոր կոփել եկին լեցուան այգեստան Գօրգոյենց թաղ, Մաշուրենց թաղ, Հասան բէգենց թաղ, Եէրլեան մանուչէս բռնեցին, Կարայ Քէհէն, Իսա աղէն, երեք Նօֆ տարան գնացին Գլոր տոր (թաղ). Խ. Ծ. Նօֆ աւելի հարին տներաց, վերջ որ Ղուլն եւս չլինիր, մէկ մէկ մեծեր փօնմէջ եղան (անջատեցան). Ղուլն՝ որ 'ի վերայ Թամուր աղին էր, փախեան. Մնացին երեք ֆուրմանլը աղայք, անոնք ալ անճար մնացեալ փախեան 'ի Բաղդատ. Թամուր աղէն, Շաթր օղլին, Ամէտի Օսման փաշի լաճն, ՌՄԼԷ սաֆարի ԺԸ.։

Թիւ ՌՄԻ. Ցունվարի Ջ. մեք պստիկ զատիկ (ծնունդ) արինք այլազգիքն ալ մեզ հետ ռամազանն բայրամն արին։

Ի սոյն թիւ Ցունվարի ԺԵ. Ս. Սարգսի պահոց երկուշաբթին Իսա աղէն մեռաւ։

Թիւ ՌՄԻ. Թամուր փաշէն եկն՝ Օս-

մանն փաշի լաճն ընդ նմա. Օսման փաշի լաճն եղև Սող աղասի, Շամիր օղլին Ալէմ աղասի։ Ի սոյն թիւ Օգոս. ԺԵ. կայմաղմ փաշէն եկն . . . ՚ի սորա աւուրս մուֆթիու թոռն . . . ձգեցին երկրով գնացին Մուղաղջի օղլունց այգին, ծառերն կտրեցին, Լամուկն փախաւ։

Թիւ ՌՄԻԱ. Յունվարին, ծովս պաղեցաւ Ե. օր, որ յԱրճիշոյ գային ՚ի յԱնապատն և յԱնապատէն գային ՚ի դուրս և գնային։ Ի սոյն թիւ, Մայիս ԺԵ. վանայ Գիւլն Բ. խարար առին ՚ի Հայոցս, և կէս ղշ. էլ հարամ խարար։

Ի սոյն թիւ Սեպ. Ա. Սիլահդար Խալիլ փաշէն եկն. Թամուր աղէն եղև սող աղասի. Քէհէն, Գուլն՝ գնացին ՚ի վերայ Նարեկայ Սէյիդ Աղին, առյ եկն. բերդն քակեցին։

ՌՄԻԲ. Մայիսի ԺԷ. օրին այս Խալիլ փաշայս՝ Գարայ չաւուշի լաճ Մուստաֆայ աղէն արար Ալէմ աղասի. քանի օրից ետքը ՚ի մէջ սարային սպանեց . . . լէշն Մողէնի առջև թաղեցին։ Ի սոյն թիւ գնացին Արծկու Մուրատ բէգի վրան։

Թիւ ՌՄԻԳ. Մալաք Ահմատ փաշայն եկն։ Ի սոյն թիւ Թամուր փաշայն Թուղթառեց էկաւ վան, որ գնայր Խարբուղ ծանատաղ։ Ի սոյն թիւ Մահմատ բէգ եղև սող աղասի. Օսման փաշի տղայն Բայրաղ ոչ

տայր . . . . . . . . ֆլա կերցնելով, խալըֆ տալով, զօրով բերել ետ ։ Ի սոյն թիւ, Մ. Թովմայ աղէն առ Աստուած փոխեցաւ ։ Ի սոյն թիւ Թօփչոնց Օմար ազայն՝ և Ջամուշշու լաճեր կռուան . Օմար աղէն դնաց վէր Ջամուշշոնց տան, քարով հարին սպանեցին Մինդան օղլի՝ Օսման էլ հետն ։

Թիւ ՌՄԻԴ. Օգոս. ԻԱ. վանեցի Թամուր փաշայն եկն վան ծառոք, և սկսաւ անփոխարէն ողորմութիւն հաւաքել ՚ի Տաճկաց ։ Սա սպան զԴաւուտ աղի լաճն Օսման աղէն և զՍօլթաթ օղլին . Օսման աղէն ՚ի մէջ խաղնայէն խեղդեցին, Սուլէյմանն աղէն բերդն սատկեցուցին . . . . ։

Թիւ ՌՄԻԵ. Մայիսի ԻԴ. Ահմատբէգ և Գափուջի բաշին գնացին յՍտամբօլ ։ Ի սոյն թիւ եկաւ Թէբէ խաղնայ ՃԻ. քէսայ Թամուր փաշային ։ Ի սոյն. Սեպ. Ջ. օրին Ախիջան մեծափառ իշխանաց իշխան գնաց Ստամբօլ ։

ՌՄԻԶ. Սեպ. Ա. Ախիջան բարետոհմ և քրիստոսասէր աղայն եկն յՍտամբօլայ . Թօփչոնց Ռասուլ կախեց փաշէն ։

ՌՄԻԸ. Մայիսի ԻԸ. Այս Թամուր փաշայս մեծ սաֆար արար ՚ի վերայ Բաղիշոյ , և հետն ունէր Մշոյ Մաղսուդ փաշայն . և գնաց անդ նստաւ ԺԷ. օր . երկիրն ամէն տայ եկին . Նաբուդ բէգ՝ որ ՚ի մէջ բերդին էր՝ ԻԳ. քէսայ ստակ տուաւ

և ապա փախեաւ․ և կալեալ Ը․ ոգի մեծամեծաց 'ի Մուշ առաքեաց զԸնձըլըվ, և Բ․ սպան․ և առեալ բազում հարկս մեծաւ յաղթութեամբ եմուտ Վան ։

Այս Թամուր փաշայն զչափին Ջղալօղլի ճող, ոն․ուրնէլէ քարեր ամէն թամղալամիշ արաց ։

Ի սոյն թիւ, Նոյեմբերի ամսին գնաց Ազբակու Նստած Եղն (քրդաց) եհար․ Գ․ ԴՌ․ ոչխար եբեր տեղս․ Ջէօրխօրէօյ Օսման աֆանդին կախեց, ապա երեք էլ ուրիշ տաճկի կին եդ 'ի նաւ քշեց․ Ղարասաֆար օղլու Մօրուքն կտրել ետ, որ սուրէ ճէլէ+ էր ։

Ի սոյն թիւ, Դեկտեմբեր․ Այս Թամուր փաշայս՝ Մխիթարենց Բաբանիկն Աբով, որ գիշեր կոր Գազկէ աղջկայ տուն բռնեցին է․ անուանի կնիկ ետ դնել 'ի նաւ քշել, որ են այսոքիկ․ կոր Գազկէաղջիկ, քուլխանչու Եղիսէն, խանթուման, Քաչալ աղջիկ, Օդաբաշու կնիկ, Ղազանչու կնիկ, Նորշինցու կնիկ, պըղծեալք ։

Թիւ ՌՄԻԹ․ Յունվար ԺԱ․ վասն ծովացեալ մեղաց մերոց յայտնեցաւ Աստուածային-խրատապատժութիւն, զի Սամարջոնց Աբրահամու որդին Շայենն, որ նոր հարսնիս էր արած ԺԵ․ կամ Ի․ օր, քանի բեռ ճօրօպ էր առած որ Արզրում տանէր, յանկարծակի կէս օրէն ետք մին բեռ

ալըմլըմիշ եղև մէկ մը կարաս ճօրաղ հետն. Աստուած նշանց չիտայ, մարդկանց շատ վնաս եւ ի բերանց և երկրին, զի յանկարծ թօթափել բոլոր տունն քանի դղրդեց տնովլ դաշտ եղև, և Ե. հոգի մնացին 'ի ներքոյ հողին, և բազում ինչք և անա-րանք ցիր ու ցան եղեն 'ի ներքոյ հողին և յայլ տեղիս. լուաք թէ գերան մի ձգեալ էր 'ի տանեկաց գօտերն, և խախտեալ դրանց, տանց և քէնճարայից ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մինչ զի Իւէօլու ֆօ-ֆուն և Թամրիզու դունն և բոլոր շրջակայ մահալէին Նոզննըրամայէ . . . . . և երդոց շար-շուայէ ամէն 'ի վայր թափեցան, և նոյն պահ երկրի մեծաւորք՝ սաղ աղասին, սօլ աղասին; Ահմէտ բէգ, բոլոր Հայք և Տա-ճիկք եկին և սկսան առժամեայն հող փո-րել. լինի թէ ներքոյ մնացեալք ողջ գտա-նիցեն. ջանք տալով գտին զնորահարսն և տղայ մի փոքր 'ի գրկին, իբր թէ կամե-ցեալ էր փախչիլ և անդէն տուն եկեալ էր 'ի վերայ, և մեռեալ էին երկոքին. և միւս օր հանին Գ. մեռեալ, որ էին Բ. մեծ տղայ ԺԷ. Ի. տարւոյ, և աղջիկ մի. և յետ Բ. և Գ. աւուրց որք փորէին զհողն այրեցեալ գերանք և ինչք դուրս հանէին ամէն ոչընչացեալ և այրեցեալ, և այն էր զարմանք, որ հիմն 'ի վեր էր ելեալ և վերն 'ի

վանդուղ իջեալ. և այնպէս խառն'ի խուռն էր, որ ոք չկարէ գիերալ բանին գրել:

Ի սոյն Թիւ Ստամբօլայ ծովն պաղե֊ցաւ, որ ասի Բօղաղէնէ, զի կարի ցուրտ եղև. Ջրգիրայ և 'ի Բաղդատ մեծամեծ ձեանք եկին, որ 'ի վաղուց հետէ չէր եղեալ: Ի սոյն՝ Ապրիլին, Քարիմ խանն մեռաւ: Սարդարի լաճն սպանին: Ի սոյն Թիւ, Ցուլիս ԺԲ. օրին Նասիպ աֆանդիի Ղընջըն դէլէր փօրօսլօմըշ արին: Ցուլիսի ԺԳ. օրին այս Թամուր փաշայս գնաց 'ի վերայ Ջուլամէրկու Աւդուլլահ բէգին, ԻԳ. քէ֊սայ ստակ ետ, լաճն յղեաց մօտն, և Լ. աւուր վերայ դարձաւ և եկն 'ի քաղաքս:

Ի սոյն Թիւ Նոյ. ԺԳ. ին այս Թամուր փաշայս՝ Քաչալ աղջիկ և իւր էրիկ դէմ միմեանց կախեաց, և դուլ Իբրահիմի լաճ 'ի մէջ սօրօյին փօրօսլօմըշ արաց և իւր տուն և Սալիմ աֆանտու տուն այրեաց: Ի սոյն ամիսս, Ջրբաշենց Ցակոբ՝ գօհճօյին Սարգսի եղբայրն սպան, և Ջամմայ առին 'ի Նմանէ:

. Թիւ ՌՄԼ. Ցուլիսի Զ. Արքայն Վրաց Հերակլ եկն 'ի վերայ Երևանայ քաղաքի ԽՌ. զօրօք, և շատ աւերութիւն արաւ. և երկիրն բոլոր քանդեաց և այրեաց. վերջ ՃԾ. գիւղ քշեալ տարաւ ԼՌ. հո֊գիս, և ՃՌ. տաւարս համարով, որ տա֊սանորդն իւր էր ԺՌ. և ինքն 'ի մարդ֊

կանէ վերացեալ գնաց 'ի Թիֆլիզ։ Ի սոյն թիւ, 'ի քաղաքս Վան Ե. հոգի Թուրք 'ի գիշերի միում սպանին տաճիկ մի 'ի մէջ իւր տանն. և իմացեալ փաշայն ....։ (Գոչնաւէր)։

Ի սոյն թիւ, Յուլիսի ԺԶ. Սահակ Ախիջան մեծահամբաւ աղայի հետն գնացաք յԱղթամարայ Սուրբ Խաչն յուխտ և երկրրպագութիւն Աստուածաբնակ տաճարին և Սրբոյ Խաչին, Վարդավառի կիրակէն։

Ի սոյն օրս փոխեցաւ առ Աստուած պայծառ ջահն սուրբ Եկեղեցւոյ Սիմէօն Արքազան գերիմաստ և աստուածընտիր կաթողիկոսն, և նստաւ յաթոռ Տէր Ղուկաս Արքազան կաթողիկոսն. Տէր Աստուած կեանս երկանս պարգևեսցէ նմա։

Ի սոյն թիւ, Դեկտ. Իէ. մեծ և ահագին շարժ եղև 'ի քաղաքն Թաւրիզ, որ բոլոր քաղաք տապալեցաւ, և անթիւ մարդիկ մեռան և 'ի ներքոյ հողին մնացին, որ ականատեսքն ասացին թէ՝ Ահագին քաղաք իբրև բնական բլուր մի եղև, որ ամենևին քաղաքի նշմարանք ոչ երևէին. նաև շրջակայ Ղարաբաղ, այսինքն Խոյ, Ուրմի, Գուռնայի, Սալմաստ. և 'ի քաղաքս մեր Վան ևս շարժեցաւ, և ողորմութեամբն Աստուծոյ ոչինչ վնաս եղև։

———

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ

Կը փափագէի որ գրքուկիս մէջ խօսուած զանազան իրաց և նշանագրաց պատկերները, ձևերը դրուէին, որոցմով ընթերցողն կ'զբօսնու. և լաւապէս կ'ըմբռնէ 'ի մտի. սակայն զանոնք փորագրել և տպագրել տալը մեր ձեռնհասութենէն վեր գտանք։ Աստ կը դնենք միայն երաժշտական խազերն և անոնց անունները, որ մեր ժամագրքի և շարականաց մէջ գործածուած են, իբրև հնութիւն համարելով և իբրև հայկական նօթա, ձայնագրութիւն, ցոյց տալով թէ Արևելեան ազգաց մէջ յայսմ ևս մեր նախնիք առաջին հանդիսացած են եղանակները մարմնաւորել. որով և իրենց գեղեցիկ ճաշակ ու մտադրութիւն ունենալը ցոյց տուած են։ Հարկ չկայ քննութեան մտնել երաժըշտական գիտութեան, մանաւանդ թէ անգէտ եմ այնմ. և ոչ քննել կ'ուզեմ աստ թէ ո՞ր դարուն գիւտն է, և ո՞վ հեղինակած է. առ այս մենք ալ բանասիրաց հետ կ'սպասենք Գաղղիացի հայագէտ Պ. Ե. Տիւլօրիէի ձեռնարկած հետազօտութեանց արդեանց, որ անցեալ տարիէ հետէ սկսած է տեղեկութիւններ հաւաքել և դիտողութեան առնուլ։ Կրնան մեր ազգային երաժիշտներն ալ նպաստել

իրենց կողմէն յիշեալ գիտնականին, որոյ օգուտն ու պարծանք Հայութեան կը վերաբերի. ուստի և մեծ շնորհակալեաց արժանեօք կը յիշենք Պ. Ն. Տիւլօրիէն, յաջողութիւն մաղթելով իրեն, և յորդորելով որ ազգային ձայնագէտք աջակցին անոր։

Բաւական գործ մի էր մեր բարեկամ Պ. Եղիա Տնտեսեանին 1874 ին հրատարակած «Նկարագիր Երգոց Հայաստանեայց Եկեղեցւոյ» անուն գիրքը, յորում փորձառութեան, և հնութեանց ու աւանդութեանց դիմելով բազմակողմանի տեսութիւններ գրած և հնար եղածին չափ այս նիւթիս վրայ բացատրութիւններ տուած է։ Գործ՝ արժանի ուշադրութեան, և հեղինակն՝ քաջալերութեան։

Հայ ձայնագրերուն կամ խազերուն միայն պարզ ու հիմնաւոր համարուածներն կը նշանակենք։

° Սուղ, ʼ Շեշտ, ՝ Բութ, ✓ Փուշ,
• Ծունկ, ^ Խունճ, ‿ Տաշտ, ՛ Երկար,
Պարոյկ կամ Ոլորակ, Ջարկ, / Սուր,
Թուր, Խոսրովային, Հուհայ,
Փաթութ, Խաղ, Վերնախաղ,
Ներքնախաղ, Բենկորճ, Էկորճ,
Ձ Ձակորճ, Մ Մենկորճ։

# ՀԱՅՐԷՆԵԱՑ ԳԱՒԱՌԱԿԱՆ ԲԱՌԵՐ

Բառերու վրայ գրել՝ ամենէն ընդարձակ և դժուարին ճիւղն է գրելուն․ բայց մեք՝ ըստ մեր սովորութեան՝ և կարողութեան խիստ սահմանաւոր պիտի գրենք։

Պարզ և բնական է գիտնալ թէ մարդիկ՝ որոց ՚ի սկզբան մէկ գաւառ մէկ հայրենիք է եղած, միևնոյն բառերով խօսած են․ հարկ չկայ ապացուցանելու թէ մարդկային նախնական այդ եդեմային հայրենիք՝ Հայաստանն էր․ գոնէ Ս․ Գրոց անժխտելի վկայութեան հետ՝ հնախօսներն ալ Հայաստանի հին աւանդութեան կը համաձայնին՝ թէ Նոյի տապանն ՚ի Մասիս, Նոյի իջևանն ՚ի Նախիջևան, և Նոյի այգին յԱկոռին է եղած․ ահա այս վայրը բնակեցաւ, աճեցաւ, խօսեցաւ միաբան միաբարբառ մարդկութեան նորոգեալ դերդաստանն, ընթերցասիրաց յայտնի է Ցոյն իմաստասիրին Ողոմպիոդորոսայ յաւանդութենէ յառաջ բերած հին զրոյցք, զոր յիշէ մերս Խորենացին։

Իսկ երբ միութիւնն բաժանուեցաւ մարդոց, բազմացան, ցրուեցան, թող որ Աստուած ՚ի պատիժ մտաց ամբարտաւանութեան՝ խառնակեց լեզուները, այլ և բնական էր՝ որ գնալով ամեն ոք ըստ կամս սրտից իւրեանց ՚ի զանազան վայրս և գաւառս, վիճակելով տարբեր կենցաղավարութեան, և, որովհետև, ընտանեկան և Երկրագործական պարզկեան-

քի սահմանը փոխեցին բռնաւորութեանց, իշխանութեանց, հարկ եղաւ պերճանքներ աւելնալ, պէտքերը շատնալ, գլխաւորաբար շինութեանց, վայելչութեանց, և սպանութեանց պէտքեր, ուստի լեզուի սահմանն ալ փոխուեցաւ, և ըստ հանգամանաց մարդկանց՝ ընդարձակեցաւ։

Իրաց այս կերպարանք մինչև ցայսօր կ՚երևի և ՚ի մեզ։ Նախրորդ մը կամ խաշնարած մը ո՛րքան գաղափարի ծանօթութիւն ունի, ի՛նչ տեսած կամ լսած է, անոնց վերաբերեալ բառերը միայն գիտէ։ Հօվուին՝ ինչ ազգ է կը լինի թող լինի, ի՛նչ լեզուով կը խօսիս, խօսէ, պալատի մը շէնքին կամ կահաւորեալ սենեկի մը կամ բազմամթեր վաճառատան մը նկարագիրն ըրէ, անկարելի պիտի լինի քեզ բառեր գտնալու, որպէս զի ըսածդ հասկըցնես. մինչև անոր ծանօթ բառերով գոնէ նմանութիւնները չտաս. զր, գարնան, արեւու, բոլորակ լուսնի, աստեղաց, ծաղկանց, ջինջ աղբիւրի մը, գառին եղջերին, եզան աչքերուն, ձիու բաշերուն, սառոյցքի, ձեան, եւն։ Ի՞նչ բառերով պիտի բացատրես Եւրոպական ձևով հագուած կանանց զարդերը Հայաստանցի տանտիկնոջ մը, անշուշտ ագլօրի կատարին պիտի նմանցընես շափղան. մաքիի դմակին նմանցընես՝ ղըշլըղը, եւն. խեղճը այդ կեանքէն ծանօթութիւն չունի, որ բառերն ունենայ։

Փարիզի խոհարարները գուցէ քանի մը հազար բառ ունին միայն իրենց արուեստին վերաբերեալ. բայց Հայաստանցին քանի մը տեսակ մսեղէն բանջարով կե-

թակուրներ և կաթն ու մածուն , սերն ու կարագ , թանն ու պանիրը գիտէ ։ Դիր դու Աղէքսանդր Տիւմայի վիպասանութիւններն, կամ Հիւկոյի Թշուառները՝ իմ աչքիս առջև , կը կարդամ ծայրէ 'ի ծայր · բայց կը հասկնամ միայն այն մասերը՝ որոց վրայ գաղափար ունիմ ։ Այո , Թշուառներու մէջ կը հասկնամ Ժան Վալժանի վիճակը , անոր անցքերը և արկածները , քանզի քաջադէպ է յաճախ մեր չուրջը տեսնուածին և կատարուածին · կ'զմայլիմ , քանզի կը հասկնամ Պիէնվընու եպիսկոպոսին սրտով և արդեամբ ողորմածին , մարդասիրին վարքն ու արարքն · նորա պատկերն Աւետարանի մէջը կայ · Եկեղեցին շարունակ ցոյց տուած է անոր նման առաքինիները · և ոչ միայն 'ի դասուց եկեղեցւոյ պաշտօնէից , այլ և Թագակրաց ։ Հայ էր Աշոտ Ողորմածն ։ Իսկ փարիզի բաներու , պալատներու , ականներու նկարագիրէն բան մը չեմ հասկնար ։

Լեզուի մը բառերը ուրեմն տեղեաց և կենցաղավարութեանց համեմատ շատ կամ քիչ են ։ Գեղացիներն ալ անթուելի բուսոց տեսակներ և անուններըր գիտեն , որոց վրայ երբէք գաղափար չունի պանքեռն կամ սեղանաւորն ։ Բժիշկն իրեն բառերն ու բառարանն ունի · աստղագէտն իրեն , դերձակն իրեն , մեքենագործն իրեն , եւն ։

Մանուկ տղաքները երբ զգալ կ'զգան , կը ժպտին , կամ կը վշտանան , անյօդ ձայն մը կ'արձակեն . հետզհետէ «մամա , բաբա , բու , բու , օխ , կըխ , ճէճէր , ճիճի ,

տայր . . . . . . . . ֆլաւ կերցնելով, խալմ տալով, զօրով բերել ետ ։ Ի սոյն թիւ, Մ. Թովմայ աղէն առ Աստուած փոխեցաւ։ Ի սոյն թիւ Թօփչոնց Օմար աղայն՝ և Ջամուշչու լաճեր կռուան . Օմար աղէն գնաց վէր Ջամուշչոնց տան, քարով հարին սպանեցին Մինդան օղլի՝ Օսման էլ հետն ։

Թիւ ՌՄԻԴ. Օգոս. ԻԱ. վանեցի Թամուր փաշայն եկն վան ծառուք, և սկսաւ անփոխարէն ողորմութիւն հաւաքել 'ի Տաճկաց ։ Սա սպան զԴաւուտ աղի լաճն Օսման աղէն և զՍօլբաթ օղլին . Օսման աղէն 'ի մէջ խօշնայէն խեղդեցին, Սուլէյմանն աղէն բերդն սատկեցուցին . . . . ։

Թիւ ՌՄԻԵ. Մայիսի ԻԴ. Ահմատբէգ և Գափուջի բաշին գնացին յՍտամբօլ ։ Ի սոյն թիւ եկաւ մէջ խօշնայ ԺԻ. ժէօօայ Թամուր փաշային ։ Ի սոյն. Սեպ. Ջ. օրին Ախիջան մեծափառ իշխանաց իշխան գնաց Ստամբօլ։

ՌՄԻԶ. Սեպ. Ա. Ախիջան բարետոհմ և քրիստոսասէր աղայն եկն յՍտամբօլայ. Թօփչոնց Ռասուլ կախեց փաշէն ։

ՌՄԻԸ. Մայիսի ԻԸ. Այս Թամուր փաշայս մեծ սաֆար արար 'ի վերայ Բաղիշոյ, և հետն ունէր Մշոյ Մաղսուդ փաշայն. և գնաց անդ նստաւ ԺԻ. օր. երկիրն ամէն ռայ եկին . Նաբուդ բէգ՝ որ 'ի մէջ բերդին էր՝ ԻԳ. քէսայ ստակ տուաւ

և ապա փախեաւ. և կալեալ Ը. ոգի մեծամեծաց 'ի Մուշ առաքեաց զԸնձըլըզ, և Բ. սպան. և առեալ բազում հարկս մեծաւ յաղթութեամբ եմուտ վան:

Այս Թամուր փաշայն գշափին ճողողէ փող, ոՃ·ոջնէջէ քարեր ամէն ղամղալածիշ արաց:

Ի սոյն թիւ, Նոյեմբերի ամսին գնաց Աշքաւկու Նստած էն (քրդաց) եհար. Գ. ԴՌ. ոչխար եբեր տեղս. Չճոախոտըոյ Օսման աֆանդին կախեց, ապա երեք էլ ուրիշ տաճկի կին եդ 'ի նաւ քշեց. Ղաբասաֆար օղլու Մօրուքն կտրել ետ, որ ասէ ժելէ+ էր:

Ի սոյն թիւ, Դեկտեմբեր. Այս Թամուր փաշայս՝ Մխիթարենց Բաքանիկն Աբով, որ գիշեր կոր Գագկէ աղջկայ տուն բռնեցին Է. անուանի կնիկ ետ դնել 'ի նաւ քշել, որ են այսոքիկ. կոր Գագկէ աղջիկ, քուլխանչու Եղիսէն, Խանթուման, Քաչալ աղջիկ, Օդաբաշու կնիկ, Ղազանչու կնիկ, Նորշինցու կնիկ, պըղծեալք:

Թիւ ՌՄԻԹ. Յունվար ԺԱ. վասն ծովացեալ մեղաց մերոց յայտնեցաւ Աստուածային-խրատապատժութիւն, զի Սամարջոնց Աբրահամու որդին Շայենն, որ նոր հարսնիս էր արած ԺԲ. կամ Ի. օր, քանի բեռ ճոթուփ էր առած որ Արզըրում տանէր, յանկարծակի կէս օրէն ետք մին բեռ

ալաւլըւմըշ եղև մէկ լիք կարաս ճաւրաւփ հետն. Աստուած Նշանց չիտայ, մերդկանց չամ միաս ետ իւրեանց և երկրին, զի յանկած թօթափել բոլոր տունն քանի դրկըցն մնամ դժաշտ եղև, և Ե. հոգի մնացին 'ի Ներքոյ հողին, և բազում ինչք և ամպ-րանք ցիր ու ցան եղեն 'ի Ներքոյ հողին և յայլ տեղիս. լուաք թէ գերան մի ձգեալ էր 'ի տաճկաց գօւերն, և խախտեալ դրանց, տանց և ֆէնձէրայից ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մինչ զի Իոտալայ ֆա-ֆոսն և Թավրիզու դուռն և բոլոր չրջակայ մահլէֆն Նաղլըշքամայէ . . . . . և երդոց ղու-ղուայէ ամէն 'ի վայր թափեցան, և Նոյն պահ երկրի մեծաւորք՝ սաղ աղասին, սօլ աղասին ; Ահմէտ բէգ, բոլոր Հայք և Տաճ-կիկք եկին և սկսան առժամայն հող փո-րել. լինի թէ ներքոյ մնացեալք ողջ գտա-նիցեն. ջանք տալով գտին զնորահարս մէ տղայ մի փոքր 'ի գրկին, իբր թէ կամե-ցեալ էր փախչիլ և անդէն տուն եկեալ էր 'ի վերայ, և մեռեալ էին երկոքին. և միւս օր հանին Գ. մեռեալ, որ էին Բ. մեծ տղայ Ժէ. Ի. տարւոյ, և աղջիկ մի. և յետ Բ. և Գ. աւուրց որք փորէին զհողն այրեցեալ գերանք և ինչք դուրս հանէին ամէն ոչընչացեալ և այրեցեալ, և այն էր զարմանք, որ հիմն 'ի վեր էր ելեալ և վերն 'ի

յանդունդ իջեալ. և այնպէս խառն՚ի խուռն էր, որ ոք չկարէ զկերպ բանին գրել։

Ի սոյն թիւ Ստամպօլայ ծովն պաղեցաւ, որ ասի Բօղազիչի, զի կարի ցուրտ եղև. Ջըզիրայ և ՚ի Բաղդատ մեծամեծ ձեանք եկին, որ ՚ի վաղուց հետէ չէր եղեալ։ Ի սոյն՝ Ապրիլին, Քարիմ խանն մեռաւ։ Սարդարի լաճն սպանին։ Ի սոյն թիւ, Յուլիս ԺԲ. օրին Նասիպ աֆանդիի ձնհէօն գէլէր ֆուրուլամիշ արին։ Յուլիսի ԺԳ. օրին այս Թամուր փաշայս գնաց ՚ի վերայ Ջուլամէրկու Աւդուլլահ բէգին, ԻԳ. քէսայ ստակ ետ, լաճն յղեաց մօտն, և Լ. աւուր վերայ դարձաւ և եկն ՚ի քաղաքս։

Ի սոյն թիւ Նոյ. ԺԳ. ին այս Թամուր փաշայս՝ Քաչալ աղջիկ և իւր էրիկ դէմ միմեանց կախեաց, և դուլի Իբրահիմի լաճ ՚ի մէջ տուրայլին ֆուրուլամիշ արաց և իւր տուն և Սալիմ աֆանտու տուն այրեաց։ Ի սոյն ամիս, Ջրբաշենց Յակոբ՝ ֆոհճաձի Սարգսի եղբայրն սպան, և Ղուռմայ առին ՚ի Նմանէ։

Թիւ ՌՄԼ. Յուլիսի Զ. Արքայն Վրաց Հերակլ եկն ՚ի վերայ Երևանայ քաղաքի ԽՌ. զօրօք, և շատ աւերութիւն արաւ. և երկիրն բոլոր քանդեաց և այրեաց. վերջ ՃԾ. գիւղ քշեալ տարաւ ԼՌ. հոգիս, և ՃՌ. տաւարս համարով, որ տասանորդն իւր էր ԺՌ. և ինքն ՚ի մարդ-

կանէ վերացեալ գնաց 'ի Թիֆլիզ։ Ի սոյն թիւ, 'ի քաղաքս վան Ն· հոգի թուրք 'ի գիշերի միում սպանին տաճիկ մի 'ի մէջ իւր տանն․ և իմացեալ փաշայն . . . . ։ (Գոկասեբ)։

Ի սոյն թիւ, Յուլիսի ԺԶ· Սահակ Ախիջան մեծահամբաւ աղայի հետն գնացաք յԱղթամարայ Սուրբ Խաչն յուխտ և երկրպագութիւն Աստուածաբնակ տաճարին և Սրբոյ Խաչին, վարդավառի կիրակէն։

Ի սոյն օրս փոխեցաւ առ Աստուած պայծառ ջահն սուրբ Եկեղեցւոյ Սիմէօն Սրբազան գերիմաստ և աստուածընտիր կաթողիկոսն, և նստաւ յաթոռ Տէր Ղուկաս Սրբազան կաթողիկոսն․ Տէր Աստուած կեանս երկանս պարգևեսցէ նմա։

Ի սոյն թիւ, Դեկտ· ԻԷ· մեծ և ահագին շարժ եղև 'ի քաղաքն Թավրիզ, որ բոլոր քաղաք տապալեցաւ, և անթիւ մարդիկ մեռան և 'ի ներքոյ հողին մնացին, որ ականատեսքն ասացին թէ՝ Ահագին քաղաք իբրև բնական բլուր մի եղև, որ ամենևին քաղաքի նշմարանք ոչ երևէին․ նաև շրջակայ Ղարադաղ, այսինքն Խոյ, Ուրմի, Գուռնայի, Սալմաստ․ և 'ի քաղաքս մեր վան ևս շարժեցաւ, և ողորմութեամբն Աստուծոյ ոչինչ վնաս եղև։

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ

Կը փափագէի որ գրքուկիս մէջ խօսուած զանազան իրաց և նշանագրաց պատկերները, ձևերը դրուէին, որոցմով ընթերցողն կ'զբօսնու. և լաւապէս կ'ըմբռնէ 'ի մտի • սակայն զանոնք փորագրել և տպագրել տալը մեր ձեռնհասութենէն վեր գտանք ։ Աստ կը դնենք միայն երաժշտական խազերն և անոնց անունները, որ մեր ժամագրքի և շարականաց մէջ գործածուած են, իբրև հնութիւն համարելով և իբրև հայկական նօթա, ձայնագրութիւն, ցոյց տալով թէ Արևելեան ազգաց մէջ յայտնի եւս մեր նախնիք առաջին հանդիսացած են եղանակները մարմնաւորել • որով և իրենց գեղեցիկ ճաշակ ու մտադրութիւն ունենալը ցոյց տուած են ։ Հարկ չկայ քննութեան մտնել երաժըշտական գիտութեան, մանաւանդ թէ անգէտ եմ այնմ • և ոչ քննել կ'ուզեմ աստ թէ ո՞ր դարուն գիւտն է, և ո՞վ հեղինակած է • առ այս մենք ալ բանասիրաց հետ կ'սպասենք Գաղղիացի հայագէտ Պ. Ե. Տիւլօրիէի ձեռնարկած հետազօտութեանց արդեանց, որ անցեալ տարիէ հետէ սկսած է տեղեկութիւններ հաւաքել և դիտողութեան առնուլ ։ Կրնան մեր ազգային երաժիշտներն ա՛լ նպաստել

իրենց կողմէն յիշեալ գիտնականին, որոյ օգուտն ու պարծանք Հայութեան կը վերաբերի. ուստի և մեծ շնորհակալեաց արժանեօք կը յիշենք Պ. Ե. Տիւլօրիէն, յաջողութիւն մաղթելով իրեն, և յորդորելով որ ազգային ձայնագէտք աջակցին անոր։

Բաւական գործ մի էր մեր բարեկամ Պ. Եղիա Տնտեսեանին 1874ին հրատարակած «Նկարագիր Երգոց Հայաստանեայց Եկեղեցւոյ» անուն գիրքը, յորում փորձառութեան, և հնութեանց ու աւանդութեանց դիմելով բազմակողմանի տեսութիւններ գրած և հնար եղածին չափ այս նիւթիս վրայ բացատրութիւններ տուած է։ Գործ՝ արժանի ուշադրութեան, և հեղինակն՝ քաջալերութեան։

Հայ ձայնագրերուն կամ խազերուն միայն պարզ ու հիմնաւոր համարուածներն կը նշանակենք։

° Սուղ, ՛ ̍ Շեշտ, ՝ Բութ, ✓ Փուշ,
° Ծունկ, ՞ Խունճ, ‿ Տաշտ, ⁄ Երկար,
ᑭ Պարոյկ կամ Ոլորակ, ✓ Ջարկ, / Սուր,
/ Թուր, ⌐ ~ Խոսրովայեն, ỽ Հուհայ,
ʊ Փաթութ, ʷ Խաղ, ⌐ʷ Վերնախաղ,
ʷ/ Ներքնախաղ, ⁼ Բենկորճ, ~ Էկորճ,
Ճ Ջակորճ, ⅃ Մենկորճ։

# ՀԱՅՐԵՆԵԱՑ ԳԱՒԱՌԱԿԱՆ ԲԱՌԵՐ

Բառերու վրայ գրել՝ ամենէն ընդարձակ և դժուարին ճիւղն է գրելուն. բայց մեք՝ ըստ մեր սովորութեան՝ և կարողութեան խիստ սահմանաւոր պիտի գրենք։

Պարզ և բնական է գիտնալ թէ մարդիկ՝ որոց 'ի սկզբան մէկ գաւառ մէկ հայրենիք է եղած, միևնոյն բառերով խօսած են. հարկ չկայ ապացուցանելու թէ մարդկային նախնական այդ եդեմային հայրենիք՝ Հայաստանն էր. գոնէ Ս. Գրոց անժխտելի վկայութեան հետ՝ հնախօսներն ալ Հայաստանի հին աւանդութեան կը համաձայնին՝ թէ Նոյի տապանն 'ի Մասիս, Նոյի իջևանն 'ի Նախիջևան, և Նոյի այգին յԱկոռին է եղած. ահա այս վայրը բնակեցաւ, աճեցաւ, խօսեցաւ միաբան միաբարբառ մարդկութեան նորոգեալ դերդաստանն։ Ընթերցասիրաց յայտնի է Ցոյն իմաստասիրին Ողոմպիոդորոսայ յաւանդութենէ յառաջ բերած հին զրոյցք, զոր յիշէ մերս Խորենացին։

Իսկ երբ միութիւնն բաժանուեցաւ մարդոց, բազմացան, ցրուեցան, թող որ Աստուած 'ի պատիժ մտաց ամբարտաւանութեան՝ խառնակեց լեզուները, այլ և բնական էր՝ որ գնալով ամեն ոք ըստ կամս սրտից իւրեանց 'ի զանազան վայրս և գաւառս, վիճակելով տարբեր կենցաղավարութեան, և, որովհետև, ընտանեկան և երկրագործական պարզկեան-

քի սահմանը փոխեցին բռնաւորութեանց, իշխանութեանց, հարկ եղաւ պերճանքներ աւելնալ, պէտքերը շատնալ, գլխաւորաբար շինութեանց, վայելչութեանց, և սպանութեանց պէտքեր, ուստի լեզուի սահմանն ևս փոխուեցաւ, և ըստ հանգամանաց մարդկանց՝ ընդարձակեցաւ։

Իրաց այս կերպարանք մինչև ցայսօր կ'երևի և 'ի մեզ։ Նախրորդ մը կամ խաշնարած մը ո՛րքան գաղափարի ծանօթութիւն ունի, ի՛նչ տեսած կամ լսած է, անոնց վերաբերեալ բառերը միայն գիտէ։ Հովուին՝ ինչ․ազգ է կը լինի թող լինի, ի՛նչ լեզուով կը խօսի, խօսէ, պալատի մը շէնքին կամ կահաւորեալ սենեկի մը կամ բազմամթեր վաճառատան մը նկարագիրն ըրէ, անկարելի պիտի լինի քեզ բառեր գտնալու, որպէս զի ըսածդ հասկըցնես. մինչև անոր ծանօթ բառերով գոնէ նմանութիւնները չտաս. գր, գարնան, արեւու, բոլորակ լուսնի, աստեղաց, ծաղկանց, ջինջ աղբիւրի մը, գառին եղջերին, եզան աչքերուն, ձիու բաշերուն, սառոյցքի, ձեան, եւն։ Ի՞նչ բառերով պիտի բացատրես Եւրոպական ձևով հագուած կանանց զարդերը Հայաստանցի տանտիկնոջ մը, անշուշտ ագլօրի կատարին պիտի նմանցընես շափղան. մաքիի դմակին նմանցընես՝ ղըչլըղը, եւն. խեղճը այդ կեանքէն ծանօթութիւն չունի, որ բառերն ունենայ։

Փարիզի խոհարարները գուցէ քանի մը հազար բառ ունին միայն իրենց արուեստին վերաբերեալ. բայց Հայաստանցին քանի մը տեսակ մսեղէն բանջարով կե-

թակուրներ և կաթն ու մածուն , սերն ու կարագ , թանն ու պանիրը գիտէ ։ Դիր դու Աղէքսանդր Տիւմայի վիպասանութիւններն, կամ Հիւկոյի Թշուառները՝ իմ աչքիս առջև , կը կարդամ ծայրէ 'ի ծայր . բայց կը հասկնամ միայն այն մասերը՝ որոց վրայ գաղափար ունիմ ։ Այո , Թշուառներու մէջ կը հասկնամ Ժան Վալժանի վիճակը, անոր անցքերը և արկածները , քանզի քաջադէպ է յաճախ մեր շուրջը տեսնուածին և կատարուածին . կ'զմայլիմ, քանզի կը հասկնամ Պիէնվընու եպիսկոպոսին սրտով և արդեամբ ողորմածին, մարդասիրին վարքն ու արարքն . Նորա պատկերն Աւետարանի մէջը կայ . Եկեղեցին շարունակ ցոյց տուած է անոր նման առաքինիները . և ոչ միայն 'ի դասուց եկեղեցւոյ պաշտօնէից, այլ և թագակրաց ։ Հայ էր Աշոտ Ողորմածն ։ Իսկ Փարիզի բանտերու , պալատներու , ականներու նկարագիրէն բան մը չեմ հասկնար ։

Լեզուի մը բառերը ուրեմն տեղեաց և կենցաղավարութեանց համեմատ շատ կամ քիչ են ։ Գեղացիներն այլ անթուելի բուսոց տեսակներ և անուններ գիտեն , որոց վրայ երբէք գաղափար չունի պանքեռն կամ սեղանաւորն ։ Բժիշկն իրեն բառերն ու բառարանն ունի . աստղագէտն իրեն , դերձակն իրեն , մեքենագործն իրեն , եւն ։

Մանուկ տղաքները երբ զգալ կ'զգան , կը ժպտին , կամ կը վշտանան , անյօդ ձայն մը կ'արձակեն . հետզհետէ «մամա , բաբա , բու , բռ , օխ , կըխ , ճէճէր , ճիճի ,

հօլօ հօլօ, բլէ բլէ»․ և այլ քանի մը այսպիսի միավանկ, երկվանկ բառերով իրենց բոլոր ըսելիքը և պէտքերը կը հասկցնեն․ լեզու մը, զոր ամեն ազգի մանուկը միապէս կ'արտասանէ, և մի և նոյն բան կը կը հասկցնէ ։ Անմեղ մանկիկը՝ դեռ Սենաարին դաշտը տեսած չէ, դեռ գաղափարաց Բաբիլոնին մէջ մտած չէ ։

Եթէ միտ դնենք, ահաւասիկ ամէն ազգ միօրինակ բառեր կը գործածէ, զի, երբ հաւ մը կը կանչէ՝ «ճու ճու ճու» կ'ըսէ, վանելուն «քշէ քշէ»․ շուն մը կանչելուն «կուճու կուճու» կ'ըսէ, վանելուն «օշտ օշտ»․ կատուն կանչելուն «փշի փշի», վանելուն «փըշտ փըշտ»․ կով և եզն ջարելուն «օհօ օհօ»․ ձինը վարելուն «դէհ դէհ»․ էշը՝ «չու չու», ևն ։ Սոյնպէս միօրինակ են գրեթէ սրտի և կրից արտայայտիչ բառերը, այսինքն ձայնարկութիւնքն․ ցաւոց նշանակութիւն կուտայ ամէն ազգի մէջ «Ա՛յ, վա՛յ, եամա՛ն, աւա՜ղ, ո՜վ օֆ, ա՛հ, վա՛հ, ո՛ւհ, բո՛ւհ», ևն․ զարմացման՝ «օ՛, է՛,» ևն․ ուրախութեան՝ «օ՛խ, վա՛շ, օխա՛շ»․ և այլն ։ Ուրեմն ընդհանրապէս կիրք յայտնող բառեր ազգային չեն կարող լինել, այլ մարդկային են․ Թէպէտ և բառից կարգ չեն դասեր քերթողք ձայնարկութիւնները, բայց քանի որ գաղափար մը կը յայտնեն, իսկապէս բառ են․ միայն թէ՝ 'ի զանազան ազգս, մինչև իսկ 'ի զանազան անհատս, տարբեր ձևով կ'արտասանին ։

Գալով մեր Հայրենական գաւառական բառերուն, անհնարին է որ մէկը կարող

լինի Հայաստանի ամեն գաւառաց բնակչաց բերանը գործածուած բառերը հաւաքել, որոց կարեւորութիւնը արդէն շատերը սկըսեր են զգալ. և հասկցած են թէ մեր գրաբառ մատեաններու մէջ գործածուած ու բառարաններու մէջ զետեղուած բառերը հերիք չեն ազգի մը լեզուի ամբողջութեան և կատարելութեան պէտքը լեցընել. թէպէտ դիւրութիւն կայ մեր լեզուի կանոններու մէջ նոր բառեր յօրինելու, նոր բարդութիւն կազմելու, բայց ժողովրդեան ու հնութեան շինածն աւելի բնական է: Օրինակի համար ըսենք. ժողովուրդ կըսէ «բանթող», գրականութիւն կ՚ըսէ «գործադուլ»: Ժողովուրդ ամեն օր նոր բան մը տեսած կամ լսած ժամանակ, նոր բառ մը կ՚ստեղծէ. շուկայի մէջ, ընկերութեան մէջ, գեղերու մէջ մտիր և փորձէ. մանաւանդ զուարճաբանութեանց մէջ:

Ըստ մեզ՝ գաւառական բառերու հաւաքումն մի միայն գաւառական ժողովըրդական լեզուներով զանազան գրուածներ հրատարակել պէտք է. և այն հրատարակութեանց մէջ գործածուած բառերը հաւաքել և նշանակութիւնը դնել՝ կամ առընթեր կամ վերջընթեր: Մերձաւոր տարիներս սկսան այս կերպ գրութիւններ երևնալ Հայ հրապարակի վրայ, որոց ոմանց անուններ և գործքեր յիշած ենք Գրոց Բրոցին և Մանանայիս մէջ (1):

---

(1) Յիշել պէտք է նաև «Մուշեղ և Կայծ-նիկէ» անուն վէպը, զոր յօրինեց և հրատարակեց

Գիտնական Պ. Քերովբէ Պատկանեանին գրական գործքերէն երեք կտոր ընդունելու պատիւ ունեցայ Մեծ. հեղինակին կողմէն. որոց նիւթն է Հայոց մի քանի գաւառաբնակ ժողովրդոց բերանացի զրոյցներ, խաղեր, խօսակցութիւններ, եւ. և նոցա մէջ գտնուած բառերու ձևեր, կազմութիւններ և նշանակութիւններ, որոց վրայ ռուսերէն լեզուաւ իմաստասիրական տեսութիւններ և ծանօթութիւններ գրած է իբրև լեզուաբան և քննաբան Արևելեան հին և մայր լեզուաց. 'ի կարգս վերոյգրելոց զետեղած է նաև մեր Գրոց ու Բրոցէն ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹ կամ ՄՀԵՐԻ ԴՈՒՌՆ վէպը, Մշեցւոց լեզուաւ։ Այսպիսի բարձր և փորձ միտքերու գործ է մեր ձեռնարկած կամ փափագածն 'ի գլուխ հանել. և մեզ ուրիշ բան չենք կրնար ընել, այլ միայն գոնէ գիտնականաց ծանօթացնելու առարկայ

---

Մաշտոցի Պ. Յ. Մաթէոսեան 'ի Կ. Պօլիս, 1874։

Նաև «Անխօս մարգարիտ» անուն ոտանաւոր մի- պագրութիւնը, զոր այս տարի յօրինեց և հրատարակեց Տ. Ղևոնդ քահանայ Շիրայեանց Վանեցի. և որոյ երկու գործ ևս կը գտնուի ձեռագիր, բառական հետազօտական և ժողովրդական երգերով և ոճով յօրինուած։

Իսկ «Ռուսաց պանդուխտ» անուն քերթը և ողբային գրքոյկն՝ յօրինեալ 'ի Պ. Տիգրանայ Ամիրճանեան և տպեալ 'ի Վառնա 1873, արդարև հեղինակին պատիւ բերող և ամէն պանդուխտ հայուն օգտակար գործ է։

կը ներկայացնենք մեր աշխատասիրութիւնը․ ահա այս նպատակաւ է որ Մանանայիս մէջ բազմատեսակ նիւթեր մթերեցինք, որք զանազան ճաշակ կ՚ընծայեն ընթերցողաց։

Աւելորդ կը համարիմ դիտել տալ ընթերցողին բառերու կազմութեան և հալովմանց տարբեր ձևեր, որ ինքնին յայտնի են․ նոյնպէս և շատ մը բառերէն՝ որոց երբ բացատրութիւն առընթեր դրած եմ Մանանայիս մէջ, չդրի բառարանիս կարգին։ Հարկ է նաև խոստովանել թէ անհուն բառեր կը մնան տակաւին գաւառական, զորս հետազօտել և ձեռք բերել պէտք է․ մեք մերովսան պիտի շարունակենք։

---

# ԲԱՌԱՐԱՆ

## Ա․

Ադամամութ․ Գիշերային թանձր խաւար։

Ածիկ․ Մշ․ Գարնցան ցորեն ջրի մէջ դրած կը խմորեն․ և ինքնին քաղցր համ մը կ՚ունենայ, իբրև քաղցու ալիւրով շաղաղած։ իսկ ըստ Վանեցւոց՝ արտի մէջ կամ շտեմարանի մէջ խոնաւութիւն առած չոր ցորենի հատիկ։

---

Մշ․ կը նշանակէ՝ ըստ Մշեցւոց։
Վն․ » ըստ Վանեցւոց։

Ակահ· Արթո՛ւն ։ Ակհել· զարթնուլ կամ իրազեկ լինել։

Ականջքաշուկ· Խաղ մի է մանկանց· մէկը միրգ կը ձգէ գետին, որոյ վրայ կը ժողվի մանկտին· ով որ խլէ զայն, անոր ականջներ կը քաշեն, մինչև վար ձգէ· իսկ եթէ առնողն վազէ և ձեռք տայ զայն ձգողին, միրգն իրեն կը մնայ, և ինքն կ'ազատի ականջները քաշել տալէն ։

Ակն· Ակն մատանւոյ· ակն աղբեր· ակն թոնիրի, զոր կը բանան հանդէպ դրան, յորմէ հողմ կ'առնու թոնիր և կ'արծարծի կրակն ։

Ակնջկլայ· Ականջ կալնուլ· եթէ աւետիս մը տան, նախ ականջներէն կը բռնեն մինչև բան մը խոստանայ, ապա ըսելիքը կ'ըսեն ։ Ուստի աւետաւորք նախ կը պահանջեն «Ակնջկլէս ի՞նչ է»· ականջ կալնուլ ի՞նչ է ։

Ակնջփորուկ· վ. ն. փոքրիկ որդ մը նման թրթուրի, որ 'ի դաշտի և 'ի պարտիզի բնակչաց ծանօթ է· մարդու ականջը կը մտնէ, որոյ վրայ ձէթ կաթեցնելով կը մեռցնեն ։ Մախաս պէօճէյի ։

Ակուկայ· վ. ն. թոնրի ական բերան կը դընեն՝ հողէ, շինած 'ի ձև Ո ։

Ակռկել· վ. ն. կռուել, արգիլուել։ կանգառնել։

Ակրաժաժիկ· Քիչ մը ուտելիք, որ հազիւ ակրաներ շարժէ· ևս գործածեն զայս՝ կաշառք բառին մէջ ։

Ահա՛նջ· Ահա, ահա տես· ևս իբր զարմացական նշան ։

Աղուէս· Մչ. Հարսնածէն առաջ ընծաներ

և ուտելիք ու խմելիք ղրկել փեսայէն հարսին տունը ։

Աղուն. վ. ն. Ցորեն՝ 'ի ջրաղաց տարած աղալու համար ։

Աղուր. վ. ն. Սայլի ուղի՝ երկրագործաց ։

Ագօթրան. Արշալոյս. ևս՝ արևելեան կողմն։

Ամբրոց. Ամրոցաձև չէնք գիւղացւոց 'ի թըրիքէ, որոյ մէջ կը լեցնեն վառելու ցան, փթիր, պտտուր, ևն ։

Ամիշկ. Խոտ կամ առոյտ, զոր միանգամ հնձելէն զկնի, կրկին կը ջրեն, կը բուսնի, և կրկին կը հնձեն ։

Ամռնուկ. Ամարային միրգ, կամ այլ ինչ ։

Անանա. վ. ն. Կնոջ անուն է. և իբր անանաս՝ անմահացուցիչ բոյս մի կամ խոտ ։

Անսնակ. վ. ն. Ծիրանի գօտի ։ Գուցէ՝ Աղեղնակ ։

Անբաղդի. վ. ն. Աշխարհական անձ. կարգաւոր չեղող։

Անգոթք. վ. ն. Ագահ։

Անդար հազար. վ. ն. Անթիւ անհամար ։

Անեղ. վ. ն. Աղեղն նետ նետելուն. և աղեղն՝ որով բամբակ գզեն ։

Անթոլկել. Արմունկով հրել, կամ բռամբ նետել բան մը ։

Անթրոց. փայտ մը, որով թոնիրի կրակներ կը խառնեն ։

Անճկուտոր. Նաղելով քալող, ճօճացող։

Անղալատ. Անսխալ։ Եւս՝ չքնաղ, անարատ ։ Եւս՝ անուն կանանց ։

Անչամ. վ. ն. Անչափ ։

Անտիւոր. վ. ն. Տան անտիւոր, կին, ամուսին ։

Աշարայ. Նոր բուսած արտի կանանչը ։

Աշնցան. Աշնանէ ցանուած ցորենները։
Աշիշ ուլնիկ. վն. Կապոյտ ուլունք, զոր կարեն մանկանց զգեստուց վրայ, որպէս զի չար աչքէ ազատ մնայ։
Ապուկել. վն. Յարձակում ընել բանիւ, նախատել, գր., «Ապուկաւ Պօղոսի գլուխ»։
Ապունեկ. Թռչուն մի փոքր, սեւագոյն։
Առշկան. վն. Բոք, որով բուրդ և բամբակ ոլորեն։
Աջող մաջող. վն. Գոգ մագոգ, կամ դաճաճ մաճաճ. որոյ նկատմամբ կ՚ըսեն թէ ազգ մի է մարդկան մէկ թիզ հասակաւ, և թէ աշխարհիս վերջ մարդիկ այնքան կը պզտիկնան, որ ասղան ծակէն մտնեն ելնեն ու ըսեն. փառք քեզ, Աստուած, ի՞նչ մեծ դարգահ է։ Եթէ այսպէս, Աջող Մաջողներ հսկայք և տիտանք կը լինին։
Առկող. Ջառիկողմն։
Աստըւոր. վն. Այս աշխարհ, երկրաւոր։
Ավա. Մչ. Նման. գր. «շան ավա կը հաչէ»։
Ավա՛ր. Խիստ մեծ. զարմաց. ձայնարկ.։
Արապահ. վն. Ցանեաց շրջապատ՝ բարձր որմեր, իբրև պատնէշ կամ պարիսպ։
Արևահաս. վն. Արևու ջերմով հասունցած խաղող։
Արևերես. վն. Արեգդէմ վայր։
Արևպատ. Մչ. Արևմուտ։
Արջաբլօ. վն. Ուրուական, որոյ անունով մանուկներ կը վախցնեն։
Աֆսաթաթիկ. վն. Մանկան մը ձեռներուն վրայ ինալով չորքոտանւոյ ձագի մը պէս քալել. յափափիթերս։

## Բ.

Բաբօ. Վն. Բաբէ՛. իբր կոչական :

Բադիլ, կամ Պատիլ. Մշ. Իյնալ: Գուցէ իյնալու «բա՛դ» ձայնէն շինուած :

Բաժ. Վն. Հասակ, Բոյ, երկայնութիւն :

Բալան բալան. Բարդ 'ի բարդ ծուխ, բոց, ամպ, փոշի, եւն :

Բալաք. Անասնոց խատուտիկն, եւս բարատութիւն :

Բան. Գործ :

Բանթողս. Վն. Գործաւորաց կամ մշակաց գործելէ դադարիլ:

Բանձրանց. Վն. Եկեղեցւոյ Ս. հաց, մասն :

Բաչ. Անասնոց ճակտի վրայ եղած ճերմակ նշան : Եւս՝ ձիոց վզի վարս :

Բարգ. 30 խուրց մէկ բարդ է խոտոյ կամ ցորենոյ :

Բարկ. Խիստ, «բարկ քացախ, բարկ կըրակ», եւս բարկացող մարդ :

Բերանսըվեր. Վն. Ի վերայ երեսաց անկանիլ, ննջել, կամ ձգել բան մի :

Բէճ. Ուս : Ուրեմն Բաճկոն՝ ուսերու վրայ ձգած հանդերձն է :

Բէր. Ոչխար կթելու տեղ և ժամն : Բերք :

Բէրուոր. կաթ կթողներ և կրողներ :

Բիցուկ. Մշ. Սատկած: Բիցաւ. սատկեցաւ :

Բլնթրեկ. Վն. Պոնդ, պնդել, պոնդ հարկանել. [illegible] :

Բղբղիկ. Մշ. Ջուր խմելու փառչ (կուլկուլ)· որոյ կոկորդ նեղ և ծակ ծակ է · խմելու ատեն «բըղ բըղ» ձայն կ'ածէ :

Բղիկ. Մշ. Փոքրիկ աման հողէ, որոյ մէջ եղ. կաթ, մածուն, եւն, կը լցնեն :

Բղող. վ.ն. Խնկան կամ խէժի մեծ կտոր։
Բոթնոց. Պողպատէ կամ կաշիէ շինած, որ կ'անցունեն 'ի բոյթ մատն։
Բոլոնթրէզ. վ.ն. Բարձրացեալ բոց։
Բոնկալ. Այն հաւկիթ, զոր միշտ կը դնեն հաւուն բոյնը, որոյ վրայ նստելով հաւն՝ ձու կ'ածէ։
Բուլ, Բոյլ. Խումբ ծառոց, պրակ. յոգնակին է՝ Բլեր։
Բուջ. Մշ. Գուլպայ, չօրապ։
Բռալ. Կովու ձայն. բառաչել։
Բռան. վ.ն. Խոշոր և ծեր կատու. կցորդ կը հնչեն բռան կատու։
Բռնատուն. վ.ն. Բանդ, արգելանոց։
Բռուածք. [illegible]։
Բրդուճ. Պատառ։
Բրչամ. Կնկան կամ այր մարդոյ երկայն հեր գլխոյ. և՛ս՝ անասնոց բաշ։
Բրոր. Պղտոր։
Բօլօճ. Միջատ։
Բօկ. Կոկորդ։
Բօտ. Բոտ. Որդնակեր, բոտացեալ, փուտ։
Բօրանի. Տեսակ մը կերակուր։

Գ.

Գաբանակ. Հովուի պարեգօտ Թաղիքէ շինուած, որ կը ծածկէ գլխէն մինչ յոտսն. որ և կը ծառայէ փոխանակ անկողնոյ և վերմակի։
Գալ. Գալարումն կամ հիւսուածք բանջարեղինաց 'ի չորացուցանել։
Գալար. վ.ն. Սանձ։ «փորս կը գալարի». տանջ տանջիմ։
Գահ. վ.ն. Պահ, ժամանակ։

Գայ որ. Մշ. իբրեւ մակբայ, քանի որ, որովհետեւ :

Գզիր. Գեղի պաշտօնեայ, որ գեղապետի հրամանը գիւղացւոց կը հաղորդէ եւ կը գործադրէ :

Գէլվօզ. Արեւելեան հիւսիսէն փչած սառն հողմ:

Գիլ. վն. Տեսակ մը կակուղ քար :

Գլխաւոր. վն. Էրիկ : Կին այս անունը կուտայ իւր էրկան :

Գլուլ. վն. Ախսեռի մէկ տեսակն :

Գոգնոց. վն. Կանանց եւ մանկանց հանդերձի մաս մի, միակտոր, զոր կապեն պարանոցէն եւ մէջքէն, որ կ'երկարի մինչ յերեսս ոտից. իսկ Մշեցիք եւ Կարնեցիք մէջքէն 'ի վայր մէկ մասն կ'ընեն, մէկ մասն ալ մէջքէն մինչեւ վիզ, զոր «սրտանոց» կ'անուանեն :

Գող. Ընկոյզ. Ջող, Ջաււող :

Գոլ. վն. Տաքութիւն, գոլորշիք :

Գոոտան գդէլ. Ջրային մանր ժժմունք :

Գուզ անել. վն. Անշարժ եւ անշշունչ դառնալ. լռելեայն թագչիլ :

Գունդ. Որ եւ իցէ կլոր բան, կծիկ, խմորի գունդ :

Գուտիկ. վն. Վարդապետի եւ տէրտէրի գլխարկ, սեւ բուրդէ հիւսուած :

Գռգռալ. Որոտումն ամպոց :

Գռեխ. Թարախ վիրաց :

Գրկափակ. Դրան եւ ձգուած երկաթէ կամ փայտէ նիգ, իբրեւ փակ :

Գրտնակ. Կլոր եւ ողորկ փայտ, զոր գլորելով խմորի գունդերուն վրայ, կը բանան, լաւաշ հաց կը շինեն : Օխլաւու է

Գօ, գօսկօ, գօհանչ. վն. Ահա ։
Գօմբ. վն. Բռնցի հարուած ։
Գօռ. Գերեզման քրիստոնեայ չեղող ան–ձանց ։
Գօտիկ. վն. Պսակաձև պաճուճեալ փայտ, զոր կանայք 'ի գլուխ դնեն, և վրայէն զարդեր կը կապեն ։

## Դ.

Դայ. վն. Հոս, հոն, հոդ ։
Դաչ. Կանխաւ, յառաջուց ։
Դարդար. Օր օր ։
Դարման. Ցաւոց դեղ. ևս պարէն անասնոց։
Դեղդիր. Աչքը դեղ կամ ծարուր քաշե–լու համար փոքր ոսկոր մի կամ փայտ։
Դըղէզ. վն. Խայթոցաւոր բզէզ, կամ իշա–մեղու ։
Դընկ. Սանդ ծեծելու համար կոթով փայտ մը ։
Դըմփիկ. վն. փոքր ծնծէր ։
Դըրըմփ. վն. Իյնալու ձայն. զր. ասեն, «դըրմփաց գետին. դըրմփոց եղաւ, տե–սէք ի՞նչ ինկաւ». ևն ։
Դըքա. Մչ. Հողէ կամ փայտէ շինած նըս–տելու տեղ, իբր բազմոց ։
Դիր. Ցորեն ցանելու կերպ մի է, որոյ արտը առու առու կը վարեն, և միայն փոսերու մէջ կը ցանեն ։ Եւս իբրև մակ–բայ՝ հեղ, անգամ. «եօթն գիր», եօթն անգամ, Եւս կտաւատ ձիթահան բերե–լուն ձէթ հանելու համար՝ չափ մի է ։
Դըլուզ. վն. Բեկեալ անօթ խեցեղէն ։ Եւս փոքրիկ բղուղ ։
Դնդեղ. վն. Ալիք ծովու կամ գետոյ ։

Գնդղկտալ. վն. Ծանր այլ միշտ շարժիլ. դանդաղել:

Գող տաքցող. Տենդ :

Գոր. վն. Սուր :

Գուր. փայտ ծակելու համար երկաթէ գործիք. եւ՝ «դուր կուգայ, դուր չիգար» կ'նշանակէ՝ Ախորժակ ունիմ կամ չունիմ:

Գրուց. վն. Հանդիսի համար պահուած զգեստ. դրուց հալաւ :

Գօլ. Գոյլ կաշիէ շինած, ջրհորներէ և աղբիւրներու ականներ հորդելուն՝ կաւերը գօլի մէջ կը լցեն կը քաշեն վեր :

Գօղիկ. վն. Ամիթի ձեւով եփած հաց. եւ անասնոց պարանոցի շուրջ եղած ըսպիտակ գոյն շրջանակաձեւ :

Գօր. կարգ, օրայ: Պահ. «գօրէգօր», ժամէժամ:

## Ե.

Եբ. վն. Երբ :

Եգանշուիկ. ~~~~~~ Այս օրինակ նկար կամ » դերձանով բանուածք :

Եւ. Մչ. Եւք, զառի վեր, Եօխուշ:

Եղա. Տարր, Նիւթ :

Եղահալ. Պղնձէ աման մը, եղ հալելու :

Եղերով. Լեռան մը անուն 'ի Ռշտունիս :

Եղնիկ. Եղջերու, կէյիկ, եւ՝ փաղաքշելի, քնքոյշ, սիրուն :

Եղունիկ. Աղաւնի. եւ անուն կանանց :

Եմ. իմ:

Եռ. վն. Գիծ : Եւս՝ եռացումն : Եռալ՝ եփիլ, եւ զեռալ մրջմանց, բազմութիւն մարդոց, եւն :

Եռքոր. վն. Եռալ, քերուիլ մարմնոյ, բոր, բորոտութիւն ։

Երդիս. վն. Տան առիքին կամ ձեղունին վրայ եղած լուսամուտն ։

Երեսքաց. վն. Տան շէնքի այն մասը, որոյ երեք կողմը պատ կայ, և վրան ծածկած, բայց մէկ կողմը բաց է և ճաղերով պատած, ուր կը նստին 'ի զբօսանս, իբրև պատշգամ ։

## Զ.

Զատ. Մշ. Մշակաց կամ գործաւորաց ըղըկելիք հաց և կեր. ևս՝ իր. ևս՝ իբր կերակուր. ևս՝ հեռի ։

Զատիկ. վն. Ճանճի մեծութեամբ կարմրագոյն միջատ անթև, որ կ՚երևայ Զատկի օրերը. ևս Ս. Զատկի տօն. ևս Ս. Ծննդեան տօնը, զոր անուանեն՝ Պզտիկ զատիկ ։

Զատուոր. Մշ. Մշակաց կամ գործաւորաց կերակուր տարող ։

Զըղզըղուն. Իբր զուտ և մեղմ հոսող ջուր և զեփիւռ. «զըղզըղուն քամի. զըղզըղուն ջուր»,

Զըղզիկ. վն. Հողէ ամանի կոտրուած մանր կտորներ ։

Զըմփ զըմփ. վն. Իբր արձագանք ձայնի ։

Զըպուն. վն. Հանդերձ, պարեգօտ, ենթաքէ ։

Զըրընկոց. Մետաղի ձայն ։

Զուլալ. վն. Զինջ. «զուլալ ջուր, զուլալ ձէթ, զուլալ գինի», են ։

## Է.

Է՛. Զարմացք և ձանձրոյթ կը նշանակէ ։ Եւս՝ հերիք է ։

Էւ. Խմր մալթայ՝ «եւ» կը նշանակէ ։ Եւս՝ այլ, ուրիշ ։ Եւս՝ քրդերու ցեղ կամ տոհմ․ որոց գլխաւորքն ալ կ՚ըսուին՝ Էւ ողլուն ։

Էլմ'. Վն. Դարձեալ, վերստին ։

Էլուկ. Վն. Նոր բողբոջ ծառոց ։

Էմ'լէ. Մշ. Դարձեալ, վերստին ։

Էդա սկընայ. Վն. Այդպէս, այդգունակ ։

Էնա սկընայ. Վն. Այնպէս, այնգունակ ։

Էսա սկընայ. Վն. Այսպէս, այսգունակ ։ Երբեմն եւս միայն «ըսկընայ» կ՚արտասանեն ։

Էս, էսա. Վն. Սա, սոյն ։

Էդ, էդա. Վն. Դա, դոյն ։

Էն, էնա. Վն. Նա, նոյն ։

Էծու պտուկ. Վն. Այծու պտուկի ձև ունեցող տեսակ մը խաղող է ։

Էջ. Վն. Այն գինին՝ որ առանց ճմլելու ինքնին կը քամուի հնձանի մէջ գիզուած խաղողէն, և որ պատուական է յոյժ ։

Էն գահն ինե. Վն. Նոյն պահուն, մէկէն մէկ, անմիջապէս ։

Էսան. Վն. Ցեսան, զոր Մշեցիք անուանեն՝ Լէսան ։

Էսկանդար. Վն. Այսքան ։

Էսմլայ. Մշ. Այսպէս ։

Էր. Այր, քարայր ։

Էրէթիկ. Տեսակ մը վէրք է, որ կը գոյանայ մանկանց շրթանց և երեսանց վրայ ։

Էրկանք. Աղօրիք, զոր ձեռքով կը դարձնեն ։

Էրկէն. Երկայն ։

Էրկնունիկ. Երկայնկեկ, «էվէլ» ։

Էրուն. Արիւն ։

## Ը.

Ընչկմի. Մշ. Մինչև ։
Ըսկընէմ. Վն. Այսքան ։
Ըսկի. Երբէք, և ոչ իսկ ։
Ըսկուն. Վն. Այնպէս, այսգոյն, այնգոյն ։
Ըստայ. Վն. Այստեղ ։

## Թ.

Թաթ. Վն. Գուլպայ ։
Թաթպան, Վն. Ձեռնոց, ելդիվան. զոր Մըշեցիք «թաթնոց» կոչեն ։
Թալել. Նետել ։
Թաշկել. Մշ. Հոգնիլ, կասիլ ։
Թանխուռք, Թոյլ գործուած կտաւէ կամ չալէ տոպրակ, որոյ մէջ մածուն կամ թան կը լցեն, և քարի տակ դնելով՝ ջուրը կը քամուի ։
Թանհատ. Մշ. Մածնաթանին քամուած, պինդ մասն, զոր Վանեցիք «պինդ թան» անուանեն ։
Թանհուս. Թանով խառն եփուած ճաշ ։
Թառամայ. Ցախատակաշէն վերնատուն 'ի տունս, և տեղի կանանց յեկեղեցիս ։
Թարթափ. Աչաց կոպերու վրայ եղած մազ ։
Թափթափայ. Վն. Թոնիրի մէջ եփած հաց 'ի ձև կլոր նկանակի, թանձր տափարակ ։
Թէրմաշ. Իւր հեգնութեան անէծք և հայհոյանք 'ի գործ կ'ածեն ։
Թըթու. ([illegible]). Եւ թթուհամ. Եւ՝ աղի ջրով, խմորով, կամ քացախով ջուր դրած բանջարեղէններ ։
Թըրթըփալ. Երբ հաւ մը կամ անասուն

մը մորթեն, գլուխ կտրելէն ետքը՝ ըրած շարժման կ'ըսեն թըրթըփալ:

Թիթուց. Հաւու կոկորդ, ուր զետեղէ պահէ կերած կուտն:

Թնթոց. Հարիսայ կամ ճաշ խառնելու և հարկանելու փայտն:

Թնթուխ. փափուկ:

Թոլկող. Թոյլ կող. յանթատակի եղած կողի ոսկորներուն մէջ տեղը, որուն «հոգեդուռ» ալ կ'ըսեն:

Թոլ փէշ. Թափթփած, դանդաղ, անհոգ մարդ:

Թռթռնեկ. Թիթեռնիկ: Նաև՝ խելքը թեթեւ մարդ:

Թօրթ. Վն. Դիրդ գինւոյ. եա:

Թօրուան շուրթն. Թոնիրի շուրթն, որոյ վրան ծեփուած, այլ ներքև պարապ կը մնայ. խուզարկութենէ իր մը թագուցանելու համար, այն տեղ կը պահեն, վրան կը հողեն:

## Ժ.

Ժաժիկ. Իւղը հանուած Մածուն, որ նման է Ռօտըլօճի պանիրին. Վանցիք հոտաւէտ բանջարներ կը խառնեն հետ, կ'ուտեն:

Ժաժկ. Շարժ, երկրաշարժ:

Ժանգռ. Ժանգ:

Ժիր. Վն. Արողջ: Իսկ Մշ. ուժով:

Ժղլել. Մշ. Խօսելով ժամանակ անցընել:

## Ի.

Իբե. Վն. Եթէ, բերաւ:

Իգի· Այգի ։
Իլիկ· Մետաղեայ ճլիկ, որով դերձան ոլորեն․ և՝ ոսկերաց մէջ եղած ուղն, ծուծն ։
Իլին· վ.ն. Լի, լցուն ։
Իմալ· Մչ· ինչպէս ։
Իմկընի· վ.ն. Անինչան բառ՝ իբրև ծօ՛, բարկացած կամ հայհոյած ժամանակ գործ կ'ածեն ։
Ինե· վ.ն. ի ներքս, 'ի մէջ ։
Ինկաւոր· վ.ն. Լուսնոտ, կամ դիւահար, որ փրփրի և անկանի ։
Ինոր, իդոր, իսոր· վ.ն. Անոր, այդոր, ասոր։
Ինչխ· ինչպէս ։
Ինքն ինքն· Ինձամք անձին ։
Իչել· Մչ· Նայել, դիտել։ կարնեցիք՝ Աչել, (որ է Աչել։)
Իչունց· Ցիչոց, հայհոյանք ։
Իսկի· Ըսկի, երբէք, ոչինչ ։
Իտին դիր, իտին դրին· վ.ն. Ցետոյ, ամենէն վերջ ։
Իրե· վ.ն. Եկաւ ։
Իրիկ· Այր, էրիկ ։
Իրիչկել վ.ն. Նայել, դիտել․

## Լ․

Լախ· վ.ն. փուտ․ «լախ ձու», փտած հաւկիթ ։
Լաճ· վ.ն. Ջաւակ, մանչ ։
Լամուկ· Քրդու կամ տանկի տղայ ։
Լամէզ· վ.ն. Սոնկ ջրով ու ալիւրով եփած կերակուր ։
Լարան· Հաստ թել մազէ կամ կանեփէ ։

Լաւօ. Մշ. Իբր ո՛յ օղուլ։
Լեխել. } Մանրել, փշրել։
Լեխրտել. }
Լըփ. Ափ։
Լըփլըփել. Լափլիզել։
Լղկել. Վ.Ն. Ջրաթաթախ լինել։
Լուլախ. Վ.Ն. Կարկտախառն անձրև։
Լպզորել. Վ.Ն. Իյնալով մարմնոյն կաշիին քերթիլ։
Լպզտրալ. Վ.Ն. Ոտքը սահիլ, սառոյցի վըրայէն, կամ քարի կամ ցեխի վրայ կոխելէն, եւն։
Լպզտրուկ. Լկրտած, չամչցող. իբր լըպզտրեալ երես։
Լօմիկ. Մշ. Փոքր նկանակ հաց, Բոյնիջ հաց։
Լօշ. Բարակ բացուած հաց, լաւաշ։
Լօպկել. Մերկացնել, կողոպտել։

## Խ.

Խանձրահամ. Այրած կերակուր։
Խանձրահոտ. Խանձի հոտ։
Խանձրիլ. Բուրդ խանձիլ, լաթ այրիլ, կամ մարդու, անասնոյ մազերուն այրիլ։
Խաչերկաթ. Երեք թևէն խաչաձև երկաթ, զոր դնեն թոնիրի վրան՝ թոնիր վառած ատեն. և անոր վրայ կը դնեն կերակուրի պտուտուկ կամ սան, եփելու կամ տաքցընելու համար։
Խեմ. Ղն. Հայիմ, Նայիմ։
Խեռնիկ. Վ.Ն. Մէկ տարեկան հորթ, իբր հերուընեկ։ Ամիկ։
Խզուզ. Կալի տակ մնացած՝ կեղև չհանուած ցորեն։
Խեչ. Մշ. Քով, կուշտ։

Խէրօ. Աղուական բառ՝ յատկացեալ վասն մանկանց ։ Իբր՝ սիրուն զաւակս ։ Եւս՝ մարդոյ անուն ։

Խըյ. Մշ. Միթէ ։

Խըռ. Մանկանց խաղ մի է, որ իրարու ետևէ վազելով ձեռք պիտի դպցնեն փախչողին ։

Խըռնաւ. Իբր ճարտար ։

Խիլ. Ծուռ, չեօք ։

Խուռոմ. Հնձուած՝ այլ դեռ չկապուած

Խխուրձ խոտոյ, ցորենոյ, եւն ։

Խուս. Ալիւրէ եփած ճաշ ։

ուցկուլուլու. Երաշտ օրերը փայտ մը կը պատատեն լաթերով և փողոցէ փողոց շրջեցնելով ջուր կը թափեն վրան, որպէս զի անձրև տեղայ ։

Խչտել. Խթել, մշտել ։

Խածիկ. Գեղջ. մանկանց

Խօ. Իբր մասնիկ բառից, այլ նշանակութեամբ իբր ձայնարկութիւն. օր., դու խօ՛ մարդ ես. ես խօ՛ տղայ չեմ, եւն ։

Խօրօտ. Սիրուն, գեղեցիկ, բարւոք ։

Ծ.

Ծանտրմակ. Վ. Ն. Ջուանի վրայ շինուած ննջարան մանկանց, իբր օրօրոց ։

Ծառազարդար. Ծաղկազարդի տօն. ծառոց զարդարուիլ ։

Ծէրվէրիկ. Վ. Ն. Ոտից մատներու ծայրով քալող, ձեռաց մատերու ծայրերով բանող, իբր ճկնոտէ ։

Ծին. Երեսի վրայ եղած սև ծին, պինծ ։

Ծուռ. Վ. Ն. Խենդ, յիմար ։

Ծոթավարիկ. Վ. Ն. Խենդօրէն, յիմարաբար ։

Ծռծակ. Վ. Ն. Ջրանցք, ջրի ծակ, ջուր անցնելու խողովակ:

Կ.

Կազալ. Վ. Ն. Ծառի չորցած տերև:
Կաթալիկ. Վ. Ն. Կաթ լեցնելու հողէ աման. և՝ իբր կիսակարաս:
Կաթիկ. Վ. Ն. Լերդացած. ջուլուֆ:
Կաժ. Մանած թել, որ խիկի վրայէն կանցունեն վելակի վրան:
Կալատիզ. Կալոտի կամ կալըրող եզներ:
Կալմաղտ. Ցորենոյ կամ այլ արմտեաց կալ եղածէն՝ մշակաց, աղքատաց, անցորդաց Ըստ, մասն մասն ձրի բաժնել, իբր կալ մասն:
Կալտնել. Վ. Ն. Ախալիլ:
Կանանչ մատուտ. Վ. Ն. Կանանչագոյն մեծ մոզէզ. փէրլինփէլէ:
Կանափըլտիկ. Թուխ դեղնագոյն խատուտիկ մորթ կատուի:
Կանգալ. Պտըտել, շրջել, գքօննուլ:
°Կանգուել. Մշ. Ցամաքիլ. կամ արգիլուիլ կենալ:
Կանդ կլուզ. Վ. Ն. Մանրիկ մանկտիք:
Կանել. Վ. Ն. Մանել. դերձան կամ չուան մանել:
Կատար. Ագլօրի գագաթան վրայի միսը:
Կատիկ. Միս չուտելու օր և ուխտ, երբ միայն կաթնեղէն և ձկնեղէն և հաւկիթ կուտեն:
Կեռ. Ջէնգէլ:
Կեռիկ. Վ. Ն. Ներքին ծնօտ, ջէնէ:
Կեր. Վ. Ն. Կերակուր:

կըզուել. վն. կորանալ, քամակ ծռել 'ի վայր:
կըթխայ. Գինւոյ կամ օղիի բաժակ. գաւաթ:
կիտուր. Մշ. Մարախ, որ ցորեն և կանանչեղէն կը կտրէ:
կիք. վն. Ամուր, պինդ:
կլօճ. վն. Անխմոր հաց. և՝ իբր յատուկ այն հացը, զոր ջաղացքի մէջ կ'եփեն:
կողինձ. վն. Կորիզ.. սալորի, ծիրանի, դամոնի, դեղձի, եւն:
կողուանք. վն. Անկողինք, եաթախ եօրղան:
կճայ. Տաճկի կամ քրդու աղջիկ, կնիկ:
կճօ. վն. Աղուական կոչումն փոքրիկ աղջըկանց, իբր ըսել «սիրուն աղջիկս»:
կոլ. վն. Իբր նախատական բառ, չօռ:
կովծըծուկ. Մշ. Տես կանանչ մատոտ:
կովիկ. վն. Ջագար:
կոր բու. վն. Գիշերահաւ. և՝ բու, քոյզուզ:
կուզ. վն. Մեծաք կենդանին. և՝ սապատող:
կուլուլի, վն. Խիստ հազ, կապուտ հազ:
կունք մը. վն. Իբր պահ մը. «կունք մ'առնել», պահ մը քնանալ:
կուռիկ. վն. փոքրիկ քասայ հողէ շինուած:
կուռօ. Քուրդի տղայ:
կուց. վն. Երկու ձեռաց ափերուն մէջ լցուած, իբր չափ:
կպուցել. վն. կպցունել, փակցունել. և՝ ճրագ կամ կրակ վառել, լուցանել.
կռէթ. վն. Ջորցած հողի կոշտ մը:
կռիկ. վն. Ագռաւ:
կռչալ. Երակաց կոտրտուելուն, կամ չոր բանի մը ջարդուելուն ձայնը:
կտէլ. վն. Դգալ:
կտոր կտոր. վն. Նազանօք խօսող, չար-

ժող, քալող, ևն ։

Կտրաց. վ.ն. Մանկանց իրարու ետև վազելու խաղ մը ։

Կտիկ. վ.ն. Կտիկ ընել, խտղտեցնել. ևս՝ պստիկ այծ ։

Կրկչալ. կարկաչել անծեղ թռչնոյն ։

Կօլօտ. վ.ն. կարճ, կարճահասակ ։

Կօռ. վ.ն. Ջեռքի ցուպ, որոյ վերի ծայրն կորացուցած են ։ Եւս՝ որ և իցէ կոր ինչ ։

Կօռտիկ. վ.ն. Հագուստ է, նման սաքօյի, բայց անթև ։

Կօտ. Գլխուն դանգ. ևս՝ ցորենի չափ. ևս՝ փայտէ աման ։

## Հ.

Հազար թերթիկ. վ.ն. Ստամոքս ։

Հակոռ. Հակառակ. ըստ վ.ն. խակառ ։

Համ՚լէ. Մշ. Հեղ մի ևս, միւսանգամ ։

Հանգ. վ.ն. Հանգիստ. ևս՝ չնչառութիւն. ասեն «հանգս կտրաւ». որ է՝ շունչս հատաւ ։

Հանգռել. Մշ. Շունչ կտրիլ ։

Հատքուտ. Աշնանէ ցանուած ցորեան՝ որ արտի ծոց հողին տակ կը ծածկուի և գարնան կը բուսնի ։

Հատնել. վ.ն. Մեռնել, զոր 'ի գործ ածեն հայ չեղող ազգաց նկատմամբ, և անասնոց մեռնելուն ։

Հարսնառ. Մշ. Հարսնածուք, հարսնածութիւն ։

Հետ հետուն. վ.ն. Ետ ընդ ետ, անմիջապէս ։

Հերուընեկ. Մէկ տարեկան որթիկ, որ և կոչի հերնեկ. ըստ վանեցւոց հնչմանց՝ խեռնիկ ։ Ամիկ ։

Հէուի. Այծ վարելու կոչումն ։

Հըմալ. Մշ. Այնպէս ։

Հըմլայ. Մշ. Այսպէս ։

Հըմկայ. Մշ. Հիմակ, այժմ ։

Հինգ աղբեր. վն. Այլաբանօրէն՝ ձեռաց հինգ մատ, կամ ապտակ ։

Հլոտել. Մշ. Հրել, մղել, գլորել ։

Հոփ. Հովանի ։

Հուր ի հրեղէն. վն. Հրեղէն էակ. ես՝ չքնաղ. գործածեն աղջկանց կամ կանանց գեղեցկութիւնը գովելու. զոր հնչեն «խուռնի խրեղէն». և «խուռիկ» անուն է կնոջ. նոյնպէս և «խրեղէն» ։

Հտրաց. Հետ իրերաց, ընդ իրեարս, միատեղ ։

Հօն. Իբր հուն. արտ հնձողներ մասն մասն կը բաժանեն հունձ, և իւրաքանչիւր մասին բաժանումն կը կոչեն հոն կամ հօն ։

Հօնած. Հոն բացող, հնձողներէն մին որ ամենէն արագաձեռն է և ամենէն առաջ կ՚ընթանայ, և որ երկրորդ մը ևս ունի իրեն, որ կոչի՝ հօնածաղբէր ։

Հօրի՞. Մշ. Ինչու, է՞ր իմ, հէ՞ր իմ ։

## Ձ.

Ձարձրուիլ. Թել թել լինել, կտրտուիլ, փտտիլ ։

Ձէթ. վն. Մանր ։ Ասեն «ձէթ պէտ», որ է «փոքր և մեծ» ։ Մենք գրեցինք նաև՝ «ձեռ պետ», իբր պոչ և գլուխ, փո-

խառնակ՝ կրասեր և աւազ աւելոյ, կամ ճեռ և պեռա :

Ջիթհանց. Գործարան կամ տուն, ուր մեծագերան մեքենայով ճմլելով կտաւատը՝ ձէթ հանեն. ձիթհանք :

Ջմէթք. Աչքի այն տեսակ ցաւ, որ ձիւնի վրայ արև ժամանակ նայելով կ'արտասուի և կը կսկծայ :

Ջմրկտալ. Վ Ն. Ջգտել, ճռճռել :

Ջմրուկ. Ջոր խեցի՝ ջրային ժժմանց, մանկկալոյ Նաղէ, զոր կախեն օրօրոցի գերանէն, և մանուկը իր թաթիկներով կը խառնէ զայն, անոր չըխկչըխկոց ձայնով կը զուարճանայ. կանայք կարծեն թէ՝ զօրութիւն ունի այս, որ տղաքները ազատ կը պահէ ձմրկտալէ. և ձմրկտալը՝ դիւային կը համարին : (Տես և Եզնիկն Գիրք Բ. ԺԹ.)

Ղ.

Ղորդ. } Իրաւ, ստոյգ :
Ղորդման. }

Ճ.

Ճան. Վէգ, զոր հանեն կենդանեաց ոտից բարձերէն, և խաղ կ'ընեն :

Ճանկ. Վ Ն. Մագիլ դաղանաց : Եւս՝ ափ մի, ափով մի, իբր չափ :

Ճակտոնոց. Դրան վերին սեամ, բարաւոր : Եւս՝ զարդ ինչ 'ի ճակատս կանանց : Եւս՝ ձիոց կամ եզանց ճակտէն կախած կաշէ կամ թելէ հիւսուած ծոպեր, ճանճերէ պաշտպանուելու համար :

Ճարընկան. Մշ. Մուրացիկ, աղքատ :

Ճիտ. Ճիտ հանել. Նախատինք :

Ճէլոյ. Վն. Ազգ ինչ քրդաց, որոց թա-ղեայ գլխարկը բարձր է 'ի ձև եպիսկո-պոսական ճղլակ թագի, և զգեստուց թևերու գրօշակ երկար՝ մինչև գետինը կախուած :

Ճըլլեկ. Մանր և կլոր հատիկ դառն, որ իբրև որոմն գոյանայ ցորենւոյ հետ :

Ճիժ. Մատղաշ մանուկ :

Ճլոր. փոքրիկ պուտուկ, հողէ պոյտ :

Ճլտուզ. Վն. փոքրիկ կամ ազազուն :

Ճխդել. Վն. Ամրացնել, պնդել. եւ՝ հրել :

Ճկիկ. Դրան վրայի երկաթ, որով բաղ-խեն զդուռն :

Ճղլակ. Վն. Երկճղի, ճղնալ :

Ճղլակ թագ. Եպիսկոպոսական թագ, որ ասի «չաթալ թագ» :

Ճղլավզիկ. Վն. Մանուկներ լուացած ժա-մանակ՝ ճիտէն կը վերցնեն քանիցս, որ-պէս զի ջիլերը ձգուին. այս արարողու-թիւն ճղլավզիկ կը կոչեն :

Ճղօր. սոլընճախ :

Ճոչ. Վն. Մեծ :

Ճոչիկ. Մշ. Մեծ մայր, հօր մայր. ըստ վանեցւոց՝ ճոչ մամա :

Ճութ. Ողկոյզ, կամ ինչ և իցէ ողկուզա-ձեւ իր :

Ճպոթ. Դալար փայտ, վարոց, որով զմարդ պատուհասեն ծեծելով, և զա-նասունս վարեն :

Ճվալ. Ճվճվալ :

Ճրագ. Հողէ շինած ճրագ, որոյ մէջ պատ-րոյգ կը դնեն և ձէթ ածեն վառեն.

ճրագի տակ ուրիշ հողէ փոքր աման մի եւս կայ, զոր ջահ ասեն. և երեքոտնէն փայտաշէն ճրագակալ կայ, որ բարձր շինուած է, և վրան քանի մը տեղ տախտակ անցուցած են, ճրագները վրան դնելու համար։

## Մ.

Մա. } վն. Մայր։
Մամա. }

Մագրակալ. վն. Է այն, որոյ վրայ լօշ հացի խմորն առնելով թրեն 'ի կողն թոնիրին։

Մաթրաթ. վն. Մեծ քասայ, կերակուրի Ղաման։

Մաժել. վն. Ձեռքով շոյել, շօշափել, շփել։

Մալուլ. վն. Տխուր։

Մակատուզ. վն. Սոյլանկօղ։

Մանել. Թել կամ չուան ոլորել։ Իսկ Մշ. ձգիլ, վայր անկանիլ։

Մանգղոն. Մշ. Մանգաղ։

Մաշկ. վն. Թռչնոց կաշի, կամ բարակ կաշի։

Մռութ. Բերնի ստորին շուրթն։ Իւս՝ տըխուր։ Մռութ կախել՝ տխրիլ։

Մաս. վն. Բառ նուիրական, յոր երդնուն, իբր Ս. Հաղորդութիւն։ Մաս առնուլ, Սրբութիւն առնուլ։

Մաստորն. վն. Կարագ և պինդթան իրար խառնած, ուտեստ։

Մարէ. վն. Մայրիկ։

Մէզար. Շալէ գործուած պօղչայ. բանջար կը լեցնեն մէջ, և գործի ատեն 'ի գօտ կը կապեն։

Եռքոր. վ. Ն. Եռալ, քերուիլ մարմնոյ, բոր, բորոտութիւն ։

Երդիս. վ. Ն. Տան առիքին կամ ձեղունին վրայ եղած լուսամուտն ։

Երեսբաց. վ. Ն. Տան շէնքի այն մասը, որոյ երեք կողմը պատ կայ, և վրան ծածկած, բայց մէկ կողմը բաց է և ճաղերով պատած, ուր կը նստին 'ի զբօսանս, իբրև պատշգամ։

## Զ.

Զատ. Մշ. Մշակաց կամ գործաւորաց ըղըկելիք հաց և կեր. Եւ՝ իր. Եւ՝ իբր կերակուր. Եւ՝ հեռի ։

Զատիկ. վ. Ն. Ճանճի մեծութեամբ կարմրագոյն միջատ անթև, որ կ'երևայ Զատկի օրերը. Եւս Ս. Զատկի տօն. Եւս Ս. Ծննդեան տօնը, զոր անուանեն՝ Պզտիկ զատիկ։

Զատւոր. Մշ. Մշակաց կամ գործաւորաց կերակուր տարող։

Զըղզըղուն. Իբր զուտ և մեղմ հոսող ջուր և զեփիւռ. «զըղզըղուն քամի. զըղզըղուն ջուր»,

Զըղզիկ. վ. Ն. Հողէ ամանի կոտրուած մանր կտորներ ։

Զըմփ զըմփ. վ. Ն. Իբր արձագանք ձայնի ։

Զըպուն. վ. Ն. Հանդերձ, պարեգօտ, էնթարի։

Զըրընկոց. Մետաղի ձայն ։

Զուլալ. վ. Ն. Զինջ. «զուլալ ջուր, զուլալ ձէթ, զուլալ գինի», ևն ։

## Է.

Է՛. Զարմացք և ձանձրոյթ կը նշանակէ ։ Եւ՝ հերիք է ։

Էլ· Իբր մա՛լթայ՝ «եւս» կը նշանակէ ։ Նաեւ՝ այլ, ուրիշ ։ Նաեւ՝ քրդերու ցեղ կամ տոհմ · որոց գլխաւորքն ալ կ՚ըսուին՝ Էլ աղասի ։

Էլմ՚· վ՚Ն· Դարձեալ, վերստին ։

Էլուկ· վ՚Ն· Նոր բողբոջ ծառոց ։

Էմ՚լէ· Մշ· Դարձեալ, վերստին ։

Էգա սկընայ· վ՚Ն· Այդպէս, այդգունակ ։

Էնա սկընայ· վ՚Ն· Այնպէս, այնգունակ ։

Էսա սկընայ· վ՚Ն· Այսպէս, այսգունակ ։ Երբեմն եւս միայն «ըսկընայ» կ՚արտասանեն ։

Էս, էսա· վ՚Ն· Սա, սոյն ։

Էդ, էդա· վ՚Ն· Դա, դոյն ։

Էն, էնա· վ՚Ն· Նա, նոյն ։

Էծու պտուկ· վ՚Ն· Այծու պտուկի ձեւ ունեցող տեսակ մը խաղող է ։

Էջ· վ՚Ն· Այն գինին՝ որ առանց ճմլելու ինքնին կը քամուի հնձանի մէջ դիզուած խաղողէն, եւ որ պատուական է յոյժ ։

Էն գահն ինե· վ՚Ն· Նոյն պահուն, մէկէն մէկ, անմիջապէս ։

Էսան· վ՚Ն· Յեսան, զոր Մշեցիք անուանեն՝ Լէսան ։

Էսկանդար· վ՚Ն· Այսքան ։

Էսմլայ· Մշ· Այսպէս ։

Էր· Այր, քարայր ։

Էրէթիկ· Ցեսակ մը վէրք է, որ կը գոյանայ մանկանց շրթանց եւ երեսանց վրայ ։

Էրկանք· Աղօրիք, զոր ձեռքով կը դարձնեն ։

Էրկէն· Երկայն ։

Էրկնունիկ· Երկայնկեկ, օխէր ։

Էրուն· Արիւն ։

## Ը.

Ընչկմի. Մշ. Մինչև ։
Ըսկընէմ. Վն. Այսքան ։
Ըսկի. Երբէք, և ոչ իսկ ։
Ըսկուն. Վն. Այնպէս, այսգոյն, այնգոյն ։
Ըստայ. Վն. Այստեղ ։

## Թ.

Թաթ. Վն. Գուլպայ ։
Թաթպան, Վն. Ձեռնոց, ելոչէչլան. զոր Մըշեցիք «Թաթնոց» կոչեն ։
Թալել. Նետել ։
Թաշկել. Մշ. Հոգնիլ, կասիլ ։
Թանխոռք, Թոյլ գործուած կտաւէ կամ չալէ տոպրակ, որոյ մէջ մածուն կամ թան կը լցեն, և քարի տակ դնելով՝ ջուրը կը քամուի ։
Թանհատ. Մշ. Մածնաթանին քամուած, պինդ մասն, զոր Վանեցիք «պինդ թան» անուանեն ։
Թանհուս. Թանով խառն եփուած ճաշ ։
Թառմայ. Ցախատակաշէն վերնատուն 'ի տունս, և տեղի կանանց յեկեղեցիս ։
Թարթափ. Աչաց կոպերու վրայ եղած մազ ։
Թափթափայ. Վն. Թոնիրի մէջ եփած հաց 'ի ձև կլոր նկանակի, թանձր տափարակ ։
Թէրմաշ. Իբր հեգնութեան անէծք և հայհոյանք 'ի գործ կ'ածեն ։
Թըթու. ([illegible]). եւ թթու համ. եւ՝ աղի ջրով, խմորով, կամ քացախով ջուր դրած բանջարեղէններ ։
Թըրթըփալ. Երբ հաւ մը կամ անասուն

մը մորթեն, գլուխ կտրելէն ետքը՝ ըրած շարժման կ'ըսեն թըրթըփալ:

Թթուց. Հասուն կոկորդ, ուր զետեղէ պահէ կերած կուտն :

Թնթոց. Հարիսայ կամ ճաշ խառնելու և հարկանելու փայտն :

Թնթուխ. փափուկ :

Թոլկող. Թոյլ կող. յանթատակի եղած կողի ոսկորներուն մէջ տեղը, որուն «հոգեդուռ» ալ կ'ըսեն :

Թոլ փէշ. Թափթփած, դանդաղ, անհոգ մարդ :

Թռթռնեկ. Թիթեռնիկ : Նաև՝ խելքը թեթև մարդ :

Թորթ. Վն. Դիրդ գինւոյ. եւն :

Թորուան շուրթն. Թոնիրի շուրթն, որոյ վրան ծեփուած, այլ ներքև պարապ կը մնայ. խուզարկութենէ իր մը թագուցանելու համար, այն տեղ կը պահեն, վրան կը հողեն :

## Ժ.

Ժաժիկ. Իւղը հանուած Մածուն, որ նման է Ռոքֆոր պանիրին. Վանցիք հոտաւէտ բանջարներ կը խառնեն հետ, կ'ուտեն:

Ժաժկ. Ճարժ, երկրաշարժ :

Ժանգռ. Ժանգ :

Ժիր. Վն. Առողջ : Իսկ Մշ. ուժով:

Ժղլել. Մշ. Խօսելով ժամանակ անցընել:

## Ի.

Իթե. Վն. Եթէ, թերաւ :

Իգի· Այգի ։
Խլիկ· Մետաղեայ խլիկ, որով դերձան ոլորեն. և՛ ոսկերաց մէջ եղած ուղն, ծուծն ։
Խլին· վ.ն. Լի, լցուն ։
Իմալ· Մչ· ինչպէս ։
Իմկընի· վ.ն. Աննշան բառ՝ իբրև ծօ՛, բարկացած կամ հայհոյած ժամանակ գործ կ՛ածեն ։
Ինե· վ.ն. ի ներքս, ՚ի մէջ ։
Ինկաւոր· վ.ն. Լուսնոտ, կամ դիւահար, որ փրփրի և անկանի ։
Ինոր, իդոր, իսոր· վ.ն. Անոր, ադոր, ասոր ։
Ինչխ· ինչպէս ։
Ինքն ինքն· Անձամբ անձին ։
Իշել· Մչ· Նայել, դիտել ։ Կարնեցիք՝ Աշել, (որ է Աչել ։)
Իշունց· Ցիշոց, հայհոյանք ։
Իսկի· Ըսկի, երբէք, ոչինչ ։
Իտին դիր, իտին դրին· վ.ն. Ցետոյ, ամենէն վերջ ։
Իրե· Վ.ն. Եկաւ ։
Իրիկ· Այր, էրիկ ։
Իրիշկել Վ.ն. Նայել, դիտել ։

## Լ·

Լախ· Վ.ն. փուտ· «լախ ձու», փտած հաւկիթ ։
Լաճ· Վ.ն. Զաւակ, մանչ ։
Լամուկ· Քրդու կամ տաճկի տղայ ։
Լամէզ· Վ.ն. Սօսկ ջրով ու ալիւրով եփած կերակուր ։
Լարան· Հաստ թել մազէ կամ կանեփէ ։

Լաւօ. Մչ. Իբր ա՛յ ըլլալ։

Լեխել. } Մանրել, փշրել։
Լեխրտել. }

Լըփ. Ափ։

Լըփլըփել. Լափլիզել։

Լղկել. Վն. Ջրաթաթախ լինել։

Լուլախ. Վն. Կարկտախառն անձրև։

Լպզորել. Վն. Իյնալով մարմնոյն կաշիին քերթիլ։

Լպզտրալ. Վն. Ոտքը սահիլ, սառոյցի վըրայէն, կամ քարի կամ ցեխի վրայ կոխելէն, ևն։

Լպզտրուկ. Լկրտած, չամչցող. իբր լըպըզտրեալ երես։

Լօմիկ. Մչ. փոքր նկանակ հաց, Բոյծնի հաց։

Լօշ. Բարակ բացուած հաց, լաւաշ։

Լօպկել. Մերկացնել, կողոպտել։

Խ.

Խանձրահամ. Այրած կերակուր։

Խանձրահոտ. Խանձի հոտ։

Խանձրիլ. Բուրդ խանձիլ, լաթ այրիլ, կամ մարդու, անասնոյ մազերուն այրիլ։

Խաչերկաթ. Երեք թևէն խաչաձև երկաթ, զոր դնեն թոնիրի վրան՝ թոնիր վառած ատեն. և անոր վրայ կը դնեն կերակուրի պտուտուկ կամ սան, եփելու կամ տաքցընելու համար։

Խեմ. Ղն. Հայիմ, Նայիմ։

Խեռնիկ. Վն. Մէկ տարեկան հորթ, իբր հերուընեկ։ Ամիկ։

Խզուզ. Կալի տակ մնացած՝ կեղև չհանուած ցորեն։

Խէչ. Մչ. Քով, կուշտ։

Խէրօ. Աղուական բառ՝ յատկացեալ վասն մանկանց ։ Իբր՝ ծիրուն զաւակս ։ Նաև՝ մարդոյ անուն ։

Խուլ. Մշ. Միթէ ։

Խըռ. Մանկանց խաղ մի է, որ իրարու ետևէ վազելով ձեռք ալխտի դպցնեն փախչողին ։

Խըռնաւ. Իբր ճարտար ։

Խիլ. Շուղ, չէօփ ։

Խուռում. Հնձուած՝ այլ դեռ չկապուած

Խխուրձ խոտոյ, ցորենոյ, ևն ։

Խուս. Ալիւրէ եփած ճաշ ։

ուցկուլուլու. Երաշտ օրերը փայտ մը կը պատառեն լաթերով և փողոցէ փողոց շրջեցնելով ջուր կը թափեն վրան, որպէս զի անձրև տեղայ ։

Խչտել. Խթել, մշդել ։

Խուծիկ. Պէզէ+ մանկանց

Խօ. Իբր մասնիկ բառից, այլ նշանակութեամբ իբր ձայնարկութիւն. դօ, դու խօ՛ մարդ ես. ես խօ՛ տղայ չեմ, ևն ։

Խօրօտ. Սիրուն, գեղեցիկ, բարւոք ։

Ծ.

Ծանտրմակ. Վ. Ն. Ջուանի վրայ շինուած ննջարան մանկանց, իբր օրօրոց ։

Ծառզարդար. Ծաղկազարդի տօն. ծառոց զարդարուիլ ։

Ծէրվէրիկ. Վ. Ն. Ոտից մատներու ծայրով քալող, ձեռաց մատերու ծայրերով բան բռնող, իբր ֆէնֆոշէ ։

Ծին. Երեսի վրայ եղած սև ծին, պէնկ ։

Ծուռ. Վ. Ն. Խենդ, յիմար ։

Ծռթավարիկ. Վ. Ն. Խենդօրէն, յիմարաբար ։

Ծուծակ. Վ. Ն. Ջրանցք, ջրի ծակ, ջուր անցնելու խողովակ։

Կ.

Կազալ. Վ. Ն. Ծառի չորցած տերև։
Կաթայիկ. Վ. Ն. Կաթ լեցնելու հողէ աման. եւ՝ իբր կխսակարաս։
Կաթիկ. Վ. Ն. Լերդացաւ . դուլաֆ։
Կաժ. Մանած թել, որ իլիկի վրայէն կանցունեն վելակի վրան։
Կալատիզ. Կալոտի կամ կալըրող եզներ։
Կալմազտ. Ցորենոյ կամ այլ արմտեաց կալ եղածէն՝ մշակաց, աղքատաց, անցորդաց եւ, մասն մասն ձրի բաժնել, իբր կալ մասն։
Կալտնել. Վ. Ն. Ախալել։
Կանանչ մատոտ. Վ. Ն. Կանանչագոյն մեծ մողէզ. քէրքէնէքէլէ։
Կանափըտիկ. Թուխ դեղնագոյն խատուտիկ մորթ կատուի։
Կանգալ. Պտըտել, շրջել, զբօսնուլ։
Կանգունել. Մշ. Ցամաքիլ. կամ արգիլուիլ կենալ։
Կանդ կլուզ. Վ. Ն. Մանրիկ մանկտիք։
Կանել. Վ. Ն. Մանել. դերձան կամ չուան մանել։
Կատար. Ագլօրի գագաթան վրայի միսը։
Կատիկ. Միս չուտելու օր և ուխտ, երբ միայն կաթնեղէն և ձկնեղէն և հաւկիթ կուտեն։
Կեռ. Ջէնգէլ։
Կեռիկ. Վ. Ն. Ներքին ծնօտ, ջէնէ։
Կեր. Վ. Ն. Կերակուր։

կըզուել. վ. ն. կորանալ, քամակ ծռել 'ի վայր ։

կթխայ. Գինւոյ կամ օղիի բաժակ. գաւաթ ։

կիտուր. Մչ. Մարախ, որ ցորեն և կանանչեղէն կը կտրէ ։

կկք. վ. ն. Ամուր, պինդ ։

կլօճ. վ. ն. Անխմոր հաց. և՛ իբր յատուկ այն հացը, զոր ջաղացքի մէջ կ'եփեն ։

կողինձ. վ. ն. Կորիզ․․ սալորի, ծիրանի, դամոնի, դեղձի, եւն ։

կողուանք. վ. ն. Անկողինք, եաթախ եօրղան ։

կճայ. Ցաճկի կամ քրդու աղջիկ, կնիկ ։

կճօ. վ. ն. Աղուական կոչումն փոքրիկ աղջըկանց, իբր ըսել «սիրուն աղջիկս» ։

կոլ. վ. ն. իբր Նախատական բառ, չօռ ։

կոմծըծուկ. Մչ. Տես կանանչ մատոտ ։

կոմիկ. վ. ն. Ջագար ։

կոր բու. վ. ն. Գիշերահաւ. և՛ բու, ճայղուշ ։

կուզ. վ. ն. Սմօւր կենդանին. և՛ սապատող ։

կուլուլի, վ. ն. Խիստ հազ, կապուտ հազ ։

կունք մը. վ. ն. իբր պահ մը. «կունք մ'առնել», պահ մը քնանալ ։

կուռիկ. վ. ն. փոքրիկ քասայ հողէ շինուած ։

կուռօ. Քուրդի տղայ ։

կուց. վ. ն. Երկու ձեռաց ափերուն մէջ լցուած, իբր չափ ։

կպուցել. վ. ն. Կպցունել, փակցունել. և՛ ճրագ կամ կրակ վառել, լուցանել.

կռէթ. վ. ն. Չորցած հողի կոշտ մը ։

կռիկ. վ. ն. Ագռաւ ։

կռչալ. Երակաց կոտրտուելուն, կամ չոր բանի մը ջարդուելուն ձայնը ։

կռէլ. վ. ն. Դգալ ։

կտոր կտոր. վ. ն. Նազանօք խօսող, չար-

ժող, քալող, ևն ։

Կտրոց. վն. Մանկանց իրարու ետև վազելու խաղ մը ։

Կտիկ. վն. Կտիկ ընել, խտղտեցնել. և ս՝ պստիկ այծ ։

Կրկչալ. կարկաչել անծեղ թռչնոյն ։

Կօլօտ. վն. Կարճ, կարճահասակ ։

Կօռ. վն. Ջեռքի ցուպ, որոյ վերի ծայրն կորացուցած են ։ Եւս՝ որ և իցէ կոր ինչ ։

Կօռտիկ. վն. Հագուստ է, նման սաքօյի, բայց անթև ։

Կօտ. Գլխուն գանգ. և ս՝ ցորենի չափ. և ս՝ փայտէ աման ։

## Հ.

Հազար թերթիկ. վն. Ստամոքս ։

Հակոռ. Հակառակ. ըստ վն. խակառ ։

Հաղմ՚լէ. Մշ. Հեղ մի և ս, միւսանգամ ։

Հանգ. վն. Հանգիստ. և ս՝ շնչառութիւն. ասեն «հանգս կտրաւ». որ է՝ շունչս հատաւ ։

Հանգռել. Մշ. Շունչ կտրել ։

Հատքուտ. Աշնանէ ցանուած ցորեան՝ որ արտի ծոց հողին տակ կը ծածկուի և գարնան կը բուսնի ։

Հատնել. վն. Մեռնել, զոր 'ի գործ ածեն հայ չեղող ազգաց նկատմամբ, և անասնոց մեռնելուն ։

Հարսնառ. Մշ. Հարսնածուք, հարսնածութիւն ։

Հետ հետուն. վն. Ետ ընդ ետ, անմիջապէս ։

Հերուընեկ. Մէկ տարեկան որթիկ, որ և կոչի հերնեկ. ըստ վանեցւոց հնչմանց՝ խեռնիկ: Ամիկ:

Հէուի. Այծ վարելու կոչումն:

Հըմալ. Մշ. Այնպէս:

Հըմլայ. Մշ. Այսպէս:

Հըմկայ. Մշ. Հիմակ, այժմ:

Հինգ աղբէր. վն. Այլաբանօրէն՝ ձեռաց հինգ մատ, կամ ապտակ:

Հլոտել. Մշ. Հրել, մղել, գլորել:

Հով. Հովանի:

Հուր ի հրեղէն. վն. Հրեղէն էակ. ես՝ չքնաղ. գործածեն աղջկանց կամ կանանց գեղեցկութիւնը գովելու. զոր հնչեն «խուռնի խրեղէն». և «խուռիկ» անուն է կնոջ. նոյնպէս և «խրեղէն»:

Հտրաց. Հետ իրերաց, ընդ իրեարս, միատեղ:

Հօն. իբր հուն. արտ հնձողներ մասն մասն կը բաժանեն հունձ, և իւրաքանչիւր մասին բաժանումն կը կոչեն հոն կամ հօն:

Հօնած. Հոն բացող, հնձողներէն մին որ ամենէն արագաձեռն է և ամենէն առաջ կ'ընթանայ, և որ երկրորդ մը ևս ունի իրեն, որ կոչի՝ հօնածաղբէր:

Հօրի՞. Մշ. ինչու, է՞ր իմ, հէ՞ր իմ:

## Ձ.

Ձարձրուիլ. Թել թել լինել, կտրտուիլ, փտտիլ:

Ձէթ. վն. Մանր: Ասեն «ձէթ պէտ», որ է «փոքր և մեծ»: Մենք գրեցինք նաև՝ «ձետ պետ», իբր պոչ և գլուխ, փո-

խանակ՝ կրասեր և աւազ տալելոյ, կամ ճեռ և պեռ ։

Ձիթհանք · Գործարան կամ տուն, ուր մե-ծադերան մեքենայով ճմլելով կտաւա-տը՝ ձէթ հանեն · զեյթինհանէ ։

Ձմէթք · Աչքի այն տեսակ ցաւ, որ ձիւնի վրայ արև ժամանակ նայելով կ՚արտա-սուքի և կը կսկծայ ։

Ձմրկտալ · վ. ն. Ձգտել, կճկճել ։

Ձմրուկ · Ձոր խեցի՝ ջրային ժժմանց, ման-կալոյ Նոշէ, զոր կախեն օրօրոցի դերա-նէն, և մանուկը իր թաթիկներով կը խառնէ զայն, անոր չըխկչըխկոց ձայնով կը զուարճանայ · կանայք կարծեն թէ՝ զօրութիւն ունի այս, որ տղաքները ա-զատ կը պահէ ձմրկտալէ · և ձմրկտալը՝ դիւային կը համարին ։ (Տես և Եզնիկն Գիրք Բ · ԺԹ ·).

## Ղ ·

Ղորդ · } Իրաւ, ստոյգ ։
Ղորդման · }

## Ճ ·

Ճան · Վէգ, զոր հանեն կենդանեաց ոտից բարձերէն, և խաղ կ՚ընեն ։

Ճանկ · վ. ն. Մագիլ գազանաց ։ Եւս՝ ափ մի, ափով մի, իբր չափ ։

Ճակտոնց · Դրան վերին սեամ, բարաւոր ։ Եւս՝ զարդ ինչ ՚ի ճակատս կանանց ։ Եւս՝ ձիոց կամ եզանց ճակտէն կախուած կաշիէ կամ թելէ հիւսուած ծոպեր, ճանճերէ պաշտպանուելու համար ։

Ճարընկան. Մչ. Մուրացիկ, աղքատ ։

Ճիտ. Ճիտ հանել. Նախատինք ։

Ճէլոյ. վն. Ազգ ինչ քրդաց, որոց թաղեայ գլխարկը բարձր է 'ի ձև եպիսկոպոսական ճղլակ թագի, և զգեստուց թևերու գրօշակ երկար՝ մինչև գետինը կախուած ։

Ճըլլեկ. Մանր և կլոր հատիկ դաուն, որ իբրև որոմն գոյանայ ցորենւոյ հետ ։

Ճիժ. Մատղաշ մանուկ ։

Ճլոր. փոքրիկ պուտուկ, հողէ պոյտ ։

Ճլտուզ. վն. փոքրիկ կամ ագագուն ։

Ճխդել. վն. Ամրացնել, պնդել. ևս՝ հրել ։

Ճկիկ. Դրան վրայի երկաթ, որով բաղխեն զդուռն ։

Ճղլակ. վն. Երկճղի, ըմբոլ ։

Ճղլակ թագ. Եպիսկոպոսական թագ, որ ասի «չաթալ թագ» ։

Ճղլավզիկ. վն. Մանուկներ լուացած ժամանակ՝ ճիտէն կը վերցնեն քանիցս, որպէս զի ջիլերը ձգուին. այս արարողութիւն ճղլավզիկ կը կոչեն ։

Ճղօր. սալընճախ ։

Ճոչ. վն. Մեծ ։

Ճոչիկ. Մչ. Մեծ մայր, հօր մայր. ըստ վանցւոց՝ ճոչ մամա ։

Ճութ. Ողկոյզ, կամ ինչ և իցէ ողկուզաձեւ իր ։

Ճպոթ. Դալար փայտ, վարոց, որով զմարդ պատուհասեն ծեծելով, և զանասունս վարեն ։

Ճվալ. Ճվճվալ ։

Ճրագ. Հողէ շինած ճրագ, որոյ մէջ պատրոյգ կը դնեն և ձէթ ածեն վառեն.

ճրագի տակ ուրիշ հողէ փոքր աման մի ևս կայ, զոր ջահ ասեն. և երեքոտնէն փայտաշէն ճրագակալ կայ, որ բարձր շինուած է, և վրան քանի մը տեղ տախտակ անցուցած են, ճրագները վրան դնելու համար։

## Մ.

Մա. } վն. Մայր։
Մամա. }

Մազրակայ. վն. Է այն, որոյ վրայ լօշ հացի խմորն առնելով թրեն 'ի կողն թօնիրին։

Մաթրաթ. վն. Մեծ քասայ, կերակուրի աման։

Մաժել. վն. Ձեռքով շոյել, շօշափել, շփել։

Մալուլ. վն. Տխուր։

Մակատուզ. վն. Սոյլանկօղ։

Մանել. Թել կամ չուան ոլորել։ Իսկ Մշ. ձգիլ, վայր անկանիլ։

Մանգղոն. Մշ. Մանգաղ։

Մաշկ. վն. Թռչնոց կաշի, կամ բարակ կաշի։

Մռութ. Բերնի ստորին շուրթն։ Եւս՝ տըխուր։ Մռութ կախել՝ տխրիլ։

Մաս. վն. Բառ նուիրական, յոր երդնուն, իբր Ս. Հաղորդութիւն։ Մաս առնուլ, Արբութիւն առնուլ։

Մաստրոն. վն. Կարագ և պինդթան իրար խառնած, ուտեստ։

Մարէ. վն. Մայրիկ։

Մէզար. Շալէ գործուած գօտի. բանջար կը լեցնեն մէջ, և գործի ատեն 'ի գոգ կը կապեն։

Մէզել. վն. Մտածել, խոկալ։
Մէրօ. վն. Աղուական կոչուած փոքր աղ-ջրկանց ։
Մէջկապ. վն. Գօտի ։
Միջան. վն. Անկողնոյ մէջ լեցուած բուրդ ։
Մլել. վն. Խոթել ։
Մլշկել. վն. Մղել, հրել ։
Մկայ. վն. Հիմայ, այժմ ։
Մղլել. Մշ. Ոչխարաց հօտին տեղ մը մակաղել ։ Նմանութեամբ՝ մարդոց բազմութեան եւ գործ կ'ածեն ։
Մշել. վն. Լաթեղինաց այրիլ. մշահոտ՝ լաթ այրելու հոտ ։
Մոն. վն. Գէշ, չար. գր. ասեն, Մոն բան, մոն մարդ, եւն ։
Մոնթ. վն. վանքի տիրացու, կամ վարդապետի փոքրաւոր ։
Մրկել. Կրակի կամ արեւու տաքութենէն խանձիլ, էրել ։
Մօլօզ. Անտաշ քար ։
Մօզ. Խածանօղ ճանճ ։
Մօզիկ. Արու հորթ ։
Մօռ. վն. Մօր, ղամուտ ։

Յ.

Յամայլք. վն. Մեծ կուժ, ջուր կրելու մեծ աման ։
Յէր. Այր, ծաղրաբոյ ։
Յունթ. Ընթատակ, ընդ անթով ։
Յօլ. Խաղ ինչ մանկանց ։

Ն.

Նակահատան. վն. Նակաստան եւ ասեն յանկարծ ։

Նմուշ. կերպարան: Իւս՝ նման: Իւս՝ հետք:
Նշանց. Ցոյց: Նշանց տալ, ցոյց տալ:
Նուկանոց. վ. ն. Զափ գինւոյ, կամ ձէթի, 200 տիրէմի:

## Շ.

Շապկել. վ. ն. Բազմութեամբ շրջապատել:
Շեղբ, Շեղբիկ. վ. ն. Պարտիզպանաց երկաթէ գործիք մը խոտեր խլելու:
Շեփ. Խարազանի ծայր կապած բարակ կաշի:
Շէնք. վ. ն. Մեծ քայլ. շէնքել՝ առանց կոխելու վրայէն անցնիլ: Ըստ Մշ. շեկ:
Շլկտար. վ. ն. ուժեղ բեռնակիր:
Շնիկ. Մշ. Զափ ցորենոյ և այլ արմտեաց:
Շող. Տաք, տապ արեւու:
Շողելք. վ. ն. Շոգի:
Շուշտակ. վ. ն. կանանց գլխու վրայ ձգելու լաթ, իբր զարդ:
Շուշտեմ. վ. ն. Զգիտեմ, տարակուսանիմ:
Շուռ տալ. Թէրս կողմ դարձնել, կամ տակը վրայ ընել. «շուջել» ես ասեն:
Շռայլ. վ. ն. ճարտար:
Շրջոնք. վ. ն. Որ և իցէ իրի մը Թէրս կողմն:
Շրտել. վ. ն. Աչքի յառումն, անթարթ հայեացք:

## Ո.

Ոժ. Ոյժ:
Ողեայ. փորձութիւն:
Ողմել. Մշ. Ընկողմնել յորումն կամ 'ի ծառոյն, եւն:
Ոռազատիկ. վ. ն. Ցետս յետս երթալ, կամ ոռի վրայ սահելով ընթանալ:

Ոստին. վն. Անձրևի վայր, կամ ցամաքային :

Ուզնկայ. Մշ. Աղջիկ նշանելու խօսելու գնալ:

Ուլնիկ. Ուլունք :

Ուշք. Ուշ, յիշողութիւն : «Ուշքս գնաց», խելքս դարձաւ :

Ուտիչ. Մշ. Տեղի, ուր ճարակ կամ խոտ արկանեն ոչխարաց ուտելու՝ ՚ի ձմերայնի:

## Ջ.

Ջախչախ. Ջաղացքի քարի վրայ հաստատուած փայտ, որ քարի դարձած ատեն «չախ չախ» ձայն կը հանէ :

Ջանչ. վն. Ջանչ խաղողի, տանձի, խնձորի, ևն, մրգեղինաց կուտեր՝ և կուտեր շրջապատող մասն, որ չուտուիր :

Ջարոց. Սատանայական :

Ջըբեր. վն. Ամուլ կին :

Ջընկուր. վն. փոքրիկ ոող, ջութակ :

Ջըտես. Բան չիմացող, կօրմէրէ :

Ջիր. Ջորցուցած մրգեղէն :

Ջորթան. Ջորցուցած պինդ թան :

Ջոք. Ծնկներ : Ջոքել՝ ծնկածալ նստել:

Ջում. Մինչև : Ջուր՝ ևս ասեն :

## Պ.

Պադապրել. վն. Բարկանալ, զայրանալ:

Պալ. Քարերու մեծամեծ կտորներ :

Պաղել. Մեռնել քրդաց կամ տաճկաց :

Պապաճիկ. վն. փոքր դիրքով եփած հաց :

Պառեկ. Մշ. կռնակ :

Պառիկոն. վն. Խիր որմ, «պատ պառիկոն»:

Պառվու ճուտեր. Մշ. Սոյլանկօղ :

Պատել. Մշ. Իյնալ. Եւ՝ «Արև պատաւ», Արև մարը մտաւ:
Պատրուս. Պատուատատ:
Պարագած. վն. կարօտ ըմպելեաց կամ մրգեղինաց, պապակեալ:
Պէտ. վն. խոշոր, մեծ:
Պիժ. «Ճիժ պիժ», մանր մանկտիք:
Պինդ. վն. է այն լաթ, որով պատատեն և պնդեն զմանուկն յօրօրոցի կամ 'ի խանձարրի:
Պլուզ. վն. փոքրիկ մարդ, կամ մանուկ:
Պնտուկ. Ֆընտըգ, կաղին:
Պշալ. Պշնուլ:
Պոզիկ. Ջրկիճի ձևով հողէ շինուած աման ջրոյ և գինւոյ:
Պուճուճակ. Ծոծրակ:
Պուկօչ. վն. Թանձրաշուրթն. Եւ՝ տեսակ մի տանձ:
Պսմամայ. վն. Հօրեղբօր կին:
Պսպղուն. փայլփլուն:
Պտղունց. վն. Բոյթին, ցուցամատին և միջամատին ծայրերուն միացումն, կամ անոնցմով բան մը առնուլ. Եւ՝ բուռն:
Պտըտուր. Կղկղանք խաշանց:
Պօլօճիկ. Երիկամունք:
Պօղօջակ. Պղպջակ, պօղօջկել, պղպջել:

## Ջ.

Ջանք. Ճէնկ. «Ջանք ու կռիւ»:
Ջամուկ. Կցեալ երկու միրգ. Եւ՝ երկուորեակ ծնեալք:
Ջէրգայ. վն. Կարգով:
Ջին. վն. Բարկութիւն. «Ջինս էկաւ»,

զայրոյցս ելաւ ։ Ջնոտել, զայրանալ կատաղի կերպով։

Ջխտել. Վ. Ն. Զոյգ փռնգտալ, զոր յաջողութեան նշան համարին ։

Ջնջոց. Վ. Ն. Լաթ մը՝ յատկացեալ ամաններ լուանալու ։

Ջռոթան. Ջորդան . տանիքներու վրայ գրուած փայտէ կիսախողովակ, յորմէ անձրեւաջուրն ժողվելով վար կը թափի ։

Ջորով Հազիւ. «Հազար ջորով», հազիւ հազ։

Ջրապպտիկ. Հասա բոյսէ մը շինուած խաղալիք է մանկանց, իբր փոքրիկ ճռռալամպոյ։

Ջրռաչ. Վ. Ն. Այս անուն կուտան այն անձին, զոր հասարակութիւն կ՚ընտրէ եւ կը կարգէ ջրերը կարգով բաշխելու իւրաքանչիւրին ։

Ջրկալ. Վ. Ն. Արտ ջրող. տեղ տեղ եւս ասեն՝ ջրտող, ջրւոր, եւն ։

Ջրտուն. Ջաղացքի ջրտուն, ուստի ջուրն անիւին զարնուելով դուրս կը հոսի ։

Ջրջրուկ. Վ. Ն. Մանր խոցեր կամ պալարներ, զոր մանուկներ կը հանեն շրթանց կամ ծնօտին վրայ ։

## Ռ.

Ռայ. Ռայայ . «ռայ գալ», հպատակիլ, անձնատուր լինել ։

Ռըմիկ. Ամբոխն, հասարակութիւն, ռամիկն ։

Ռինդ. Ռընտիկ, կոկիկ, սիրուն. եւ՝ առողջ։

Ռուք. Եփած քաղցու, պէքմէզ ։

## Ս.

Սալարսել. Վ. Ն. Սալայատակ առնել, սալ քար շարել ։

Սախ. Հողէ շինած մեծ աման, յորում լուացք առնեն։ Եւս՝ մեծ աման կերակրոյ։ Եւս՝ բուրդէ գործուած զանգապան։

Սանտերք. վն. Երկաթ ակրաներով սանտրաձեւ գործիք, որով բուրդ գզեն։

Սավա. վն. Մատղաշ մանուկ. ասեն եւ՝ սապի. «սավա տղայ, սապի տղայ»։

Սատանի եղունգ. վն. Գայլախազ սեւ քար։

Սարակ. վն. Օրականով աշխատող մշակ կամ գործաւոր։

Սարակախափան. վն. Գործաւորաց դադարումն յանձրեւոց կամ յայլ պատճառէ։

Սպրանդ-ոստիկ. վն. Սարդի ոստայն. էօրէնճէկ։

Սարեկ. վն. Կաշիի կտոր մը, զոր կապեն 'ի բերան մածունի բղիկի. եւ՝ սարեկ թռչուն։

Սեխ. վն. Խթան իշոյ. եւ՝ բարակ ցից։

Սեղանտախտակ. վն. Փայտէ սեղան բոլորակ, հաց ուտելու, կամ միս մանրելու, կամ խմորի գունդ գրտնկելու։

Սեռիկ. վն. Բղիկ, հողէ փոքր աման՝ եղի, մածունի, եւն։

Սերտ. վն. Քաջառողջ, ոյժլի։

Սէյգնա. Մշ. Սայլուղի 'ի դաշտի, զոր Վանեցիք «Աղուր» ասեն։

Սէրսուբ. վն. Մաքուր, զուտ։

Սինամահաւք. Սիրամարգ։

Սլայ. Ուռի բարակ ճիւղերէ հիւսուած. սէլէ։

Սլուլ. վն. Սառնամանիք։

Սվվիկ. Սրաթռիչ. կամ փայլփլացող իր ինչ։

Սկել. վն. Սուզանել։

Սկրտալ. Զգայուիլ։

Սղալ․ վն․ Շրթամբք փչելով ձայն հանելուլեալ ։

Սղկել․ Մանրել, փոշիացնել ։

Ստեծ․ վն․ փայտեր, որոց վրայ ոստայնանկներ հինած կը հինեն ։

Սրսունք․ վն․ Սարսուռ․ ասեն՝ «սրսունքս դողաց ։ սարսուռ զիս կալաւ»․ իբր քստմնել ։

Սրսուռ․ վն․ Ջուտ, զտեալ ։

Սրտանոց․ Մչ․ Լանջակապ․ իբր զարդ կանանց 'ի վերայ լանջաց ։

Սօղնակ․ վն․ Դրան փակ, երկաթէ կամ փայտէ օխլավ ։

## Վ․

Վազէ վազ․ վն․ Վաղվաղակի, արագ արագ հասնիլ, ընթանալ ։

Վաք․ փայտէ մեծ խողովակ ջրոյ ջաղացքի ։

Վարդի ծոց․ վն․ Կարմրուկ ախտ կամ ծաղկի պէս հիւանդութիւն մը մանկանց ։

Վարոց․ Մչ․ Ձեռքի բարակ գաւազան, որով վարեն զանասունս ։

Վաքդէզ․ Տեղի ծառազարդ և հովասուն 'ի գլուխ ջաղցի վաքին, ուստի ջուրն լճացեալ մտանէ 'ի վաք ։

Վզնոց․ Շարք ոսկւոյ կամ մարգարտի իբր զարդ պարանոցի կանանց․ կէրտէնլըք ։

Վիր․ Որու ։

Վէրի․ Վայրի ոչխար, էրէ ։

Վըզտ վըզտ․ վն․ Արագ արագ ելնել մտնել ։

Վըշ․ վն․ Վա՜շ, ափսոս, իբր միջարկ․ ։

Վժալ․ Մանկանց ճչալ, աղաղակել ։

Վիլակ․ Կարժառ, էլէքօ ։

Վուշ․ վն․ Կտաւ, ֆէնէն ։

Վռազ. վ. ն. Շտապ, աճէլ.

Վռտիլ. վ. ն. Կիսաեփ լինել, կիսայրեաց:

## Տ.

Տախ. Տարիքն անցած, ժամանակն անցուցած. խորթ:

Տապղին. վ. ն. Ստեպղին:

Տաքօղք. վ. ն. Տենդ, ջերմախտ:

Տե. Տես:

Տզկել. Թրջել:

Տէզէլք. վ. ն. Տեսիլք, իբր յափշտակեալ յերկինս:

Տէլ. Դեռ. «տէլ ալա». դեռ ևս:

Տէրաթաշ. վ. ն. Իբր՝ տէրամէռ. հայհոյանք է:

Տէր մաշ. վ. ն. Հնչեն «թէրմաշ». հայհոյանք է:

Տըռճիկ անել. Պոչ տնկելով վեր վեր ցատկել անասնոց:

Տիզ. Ոչխարաց ոջիլ. կէնէ:

Տիլ. վ. ն. Տիզմ. [illegible]:

Տիրուհնի. վ. ն. Է փայտ ինչ կանգնաչափ, որոյ կոթն բարակ, իսկ ծայրն իբր թաթիկ մանկան, որով կռնակն քերեն. այս անուն անապատաւորք յօրինած են:

Տնօրիկ. վ. ն. Տան համար շինած ապրանք, իբր ընտիր իր:

Տուածուրիկ. վ. ն. Մենաշնորհութիւն, յԱստուծոյ տուեալ:

Տուլիկ. Շան լակոտ:

Տուճիկ. վ. ն. Պստիկ կարաս գինւոյ, եւն:

Տուշ—փէտ. Խաղ մանկանց:

Տուրիկ. վ. ն. Զանբիւղ, կամ պարկ:

Տուց. Անտի. «էնտուց». անդուստ:

Տօ՛. Դօ՛, ո՛վ. իբր միջարկութիւն:

## Ց.

Ցախ. Զորցած ճիւղեր ծառոց, վառելիք։
Ցան. Զորցած կղկղանք անասնոց, զոր վառեն։
Ցիններ. Ցնկնել անասնոց, ծնիլ։

## Փ.

Փաթ. Մշ. Փաթթել, փաթթոց. Եւ՝ դարձ, անգամ։ «Ութն փաթ դացի էկայ». փաթթելով, շրջան առնելով երթալ դառնալ։
Փակահ. Ախոռ։
Փառ. Ջաղցի ճախրի թև, անիւի թև։
Փարատիկ. Լաթ՝ որով թոնիրի կողերը կը մաքրեն, մուրը կը փարատեն։
Փարի. Ոգի, Պարիկ. ճէրէ։ Առասպելարարած։
Փեռ. Բերնի լորձունք։
Փէտէ մշակ. Վն. Ծղլակ մեծ փայտ մը, որոյ ճակատէն ցից մը զարկած, կողով կը կախեն. և հող կամ ինչ և իցէ նիւթ կողովի մէջ լեցնելէն զկնի, դիւրաւ կը շալկեն առանց ուրիշի օգնելուն։
Փինչ. Փայտէ բևեռ։
Փմփուս. Վն. Քնքոյշ, փափուկ։
Փշրուկ. Վն. Կաւ, զոր ածեն 'ի տանիքս-Նեւ՝ գլոր գլոր ըրած խմոր եփեն իբր ղըլղոյ, քացախով և սխտորով ուտեն։
Փողան. Վն. Փողոց։
Փողպատ. Մշ. Շապիկի կամ հանդերձի ծախոտ։
Փոնթ. Ծալք, կամ կար կարելու ատեն եղած ծալքեր։
Փուղոց. Վն. Հարկաւոր, գործարան կարեաց։

փունճիկ. Գլորաձև թանձր հաց ։
փուռղիկ. վ. Ն. Շան կամ կատուի բուրդ. Եւ՝ բրդի կտոր մը ։
փսորուիլ. Տրորուիլ ։
փօթիկ. վ. Ն. Պատիկ, մանրուկ ։

## Ք.

Քաղանիչք. վ. Ն. Քաղանք ընելու գործիք ։
Քաղանք. Մշակեալ բուսոց մէջ գտնուած անպիտան խոտեր ։
Քանքան. վ. Ն. Ական հատանող, աղբիւրի ջուր հանող արուեստաւոր ։
Քապապ. Մշ. Կնքապապ, կնքահայր ։
Քապ քապ. վ. Ն. Մոկաց գաւառի լեռնաբնակաց կօշիկ, որ հիւսուած է կանեփով և տակը մանր բևեռներ խիտ խիտ շարուած ։
Քառէշտ. վ. Ն. Հեծանոց, կալի հասելի ։
Քառթաթօշ. վ. Ն. Քարերու մէջ բնակող մողէզ, [illegible] ։
Քարքուայ. Քարաժայռոտ վայր ։
Քաւոր. վ. Ն. Կնքահայր ։
Քէթր վ. Ն. Ծուռ, թիւր ։
Քըպսել. Մշ. Խճողել ։
Քըրքաշ. Գետնաքարշ ։
Քծմել. վ. Ն. Մատներուն սառիլ ։
Քուշտի՛. Գօտեմարտութիւն, ըմբշամարտութիւն ։
Քռըստալ. վ. Ն. Կաշառք [illegible], կամ՝ յուսալ ։
Քօղ. Անկատար այծ, էգ այծ ։
Քօս. վ. Ն. [illegible], [illegible] ։

---

# ԲՈՒՍՈՑ ԱՆՈՒՆՆԵՐ

Այս տեղ մեր յառաջ բերած բոյսերը
միայն Վանայ, Մշոյ և Այրարատայ գա-
ւառաց կը վերաբերին. և այն՝ ոչ բովան-
դակապէս. այլ որքան կարող եղանք յի-
շել. ապա թէ ոչ՝ անհուն ընդարձակ գործ
մը կը լինէր և յատուկ աշխատութեան
կարօտ՝ անոնց ամբողջութիւնը ձեռք բե-
րել, թէպէտ և կարի կարևոր և օգտա-
կար է։ Ոչ թէ գաւառէ գաւառ, այլ
գիւղէ գիւղ, քայլ առ քայլ եթէ ոք շրջի,
զանազան բոյսեր կը տեսնէ. և ինչպէս
կ'ըսեն Հայաստանցիք, «Աստուած մէկ,
իր ստեղծածը հազար ու մէկ» են։ Դեռ
մեր մէջ ոչ կենդանաբանական և ոչ բու-
սաբանական գիտութիւն տուն մը ունե-
ցաւ, որ ընկերութեամբ խնամ տանէր
Հայաստանի հողը զարդարող բոյսերը,
ծծմունքները, բզէզները թանգարաննե-
րու մէջ զետեղել, անոնց օգտակարու-
թիւնք և վնասակարութիւնք քննել ծա-
նուցանել, և 'ի տես ածել։ Գոնէ մեր օ-
րինակի պէս՝ առ այժմ իւրաքանչիւր գա-
ւառացին իբրև ցանկ մը յօրինէ, և կա-
րելի եղածին չափ ծանօթութիւն գրէ ու
հրատարակէ, մինչև ճաշակներ զարգանան
ազգի գիտնականաց մէջ։

Արարատայ բուսոց ցանկին մաս մը ըն-
դունեցի մեր բարեկամ Հաճեան Մեծ. կա-
րապետ էֆէնտիէն, որ այժմ Ազգ. Գաւա-
բխարքարանի համարակալն է. առ որ գո-
հութիւնս կը նուիրեմ։

## Ա.

**Ալոչ.** Աւի եւ Մկնալոչ. վայրի պտուղ ինչ ծառոյ, գոյնն կարմիր, համն քաղցր:

**Ալուչայ.** Սալոր, որ լինի թթու և քաղցր:

**Աղբրանց արիւն.** Արեան գոյն կարմիր, թաւիչի նման՝ երեք թերթէ ծաղիկ մը, որ քարերու մէջ կը բուսնի, անհոտ է. Մուշը շատ կը գտնուի:

**Աղինջ.** Եղինճ. բանջար վայրի. ըսըրղան:

**Աղջկուտակ.** Բանջար վայրի. էպէմէկէօմէճի:

**Ամանկոտրիկ.** Կարմիր ծաղիկ ունեցող մանր խոտ ինչ:

**Անթառամ ծաղիկ.** Վայրի ծաղիկ յատուկ այս անուամբ, որ բուսանի անջրդին վայրեր, խիստ անուշահոտ, նարինջ և դեղին գունով:

**Անիսոն.** Խոտ, որոյ հոտաւէտ հունտ գործածեն 'ի ցքի:

**Ապրիմ չապրիմ.** (Աղչէմ ձէանէմ) ծաղիկ մանր և բազմաթերթ, որոյ թերթիկներ մէկիկ մէկիկ փրցնելով՝ մէկին Աղչէմ մէկին Ջօղչէմ կ'ըսեն. վերջին թերթն եթէ աղչէմ եղաւ, խորհուրդն 'ի բարին կատարի. եթէ ղօղչէմ եղաւ՝ ձախորդ է:

**Առոտ.** Առոյտ, էօնճայ. խոտ, ախորժելի ձիոց և ամենայն անասնոց, վայրենի և մշակեալ. տեսակ մը կայ, զոր դալար եղած ատեն՝ իւղով կը տապկեն. և եթէ մարդու ոտք ցաւի կամ ջախջախուի, առոտ կը ծամեն կապեն վրան իբրև դեղ:

**Աստղիփուշ.** Փուշով խոտ, որ կապոյտ ծաղիկ կը բանայ:

**Արդղիկ.** Բանջար վայրի:

Արեւելածաղիկ. Արեւածաղիկ. Կիւն չիչէյի:

Աւել. Կակուղ՝ բայց դիմացկուն խոտ, յորմէ աւել կազմեն. և քանի մը տեսակ կայ:

Աւելուկ. Բանջար վայրի, որոյ տերեւք նման տերեւոց ճակնդեղի:

Աւէտիկ. Կարմրահատ ցորեն, որոյ հասկերն անփուշ են:

Բ.

Բազուկ. Բազկիկ. Վայրի և մշակեալ բանջար, որոյ տերեւներ սպանախի նման է. մսի վրայ կը ձգեն. պահոց օրեր աղցան կը շինեն, կոթերը աղջուրով և քացախով կը թթուեցնեն:

Բառեղ. Բաղեղ. Բաղեղն խոտ. սարմաշըք:

Բառբառ. Բերբեր. Փրփրեմ բանջար. ժէմըշլիա:

Բարդխասպան. Ծաղիկ պայծառ և անուշահոտ, մշակեալ:

Բացմենակ. Ծաղիկ, որ գործածի 'ի ցքի:

Բերքկի. Բևեկնի ծառ:

Բիբերըդ. Տես Աղջկուստակ:

Բողիկ. Բող. Բողիկ բանջար՝ զոր խաշեն և աղջուր դնեն:

Բուբու. Դեղին ծաղիկ ունեցող խոտ մի:

Բուտ. Պտուղ վայրի ծառոց ողկուզաձեւ մանրահատիկ, զոր աղջրով թթուեցնեն և ուտեն:

Բօլի. Դառնահամ բանջար վայրի:

Գ.

Գազ. Փուշ խոտ, որոյ մէկ տեսակն վահանաձև է և խիստ կը մեծնայ, կը ծաղկի

և իր խիտ ու թանձր թևոց տակ օձեր
և այլ սողուններ կը ծուարին. խոտ չեղած
տարիները անասնոց կը կերցնեն զազը,
վառելիքի գործ կ'ածեն, և տանիքնե-
րուն վրայ պարզելով՝ տանիքի հողը վրան
կը տարածեն. իսկ միւս տեսակն դեղին
է, և կը բարձրանայ. վառելու գործ
կ'ածեն, և ասոր կաթերէն առատ խէժ
կը ժողվեն։ (Գազի խէժ. [illegible]։)

Գազ. Խուարծիլի լայն տերևներ, որ ու-
տողաց փսխանք կը բերէ. ռէվէնտ։

Գառան ականջ. Խոտ վայրի։

Գառու դմակ. Բանջար վայրի։

Գարնցան. Կարմիր հատ ցորեն, որ 'ի գար-
նան ցանեն. ամենէն ընտիրն է ցորենի
տեսակներու մէջ։

Գէլու ականջիկ. Գայլու ականջ. խոտ վայ-
րի, որոյ արմատն է օղանէ, զոր չորա-
ցընեն և մանրեն ցանեն ձիոց վէրքերուն
իբրև դեղ։

ԳԼԼԳԼԼ. Բոյս մշակեալ, որոյ հունտն 'ի
տեղիս տեղիս հաց կազմեն և ուտեն,
այլ լինի սևագոյն և անսնունդ։

Գինարբ. Բարձրացողուն ծաղիկ անուշա-
հոտ դեղնագոյն. ազնիւն գտանի 'ի Մուշ։

Գինարբու. Ծաղիկ կապտակարմիր և ա-
նուշահոտ. ազնիւն գտանի 'ի Վարագ։

Գոնդոծ. Խոտ վայրի։

## Դ.

Դաղձ. Վայրի անանուխ. եաբանի նանէ։

Դդմանճ. Բանջար վայրի թթուահամ։

Դեղդ. Դեղդ, որոյ ցօղունն երկարէ յոյժ,
նման [illegible]. ծաղիկներ ունի,

և արմատն իբրև անճառ փրփրի 'ի լուացըս. գործածեն աղջկանց գլուխի վարսեր երկարցնելուն :

Ն.

Նզան աչք. Խոտ՝ որ ունի կոկոն 'ի ձև աչաց եզին :
Նզան լեզու. վ՚ն. Բանջար մի, նման լեզուի եզին, որով վէրք կը կապեն, և յատկութիւն ունի թարախներ մաքրելու :
Նզանճակատ. Բանջար, զոր աղցան կազմեն և ուտեն :
Նղէգ. Նղէգանման բանջար ուտելու :
Նղրճայ. Բոյս վայրի, զոր արմատով հանեն և աղջուր դնեն :
Նրեքնուկ. Խոտ մանր, որոյ տերևքն երեք են. և եթէ չորս տերև լինի՝ հմայս հմայեն այնու :
Նրիցանուկ. Բանջար, զոր Պարսիկք կոչեն [illegible] :
Նրնջնակ. Փուշ ուտալից, որոյ թարմ ցօղունն ուտեն և աղջուր դնեն :

Զ.

Զամբեղ. Զամբիւղ ծաղիկ. [illegible] :

Է.

Էշխռտուկ. Վայրի փուշ է :

Թ.

Թանթրուենի. Ծառ՝ վարդենւոյ նման, որոյ ծաղիկն ևս նոյն անունով կոչի. [illegible] :
Թանի բանջար. Որ ունի բարակաթերթ

կապտակարմիր ծաղիկ, զոր եփեն 'ի թանապուրն :

Թավթվուն. Բանջար :

Թելուկ. Խոտ վայրի :

Թրթնջուկ. Բանջար :

Թօրթիկ. Բանջար վայրի, զոր իբրև մաքրիչ արեան համարին. ասեն թէ կրիայն երբ զօձ սատակէ, թօրթիկս իբրև դեղթափ 'ի վերայ ուտէ :

## Ժ.

Ժախ. Բանջար նման բողկի, զոր աղջուր դնեն և ուտեն :

## Ի.

Իշու կաթնուկ. Խոտ, որոյ կաթն սաստիկ դառն է, գործածեն իբրև դեղ :

## Լ.

Լալա. Ծաղիկ լեռնային, նման կակաչի. լէլէ :

Լէլաղ. Ծաղիկ ողկուզաձև, որ 'ի վերայ ծառոց բացուի. լէյլաղ :

Լուի ծաղիկ. Լուի ծաղիկ, ծանօթ է այս բազմաց :

Լօշտակ. Բոյս՝ որոյ ծիլն նման է դդմենույն, և խաղողի նման ողկուզաձև պտուղ ունի. իսկ արմատն կարի դառնագոյն, որ մարդակերպ է, և 24 կերպ ցաւոց դեղ լինին ասեն :

## Խ.

Խազազ. Որ ունի զձև և զհամ բրասայի :

Խաշխաշ, խաշխաշուկ. Մեկոն :

Խաւըրծիլ. Բոյս վայրի, որոյ ցօղունն ուտեն, որ լիմոնաթայի համ տայ։ Ազնիւն գտանի 'ի Վարագ, 'ի Ծովասար, յԱրագած և յՆեղերով լերինս։

Խիթըրկ. Խոտ վայրի, զոր այրեն, և 'ի փոշւոյն աճառ յօրինեն։

Խըլորձ. Խոտ՝ յոյժ սիրելի ամենայն անասնոց. ունի ծաղիկ կապտագոյն։

Խուրնդատ. Խոտ հաստացօղուն բարձրացեալ իբրև գծառ, որոյ ծաղիկն փուրնդտացնէ զմարդ. Պնասակար է աչաց. 'ի պէտս վառելեաց գործածեն զայս խոտ։

Խուռվ խոտ. Վայրի խոտ, զոր դեղ առնեն վիրաց։

Խընձլուզ.
Խոտուկ.
Խուտուկ.
Խուուկ.
} Զանազան բանջարք։

Ծ.

Ծեթրին. Ծոթրին, համեմ բանջար։
Ծիրան. Միրգ ինչ. աճէմ էրէկի։
Ծներբեկ. Բանջար վայրի։
Ծտի լեզու. Բանջար։

Կ.

Կաթնուկ. Տես Իշու կաթնուկ։
Կակաչ. Ծաղիկ վայրի և մշակեալ. դեղնագոյն և կարմրագոյն, հոտով և անհոտ։
Կաղնի. Կաղնի ծառ և փայտ։
Կաճրար. Բանջար, որ ունի տերևս լայնս։
Կանափատ. Կանեփի հատ կամ հունդ, զոր բովեն ուտեն. և 'ի սանտրի ծեծելով զխաշածն՝ կաթն հանեն գործածեն

պահոց որ 'ի պէտս կերակրոյ ։

կանգառ․ Փշատերև բոյս դաշտային և լեռնային․ երկու կերպ է, իբր արու և էգ․ մէկ տեսակն թարմ՝ աղջուր կը դընեն, եղով տապակեն, թանապուրի մէջ արկանեն․ իսկ միւս տեսակէն կաթնհանեն և թանձրացունեն բլիթ բլիթ, կազմեն ծամոն․ կանգառն ախորժանօք ուտեն անասունք․ իսկ զսերմն՝ որ նման է ֆստըղի, բովեն և 'ի տեղի սուրճի գործածեն ։

կանճրակ․ Փշաբոյս մշակեալ, որ ունի ծաղիկս նման զաֆրանի․ և հասկս կազմէ, որոյ հատիկներ նման են արևածաղկի հատին, զորս խաշեն, ծեծեն, կաթհանեն, և պահոց կերակրոց 'ի պէտս գործածեն ։

կապար․ Բոյս՝ որոյ պտուղ աղջուր դնեն ուտեն ։

կառ, կռնուկ․ Փուշ՝ բոյս երկարաձիգ, որոյ գլուխն փոքր ինչ նման է եէնկինառի․ ցօղունն ուտեն ։

կարմրաբանջար, կլմբօզ․ Ճակնդեղ ։

կարոս․ Մաղդանօզ ։

կաքաւախաղող․ Ծառ ինչ յԱրագած, բարձր՝ երկու կանգնաչափ, որոյ տերևքն սղոցանման, առ մէն մի տերև ունի պտուղ ինչ նման ելակի, ուտեն և քաղցրեղէնս կազմեն ։

կեծուկ․ Բոյս բազմափուշ ։

կինձ․ Մշակեալ բոյս, որոյ տերև նման մաղդանօզի ։

կոծախուր․ Ծառ, որոյ պտուղն թթուաշ ։

կովուճակտիկ․ Տես Եզանճակտիկ ։

Կոտեմ, կոտմուկ. Բանջար ջրարբի, միջակեալ և վայրի ։

Կուէզլի թաւ. Լայնատերև բոյս ինչ անպէտ։

Կտաւատ. Կտաւի հատ կամ հունդ, յորմէ վառելու ձէթ հանեն, և սոյն ձիթով գօմէշ օծանեն ։

Կորեկ. Տարը, զոր հաց կազմեն ։

Կորնկան. Խոտ ինչ նման առուոյտ և խոլորձան, վայրի և միջակեալ։

Կուսք. Ձէթ հանուած կտաւատի դիրտ ։

## Հ.

Հաղարճ. Ծառ փոքրիկ յԱրագած, որ ունի պտուղս մանր ։

Համեմ. Հունտ ինչ միջակեալ։

Հավաժոր. Բոյս, որոյ արմատն է խիստ կարմիր ։

Հոչհոչիկ. Բոյս, որ ծալ ծալ տերևներ ունի. և ծաղիկ՝ սպիտակ և դեղնագոյն։

Հըրտըմ ջիւան. Բառ քրդերէն. բոյս մըջտականաչ ։

## Ձ.

Ձեան ծաղիկ. Սպիտակ և դեղին անհոտ ծաղիկ, որ ձեան հալելուն պէս կ՚երևայ և կը ծաղկի ։

## Ղ.

Ղադիֆայ. Ղարէֆայ ծաղիկ ։

Ղանաֆիլ. Ղանաֆէլ ծաղիկ ։

## Ճ.

Ճամբու խոտիկ. Մանր խոտ տերևախիտ։

Ճարճատուկ. Խոտ ինչ, որ ունի կապոյտ ծաղիկ ։
Ճթուկ. Բոյս ինչ վայրի ։
Ճլեկ. Մանր և կլոր հատիկ դառն, որ իբրև որոմն գոյանայ ցորենւոյ հետ ։
Ճչնանոր. Վայրի ծաղիկ յոյժ գեղեցիկ նման կարմիր վարդի, այլ մեծ քան զայն։
Ճռնեկ. Խոտ մանրատերև ։
Ճնճղկու պաշար. Իղնէկէօթի ։

## Մ.

Մամուխ. Ծառ ինչ յԱրարատ, տերևք նորա նման խնծորենւոյ. կորիզ նորա 'ի չափ և 'ի ձև բալի. շլորահամ, թխագոյն. ուտեն և քաղցրաւենիս շինեն ։
Մանտակ. Բանջար վայրի. աղջուր դնեն և ուտեն ։
Մասուր. Անհոտ վարդի ծառի պտուղ. թթու է. հազի դեղ համարին, և կերակրոց մէջ գործածեն ։
Մատուկ. Մանր խոտ փափկատերև ։
Մատուտակ. Թանձրատերև խոտ ինչ դառնահամ, որոյ վրայ գագաթն կ'իջնայ ։
Մեղրածուծ. Թորթիլ բանջարի ծաղիկն, որ նման ղանաֆիլի բացուի. այն ծաղկանց բունը ծծեն, որ քաղցրահամ է ։
Մըրիվանդ. Սպիտակ ծաղիկ ինչ ։
Մոմէմար. Ընտիր բանջար վայրի ։
Մոշ. Ծառ ինչ վայրենի, որոյ պտուղն նըման մորենւոյ է, զոր ուտեն ։
Մորխմուկ. Մորենի ։

## Ն.

Նարկիզ. Նարգիզ ծաղիկ ։

Նավբուղ· Ծաղիկ է, որ 'ի սկիզբն գարնան ծաղկի։

Նուիկ· Բանջար վայրի, առողջարար. չորացուցանեն և պէսպէս կերակուր կազմեն։

## Շ·

Շամամ· փոքրիկ սեխ, 'ի չափ խնծորոյ, գօտևոր, գունաւոր և անուշահոտ։

Շարտաղուկ· Դեղձ։

Շընխաղող· Բոյս ինչ, որոյ պտուղն կարմիր և մանր պինդ, նման հաղարջի, զոր ուտեն։

Շընախոտոր· Բանջար վայրի, նման և 'ի համ մխոտորոյ, զոր արմատով հանեն, աղցուր դնեն և ուտեն։

Շընքաքուկ· փուշ ինչ, որ բուսանի յաւերակս։

Շղյան գտակ· Անպէտ բոյս ինչ, նման սունկի։

Շրէշա· Բանջար վայրի, որոյ բոյնն 'ի թարմ և 'ի չոր՝ իւղով տապակեն· իսկ արմատն աղան, որ է շրէշ։

## Ո·

Ողորմակոթ· Բանջար ինչ։

Ուլուականջ· Խոտ ինչ։

Ուոց· Խոտ անուշահոտ, նմանութեամբ և հոտով իբրև ջերուջան, զոր ուտեն։

## Չ·

Չայկէ պլոր· Խոտ ինչ, որոյ ցօղունն ունի 'ի գլուխ իւր կապոյտ հատս իբր հունտս

Պաւվոն մէզար. Բանջար վայրի ։
Պատրաքօ. Բանջար մշակեալ ։
Պատուտակ. Ցես բաղեղ ։
Պարոն բանջար. Բանջար վայրի բարեհամ ։
Պիւօկ. Բանջար վայրի ։
Պնտուկ. Կաղին. ֆընտըղ ։
Պտուկ. Բանջար վայրի, աղջուր դնեն ։

## Ս.

Սէզ. Սէզ խոտ ։
Սինձ. Անուշ խոտ, զոր մարդիկ եւս ուտեն ։
Սիւեղ. Բանջար, զոր աղջուրի դնեն և ուտեն ։
Սխտորուկ. Բանջար վայրի, համով և նմանութեամբ սխտորի ։
Սոխուկ. Մանր բանջար վայրի համով և նմանութեամբ սոխի. աղջուր դնեն ։
Սունկ. Սունկ ծառոյ, և սունկ դաշտի. մանթար ։
Սուսամբար. Անուշահոտ խոտ ։
Սուսան. Սուսան ծաղիկ ։
Սպանդ. Սաստիկ դառն և գարշահոտ խոտ, որ բուսանի 'ի գերեզմանացս ։
Սպիտկուկ. Սպիտակ բանջար վայրի, զոր չորացուցանեն և կերակուր կազմեն ։
Սվրուկ. Խոտ վայրի, զոր ոչխարք ախորժանօք ուտեն ։

## Վ.

Վարդապետիկ. Ծաղիկ, որոյ կոկոն վեղարաձև՝ կապտագոյն ։

## Տ.

Տանդռնեկ. Բանջար վայրի ։

Ցարեկան. Ցեսակ մի ցորենոյ, ղովտար։

## Փ.

Փընկի. Բանջար վայրի։
Փշփշուկ. Բանջար վայրի։

## Ք.

Քարջին. Վայրի սանձ։
Քեղ. Պարարտ և մացառանման բանջար հոտաւէտ, որոյ ցօղուն խաշեն աղջուր դնեն և իւղով տապակեն։
Քօլօզիկ. Դեղին ծաղիկ ինչ։
Քօսի մօրուս. Բանջար վայրի։

## Օ.

Օշին, Ցես Շրէշտ։
Օշինդր. Դառնահամ խոտ. գործածեն 'ի ցքի և դնեն 'ի գինւոջ. ես՝ իւրև դեղ եփեն և ջուրն խմեն. փէլին օթի։

## ԱՐՈՐ, ԿԱՄ ՀԱՐՈՐ

Արորն է փոքր գութան, միայն անիւներ պակասին. իսկ միւս մասերն ամբողջ ունի, ինչ որ գութանն ունի. գարնան և աշնան եղանակին՝ երբ հողն կակղցած է անձրևներով, զոր Մշեցիք «Հարվոնք» կոչեն. և եթէ արդէն ուրիշ տարի վարած են զայն գութանով, արորը կը վարէ: Արորը կը կազմուի մէկէն մինչև վեց լուծ կամ զոյգ եզներէ. սովորաբար՝ տեղ կայ որ չորս լուծ կը լծեն. ուստի կ'անուանեն «Զորոց». տեղ ալ կայ որ վեց լուծ կը լծեն, ուստի և կանուանեն «Վեցկի»: (1)

---

(1) Գիւղացւոց մէջ աւելի աղքատ և մարդատեւոյն ունեցողներ կարող են գութան ունենալ. և գեղի հարկին ու ծախքին մեծ բաժինը գութան ունեցողներ կը վճարեն. ասոնք կ'ըսուին «Համանքայր», կամ «Գեղի իշխաններ»: Իսկ անոնք որ վեցկի ունին, և այն բաց լծոց շատութեան կամ սակաւութեան՝ կ'ըսուին «Պծեղը». և իրենց հարկեր ու գեղի մէջ պատահած հասարակաց ծախքերը ի բաժանչ ի ... իր տարիճաննին համեմատ կը վճարեն. տարիճաններն ևս՝ «Պլիկո» կը կոչեն:

Երկրագործաց անոնց և կարասեաց անուններն ևս հետաքրքրական են. նոյնպէս նաև եղանակաց, ամսոց, շաբաթուց, օրերու, ժամերու անգամ յատուկ յատուկ անուններ յօրինած են. բայց այս ամենը գրել բաւական ընդարձակութիւն կառնայ գործոյս. և կը խոստովանիմ՝ թէ չգիտեմ կարգաւ բովանդամ կատարելապէս գրել գանել այժմ:

# ՍԱՅԼ, ԿԱՄ ՍԷԼ

Սայլով կը կրեն իրենց խոտերը և հացերու որանները դաշտէն. և ուրիշ բեռնակրութեանց ալ կը գործածեն։ Երկու անիւի վրայ հաստատուած է սայլը, և անիւներուն մէջ անցած փայտը կ'ըսուի «Ոռնի», կամ «Սեռ»։ Անիւները սռնով մէկտեղ կը դառնան. անուոց շրջանակին վրայ երկաթէ օղ կայ անցուցած։ Սայլի երկու քովերը երկընցուցած փայտերը՝ «Առեղ» կը կոչեն. և առեղներուն դէպ 'ի յետս երկարցած ծայրերը՝ «Գարրոր», կամ «Թրացից» կը կոչեն։ «Կոտոշ» կ'ըսեն երկու հաստ փայտերուն, որ սայլի առաջոյ կողմը իրար մօտ բարձր տնկած են. և կոտոշներու մէջ անցուցած են ճախարակի գունդի պէս կլոր փայտ մը՝ զոր «Կլորս» կը կոչեն. սայլը բառնալուն՝ չուանը այս կլորսով կը պնդեն և կոտոշներուն կը կապեն։ «Աղուէս, կամ Աղւորս» կ'ըսեն կլորսէն վեր եղած փայտին, «Քաշն» է պարան, որով սայլի բեռը կը կապեն։ «Մանիչքն» է այն փայտը, որով կլորսը կը դարձնեն։ «Ճամասոխն» է այն, որ սռնին կը միացնէ լծոց. և կը դարձնէ անիւները։ «Ջօլ», կաշիէ պարան, որ լուծը լծոյն կը միացնէ։

# ՀԱՅԱՍՏԱՆԻ
## ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ

### Գութան.

Գութնի ակներ. Երկու անիւք, մինն բարձր և միւսն ցած։

Գութնի սըռնի. փայտն որոյ ծայրերը անիւքն են անցուցած։

Գութնի խարազան. Որոյ հետ դութնի էշն կցեն։

Գութնի էշ. Ծուռ փայտ ինչ երկար և հաստ իբրև գերան։

Գութնի առասամ, կամ խոփատուն. փայտն՝ որոյ վերայ հաստատեն զխոփ։

Գութնի ոտն և ոտնադբէր. Փայտն որ զէշն և զառասամն միաւորէ։

Գութնի մաճ և ծըռմաճ. Դեկի նման տնկուած փայտն, զոր կալնու մաճակալն և ուղղէ զմաճն։

Գութնի թուր. փայտն՝ որ 'ի մէջ իշոյն և առասամին է։

Գութնի խոփ. Երկաթն՝ որ պատառէ և վարէ զհողն։

Գութնի տախտակ. Որ խոփի վարած հողը կը շրջէ։

Գութնի կաքաւ. Լեզուաձև փայտ, որ զտախտակն պնդէ։

Գութնի ձևիչք. Երկաթն՝ որ առաջոյ քան զխոփն է։

Գութնի ճամբարակ. կաշիէ գործուած կապն, որ գութանի մասերը կը միացնէ։

Գութնի բնադամ. Հաստատկուռ երկաթեայ շղթայն, որ զգութանն կապէ ընդ լուծոյ։

Լուծ. փայտն՝ զոր դնեն 'ի պարանոցս զոյգ եզանց:

Ամոլ. Առաջին զոյգ գոմէշք կամ եզինք լծեալք, որ պարտին լինել ընտիրք և ուժեղք:

Ամոլվար. Մշակն՝ որ նստի 'ի լծան ամոլոյն և վարէ զլծեալսն:

Սարծիլ. Երկրորդ զոյգ եզանց կամ գոմէշք:

Ոժտուն. Երրորդ զոյգ եզանց:

Ոժտունվար. Մշակն՝ որ նստի 'ի լծան, և վարէ զոժտունս:

Հուրիկ. Չորրորդ զոյգ եզանց: Եւ մանուկն՝ որ նստի 'ի լծան և վարէ զհուրիկ եզինս (1):

Խարեզան. Մտրակ՝ որով զեզինս հարկանեն 'ի վարել:

Մանգեռ. Գերան՝ որոյ վերայ ատամնաձև փայտեր կան հաստատուած. հերկն վարելէն զկնի, այսու փշրեն և սանդրեն զարտն:

Ցախ, Ցախան, կամ Ցագան. Մացառներ կամ փուշեր խիտ կապած գերանի մը վրայ. սերմն ցանելէն զկնի՝ այսու հարթեն զհողն և ծածկեն զսերմն:

ՎԵՐՋ

---

(1) Ըստ պնդութեան և կակղութեան հողոյն լծկան անասունք շատ կամ քիչ կը լինին. երբեմն մինչև ութն զոյգ կը լծեն, այլ սովորաբար չորս լուծ անասնոց. և չորս մշակք մէկ դութան կը գործածեն. մշակաց մինն է մանճակալն: